Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՀԱՏՈՐ Բ.

Армянская ССР
ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ им. МОЛОТОВА

# НАУЧНЫЕ ТРУДЫ

ТОМ XXIV

RSS d'ARMÉNIE
UNIVERSITÉ MOLOTOV à ERIVAN

# TRAVAUX SCIENTIFIQUES

VOLUME XXIV

ИЗДАТЕЛЬСТВО ГОСУНИВЕРСИТЕТА
ЕРЕВАН 1944

Հայկական ՍՍՌ
ՄՈԼՈՏՈՎԻ անվան ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ



# ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՏՈՐ XXIV



ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1944

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ԱՆՎԱՆ ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՀԱՏՈՐ Բ.

ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1944

# Դ

ԴԱԳԵՐ, էգ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում ենք հիշատակված Հաղբատի անթվական մի արձանագրության մեջ (տես Երզնկեանց, Հնախ. տեղագր. 26).—Տարսոնի Գրիգոր եպիսկոպոսի մայրն է։

*ԴԱԴԱ, ար. < թրք. دده dede, dada «հայր» բառից. իբրև անձնանուն գործածված է նաև թուրքերի մոտ. ինչ. Դադա աղա թուրք՝ 1719 թ. (Ջամբռ 115), Dādā իշխան Թաբարիստանի՝ 1100 թ. և Dādābhāi փարսի անուն (որ Justi 75—76 դնում է dada «պապ» բառից)։ Մեր մեջ ունինք Դեդե արական անունը՝ 1609 թ. (Bodleian 111), բայց անշուշտ եղել է նաև Դադա, որից Դադայեան ազգանունը (Ղարաբաղ), իսկ սրա արևմտահայ ձևն է Տետեեան (հռչակավոր տպարանատեր և հրատարակիչ Զմյուռնիայում)։—Տես և Դադամ։

*ԴԱԴԱՄ, ար. < թրք. ددم dedem, dadam «հայրիկս» (հմմտ. Դադա). հայրը այս անունը տալիս էր իր որդուն՝ հաճախ հիշելու համար իր սեփական հորը։ Առանձին գործածության չեմ հանդիպած, բայց անշուշտ կար, որովհետև նրանից ունինք Դադամեան ազգանունը (Երևան)։ Հմմտ. Բաբամ անունը (Ջամբռ 172 և 259)։

*ԴԱԴԱՇ, ար. < թրք. ժղ. داداش dadaš «եղբայր» ձևից. գործածական է այժմ Ղարաբաղի հայոց մեջ։

*ԴԱԴԱՐՇԻ, ար. < հպրս. Dadarši, որ է սանս. dādhṛši «աներկյուղ, քաջ» (Justi 75 ա, Bartholomae 731). հմմտ. Դադարշի՝ պարսիկ զորավար Դարեհի և սատրապ Բակտրիայի։

— Դադարշի, հայազգի զորավար Դարեհի. սրա հրամանով գնաց նվաճելու ապստամբ Հայաստանը (Ն. Ք. 520).—Արձ. Բիսիտ. 2, 7—9, և 7, 9. Սանտալճեան, Աստրեստ. և պրս. սեպ. արձ. էջ 210—214, Բանասէր 1899, էջ 29—33։

ԴԱԴԷ կամ ԴԱԴԻՈՒ, ար. ծագումն անհայտ. այս անունով հայտնի է Թադէոս առաքյալի մի աշակերտը, որ քարոզել է Մեծ Հայքում. նահատակվեց Փոքր Սյունիքում. իր գերեզմանի վրա

շինվեց Արցախի Դադի վանքը (Ալիշան՝ Լաբուբ. էջ 7, ծան. Հայապատում 47, Արշալ. քրիստ. 23)։ Նույն է նաև՝

— Դաքի, առաջնորդ Սիւնեաց (Ազգապ. 42. տես Շահխաթ. Ստոր. Ա. 163)։

*ԴԱԹԼՈՒ, ար. <Թրք. طاتلو datlu «համեղ, անուշ, քաղցր» բառից։ Մի անգամ գտնում եմ գործածված 1638 թ. (Ձեռ. Վասպ. 394)։ Նույն անունից են կազմված Տաթլուբեգ (հիշված մի անգամ 1578 թ. Սիսական 72) և Տատլուղան, իգ. (datlu «համեղ»+ ղան, խան բառերից), որ գործածված է նույնպես մի անգամ՝ 1549 թ. (Սիսական 42)։

*ԴԱԼԱՅԻ կամ Դալաս-Իբն-Ղալաս-էլ-Մելիք-Էսսալիհ, հայազգի զորավար Եգիպտոսի։ Երբ Եգիպտոսի խալիֆայի վեզիրը՝ Աբբաս սպանեց խալիֆային և նրա մանկահասակ որդուն գահ բարձրացնելով՝ իր ուզածի պես կառավարում էր երկիրը՝ իր Նասր որդու հետ միասին, Դալայի հայ զորավարը իր զորքով արշավեց նրանց վրա։ Աբբաս և Նասր փախան Ասորիք, ուր և սպանվեցին (1154)։ Դալայի դարձավ Եգիպտոսի վեզիր և իր աղջիկը ամուսնացրեց խալիֆայի հետ։ Իր ձեռքն առնելով կառավարության սանձը, խոհեմությամբ իշխեց մինչև վերջին Ֆաթիմեան խալիֆան, որ էր Ադհէտ Լեդինիլլահ (1160—1173)։ Սրա հորաքույրը նախանձից կամ վրեժից դրդված՝ թույն տվեց հայ վեզիրին, որ դեռ չմեռած վրեժն առավ և սպանեց դեղատուին, որին խալիֆան ինքը մատնեց (1161)։—Ալիշան, Շնորհ. էջ 168։

† ԴԱԼԱՐ <հյ. դալար «կանաչ» բառից. սկզբում արական էր, ապա դարձավ իգական. նաև ձևափոխվեց Դալալ։

— 1. Դալար Մշեցի, եղբայր Հայրապետի, նվիրատու ձեռագրի (1204 թ.).—Հայապ. 450։

— 2. Դալար իբր ար. հիշված է անթվական մի հիշատակարանում Ձեռ. Վասպ. 394։

— 3. Դալալ՝ ավելածու տան և գրան Կաւալու Ս. Աստուածածին վանքի՝ 1410 թ.—Նոտարք 38։

— Դալալ՝ իբր արական անուն հիշված է նաև Ձեռ. Վենետ. Ա 428 (անթվական) և իբրև իգական անուն՝ 1585, 1592 և 1599 թվերին (Ձեռ. Վասպ. 704, 731, 757)։

ԴԱԽՁԱ, ար. ծագումը անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1512 թ. (Ձեռ. Վասպ. 84, ուր թվականը սխալ է դրված 1212)։

ԴԱՀԵՐԹԷՆ, ար. ձևն ու ծագումը անհայտ. գիտենք միայն՝

— Դանէրբէն կամ Դուևուրբէն, հայ իշխան Երզնկայի, հպատակվել և հետո վռնդվել էր Օսմանցիներից, ապաստանեց և միացավ Լենկթիմուրին (1402 թ.)։

**ԴԱՂ**, ար. անստույգ անուն, որ Justi 76 բ համարում է պրս. dāl «արծիվ»։ Մի անգամ ունենք՝

— Դաղ Առաւեղեան. մին այն նախարարներէց, որոնց բանտարկեց Յազկերտ Բ Պարսկաստանում «452 թ».— Եղիշ. 150, Փարպ. խէ. (Ձեռագիրն այստեղ շատ աղավաղված է. «Ի տոհմէն առաջին Առաւեղենից Փափակ և Վարազ դենդաղ»։ Փարպեցու Ա տպագրության մեջ այս անունները ուղղված են Վարազդեն և Դաղ. իսկ մյուս տպագրությունները դարձրել են Դատ, որոնց հետևում է և վերջին տպագրությունը։ Իշխանը ծանոթ է նաև Եղիշէին, որ ուղղակի դնում է «յազգէն Առաւեղենից Փապակ և Վարազդէն և Դաղ»։ Այս պատճառով Դատ սրբագրությունը վաղաժամ եմ համարում (Արրտ. 1911, 229)։

**ԴԱՄԱ**, սեռն ու ծագումը անհայտ. հիշված է Նորավանքի անթվական մի արձանագրության մեջ (Սիսական 198).—ԺԳ դար։

† **ԴԱՄՈՆ**, ար. <հյ. դամոն «մի տեսակ սալոր» բառից, որ սակայն ժողովրդական լեզվում «չար մարդ» իմաստն է ստացած։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, բայց 1329 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 182)։

***ԴԱՄՈՒՐ**, ար. <թրք. دمر demir «երկաթ» բառից. ավելին տես Թամուր։

— Դամուր Խանականցի, ազգական Սասնեցի Ներսէս վարդապետի. նվիրատու ձեռագրի (1332 թ).—Հայապ. 546։

***ԴԱՄՈՒՐԴԱՇ**, ար. <թթր. تيمورطاش timurtaš, որ նշանակում է «երկաթաքար» և թաթարների մեջ սովորական անուն է։ Մի անգամ գտնում եմ հիշված մեր մեջ 1533 թ. (Սիսական 162)։

***ԴԱՆԱԲԷԿ**, ար. <թրք. دانا dana «հորթ» + بك beg «իշխան» բառերից. մի անգամ գտնում եմ գործածված 1446 թ. (տես տակը) և մի անգամ էլ 1695 թ. (Ձեռ. Թաւր. 112 ա)։ Համմտ. Դանախաթուն։

— Դանաբէկ՝ եղբորորդի Մկրտիչ Աղթամարցի կրոնավորի, որ Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 151։

***ԴԱՆԱԽԱԹՈՒՆ**, իգ. < թրք. دانا dana «հորթ» + խաթուն բառերից. հմմտ. Դանաբէկ, որի իգականն է. մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Դանախաթուն, դուստր Շահփաշայի, որ Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան՝ 1453 թ.— Նոտարք 171, Ձեռ. Վասպ. 136։

ԴԱՆԱՆ, ար. ծագումն անհայտ. հմմտ. Դանոն։

— Դանան, աշակերտ Ս. Մեսրոպի, որ նշանակեց նրան Եկեղեաց գավառի վրա.— Կոր. 18, Խոր. Գ. կ։

*ԴԱՆԳԸԶ, ար. <թրք. دڭز deniz «ծով» բառից, որ թթր. հնչվում է dangəz. հմմտ. հյ. Ծովիկ և արաբ. Բահրի անունները՝ նույն նշանակությամբ։ Գտնում եմ մի անգամ հիշված անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1462 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 441)։

*ԴԱՆԻԷԼ, ար. < եբր. דניאל Dānīel (= բաբել. Dānilu) անունից, որ նշանակում է «դատաւոր իմ Աստուած» (Gesenius 161, 166). հմմտ. Վրդն. դան. Ա. 243. «Դանիէլ, որ ասի դատաստան Աստուծոյ»։ Այս անունով հայտնի է Եբրայեցոց չորս մեծ մարգարեներից մեկը (Ն. Ք. 606)։ Եբրայերենից են փոխառյալ նաև հուն. Δανιήλ, լտ. ֆրանս. գերմ. անգլ. Daniel, ռուս. Даниил, իտալ. Daniele, որի իգականն էլ կա Daniella = ֆր. Danielle ձևով։ Գործածական է մեր մեջ Դ դարից սկսած մինչև այժմ. արդի գավառական ձևերից են Ղրբ. Տա՛նի, Տօ՛նի։— Հիւբշ. 334։

— 1. Դանիէլ քահանա, ընկերակցում էր Հռիփսիմեան կույսերին (տես Եսայի անվան տակ), 300 թ.— սեռ. Դանիէլի՝ Խոր. պտմ. հռիփ. 300։

— 2. Դանիէլ, գլխավորներից մին էր 45 հայ վկաների, որոնք նահատակվեցին Փոքր-Հայոց Նիկոպոլիս քաղաքում, իբր 319 թ.— Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 106—133։

— 3. Դանիէլ եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Աղուբիոսի (327—345?).— Զքր. եպս. 280, Արրտ. 1868 դեկտ. էջ 103։

— 4. Դանիէլ քորեպիսկոպոս ասորի, աշակերտ Գր. Լուսավորչի. իբրև քրիստոնեության քարոզիչ հաջողությամբ գործեց Պարսկաստանում։ Լուսավորիչը կարգեց նրան դատավոր և Տարոնի քորեպիսկոպոս և կաթողիկոսական իշխանության անմիջապես ենթարկվող բոլոր եկեղեցիների տեսուչ (հիւպերետ)։ Վարեց ճգնավորական կյանք Հացեաց դրախտ մենարանում. հանեց հրաշագործի համբավ։ Յուսիկ կաթողիկոսի մահից հետո ընտրվեց հայոց կաթողիկոս, բայց նա ներկայանալով Տիրանին՝

սկսեց հանդիմանել և նզովել նրան՝ իր անկարգ վարքի համար։ Թագավորը զայրացած՝ խեղդել տվեց ծերունի եպիսկոպոսին։ Թաղվեց Հացեաց դրախտի մենարանում «347 թ»։ Գերեզմանը ցույց են տալիս Մշու մոտ Ապահունեաց Կոփայ վանքում, համարելով նրան թոռ Լուսավորչի (Հնոց և նորոց 14)։—Բուզ. Գ. ժգ. Ցհ. կթ. ժա. Շար. կէ և էջ 467. Կիր. 10, 11. Արծր. Ա. ժ. Վրդ. իբ. Ներբ. յորդ. 4, 9, 40, 42. Ցայսմ. դեկտ. 1. Սամ. անեց. 66. Մին-համդ. 24.—սեռ. Դանիէլի՝ Բուզ. Գ. ժդ, Ե. իե—իէ, Զ. է, ժգ. Խոր. Գ. ժգ, իբ. Շնորհ. վիպ. 769. Ճշ. 572. Պտրգ. 547, 690. Ժմ. 946. Ցայսմ. փետր. 3. Վրդն. աշխ. 507. Ագաթ. 398.—բց. ի Դանիէլէ՝ Խոր. Գ. ժգ. Ասող. Բ. ա.—Իր անունով եկեղեցի Բերդաձորում տես Տաշեան, Ցուց. 696. շարականի մասին՝ անդ, 966.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 481, Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 22—28։

— 5. Դանիէլ մեծ իշխան Ծոփաց, ուղեկից եղավ Մեծն Ներսէսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ»։—Բուզ. Դ. գ։

— 6. Դանիէլ երեց, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ». —Այրարատ 519, Հայապ. 159։

— 7. Դանիէլ եպիսկոպոս Ռշտունեաց, ստորագրում է այն թղթին, որ գրեց Բաբկէն կաթողիկոսը (մ. «516 թ») Պարսկաստանի ուղղափառ Ասորիներին.—բց. ի Դանիէլէ՝ Գիրք Թղ. ը։

— 8. Դանիէլ եպիսկոպոս Անձևացեաց, ստորագրում է այն թղթին, որ գրեց Բաբկէն կաթողիկոսը (մ. «516 թ») Պարսկաստանի ուղղափառ Ասորիներին.—բց. ի Դանիէլէ՝ Գիրք Թղ. ը։

— 9. Դանիէլ քահանա Տրիոյ, մասնակից եղավ Կաղսնտի նշխարաց գյուտին (560 թ).—Կղկնտ. Բ. գ։

— 10. Դանիէլ երաժիշտ (կոչված Նոր Որփէոս), որին ուղղել է Գր. Մագիստրոսը (մ. «1059 թ») իր ԾԳ, ԾԴ նամակները.—Դանիէլ՝ Մագ. Թղ. ծգ, ծդ.—սեռ. Դանիէլի՝ Մագ. Թղ. ծա, ծբ։ (Ալիշան, Շնորհ. էջ 90 սրանն է համարում Մեծացուցէ Ան շարականը (Դասապետն հրեշտակաց և սպասաւոր երկնից արքային), որի տնագլուխները հօդում են Դանիէլ անունը։ Նույնը տես Պարականոն շար. 13)։

— 11. Դանիէլ քահանա, ստացող. Յովհաննէս եպիսկոպոսի և Սիմէոն քահանայի հետ Վարդան գրչին գրել տվեց մի Ժողովածու, Ռիմ քաղաքում, 1254 թվին.—Manus. bibl. nat. էջ 55։

— 12. Դանիէլ կրոնավոր, առաջնորդ Կիւզուց վանքի՝

*1298 թ. կոչված է «հեզահոգի և նման Յովանէս Ողորմածին»։— Ձեռ. Վասպ. 126։*

— 13. Դանիէլ *կրոնավոր. խնդրանոք Սիւնեաց մետրապոլիտ Ստեփանոս Օրբելեանի և առաջարկութեամբ Աղթամարի Զաքարիա կաթուղիկոսի՝ օրինակեց Աղթամարի վանքում Թովմա Արծրունու Պատմութիւնը՝ 1303 թ. (տես հրատ. Պատկ. էջ 320)։ Նոյն է և Դանիէլ Աղթամարցի հիշատակագիր (Ակինեան, Գաւազանագիրք 42, 47)։ Նոյն կարող է լինել նաև հաջորդը։*

— 14. Դանիէլ *կրոնավոր, աշակերտ Սիմէոն քահանայի. գրիչ. օրինակեց Պօղոսի թղթերը՝ Գրիգոր կրոնավորի համար, Աղթամարում, 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 73)։*

— 15. Դանիէլ *եպիսկոպոս, գրիչ. օրինակել է Կիւրղի Երուսաղեմացու Կոչումն ընծայութեան, Աղթամար կղզում, 1316 թ.— Ձեռ. Կարին. 46 (№ 749). Ակինեան՝ Գաւազանագիրք 65։—Կարող է լինել հաջորդի հետ նոյն։*

— 16. Դանիէլ *եպիսկոպոս, որին «ուսուցիչ, վարդապետ և երախտաւոր» է կոչում իր աշակերտ Դէոսկորոս քահանան, որ Արճէշում արտագրել է մի Աւետարան՝ 1331 թ.—Ձեռ. Վասպ. 178։*

— 17. Դանիէլ *վարդապետ Մեծոփեցի, գրեց Մխիթար Սասնեցու (մ. «1337 թ») կյանքը և մտցրեց Յայսմաւուրքի մեջ. —Յայսմ. փետր. 11։ (Զամչ. Գ. 343 կոչում է Դանիէլ վրդ. Սսեցի, որ տես № 21)։*

— 18. Դանիէլ *ճգնավոր, նշանավոր գիտնական վարդապետ, աշակերտ Յովհաննէս Արճիշեցու (Ոսպնակեր).—Մ. մաշտ. 336 բ։*

— 19. Դանիէլ *եպիսկոպոս Ջմշկածագի, անդամ Սսի եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։*

— 20. Դանիէլ *եպս. Արճիշեցի (ըստ ոմանց Թավրիզեցի) ֆրանչիսկյան* minor *կարգից, հայ. լատիներենի թարգմանեց Սսի եկեղեցական ժողովի պատասխանը Ներսէս Պալենցիամբաստանությանց դեմ «1343 թ».—Զամչ. Գ. 341, Հայապ. 122, Սիսուան 518։*

— 21. Դանիէլ *վարդապետ Սսեցի, ֆրանչիսկյան կրոնավոր. դեսպան գնաց Պապի մոտ՝ օգնութիւն խնդրելու համար եգիպտացոց դեմ։ Անդամ Սսի եկեղեցական ժողովի «1343 թ»։—Զամչ. Գ. 341—345, Ազգապ. 1864, 1870։*

— 22. Դանիէլ *որդի Յովաննէսի և հօրեղբօրորդի Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։*

— 23. Դանիէլ *տանուտեր, որդի Աբրահամի. գնեց Զաքա-*

րէա գրչից մի Աւետարան, որ նա արտագրել էր Աղթամարում 1399 թ. և նվիրեց Ոստանի Ս. Ստեփաննոս եկեղեցուն.—Ձեռ. Վասպ. 234—5։

— 24. Դանիէլ, հայր Կարապետ քահանայի, որ Թումա վարդապետին նորոգել տվեց մի հին Աւետարան՝ 1401 թ.—Ձեռ. Վասպ. 126։

— 25. Դանիէլ աբեղա, որդի Պլտուխի. գնեց մի Քարոզգիրք 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

— 26. Դանիէլ կրոնավոր, որդի Պողոյ, աշակերտ բանի, հոգևոր որդի Աբրահամ կրոնավորի, որ Շամբիձոր գավառի Մաղարդայ վանքում, Գրիգոր Արծկեցի գրչին գրել տվեց մի Աւետարան, 1427 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 413, Միսական 518 բ։

— 27. Դանիէլ, պարոն, հանգուցյալ մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ Ընկուզագոմի վանքում օրինակեց Ցայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 85։

— 28. Դանիէլ փակակալ Արծկէի Կողուց վանքում՝ 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 29. Դանիէլ արքեպս. Աղթամարցի. նշանավոր գրիչ. շատերին է սովորեցրել գրչության արվեստը և շատերին լուսավորել. օրինակել է Ճառընտիրը, Սարգիսգիրքը, Տարեգիրքը, Կոչումն ընծայութեան և Թովմայի պատմութիւնը, որոնք նվիրել է Աղթամարի վանքին, Դավիթ Գ կաթողիկոսի («1393—1433 թ») ժամանակ.—Հաւաք. 40։

— 30. Դանիէլ քահանա, որդի Կարապետ քահանայի. եղբայր և ուսուցիչ Թումա կրոնավորի։ Թերևս աշխարհական էր, երբ օրինակեց Աւետարանը՝ Աղթամարում՝ 1403 թ. (տես Նոտարք 20)։ Դեռ սարկավագ էր, երբ օրինակեց Աղթամարում Մաշտոցը՝ Կիրակոս քահանայի համար՝ 1404 թ. (Թորոս աղբ. Բ. 277)։ Երբ քահանա դարձավ, սկսեց նկարազարդել, ծաղկել ու կազմել իր եղբոր Թովմայի գրած Աւետարանները։ Այսպես՝ ծաղկեց ու կազմեց մի Աւետարան, որ գրեց Թուման Աղթամարում 1418 թ։ Այնուհետև Փիրիբէկ ոմն բռնակալ հանկարծակի հարձակվում է Աղթամարի վրա (1431 թ), գրավում կղզին, թալանում, միաբանները ցրվում են։ Դանիէլ և Թումա եղբայրները ապաստանում են Ուրանց գյուղը. այստեղ Թուման գրում է մի ուրիշ Աւետարան (1433 թ), որ Դանիէլը նորից ծաղկում ու կազմում է։ Այս գյուղում երկու տարի մնալուց հետո, կաթողիկոսը կարողանում է նորից ձեռք ձգել Աղթամարը, միաբանները վերադառնում են,

սրանց հետ նաև Դանիէլն ու Թուման։ Այս անգամ Դանիէլը (Թումայի սակաւ ինչ օգնութեամբ) ինքն է գրում մի Աւետարան՝ տանուտէր Յովհաննէսի համար, և ծաղկում ու կազմում (1436 թ)։ Ապա Դանիէլը՝ նոյն Աղթամարում գրում է մի ուրիշ Աւետարան՝ տանուտէր Մկրտիչի համար (1441 թ)։ Վերջապէս արտագրում է Ճաշոցը՝ Առաքել քահանայի համար, Աղթամար 1444 թ։—Ձեռ. Վասպ. 311, 366, 373—4, 382—4=Նոտարք 107, 127, 134—5։

— 31. Դանիէլ, մականունը Երկայն, Ամիթ (Տիգրանակերտ) քաղաքի հայոց առաջավորներից. նպաստեց հայոց Ս. Թէոդորոս եկեղեցու շինութեան (1447 թ)։—Հայապ. 574։

— 32. Դանիէլ վրդ. աշակերտ Գրիգոր Տաթևացու. ուսուցիչ Յովհաննէս վրդ. Համշէնցու (ԺԵ դար).—Առաք. պատմ. 301, 340, Թորոս աղբ. Բ. 483, Տաշեան, Ցուց. 431։

— 33. Դանիէլ աբեղա, գրիչ. օրինակեց Տաթևացու Մեկնութիւն Աւետարանին Մատթէի, Սևան 1451 թ.—Ձեռ. Կարին, 156։

— 34. Դանիէլ, հայր Վալաթի, որ Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, Արճէշի Ականց ավանում, 1453 թ.—Թորոս աղբ. Բ. 365=Նոտարք 172։

— 35. Դանէլ, որդի Յովանէսի՝ հորեղբոր տանուտէր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 36. Դանէլ, վաղամեռիկ որդի Ստեփանոսի՝ եղբորորդու տանուտէր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 37. Դանիէլ, որդի Անդրէասի և եղբայր Աստուածատուր տանուտիրոջ, որ Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, Ուշտունեաց Բերդաձորի վանքում, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— 38. Դանիէլ վրդ. Հայոցթաղում գրել տվեց մի Ճաշոց՝ Ստեփաննոս գրչին, 1464 թ.—Ձեռ. Սևան. 19 բ։

— 39. Դանիէլ քահանա՝ Վանի Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցու, 1465 թ.—Նոտարք 222։

— 40. Դանիէլ վարդապետ, որ մեկն էր Արիստակէս կաթողիկոսի ընտրողներից «1465 թ».—Կամենից 226։

— 41. Դանիէլ եղբայր Ֆարաճի, որ ստացավ մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96։

— 42. Դանիէլ վարդապետ, միաբան Սևանի, ծաղկել տվեց Աբրահամին՝ Սևանի նշանավոր դուռը, 1486 թ.—տես վերը Աբրահամ № 87.—Արձ. Սմբատեանց, Գեղարքունի 120, Յովսէփեան,

Անահիտ 1932, 25, Սիսական 84, 88 ա։ (Վերջինս գրում է նրա մասին. «Գովեալն՝ հռետոր, բանիբուն, քաջ րաբունի, ճգնազգեաց և սրբասնեալ կոչմամբ. չասի առաջնորդ, այլ Սևանեցի ևեթ». հիշատակված է 1471 թվից, ուստի նույնանում է Սմբատեանց, Գեղարքունի 133 հիշատակված գիտնական Դանիէլ Սևանեցու հետ։ Նույն եմ համարում նաև Դանիէլ վրդ. Սևանեցի, որդի Կարապետ քահանայի. գնեց մի Քարոզգիրք՝ Առաքել աբեղայից, 1461 թ. (Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 83 աբ)։

— 43. Դանիէլ եղբորորդի Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 44. Դանիէլ, հայր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակեց Աւետարանը, 1497 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 45. Դանիէլ աբեղայ ի Հայոց. ունի «յաղագս ոսկի շինելոյ» քիմիական գրվածքը (Տաշեան, Ցուց. 404 բ)։—Սրա հետ նույն են 1) «Յաղագս ոսկի առնելոյ ըստ գործողին գայլին, որում անունն էր Դանիէլ և էր աբեղայ ի հայոց ազգէն» (Ձեռ. Պետ. Մատենադարանի, № 8446, էջ 83 բ)։ 2) «Յաղագս ոսկի առնելոյ ըստ գործաւղին Գայլին, որում անուն է Դանիէլ. և էր աբեղա ի հայոց» (Ձեռ. Պետ. Մատենադարանի № 2527, էջ 87 ա, գրված 1614 թ.)։ 3) «Յաղագս ոսկոյ ըստ նոյն վերոյիշեալ գործաւղին։ Զի զմին խանթար արճիճն դարձուցանես յարեգակն յերկար ժամանակաւ կանթեղիւ ի յինն ամիսն» (Ձեռ. № 2527, էջ 87 ա)։—Այս տեղեկությունները տվեց ինձ մեր համալսարանի դասախոս և հայոց քիմիայի պատմության մասնագետ Տիրան Ղազանչյանը։ Սրանցից հետևում է որ ԺԶ դարում եղել է Դանիէլ հայ աբեղա ալքիմիագետ։

— 46. Դանիէլ, պատմիչ անծանոթ, որին հիշում է Ղազար Ջահկեցին.—Հայապ. 13։

— 47. Դանիէլ տաղասաց, ԺԸ դար.—Տաշեան, Ցուց. 865։

— 48. Դանիէլ վարդապետ, մատենագիր. ունի Մեկնութիւն Սաղմոսաց. ժամանակն անհայտ.—Զարբ. Հին դպր. 781։

— 49. Դանիէլ բէկ Հասան-Ջալալեանց Խաչենեցի. որդին էր Ղարաբաղի Շուշի գաւառի Մելիք-Բեգ իշխանի։ Սրանք ութը եղբայր էին (Յովհաննէս կաթուղիկոս Աղուանից, Սարգիս կաթուղիկոս, Գաբրիէլ բէկ, Դանիէլ բէկ, Իսրայէլ բէկ, Միսայէլ բէկ, Ջալալ բէկ և Ալլահ-ղուլի բէկ դավաճանը, որ մատնեց բոլորին)։ Իսկ Բաղդասար նշանավոր մետրապոլիտը այս Դանիէլ

բէկի որդին էր։ Հավատքը չուրանալով նահատակվեց Շուշում, Իբրահիմ խանի ձեռքով, 1791 թ.—Րաֆֆի, Խամսայի Մելիքութ. 134, 148—150, Բարխուտ. Արցախ 150—151, Ազգապ. 3624, Նոր Վկայք 607, ուր կա նրա տապանագիրը։

— 50. Դանիէլ կաթողիկոս Սուրմառեցի. եպիսկոպոս ժամանակ Էջմիածնի նվիրակն էր Պոլսում. ընտրվեց Պոլսի պատրիարք՝ իբրև հաջորդ Զաքարիայի (1799 թ)։ Հաջորդ տարին (1800 թ), կաթողիկոսական ընտրության առթիվ, ցարական հրահանգով աքսորվեց և նրա տեղ ընտրվեց Յովհաննէս Ջամաշըրճեանը՝ իբրև պատրիարք Պոլսի։ Երբ ցարական ընտրելին Յովսէփ մեռավ և Դավիթ Ե հափշտակեց կաթողիկոսական աթոռը, ազգի ընտրելին Դանիէլն էր, որ Բագրևանդում մեծ հանդեսով կաթողիկոս օծվեց (1802)։ Սրա վրա բացվեց Դավիթ-Դանիէլեան վեճը, որ տարիներ տևեց և մեծ երկպառակություն գցեց ազգի մեջ։ Դավիթը կարողացավ Դանիէլին բերել Էջմիածին և ոչ միայն բանտարկել, այլ և խայտառակությամբ գերծել նրան, և ավելի ուշ՝ Պարսից թագավորի կարգադրությամբ Թավրիզ ու Մարաղա աքսորել տալ։ Երբ Ռուսները հաշտություն կնքեցին Պարսից հետ, հաշտության պայմաններից մեկն էլ այն էր, որ Դանիէլին վերադարձնեն իր աթոռը։ Սրա համար համառ ջանքեր էին թափում Ռուսաստանի հայոց առաջնորդ Եփրեմը և շատ ուրիշներ։ Այսպիսով Դանիէլին հաջողվեց բարձրանալ կաթողիկոսական աթոռը (1807)։ Իր գործն եղավ հիմնել խորհրդակցական մի ժողով, որ պիտի դառնար ապագայի Սինոդը։ Ռուսաց արշավանքի ժամանակ՝ Պարսից կողմից բանտարկվեց, բայց շուտով ազատվեց և քիչ հետո մեռավ՝ 1808 թ.—Ազգապ. 3197, 3261, 3287—3376։

ԴԱՆՈՒՂ, ար. ծագումն անհայտ. հիշված է ուշ ժամանակի անթվ. մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Թաւր. 59 ա։—Սրանից է Դանըղեան ազգանունը (Վաղարշապատ, Նոր-Նախիջևան)։

ԴԱՆՈՒՆ, ար. ծագումն անհայտ. հմմտ. Դանան։

— Դանուն զամապետ սպարակրաց. ժամանակից Մանուէլ սպարապետի պատերազմին ընդդեմ Վարազդատի և սպանեց վիրավոր Գարեգին Ռշտունուն «378 թ».—Բուզ. Ե. լէ։

*ԴԱՆԻՇՄԱՆ, ար. <պրս. دانشمند dānišmand «գիտնական» բառից։

— Դանիշման, հայ իշխան, նախկին ուսուցիչ, որ գնաց Պարսկաստան և մահմեդականություն ընդունելով՝ Երզնկայից մինչև Ալիս, հատկապես Սեբաստիայի և շրջակայքի

վրա ամիրա նշանակվեց Ալփասլանի կողմից՝ Դանիշմանդ տիտղոսով (1071)։ Այս օրվանից է սկսվում Դանիշմանների փառավոր հարստությունը։ Ինքը Դանիշման (Ա) արշավեց Մելիտինեի վրա, ջարդեց խաչակիրների բանակը և գերի բռնեց Անտիոքի Բոյեմոնտ դուքսին և նրա Հռիքարդ զորավարին «1100 թ».—Զամչ. Գ. 24, Ազգապ. 1322։—Մեռավ Դանիշմանը 1104 թ. թողնելով 12 որդի, որոնց երեքը՝ Ամիր Ղազի կոտորեց բոլորին և ինքը մենակ թագավոր նստավ։ 1202 թվին Սեբաստիան մտավ Կեսարիայի սուլթան Ռուքնադդինի իշխանության տակ, որով Դանիշմանների հարստությունը ջնջվեց։ Դանիշմանների մասին ավելի ընդարձակ տես Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 481—502։

ԴԱՊՏԱՑ, իգ. ծագումը ինձ անհայտ. գործածված է ԺԳ դարում։ Գիտենք միայն՝

— Դապտայ խաթուն, որ Սարգսի որդի Ուքան Քարիմադին և Պապքան Վախրադին եղբայրների հարսն է, կին Մերչոյի։ Միասին նվերներ են արել և շենացրել Հոռոմոսը և Կարմիր վանքը՝ 1271 և 1274 թվերին։—Շիրակ 170, 173, Ոստան 1911, էջ 234, Ցովսէփեան, Նիւթեր 13—14։

† ԴԱՍԱՊԵՏ, ար. <հյ. դաս և պետ բառերից, ինչպես ունինք Հայրապետ, Նահապետ, Վարդապետ են անունները։ Գործածված է մեր մեջ ԺԳ և ԺԴ դարերում։ Այնուհետև խափանված։

— 1. Դասապետ, միանալով Քահանայապետի հետ նվերներ են արել Բջնիի (Զորուտ) Ս.Աստուածածին վանքին՝ 1207 թ.—Այրարատ 257, Սմբատեանց, Գեղարքունի 314 (Արզաքան)։

— 2. Դասապետ վարդապետ, իր եղբոր՝ Կարապետի հետ միասին շինեցին Գետկայ վանքի (Գոշավանքի) պարիսպը և զանգակատունը՝ 1291 թ.—Արձ. (Սմբատեանց, Գեղարք. 175), Ազգ. հանդ. X, էջ 35, Բարխուդ. Արցախ 353, Շահխաթ. Բ 368։

— 3. Դասապետ քահանա, մերձավոր Տիրացու կրոնավորի, որ գերի ընկած մի Աւետարան ազատեց 1388 ? թ.—Ձեռ. Վասպ. 202։

— 4. Դասապետ, հայր Տէր Ստեփաննոսի, որ Տիրացու կրոնավորի հետ գրել տվեց մի Ճառընտիր՝ Վարագում, 1399 թ. —Թորոս աղբ. Բ. 429։

— 5. Դասապետ, որդի Սիմէոն քահանայի. հիշված է 1327 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 461)։

† ԴԱՍԻԿ, ար. <հյ. դաս բառից. կարող է լինել նախորդի փաղաքշականը։

— Դասիկ (միայն սեռ. Դասկանն ձևով), սպասավոր Կաթուղիկէին Անւոյ, Նացուալից ստացավ մի Աւետարան, իբրև նվեր Կաթուղիկէին, 1236 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 396։

ԴԱՍԻՈՍ կամ ԴԱՏԻՈՍ, ար. ծագումը անհայտ. գրված է երկու ձևով էլ։

— Դասիոս քահանա. ժամանակակից Տրդատի. գաղտնի կերպով քրիստոնեություն էր քարոզում Ապահունեաց գավառում։ Բնակվում էր Արքենուտի հիվանդանոցում, ուր գտնված 35 անձերին քրիստոնյա դարձրեց։ Լուսաւորչի հրամանով մկրտեց Աթենագորոսին և նրա նահատակությունից հետո՝ թաղեց նրա մարմինը «288 թ»։—Ցայսմ. մայ. 11. Զամչ. Ա. 376. Հայապ. 85. Ազգապ. 65. Ցուցիկք Ա. 224.—տես և Աթենագորոս։

*ԴԱՍՏԱԳՈՒԼ, իգ. < պրս. دستگل dastagul «վարդափունջ» բառից. գործածական է եղել՝ սկսած ԺԶ դարից և մինչև այժմ էլ գործածվում է Ղարաբաղում։ Հնագույն վկայությունները են 1596 թ. (Ձեռ. Վասպ. 243), 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 ա), 1633 թ. (Ձեռ. Վասպ. 884), 1639 թ. (Ջքր. սարկ. Գ. 21 և Այրարատ 173 ա), 1660 թ. (Ձեռ. Վասպ. 553), 1682 թ. (անդ 955)։ Սխալ է գրված Գաստագոզ (ֆրանս. տառադարձությամբ Gastagoz) Rapport Belgique 137։

*ԴԱՏ, ար. < պհլ. dāt «տվեց, տուրք, պարգև» բառից։ Այս բառով կազմվում էին զանազան իրանական անուններ. ինչ. Տրդատ, Միհր-դատ, Վարազ-դատ, Վշնասպ-դատ, Δαταφέρνης, Σπιθριδάτης, պհլ. Dātfarraxv, Dāt-Ohrmazd, պրս. Yazdāndād, բայց հատկապես հմմտ. Δᾶτις՝ Դարեհի զորավարը (Հերոդոտոս, Պլատոն, Պլուտարքոս), Δάτιος (Ստրաբոն IX 1, 22), Δᾶδōι, Δαδώης, որից Դատոյեան՝ հրամանատար պարսիկ (Սեբէոս), Հրաբտին Դատան՝ պարսիկ մարզպան Հայաստանում (Սեբէոս), կա նաև պրս. داد Dād անունը (Շահնամէ)։—Հիւբշ. 36։

— 1. Դատ, Գեղամեան Գառնիկի ցեղից. Վաղարշակը (Ն. Ք. 149—127) նշանակեց նրան արքունի որսերի վերակացու։—Խոր. Բ. է. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 48.—սեռ. Դատայ՝ Խոր. Բ. ժա։

— 2. Դատ, կարապետ արքային Տրդատայ. ուղարկվեց Կեսարիա՝ բերելու համար Լուսաւորչի Արիստակէս և Վրթանէս որդիներին Հայաստան.—Ագաթ. 860, Արաբ. Ագաթ. 74 (գրում է հունաձև Դատիաս և կոչում է «վեզիր արքայի». հուն. Ագաթ. Δατάς.

— 3. Դատ, իշխան Հաշտենից. մին այն վեց նախարար-

ներից, որոնք ընկճեցին Բակուր բդեշխի ապստամբությունը Խոսրով Բ-ի («330—339 թ») դեմ։—Բուզ. Գ. թ (հմմտ. նաև Դադ)։

— Դատ տես Դադ։

ԴԱՏԱԲԷՆ, ար. հավանաբար ծագում է նույն Դատ արմատից, ուստի իրանական փոխառություն է (Հիւբշ. 36)։ Նման է հնչում իրան. Dādhbīn թագավոր, որ հիշված է Բախտիարնամայում և որ Justi 75 ա մեկնում է «օրենքի համեմատ նայող»։ Բայց այս երկուսը չեն կարող նույն լինել, որովհետև bīn < պհլ. vēn-am (ըստ Horn § 260)։ Կա նաև պրս. دادبویه Dādbūyeh անունը, որով կոչվել են գիտուն ոմն՝ Որմիզդ Դ-ի օրով և մի սպարապետ Գիլանի և Մազանդարանի (Justi 75ա)։ Եթե Դատաբէն ձևի մեջ -էն դնենք փաղաքշական մասնիկ, կարելի է կրճատ Դատաբ ձևը միացնել Dādbūyeh անվան, որ նշանակում է «օրինաբույր» (պհլ. bōī «բույր» բառից)։

— Դատաբէն, նահապետ Բզնունեաց. Խոսրով Բ-ը («330—339 թ») ուղարկեց նրան Պարսից դեմ, որոնք արշավել էին Հայաստան. բայց Դատաբէնը դավաճանությամբ միացավ թշնամուն և սկսեց կոտորել հայերին։ Վաչէ սպարապետը վրա հասավ, հաղթեց նրանց և կոտորեց բնաջինջ արեց Բզնունեաց տոհմը։—Բուզ. Գ. ը (3 անգամ).—հյց. զԴատաբէնն՝ Բուզ. Գ. ը.—սեռ. տր. Դատաբենայ, Դատաբենայն, Դատաբայ! Բուզ. Գ. ը.—անշուշտ նույն անձն է Դատաճէ իշխան Բզնունի՝ ժամանակակից Տիրան Ա-ի.—սեռ. Դատաճէի՝ Խոր. Բ. կը։

ԴԱՏԻ, իգ. ծագումն անհայտ. թերևս Դադի վանքի անունով (տես Դադէ). մի անգամ գտնում եմ հիշված 1561 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 46 բ)։

*ԴԱՏԻԱՆ, ար. < պրս. دادیان dādiyān «Պարսից հնագույն թագավորական տոհմի անունն է»։

— Դատիան, որդի Շապանի, եղբայր Եղիա երեցի, որ օրինակեց Աւետարանը՝ Քաջթաղուց Խոզանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սևան. 5 բ։

Դատիոս տես Դաթիոս։

*ԴԱՏՈՅ, ար. < պհլ. dāt, պրս. داد dād «պարգև, նվեր» բառից, որ տես Դատ բառի տակ. հմմտ. հատկապես պրս. Dādōi, Δαδώης, Սեբէոսի մոտ՝ Դատոյեան՝ պարսիկ հրամանատար։

— Դատոյ ի Գարջուղեան իշխան, անդամ Դուինի «554 թվի» ժողովի.—Գիրք թղ. ժէ։

*ԴԱՐԱ, ար. ծանոթ պարսկական Դարեհ անվան հետին ձևն է. հմմտ. հպրս. Dārayavahuš (եբր. Dārəyāveš, ասոր. Daryāvaš, հուն. Δαρεῖος, լտ. Darius), պհլ. Dārayāv, պրս. Dārāv, Dārāb, Dārā, որոնցից վերջինը արդեն տալիս է Դարա.—Հիւբշ. 36։ Բուն իմաստն է «կրող բարության» < իրան. dārayaṭ-wahaw ձևից (Justi 80 ա, Bartholomae 738)։ Շահն. հտ. 5, էջ 47 զանազանում է داراب Dārāb=Դարեհ Ա և دارا Dārā=նրա որդին և հաջորդը՝ Դարեհ Բ։ Իսկ Շահն. հտ. 5, էջ 18 առաջին ձևը մեկնում է պրս. در آب dar āb «ջրի մեջ», որովհետև Դարեհի մայրը՝ Humāi իր երեխային կորցնելու համար գետն էր ձգել՝ ինչպես Մովսեսին (ժողովրդական ստուգաբանություն)։

— Դարա Սիւնի, որդի Բաբիկ Սիւնու, աներորդի և սպարապետ Արշակ Գ-ի։ Վասակ Սիւնի մարզպանի եղբայրն է։ Մեռավ Ներսեհի ճակատամարտում «385 թ»։—Խոր. Գ. խգ, խդ։

*ԴԱՐԵՋԱՆ, գործածական է նաև Վրաց մեջ իբր իգական անուն։ Մեր մեջ իբր արական է գործածված 1609 թ. (Bodleian 109 խոջա Տէրիջան ձևով). իսկ ավելի ուշ իգական է. այսպես՝ 1655 թ. մի արձանագրության մեջ (Այրարատ 340), 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 119), ԺԸ դար (Ձեռ. Թաւր. 18 բ). և անթվական մի հիշատակարանում Ձեռ. Նոր-Բայազ. 31 ա։

† ԴԱՐՄԱՆ, ար. <հյ. դարման «դեղ, ճար, հնար, միջոց» բառից, որ իրանական փոխառություն է։ Սկսել է գործածվել ԺԵ դարից (օրինակները տես վարը), ԺԶ դարից ունինք՝ 1511 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 8 Թարման ձևով), 1542 թ. (Manus. brit. mus. 34 բ), 1544 թ. (Ձեռ. Վասպ. 286), 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 210, սխալ գրված 4 անգամ Դարմաս), 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), իսկ ԺԷ դարից՝ 1605 թ. (Բարխուտ. Աղվանից երկ. 169, Սմբատեանց, Սաղիան 240), 1638 թ. (Ձեռ. Վասպ. 895)։

— 1. Տարման, որդի Դշխունի, որ Ասպաւերուկ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132)։

— 2. Դարման, որդի Նիկողոսի՝ ազգականի Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— 3. Դարման, հանգուցյալ որդի Ղարիպշայի, որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան՝ 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— 4. Դարման, որդի Վարդանի, որ Շատախում գրել տվեց մի Աւետարան՝ 1491 թ.— Ձեռ. Վասպ. 517։

*ԴԱՐՉԻ, ար. վրացական անուն է՝ ღარჩენა დარჩხნა «մնալ» բայից և բուն նշանակում է «Մնացական». հիշված է Դարչի Բեհբուդեան, իշխան Տփղիսում, 1812 թ.—Աղգապ. 3426։

*ԴԱՐՎԻՇ, ար. Հպրս. درویش darvīš «նշ. գայն ոք, որ ոչ է առացեալ իր ինչ յերացն աշխարհիս. 2. մուրացիկ ճգնաւոր»։ Իբրև անձնանուն գործածվում է նաև տաճիկների մոտ. ինչ. Դարվիշ փաշա Օսմանցոց։ Մեր մեջ գործածվում է Դարվիշ, Տարվիշ, Տարվէշ, Տէրվիշ են ձևերով, որից էլ Տէրվիշեան ազգանունը (օր. Հ. Սերովբէ Տէրվիշեան, Մխիթարեան Վիեննայի, նշանավոր լեզվաբան)։ Հնագույն հիշատակությունն է Տարվիշ 1575 թ. (Bodleian 8). այնուհետև գալիս են 1587 թ. (Տաշեան, Ցուց. 319), 1659 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 28 ա), Տէվրիշ 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 218), Դարվիշ 1693 թ. (Թորոս աղբ. Բ. 366), Տէրվիշ 1779 թ. (Ձեռ. Հալէպի, Ա 358)։ Այժմ խափանված է։

*ԴԱՒԹԱԿ, ար. փաղաքշական ձևն է Դաւիթ անվան։

— Դաւթակ քերթող, աղվան էր կամ Աղվանից երկրում բնակվող հայ. գտնվում էր Աղվանից Ջուանշիր թագավորի պալատում, և երբ հասավ թագավորի հանկարծական մահվան լուրը, սկսեց երգել մի Ողբ «ըստ այփափիտաց գլխակարգութեանց»։ Հղկնտ. Լե ավանդում է մեզ այդ Ողբը՝ Ա-ից մինչև Ք, 36 տուն, որ ամբողջությամբ տպված է Շահնազարեան հրատարակության մեջ, թեև Էմինը ունի միայն Ա—Ճ (19 տուն)։ Հայերենի հնագույն քերթողական գրվածքն է, արվեստի կողմից էլ բավական հաջող։ Տալիս ենք Ողբի առաջին չորս տները.

Աստուածային բանին արուեստաւոր հոգի,
Ցօրինեա իմաստս ի տիրական երգմունս,
Ձի ազալի ձայնիւ անդադար ողբասցուք
Ի վերայ դժնդակ կորստեան մերում։

Բեկումն մեծ, որ եղև Արևելից աշխարհիս,
Ի աղաղակ կործանման հնչեաց ընդ երկիր,
Ազգ 'ւ ազինք լուիցեն զբարբառս իմ,
Երկրածինք ամենայն ողբասցեն ընդ իս։

Գլորեցաւ վէմն կենդանի և հզօր,
Եւ պալիսպն ամրութեան խորտակեցաւ,

Աշտարակն բանաւոր տապալեցաւ,
Եւ ցանկն շինութեան խրամատեալ քակեցաւ։

Դարձաւ ի ցաւնութիւն խաղաղութիւն մեր,
Եւ դրունք հինից տեղացին ի մեզ.
Զի մեծասքանչ տէրութիւնն կործանեցաւ,
Հրաշալի պետութեան շիջաւ ճառագայթ։

Ջուանշիրի մահը տեղի ունեցավ 680-ական թվերին, ուստի Ողբի գրությունն էլ այս թվից է։ Միանգամայն պետք է ասել, որ երգված էր հենց սկզբից հայերեն, որովհետև եթե աղվաներեն լիներ, հազիվ թե որևէ մեկը թարգմանելու ժամանակ հայերեն այբուբենական կարգի վերածեր։—Զարբ. Հին դպր. 451։

***ԴԱՒԹԻԿ**, ար. փաղաքշական ձևն է Դաւիթ անվան. տես և Դաւթակ: Գործածված եմ գտնում մի անգամ 1508 թ. (Ջեռ. Վասպ. 632)։

***ԴԱՒԹՈՒԿ**, ար. փաղաքշական ձևն է Դաւիթ անվան. տես և Դաւթակ: Իբրև հատուկ անվան օրինակ հիշում է Սիւն. քեր. 206։

— 1. Դաւթուկ (գրված հուն. Ταυτούκας). բերդատեր իշխան Միջագետքում, իր բերդը հանձնեց Լևոն Զ Իմաստասեր կայսեր՝ 890 թ։—Ավելին տես Բագրատուկ։—Justi 59 բ, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 362, 379։

— 2. Դաւթուկ քորեպիսկոպոս Արծնի. եկեղեցական գանձերի պահապանը կամ փակակալն էր. այդ մեծահարուստ գանձարանը կողոպտեցին Տուղրիլի զորքերը «1048 թ».— Ուռհ. 103.—նույնը Դաւիթ ձևով՝ Սմբ. պատմ. 66։

***ԴԱՒԻԹ**, ար. <եբր. דויד Dāvīd անունից, որ բուն նշանակում է «սիրելի, սիրեցյալ»՝ եբր. dvd, ասուր. dādu, ասոր. dādā «սէր, սիրելի, բարեկամ» արմատից (Gesenius 157)։ Բառիս ծագումը ծանոթ էր նաև հներին. համմ. Տաթև. հրց. 435 «Կոչի Դաւիթ, որ է սիրեցեալ և բաւական ձեռօք»։ (Երկրորդ ստուգաբանությունը սխալ է, ինչպես նաև Գիրք տառք. 369 ա «Ի Դաւթէ, որ թարգմանի ձեռն հզօրի» և Գիրք տառք. 658 ա «Զ Դաւիթ, որ թարգմանի գեղեցիկ տեսլեամբ»)։ Այս անունով նշանավոր էր Դաւիթ մարգարե և բանաստեղծ թագավոր Հրեից Սաղմոսների անմահանուն հեղինակը (Ն.Ք. 1085—1016)։ Տառադարձված է ասոր. Davīd, հուն. Δαβίδ (նաև Δαυίδ, Δαυείδ), լտ. ֆրանս. գերմ. անգլ. David (անգլ. փղքշ. Devy), ռուս. Давид, արաբ. داود Dāvud. հայտնի չէ սակայն թե որտեղից է առաջացել հայերենում

ք վերջածայնը, որ ոչ մի լեզվի մեջ էլ չկա (Հիւբշ. 334)։ Իբրև անձնանուն գործածական է եղել մեր գրականության սկզբից մինչև այժմ։ Իբրև պարզ հատուկ անվան օրինակ հիշում են Խոր. քեր. 178, Համամ. քեր. 266, Թր. քեր. 43, Անան. քեր. 127, 138, 145, Էլ. արիստ. 119, սեռ. Դաւթի՝ Անան. քեր. 127, 145, Դաւթայ՝ Անան. քեր. 127, նաև Դաւթեան՝ Սիւն. քեր. 206։ Արդի բարբառներում գրեթե անփոփոխ պահված է. ինչ. Ղրբ. Տո՛վիթ, Պլ. Թավիթ, Մշ. կոչ. Դա՛վօ։ Հին ժամանակ կային փաղաքշական ձևեր՝ Դաւթակ, Դաւթուկ, ավելի ուշ Դաւթիկ, որոնք այժմ չկան։ Օտար ձևերից հիշենք հատկապես Տայուտ 1517 թ. Ձեռ. Վենետ. Բ. 482, կամ Տաւիտ՝ 1549 թ. (Բարխուտարեանց, Արցախ 406). բայց ավելի գործածական է եղել Դավուդ կամ Դաւութ, որի հնագույն հիշատակությունը գտնում եմ 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), ավելի ուշ՝ 1660 թ. (անդ՝ 554)։ Փաղաքշական Դաւօ ձևն ունին Ձեռ. Վասպ. 490 և 1002, բայց երկուսն էլ անթվական։

— 1. Դաւիթ Սահառունի. հիշված է Թաշամ Ռշտունու և Բարզափրանի հետ, որոնք շինել են Աղթամարը (Ա դար).—Հաւաք. 6 (ի Դաւթա Սախուռնոյ).—կեղծիք։

— 2. Դաւիթ իշխան Բագրատունեաց. ուղեկցեց Ներսէս կաթուղիկոսին, երբ նա գնում էր Կեսարիա օծվելու «353 թ»։—Մեսր. եր. 24։

— 3. Դաւիթ Ա կաթուղիկոս Աղուանից, հաջորդ Զաքարիայի (Դ դար).—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Հայապ. 384. Մխ. այրիվ. 24։

— 4. Դաւիթ երեց. ներկա եղավ Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին «449 թ».—Փարպ. իգ։

— 5. Դաւիթ երեց Մամիկոնեան, որի խնդրանոք գրեց Եղիշէն՝ իր Վարդանանց պատմութիւնը (Ե դար).—Թերևս նույն է նախորդի հետ.—սեռ. Դաւթի՝ Եղիշ. 5։

— 6. Դաւիթ որդի Ղազարի, որ Ակոռիի տանուտերն էր (Ե դար).—Ցայսմ. յնվ. 7. Այրարատ 472։

— 7. Դաւիթ եպիսկոպոս Տմորեաց. ստորագրում է այն թղթին, որ Բաբկէն կաթուղիկոսը («490—516 թ») գրեց Պարսկաստանի Ասորիներին.—բց. ի Դաւթայ՝ Գիրք Թղ. ը։

— 8. Դաւիթ Կամսարական, իշխան. շինել է Գտկոյ վանքը (Զ դարի առաջին կեսում).—Այրարատ 50, Հայապ. 192, Կոդեան, Կմսրկնները 129։

— 9. Դաւիթ՝ հայր Մօրիկ հայազգի կայսեր (582—602)

հունաց։ Այս Դաւթի մասին Սուտ— Շապհ. էջ 3—4 հետեւյալ առակն է պատմում. «Երբ Մօրիկը թագավորեց Պոլսում, մի մարդ ուղարկեց Հայոց աշխարհը, Անի քաղաքը։ Նա պարտիզպան էր։ Համայեցին եկավ գտավ Մօրիկի հօր՝ Դաւիթին։ Կանչեց իր մոտ և ասաց. «Քո որդի Մօրիկը թագավոր է դարձել Հռոմոց երկրում. քեզ իր մոտն է կանչում»։ Մօրիկի հայրը՝ Դաւիթ երբ լսեց, ծիծաղեց ու ասեց. «Չեմ կարող գալ. ավելի լավ եմ համարում իմ այս փոքրիկ պարտեզը, քան Հռոմոց թագավորությունը. որովհետև մի թույլ կտա որ օտար մարդը թագավոր լինի»։ Բերավ՝ նրա առաջ հաց դրեց, իսկ ինքը մտավ պարտեզ և սկսեց մեծամեծ բանջարները արմատից պոկել և մանրները տնկել մեծերի փոխարեն։ Համայեցին տեսավ ու ասեց. «Այդ ինչ ես անում»։ Նա պատասխանեց. «Այսպես պետք է անել»։ Երբ մարդը դարձավ Մօրիկ թագավորի մոտ՝ առանց նրա հորը բերելու և պատմեց թագավորին հոր արածը, Մօրիկն հասկացավ և ասաց. «Այն ինչ որ արել է՝ դա խրատ է ինձ իմ մեծամեծների համար»։ Եվ բռնեց Հունաց երկրի բոլոր մեծամեծներին, ոմանց ծովը գցեց, ոմանց աքսորեց, և փոքրագույն մարդկանց պատրիկության և զորավարության պատիվ տվեց»։

— 10. Դաւիթ Անյաղթ, փիլիսոփա, Հարք գավառի Հերեթ կամ Հերեան (իմա Հերետն) գյուղից. կոչվում է նաև Ներգինացի։ Աշակերտ Սահակի և Մեսրոպի, քեռորդի Մովսես քերթողահոր, իր ուսումն ավարտեց Հունաց մոտ և կայսեր ներկայությամբ վիճելով հույն փիլիսոփաների հետ՝ հաղթեց, որով և ստացավ Անյաղթ տիտղոսը։ Վերադառնալով Հայաստան, սկսեց պարապել փիլիսոփայական երկերով, որոնք ընդունելություն չգտան։ Հայերը անարգեցին Դաւիթին, զարկին, վիրավորեցին, նա գնաց Վրաստան, ուր և մեռավ (ըստ Առաք. լծ. սահմ., որ ունի Դաւիթի կենսագրությունը)։ Գերեզմանը ցույց են տալիս Մուշի Առաքելոց կամ Ղազարու վանքում (Հնոց և Նորոց 13)։ Իր թողած գործերն են՝ Ներբողեան Խաչի (որ գրել է Գիւտ կաթուղիկոսի խնդրանօք), Գովեստ Ներբողեան ի սուրբ կաթողիկէ եկեղեցի, ի սուրբ յարութիւնն և ի սուրբ Գողգոթայ՝ ի սուրբ քաղաքին Երուսաղէմի (Ձեռ. Վենետ. Բ. 335—6), Թարգմանութիւնք գրոց Արիստոտելի և Պորփիւրի, Սահմանք իմաստասիրութեան, Մեկնութիւն Ստորոգութեանց Արիստոտելի, Պերիարմենիաս գրոց, Մեկնութիւն Ներածութեան Պորփիւրի, Առածք հինգ, Գիրք Ճակաց, Ցաղագս բաժանման գոյից, Քերականութիւն։ Ունի նաև

Մեկնութիւն Սաղմոսաց (տպ. Պոլիս 1801), Ոտանաւոր Պատերազմ Հայոց և Մարաց (Այրարատ 557) կամ Պատմութիւն Տիգրանի և Տիգրանուհւոյ՝ ըստ Հայապ. 42, Ցուցակք, Բ 115, նաև Ստ. Մալխասյան, Թրգմ. Խորենացու, ծան. 69։—Սիսական 316 այս Դաւիթը համարում է մլիպասան, տարբեր Անյաղթ փիլիսոփայից։ Տիգրանուհու վեպից մնում է միայն 3 տող, որ ավանդում են հին քերականները։

Եւ արդ ներգործող ի միտսն երևիւր առ խորհուրդս
փողարին՝
Մեծոգւոյ Տիգրանայ՝ գեղանին Տիգրանուհի իւր,
Ներածեալ կողաբաղ, նաև ողջամիտ աշխարհածուհի։

Իր գործերը տպված են Վենետիկ 1833 (ոչ ամբողջ)։ Այս գործերի մի մասը կա թարգմանված վրացերենի (տես Մառ, Հայ-վրաց. յարաբ. էջ 44)։ Իր լեզուն է սաստիկ հունաբան, մեզ համար գրեթե անիմանալի։ Դաւիթը համարվում է հունաբան հայերենի հիմնադիրը։ Իր առասպելական կենսագրությունը, որի վերնագիրն է «Ցաղագս սրբոյ վարդապետացն Հայոց Մովսէսի և Դաւթի», տպված է Հնոց և Նորոց, էջ 39—87։—Կան բազմաթիվ քննություններ Դաւթի մասին. վերջնական եզրակացությունն այն է, որ եղել է Դաւիթ անունով մի հույն փիլիսոփա Զ դարում, Նոր-Պղատոնական դպրոցից, սովորել է Ալեքսանդրիայում. սրան են պատկանում վերի գործերը մեծ մասամբ, որոնք կան նաև հունարեն լեզվով։ Հայերենը հետո է թարգմանված։ Ուրիշ է Դաւիթ Հարքացի, Զ դարի առաջին կեսից, ժամանակակից Պետրոս Սիւնեցուն. գրել է կրոնական և փիլիսոփայական գործեր. մասնակցել է իր ժամանակի աստվածաբանական վեճերին, կուսակից է Ցուլիանոս Ալիկառնացու և հակառակորդ Սևերոսի, միաբնակ, պարագլուխ այն մեծ հունաբան դպրոցի, որ արտադրեց Փիլոնը, Սահմանաց գիրքը ևն։ Հավանաբար գրել է թե հայերեն և թե հունարեն (նրա մասին մի հոդված ունի Գ. Տէր-Մկրտչեան, Արրտ. 1902, սեպտ.-հոկտ., ուր և հավաքել է Դաւթի գործերի ցուցակները։ Այստեղ Դաւթի անունը հիշատակված է՝ էջ 939, 963—6)։ Նույն գրվածքը կա նաև առանձին արտատպությամբ՝ Վաղարշապատ 1903։ Այս Դաւիթը հայ հեղինակ է, որի հետ շփոթել և միացրել են վերև հիշված հույն Դաւթին։—Դաւ. անյ. էջ 99—102. Դաւ. քեր. 96, 105, 110, 113. Ասող. Բ. ա. (էբր աշակերտ Մովսէսի). Կիր. 16, 17. Վրդ. իե, իը. Մագ. Թղ. խա. Մ. մաշտ. 336 ա. Ցայսմ. սեպտ. 17, նոյ. 25,

փեար. 19. Վրդն. աշխ. 513. Խոսր. 122. Պտճռ. բրձր. 29—33. Պտմ. սահ. 14. Լծ. սահմ. 208. Պտմ. լմբ. 232. Ոսկ. գծ. 56. Տաթև. ձմ. լա, ամ. 239, 532, 535, 542, հարց. 632 ? Տաթև. լծ. պորփ. 340, 371, 373. Օրբ. հկճռ. գ. Ցղ. մովս. և Դաւթի, էջ 39—85. Առաք. լծ. սահմ. 151—?, 155, 159, 165—6, 169—172, 186, 189, 197, 200, 212—5, 218—9, 222, 235, 262, 311, 340, 365, 370, 384—5, 489, 525, 543, 545, 595, 639. Մեծոփ. 38. Մեծոփ. յիշ. գ. ZAPh 1, 207. Էֆիմ. 300.—Իբրև օրինակ փիլիսոփայի հիշում է Էլ. արիստ. 88, 89՝ բնագրի Սոկրատ անվան դեմ.—սեռ. Դաւթի՝ Դաւ. անյ. էջ 100, 103, 120, 217, 251, 557, 599. Դաւ. քեր. 79, 83, 100. Դաւ. սղմ. էջ 71. Ցղ. մովս. և Դաւթի, էջ 39, 51, 55, 75. Ճշ. 662. Շնորհ. սահմ. 287. Շնորհ. ստեփ. 295. Աթան. սղմ. 5. Պտճռ. բրձր. 34. Մխ. այրիվ. 34. Երզն. պտճռ. 87, 89. Լծ. սահմ. 206, 286. Օրբ. իա. Ոււռհ. 299. Առաք. լծ. սահմ, 147, 149, 151, 158—9, 169, 173, 197. Ցկ. կր. 9, 36. Տաթև. հարց. 24. Սիմ. ապար. 36. Առաք. պտմ. 305.—Դաւթայ՝ Առաք. լծ. սահմ. 159. Ցկ. կր. 60.—Դաւթեայ փիլիսոփայի՝ Լծ. Նար. ա.—Բց. ի Դաւթէ՝ Դաւ. անյ. էջ 216, 309, 335, 340, 409, 458, 487. Շնորհ. ներբ. խչ. Կիր. 20. Առաք. լծ. սահմ. 159.—(Մանանդեան, Յունաբան դպր. էջ 213 նույն է համարում նաև Համամ. քեր. 270 ի Դաւթէ, որ ուրիշներ Դաւիթ Թագավորն են ընդունում).—ի Դաւթայ՝ Օրբ. հկճռ. գ.—գրծ. Դաւթիւ՝ Շնորհ. վիպ. 931. Առաք. լծ. սահմ. 159.—ած. Դաւթեան՝ Անան. քեր. 129.—Հմմտ. Գրգշ. Քնն. պտմ. Դ. 109.—Զարբ. Հին դպր. 314—324. Հայապ. 194. Մանանդեան՝ Յունաբան դպրոցը, հատկապես՝ էջ 222, Կոնիբիր. Քնն. գրոց Դաւթի Անյաղթի, Վիեննա 1893, որ այն կարծիքն ունի, թե նույն ինքն հույն Դաւիթը հայազգի էր, գրել է նախ հունարեն, և ապա ինքն էլ թարգմանել է հայերեն՝ իր ազգակից աշակերտների համար (էջ 15 շար.)։ Սրա դեմ է խոսում Մանանդեան, Դաւիթ Անյաղթի խնդիրը, Վղրշպտ. 1904։—Դաւիթ Անյաղթի մասին ամենավերջին և ամենաընդարձակ աշխատությունն ունի Վ. Չալոեան, „Философия Давида Непобедимогэ", 300 էջ (անտիպ ձեռագիր)։—Տես և № 78։

-- 11. Դաւիթ վանքերեց Երևանի. մասնակցեց Աբրահամ կաթուղիկոսի գումարած եկեղեցական ժողովին «607 թ».—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ.˙ խ։

— 12. Դաւիթ Ա եպիսկոպոս Միւնեաց «607—634 թ». օծվեց Աբրահամ կաթուղիկոսից «607 թ»՝ իբրև հաջորդ Քրիստա–

փոքր. ստացավ մետրապոլտության աստիճան։—Օրբ. իե, իէ, հա.—բց. ի Դաւթէ՝ Գիրք Թղ. ծե.—ի Դաւթայ՝ Կղկնտ. Բ. խԹ։

— 13. Դաւիթ *Մամիկոնեան*, հայր Մուշեղ զորավարի, որ սպանվեց Արաբներից՝ Տիզբոնի պաշարման ժամանակ «636 Թ».—սեռ. Դաւթի՝ Սեբ. խ։

— 14. Դաւիթ *Մամիկոնեան*, հայր Գրիգոր պատրիկի, որ կնքահայր եղավ Դաւիթ Դունեցի նահատակի՝ նահատակված «701 Թ».—Ցհ. կԹ. ի. Վրդ. լդ. Վկ. դաւ. 87. Տաշեան, Ցուց. 40։

— 15. Դաւիթ *Մամիկոնեան*, հայր Համազասպ պատրիկի՝ հաջորդի Թէոդորոս Ռշտունեոյ և նրա հաջորդ Գրիգոր պատրիկի, որ մեռավ Խազրաց պատերազմում 685 Թ.—սեռ. Դաւթի՝ Սեբ. ծ. Վկ. դաւ. 86։

— 16. Դաւիթ *Սահառունի*. ժամանակից եղավ հունական ապստամբության Հերակլ Ա կայսեր (610—641) դեմ, որի համար Մժէժ Գնունու ձեռքով շղթայի զարնվեց։ Բայց նա շղթաները խորտակելով՝ հայ զորքի գլուխն անցած՝ հաղթեց հույներին, սպանեց Մժէժին և Վարազ-Գնէլին «635 Թ»։ Կայսրը իշխանների խնդրանքով՝ նշանակեց նրան կիւրապաղատ Հայաստանի «635 Թ». բայց 3 տարի հետո վռնդվեց իր զորքից «638 Թ»։ (Ըստ Ասող. և Կիր. մարզպան եղավ Հայաստանի՝ 30 տարի)։ Շինել է Մրէնի տաճարը 613 Թ. (Շիրակ 138, Տեղագիր Հայոց Մեծաց 33, Շողակաթ 173.—այս վերջինը դնում է 630-ական Թվերին)։—Սեբ. լԹ. Ցհ. կԹ. ժԹ. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 78. Մխ. անեց. գ. Վրդ. լգ. Կիր. 30. Օրբ. իէ. Նհպտք. 94. Մխ. այրիվ. 19.—սեռ. Դաւթի՝ Ասող. Բ. բ. Միխ. աս. իԹ (=իը). Վրդ. լե. Կիր. 32.—բց. ի Դաւթայ Սախռունեայ՝ Արծր. Դ. է։—Վրաց աղբ. Ա. 79 կոչում է Դաւիթ Սարոնի։—Շիրակ 142։

— 17. Դաւիթ *վարդապետ Տարոնեցի*, Թարգմանեց Բարսղի ճառերը «ի Դամասկացւոց քաղաքին, հրամանաւ Համազասպայ Մամիկոնէի կիւրապաղատի» (մ. «661 Թ»)։—Ձեռ. Կարին. 77, Ձեռ. Վեննա. Բ. 1262 (ընդ. ամենը 33 ճառ է, որոնց վիճակագրությունը դրված է այստեղ. ճառերից մի քանիսը չկան հունարենում). Տաշեան, Ցուց. 550 ա.—բց. ի Դաւթէ՝ անդ, էջ 231 ա.—Զարբ. Հին դպր. 455։

— 18. Դաւիթ *Հայկազն*, զորավար Կոստաս կայսեր հունաց (641—668) ի Կապադովկիա. պատերազմեց Արաբների դեմ.—Միխ. աս. ժը.—սեռ. Դաւթի՝ Միխ. աս. ժը։

— 19. Դաւիթ *Բագրևանդացի*, փիլիսոփա, Բագրաւան գյու-

ղից. հայ-հոռոմ. Կոնստանս կայսեր հրամանով Հայաստան եկավ՝ Ներսես Գ կաթողիկոսի օրով («641—661 թ») և Դվինում ժողով գումարելով («648 թ») քարոզեց Քաղկեդոնի դավանանքը։ Հեղինակել է 1) Բան հաւատոյ ընդդեմ հերձուածողաց. 2) Քրիստոսի բնության մասին, որ գրել է Անաստաս կաթողիկոսի («661—667 թ») հրամանով. 3) Նույն խնդրի մասին, որ գրել է Աշոտ պատրիկի խնդրանքով (այս բոլորի մասին տես Bodleian 160)։ Իր աշակերտն է Թէոդորոս Դագոնի։—Սեբ. խգ. Ասող. Բ. բ.—Զամչ. Բ. 349. Զարբ. Հին դպր. 454—455. Այրարատ 530։

— 20. Դաւիթ Դունեցի, պարսից արքայական ցեղից. բնիկ Խորասանցի. նախապես կոչվում էր Սուրհան. քրիստոնյա դառնալով՝ Անաստաս կաթողիկոսի («661—667 թ») ձեռքով մկրտվեց և ստացավ Կոտայից Զագ գյուղը։ Իբր 35 տարի հետո նահատակվեց Արաբների ձեռքով Դվինում «ի 676 ամի իշխանութեանն Տաճկաց, արեգի 23 Բշ», (որ ըստ Աղգալ. 777 պետք է հասկանալ «701 թ»), Աբդլլայ ոստիկանի հրամանով։—ՑՀ. կԹ. ի. Կիր. 35. Սամ. անեց. 84. Վկ. դաւ. 89, 93—95. Շար. ղբ. Մխ. անեց. իէ. Ասող. Բ. բ. Վրդ. լզ, լէ. Մ. մաշտ. 311 բ, 312 ա. Ցայսմ. մրտ. 31. Զուղ. 58.—սեռ. Դաւթի՝ Վկ. դաւ. 85, 95. Շար. ղբ. Վրդ. լե. Ճշ. 650. Ցայսմ. մրտ. 31. Վրդ. աշխ. 508.—Ա-գեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 224։

— 21. Դաւիթ Բագրևանդացի, վանահայր և առաջնորդ Ս. Ստեփանոսի վանից. ունի ճառեր. (Է դար).—հիշում է Զամչ. Բ. 348, 351, 584, 609՝ իբրև տարբեր անձ Դաւիթ փիլիսոփա Բագրաւանեցուց։—Հմմտ. № 45, 50, 51։

— 22. Դաւիթ վանահայր Գլակայ վանից, հաջորդ Եպիփանի (Է դար).—Մամիկ. դ.—սեռ. Դաւթի՝ Մամիկ. դ։

— 23. Դաւիթ եպիսկոպոս Մեծկողմանց, ժամանակցեց Զղախի ժառանգների գյուտին (Է դար).—Կղկնտ. Բ. իթ—լա, լե, խզ.—սեռ. Դաւթի՝ Կղկնտ. Բ. իթ, լգ (Էմինի), լէ, խզ (Էմին).—Դաւթայ՝ Կղկնտ. Բ. իթ, լգ (Շահն.), խզ (Շահն.)—բց. ի Դաւթէ՝ Կղկնտ. Բ. լ (Շահն. ի Դաւթայ)։

— 24. Դաւիթ վանական Կաղանկատուաց (706 թ).—Կղկնտ. Գ. ը։

— 25. Դաւիթ աբեղա կամ ճգնավոր, ուսուցիչ Կիրակոս ճգնավորի, որ գտել է Թադէոս առաքյալի և Սանդուխտ կույսի մասունքները՝ 723 թ.—սեռ. Դաւթի՝ Ցայսմ. մայ. 30. Գիւտ նշ. Թադ. 87—88. Զեռ. Վենետ. Բ. 396 (Ե դար!)։

— 26. Դաւիթ եպիսկոպոս Ռշտունեաց, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 27. Դաւիթ վարդապետ Սուփրի, անդամ Մանազկերտի ժողովի, «726 թ».—Ազգապ. 839։

— 28. Դաւիթ իշխան Վայոց ձորի. սրա աղջկա հետ ամուսնացավ Վահան Գողթնացին, որ նահատակվել է Արաբների ձեռքով «737 թ».—Սիսական 92 ա։

— 29. Դաւիթ Ա. Կոտայեցի կամ Արամօնեցի, կաթուղիկոս Հայոց «728—741 թ». հաջորդեց Յովհան Օձնեցուն։ Տեսնելով որ Արաբները շատացել են Դուինում, հայրապետական աթոռը փոխադրեց իր հայրենի Արամօնք գյուղը, ուր շինեց եկեղեցի և բնակության սենյակներ։ Ժամանակակից է Աշոտ պատրիկ Բագրատունուն։ Իրեն հաջորդեց Տրդատ Ա։—Յհ. կթ. իգ. Ասող. Բ. բ. Մխ. անեց. դ. Կիր. 39, 41. Վրդ. լբ. Այրիվ 18 ա. Օրբ. լ, հա. Միխ. աս. իթ (=իբ). Յայսմ. ապր. 17. Սամ. անեց. 87. Եզն. եր. 268. Քհնպ. 271. Յհ. կթ. հյր. 276. Մխ. այրիվ. 21.—սեռ. Դաւթի՝ Յհ. կթ. իգ. Այրիվ. 17 ա.—Ջամչ. Բ. 399—402. Ազգապ. 849—868։

— 30. Դաւիթ Մամիկոնեան, որդի Սմբատի. հակառակելով Աշոտ պատրիկին («715 թ»), Գրիգոր եղբորը հետ միասին՝ Մրուան ոստիկանի ձեռքով աքսորվեցին Արաբիա։ Այստեղից վերադառնալով՝ հարձակվեցին Աշոտի վրա, որի համար Դաւիթը Մրուանի հրամանով բռնվեց և սպանվեց «746 թ».—Ղև. իա, իե. Վրդ. լթ.—սեռ. Դաւթի՝ Ղև. իգ։

— 31. Դաւիթ, իշխանազն հայ, որդի Եղիա քահանայի, հիւպատոս և թագավորական սեղանոյն կենաւ. Կոստանդնուպոլսում էր բնակվում. Ստեփաննոս Սիւնեցու հետ միասին թարգմանեցին Դիոնեսիոսի Աստուածաբանականքը (712 թ), Գիրք Գարապմանց Կիւրղի (715 թ), Մեկնութիւն Ղևտացոց (716 թ), Նեմեսիոսի Յաղագս բնութեան մարդոյ (717 թ), Ղևտիկոն (Թրգմ. 769 թվին՝ ըստ Ջեռ. Վեննա. Բ. 301)։—Տաշեան, Ցուց. 774, Մատենագր. մանր ուս. Ա. 7—22, Զարբ. Հին դպր. 496, Թրգմ. 388, 519, Ալիշան՝ Յուշիկք Ա. 281, Հայկական աշխատ. Ձէթթէրի (Ազգ. Մատ. ԺԷ), էջ 13, Ջեռ. Վեննա. Բ. 301։ Վերջինիս մեջ խոսում է Սարգիսեանը Ստեփաննոս Սիւնեցու նաև այլ թարգմանութեանց մասին և Դաւիթի հայ լինելը կասկածելի գտնելով՝ հույն է համարում։ Սրանով Դաւթի օգնությունը միայն

հունարենի համար է լինում և հայերենը ամբողջովին պատկանում է Ստեփաննոս Սիւնեցուն։

-- 32. Դաւիթ Բ. կաթուղիկոս Աղուանից (763—767). Ամարասի եպիսկոպոսն էր. հաջորդեց Ցովսէփին. սպանվեց թունավորվելով.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այբեն. 24. Հայապ. 384։

— 33. Դաւիթ Հոռոմայեցի, նշանավոր գիտուն վարդապետ, հիշված է 775 թ.—Կիր. 40. Մխ. այբեն. 67. Սամ. անեց. 89. (Չամչ. Բ. 414 կոչում է Հոռոմայրեցի)։

— 34. Դաւիթ Գ կաթուղիկոս Աղուանից (767—776). Մեծկուենից եպիսկոպոսն էր. հաջորդեց Դաւիթ Բ-ին.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Հայապ. 384, Մխ. այբեն. 24։

— 35. Դաւիթ Մամիկոնեան. երբ Համազասպ և Սահակ Արծրունիները կանչվեցին Արաբաց Խազմ ոստիկանից, սրան հանձնըվեց Վասպուրականի իշխանությունը։ Սպանեց ուրացյալ Մեհրուժան իշխանին («789 թ») ի վրեժ Շապուհ և Վարդ Մամիկոնեան եղբայրների սպանման՝ Մեհրուժանի ձեռքով։—Ցայսմ. ապր. 8, Վկ. հմզ. 68.—սեռ. Դաւթի՝ Վկ. հմզ. 65։

— 36. Դաւիթ Բ Կակաղեցի, կաթուղիկոս Հայոց «806—833 թ». Մազազ գավառի Կակաղ գյուղից էր. հաջորդեց Ցովսէփ Կարբեցին. իր ժամանակ ծագեց Սևադա պարսիկ իշխանի և Բագրատունիների ապստամբությունը Արաբների դեմ. Հօլ ոստիկանը ուղարկեց Դաւիթին՝ հանդստացնելու համար նրանց. բայց անհաջող։ Իր հաջորդն է Ցովհաննէս Ովայեցին։—Ցհ. կթ. իդ, իե. Ասող. Բ. բ. Կիր. 43. Վրդ. խգ. Այբեն. 22 ա. Մխ. այբեն. 21. Սամ. անեց. 91. Քհնպ. 272. Ցհ. կթ. հյր. 276. Մխ. անեց, դ. Օրբ. լգ, հա. Միխ. առ. իթ. (=իը).—սեռ. Դաւթի՝ Օրբ. լգ. Այբեն. 19 ա, 20 ա. Մխ. այբեն. 69։—Չամչ. Բ. 428—441. Ադգապ. 919—926։

— 37. Դաւիթ Բագրատունի, որդի Բագարատ պատրիկի և հայր Վրաց Ատրներսեհ թագավորի. բռնվեց Բուղայից և գերի տարվեց Բաղդատ «852 թ».—Ցհ. կթ. իե. Օրբ. լգ. Վրդ. խգ։

— 38. Դաւիթ Գնունի. իր եղբոր՝ Գուրգէնի հետ հարձակվեցին Բուղայի վրա, շատ մարդ կոտորեցին, շատ գերիներ ազատեցին, բայց իրենք էլ բռնվեցին ու նահատակվեցին։—Ցայսմ. մայ. 27.—սեռ. Դաւթի՝ Ցայսմ. մայ. 27։ (Շփոթված է Դաւթի և Գուրգէնի հետ, որոնք նահատակվեցին Ցուսուփի ձեռքով։ Այսպես է համարում նաև Չամչ. Բ. 1035)։

— 39. Դաւիթ Դ կաթուղիկոս Աղուանից (822—850). կապաղակի եպիսկոպոսն էր. հաջորդեց Մովսէսին.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 385.—սեռ. Դաւթայ՝ Կղկնտ. Գ. իդ. (չունի հրատ. էմինի).—Դաւթի՝ Կիր. ը։

— 40. Դաւիթ սեպուհ Անձևացի. մասնակցեց Մուշէի պատերազմին, ինչպես նաև Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Բ. գ. Գ. դ։

— 41. Դաւիթ գունդսալար, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ», ինչպես նաև Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Բ. գ. Գ. դ։

— 42. Դաւիթ որդի Ատրներսեհի, թոռան Թոռ Աշոտ կիւրապաղատի Վրաց (Թ դար).—Վրդ. խդ։

— 43. Դաւիթ որդի Աշոտ Մսակերի («մ. 824 թ»). խնամացավ Մամիկոնեանց և եղավ իշխան Տարօնի Օձ բերդի. եղբայր Սահակի, Մուշեղի և Բագարատի (Թ դար).—Վրդ. խբ.—սեռ. Դաւթի՝ Վրդ. խբ. Ջամչ. Բ. 429։

— 44. Դաւիթ Բ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Գէորգի. գահակալեց «840—857 թ». Սիւնեաց Փիլիպպոս նահապետից գնեց Տաթևի հողերը.—Օրբ. լդ, լը, ծթ, հա.—սեռ. Դաւթի՝ Օրբ. լը, ծթ, հ.—բց. ի Դաւթայ Օրբ. լզ, ի Դաւթէ՝ Օրբ. խ։

— 45. Դաւիթ վանահայր Բագրևանդի Ս. Ստեփանոս վանուց 850 թ.—Տաթև 1927, 188։—Նոյն չէ՞ № 50։

— 46. Դաւիթ եպիսկոպոս Հեր գավառի. պատեց սպանյալ Գրիգոր—Դերենիկի («մ. 886 թ») դին.—սեռ. Դաւթի՝ Արծր. Գ. ի։

— 47. Դաւիթ Բագրատունի, կիւրապաղատ Տարօնի. հաջորդեց եղբորը՝ Աշոտին. ամուսնացած էր Գրիգոր — Դերենիկի Մարիամ քրոջ հետ. մեռավ Սմբատ Ա-ի օրով և իրեն հաջորդեց եղբորորդին Գուրգէն, որ սպանվեց Ահմադ ոստիկանի պատերազմում «894 կամ 895 թ».—Յհ. կթ. լդ. Արծր. Գ. ի.—սեռ. Դաւթայ՝ Արծր. Գ. իգ.—Դաւթի՝ Յհ. կթ. լդ։

— 48. Դաւիթ որդի Բագարատի՝ որդւոյ Աշոտ կիւրապաղատի Վրաց. քեռորդի Աշոտ Ա-ի (մ. «890 թ»), որ կարգեց նրան իշխան Վրաց։ Սպանվեց իր հորեղբայր Գորամից (Թ դար).—Վրդ. խդ.—Մարքվարթ, Բագր. 141։

— 49. Դաւիթ վանահայր, ժամանակակից Շապուհ Բագրատունու (Թ դար). գրել է Յովհան Մայրավանեցու մասին (Ջամչ. Բ. 331).—Թվի թե նույն է՝

— 50. Դաւիթ, առաջնորդ վանուց Ս. Ստեփանոսի ի Բագ-

բեանդ. սատացավ Շապուհ Բագրատունու Պատմությունը և նրա վրա ավելացրեց ճառեր (Թ դար).—սեռ. Դաւքի՝ Շապհ. 248.—Զարբ. Հին դպր. 506, 531։ Հմմտ. № 45։

— 51. Դաւիթ Բագրատունի, որդի Աշոտ Ա-ի և եղբայր Սմբատ Ա Թագավորի և Շապուհ սպարապետի։ Մեռավ Շապուհի մահից քիչ հետո, Սմբատի Թագավորության ժամանակ. ուրեմն 903—914 Թվերի միջև։ Այս Դաւթին է ընծայել Շապուհ Բագրատունին իր Պատմությունը.—Յհ. կթ. լթ. Արծր. Դ. բ.—սեռ. Դաւքի՝ Յհ. կթ. լթ. Շապհ. 248.—Զարբ. Հին դպր. 506; Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 182։

— 52. Դաւիթ եպիսկոպոս Աղթամարի, Արագած գյուղից, ազգական Մաշտոց կաթուղիկոսի. հիշված է 923 թ.—Այրարատ 132։

— 53. Դաւիթ կրոնավոր, եղբայր Սարգիս և Մովսէս քահանաների. Բիւրական ամրոցի առման ժամանակ նահատակվեցին Նսր ոստիկանից «926 թ».—Յհ. կթ. կզ։

— 54. Դաւիթ Գնունի, իր եղբոր՝ Գուրգէնի հետ նահատակվեց Դուինում, հավատքի համար, Յուսուփ ոստիկանից՝ Աշոտ Բ-ի ժամանակ «915—929 թ».—Յհ. կթ. ծա. Ասող. Գ. ե. Վրդ. խղ. Ցայսմ. ապր. 16. Մխ. այրիվ. 71։

— 55. Դաւիթ Ե կաթուղիկոս Աղուանից՝ 922—928 թ. առաջնորդն էր Փառիսոսի վանից. հաջորդեց Սիմէոնի.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Օրբ. ծա. Հայապ. 385. Մխ. այրիվ. 24։

— 56. Դաւիթ որդի Սահակ-Սևադայի, որ էր անեբ Աշոտ Բ (մ. 929) Թագավորի.—Կղկնտ. Գ. իգ։

— 57. Դաւիթ Զ կաթուղիկոս Աղուանից՝ «962—968 թ». նախապես Խոտակերաց վանքում կրոնավոր էր. ապա եղավ Կապաղակի եպիսկոպոս։ Երբ Աղուանից Գագիկ կաթուղիկոսը բաժանվեց հայ եկեղեցուց, Անանիա կաթուղիկոսը գահընկեց արեց նրան և տեղը դրավ Դաւիթին։ Այսպեսով Աղուանից հերձյալ աթոռը նորից միացավ։—Կղկնտ. Գ. իդ. Օրբ. ծա. Հայապ. 385. Մխ. այրիվ. 24։

— 58. Դաւիթ քահանա, կազմեց մի նոր հաւաքածու Աթանասի ընդդեմ Արիանոսաց և հրէից, և Անդրէասի վարդապետութիւն և այլ նման գործերից, և արտագրել տվեց իր որդի Ղուկասին՝ 971 թ.—Ձեռ. Վեննտ. Բ. 292 և Տողակաթ 189, Արրտ. 1902, 963, Աթան. յոչ. էջ Թ. Շիր. տեղ. յոչ. XIV. Ցովսէփեան, Խաղբկ. 110 (էջմ. Գև. № 102)։

— 59. Դաւիթ Է կաթողիկոս Աղուանից՝ 968—974 թ. ձեռնադրվեց Անանիա կաթողիկոսից՝ իբրև հաջորդ Դաւիթ Զ-ի՝ ըստ Կղկնտ. Գ. իդ և Կիր. ը: Բայց ըստ որում Անանիա Մոկացին մեռավ «968 թվին» և Կիրակոս պատմիչը Դաւիթ Զ և Է իբր մի անձ գիտէ, իսկ Մխ. այբխ. 24 միայն մի Դաւիթ գիտէ Գագիկ և Պետրոս կաթողիկոսների միջև, ուստի հավանաբար Կաղանկայտուացու մեջ ավելորդ կրկնություն է տեղի ունեցած:

— 60. Դաւիթ Մաշկոտն, վանական, «աղքատակերպ և գըծծասէր գիտնականն» (Ժ դար).—Ասող. Գ. է:

— 61. Դաւիթ եպիսկոպոս Մոկաց, «հրաշագործ». Ձեռնադրվեց Անանիա կաթողիկոս Մոկացուց. հիմնեց Ապարանից վանքը, մեռել է 925 թ. (սրա եղբոր Թոռը, հունաց Վասիլ Բ կայսրից ստացավ Ապարանից խաչը «983 թվին» և հաստատեց նույն Ապարանից վանքում).—Գր. Նար. մատ. 375. Հաւաք. 36, 37. Սիմ. ապար. 136, 140.—սեռ. Դաւթի՝ Գր. Նար. մատ. 377, 380. Սիմ. ապար. 140.—Դաւիթի՝ Հաւաք. 36:

— 62. Դավիթ որդի Վարդի, մի այգի է նվիրել Մրէնի կաթուղիկէին, որ և Սոփիա թագուհի Հայոց և Վրաց, դուստր Աշոտ Շահանշահի հաստատում է իր սեփական արձանագրությամբ՝ 992 թ.—Շիրակ 138:

— 63. Դաւիթ, եղբայր Սամուէլ Դերջանցու, որ Բուլգարիայի թագավոր եղավ (տես Սամուէլ).—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 277:

— 64. Դաւիթ վանահայր, փոքր մատենագիր. ունի Պահոց վրա մի գրվածք՝ այս վերնագրով. «Հարցմունք երկուց փիլիսոփայից ընդ միմեանս» (Ժ դար).—Զարբ. Հին դպր. 550:

— 65. Դաւիթ կիւրապաղատ Տայոց. գնաց օգնական Մուշեղի՝ ընդդեմ Սմբատ Բ-ի, բայց շուտով հաշտվեցին: Հունաց կայսեր խնդրանքով զորք ուղարկեց Վարդ Սիկլառոսի դեմ և հաղթեց: Առավ Մանազկերտ քաղաքը Արաբներից և տաճիկներին դուրս քշելով՝ լցրեց հայ ու վրացի բնակիչներով: Պաշարեց Խլաթը «997—8 թ», բայց հաղթվեց: «998 թվին» մեծ հաղթություն տարավ Ատրպատականի Մամլան ամիրայի դեմ: Նշանավոր էր իր բարությամբ: Մեռավ «1000 թվին» և որովհետև ժառանգ չուներ, Տայոց տերությունը թողեց հունաց կայսեր: Թերևս սա է Դաւիթ մագիստրոս հունաց (Կղկնտ. Գ. իգ), որ թագ ուղարկեց Փառիսոսի Սեննեքերիմ թագավորին:—Ասող. Գ. ժա, ժե, իը, լը, խ, խա. Անանուն ժմ. 17. Վրդն. ծբ. Ուռհ. 35, 38. Պամ. վր. ժէ:

Սմբ. պատմ. 40, 41. Մխ. այրիվ. 72. Սամ. անեց. 104.—սեռ. Դաւթի՝ Ասող. Գ. ժա, ժե, իը, լը, լթ, խա, խգ. Լաստ. ա, գ. Ուռհ. 35—38, 57, 64, 216. Սմբ. պատմ. 40, 41, 52.—Դաւթայ՝ Ուռհ. 37։—Ջարբ. Թրգմ. 454. Այրարատ 497. Վրաց աղբ. Ա. 201, 203, 205, 210, 211, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 248, 302։

— 66. Դաւիթ, ազգական Մակար Հայկազնի. միասին ուխտի գնացին Երուսաղէմ՝ 1000 Թ.—Ջամչ. Բ. 859։

— 67. Դաւիթ, երկրորդ անուն Սենեքերիմ Արծրունի Թագավորի Վասպուրականի (տես անդ)։

— 68. Դաւիթ, որդի Սենեքերիմ Արծրունի Թագավորի Վասպուրականի. գնաց Պոլիս՝ Վասիլ կայսեր մոտ, փոխանակելու համար Վասպուրականը Սեբաստիայի հետ։ Հորը հետ գաղթեց Սեբաստիա (1021 Թ.)։ Երբ Նիկեփորոս Ծռվիզը ապստամբելով Վասիլի դեմ՝ իրեն կայսր հրատարակեց, Դաւիթը գնաց նրա մոտ ծառայության և մի օր էլ գլուխը կտրելով՝ Վասիլին բերեց։ Սրա վրա Վասիլը պարգևեց նրան Կեսարիա, Ծամնդաւ և Խաւարտանէք քաղաքները։ Հոր մահից հետո ժառանգեց իշխանությունը «1025 Թ»։ Այս Դաւթի աղջկան կին առավ Գագիկ Բ Բագրատունին և որովհետև Դաւիթը անորդի մեռավ («1035 Թ»), ուստի Գագիկը տիրեց նրա ժառանգության։—Լաստ. ժ. Վրդ. ծա. Անանուն ժմ. 16. Սամ. անեց. 106. Ուռհ. 47—49, 51, 55, 65. Ցայսմ. յունիս 1. Սմբ. պատմ. 45, 46, 48—50, 52. Առաք. պատմ. 479. Տաշեան, Ցուց. էջ 100.—սեռ. Դաւթի՝ Լաստ. ժ. Ուռհ. 47—49, 51. Ցայսմ. յունիս 1. Սմբ. պատմ. 46, 48.— Ջարբ. Հին դպր. 384, Թորոս աղբ. Ա. 234։

— 69. Դաւիթ Դունեցի, որին ուզում էին Հայերը հանձնել Անին, երբ Գագիկ Բ արգելվեց Պոլսում.— Լաստ. ժ.—սեռ. Դաւթի՝ Լաստ. ժ.— հիշվում է իբրև հաջորդ Գագիկի՝ Շնորհալու Վիպասանութեան մեջ. տես Տաշեան, Ցուց. 482։

— 70. Դաւիթ Ա. Անհողին, Թագավոր Կիւրիկեան. որդի և հաջորդ Գուրգէնի (Կորիկէ Ա), Թոռն Աշոտ Գ Ողորմածի և եղբորորդի Գագիկ Ա Թագավորի. գահակալել է 989—1018 ? իրեն օգնական ունենալով եղբորը՝ Սմբատին։ Ամուսնացավ Կախեթի Կիւրիկէ Գ Թագավորի (1010—1029) դուստր Զորակերցելի հետ։ Ինքը քաջ մարդ էր։ գրավեց Տաշրաց ու Վրաց դաշտի կողմերը, նստավ Շամշուլդէում, տիրեց Դմանեաց քաղաքին ու Տփղիսին, հաղթեց Գանձակի Փադլուն ամիրային և Դեմետր մարզպանին՝

խլելով սրանից Գագ բերդը։ Շուտով ընդոստանալով իր հորեղբայր Գագիկ Ա-ի դեմ, տեղի տվեց, որ Գագիկն էլ գնա և ավերի նրա երկիրը։ Բայց շուտով հաշտվեցին։ Շինել է Լոռին և ուրիշ 12 բերդ։ 1041? թվին Աղուանից Ապուսուար ամիրան Տուղրիլի հետ գաղտնի դաշինք կնքած՝ 150,000 զորքով հարձակվեց Դավթի վրա և երկրի մեծ մասը գրավեց։ Մի տարի հետո, երբ ուզում էր ուղղակի Դավթի վրա գնալ, Դավիթ դիմեց Անիի Յովհաննէս—Սմբատ, ինչպես և Ափխազների ու Կապանի թագավորներին, սպառնալով որ եթե իրեն օգնության չգան, ինքը կմիանա Ապուսուարի հետ և այդ բոլոր երկիրները ավերակ կդարձնի։ Այս սպառնալիքից վախեցած՝ հայերը 2000, ափխազները 4000 և Կապանը 2000 զինվոր օգնության ուղարկեցին, որոնց վրա ավելացնելով Դավիթը իր 10,000 զորքը, ունեցավ 18,000-անոց մի բանակ։ Բայց ինչ կարող էր անել այսքան սակավ մի բանակ Ապուսուարի 150,000 զորքի դեմ։ Ուստի Դավիթ պատգամ ուղարկեց Աղուանից Յովսէփ կաթուղիկոսին և շրջակա բոլոր վանքերին և խաչակրություն քարոզեց։ «Եթէ այր իցէ և եթէ կին, որ ցանկացող է մարտիրոսական մահուն, ահա հասեալ եղև յայսմ ամի ի վերայ մեր, ում պիտոյ է Քրիստոս, վաղվաղակի առ մեզ հասցէ»։ Գունդագունդ գրոհ տվին ամեն կողմից. հասավ Յովսէփ կաթուղիկոսը 200 եպիսկոպոսների գլուխն անցած, հասան քահանաներ ու սարկավագներ խոշոր բազմությամբ, և բոլորը դիմեցին թշնամու դեմ։ Ապուսուար լսեց ու տեսավ հայ բանակի ոգևորությունը, բայց արհամարհեց ու առաջ անցավ։ Դավիթ 20,000 քաջերով հարձակվեց թշնամի բանակի վրա, մինչ եկեղեցական դասը «Արի, Տէր, օգնեա մեզ» աղաղակներով՝ հարձակվողների եռանդն էր բորբոքում։ Դավիթը փշրեց թշնամու կենտրոնը, երեք օրվա մեջ ամբողջ երկրին տեր դարձավ և հինգ օր ամբողջ ահագին կոտորածով փախստական հալածեց թշնամուն։ Յովհաննէս-Սմբատի մահից հետո, երբ Հայաստանը անտեր մնաց, Դավիթ իրեն ամբողջ Հայաստանի թագավոր հայտարարեց և արշավեց Անի, բայց Վահրամ Պահլավունին դուրս վանեց նրան «1042 թ»։ Իսկ երբ Գագիկ Բ-ին բանտարկեցին Հույները Պոլսում, Անիում կազմվեց մի կուսակցություն, որի նպատակն էր Անին հանձնել Դավիթին, որովհետև Դավիթի քույրը Գագիկի կինն էր։ Այս առթիվ շատ արյուն թափվեց, որի համար Ուռհայեցին դառնացած՝ ասում է. «Զոր հարկ եղև մեզ զանուն նորա փոխել և ասել թէ «Դա վիհդ. վասն զի ի վիհն տառապանաց էած զազգս քրիստոնէից»։ Դավիթ

մեռավ շուրջ 1048 թ. և թաղվեց Սանահնում։—Ասող. Գ. լ, խե. Վրդ. կա. Ուռհ. 80—82, 231. Մխ. այրիվ. 75. Սմբ. պատմ. 54, 55, 57.—սեռ. Դաւթի՝ Ասող. Գ. խե. Կիր. 56. Վրդ. կա. Ուռհ. 80, 84, 88, 145, 221. Մխ. այրիվ. 75. Սմբ. պատմ. 54։—Վրաց աղբ. Ա. 205, Մովսէսեան, Լոռիի Կիւր. թագ. պատմ. էջ 38—48։— Այս Դաւիթը Վրաց աղբ. Ա. 205—6 հիշված է իբրև հայր Կախեթի Գագիկ թագավորի, որ տես վերը՝ Գագիկ № 29։

— 71. Դաւիթ Հայկազն, ծնվել է Հայաստանում, Գր. Նարեկացու ժամանակ. ազնվական և հարուստ ընտանիքի զավակ էր։ Երբ չափահաս դարձավ, իր ամբողջ հարստությունը աղքատներին բաժանեց և կամավոր աղքատ դարձած՝ ուխտավորի շոր հագնելով, ոտքով ուխտի գնաց Երուսաղէմ, ապա Հռոմ, և երբ այստեղից էլ գնում էր Սպանիա՝ Կոմպոստելա քաղաքի Ս. Յակոբի գերեզմանը, ճանապարհին հիվանդացավ և ընկավ Լուկկա քաղաքի անկելանոցը։ Ata անունով մի հարուստ տիկին տարավ նրան իր տունը, պահեց ու խնամեց, բայց Դաւիթը՝ 3 օր առաջ գուշակելով իր մահը՝ մեռավ 1050 թ. հունիսի 3-ին։ Տիկինը մեծ պատվով թաղեց նրան հասարակաց գերեզմանատնում։ Այստեղից սկսվում են առասպելները։ Տեռատես մի կին պատահմամբ ընկավ նրա գերեզմանի վրա և բուժվեց։ Գերեզմանից հանկարծ մի որթ բուսավ, որի խաղողից ուտողները իրենց հիվանդություններից բուժվեցին։ Գերեզմանից հրեշտակների ձայներ լսվեցին և հրաշքներ տեղի ունեցան։ Սրա վրա քաղաքի Անսելմոս եպիսկոպոսը, որ ապա եղավ Հռոմի պապ՝ Ալեքսանդր Բ անունով (1061—1072), հանեց նրա մարմինը և փոխադրեց եկեղեցին, կարգելով նրան սրբերի դասը։ Իտալերեն կոչվում է San Davino armeno. Մարմինը մնում է մինչև այժմ, իր հետ տարած գավազանով ու գլխարկով միասին, որոնք հետաքրքիր է թե ինչ հնագիտական արժեք են ներկայացնում։ Ամեն տարի, հունիսի 3-ին կատարվում է նրա տոնը՝ մեծ հանդեսով։—Լուկկա քաղաքի պաշտպան սուրբն է։—Փափազեանց, Պատմ. եկեղ. 428—9, Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռնոյի, էջ 237—9. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 125. Ազգապ. 1188։

— 72. Դաւիթ, որդի Հաբէլի, եղբայր Հարպիկի՝ տեառն Արկնոյ. գերի ընկավ և աքսորվեց Պոլիս՝ 1051 թ.—Ուռհ. 110, 112։

— 73. Դաւիթ Խաղբկայ, «ոսկեզեղն զուգեաց» և Թերևս

Ծաղկեց այն աւետարանը, որ գրեց Յովհաննէս երէցը Սանդղկայ վանքում, 1053 թ.—Շողակաթ 192։

— 74. Դաւիթ, սպասաւորում էր Սանդղկայ վանքում, 1053 թ.—Rapport Arm. 40.

— 75. Դաւիթ, մի խաչքար է կանգնեցրել Խաչենի Խնձիրըստան գիւղի գերեզմանատան մէջ, 1056 թ.—Բարխուտ. Արցախ 161։

— 76. Դաւիթ, կրտսեր որդի Գագիկ Բ-ի. ամուսնացավ Աբլղարիբի (մ. 1080 թ) աղջկա հետ. սպանվեց թունավորմամբ իր աներոջ ձեռքով.—Չամչ. Բ. 1005. Ազգապ. 1299, 1301։

— 77. Դաւիթ վարդապետ Աղուանից կամ Գանձակեցի, որդի Ալաւկայ. Գանձակեցի Արքայութիւն նորընծա քահանայի խընդրանոք գրեց «Կանոնական օրինադրութիւն», 98 կանոններից բաղկացած մի գրվածք, որի մեջ բազմաթիվ նոր և ընդարձակ տեղեկություններ է տալիս հայ ժողովրդի մեջ շրջող տեսակ տեսակ հմայութեանց և նախապաշարմանց մասին, որոնց ծագումը դնում է Մանիքեցիներից։ ԺԲ դարի ազգագրական նյութերի մի շատ կարևոր ժողովածու է։ Այս գրքից $2^1/_2$ էջ արտատպում է Սարգիսեան, Քննադ. Յ. Մանդակունւոյ, էջ 197—200։ Նույն հարցումները ունի նաև Ձեռ. Վենետ. Բ. 620—621 եղծված ձևով. «Զոր հարցեալ է համակ քահանայ, որոյ անունն արդարութիւն կոչի, զԴաւիթ ամն քահանայ գիտնականն»։ Սարգիսեան համոկը կարդում է Հմայեակ, իսկ արդարությունը թողնում է հասարակ անուն։ Մինչդեռ Տաշեանի Ցուցակում, էջ 621 կարդում ենք «հանճրակ քահանայ, որոյ անուն Արքայութիւն կոչի, զԴաւիթ ամն...»։ Միանգամայն Սարգիսեան ղրանք գտնում է «յոյժ ընտիր և հնաւանդ», իսկ Տաշեան, Ցուց. 656 «խենթական բաներ»։ Կանոնների մի մասն է «Վասն ազգի ազգի հմայութեանց» գրվածքը, որից մի հատված տես Ալիշան, Հին հաւ. 369 և 406։—Միռել է «1130 թ» ըստ Կիր. 66 (թվի թե նույնն է դնում նաև Օրբ. ժմ. 17), 1131 թ. ըստ Սամ. անեց։ Այս խախուտ թվականները ճըշտելու համար մի քննություն ունի Կոստանեան, Ազգագր. հանդ. XIV 106, ուր Յովհ. Սարկաւագի մահվան թվի վրա հիմնված՝ մահը դնում է 1140 թ։ Հաստատում եմ նաև ես այս թվականը, տեսնելով որ Կիր. ը (տպ. Վենետ. էջ 101) 1139 թվին դեռ կենդանի է հիշում Դաւիթին և գործակից Գագիկ-Գրիգորիս կաթուղիկոսի ընտրության։—Կիր. 66 և ը. Վրդ. հ. Սամ. անեց. 130. Մխ. այրիվ. 77. Տաշեան, Ցուց. 656 և 751. Զարբ. Հին դպր. 662.

Հայապ. 385։—Այս հեղինակի մասին լավագույն ուսումնասիրությունն ունի Կոստանեան, Ազգագր. հանդ. XIV 105—132, XV 63—67, որ հիմնվելով Էջմիածնի № 739 ընտրելագույն ձեռագրի վրա, թե տալիս է կանոններից ընդարձակ մեջբերումներ և թե նրանց քննությունը։ Հաստատում է միանգամայն, որ Մխիթար Գոշը օգտվել է իր Դատաստանագրքում՝ Դաւթի կանոններից։

— 78. **Դաւիթ** անյաղթ փիլիսոփայ. այս անունով մի արձանագրություն կա Մշու Առաքելոց վանքի պարսպից դուրս մի խաչաթոռի վրա՝ ըստ Սարգիսեան, Տեղագր. 232. «Ի թվ ՇՂԳ (=1144) կանգնեցաւ խաչս ի բարեխաւսութիւն տն Դաւթի անյաղթ փիլիսոփայի յիշեցէք ի Քս աղաչեմ զմեղուցեալ Գէորգ Ծոնակս յիշե»։ Եթե կեղծիք է այս խաչքարը, ինչ նպատակով է չգիտեմ։

— 79. **Դաւիթ** Բ Թագավոր Կիւրիկեանց, որդի Կիւրիկէ Բ-ի և եղբայր Աբասի. Վրաց Թագավորի ձեռքով վտարվելով Լոռիից, երկու եղբայր ձեռք բերին Մածնաբերդը և Տաւուշը։ Դաւիթը նստավ Մածնաբերդում, իսկ Աբասը՝ Տաւուշում։ Այս պարսիկները Տաւուշն էլ գրավեցին և երկու եղբայր նստան Մածնաբերդում։ Դաւիթը մեռավ 1146 թ.—Կիր. 72. Վրդ. խը, կա.—սեռ. Դաւթի՝ Կիր. 72. Ազգապ. 1363. Հայապ. 385, 386, 392. Մովսէսեան՝ Լոռիի Կիւր. թգ. 58—62։

— 80. **Դաւիթ**, վանահայր Մաշկևոր վանից, եղբայր Գրիգոր վարդապետ Մաշկևորցու, որ հիմնադիրն էր նույն վանքի. եղբորը մահից հետո (1114—1149 ?) հավանաբար՝ նույն վանքի վանահայրն էր կարգվել։ Գրել տվեց մի Ճառընտիր՝ 1116 թ։—Ջեռ. Վենետ. Բ. 155։

— 81. **Դաւիթ** Սեբաստացի, գերի ընկավ Տաճկաց ձեռքը և մահմեդական դարձավ, իր Արև որդու հետ. իսկ մյուս որդիները՝ Գոհարինէ են նահատակվեցին՝ 1155 թ.—Յայսմ. յուլ. 28=Նոր վկ. 12, 22.—սեռ. Դաւթի՝ անդ։

— 82. **Դաւիթ** Ա կաթողիկոս Աղթամարի «1113—1165 ? թ»։ որդին էր Ամիւկի Աբդլմսեհ պրոտոկիւրապաղատի, որ Խեղենիկի թոռ Թադէոս իշխանի թոռն էր և Թոռնիկ Բ-ի որդին։ Նախապես եպիսկոպոս Աղթամարի (Արծր. Դ. ժբ)։ Երբ Գրիգորիս Գ (փոքր Վկայասէր) Պահլաւունին կաթողիկոս օծվեց Կիլիկիայում, 15 տարեկան հասակում, այս Դաւիթը՝ որ այն ժամանակ եպիսկոպոս էր Աղթամարում, պատճառ բերելով նրա մանկությունը՝ ապստամբեց և իրեն անկախ կաթողիկոս հայտարարեց «1113

թվին։ Այսպես հիմնվեց Աղթամարի կաթողիկոսությունը։ Ծովքի կաթողիկոսարանը և Անիին փորձեր արին բաժանված աթոռը միացնելու և երբ այդ փորձերը ապարդյուն անցան, Սև լեռան ժողովը նզովեց նրան։ Դավիթ Ա հենվելով իր ազնվական ծագման և իր եղբայրների և ազգականների իշխանական իրավունքների վրա, արհամարհելով նույն իսկ կաթողիկոսական նզովքները, անսասան մնաց և շարունակեց իր անկախ կաթողիկոսությունը մինչև իր մահը.—Արծր. Դ. ժբ. Սամ. անեց. 124. Վրդ. կզ. Ցայսմ. յուլ. 30. Հաւաք. 37, 38, 59.—սեռ. Դաւթի՝ Արծր. Դ. ժբ. Հաւաք. 38, 39. Ձեռ. էջմ. № 1209—1239 (Արրա. 1913, էջ 51).—Դաւթայ՝ Արծր. Դ. ժբ։—Այս Դաւթի փոխարեն Հաւաք. 59 դնում է երկու Դավիթ.—Դավիթ Ա՝ Արգածու գյուղից, ազգական Մաշտոց կաթողիկոսի, որ հաջորդել է Եղիշե Ա-ին, 923 թվին, և Դավիթ Բ. Աբդլմսեհի որդին, որին Գրիգոր Նարեկացին է օծել՝ 1003 թվին։ Բայց սա մի կեղծիք է, որ իրական դեպքից 10 տարի կանխում է։—Աղթամարի Դավիթ Ա կաթողիկոսն է, որ հիշված է Ձեռ. Դադեան, Բ. 28 ը՝ 1161 թվին, ուր կա նաև Դաւիթի եղբայր ինչ որ կիւրապաղատի հիշատակությունը. բայց մագաղաթը ծակոտված լինելով՝ գրությունը եղծված է։ Ակինեան, Գաղնգիրք 36 կարդում է Աբդլմսեհ։—Դաւիթի արձակման կոնդակը, որ գրեց Կիրակոս Վիրապեցին, տես Ակինեան, Գաղնգիրք, էջ 19—23, իսկ Դաւիթի կենսագրությունը՝ անդ 33—37։

— 83. Դաւիթ քահանա, հեղինակ ԺԲ դարու. գրել է պարսիկ Յովսէփ Դունեցի Նոր վկայի (որին անձամբ տեսել էր, «ի տեսիլ աչաց ժամանեցելոյ» Նոր վկ. 62) նահատակության (մ. 1170) պատմությունը և հատկապես նրա սրտառուչ «Ներբողական գովեստը». հրատ. Նոր վկ. 46—64. վերջինը խնդրանոք Մխիթար անուն անձի, որ թերևս Մխիթար Գոշն է։ Դաւթի անունը հիշատակված է էջ 61։ Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 51—53 համարում է Դաւիթ Քոբայրեցին։—Ալիշան՝ Այրարատ 356, Հայապ. 379, և Շնորհ. 395. Զարբ. Հին. դպր. 662, 782. Ձեռ. Վենետ. Բ. 393—4, ուր այս Դաւիթը համարվում է Առաքելոց վանքի միաբան։

— 84. Դաւիթ ոմն, որի հիշատակին կա մի խաչքար և իր տապանը Սուրմալուի Փարչինիս գյուղում, 1172 թ.—Հայկունի, Բագրևանդ 365։

— 85. Դաւիթ կրոնավոր, գրիչ. օրինակել է Կուաշում՝ Եղիշէի Պատմութիւնը, 1172 թ.—Այրարատ 146, Ակինեան՝ Եղիշէ

վրդ. Ա. 24.—Էջմիածնի № 1890 ձեռագիրն է, որ Եղիշէի հնագոյն օրինակն է (Ձեռ. Կարին. 183)։—Ըստ Շողակաթ 196՝ Դաւիթ գրիչը արտագրել է Եղիշէի Պատմութիւնը Կոշայ վանքում, իր և իր եղբայր Մխիթարի համար՝ 1174 թ.

— 86. Դաւիթ վարդապետ Հաղբատի. մին այն Հիւսիսային վարդապետներից, որոնք հակառակ կանգնեցին միության խնդրին և այս մասին գրեցին Գրիգոր Տղային «1178 թ».—Շնորհ. թղ. 308 (ըստ Ազգապ. 1461 թերևս Քոբայրեցին է)։

— 87. Դաւիթ եպիսկոպոս Տարօնի. մասնակցեց Հռոմկլայի ժողովին «1179 թ».—Շնորհ. պատճ. 199, Տաշեան, Ցուց. 350 ա

— 88. Դաւիթ վարդապետ, գնաց Կիլիկիա՝ Գրիգոր կաթուղիկոսի մօտ և ստանալով Լամբրոնացու Մեկնութիւն Յայտնութեան գիրքը, նվիրեց Հաղբատի առաջնորդ Գրիգորիսին (1179 թվից քիչ ուշ).—Զարբ. Թրգմ. 302։

— 89. Դաւիթ որդի Արաճի և եղբօրորդի Բարսեղ Ա առաջնորդի Հաղբատի. մայրն է Վանէ՝ դուստր Կիւրիկէ Գ-ի և քեռն Աբաս Բ Թագավորի Կիւրիկեանց։ Հոր հիշատակին շինել է խորան և եկեղեցի՝ 1189 թ.—Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 71, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 25։

— 90. Դաւիթ, ամուսին Սելամայի, որ վերաշինեց Հաղբատի Զգրաշեն եկեղեցին 1195 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 67, Ազգագր. հանդ. VII, 415։

— 91. Դաւիթ վարդապետ Հաղբատի. ուսուցիչ Խաչատուր աբեղայի, որ Հաղբատում օրինակեց Եփրեմի Մեկնութիւն Աւետարանի Համաբարբառ՝ 1195 թ.—Զարբ. Թրգմ. 448. Հայապ. 383։ (Անշուշտ Քոբայրեցին, որ ունեցել է Հաղբատում Խաչատուր անունով աշակերտ)։

— 92. Դաւիթ միաբան Խաչի վանից՝ 1198 թ.— Հայապ. 442։

— 93. Դաւիթ, մերձավոր Մխիթար Գոշի, որին «սիրող և համակամ և յորդորիչ» է կոչում իրեն։ Ուզեցել է արտագրել Մխիթար Գոշի «Մեկնութիւն Երեմիա մարգարէի» բնագիրը, բայց շատ զբաղված լինելով, արտագրել է տվել «այլում տխմարաց» (անունը չի տալիս)։ Սակայն շատ դժգոհ է մնացել «և ապաշաւ ունիմ, թեպէտ և ուղղեցի յետոյ», 1198 թ.—Շողակաթ 197 (համարում է Քոբայրեցին)։

— 94. Դաւիթ վարդապետ, խնդրեց Մխիթար Գոշից գրել Երեմիա մարգարէի Մեկնութիւնը (1187 թ), որ ապա ինքն էլ

արտագրեց 1198 թ.—Ոսկեան, Մատ. քնն. 185—7 (պետք է լինի Բռբայրեցին. հմմտ. նախորդը)։

— 95. Դաւիթ որդի Բրդի՝ իշխանի Կայենոյ, եղբայր Սադունի. օգնեց Մխիթար Գօշին՝ շինելու համար Նոր-Գետիկը (1198 թ.)—տես. Դաւթի՝ Կիր. ժբ։

— 96. Դաւիթ Բագրատունի, իշխան Նոր-Բերդի, որդի Վասակի և հայր Վասակի, թոռն Կիւրիկէ Գ-ի. իր աղջիկը տվեց Կիւրիկեան Աղսարթան իշխանին և խլեց բերդը. բայց ապա դուրս վտարվեց «1192 թ»։ Շինել է Անապատը, որի կողքին էլ ապա որդին Վասակը 1237 թվին կառուցեց Նոր-Վարագավանքը.— Կիր. 72, 73. Հայապ. 392. Շահխաթ. Բ. 369, Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 75—76 (որ նույնացնում է Ծանարաց Դաւիթ թագավորի հետ՝ Վրդն. 101), Բարխուտ. Արցախ 337, Ղափադարեան, Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 167—172։

— 97. Դաւիթ, միաբան Կամխի Եղավանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 420։

— 98. Դաւիթ քահանա, բարեկամ Վարդան գրչի, որ Աստուածատուր Բաբերդցու համար օրինակից Տօնականը՝ 1205 թ. նույն թվին էլ վախճանվեց Դաւիթը.—Ձեռ. Վեննա. Բ. 470։

— 99. Դաւիթ, որդի Վասուսի, եղբայր Աստուածատուր Բաբերդցու, որ գրել տվեց մի մեծ Տօնական, 1205 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 470։

— 100. Դաւիթ վրդ. Բռբայրեցի. սկզբում ճգնում էր Բռբայրի վանքում, որ գտնվում է Ջորագետի ափերի վրա՝ Այգեհատ գյուղին կից։ Այստեղից գնաց, միաբան դարձավ Հաղբատ վանքում, ուր աշակերտեց Վարդան Հաղբատացի և Պետրոս վարդապետներին (շուրջ 1160—70 թ)։ Եղավ վարդապետ, ուսուցիչ և առեջնորդ։ Իր աշակերտներից հիշվում է Խաչատուր երեցը։ Ստորագրում է այն թղթին, որ Հիւսիսային վարդապետները գրեցին Գրիգոր Տղային։ Մասնակցեց նաև Զաքարէ սպասալարի կրոնական ժողովին («1208 թ»)։ Մահվան թվականը հայտնի չէ. գերեզմանը մնում է Հաղբատում, այս արձանագրությամբ. «Հաւրն մերոյ հոգեւորի Դաւթայ վարդապետի Բռբայրեցւոյ է տապանս յիշեա ի Տէր սուրբս»։ Իր գործերն են՝ Լուծմունք և պատճառք ճառից Գր. Աստուածաբանի, Առ որս, Մեկնութիւն կամ պատճառ եօթանց գրոց Փիլոնի, Մեկնութիւն Ցօրայ (տես Ձեռ. Հալէպի, Բ. էջ 69 ա՝ Ցօրայ մեկնութեան ասթիւ), Թելադրութիւն յԱւետարանն Մատթէի, Պատճառք ճառից Գր. Նիւսաց-

ւոյ (տես Տաշեան, Ցուցակ 1079), Պատճառ Սահմանաց գրոց (հրտր. Թր. քեր. 32—34), Պատճառք ասաց բարեկենդանին, Պատճառ Նաւակատեաց եկեղեցւոյ (այս երկուսը և 6 ճառ աղուհացից՝ իբր անհայտ հեղինակ Դաւիթ վարդապետի՝ տես Զարբ. Հին դպր. 78), Պատճառք ճառից Բարսղի Կեսարացւոյ, Պատճառ պահոցն գրոց Բարսղի (հրտր. Սամ. անեց. էջ ժը, ըստ Տաշեան, Ցուց. 1079 Քոբայրեցունն է), Որքանութիւն թուոցն Նահապետացն և առաջնորդացն Իսրայելի (Հանդ. ամս. 1929, 357 և Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 83) և վերջապես Պատմութիւն ապստամբութեան Օրբելեանց՝ ընդդէմ Գէորգի Գ-ի (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 69)։—Կիր. գ. Լմբ. 218.—սեռ. Դաւթի՝ Թր. քեր. 32.—Զարբ. Հին դպր. 702. Կնիք հաւ. յոլ. 115. ընդարձակ ուսումնասիրություն նրա անձի և գործերի վրա՝ Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 44—68։—Այս նույն Քոբայրեցին է այն Դաւիթ վարդապետը, որ իր ուսուցիչ Պետրոս վարդապետի հորդորով գրեց Ծաղկաքաղ Մեկնութիւն Եսայեայ, քաղելով Եփրեմի, Կիւրեղ Աղեքսանդրացու և շատ բան էլ Ոսկեբերանի գործերից։—Տես Ոսկ. ես. յոլ. էջ ժե. Տաշեան, Ցուց. 571, Զարբ. Հին դպր. 703.—Նույնը հիշում են Նորայր, Հայկ. բառաք. 7 և Ալիշան, Հին հաւատք 181՝ «Դաւիթ քահանայ» անունով։

— 101. Դաւիթ Փէճարենց կամ Փիճուրանց, հայր Մխիթարի, որ էր առաջնորդ Նորատուս գյուղի՝ 1211 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 485, Սիսական 47։

— 102. Դաւիթ Գ Արքակաղնեցի, կաթողիկոս Հայոց «1207—1211 թ». սկզբում Մամեստիայի արքեպիսկոպոսն էր և Արքակաղնի վանքի առաջնորդ և վանահայր։ Մասնակցեց Հռոմկլայի ժողովին («1179 թ»). Ներկա եղավ Լեոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։ Երբ Լեոն Բ-ը գժտվելով Յովհաննէս Մեծաբարոյ կաթողիկոսի հետ՝ պաշտոնանկ արեց նրան, աթոռը հանձնեց Դաւիթին։ «1211 թվին», երբ Դաւիթը մեռավ, իշխանները Լեոնին հաշտեցրին Յովհաննէսի հետ և Հռոմկլայից դարձրին իր աթոռը։ (Ըստ մի այլ հիշատակարանի, որ տպված է Զարբ. Հին դպր. 746, Դաւիթը մեռել է 1222 թ)։—Շնորհ. պտճ. 199. Սմբ. պտմ. 110. Տաշեան, Ցուց. 350 ա. Կիր. գ. է. Վրդ. ձբ. Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 219. Սամ. անեց. շար. 146. Դրնղ. 304. Առաք. պտմ. 335.—բց. ի Դաւթէ՝ Կիր. գ—Ջամչ. Գ. 176—182. Ազգապ. 1568։

— 103. Դաւիթ եպիսկոպոս Անւոյ, 1214 թ.—Շիրակ 96։

— 104. Դաւիթ եպիսկոպոս, որի խնդրանոք Թորոս գրիչը օրինակեց մի ժողովածու, Հռոմկլայում, 1231 թ.—Manus. bibl. nat. էջ 100, Ձեռ. Վենետ. Բ. 1223։

— 105. Դաւիթ, միաբան Բագարանի Մայր եկեղեցու. վանահայր Մխիթարի հետ ուխտագրութիւն է կնքել մեռած միաբանների հոգուն պատարագ անելու մասին, 1233 թ.—Արձ. Այրարատ 68։

— 106. Դաւիթ իշխան իշխանաց, որդի Գրիգորի Շոթոռկանց, հիշատակվում է Հաղբատի, Սանահնի և Խծկօնից վանքերի արձանագրությանց մեջ՝ 1210—36 թվերին։ Ունէր կալվածներ Հաղբատի և Սանահնի մեջտեղ, ապա Խծկօնքի և Մրենի շրջաններում։ 1211 թվին նվերներ է արել Բագարանի Մայր եկեղեցուն, 1222 թվին էլ Սանահնին։ Ինքը Զաքարե սպասալարի զօրավարն էր։ Որդիքն են Գրիգոր և Գայլ Շերպարիք. Գրիգորի որդիքն են Սմբատ, Արջուկ, Արգուխաթուն։ Այս բոլորը հիշված են 1236 թվին պարոն Բոնաւորի և Տղատիկնոջ գրել տված և Խծկօնից վանքին նվիրած մի Աւետարանի հիշատակարանում, ուր Դաւիթը կոչվում է «զմնուցանօղն իմ զբարեպաշտ իշխանաց իշխան զպատրոն Դաւիթ Շոթոռկանց».—Ցովսէփեան, Խաղբակեանք 17—18, Նիւթեր և ուս. Ա. 25, 31—34, Արձ. Այրարատ 67, 112. Շողակաթ 182. (Ցովսէփեան գտնելով Դաւիթ որդի Գրիգորի և Դաւիթ որդի Շոթոռկան, կարծում է թե այս երկուսը տարբեր անձեր են. մինչդեռ Շոթոռիկը մականուն կամ ազգանունն է Գրիգորի և երկուսը միևնույնն են)։

— 107. Դաւիթ, որդի Ուքանի, թոռն Քրդի Ուքանանց, կալվածներ է նվիրել Հաղբատի վանքին, 1243 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 45։

— 108. Դաւիթ վարդապետ, համարվում է թարգմանիչ Միխայէլ Ասորու ժամանակագրության, որի իրական թարգմանիչն է Վարդան պատմիչը (1248 թ)։ Դաւիթը իբրև թարգմանիչ նույն գրքի՝ հիշատակված է Վենետիկի ձեռագրում. Երուսաղէմի վանքում էլ կա մի ձեռագիր, որ մյուսներից շատ տարբեր է. վերջապես Էջմիածնի ձեռագիրների թվում կա մի Միխայէլ Ասորի, որ գրված է ՇՂԵ=1146 թվին։ Այս բոլորից հետևում է թէ թարգմանությունը կատարված է երկու անգամ. առաջինը 1146 թվին, Դաւիթի ձեռքով, երկրորդը Վարդանի ձեռքով՝ 1248 թվին։ Բայց Միխայէլ Ասորին իր ժամանակագրությունը 1196 թվին նոր էր վերջացրել. ինքը ծնված լինելով 1126 թվին, 1146 թվին

միայն 20 տարեկան էր, ուստի չէր կարող այդպիսի նշանավոր մի գործ արտադրած լինել։ Ուստի պետք է ընդունել թէ Էջմիածնի թվականը սխալ է և կամ Դաւիթը թարգմանել է միայն Միխայէլի առաջին մասը, որ ապա շարունակել և վերջացրել է Վարդան Արևելցին՝ 1248 թվին։—Զարբ. Հին դպր. 737, Թրգմ. 570, Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց 449, Հայապ. 98։

— 109. Դաւիթ, եղբայր Ստեփաննոսի՝ դռան եպիսկոպոսի, որ ստացավ մի Աւետարան Հռոմկլայում, 1248 թվին, երբ Դաւիթը արդեն մեռած էր.—Ջեռ. Հալէպի, Բ. 5։

— 110. Դաւիթ Ծարեցի, ջաղացպան էր Սևանի եզերքը գըտնվող Ծար գյուղի. երբ սուտ Քրիստոս սկսեց հրաշքներ գործել և բժշկութիւններ անել։ Շատեր հավատացին նրան. Յովհաննէս Վանական վարդապետ և այլ եպիսկոպոսներ դեմ կանգնեցին և զսպեցին խաբեբային («1249 Թ»).—Կիր. Խդ.—սեռ. Դաւթի՝ Կիր. Խդ.—Մխ. այրիվ. 82 տպ. Դաւիթ Իծար (իմա ի Ծար) ստաբանող։

— 111. Դաւիթ, թերևս մերձավոր Խաչատուր գրչի, որ օրինակեց մի Աւետարան, 1252 Թ.—Ջեռ. Սեբ. (ՀԱ 1925, 378)։

— 112. Դաւիթ, որդի Ռուսուդանի, մայրն է Շնորհաւոր Տփխիսեցի, որ նվերներ է արել Հաղբատի վանքին, 1253 Թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 29։

— 113. Դաւիթ վարդապետ, գնեց մի Աւետարան և նվիրեց Կամեաց վանքին, վանահայր Խաչատուրի ձեռքով, 1260 ? Թվին.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22։

— 114. Դաւիթ քահանա կամ վարդապետ, քեռորդի Գրիգոր եպիսկոպոսի, որ էր առաջնորդ Բջնիի՝ 1267 Թ.—Այրարատ 276, Ջեռ. Վեննետ. Բ. 312։

— 115. Դաւիթ քահանա, միաբան Խորին վանուց (Կիլիկիա). արդեն մեռած էր 1270 Թ.—Ջեռ. Վեննետ. Բ. 235։

— 116. Դաւիթ գրիչ. օրինակել է Աւետարանը Կիլիկիայում, 1271 Թ.—Սմբատեանց՝ Երնջակ 314 (սխալ է Թվ. ՉԺ. ուղղել ՉԺԻ)։

— 117. Դաւիթ, մոտիկ ազգական Հաղբատի Յովհաննէս Դ առաջնորդի, որ մեծամեծ շինութիւններ է արել Հաղբատում և մշտական պատարագ հաստատել Դաւթի հոգուն, 1273 Թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 44։

— 118. Դաւիթ, եղբայր Յովհաննէս քահանայի, Յոհանի և Մխիթարի. ի հիմանց նորոգեցին Հաղբատի մոտ՝ Բերդակ գյուղի կամուրջը, 1273 Թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 103։

— 119. Դաւիթ քահանա, ուսուցիչ և խնամող Ստեփանոս քահանա, Կոստանդին քահանա, Կիւրակոս և Յովսէփ սարկավագ եղբայրների։ Սրանցից առաջինը իր համանուն Ստեփաննոս քահանային գրել տվեց Մանրուսմունքը, Սկեւռայ վանքում, 1278 թ.—Շողակաթ 205։

— 120. Դաւիթ առաջնորդ Այրիվանից (Գեղարդայ), 1278 թ.—Այրարատ 350։

— 121. Դաւիթ եպիսկոպոս, ստացավ մի Աւետարան, որ գրեց Պօղոս գրիչը՝ Վանգերի-խրախ վանքում, հրամանաւ Արքակաղնի վանուց առաջնորդ Տիրատուր արքեպիսկոպոսի, 1280 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 50, 397, Ձեռ. Սևան, 8 ա։

— 122. Դաւիթ, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Սարգիս կրոնավորը՝ Ղարղաբազարի ավերակ գեղատեղում, 1281 թ.—Ալիշան, Սիսական 172։

— 123. Դաւիթ, որդի Արագածոտն գավառի Քուրդ իշխանի (1235—67 թ) և եղբայր Հասանի. երբ եղբայրը (Տայիր Հասան) մեռավ, նրա որդիքը Դաւիթին հանձնվեցին (1283 թ).—Արձ. Յովհաննավանից, Ջքր. սարկ. Գ. 19, Այրարատ 170, 253, Բանաս. 1903, 31, Շողակաթ 169, ZAPh 2, 47։

— 124. Դաւիթ, պարոն Գնդեվանից Պռօշի իշխանության ներքև, 1284 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 138—9։

— 125. Դաւիթ, որդի Յովհաննէսի և հայր Ռուբէնի, որ իր մի ձիթահանքը նվիրեց Անիի կաթուղիկէին՝ 1286 թ.—Արձ. Շիրակ 72։

— 126. Դաւիթ, որդի Պառաւ երիցու և հայր Որդեկի, որ իր տունն ու այգին նվիրեց Արջոյառիճի Ս. Լուսաւորիչ վանքին, 1289 թ.—Արձ. Շիրակ 123, Այրարատ 120 ա։

— 127. Դաւիթ երեց Բալուեցի. քեռորդի և աշակերտ Գրիգոր վրդ. Բալուեցու (կոչված նաև Խարբերդցի), որի նահատակության պատմությունը գրեց «1290 թ».—Նոր վկ. 104—117, Տաշեան, Ցուց. 75, 542։

— 128. Դաւիթ կրոնավոր, Թեղենեաց վանքում գրեց ու վերջացրեց այն Աւետարանը, որ Քահանայ և Շմաւոն եղբայրները սկսել, բայց կիսատ էին թողել, 1295 թ.—Manus. brit. mus. 16։

— 129. Դաւիթ, նվիրատու Մրէնի կաթուղիկէ եկեղեցուն, 1295 թ.—Արձ. Շիրակ 140։

— 130. Դաւիթ, որդի Պապաքի և եղբայր Մխիթար քահա-

նայի, որ Որոտանի Աղիտու վանքում գրեց մի Աւետարան 1296 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 201։

— 131. Դաւիթ, եղբայր Սարգիս քահանայի, որ Պերճեր վանքում, Խաչատուր սարկավագին գրել տվեց մի Աւետարան, 1299 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 684։

— 132. Դաւիթ մոլորեցուցիչ Գառնեցի. իրեն համարում էր Արշակունի և թե մի որդին պիտի լինի թագավոր, մյուսը կաթուղիկոս։ Եպիսկոպոսը նզովեց նրան։ Գառնեցիք փախցրին (ԺԳ դար).—Այրարատ 363 ա։

— 133. Դաւիթ հէճուպ, որդի Հոնայի, թոռ Ալուեցու, իր կնոջ Նանայի հետ միասին նվերներ են արել Ցովհաննավանքին, 1300 թ.—Այրարատ 171 ա։

— 134. Դաւիթ իշխան, որի կինն է Շուշան՝ քույր Իւանէի և Զաքարէ սպասալարի. որդին է Գրիգոր Դուփեանց (ԺԳ դար). —Ջամչ. Գ. 185 (տես և Գրիգոր Դուփեանց, № 377)։

— 135. Դաւիթ, գրիչ. Իտալիայի Փէրուժ (Perugia) քաղաքում օրինակեց Գործք առաքելոցը, 1301 թ.—Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342 ա)։

— 136. Դաւիթ, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի. հիշված է 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 137. Տէր Դաւիթ, հիշատակված է Հռոմոսի մատուռի մի արձանագրության մեջ՝ 1305 թ.—Շիրակ 22։

— 138. Դաւիթ, իբրև վկա հիշվում է Քանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.— Բանաս. 1903, 32, Այրարատ 298։

— 139. Դաւիթ, աբեղա կամ վարդապետ Կիլիկեցի, Իտալիայի Padova քաղաքում հիմնել է Հայոց համար Ս. Հեղինէի վանքը և վանատունը՝ «1308 թ».— Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռնոյի 230, Ազգապ. 1815, Սիսուան 557 բ։

— 140. Դաւիթ Հաղբատեցի, հոգևոր եղբայր Սարգիս աբեղայի, որ Գլաձորում օրինակեց Ոսկեփորիկը՝ 1317 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 857—9։

— 141. Դաւիթ, հայր Հեթում քահանայի՝ Ցովհաննավանքում 1318 թ.—Այրարատ 172։

— 142. Դաւիթ պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Աստուածատուրին՝ «1317 թ». սրա օրով Վրացիք դիմեցին Եգիպտոսի սուլթանին և ուզեցին խլել Հայոց պատրիարքական աթոռը։ Սուլթանը մերժեց և Հայոց իրավունքները վերահաստատեց

նոր հրովարտակով «1319 թ».—ըստ Աղաւնունու մեռել է 1321 թ. —Ազգապ. 1831։

— 143. Դաւիթ վարդապետ Սիւնեաց. Եսայի Նչեցու հետ միասին ուսուցանում էր Գլաձորի վանքում (Manus. brit. mus. 22 բ և 24 ա)․ ստորագրում է, Եսայի Նչեցուց հետո, արեւելյան եպիսկոպոսների բողոքագրին առ Գրիգոր Է կաթուղիկոս «1293—1307 թ», եկեղեցական նորմուծությանց դեմ (Օրբել. կը)։ Գրել է նաև Թուղթ առ Կոստանդին Գ կաթուղիկոս («1307—1323 թ»)՝ Սիւնեաց Յովհաննէս Օրբելեան եպիսկոպոսի հետ միասին (Տաշեան, Ցուց. 180, Ազգապ. 1806)։ Իր աշակերտներից է Մկրտիչ՝ վանահայր Սպիտակաւոր Աստուածածին վանքի (1340—43), որին մի ձեռագիր Աւետարան է նվիրել այդ տարիներին (Յովսէփեան, Խաղբակեանք 208)։ Կոչված է Ուսուցչապետ. իրեն է նվիրված երկար չափական մի գրվածք, որի նախատառերը կազմում են «Ի Դաւիթ Ի Նուաստ յաշակերտէս»։ Ոտանաւորից 10 տուն մեջ է բերում Ալիշան իր Սիսականում, էջ 135։

— 144. Դաւիթ, իր եղբայր Վահապի հետ միասին ներել են Զագ գյուղի Գետարգել վանքի հարկերը, 1325 թ.—Արձ. Այրարատ 292։

— 145. Դաւիթ քահանա ոմն, հիշված է 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 460)։

— 146. Դաւիթ Գետկեցի, գրիչ Գլաձորի վանքում, 1328 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 199։

— 147. Դաւիթ քահանա, գրիչ. Գլաձորի վանքում իր ընկեր Եփրեմ քահանայի հետ միասին օրինակել են Աստուածաշունչը՝ 1800 դրամով, Ներսէս վրդ. Սամնեցու համար, 1332 թ.—Զարբ. Թրգմ. 148, Հայապ. 546, Ձեռ. Վենետ. Ա. 126—7, Սիսական 134։

— 148. Դաւիթ, հայր թե մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանում օրինակեց Աւետարանը՝ 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 149. Դաւիթ, գործակալ Խորձեանի Խլպաշի վանից, 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 150. Դաւիթ վարդապետ, աշակերտ Եսայի Նչեցու, որ մեռել է 1339 թ.—տես. Դաւթի՝ Պարզ. 695։

— 151. Դաւիթ քահանա Վարդանաձորի, գնեց մի Աւետարան Ստեփանոս քահանայից, 1341 թ.—Bodleian 5։

— 152. Դաւիթ երեց, մի խաչքար է կանգնեցրել Զոլախաչ

գիւղում (Նոր-Բայազէտ), 1342 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 546։

— 153. Դաւիթ եպիսկոպոս Համանի (Կիլիկիա), անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 154. Դաւիթ եպիսկոպոս Տարօնի, անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 155. Դաւիթ վանահայր Փրկչի վանուց, (որ է Փերճեր՝ ըստ Սիսուան 153 ա), անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։

— 156. Դաւիթ, նվիրատու Վայոց ձորի Ս. Աստուածածին եկեղեցու (այժմ Իւլգիւրտ գյուղում), 1347 թ։—Արձ. Միսակյան 167։

— 157. Դաւիթ դպիր, թուղթ էր կոկում Թւֆինի վանքում, երբ Վարդ քահանան օրինակում էր Սաղմոսը, 1356 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 186։

— 158. Դաւիթ, հայր Թանկխաթունի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Կարապետ կրոնավորին, 1358 թ.—Ձեռ. Ագուլ. (Ալբոմ. 1911, 563)։

— 159. Դաւիթ քահանա, որդի Կարապետ քահանայի. երկուսն էլ օգնեցին Երեմիա կրոնավորին՝ գրել տալու համար Զաքարիա արեղային Պատարագի Մեկնութիւնը, Անապատիկ գյուղում, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։

— 160. Դաւիթ Բ կաթողիկոս Աղթամարի «1346—1368? թ». Զաքարիա Ա Սեֆեդինեան կաթողիկոսի Ամիր-Գուրգէն եղբոր կրտսեր որդին էր. մեծացավ Զաքարիայի ձեռքի տակ, որ հենց իր կենդանության ժամանակ ձեռնադրեց նրան կաթողիկոս, երբ հայրն ու անդրանիկ եղբայրը մեռած էին։ Գահ բարձրանալը շատ դժվար էր, որովհետև այլազգի ամիրաները կաթողիկոսության վրա մեծ տուրք էին նշանակած։ Իր երկու եղբայրների՝ Կուրճիբէգի և Սեֆեդինի շնորհիվ՝ Ստեփաննոսի մահից հետո, հաստատվեց գահի վրա (1346 թ.)։—Արծր. յաւել. Հաւաք. 40, 59, Ակինեան՝ Գաւազանագիրք 63—64։ (Հաւաքարանը դնում է ուղղակի հաջորդ Զաքարիայի, առանց հիշելու Ստեփաննոս Գ-ին, որ տես առանձին)։

— 161. Դաւիթ, որդի Փրիմշահի, հիշված 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277։

— 162. Դաւիթ, հայր Արղուն տիկնոջ, որ կազմել տվեց Նարեկը, որ Ներսէս երեցը գրել էր Թաւրիզում, 1377 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 55 ա։

— 163. Դաւիթ ճգնավոր կրոնավոր, վանահայր Մշու Առա-

քեղոց (Ղազարայ) վանից։ Ականատես էր եղել Մշեցի մի կնոջ հերոսական արարքին։ Լենկթիմուրի արշավանքի ժամանակ, Մշեցի ժողովուրդը Խութի սարերն էր փախել. դրանց մեջ էր նաև այդ մշեցի կինը (անունը չէ ավանդված) իր 7—8 տարեկան գեղեցիկ մանկան հետ։ Թաթարները տեսան նրանց և հարձակվեցին որ գերի բռնեն։ Մայրը իր սուրով սպանեց իր մանկան և ապա գահավանդեց ցած գցեց իրեն։ Եվ այսպես երկուսն էլ նահատակվեցին՝ մաքուր պահելու համար իրենց պատիվը ու կրոնը «1387 Թ»։—Մեծոփ. 27, Ազգապ. 1975։

— 164. **Դաւիթ**, հայր Առաքել Սիւնեցու (№ 57) և քեռայր Գրիգոր Տաթևացու։—Ձեռ. Թաւր. 83 բ, Ագամ. էջ 229, 271։

— 165. **Դաւիթ**, օգնեց Վարդան քահանային գնելու մի Աւետարան՝ Երզնկա 1397 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 166. **Դաւիթ** Գ կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Սիմոնի և նախորդ Յովհաննէս Գ-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 167. **Դաւիթ**, որդի Պարոնի և թոռն Գրիգոր Խուցէսի (№ 400)՝ հարկահավաքի Անւոյ. եղբայրներն են Սեթ և Թամար (ԺԴ դար).—Յովսէփեան, Խաղբակեանք 15։

— 168. **Դաւիթ** գանձասաց. իր գանձերից մի նմուշ տես Manus. brit. mus. 119 բ. Ամենաուշը պիտի լինի ԺԴ դարից, որովհետև ձեռագիրը գրված է 1412 Թ։

— 169. **Դաւիթ** եպիսկոպոս Ջմշկածագի. գրեց Յովհաննէս քհ. Ջմշկածագցի նահատակի նահատակության պատմությունը («1403 Թ»).—Յայսմ. մրտ. 27=Նոր վկ. 207։

— 170. **Դաւիթ** քահանա, ազգական Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 Թ.—Թորոս աղբ. Բ. 277։

— 171. **Դաւիթ** կրոնավոր քահանա, նահատակվել է Սեբաստիայում, նախ քան 1407 Թ. Նրա վարքը գրել է Յովհաննէս քհ. Սեբաստացին և անց է կացրել Յայսմաւուրքի մեջ.—Նոտարք 25։

— 172. **Դաւիթ** երեց. գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Բաբերդում, 1405 Թվին.—Ձեռ. Կարին. 18։

— 173. **Դաւիթ**, որդի Գորգի, գնեց մի հին Աւետարան 1407 Թվին և 3 տարի հետո վաճառեց Մարտիրոս քահանային՝ որդի Գորգոյ.—Ձեռ. Վասպ. 164 (տող 1, տպ. ի գաւթս), 165, 166։

— 174. **Դաւիթ**, Մեծոփայ վանքի տաճարի ճարտարապետներից մին («1402—9 Թ»).—Ազգապ. 2001, Նոտարք 30։

— 175. Դաւիթ Է կաթողիկոս Աղուանից. գահ է բարձրացել 1406 թ. իբրև հաջորդ Կարապետի և մեռել է 1411 թ.—Շահխ. Բ. 343. Նոտարք 39, Բարխուտարեանց, Պատմ. Աղուանից, Ա. 212։

— 176. Դաւիթ, Խիզանի Ս. Խաչ վանքի միաբաններից, 1413 թ.—Նոտարք 42։

— 177. Դաւիթ որդի տանուտեր Մկրտչի, որ հող է նվիրել Մոկաց Ծպատայ վանքին, 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 271 բ։

— 178. Դաւիթ քահանա, հորեղբայր Մելքիսեթ ծաղկողի՝ Սանահինի, 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873։

— 179. Դաւիթ կրոնավոր, միաբան Կոցի Ս. Խաչ վանքի, 1422 թ.—Նոտարք 68։

— 180. Դաւիթ քահանա, որդի Վարդանի. գրիչ. օրինակեց Մաշտոցը, սկսելով Այրի վանքում և վերջացնելով Հաւուցթառում, 1423 թ.—Թորոս աղբ. Ա. 233—4, Բ. 338, 339, Այրարատ 357, Նոտարք 73։

— 181. Ամիր Դաւիթ, ամուսին Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 663։

— 182. Դաւիթ կրոնավոր. գրիչ. օրինակել է Մայր Մաշտոցը Երերան վանքում, 1432 թ.—Ձեռ. Կարին. 138, Նոտարք 99։

— 183. Դաւիթ Գ կաթողիկոս Աղթամարի «1393—1433 թ». Զաքարիա նահապետ կաթողիկոսի եղբայրն էր և հաջորդը։ Գովաբանված է իբրև մաքուր բարքով, ուսումնասեր և արժանավոր անձ։ Ունեցավ արդյունավոր գործունեություն։ Իր ժամանակ շինվեցին մի քանի դպրեվանքեր։ Իր ժամանակ, Գրիգոր Տաթևացին թաթարների նեղությունից զզված՝ իր Սիւնեցի աշակերտների խմբով դիմեց Մեծոփի վանքը (1408)։ Նա մտածեց Աղթամարի բաժանված աթոռը միացնել Սսի կաթողիկոսության հետ։ Իր գաղափարը ընդունելություն գտավ և ընդհանուր դիմում արին Սսի Յակոբ Գ կաթողիկոսին։ Նա էլ սիրով ընդունեց, Աղթամարի աթոռը դարավոր նզովքից արձակեց և այս մասին ամեն կողմ հայտարարություն ուղարկեց։ Այս պայմանների տակ պետք էր Դաւիթ կաթողիկոսին գահընկեց անել։ Դաւիթը զորացավ, հաղթեց իր հակառակորդներին և Տաթևացին իր խմբով փախավ (1410)։ Այսպեսով միության գործը գլուխ չեկավ և Դաւիթը մնաց աթոռի վրա։ Իր վերջի օրերը տառապալից եղան. 1431 թվին, Քըրդերը՝ Փիրիբէգի առաջնորդությամբ եկան պաշարեցին Աղթամարը և գրավեցին. Դաւիթ իւրայինների հետ կապուտ-կողոպուտ

փախավ Մոկաց Կեցան գավառի Ուրանց գյուղը, ուր երկու տարի մնալուց հետո, կարողացավ հաշտություն կնքել Փիրիբէգի հետ և վանականների հետ վերադարձավ Աղթամար։—Հաւաք. 40, 41. Ազգապ. 2019—2026, Ակինեան՝ Գաւազանագիրք 70—85։ (Առաք. պատմ. 336 գրել է կաթողիկոս Սաոյ՝ իբր հաջորդ Կարապետ Ա-ի, որով մի Կարապետը դարձել է Ա և Բ. այս մասին տես Ազգապ. 1991)։—Դաւիթ Գ. կաթողիկոսի անունով Հաւաքարանը (էջ 55) տալիս է նաև ամեն մի գյուղի տալիք տուրքի չափը և թվական է դնում ԸԾԽ, որ լինում է 1391։ Բայց այս թվին Դաւիթը դեռ չէր գահակալել, և նստում էր Զաքարիան, որ նահատակվեց 1393 թ. ուստի վերի ԸԾԽ պետք է ուղղել՝ ավելացնելով մի որևէ միավոր։

— 184. Դաւիթ կրոնավոր, որդի Սահակ քահանայի. Զմըշկածագի Ընկուզեաց անապատում օրինակեց Աւետարանը՝ 1434 թ.—Ձեռ. Թաւր. 12 բ։

— 185. Դաւիթ քահանա, որի դամբանը գտնվում է Հաղբատի վանքում, 1435 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 55, Ազգագր. հանդ. VII 410։

— 186. Դաւիթ աբեղա Կոնիապատցի. գրիչ հիշատակարանի՝ 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 բ։

— 187. Դաւիթ, որդի Գալոցի, տանուտեր, Թացու գյուղում Յովսէփ գրչին գրել տվեց Աւետարանը. 1437 թ.—Ձեռ. Վասպ. 378։

— 188. Դաւիթ աբեղա, որդի Սահակ քահանայի. օրինակեց Ճաշոցը՝ Ներսէս քահանայի համար, Սեբաստիա 1438 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 242—4։

— 189. Դաւիթ աբեղայ, որդի Իսահակ քահանայի. գրել է մի Գանձարան՝ Մելիտինէում 1438 թ.—Թորոս աղբ. Բ. 45?։

— 190. Դաւիթ կուսակրոն քահանա, որի համար օրինակվեց մի Գանձարան, Տփղիսում, 1438 թ.—Ձեռ. Սևան. 22 բ։

— 191. Դաւիթ, հանգուցյալ որդի Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1438 թ.—Ձեռ. Սեբ.= ՀԱ 1926, 243—4։

— 192. Դաւիթ գրիչ. օրինակեց Ժամագիրքը 1441 թ.—Ձեռ. Թաւր. 59 բ։

— 193. Դաւիթ վարդապետ Սիւնեցի, աշակերտ Յովհաննէս Հերմոնեցու. անդամ էջմիածնի մեծ ժողովի (1441 թ).—Մեծոփ. յիշատ. ա, Նոտարք 122։

— 194. Դաւիթ *կաթողիկոս Աղթամարի, 1441 թ։ Այսպես է դնում Ջամչ. Գ. 487՝ հանելով Կիրակոս կաթողիկոսի անդրանիկ կոնդակից (անդ՝ 488), ուր Աղթամարի Դաւիթ կաթողիկոսին արձակում է բանադրանքից։ Բայց այս ենթադրութիւնը սխալ է. արձակումը Դաւիթ Ա կաթողիկոսի համար է և 1441 թվին Աղթամարի կաթողիկոսն էր Զաքարիա, որ նստավ «1434—1464»։*

— 195. Դաւիթ *եպիսկոպոս Բաղէշի. Թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի (1441 թ).—Մեծոփ. յիշատ. ա։*

— 196. Դաւիթ *որդի Վարդանի. գրիչ. օրինակել է մի ընտիր ձեռագիր Խորենացու աշխարհագրության՝ 1443 թ.—Աշ. Աբրահամեան, Խորենացու աշխարհացոյց, էջ 11, 93։*

— 197. Դաւիթ, *դատավոր Հայոց Լեհաստանի, 1443—1444 թ.*—REA *7, 71։*

— 198. Դաւիթ *աբեղա, հորեղբայր Սարգիս աբեղայի, որ ստացավ ու նորոգեց մի հին Աւետարան՝ 1444 թ.—Ձեռ. Վասպ. 112 (Լալայեանը երկու հիշատակարան իրար է խառնել)։*

— 199. Դաւիթ *խարագնազգեստ ճգնավոր աբեղա, միաբան Մշու Ս. Յովհաննէս վանքի. մի քանի միաբանակիցների հետ դիմեց Գրիգոր Ժ Մակուեցի կաթողիկոսին և Կարապետ աբեղային եպիսկոպոս ձեռնադրել տվեց՝ 1445 թ.—Նոտարք 142։*

— 200. Դաւիթ *եպիսկոպոս, միաբան Խիզանի Ս. Գամաղիէլ վանքի. հիշված է 1407 և 1427 թ. իբրև պարզ եպիսկոպոս. դառնում է վանքի առաջնորդը՝ 1445 թ. որից հետո մեռած պիտի լինի, քանի որ Յովհաննէս վարդապետը արդեն հիշվում է առաջնորդ՝ 1455 թ.—Նոտարք 26, 83, 145։*

— 201. Դաւիթ *թղթագիր, գրիչ. օրինակել է «Բայժինգիրքը», 1447 թ.—Շողակաթ 213 (տրված է միայն հիշատակարանը, որից չի հասկացվում թե ինչ բան է այս* բաժինգիրքը):

— 202. Դաւիթ *Իլովցի, վաճառական, թողել է մի կտակ 1450 թ.—Նոտարք 163։*

— 203. Դաւիթ *աբեղա, Սևանում օրինակեց Մեկնութիւն Աւետարանին Մատթէոսի, 1451 թ.—Նոտարք 167։*

— 204. Դաւիթ *կրոնավոր, առաջնորդ Փոքր Ակոռոյ վանից Ջերմաձորի, 1451 թ.—Նոտարք 168։*

— 205. Դաւիթ *եպիսկոպոս, Խարբերդում գրեց մի Յայսմաւուրք, ուր հիշատակում է նաև Պոլսի առման պատմութիւնը և Ջիհանշահի պատերազմները (1453 թ).—Թորոս աղբ. Բ. 381։*

— 206. Դաւիթ որդի մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տըվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 207. Դաւիթ միաբան Վարագայ վանքի, 1454 թ.—Նոտարք 176։

— 208. Դաւիթ քահանա, որդի Խաչատուր քահանայի և աշակերտ Յովհաննէս քահանայի. Արճէշում գրեց մի գեղանկար Աւետարան, 1455 թ.—Նոտարք 177։

— 209. Դաւիթ եպիսկոպոս, միաբան Խիզանի Ս. Գամաղիէլ վանքի. հիշված է իբրև սոսկ միաբան 1427 թ. (Նոտարք 83), իսկ իբրև եպիսկոպոս՝ 1455 թ.—Նոտարք 181։

— 210. Դաւիթ, ի հիշատակ Սարգիս կրոնավորի՝ գրեց Բաղէշում մի Յայսմաւուրք՝ 1455 թ.—Նոտարք 182։

— 211. Դաւիթ եպիսկոպոս Ս. Նշան վանից. ստորագրում է իբր վկա մի կտակագրի, 1461 թ.—Manus. brit. mus. 31 ա։

— 212. Դաւիթ, գրել տվեց Ռամգիրքը, ուր կա նաև Շիրակացու Թուաբանութեան դասագիրքը՝ 1463 թ.—Դիտ. աշխ. Պետ. համալս. XI 247։

— 213. Դաւիթ կրոնավոր, միաբան Խորձենի Խլպաշի վանքի՝ 1464 թ.—Նոտարք 218, Թորոս աղբ. Բ. 341։

— 214. Դաւիթ, մերձավոր ոմն Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձենի Խլպաշի վանքում օրինակեց Աւետարանը 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։

— 215. Դաւիթ, գործակալ Խորձենի Խլպաշի վանքի՝ 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 341, Նոտարք 218։

— 216. Դաւիթ վարդապետ, Արիստակէս Բ կաթուղիկոսի ընտրողներից մեկը՝ «1465 թ».—Համենից 226։

— 217. Դաւիթ, հայր մահտեսի Յովհաննէսի, որ ազատեց Աղթամարի թալանված իրերից մի Աւետարան, 1464 թ.—Նոտարք 220, Ջեռ. Վասպ. 384։

— 218. Դաւիթ եպիսկոպոս, միաբան Խիզանի Գամաղիէլի վանից, 1468 թ. մեռավ այս թվին և նրան հաջորդեց Գրիգոր եպիսկոպոս՝ 1469 թ. (ավելին տես Գրիգոր № 647)։—Ջեռ. Վասպ. 452։

— 219. Դաւիթ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց՝ 1469 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 1114։

— 220. Դաւիթ Խարբերդցի, որդի Գրիգոր քահանայի. քեռայրը տաճկացել էր. Դաւիթը մի օր նախատեց նրան՝ անհա-

վատ և ուրացող կոչելով։ Նա էլ գնաց մատնեց դատավորին, որ բանտարկեց նրան և պահանջեց մահմեդական դառնալ։ Մերժում ստանալով, սկսեցին չարչարել նրան, կրակով այրեցին և ապա ոսկորները փշրելով՝ քամուն տվին։ Հայրը՝ տանջանքների միջոցին, լալով հորդորում էր նրան և ասում. «Որդեակ, որդեակ, հօրս ցանկալի և փափագելի. մի երկնչիր ի յայս չարչարանացս, որ զմարմինդ միայն ապականէ և զհոգիդ ոչ։ Այլ ուրախացիր, որ յաւիտենից և անմահ կենացն ես ժառանգորդ և անպատում ուրախութեանն»։ Նահատակությունը տեղի ունեցավ «1474 թ. հունվ. 16, կիր.»։—Մամ. անեց. շար. 175, Առաք. պատմ. 486, Նոր վկ. 306—8. Տաշեան, Ցուց. 871 բ.—սեռ. Դաւթի՝ Նոր վկ. 306, 307։

— 221. Դաւիթ, քարտաշ վարպետ, որ իր հիշատակը թողել է Փառխոսի մի խաչքարի վրա, 1481 թ.—Բարխուտ. Արցախ 307։

— 222. Դաւիթ (գրված է տր. Դաւդին, ուստի ուղ. Դաւո՞ւդ), Շամախու Գեօքչայ գավառի Առուշանաշէն գյուղի գերեզմանատանում, մի դամբանի վրա, 1481 թ.—Բարխուտարեանց, Աղուանից երկ. 202—3։

— 223. Դաւիթ ավագերեց և փիլիսոփա (իմա՛ երաժիշտ), եղբայր Աբրահամ գրչի՝ Բոլորաձոր 1484 թ.—Տաշեան, Ցուց. 855։

— 224. Դաւիթ կազմարար. կազմեց այն Աւետարանը, որ Ալեքսիանոս եպիսկոպոսը գրել էր Արքայից վանքում, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 225. Դաւիթ քահանա, աշակերտ և եղբորորդի Աւագտէր վարդապետի, որ Բոլորաձորի Սպիտակաւոր Աստուածածնի վանքի առաջնորդն էր։ Դաւթի եղբայրներն են՝ Զաքարիա գրիչ և Աբրահամ գրիչ և նկարիչ։ Վայոց ձորի Սրկղունք կամ Սրկղունից գյուղում, որ Գռօշեանների ոստանն էր, արտագրել է մի խումբ ձեռագրեր, որոնցից հայտնի են՝ Աւետարան 1459 թ., Աւետարան 1473 թ., Աւետարան 1475 թ., Ճառընտիր 1478 թ. և Շարական 1487 թ։—Նոտարք 192, Ձեռ. Դադեան, Բ. 55 ա, Ձեռ. Կարին. 18, 60, Սմբատեանց, Երնջակ 178, Ցովսէփեան, Խաղբակեանք 234—5։

— 226. Դաւիթ, մերձավոր Ցովհաննէս երեցի, որ Բերկրիի Առեղս գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— 227. Դաւիթ, կրոնավոր Գողթն գավառի Բուստայ անապատում, 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— 228. Դաւիթ քահանա, երեց եղբայր Աբրահամ վարդապետի, որ Վայոց Ձորի Վերին Նորավանք ուխտում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522 (տես և Աւագտէր)։

— 229. Դաւիթ, ազգական Սիրատանի, որ Կեսարիայի Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1495 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1850։

— 230. Դաւիթ Հիզանցի, հայր Խուդադադ ստացողի՝ 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284։

— 231. Դաւիթ, եղբայր Յովհաննէս քահանայի, որի համար մի Աւետարան գրել տվեց Թավրէզ տիկինը, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526։

— 232. Դաւիթ Դ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Եղիայի և նախորդ Բարսեղ Բ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 233. Դաւիթ Ե. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Թադէոս Գ-ի և նախորդ Սահակ Գ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 234. Դաւիթ Զ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Ստեփաննոս Զ-ի և նախորդ Գրիգոր Զ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 235. Դաւիթ Է. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Գրիգոր Է-ի և նախորդ Զաքարիա Գ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։

— 236. Դաւիթ վարդապետ, աշակերտ Գր. Տաթևացու. գրեց Լուծմունք Դիոնեսիոս Արիսպագացու (ԺԵ դար).—Կնիք հաւ. յոջ. 34։

— 237. Դաւիթ գրիչ. օրինակել է Եւագրը. (տես Սարգիսեան, Եւագր. Ներած. էջ ՃՀԷ). Ձեռագիրը այժմ գտնվում է Էջմիածնի ձեռագրատանը (ԺԵ դար)։

— 238. Դաւիթ Ոստագենց Եղնովտացի. ձյան հուսի տակ Թալով մեռավ 1500 թ.—Տաշեան, Ցուց. 486։

— 239. Դաւիթ աբեղա, նվիրակ Էջմիածնի ի Սուչավա. նահատակվեց Ամասիայում, 1506 թ. ավելին տես Յովհ. եպս.—Տաշեան, Ցուց. 55 բ. Նոր վկ. 340, 342, Ձեռ. Հալէպի Ա 105։

— 240. Դաւիթ կաթուղիկոս Աղուանից, գահակալել է ՌԻԲ=1573 թվին՝ հաջորդելով ուրացեալ Գրիգորին, որ գահ էր բարձրացել 1556 թվին. իրեն էլ հաջորդեց Փիլիպպոս Տումեցի՝ նույն 1573 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 89 բ։

— 241. Դաւիթ եպիսկոպոս Գեղամեցի, որդի Խաչիկի. Շողուագայ գյուղից էր. Խնուսում օրինակել է մի Աւետարան

1587 թ. Շահաբասի գերեվարության ժամանակ գնաց Ջակամի երկիրը և եղավ առաջնորդ Խորոտկան Ս. Աստուածածին վանքի։ Գրել է Շահաբասի արշավանքի, Հայոց գաղթի և 1606—7 թվի սովի ողբախառն ոտանավոր պատմությունը, որ սկսվում է այսպես.

Հազար յիսուն և հինգ Թուին
Սաստկացաւ սով վերայ երկրիս...
Երկու ամ բոլոր սով տեսաք,
Օտար երկիր վտարեցաք...
Վա՜յ քեզ, Դաւիթ Գեղամեցի,
Վասն քո մեղացն ամենայնի ևն։

Ողբը գրված է 1610 թ. Նրա մի մասը՝ «Ողբք ի Ջուղա» հրատարակված է Հայապ. 614—6, մասամբ նաև Տաշեան, Ցուց. 181։ Նույն Դաւիթ եպիսկոպոսը նորոգել է Շողուագայ վանքի մոտիկ Աղքիլիսա գյուղի եկեղեցին, ինչպես և Մասրուց անապատը, որի համար էլ կա իր անունով մի խաչքար՝ 1611 թվից։— Սիսական 34, 52—53, 59, 97. Սմբատեանց, Գեղարքունի 511—3։

— 242. **Դաւիթ** եպիսկոպոս Ղարամանենց՝ Շամքորեցի. միաբան Հարանց անապատի (1610). հիմնեց Ջարեքագետի անապատը, ուր և մնաց մինչև մահը.—Առաք. պատմ. 193։

— 243. **Դաւիթ** Բ. Արդար, Մերդինցի. պատրիարք Երուսաղէմի «1593—1613 ? թ». եղբօրորդին էր Անդրէաս Պարոնտէրի, որի վերջին տարիներում գահակից եղավ և մահվանից հետո էլ հաջորդ.—Ազգապ. 2260, Հայ—Վենետ. 214։

— 244. **Դաւիթ** Դ. Վաղարշապատցի, կաթուղիկոս Հայոց «1590—1629 թ». նախապես Գրիգոր ԺԲ կաթուղիկոսի աթոռակիցն էր («1584 թ.» ըստ Ազգապ. 2279. իսկ ըստ Ալիշան, կամենից 54 գահակալել է 1586 թ.)։ Կաթուղիկոսության ժամանակ պարտապահանջներից նեղված՝ իրեն աթոռակից ընտրեց հետըզհետէ Մելքիսեդեկ, Սրապիոն և Սահակ կաթուղիկոսներին։ Հարկերից նեղված այդ կաթուղիկոսները տառապալից և աստանդական կյանք վարեցին։ Մելքիսեդեկը այնպիսի բռնակալ մեկն եղավ, որ Դաւիթին չեզոքացնելով՝ իրապես կաթուղիկոսություն վարեց անարժանաբար։ Դաւիթը քաշվեց Տաթև։ Շահաբասի արշավանքի ժամանակ գերի տարվեց Սպահան «1604 թ». այնուհետև դարձավ Էջմիածին «1612 թ», բայց Մելքիսեդեկի թշնամական արարքներից զզված՝ հրաժարվեց կաթուղիկոսությունից։

Մեռավ «1633 թ.»։—Զքր. սարկ. Գ. 33. Առաք. պատմ. 2, 3, 8, 10, 14, 18, 139—141, 153—6, 162—7, 176—7, 332, 338—9. — Ձեռ. Դուքին՝ Նշխ. մատ. 72։--Զամչ. Գ. 533—600. Ազգապ. 2287 —2400։

— 245. Դավիթ Ա. Արևելցի, պատրիարք Կ. Պոլսի՝ «1639—1641 թ». հայադավանության ջերմ պաշտպան. նախապես Էջմիածնի նվիրակ էր. Զաքարիա պատրիարքի մահից հետո՝ նստավ աթոռը։ Բայց 2 տարուց հետո, կաթոլիկ կուսակցության կողմից պաշտոնանկ արվեց և ընտրվեց կաթոլիկամիտ Կիրակոս վրդ. Երևանցին «1641—1642 թ»։ Սրա մահից հետո նստավ Խաչատուր Սեբաստացին («1642 թ»), որ նույնպես կաթոլիկ կուսակցությունից էր։ Դավիթը մի քանի ամսից հետո գահընկեց արեց սրան և խլեց աթոռը՝ դուրս վտարելով կաթոլիկներին, որոնց գլուխն էր Կղեմէս Կալանոս։ Կաթոլիկները կաշառքով գնեցին աթոռը պետությունից և պատրիարք դրին Թովմաս Բերիացուն «1644 թ», որ սակայն չկարողանալով խոստացած կաշառքը վճարել, թողեց աթոռը և փախավ Հռոմ։ Դավիթը, որ Կիպրոս էր քշված, անմիջապես դարձավ և տիրեց աթոռին։ Հինգ տարվա ալեկոծյալ իշխանությունից հետո՝ պաշտոնանկ եղավ «1649 թ»։ Այնուհետև մի քանի անգամ աշխարհական տեղակալներ և Դավիթ իրարից խլխլեցին աթոռը, մինչև «1651 թ», երբ Դավիթ անցավ Բերիա և գահ բարձրացավ Եղիազար Այնթապցին։ — Երեմ. չէլ. օրագր. 17, 25, 39, 40. Ազգապ. 2464։

— 246. Դավիթ երեց Եւդոկիացի. ունի Ուղեգրութիւն Ստամպօլից Փոքր-Ասիա ևն, «1651 թ».— Տաշեան, Ցուց. 840—841։

— 247. Դավիթ վրդ. Բաղիշեցի, մականուն «Բանասէր». Նորահայտ պատմիչ ԺԷ դարու։ Ծնվել ու սնվել է Բաղեշում, ուր ստացել է նաև իր ուսումը՝ Բաղէշի առաջնորդ Մեսրոպ արքեպիսկոպոսի մոտ։ 1641 թ. ընդունում է նրանից ձեռնադրություն և 1651 թվին կարգվում վանահայր Բաղէշի Խնդրակատար վանքի, որ և ինքն է նորոգում։ 1673 թվին ուխտի է գնում Լիմ, ուր և մեռնում ու թաղվում է նույն թվին։ Մնում է իր դամբանը և տապանաքարը։ Գրել է Ծաղկաքաղ պատմութիւն, որ սկսվում է Յաբեթից և գալիս է մինչև իր ժամանակը, քաղելով Խորենացուց, Փաւստոսից ևն, իսկ ավելի նոր ժամանակները Թովմա Արծրունուց։ Առանձին գլուխներ ունի Սասանեանց, Օսմանցոց, նաև Հայոց կաթուղիկոսների պատմության համար։—

Այս հեղինակի մասին խոսում է նախ Նոտարք (էջ 86), բերելով 4 կարճ հատվածներ (էջ 86, 123, 148, 210)՝ 1441—1463 թվերից։ Ավելի երկար հատվածներ ունի Ջեռ. Դաղեան, Ա. էջ 96—99. իսկ կենսագրությունը տալիս է Կիլիկեցի (կարծեմ Յ. Թոփճեանն է), Արարատ 1898, էջ 120—124, և ասում է թե պատրաստվում է հրատարակել նույն պատմիչի աշխատությունը, բայց մինչև այժմ խոստումը չէ կատարված։—Հայապ. 129։

— 248. Դաւիթ Մելքոնեան Սեբաստացի. 21 տարեկան երիտասարդ, բաղնիսի վարսավիր էր Սեբաստիայում. առաջարկում են դառնալ մահմեդական. երբ մերժում է, 20 օր անդադար տանջում են, վերջապես փոսի մեջ կիսովին թաղած՝ քարկոծելով նահատակում են «1677 թ».—Աղգապ. 2630, Manus. brit. mus. 180։ Նոր վկ. 504—517։

— 249. Դաւիթ Ա. Բերիացի, որ և Կարկառեցի. Նախապես Հալէպում վարդապետ էր. երբ Սսի Խաչատուր կաթուղիկոսը Երուսաղէմից վերադարձին Հալէպում Ասորոց կաթուղիկոս օծեց Անդրէաս Հալէպցի աթոռուն, Դաւիթ Բերիացին ես զայրանալով հինեց առանձին հակաթոռ կաթուղիկոսութիւն («1663 թ»)։ Մեռավ 1679 թ. և նրան հաջորդեց Ազարիա Կարկառեցին։—Ազգապ. 2589։ (Այն տեղեկությունը թե Դաւիթը բռնի խլել է Սսի աթոռը Գրիգոր Պիծակ կաթուղիկոսի ձեռքից և նստել է 1669—1673 թվերին իբր կաթուղիկոս Սսի՝ չգիտե Ազգապ.)։

— 250. Դաւիթ Սալաձորեցի (այսպես կոչված Կարնոյ մոտիկ Սալաձոր գյուղի անունով), մականուն Որբիկ. նախ սարկավագ էր, ապա եղավ քահանա և իր Նռանայ անուն աղջկա մահից հետո օծվեց վարդապետ։ Ունի զանազան տաղեր, որոնցից նշանավոր է Գովասանք ծաղկանց, որ հրատարակեց Նորայր Բիւզանդացին, Բանաս. 1901, էջ 87—129։ Տաղն սկըսվում է այսպես.

Օրհնեալ ես դու, Հայր երկնաւոր, անքննելի աստուածութիւն,
Կամիմ գովել սակաւ մի բան, միտքս տկար, խելքս է ի քուն,
Անդամալոյծ եմ ու համր, հաշմ և արուգ ու թոյլարիւն,
Ոտներս բեկեալ, ձեռներս կապած, ականջս խուլ, ծանր և
խորուն.

Մի քանի տող էլ ծաղիկների թվումից.

Նախ ձնծաղիկն ու չիգիտամ, բարդն ու խաժուակն յառաջագոյն,
Սոքա չորսն միաբանին ու ձայն ածեն ծաղկընկերոյն.

«Մտղկունք, զարթիք ի խոր քնոյն. քանի՞ պառկիք ներքև հողուն.
«Ելէ՛ք, զաշխարհ զարդարեցէք, բիւրք ի բիւրուց անթիւ անհունն»։
Ապա բուսնին ծառք և տնկունք, ծաղկին ծառներն պտղատուն,
Ցետոյ բերղօշն ու կոկոռոշն կու ջահառին ի հետ զամպուն,
Ցինկն ղեղին ծաղիկ ցնծայ, փայլէ, ծփայ մեջ ջրերուն.
Ջուրն ու չայիր չիման ծաղկունք ցնծան ի յետ ձնաբերնուն,
Լեռն ու մարմանդ ծաղիկ դառնայ, ծաղկունք ծաղկին ի սարերուն...»

Ընդամենը 134 տող է, որոնց վերջում տալիս է իր հիշատակությունը.
Խև Դաւիթն եմ, շատ դառեցայ, գլուխն առնում ծաղկըներուն,
Սակաւ ծաղկունքն ես եմ զովել, բաղում մնաց վարպետներուն,
Երկիրս Արզրում կասեն, Սալաձոր գեղս իմ օթևան,
Ով ոք որ «Հայր մեր» ասէ՝ լինի Աստուծոյ սիրական։

Հեղինակը համարվում է ԺԷ դարից.—Ցուցիկք, Բ. 126, Տաշեան, Ցուց. 460, 820, Ակինեան ՀԱ 1936, 495—501։

— 251. Դաւիթ Քանաքեռցի. ազգական պատմիչ Զաքարիա սարկավագի. Պարսից պետության կողմից նշանակվեց Կոտայքի և Անբերդի գավառատեռուչ (ԺԷ դար).— Զքր. սարկ. Ա. 18, 47, 66, 69, 73. Գ. 45. Այրարատ 179, 295։

— 252. Դաւիթ Սիւնեցի, 18-րդ դարի նշանավոր հայ զորավարը, որ սկսեց և գլուխ բերավ Սիւնեաց երկրի ապստամբության և ազատության գործը։ Հայտնի է ավելի սովորական Դաւիթ բեգ անունով։ Վրաց Թագավորի զորավարներից մեկն էր։ 50 կտրիճ հայեր հավաքած իր գլուխը, «1722 Թվին» եկավ Կապան (Ղափան) և հայոց ապստամբության գլուխն անցավ։ Իր առաջին գործն եղավ մաքրել իր հայրենիքը Թուրք ու պարսիկ խաներից և նրանց արբանյակ հորդաներից։ Հարձակվեց նախ Ղարա-Զոռլու ավազակ Թուրք ցեղի վրա, ջարդեց ու ցրեց նրանց։ Այս առաջին հաջողության վրա, 400 հայեր խմբվեցին նրա դրոշակի տակ։ Թուրքական Ջիվանշիրների ցեղը լսելով Դաւիթի գործերը, 16,000 հոգով արշավեցին նրա վրա. Դաւիթը իր 400 քաջերով նրանց դեմ դուրս եկավ և երկու օրվա կռվից հետո, ջարդեց ու փախցրեց նրանց իր երկրից դուրս։ Դաւիթի համբավը արդեն տարածվեց ամեն կողմ և Սիւնեաց զանազան կողմերից խումբ խումբ հայեր դիմում էին Դաւիթի բանակը։ Այսպեսով նրա զոր-

քի թիվը հասավ 7000-ի, որից 2000 գտնվում էր Դաւիթի ձեռքի տակ, իսկ մնացածը զանազան շրջաններում։ Դաւիթը նրանց վրա նշանակեց նոր զորավարներ, որոնց գլխավորներն էին Մխիթար սպարապետ, Աւետիք քահանա, Թորոս իշխան և Ստեփան Շահումեան։ Պարսից խաները տեսնելով որ շարժումը հետզհետե սպառնալի է դառնում, շտապեցին միանալ և Դաւիթի վրա արշավեցին։ Դաւիթը բոլորին հաղթեց և նրանց բերդերից մի քանիսը գրավեց։ Արշավեց նաև Նախիջևանի խանի վրա, բայց Ագուլեցի հայոց դավաճանությամբ պարտվեց և նրանց ահագին զորության տեղի տալով՝ քաշվեց իր երկիրը, ուր հիմնեց Հալիձորի ամուր բերդը և իր աթոռանիստը դարձրեց (1724)։ Դաւիթի զորավարները շարունակեցին կռիվը իրենց գավառներում։ Բարկուշատի Ֆաթալի խանը 12,000 զորքով արշավեց Զանգեզուրի Թորոս իշխանի վրա։ Իշխանը իր 4000 զորքով ջարդեց նրա զորքը և բանակը ետ փախցրեց։ Այդ միջոցին մի հայ մելիք (Երիցվանիկի մելիք Ֆրանգուլը) դավաճանությամբ թշնամու կողմն անցավ և Թորոսը շրջապատվելով՝ իր 3000 քաջերով ընկավ պատերազմի դաշտում։ Թուրքերը սիրտ առած՝ եկան պաշարեցին Մեղրի քաղաքը. տեղացիք սկսեցին դիմադրել. բայց անկարող էին դիմանալ պաշարողների ահագին զորության։ Այդ միջոցին օգնության հասավ Շահումեանը 2000 զորքով. Թուրքերը մնացին երկու սրի միջև և այնպես ջարդվեցին, որ 11,000 դիակ թողնելով դաշտում, ցիրուցան եղան։ Այսպես, կարճ ժամանակում Դաւիթը մաքրեց Սիւնիքը, խաների իշխանությունը խորտակեց և երկիրը իր իշխանության տակ առավ։ Հերթը հասավ Օսմանցոց հետ կռվելու։ Պարսից Թահմազ շահը, որ նստում էր Մազանդարանում, իր երկիրը աֆղաններից ազատելու համար սկսել էր բանակցություններ վարել Ռուսաց հետ և խոստանում էր Կասպից ծովի եզերքից մի քանի քաղաքներ նրանց տալ՝ օգնություն ստանալու հույսով։ Երբ Պետրոս կայսրը առաջացավ դեպի Դերբենդ, Բագու և Գիլան, Օսմանցիք զայրացան և Ռուսաց ոտքը արևելքից կտրելու համար՝ իրենց բանակը ուղարկեցին Պարսից վրա։ Օսմանցիք արագությամբ գրավեցին Երևանը, Նախիջևանը, Թավրիզը և Համադանը։ Լսելով Դաւիթի ապստամբությունը, Հաջի Մուսթաֆա փաշայի հրամանատարությամբ մի զորաբանակ էլ ուղարկեցին նրա վրա, Սիւնեաց երկիրը նվաճելու համար։ Օսմանցիների սարսափից՝ Դաւիթ բէգի զորքի մեծ մասը թողեց ու փախավ. այնպես որ Դաւիթի մոտ մնաց միայն 450 հոգի։ Օսմանցիք ա-

մեն կողմը գրավեցին և եկան Հալիձորը պաշարեցին։ Դաւիթը որոշեց մինչև վերջին շունչը կռվել։ Օսմանցիք 6 օր անընդհատ ռմբակոծեցին Հալիձորը, վերելակներով աշխատում էին բերդից ներս խուժել, բայց մեծ կոտորածով շարունակ ետ էին մղվում։ Սոսկալի եղավ 7-րդ օրվա հարձակումը, երբ առավոտից մինչև երեկո, 8 ժամ շարունակ թշնամի զորքը կռվելով, գնդակների տարափի տակ՝ ամեն գնով գրավել էր ուզում բերդը։ Օրը վերջանալու վրա էր և ամեն հույս սպառված։ Պաշարվածները երկընքից միայն օգնություն էին աղաղակում։ Հանկարծ Մխիթար սպարապետը և Աւետիք քահանան 300 քաջերի գլուխն անցած, բերդի ծածուկ դռնից դուրս թռան և թափվեցին թշնամի բանակի վրա։ Սոսկալի շփոթություն ընկավ Օսմանցոց մեջ. վրա հասած մթությունը մեծացրեց սարսափը և նրանք գլուխները կորցըրած՝ փախան, ցիրուցան եղան։ Օսմանցիք նոր զորք հավաքեցին և երկրորդ անգամ եկան Հալիձորը պաշարելու։ Դաւիթը մտածեց մի խորամանկ միջոց. գիշերանց, մատակ ձիերի մի երամակ արձակեց նրանց բանակի վրա. բանակի ձիերը կատաղած, հեծյալներին կոխոտելով՝ սկսեցին այս ու այն կողմ վազել. իսկ ինքը Դաւիթը հարձակվեց թշնամու վրա, կոտորեց ու փախցրեց (1726)։ Այս հաղթությունից հետո, Դաւիթը դիմեց Պարսից Թահմազ շահին և առաջարկեց նրան դաշնակցել և միասին կռվել Օսմանցոց դեմ։ Թահմազ շահը, որ նույնպես կռվում էր Օսմանցոց դեմ, լսելով Դաւիթի տարած հաղթությունը, սիրով ընդունեց առաջարկը, առանձին հրովարտակ ուղարկեց նրան և Սիւնեաց երկրի իշխանաց իշխան հրատարակեց՝ դրամ կտրելու էլ իրավունք շնորհելով։ Այս աջակցությունից քաջալերված՝ Դաւիթը Մեղրին, Օրդուպատը, Ագուլիսը, Ջաֆդուրը գրավեց ու մաքրեց Օսմանցիներից, և մինչդեռ ավելի էր ուզում առաջանալ, մահը վրա հասավ ու մեռավ իր իշխանության վեցերորդ տարում («1728 թ»)։—Դաւիթ բէգի պատմությունը տպված է նախ Վաղարշապատ 1871, այս վերնագրով. «Ընտիր պատմութիւն Դաւիթ բէգին և պատերազմաց հայոցն Խափանու»։ Ավելի ընդարձակ է Րաֆֆիի «Խամսայի մելիքութիւնները» և վիպական ձևով էլ՝ նրա «Դաւիթ բէկ» պատմական վեպը։ Տես նաև Լէօ, Հայկ. տպագր. հտ. Բ, էջ 351—383։ Առանձին հետաքրքրություն է ներկայացնում Մ. Ներսիսյանի հոդվածը «Դաւիթ բեկի շարժման արձագանքները Վասպուրականում և հարևան գավառներում» Տեղեկ. Արմֆանի 1941, № 5, էջ 73—75, 1722 թվին Լիմ

կղզում գումարված ժողովի մասին՝ հայկական ապստամբություն պատրաստելու համար Վասպուրականում։— Այս տարի (1944) Երևանում պատրաստվեց Դավիթ բեգի կինոնկարը թե հայերեն և թե ռուսերեն լեզուներով։

— 253. Դաւիթ Ե Էնեգեթցի, կաթողիկոս հայոց «1801—1807 Թ»։— Նախապես ուղարկվել էր Պոլիս, որպեսզի Ղուկաս կաթողիկոսի հաջորդի ընտրության ձեռնարկի (1800). այնտեղ ընտրվեց պատրիարք Պոլսի՝ Դաւիթ Բ Թիֆլիզեցի անունով (1800 ապր. 28)։ Քիչ ժամանակից մեկնեց Էջմիածին, ուր Երևանի խանի զինվորական օգնությամբ բռնի կաթողիկոս օծվեց (1801 թ.), մինչդեռ ազգի ընտրելին Դանիելն էր, որ կաթողիկոս օծվեց Բագրևանդում։ Այսպես սկսվեց Դավիթ-Դանիելյան վեճը։ Դավիթը մեծ դաժանությամբ վարվեց թե, Դանիելի և թե բոլոր նրա համակիրների հետ։ Բայց վերջապես Պարսից թագավորի հրամանով պաշտոնանկ եղավ, աթոռը հանձնելով Դանիելին (1807)։ Այնուհետև ապրում էր վանքում՝ առանձնակաց կյանքով։ Մեռավ 1817 թ. Եփրեմ կաթողիկոսի օրով։—Ազգապ. 3287—3348։

— 254. Դաւիթ փիլիսոփա, գրել է Դրուատ գովեստի Ստեփաննոս Նախավկայի. ձեռագիրը 1307 թվից է. ուստի հեղինակը ավելի հին։ Սարգիսեան (Ձեռ. Վենետ. Բ. 506) համարում է Դավիթ առաջնորդ Ս. Ստեփաննոս վանաց, Ժ դար։

ԴԱԽՈՆ, ար. ծագումը անհայտ։

— Դաւոն իշխան (աղվան թե պարսիկ), որ դավաճանաբար սպանեց Ստեփաննոս Աբլասադին՝ 830 թ.— Կղկնտ. Գ. ի։

*ԴԱԽՈՒՏ, արաբական ձևն է Դաւիթ անվան. տես անդ. հիշված է ԺԵ դարից. տես Տաշեան, Ցուց. 724։ Անցյալ դարում գործածական էր Պոլսում՝ արևմտյան տառադարձությամբ Տաւութ ձևով, բայց այժմ խափանված է։

*ԴԱԽՐԱՆ, ար. < արաբ. دوران davrān «շրջան, դարաշրջան, ժամանակաշրջան»։ Հիշված եմ գտնում մի անգամ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1477 թվից ուշ (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 218)։

ԴԵԳԱՑ, իգ. ծագումը անհայտ. անշուշտ այս ձևն է ենթադրում Դէկայ գրչությունը, որ իբրև իգ. անուն հիշված է մի անգամ, 1327 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 462։

*ԴԵԳԻՇ, իգ. < թրք. دگش degiš «փոխանակություն» բառից, ինչպես կա նաև Փոխան=Բադալ (տես այս անունները)։ Մի անգամ գտնում եմ ԺԵ դարում։

— Դեկիշ, կին Ստեփանոսի և մայր Մկրտչի, ժերձավոր Դովլաթխաթունի, որ Աղթամարում Հայրապետ աբեղային օրինակել տվեց Ավետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։

**ԴԵԹԱ**, իգ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԳ դարում։

— Դեքա, կին Սիմէոն քահանայի և մայր Վարդան քահանայի, որ իր 15 տարեկան Իգնատիոս անունով սարկավագ որդու համար գրեց մի Ավետարան՝ Գաւղասխ դաշտի Աղպինար գյուղում, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 174։

***ԴԵԼԻՂԱՐԴԱՇ**, ար. < Թրք. دلی‌قارداش deliqardaš կամ deluqardaš բառից, որ նշանակում է «գիժ եղբայր»։ Այս անունով մի գյուղ էլ կա Նոր-Բայազիտի մոտ։ Իբրև արական անուն հիշված է մի անգամ ԺԶ դարում՝ Տէլուղարտաշ ձևով (1513 թ. Օրբ. ժմ. 46=Սիսական 34ա)։

***ԴԵՀԿԱՆ**, ար. < պհլ. *dēhkān, պրս. دهقان dihkān «գյուղական ազնվական, գեղացի» բառից։ Հայերենում գործածական է նաև իբրև հասարակ անուն՝ «կալվածատեր, գավառապետ» նշանակությամբ։ Իբրև հատուկ անուն գործածական էր նաև Իրանցոց մոտ. հմմտ. ’Αδειγάνες Սելևկիայի մագիստրատը. հիշվում է դարձյալ իմաստունն Dihkān (Շահնամէ, հտ. 1, էջ 151).—Հիւբշ. 37, Justi 82։

— Դեհկան նահապետ Մամիկոնեան, որ Պարսից զորքով արշավեց Արշակ Բ-ի («350—368 թ.») վրա, բայց հաղթվեց ու սպանվեց Վասակի ձեռքով։—Բուզ. Դ. լբ։

**ԴԵՀՈՒԿ**, ար. ծագումն անհայտ.—Բառգիրք Երեմիայի գիտե դեհուկ «նպաստ կամ նուաստ» (այսպես անորոշ ձևով՝ էջ 75)։ Գործածված եմ գտնում մի անգամ ԺԷ դարում։

— Դեհուկ, գրիչ. օրինակեց Ավետարանը Երնջակի Նորաշէնիկ գյուղում, 1669 թ.—Ձեռ. Սևան. 15 ա, Սիսական 368։

+**ԴԵՂ**, ար. <հյ. դեղ «դարման» բառից, ինչպես ունինք Խոցադեղ, Դեղիկ.

— 1. Դեղ, իր եղբայր Մխիթարի հետ մի խաչքար է կանգնեցրել իր մյուս եղբայր Շաշի հիշատակին, 1262 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 134, Սիսական 175։

— 2. Դեղ, մի խաչքար է կանգնեցրել Նորավանքում, 1269 թ.—Սիսական 200։

— 3. Դեղ, կանգնեցրել է նույնպես մի խաչքար՝ 1286 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 134։

— 4. Դեղ, իբրև վկա հիշվում է Թանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.— Բանաս. 1903, էջ 32 (Նույնը գիտէ նաև Այրարատ 298, բայց չունի Դեղ անունը)։

— 5. Դեղ ոմն հիշված է նաև անթվական մի արձանագրության մեջ՝ իբրև նվիրատու Թանատի վանքի՝ Սիսական 123։

+ԴԵՂԻԿ ար. նախորդի փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ գործածված ԺԳ—ԺԴ դարում։

— 1. Դեղիկ, հայր Մխիթարի, որ հիմնեց Մարտիրոս գյուղը (տես այս անունը), 1283 թ.— Ցովսէփեան, Խաղբակեանք 45, 126, 148։

— 2. Դեղիկ (սեռ. Դեղկան), Արճէշում Դէոսկորոս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1331 թ.— Ջեռ. Վասպ. 177—8։

+ԴԵՂԻՆ, ար. < հյ. դեղին «դեղնագույն» բառից, ինչպես կա Թրք. Սարը', Սարի, Սարիբէգ՝ sarə «դեղին» բառից, որից և Սարեան ազգանունը. այսպես նաև Սարուխան։

— Դեղին, նշանավոր հայ բժիշկ. ունի բժշկական աշխատություններ. հիշված է Ամիրտ. անգ. 2, առաջաբանում՝ Մխիթար Հերացուց, Ահարոն, Ստեփաննոս և Ճոսլին բժիշկներից հետո, ուրեմն ԺԳ դարից.— Տաշեան, Ցուց. 199, Յովհաննեան, Հետազօտ. Բ. 414, 420.—Ակինեան, ՀԱ 1931, 708 դնում է ԺԳ դարի առաջին կեսից. իսկ Բասմաջեան, Ամիրտ. անգ. էջ իբ դնում է ԺԱ դարից և Վահրամ սպարապետի որդի Գրիգորի համար դեղագիր գրող բժիշկն է համարում։

ԴԵՂՁՈՒՆ, իգ. արդյոք հյ. դեղձան բառից աղավաղված. գտնում եմ գործածված երկու անգամ ԺԷ դարում։

— 1. Դեղձուն, դուստր Մարտիրոս քահանայի, 1608 թ.— Manus. brit. mus. 44 ա։

— 2. Դեղձուն ոմն, հիշված 1680 թվի մի հիշատակարանում, Ջեռ. Վասպ. 568։

+ԴԵՂՁԱՆԻԿ, իգ. < հյ. դեղձանիկ թռչունի անունից. նորակերտ հազվագյուտ անուն. տես Խորհ. Հայաստ. 1936, հունվ. 26, էջ 4։

*ԴԵՄԵՏՐ, ար. < հուն. Δημήτριος անունից, որ ծագում է Δημήτηρ ձևից, այն է Երկրագործության աստվածուհին = լտ. Ceres. բուն նշանակում է δῆμος+μήτηρ «Մայր երկրի» (Bailly 456)։ Իբրև արական անուն գործածական էր նաև հունաց մեջ. այս անունով են կոչվում Մակեդոնիայի և Ասորիքի մի քանի թագավորներ։ Այսպես են՝ Մակեդոնիայի թագավորներից՝ Դե-

մետր Ա 295—287, Դեմետր Բ 241—231, իսկ Ասորիքի թագավորներից՝ Դեմետր Ա Սոտեր, Մեծն Անտիոքոսի թոռը՝ 162—150, Դեմետր Բ Նիկատոր 146—125, Դեմետր Գ Երջանիկ, Ն. Ք. 94 թ։ Հույներից անցավ Հռոմայեցոց և գործածական էր Կեսարի և Օգոստոսի ժամանակ։ Հայտնի է օրինակ Demetrius շնական փիլիսոփան՝ Կալիգուլայի ժամանակ։ Քրիստոնեության ժամանակ այս անունը, թեև հեթանոսական, շարունակեց իր գոյությունը։ Այսպես՝ ունինք Դեմետրոս հայրապետ Աղեքսանդրիայի, Դեմետրիոս նահատակ Թեսաղոնիկեցի, Դեմետրիանոս սարկավագ վկա են։ Սովորական դարձավ հատկապես սլավական ժողովուրդների մեջ։ Ռուսաց մեջ կան Димитрий կամ Дмитрий անունով մի քանի թագավորներ, ինչպես և Վրաց մեջ։ Հայոց մեջ հին ժամանակ սովորական չէր. իսկ այժմ բոլորովին անգործածական։

— 1. Դեմետր *իշխան հնդիկ, որ իր եղբոր՝ Գիսանեի հետ վռնդվելով Հնդկաստանից, միասին եկան Հայաստան՝ Վաղարշակ թագավորի (Ն. Ք. 149—127) օրով և ստացան Տարոն գավառը։ Թոռները նրանց անունով կանգնեցրին Դեմետր և Գիսանե կուռքերը։—Զեն. 35.—սեռ.* Դեմետրեայ՝ *Զեն. 36, Վրդ. ժը։*

— 2. Դեմետրէ՝ *կուռք յանուն Դեմետր հնդիկ իշխանի. Լուսավորիչը կործանեց նրա տաճարը և տեղը հիմնեց Ս. Կարապետի վանքը։—Զեն. 32.—սեռ.* Դեմետրեայ՝ *Զեն. 8, 25, 33, 34, 41. Ցայմ. նոյ. 29. Դրնղ. 514.—տես և Խալաթեան, Զենոբ Գլակ 58, Սարգիսեան, Ագաթ. և իւր բաղմ. 126։*

— 3. Դեմետր *որդի Արձանի՝ մեծի քրմապետին Գիսանեայ. պատերազմի դուրս եկավ Լուսավորչի դեմ Տարոնում, բայց հաղթվեց և սպանվեց։—Զեն. 25, 27, 28, 30.—սեռ.* Դեմետրեայ՝ *Զեն. 29.*—Դեմետրեանք՝ *Վրդն. լա. 54։*

— 4. Դեմետ *նահապետ Գնթունեաց, ուղեկցեց Մեծն Ներսեսին (մ. «373 թ»)՝ առ Վաղես դեսպանության ժամանակ։ —Բուզ. Դ. ժա (այստեղ առանց* ր *վերջաձայնի է. ուստի և* Justi *82 բ և 5 այս անունը կցում է պհլ.* Admēt *անվան, որի բուն նշանակությունն է «հույս»)։*

— 5. Դեմետր *մարզպան, տեր Գագ բերդի. վախենալով Դավիթ Անհողին իշխանից, հավատափոխ եղավ և վրաց դավանությունն ընդունելով՝ նրանց օգնությունը խնդրեց։ Բայց Դավիթը հաղթեց նրան և բերդից վանեց (Ժ դար)։—Ասող. Գ. լ։*

***ԴԵՄՆԱՂՏ***, *ար. ծագումն անհայտ։*

— Դեմնտադտ նախարար հայոց. դեմ դրավ վրացի Միհրդատ թագավորին. բայց հետո ընկճվեց և Միհրդատը նստավ թագավոր հայոց (46 թ. ըստ Զամչ. Ա. 302)։ Նույն անձը Ն. Դուրեան (Ազգ. պատմ. 129) կոչում է Դեմոնտախս։ Իսկ Գրգչ. Բնն. պատմ. Բ. 303 Դեմոնտակ՝ մարզպան Հայոց։

ԴԵՍՈՒՄ, ար. ծագումն անհայտ։

— 1. Դեսում, հայր Հասանի, որ պատերազմում սպանել էր Սմբատին՝ որդի Վասակի՝ տեառն Խաչախանի (Գանձասար), շուրջ 1147 թ.—Հայապ. 387 (սեռ. Դեսմոյ ձևով)։—Սրանց գերդաստանը՝ Դեսումեանց ձևով հիշված է Հաղբատի անթվական մի արձանագրության մեջ, որ ունին Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 79 և Երզնկեանց, Հնախ. տեղագր. 35։

— 2. Դեսում իշխան, «պարկեշտ պատանի», Խաչենի Հասան-Ջալալ իշխանի հետ գնաց Թաթարաց Սարդախ խանին տեսության (ԺԳ դար).—Կիր. ծգ։

*ԴԵՍՊԻՆԱ, իգ. <հուն. δέσποινα «տիկին» բառից։

— 1. Դեսպինա կին Շնոփոր պարոնի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ 1487 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1927, 434)։

— 2. Դեսպինա անունը երկրորդ անգամ հիշված է 1581 թ. Ձեռ. Սեբ=ՀԱ 1927, 316։

† ԴԵՐԵՆԻԿ, ար. փաղաքշականն է Դերեն «որդի վանաց» բառի և բուն նշանակում է «ուխտական զավակ». արմատն է դերի «վանք» (տես Արմ. Բառ.) հմմտ. «Գրիգոր՝ անուանեալն Դերանիկ, որ թարգմանի ուխտիւք խնդրեալ ի Տեառնէ» (Արծր. Դ. գ). «Ու հայր նորա Սահակ կոչեաց մանկան անունն Դերեն, որ կոչի որդի վանաց» (Սուտ— Շապհ. 38)։ Արաբ պատմագիրների մոտ հիշատակված է ديراني Dairānī ձևով (տես REA 1, 420). ունինք նաև Դերեն զորավար պարսիկ (Զամչ. Բ. 286), որ սակայն պատահական նմանություն ունի մեր բառի հետ։

— 1. Գրիգոր Դերենիկ Գ. Արծրունի. տես Գրիգոր № 86.

— 2. Աշոտ—Դերենիկ, որդի Գագիկի, թագավոր Վասպուրականի. գահակալեց «937 թ». իբր զորավար Ապլղարիպ Հաւնունու դավաճանությամբ գերի ընկավ Թուրքերի ձեռքը, բայց նրա ձեռքով էլ ազատվեց «շուրջ 945 թ». գահակալել է մինչև «954—958 թ»։ Հիշված է պարզապես Դերենիկ անունով՝ Ասող. Գ. խզ. Վրդ. ծա. Ուռհ. 30—33.—սեռ. Դերենկանն՝ Ուռհ. 8, 34.—Դերենկայ՝ Սմբ. պատմ. 37. Ավելին տես Աբլխարիբ № 1։

— 3. Դերենիկ, պապ Կիւրիկէի Բագրատունւոյ՝ որդւոյ Գուրգենի. Աշոտ Գ Ողորմածի որդի Գուրգէն Ա-ն է (№ 20). տես անդ.—սեռ. Դերենկան՝ Կիր. 56։

— 4. Դերենիկ մեծ իշխան, որդի Գուրգէնի, եղբայր Գագիկի և Աշոտի, եղբօրորդի Սենեքերիմ թագավորի Արծրունեաց, որի հետ գաղթեց Սեբաստիա «1021 թ».—Վրդ. ծա.—ըստ Արծր. Դ. ժը՝ եղբայրն է Սենեքերիմի. բայց անշուշտ առաջինն է ճիշտ, որովհետև Սենեքերիմի եղբայրներն էին Շահնշահ և Գուրգէն։

— Դերենկ կրճատ ձևով գործածված է Ձեռ. Թաւր. 74 բ՝ անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1311 թվից ուշ։

ԴԵՐԵՒԱԳ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է 1604 թ. Ձեռ. Վասպ. 815 (եթե չէ վրիպակ)։

*ԴԵՒԴԱՏ, ար. < պհլ. Dēvdāt ձևից. հմմտ. զնդ. daevōdāta «դևերից ստեղծված», արաբ. Dīvdāδ հատուկ անունը (Հիւբշ. 37, 506). օր. Դեւդատ՝ որդի Ափշինի՝ ոստիկանին Ատրպատականի (Յհ. կթ)։

— Դեւդատ՝ զորավար Դաւիթ Կիւրապաղատի Տայոց. պատերազմեց Մամլանի դեմ (Ժ դար).—գրված Տեւդատ՝ Ուռհ 36։

Դեոսկորոս տես Դիոսկորոս։

*ԴԻԲԱԼԻԿ, ար. գրված է Տիպալիկ, որ ինձ թվում է՝ թե պետք է ըստ արևմտյան տառադարձության կարդալ dibalik և հասկանալ պրս. ديبا dībā «դիպակ, ոսկեհուռն ազնիվ կտոր»+ տճկ. lik մասնիկով, իբրև «դիպակացու»։ Գործածված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, որ թվի թե գրված է ԺԵ դարում (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 312)։ Ավելի ուշ ունենք Դիպալիկ 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646). կրճատ ձևով գրված է Տիպալ (Թորոս աղբ. Բ. 366) անթվական մի հիշատակարանում, որ գըրված է 1227 թվից ուշ։

*ԴԻԴԱՐ, ար. < պրս. ديدار dīdār «դեմք, երես, աչք, հայտնի» բառից։ Պարսից մեջ էլ կա գործածված իբրև անձնանուն. այսպես՝ Dīdār ʿAlīxān հնդիկ բանաստեղծ (Justi 83 բ)։ Հիշված է մեր մեջ Տիտար ոմն Ջուղայեցի՝ ԺԷ դար (Դրնդ. 460—462)։

*ԴԻԴԿԱՅ, իգ. < պրս. ديدگاه dīdegāh «դիտարան, դիտանոց» բառից։ Մի անգամ հիշված եմ գտնում ԺԳ դարում։

— Դիդկայ, կին Տուտիկի. միասին կանգնեցրին Երրորդության մատուռը՝ 1241 թ.—Արձ. Յովհաննավանքում՝ Բարչալու (Ե. Լալայեան, Ազգագր. հանդ. Է, էջ 342)։

*ԴԻԼԱՆ, ար. < Թերևս պրս. دل dil «սիրտ» բառի հոգնակի

dilān ձևից։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում. այսպես Դիլաճ 1578 թ. (Թորոս աղբ. Բ. 269), 1693 թ. (Սիսական 178 ա), 1710 թ. (Ձեռ. Վասպ. 1032), 1745 թ. (Ջամբռ 267, իսկ անդ՝ 274 գրված Տիլան), անթվական՝ բայց 1439 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Տաշեան, Ցուց. 50)։ Սրանից է Դիլանեան ազգանունը (Կովկաս և Պարսկաստան)։ Հմմտ. նաև Դիլաճչյան։

*ԴԻԼԱՆՉԻ, ար. < արևել. թրք. دیلنجی dilanči «մուրացիկ» բառից, որ և Դիլաճչի՝ ըստ տճկ. دیلنجی dilenǰi. գործածված է ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես՝ Դիլանչի 1575 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 809), Դիլանջի 1579 թ. (Կարապետ եպս.՝ Դոփեանք 137), 1582 թ. (Ձեռ. Վասպ. 696), 1644 թ. (անդ 276), Դիլանչի 1650 թ. (Ձեռ. Թաւր. 88 բ, Առաք. պատմ. 381), Տիլանջի 1621 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 133 ա), Դիլանչ 1629 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 110 բ), Դիլանջի 1678 թ. (Ձեռ. Վասպ. 1023)։

*ԴԻԼԱՆՋԱՆ, ար. կազմված է Դիլաճ բառից՝ ջաճ փաղաքշականով. մի անգամ գտնում եմ գործածված 1633 թ. (Ձեռ. Վասպ. 884)։

*ԴԻԼԱՔ, ար. < թրք. دیلك dilek «փափագ, ցանկություն» բառից։ Սրա կրճատ ձևն է Դիլօ։ Գործածվել է ԺԶ—ԺԸ դարերում։ Այսպես՝ Դիլաք 1557 թ. (Ձեռ. Վասպ. 657—8), 1600 թ. (Ձեռ. Կարին. 162), 1613 թ. (Ձեռ. Վասպ. 408), 1648 թ. (անդ 914), Դիլակ՝ անթվական (անդ 442), Դիլօ 1734 թ. (անդ 922), Տիլէկ 1653 թ. (Երեմ. չէլ. օրագր. 42, որ և Տիլակ՝ էջ 51)։

*ԴԻԼԲԱՐ, իգ. < պրս. دلبر dilbar «սրտագրավ, գեղեցիկ» բառից։ Գործածվել է ԺԶ—ԺԸ դարերում և մինչև այժմ էլ գործածական է։ Այսպես՝ Տիլպար 1566 թ. (Ձեռ. Թաւր. 132 բ), 1635 թ. (Ձեռ. Վասպ. 887), Դիլբար 1658 թ. (Ձեռ. Թաւր. 51 բ), Դիլպար 1708 թ. (Ձեռ. Վասպ. 563), Դիլբար 1731 թ. (անդ 1022), անթվական (անդ 870)։ Սրանից է Դիլբարեան ազգանունը, որ Արևմտահայոց մեջ ունի Տիլպէրեան ձևը։

*ԴԻԼԴԱՐ, իգ. < պրս. دلدار dildār «գեղեցիկ» բառից։ Երեք անգամ գտնում եմ գործածված ԺԷ դարում, 1601 թ. (Ձեռ. Վասպ. 797), 1622 թ. (անդ 861—2), 1695 թ. (REA 6, 91)։

*ԴԻԼԻՋԱՆ, ար. < պրս. دل جان dil-i ǰān «սիրտ հոգւոյ» ձևից. հիշված է մի անգամ Տիլիջան ձևով՝ 1544 թ. մի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարքունի 492, որ կրկնում է Կարապետ եպս.՝ Դոփեանք 99, բայց թվականը սխալմամբ դնում է 1344)։ Նույն անունից է Դիլիջաճ ավանը՝ Սևանի մոտ։ Պարս-

Պարսկաստանում էլ կա նույն անունով մի գյուղ՝ Ղումից Սպահան գնացող ճանապարհի վրա։

*ԴԻԼՇԱԴ, իգ. < պրս. دلشاد dilšād «ուրախասիրտ» բառից. իգական անձնանուն էր նաև Պարսից մեջ՝ ԺԴ—ԺԶ դարերում (կոչումներ տես Justi 84)։ Մեր մեջ վկայություններ ունինք ԺԵ դարից երկու անգամ և մի անգամ էլ 1601 թ։

— 1. Տիլշատ կին Ատոմ քահանայի, որ Խաչատուր անուն անձից ստացավ մի Ավետարան՝ 1418 թ.—Ձեռ. Վասպ. 313։

— 2. Դիլշատ խաթուն, դուստր Խաչերեսի և քույր Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Ավետարան, 1425 թ.—Ձեռ. Վիեն. Ա. 485։

— 3. Տիլշատ, դուստր Խոջա Ֆախրատինի և Ահլի Մելիքի, որ Բալուում Ավետիք աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1437 թ.—Manus. brit. mus. 30 բ։

— 4. Դիլշատ, կին Վարդանի և մայր Յովհաննէս վարդապետի, որ Գամաղիէլի վանքի վանահայրն էր և գրեց մի Ճաշոց՝ 1442 թ.—Նոտարք 128։

— 5. Դիլշատ, կին Սատաղայի և մայր Եղիշէ քահանայի, որ Բոլորաբերդում գրել տվեց մի Ավետարան, 1475 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 232։

— 6. Դիլշատ, մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1484 թ.— Rapport Belgique 39։

— Հիշված են նաև Տելշատ 1601 թ. (Ձեռ. Վասպ. 793) և Դիլշատ 1603 թ. (Ձեռ. Սևան. 7 ա)։

ԴԻԼՈՒՄ, ար. ծագումը անորոշ. գործածված է մի անգամ ԺԵ դարում։

— Դիլում, ազգական Մաթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

*ԴԻԼՔՈՒՇԱՏ, իգ. < պրս. دلکشا dilkušā «սրտաբաց, սիրտ բաց անող»։ Այս անունով հայտնի է Շիրազից քիչ հեռու գեղեցիկ մի պարտեզ՝ բանաստեղծ Շեխ Սաադիի գերեզմանի մոտ։ Կոչվում է նաև պրս. dilkušāde.—Մեր բառը կարող է ձևացած լինել այս վերջինից և կամ հյ. շատ բառից ստացած լինել վերջաձայն ավելորդ տ ձայնը։

— Դիլքուշատ կին Թանգրինի, որ Արճէշում Կարապետ քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1437 թ.—Նոտարք 111—2։

***ԴԻՄԱՌԻՈՍ**, *ար. < հուն* *Δμηάριος *ձևից, որ փաղաքշականն է* Δῆμος *կամ* Δῆμων *ար. անվան, ինչպես որ կա* Δημάριον *իգ. անունը, որ փաղաքշականն է* Δημώ *իգ. անվան։ Ծագում է* δῆμος *«երկիր» բառից։*

— Դիմառիոս, *մին եոթն խոստաձարակներից, որոնք նահատակվեցին Պարսիկներից՝ Գայլ Վահանի պատերազմների ժամանակ, «604 թ».—Մամիկ. բ.—նույնը Դիմառէոս ձևով՝ Յայսմ. սեպտ. 30։*

***ԴԻՆԱՐ**, *իգ. < պրս. և արաբ.* دينار dīnār, *որ կշռի և դրամի անուն է։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ—ԺԶ դարում։*

— 1. Տինար, *կին Կուրջի բէկի և մայր Խոջա Յակոբի, որ Խարբերդի Խուլէ վանքում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1482 թ.*—Bodleian *33։*

— 2. Տինար, *երեցկին Սարգիս քահանայի, որի մահից հետո նրա Աւետարանը վաճառեց 150 թանկայ դրամի՝ Յովհաննէսի որդի Դանիէլին, միջնորդութեամբ Ղարա-Քէշիշի, 1501 թ.— Բարխուտ. Աղուանից երկ. 9։*

***ԴԻՆԱՐԶ**, *ար. < պրս.* دينارزو dinārzū *«կրոնին փափագող» բառից. մի անգամ գտնում եմ սեռ. Տինարզին ձևով (Ջեռ. Թաւր. 83 բ) անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1393 թվից ավելի ուշ։*

***ԴԻՆԱՐԻԿ**, *իգ. նախորդ Դինար անվան փաղաքշական ձևն է։*

— Դինարիկ *(սեռ. Դինարկանն), թվում է կին Աբրահամի և մայր Խաչերես Լոռեցու, որ կալվածներ է նվիրել Բագնայրին, 1209 թ.—Արձ. Շիրակ 117։*

***ԴԻՆԱՐՄԱՄԱ**, *իգ. կազմված նախորդից+*մամա *բառից. հիշված է մի անգամ ԺԵ դար՝* Տինարմամա *ձևով* (Bodleian *22)։*

**ԴԻՆԻՈՍ**, *ար. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ՝ 1557 թ.—Ջեռ. Դադեան, Ա. 8 ա։*

***ԴԻՈՆԵՍԻՈՍ**, *ար. < հուն.* Διονύσιος *անունից, որ ծագում է* Διόνυσος *(գինու աստվածը՝ Բաքոս) անունից։ Ոմանք էլ մեկնում են իբրև «աստվածազգեցիկ»։ Այս անունով հայտնի է Դիոնեսիոս Արիսպագացին, որ Պօղոս առաքյալի քարոզութեամբ քրիստոնյա դարձավ և ձեռնադրվեց եպիսկոպոս Աթենացոց. նահատակվեց հրով (Գծ. ԺԷ 34)։ Հնուց գործածված չէ մեր մեջ. այժմ էլ անսովոր է. հիշվում է Դիոնեսիոս վարդապետ Երուսաղէմի՝ 1809 թ. (Ազգապ. 3390)։*

***ԴԻՈՍԿՈՐՈՍ**, *ար. < հուն.* Διόσκορος, *որ նույնպես արական անուն էր. ինչպես ունինք Դիոսկորոս (լտ.* Dioscorus*) եպս.*

Ալեքսանդրիայի։ Ավելի սովորական էր Դիոսկորիդես < հուն. Διοσκορίδης, լտ. Dioscorides, որով հայտնի են բազմաթիվ հույն նշանավոր անձինք։ Կազմված է Διός (սեռականն է Ζεύς «Արամազդ, հայր աստուածոց» բառի)+κόρος «մանուկ, որդի» բառերից և նշանակում է «աստվածորդի»։ Այս անունով, հատկապես հոգնակի Διόσκοροι ձևով հասկացվում էին Արամազդի երկու մանուկները՝ Կաստոր և Պոլլուքս, նավերի պաշտպան աստվածներ, որոնք փոթորկի ժամանակ երևում էին ծովի վրա՝ փոսփորային լույսի ձևով։ Այսպես են կոչվում նաև երկու փայլուն աստղեր։

— 1. Դիոսկորոս հայկազն, Պահլաւունեաց ցեղից, հայրապետ Հայոց հոկիսոնի. մեծապես օգնեց Յովհան Ոսկեբերանին, երբ աքսորված էր այնտեղ (404) և իր ամբողջ տունը նրան նվիրեց։ Սրա խնդրանքով գրեց Ոսկեբերանը՝ Լուսավորչի ներբողը, որի հունարեն բնագիրը կորած է, բայց թարգմանված կա հայերեն՝ 1141 թվից։—Ալիշան, Յուշիկք Բ. 42, 57, Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. դաղտ. 301, ZAPh 2, 300. տես նաև Ոսկ. քս. էջ ժ՝ հրատարակչի առաջաբանը։

— 2. Դիոսկորոս առաջնորդ Սանահնի. երբ Յովհաննէս—Սմբատը գժտվեց Պետրոս կաթողիկոսի հետ և բանտարկեց նրան, տեղը դրավ Դիոսկորոսին «1037 թ». բայց ապա Դիոսկորոսը նախատանքով վտարվեց «1039 թ» և սրտի ցավից մեռավ։—Վրդ. ծդ. Առաք. պատմ. 480.—այլուր գրված է Դեոսկորոս, ինչպես ունին Կիր. 51, Ուռհ. 76, 78, 179, Միխ. ատ. ԻԹ (=ԻԸ), Սամ. անեց. 107, Լմբ. մատ. 535, ինչպես և Վրդ. ծդ (հրատ. Էմինի).—սեռ. Դիոսկորոսի՝ Կիր. 51, 64, Դեոսկորոսի՝ Կիր. 51, Ուռհ. 77, 227 և Արձ. Թալինի (Այրարատ 139), որ 1040 թվին դեռ կենդանի է հիշում նրան։

— 3. Դեոսկորոս առաջնորդ կամ հայրապետ Սանահնի վանքի. հիշված է 1061— 1063 թ.— Մովսէսեան, Լոռի 49, 56, Ազգ. հանդ. Գ. 297, 299։

— 4. Դեոսկորոս քահանա, որդի Սիմէոն քահանայի, աշակերտ Դանիէլ եպիսկոպոսի. գրիչ. Արճէշում օրինակեց մի Աւետարան՝ Դեղիկ անուն անձի համար, 1331 թ.—Ջեռ. Վասպ. 178։

ԴԼԵՆ, ար. ծագումը անհայտ։

— Դլեն որդի Խաղբակի Ա. երկու գյուղ նվիրեց Տաթևի վանքին՝ 1046 թ. և ապա՝ Գրիգոր Դ եպիսկոպոսի ժամանակ, մի ուրիշ գյուղ վաճառեց նույն վանքին.—Օրբ. ծէ.— սեռ. Դլենոյ՝

Օրբ. հ.—բց. ի Դլեճէ՝ Օրբ. ծգ, ծթ.—Դլեճեանց՝ Օրբ. հ.—Յովսէփեան, Խաղբակեանք 28, Միսաքեան 204, 231, 260։

*ԴԽՏԻԿ, իգ. < իրան. duxt «աղջիկ» բառից. հմմտ. Դուխտա < զնդ. duγδō-vā-՝ կին Pourušaspa-ի և մայր Զրադաշտի. (ծագումը տես Bartholomae 748 և Justi 86 բ). ավելին տես Դստրիկ։

ԴՂԱԿ ուղղելի ԳՂԱԿ, որ տե՛ս։

— Դղակ մարզպետ. պաշտոնավարել էր Արշակ Բ-ի և Տիրան Բ-ի ժամանակ. Հայր մարզպետի սպանությունից հետո հաջորդեց նրան. Պապը նշանակեց Հայաստանի արևելյան սահմանապահ. դավաճանությամբ միացավ Պարսից, ուստի Պապի հրամանով սպանվեց։—Բուզ. Ե. գ.—Դգղակ՝ Բուզ. Ե. գ.—սեռ. Դղակայ՝ Բուզ. Ե. գ։

+ԴՇԽՈՅ, իգ. < հյ. դշխոյ «թագուհի» բառից, ինչպես ունինք համանիշ Թագուհի, Սուլթան, Մլքէ, Վասիլիկ իգ. անձնանունները։ Ամենահին հիշատակությունը 628 թվից է. այժմ էլ գործածական է Դշխուն ձևով. ավանդված է բացի Դշխոյ ուղիղ ձևից, նաև Դշխու, Դժխոյ, Դժխու, Դշխուն, Դշխոն, Դշխոյն (սեռ. Դշխոյնին), ինչպես նաև Դշխուհի, Դշխոյմելիք, Դշխուխաթուն ձևերով։ Զէյթունցոց մոտ գրված է Դէշխուն՝ 1724 և 1737 թվերին (տես ՀԱ 1894, էջ 50)։

— 1. Դժխոյ, հիշված է Բագարանի արձանագրության մեջ, 628 թ.—Կոգեան, Կամսարականները 137։

— 2. Դշխու, դուստր Բարսեղ քահանայի և քույր Նորաւգէս կամ Ներսէս քահանայի, որ էր գրիչ ի Սեբաստիա, 1222 թ.—Տաշեան, Ցուց. 558։

— 3. Դշխոյ, դուստր Լևոն Գ-ի և քույր Հեթում Բ-ի. մեռավ 1278 թ.—Ջամչ. Գ. 270, 279։

— 4. Դշխուն տիկին, դուստր Առաջպարոնի և կին Պարոնպապի. Ասպաերուկ գյուղում Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132), Նոտարք 181։

— 5. Դշխոյ, դուստր Գրիգորի և քույր կոշկակար Մարտիրոսի, որ Աշոտաց երկրի Անկինաց վանքում գրել տվեց մի Ավետարան, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588, Այրարատ 52 ա։

— 6. Դշխոյ, դուստր Շահամիրի, որ Սարգիս վարդապետին գրել տվեց մի Ավետարան, 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 264։

— 7. Դշխոյ, ազգական տանուտեր Պետրոսի, որ ստացավ մի

Աւետարան՝ գրված Զաքարիա գրչի ձեռքով, Վանում, 1495 թ. —Թորոս աղբ. Բ. 276։

† **ԴՇԽՈՅՄԵԼԻՔ**, իգ. < հյ. դշխոյ «թագուհի» բառից + մելիք։

— Դշխոյմելիք, կին Աղների, որ գրել տվեց մի Աւետարան, Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ազուլ. (Արար. 1911, 219)։

† **ԴՇԽՈՒՀԻ**, իգ. < հյ. Դշխոյ «թագուհի» բառից, որի վրա բոլորովին ավելորդ տեղը գրված է իգականակերտ-ուհի մասնիկը, իբր թե դշխոյ արական լիներ։ Հնից ունինք Դշխոյէ ձևով (ԺԶ դար)՝ Տաշեան, Ցուց. 102. այժմ գործածական է Դշխուհի՝ իբր ավելի գրական ձև!!

**ԴՈԴՈՆՈՅ**, ար. ծագումն անհայտ. մի անգամ վկայված է ԺԵ դարից և է՝

— Դոդոնոյ, հայր Թրիկի՝ նշանավոր բանաստեղծի ԺԵ դարու։—Ցուցիկք, Բ. 125։

***ԴՈԴՈՒՍՈՒԼԹԱՆ**, իգ. ըստ իս պետք է կարդալ Դոնդուսուլթան, իբր Թրք. دوندی سلطان döndü-sultan «սուլթան դարձավ»։ Մի անգամ գտնում եմ հիշված 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 14 բ, 15 բ)։ Հմմտ. Դոնդիշահ:

**ԴՈԼԱՆ**, ար. արդյոք պրս. دولانه dūlāne բառից, որ նշանակում է «պտուղ մի, որ լինի ի պարտիզի և ի լերին. բայց որ լինի ի պարտիզի, համեղ է և թթուաշ սակաւիկ ինչ, և ունի զնմանութիւն կարմրերանգ խնձորոյ, բայց փոքր է քան զխնձորն, և ի միջի իւրում որպէս շլոր ունի զմի միայն կորիզ. և է օգտակար ստամոքսի և թոքոյ»։ Մի անգամ գտնում եմ հիշված Դօլան ձևով ԺԷ դարում (Ձեռ. Էջմ. № 1655)։

**ԴՈԼՆՏԱ** կամ **ՏԱԼԻԹԱ**, իգ. դուստր Մլեհ իշխանի Ռուբինեանց (մ. «1175 թ»), մոր կողմից Պահլաւունի. ամուսնացավ Ժիպլէի փռանկ իշխան Բերտրանի հետ։—Ալիշան, Շնորհ. էջ 327։

***ԴՈԼՈՒ**, ար. < Թրք. طولو dolu «լիքը, առատ» բառից. մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 32 ա)։ Սրանից է Դոլուխան և այստեղից էլ Դոլուխանեան ազգանունը, որ գործածական է այժմ էլ Կովկասում։

***ԴՈԼՈՒՄ**, ար. երևի նույն Դոլու բառն է, Թրքական մ ստացական հոդով. գրված է Դօլում, 1706—14 թ. (Ջամբռ 165, 286)։

† **ԴՈԽԻԿ**, < հյ. դոխ «աղանձի» բառի փաղաքշականն է,

իբրև «աղավնյակ». սկզբում արական էր, ըստ որում աղավնի թռչունը կարող է լինել թե արական (վարուժան, pigeon) և թե իգական (pigeonne, colombe). այսպես՝ արական է Ջեռ. Սեբ. (=ՀԱ 1926, 44) անթվական մի հիշատակարանում. իսկ այժմ Շիրակում կենդանի է, իբրև իգական անուն։ Սեռն անստույգ է Թորոս աղբ. Բ. 366 անթվական հիշատակարանում, ուր գրված է Տաւղիկ ձևով։

*ԴՈՂՄԻՇ, տր.< թրք. دوغمش doġməš «ծնված» բառից. հիշված է 1666 թ. (Ջեռ. Սանաս. 5 բ) և նույն թվին՝ Սմբատեանց, Երնջակ 282։ Անթվական է Տողմիշ (Արցախ 386)։

*ԴՈՄԻՆԻԿՈՍ, ար. < լտ. dominicus «տերունի, տերունական» բառից. հմմտ. dies dominicus «տերունական օր, կիրակի»։ Իբրև անձնանուն գործածական էր Լատինների մոտ. ինչ. Դոմինիկոս նահատակ Աֆրիկեցի, Դոմինիկոս, որ 1215 թվին Toulouse քաղաքում հիմնեց Դոմինիկեան կրոնական կարգը՝ ալբիգեցի աղանդավորների դեմ (Ֆր. Dominique)։ Մտել է մեր մեջ Ունիթոռների միջոցով և գործածական է եղել միայն նրանց շրջանում. ինչպես որ այժմ էլ կա կաթոլիկ Լեհահայոց մեջ։ Համազորն է Կիրակի, Կիրակոս։

— 1. Դոմինիկոս ֆրա, որդի Առաքելի, գրիչ. ունիթոռական. օրինակել է «Համառօտ հաւաքումն յաղագս հոգւոյ» և այլ կաթոլիկական գործեր, 1360-ական թվերին։—Ջեռ. Բեռլինի, 58 ա։

— 2. Դոմինիկոս Ատանացի, իր ընկեր Ստեփանոսի հետ կրետական նավով Իտալիա էր գնում վաճառականության համար։ Մեսինական պատերազմական մի նավ Դալմացիայի ծովափում բռնեց այդ նավը (1583 թ.) և գերի քշեց բոլորին՝ համարելով թուրք։ Շատ տանջեցին նաև Դոմինիկոսին, որ վերջապես Վենետիկում կարողացավ հաստատել թե ինքը քրիստոնյա է և ազատվեց։—Սիսուան 262 բ։

— 3. Տէր Դոմինիկոս, մականուն Բուռդ, ունիթոռական, ուղևորվեց Հռոմ 1628 թ.—Սիսական 366—7։

— 4. Հ. Դոմինիկոս Նազարեան, ունիթոռական քարոզիչ. Ուրբանոս Ը պապի (1623—44) և Պրոպագանդայի ժողովի օժանդակությամբ, իտալացի քարոզիչ Պօղոս Պիրոմալլիի ժամանակ (1632—1654, իսկ 1654 թվին էլ եպիսկոպոս Նախիջևանի, հայագետ և մոլեռանդ վիճաբան) հիմնեց Ապարաններում կաթոլիկ դավանանքի տարածման համար դպրոց։—Սիսական 372։

— 5. Հ. Դոմինիկոս Ապրակունեցի. ունիթոռական Պատա-

բազմատուցյի (Միսալ) նոր սրբագրված թարգմանությունը Հռովմից Վենետիկ բերավ 1723 թ.—Սիսական 401։

ԴՈՄՆԷՍ տես Ադոն.

ԴՈՅՐ, ար. ծագումն անհայտ։

— Դոյր միակեաց, միաբանեցաւ Խորանաշատի վանքին (1224 թվից ուշ).—Թորոս աղբ. Բ. 274 (երեք անգամ)։

*ԴՈՆԱՄԵԼԷՔ, իգ. համարում եմ < Թրք. donaməš melek «զարդարած հրեշտակ» ձևից կրճատված. տես Դոնամիշ և Դոնաջան անունները։

— Դունամելիք, կին Տրդատի և մայր Լիանոսի, որ ստացավ մի Ավետարան 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

*ԴՈՆԱՄԻՇ, ար. < Թրք. دونامش donaməš «զարդարած» բառից. սրա կրճատ ձևն է Դոնա, որից ձևացել են Դոնաջան և Դոնամելիք անունները, որոնք տես։

— Տոնամիշ, որդի Սարգսի ստացողի (ԺԴ դար).—Տաշյան, Ցուց. 182 բ (սեռ. Տոնամշին ձևով)։

*ԴՈՆԱՋԱՆ, իգ. կազմված է կրճատ Դոնա ձևից (որ տես Դոնամիշ)+ջան փաղաքշականով. հիշված է Դոնաջան ձևով՝ 1747 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 47 ա)։

*ԴՈՆԴԻՇԱՀ, իգ. < Թրք. دوندی شاه döndü šah ձևից, որ նշանակում է «դարձավ թագավոր»։ Գտնում եմ մի անգամ հիշված Տոնտիշայ ձևով՝ ԺԶ դարում.—Ձեռ. Դաշեան, Ա. 12 բ։—Տես և Դոնդու։

*ԴՈՆԴՈՒ, իգ. < Թրք. دوندی döndü «դարձավ» բառից, որ կրճատումն է նախորդ Դոնդիշահ անվան։ Դոնդու ձևով գտնում եմ մի անգամ գործածված 1557 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 529)։

*ԴՈՆՄԱԶ, ար. < Թրք. دونمز dönmaz «չի դառնալ, յետ չի դառնալ» բառից, որ թվի թե Մնացական իմաստի մի այլ ձևն է։ Մի անգամ գտնում եմ հիշված Դոնմազ ձևով՝ մի Ցայսմավուրքում, որի թվականը չի հիշում՝—Ձեռ. Սևան. 17 ա։

*ԴՈՍՏԻ, ար. < պրս. دوست dōst «բարեկամ, սիրելի» և دوستی dōstī «բարեկամություն» բառերից։ Պրս. dōst, ինչպես և նրա փաղաքշականը دوستك dōstak գործածական էին Պարսից և Արաբների մեջ ԺԱ դարում և ավելի ուշ՝ երբեմն անձնանուն։ Օրինակները տես Justi 86 ա։ Մեր մեջ ունինք միայն՝

— Դոստի խօջա, մեծահարուստ հայ, որ Շահբէկի ձորում (Երնջակ) խնջույք է տվել Շահաբասին և նրա հրամանով շինել է Շահգիրդ ավանը։—Սիսական 362 ա։

*ԴՈՍՏԻԿ, իգ. < պրս. دوست dōst «բարեկամ, սիրելի» բառի փաղաքշականն է. հմմտ. Նախորդը։ Այս անունը մեր մեջ հիշված եմ գտնում մի անգամ Դօստիկ ձևով՝ 1751 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 6 բ)։

*ԴՈՎԼԱԹ, իգ. < արաբ. دولت dovlat «հարստություն, մեծություն, ինչք, պետություն» բառից։ Գործածական է մեր մեջ՝ սկսած ԺԴ դարից, ընդհանրապես իբր իգական, բայց երբեմն նաև արական, որի համար էլ ստացել է խաթուն, խանում, բէգ են մակդիրները՝ իբրև որոշիչ։ Կենդանի էր դեռ անցյալ դարում Պոլսում՝ իբրև արական անուն (Տէօվլէթ ձևով, որից էլ Տէօվլէթեան ազգանունը)։ Մի կողմից արևելյան և արևմտյան տառադարձության պատճառով (դ, տ), երկրորդ կողմից ov երկբարբառի արաբ, պարսիկ և թուրք արտասանության զանազանության պատճառով (ov. av, öv) և երրորդ կողմից էլ հայերենի մեջ վլ > լվ տեղափոխության պատճառով՝ ստացել է բազմատեսակ ձևափոխություններ, ինչպես կտեսնենք հաջորդ թվումների ժամանակ։

— 1. Դըւլաթ, հայր Մխիթարի, որ եղավ նվիրատու Բագնայրի, 1201 թ։—Արձ. Շիրակ 120։—Հիշված է այսպես. «Ես Մխիթար որդի Դըւալին», որ ուզում եմ կարդալ իբր Դաւլային, կրճատ Դաւլին. հմմտ. հաջորդը։

— 2. Դաւլայ, եղբայր Սիւնեաց իշխան Հասան Ջալալ Դաւլայի, որ Գանձասարի 1240 թվի մեծ արձանագրության մեջ հիշում է նրան սեռ. Դաւլին ձևով (Բարխուտ. Արցախ 173 և Շահխաթ. Բ. 371—2)։ Սեռականի այս կրճատ ձևից հանելով՝ ոմանք ենթադրել են ուղղական Դօլ ձևը, ինչպես օր. Հաղբատի մեծ տաճարի ժամատան գերեզմաններից մեկի վրա՝ Դօլ (Բժշկեանց, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 22—23, Լալայեան, Ազգագր. հանդ. Է, 400—401)։ Այս ձևով է մտածել նաև Ամիրդօլի հիշատակարանի գրիչը, որի մասին տես վերը՝ Ամիրդոլ անվան տակ։

— 3. Դովլաթ, դուստր Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 4. Դովլաթ, կին Մուրատի և մայր Մկրտիչ կրոնավորի, որ Ցուսկան որդու վանքում օրինակեց Տաթևացու Լուծմունք Սաղմոսաց Դաւթի, 1414 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 62 ա։

— 5. Դովլաթ, քույր Մարթայի, հոգևոր մոր Ցոհաննէս կրոնավորի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Բերկրիում, 1422 թ. —Ձեռ. Վասպ. 348։

— 6. Դովլաթ, ղավակ Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 486։

— 7. Դովլաթ, կին Օրպէլի և մայր Մկրտիչ վարդապետի, որ էր վանահայր Տէր Յուսկան որդու վանքի և հիշված է 1418, 1420 և 1432 թվերին (Նօտարք 61, 101)։

— 8. Դովլաթ, դուստր Պետրոսի, կին տանուտեր Առոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 9. Դովլաթ, կին Վարդան նշանավոր գրչի, որ Վանում օրինակեց մի Աւետարան՝ 1452 Թ.—Նօտարք 169։

— 10. Դաւլաթ, կին Վարդաշահի և մայր Մխիթար աբեղայի, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ճաշոց, 1457 Թ.—Նօտարք 185։

— 11. Դովլաթ, կին Սիրունի և մայր Գուլշատ խաթունի, որ Արծկէում, Ներսարենց Յակոբ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1464 Թ.—Նօտարք 219։

— 12. Տովլաթ, դուստր Մելքիսեդի և քույր Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 220)։

— 13. Դավլաթ, կին Մուրադի և մայր Յովան երեցի, որ Ծովքի Ս. Նշան վանքում օրինակեց Գանձարանը, 1478 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1847։

— 14. Դովլաթ (մուղդեսի), քույր Աւետիք աբեղայի Հաղբատեցույ, որ Երուսաղէմում օրինակեց Աւետարանը, 1484 Թ.—Manus. brit. mus. 25 բ։

— 15. Դաւլաթ, դուստր Ասիլի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Սարգիս երեցին, 1488 Թ.—Ձեռ. Վասպ. 241։

— 16. Դաւլաթ, եղբորթոռ Լիանոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 Թ.—Թորոս աղբ. Ա. 120.

— 17. Տաւվլաթ, ազգական Սիրատանի, որ Կեսարիայի Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1495 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 18. Տաւլաթ, կին Յովանէսի և մայր Սիլատանի, որ Կեսարիայի Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1495 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 19. Դովլաթ, դուստր Ստեփաննոսի՝ եղբոր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 Թ.—ՀԱ. 1887, 56 ա։

— Այս անվան այլ գրչությունները են Դաւլվաթ 1584 թ. (Այրարատ 172 ր), Դաւլւաթ 1596 թ. (Ձեռ. Վասպ. 748), Դաւլուաթ 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), Դօլվաթ 1733 թ. (Ձեռ. Վասպ. 1040), Դօլւաթ 1557 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 529), Տօլվաթ 1590 թ. (Ձեռ. Վասպ. 715), Դօլաթ (թիվը անհայտ. Ձեռ. Վասպ. 440), Տովլադ 1609 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 474). Իբր արական գործածության հնագույն թվականն է՝ Դովլաթ 1596 թ. (Ձեռ. Վասպ. 752)։—Դովլա ձևի վերջին հիշատակությունն է Դօլա 1694 թ. (ZAPh 2, 295)։

*ԴՈՎԼԱԹԲԷԳ, ար. < Դովլաթ անունից+բէգ: Հիշատակված է ԺԷ դարից. այսպես՝ Դօլվաթպէկ (Ջամբռ 286), Տօլվաթբէկ՝ (Ջքր. սարկ. Բ. 131), Դովլվաթբէգ 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3 ր)։ Առանց թվականի են Ձեռ. Սևան. 6 ա, Ձեռ. Վեննա. Ա. 414։

*ԴՈՎԼԱԹԻԱՐ, ար. < Դովլաթ անունից+պրս. یار yār «բարեկամ». ամենահին հիշատակությունը ԺԵ դարից է (տես տակը). այնուհետև հիշատակված է ԺԶ դարից. այսպես՝ Դովլաթիար 1512 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 646), Դօլւաթար 1557 թ. (անդ 529), Դաւլւաթեար 1596 թ. (Ձեռ. Վասպ. 749), իսկ առանց թվականի են՝ Դօլվաթար (Ձեռ. Վեննա. Բ. 419), Դաւվաթիար (Ձեռ. Սևան. 5 ա)։

— Տովլաթիար, որդի Սարգիս քահանայի, որդւոյ Յովհաննէս քահանայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան՝ 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

*ԴՈՎԼԱԹԽԱԹՈՒՆ, իգ. < Դովլաթ անունից+խաթուն բառից, որ այստեղ իգականի իբրև որոշիչ է գործածվում։

— 1. Տովլաթխաթուն, կին Յակոբ քահանայի և մեծ մայր Յակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն Ընծայութեան գիրքը՝ մոտ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 ր։

— 2. Տովլաթ խաթուն, հիշված է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի խաչքարի վրա՝ 1480 թ.—Շահազիզ, Ազգ. հանդ. VII, 72 և Ն. Նախիջևանի Ս. Խաչ վանքը, էջ 12։

— 3. Դովլաթխաթուն, դուստր Շաքարի. գրել տվեց Աւետարանը՝ Հայրապետ աբեղային Աղթամարում և նվիրեց Հոգոց վանքին, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

*ԴՈՎԼԱԹԽԱՆՈՒՄ, իգ. < Դովլաթ անունից+խանում բառից, որ այստեղ գործածվում է նախորդի նման իբրև իգականի որոշիչ։ Հիշատակված է ԺԷ դարից. այսպես՝ 1618 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 594), 1652 թ? (Ձեռ. Վեննա. Ա. 762)։

*ԴՈՎԼԱԹՂՈՒԼԻ, ար. < Դովլաթ անունից+թրք. قلی quli «ծառան». հիշատակված է ԺԵ դարում. այն է՝

— Դովլաթղուլի, երկու վաղամեռիկ որդիք Խոջա Ատոմի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան՝ 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

*ԴՈՎԼԱԹՄԵԼԻՔ, իգ. < Դովլաթ անունից+մելիք բառից։ Հիշատակված է ԺԵ դարից։

— Տովլաթ-մելիք, կին ոսկերիչ Յովհաննէսի և մայր Ահլիմելիքի, որ Ավետիք աբեղային գրել տվեց մի Ավետարան, Բալու 1437 թ.—Manus. brit. mus. 30 բ։

— Այլ ոմն Տովլաթմելիք, իգ. անթվական մի հիշատակարանում (անդ, էջ 55 ա, 56 բ)։

*ԴՈՎԼԱԹՇԱՀ, ար. և իգ. < Դովլաթ անունից+պրս. شاه šāh «թագավոր» բառից։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Դովլաշահ, ժամակալ Բերկրիի Եղավանք ուխտի, 1422 թ. —Ձեռ. Վասպ. 349։

— 2. Դովլաթշահ (վրիպակով գրված Դըվաթշէն), ազգական բրուտ Ստեփանոս տանուտիրոջ, որ Վանում գրել տվեց մի Ավետարան՝ 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 3. Տովլաթշայ, քույր Մելիք-Ստեփանի և հորաքույր Զաքարիա Գ. (մ. 1464) կաթողիկոսի Աղթամարի. հիշված է մի արձանագրության մեջ՝ 1444 թ. —Ակինեան՝ Գաւազանագիրք 86, 108, Ազգագր. հանդ. Ի, 211։

— 4. Դովլաթշահ որդի Խոջա Ջօղի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 514—6 (գրված է սեռ. Դոլվաթշին, Դովլաթշին և կրճատ Դովլաթ ձևերով)։

— 5. Դոլվաթշահ (գրված սեռ. Դաւլուաթշին), որդի Դանիէլի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 6. Տաւլւաշայ, ար. հիշված է ԺԶ դարում.—Ձեռ. Դադեան, Ա. 12 բ։

— 7. Դովլաթշահ, ար. հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1311 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 73 ա)։

*ԴՈՎԼԱԹՓԱՇԱ, իգ. < Դովլաթ անունից+փաշա բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1597 թ. (Ձեռ. Վասպ. 753)։

ԴՈՐՈՆ, ար. ծագումը անհայտ։

— Դորոն որդի Զարեհի՝ թագավորի Փոքր Հայոց (Ծոփաց). հայրը նրան պատանդ ուղարկեց Մեծ Հայոց Արտաշէս թագավորի մոտ (163 թ).—Զամչ. Ա. 206։

ԴՈՐՍ, *ար. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ ԺԸ դարում (Ձեռ. Արգ. յավհ. 163)։*

ԴՈՒԱՍՑԻ, *իգ. ծագումն անհայտ. (գուցէ և տեղանունից). մի անգամ գտնում եմ հիշված 1664 թ. Սեբաստիայում, հետևյալ ձևով. «Մահտեսի Սարգիսն և կինն Դուասցին» (Ձեռ. Սեբ.= ՀԱ 1926, 551)։*

ԴՈՒԴԱՅ, *իգ, արդյոք պրս.* دودا dūda *«հին ազնվական ցեղ» բառից է։*

— Դուդայ *Մամիկոնեան, կին Պածածի և հարսն Լիպարիտի. նվերներ են արել Հաղբատի վանքին 1280 թ. գերեզմանը գտնըվում է նույն վանքում։—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 79. Երզընկեանց, Հնախ. տեղագր. 40,* Justi *86 բ։*

*ԴՈՒԴԱՐ, *ար.* < *պրս.* دودار dūdar *«մետաքսից, ոսկեթելից, ոսկուց, արծաթից, պղնձից կամ երկաթից շինված ճարմանդ»։ Հիշված է* Դուտար *ձևով՝ 1617 թ. (Ձեռ. Վասպ. 854) և* Դոդար *ձևով էլ 1490-ից ուշ գրված մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 5 բ)։*

ԴՈՒԼՈՒՍ, *ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է ԺԳ դարում։*

— Դուլուս, *սրա փեսան էր Խաչատուր շինականը, որին Խաւսաղ իշխանը երբ ճորտ նվիրեց Բագնայրի վանքին՝ 1262 թ.—Սարգիսեան, Տեղագր. 188—9, Շիրակ 116։*

*ԴՈՒԽԹԱՐ, *իգ.* <*պրս.* دختر duxtar *«դուստր, աղջիկ» բառից. համա. հյ.* Դստրիկ։ *Գործածված է ԺԳ—ԺԷ դարերում։ Գրվում է նաև Դուխտար, Թուխթար, Տուխթար են ձևերով (տես տակը)։*

— 1. Թուքեր, *քույր Յովաննէսի. երկուսն էլ դրամական օժանդակություն են արել այն Ավետարանի համար, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց Երեմիաս քահանան, 1283 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 644։*

— 2. Տուխթար, *կին Ջուլհակ Մամների, որ ոսկով, արծաթով և նկարներով զարդարեց այն Ավետարանը, որ Երուսաղէմում Երկայն Ստեփան գրչին գրել էր տվել Վարդիշխան քահանան՝ 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 346։*

— 3. Դուխտար, *դուստր Ստեփաննոսի և քույր Յոհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։*

— 4. Թուխտար, *քույր Մելքիսէթ երեցի, որ Ավան գյուղում օրինակեց Գանձարանը՝ 1453 թ.—*Bodleian *134։*

— 5. Դուխթար, կին Ստեփանոսի՝ եղբորորդւոյ տանուտէր Մանկտաւագի, որ Մցի գյուղում, Դուխթարի դրամական օժանդակությամբ գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 6. Թուխթար, կին կոշկակար Մարտիրոսի, որ Աշոտայ երկրի Անկիւնաց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 588, Այրարատ 52։

— 7. Դուխտայ, կին պարոն Հազարբէկի, որդւոյ Խնդուբէկի. մայրն է Շիրազմամա, որ նորոգել տվեց մի հին Աւետարան՝ 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— 8. Դուխտար, կին պարոն Սէթի և մայր Խոջա Յովսէփի, որ Տարոնի իշխանն էր և Մուշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 262։

— 9. Դուխտար, հարսն Աւետիք քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1480 թ.?—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։

— Ավելի ուշ թվերից հիշված են՝ Թուխտար 1504 թ. (Տաշեան, Ցուց. 55), 1507 թ. (Կամենից 161), Թուխթար 1654 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1864), անթվական Դուխտար (Տաշեան, Ցուց. 51), Տուղթար (Ձեռ. Վասպ. 572)։

*ԴՈՒԽԹԱՐՓԱՇԱ, իգ. < նախորդ Դուխթար անունից + թրք. փաշա: Մի անգամ գործածված եմ գտնում Թուղթարփաշա ձևով՝ 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594)։

ԴՈՒՀԱՐՇԱՀ, իգ. ծագումն անհայտ. (բայց արդյոք պետք չէ՞ կարդալ Դուհարշահ, որ տես վերը Գոհարշահ)։

— Դուհարշահ Կողբացի, կին Դավիթի. իր այգին նվիրեց Բագարանի մայր եկեղեցուն՝ իր զավակ Տիկնմամի հիշատակին, 1235 թ.—Սարգիսեան, Տեղագր. 204, Այրարատ 68։

*ԴՈՒՄԱՆ, ար. < թրք. دومان duman «ծուխ, մշուշ» բառից։

— 1. Տուման, որդի Ծերի, եղբայր Ասլանի, Սեբաստիա, 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107։

— 2. Տուման, հայր Մելիտոնի, որ ստացավ մի ձեռագիր (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 506 բ։

*ԴՈՒՆԻԱ, իգ. < արաբ. دنيا dunyā «աշխարհ» բառից։ Ամբողջական ձևն է Դունիախաթուն < արաբ. Dunyāxātūn (աշխարհի թագուհի). այս անունն է կրում օր. Իրաքի սուլթան Աբու-Սայիդ-Բահադուրի (1316—35) մայրը (Justi 87 ա)։ Մեր մեջ գործածված է սկսած ԺԴ դարից և գնում է մինչև ԺԷ դար։ Այժմ Կովկասում երբեմն հիշված Դունիա անունը կապ չունի սրա հետ և է ռուս. Дуня իգական անունից։

— 1. Տօնիա, կին Շիրինշահի և մայր Ներսէսի, որ էր առաջնորդ Յովհաննավանքի՝ 1318 թ.—Այրարատ 172։

— 2. Տաւնա, կին Ենովք քահանայի և մայր Աստուածատուր երիցի, որ Երզնկայի Թլակ ավանում Տարօնի Յովհաննէս Այծնախ եպիսկոպոսից գնեց Նրա գրած Աւետարանը, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 3. Դունիա խաթուն, կին ամիր Գուրջիբէգի և մայր Սմբատ թագավորի, որ օծվեց Աղթամարում 1466 թ.—Ակինեան՝ Գաւազանագիրք 108, 111. Ձեռ. Վենետ. Բ. 419։

— 4. Դունեայ խաթուն, կին Պարոնաւագի և մայր Ամիրբէկի, որ Մինաս դպչին գրել տվեց մի Աւետարան, Արճէշի Գայթիս գյուղում, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 424։

— Ավելի ուշ թվերից հիշատակություններ են՝ Տունիա 1515 թ. (Manus. brit. mus. 26 ա), Դունի (սեռ. Դունիյի) 1523 թ. (Ձեռ. Կես. ածած. 47 բ), Տունիա 1592 թ. (Տաշեան, Ցուց. 488 բ), Տունիա 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 232—3), Տունիա 1594 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 125), Տոնիա խաթուն 1602 թ. (Ձեռ. Վասպ. 188), Տանիա 1606 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167), առանց թվ. Դունայխաթուն (Թորոս աղբ. Բ. 273), Տօնիայ (Ձեռ. Վասպ. 114), Տանիա (անդ 829), Տօնեայ (Ձեռ. Հալէպի, Ա. 206 ա)։

*ԴՈՒՆԻԱԽԱՆՈՒՄ, իգ. < վերի Դունիա անունից. գտնում եմ մի անգամ հիշված Տօնախանում ձևով՝ 1636 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 237 ա)։

*ԴՈՒՆԻԱՄԵԼԻՔ, իգ. < պրս. dunya-melik «աշխարհի թագուհի» ձևից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝ 1535 թ. (Ձեռ. Թաւր. 88 ա)։

*ԴՈՒՆԻԱ-ՋԱՎԱՐ, ար. < պրս. دنیا جوهر Dunyā-ǰavhar «աշխարհի գոհար» բառից. մի անգամ հիշատակված եմ գտնում 1591 թ. (ՀԱ 1887, 56 բ)։

[ԴՈՒՆԻՆ, որին Վաղարշակ թագավորը կարգեց նահապետ Բասենի.—Զամչ. Ա. 214։ Արդյունք թյուրիմացության.—Խոր. Բ. ը «զՈրդունին» ձևը կարդացել է «զոր Դունին»]։

*ԴՈՒՌԴԱՆԱ, իգ. < պրս. دردانه durr-dāne «մարգարտի հատ» բառից. իգական անուն էր նաև Պարսից մեջ. հայտնի է օրինակ՝ Durdānah՝ դուստր Իսմայիլ-Աբդ-էլ-Ղաֆիրի և կին Նիւշապուրցի Իմամ Օմարի (մ. 1139 թ.) ըստ Justi 87։ Մեր մեջ հիշատակված ենք գտնում ԺԵ—ԺԹ դարերում. երբեմն սխալ գրված Դարդան, Դարդանէ։ Հնագույնն է՝

— Դուրդանա (սեռ. Դուրդանի), դուստր տանուտեր Պետրոսի, որ Վանում, Ազարիա քահանային գրել տվեց մի Ավետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 476։

— Ավելի ուշ թվականով հիշատակություններն են՝ Դուրդանա 1552 թ. (Ձեռ. Վասպ. 654), 1693 թ. (անդ 335), 1708 թ. (անդ 563—4), 1756 թ. (անդ 314), 1841 թ. (անդ 758)։ Անթվական են՝ Ձեռ. Թաւր. 73 ա և Ձեռ. Վենետ. Բ. 793։

*ԴՈՒՌՄԵԼԻՔ, իգ. < պրս. درّ ملك durri-melik «մարգարիտ արքայի». հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում. սխալ գրված Դուռնմելիք։

— 1. Դուռմելիք, կին Կարապետ գրչի, որ Աղթամարում օրինակեց Ճառընտիրը, 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 765)։

— 2. Դուռնմելէք, կին Ամիրբէկի և մայր Պաակ կամ Իգիտ կրոնավորի, որ Թաթարբէգի համար գրեց մի Ավետարան, Նաբեկ գյուղում, 1420 թ.—Նոտարք 62, Ձեռ. Վասպ. 327։

— 3. Դուռմելիք, կին Կարապետ քահանայի և մայր Դանիէլ քահանայի և Թումայ կրոնավորի, երկուսն էլ գրիչ, որոնք իրենց արտագրած ձեռագրերի մեջ հիշատակում են իրենց ծնողներին՝ 1418, 1433, 1436, 1444 թվերին.—Նոտարք 107, 135, Ձեռ. Վասպ. 311, 366, 375, 383։

†ԴՈՒՍՏՐ տես Դստրիկ։

*ԴՈՒՐԱԼԻ, ար. < թրք. دورالى duralə «քանի կա, քանի գտնվում է». համանիշ մի ձև է Դուրսուն, Մնացական և նման անունների։ Մի անգամ հիշված եմ գտնում 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 93, 94) և մի ուրիշ անգամ էլ 1603 թ. (անդ, էջ 99—100)։ [Հազիվ թե հյ. դուրալի ածականից լինի]։

ԴՈՒՐԱՆ, ար. այս անունով Alberūni արաբ պատմիչը հիշատակում է մի հայազգի սուրբ եպիսկոպոս, որի տոնախմբությունն էլ կատարվում է հոկտ. 2 (Justi 87 ա)։

*ԴՈՒՐԱՍԱՆ, ար. < թրք. دوراسن durásən «մնա, ապրիս» բառից, տարբեր ձև Դուրսուն անվան, որ է Մնացական։ Մի անգամ գտնում եմ հիշված 1698 թ. (Սմբատեանց, Երնջակ 230)։

*ԴՈՒՐՂԱՅԱ, մր. × թրք. دورقيا durqaya «կաց իբր ժայռ», որ մի այլ ձևն է Դուրսուն «Մնացական» անվան։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ)։

*ԴՈՒՐՂԱՆ, ար. < թթր. طورغان durġan «կանգուն, մնայուն» (Будагов 746 ա) բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված

Տուրղան ձևով՝ 1578 թ. (Ձեռ. Վասպ. 11.—Նույնը ունի նաև Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 188 Տուրղուն ձևով. բայց այս ընթերցվածը ճիշտ չէ. որովհետև թթր. durġun՝ կանգնած հանդարտ ջրի համար է գործածվում, իսկ durġan կանգուն մնայուն անձի համար)։

*ԴՈՒՐՄԱՋԱ, իգ. < Թրք. *dur-maǰa բառից, որ պիտի նշանակեր «կայուն, մնայուն», կազմված dur «կաց» արմատից՝ maǰa մասնիկով, ինչպես ունինք al-maǰa, at-maǰa, bil-meǰe են։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝ 1488 թվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վենետ. Ա. 492), արևմտյան տառադարձությամբ՝ Տուրմաճա ձևով։

*ԴՈՒՐՄԻՇ, ար. < Թրք. طورمش durməš «կանգուն, կանգնած» բառից. այլ ձև Մնացական կամ Դուրսուն անվան։ Հիշատակված եմ գտնում 1642 թվից ուշ (Ձեռ. Դաղեան, Բ. 33 ա)։ Տես և հաջորդը։

*ԴՈՒՐՄԻՇԽԱՆ, ար. < նախորդ Դուրմիշ անունից + խան։ Հիշատակված եմ գտնում Տուրմիշխան ձևով՝ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1475 թվից ուշ (Ձեռ. Մաղն. 35)։

*ԴՈՒՐՍՈՒՆ, ար. < Թրք. طورسون dursun «մնացէ՛, թող մնա, ապրի» ձևից, որ طورمق durmaq «մնալ» բայի հրամ. եզ. Գ դեմքն է։ Համազորն է Մնացականի։ Այս անունը տալիս էին մանկան, իբրև բարեմաղթություն երկար ապրելու, մանավանդ երբ նորածինները իրար ետևից մեռնեին։ Իբրև արական անձնանուն գործածական է նաև թուրքերի մեջ, որի հետևանքով կա նաև Մոլլա-Դուրսուն գյուղը՝ Էջմիածնի մոտ, այսպես կոչված ինչ որ Դուրսուն անունով Մոլլայի պատճառով։ Սրանից է Տուրսունխան ազգանունը, որ հիշում է Զամչ. Գ. 751, 1707 թվից։

— 1. Տուրսուն, որդի Աղբուղայի, որ էր թոռան թոռն Գրիգոր բարի իշխանի Խաչենոյ. իշխել է 1411—1430 թվականների միջև. Տուրսունի որդին՝ է Այտին (որ տես վերը № 4, ԺԵ դարի կեսերին).—Նոտարք 39, Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ, Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 45, 86, 89, 185. Շահխաթ. Բ. 359. Բարխուտ. Արցախ 208 (Խոթավանքի անթվական մեծ արձանագրության մեջ)։

— 2. Դուրսուն, հայր Միրզալիի, որ Գանձասարի Յովհաննէս կաթողիկոսի, Եղիա եպիսկոպոսի և այլոց հետ վկա է գրվում, 1458 թ.—Նոտարք 188։

— 3. Տուրսուն, որդի Պաստամի և թոռն մեծ իշխան Ջալալի. հող է նվիրել Գանձասարի վանքին, 1493 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 61, Շահխաթ. Բ. 375, Բարխուտ. Արցախ 178։

— 4. Տուրսուն հիշված կա նաև 1680 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 25 բ)։

†ԴՊԻՐ, ար. < հյ. դպիր բառից, ինչպես ունինք Տիրացու և Գրոց։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի արձանագրության մեջ, որ գրված է 1471 թվից ուշ։—Ջեռ. Վասպ. 466։

[ԴՌՈՎ, ար. այս անունով ունինք միայն Դռով իշխան Աղձնեաց, որին Տրդատը նշանակեց Վրաց երկրի կողմնապահ. բայց նա կաշառվեց հյուսիսայինների թագավոր Գեղահեոնից և թույլ տվեց նրան արշավել Հայաստան (Զեն. 43)։—Այս անունը ունին միայն Զենոբից 3 ձեռագիր. մյուս երկուսը դնում են «զիշխանն Աղձնեաց ԴՌ արամը»։ Զենոբը խարդախյալ գործ է. հեղինակը իր խարդախությունը պարտակելու համար գգուշանում է իշխանների անունը տալուց։ Դրա համար էլ նրա մոտ առհասարակ իշխանները առանց անվան են։ Նույնը կարծում եմ պիտի լինի և այստեղ. և ենթադրում եմ որ այլուստ բոլորովին անհայտ այս Դռով անունը մի սխալ ընթերցված է, որ առաջանում է «ԴՌ արամը» ձևից]։—Զենոբի նոր հրատարակության մեջ, որ լույս ընծայեց Աշ. Աբրահամյանը, Երևան 1941, էջ 126, թեև բնագրում գրված է Դռով, բայց ծանոթության մեջ ասված է «գուցէ և աղավաղված լինի Դռովը ԴՌ-ով-ից»։

ԴԱԼԻԿ (կա միայն սեռ. Դալկանն), ար. ծագումն անհայտ։

— Դալիկ, որի կինը՝ Դուհարշահ Կողբացի, իրենց գանձագին այգին նվիրել է Բագարանի Մայր եկեղեցուն՝ իր դուստր Տիկնամի հիշատակին, 1235 թ.—Սարգիսեան, Տեղագր. 204, Այրարատ 68։

†ԴՍՏՐԻԿ, իգ. < հյ. դուստր «աղջիկ» բառի փաղաքշական ձևից. հմմտ. Դուխթար։

— Դստրիկ տիկին Մամիկոնէից, կին Քաջն Վարդան Մամիկոնեանի, հարսն Ս. Սահակի.—Խոր. Գ. կէ։—Նույն անձը կոչվում է Դուստր Կոր. 25 և Դխտիկ Ասող. Բ. ա։

†ԴՐԱԽՏՈՒՀԻ, իգ. < հյ. դրախտ բառից կազմված նորակերտ հազվագյուտ անուն (Խորհ. Հյաստ. 1932, հունիս 4, էջ 1)։

*ԴՐԱՄԱՆ, որ և ԴՐԱՄ, ար. կարծում եմ արաբ. عبد الرحمان

ʿabd-ur-raḥmān *«ծառայ գթածին (Աստուծոյ)» անունից կրճատ-ված։ Հիշատակված է մի անգամ 1521—9 թ. (Ձեռ. Վենետ. 382—3)։*

**ԴՐԱՍՏԱՄԱՏ, ար.* < *պհլ.* darast *կամ* durust=*պրս.* درست durust *«առողջ, ուղիղ»*+āmat=*պրս.* آمد āmad *«եկավ» բառերից կազմված և նշանակում է «նա որ ուղիղ քայլվածքով եկավ»։ Հմմտ. առաջին մասի համար* Durust—ōi, *փաղաքշաբար* Da-rast—ōi *անունը. իսկ երկրորդի համար՝ ասոր. պրս.* Zūd—āmad *«շուտ, արագ եկող»,* Նիքամատ *«բարի եկող»,* Պերոզամատ *«յաղթական կերպով եկող» անունները (Հիւբշ. 38)։ Ըստ ավան-դության կա* Durust-āmad *մին երեք մոգերից, որ մանուկ Յի-սուսին այցելության եկան (*Justi *87 բ)։ Այս անունով մեր մեջ գիտենք միայն մի անձ՝ Դ դարից։ Նոր ժամանակներս Կովկա-սում վերակենդանացավ այս անունը, որի փաղաքշականն էլ դարձավ Դրօ։*

— Դրաստամատ, *իշխան Անգեղ տան, հայր մարդպետ, որ է ներքինապետ Տիրան Բ-ի և Արշակ Բ-ի։ Արշակի ժամանակ գերի տարվեց Պարսկաստան. Քուշանաց դեմ մեծամեծ քաջություններ գործելով, երբ Պարսից թագավորը առաջարկեց նրան խնդրել իր պարգև ինչ որ ցանկանար, նույն իսկ Պարսից թագավո-րության կեսը, Դրաստամատը խնդրեց թույլ տալ գնալ Անյուշ բերդը, մի օր տեսնել բանտարկյալ Արշակ թագավորին և մեծարել նրան։ Այդ խնջույքի ժամանակ, Արշակը հիշեց իր փառավոր անցյալը և հուսահատությունից դանակը իր սիրտը խրեց։ Դրաս-տամատը տեսավ իր տիրոջ մահը և ինքն էլ անձնասպան եղավ «369 թ»։—Բուզ. Ե. է.—Նույն տեղում կա նաև* Դրաստամատ *ձեռ.—սեռ.* Դրաստամատայ՝ *Բուզ. Ե. է։*

**ԴՐՈՒԱՍՊ, ար.* < *հպրս.* *Duruvāspa *ձևից, որ կազմված է հպրս.* duruva *«առողջ» և* aspa *«ձի» բառերից և նշանակում է «առողջաձի» (ձիերին առողջ կամ առողջ ձիեր պահող)։ Հմմտ. սանս.* Dhruvāçva *(մի իշխանի անուն) և զնդ.* Drvāspa *(մի աս-տուծու անուն).—Հիւբշ. 39,* Barth. Altir. Wört. *783։*

— Դրուասպ *իշխան պարսիկ, մտերիմ Տիրան Ա թագա-վորի (131—152 թ). խնամացել էր Վասպուրականի նախարար-ների հետ. Տիրանը պարգևեց նրան Տատեոնք ավանը և Երախ-նաւու Անձևացու մոտ օգնական կարգեց։—Խոր. Բ. կբ։*

*ԴՐԳՕ, ար. ծագումը անհայտ. անշուշտ կրճատված ձև է։*

— Դրպօ, իր եղբոր Յովսէփի հետ, տացել է մի Աւետարան և նվիրել Մլիանից եկեղեցուն, 1431 թ.—Նոտարք 97։

ԴՈՇ, իգ. անստույգ անուն. գործածված է միայն մի անգամ (Ջեռ. Վասպ. 165) անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1316 թվից ուշ։ Պետք է լինի իգական, որովհետև հիշված է իբրև կենակից Պօշի։

ԴՈՓ, իգ. ծագումն անհայտ. գրված է նաև Դաւփ, Դոփ, Դաւբ. բայց հնագույն և հարազատ ձևն է Դուփ, ինչպես ունի Կիր. լբ, լգ։ Այնուհետև բառը ենթարկվել է ու > օ ձայնափոխության, որ Ղարաբաղի բարբառում սովորական երևույթ է. համմտ. Յհնսկ. 192=Առաք. պատմ. 472, որ խոսելով Յովհաննէս վրդ. Տարեցու մասին (մ. 1583), ասում է. «յազգէ Դոփեայ և Հասանայ», Այս անունով նշանավոր է՝

— 1. Դուփ կամ Դօփ, դուստր Սարգսի, քույր Իւանէ աթաբէկի և Զաքարէ սպասալարի (Բ). կառուցել է Խաթրավանքի գավիթը՝ 1225 թ. ինչպես երևում է իր մի արձանագրությունից։ Որդիքն են Գրիգոր իշխան Խաչենեցի, Յովհաննէս եպիսկոպոս առաջնորդ Հաղբատի և Հասան իշխան։ Վէճ կա այն մասին թե՝ Դոփի ամուսինը Ղարա Գրիգորն է (ինչպես դնում է Միսական 37 Դոփեան տոհմի ազգահամարի մեջ), թե Հասան Ա։ Այս վեճերի մասին տես Գրիգոր № 377 և Հասան։ Գերեզմանը գտնվում է Հաղբատի վանքում։ Իրանով է սկսվում Դոփեանց իշխանական տոհմը, որ տիրել է Ծարի և Գեղամայ երկրին.—սեռ. Դուփին՝ Կիր. լբ, լգ. Արձ. Բջնիի 1303 թ. (Այրարատ 273), Դոփին՝ Արձ. Նորավանից 1312 թ. (Սիսական 198), Դաւփին՝ Արձ. Հերհերի 1317 թ. (Սիսական 116), Դափին՝ Օրբ. ժմ. 30, Դաւբին՝ Նոտարք 39.—Դոփենց տոհմ՝ Արձ. Եղեգիսի 1333 թ. (Սիսական 148), Դուփենի (անդ 165), Դաւբեան՝ Նոտարք 40, Դաւբեանց՝ Արձ. Մարցի 1285 թ. (Ազգ. հանդ. է. 350).—Շահխաթ. Բ. 362—3, Արցախ 195, Հայապ. 447, Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 64, Խաղբակեանք 19—20. Ջեռ. Դագեան, Ա. 89 ա, Կարապետ եպս.՝ Դոփեանք 44, 46, 55։

— 2. Դուփ անունը հիշվում է նաև Բաբխուտ. Արցախ 386 (թվականն անհայտ), իսկ էջ 406 էլ այնպիսի ձևով, որ հայտնի չէ թե ով ում որդին է. «Ի պարոնութեան Դուփին որդոյն Ուհան երէցու» (ի Ծար, 1279 թ)։

— — —

# Ե

*ԵԱԳՈՒՆԴ տես Եաղութ:

*ԵԱԴԻԳԱՐ, ար. < պրս. یادگار yādigār «հիշատակ» բառից: Իբրև անձնանուն գործածված է նաև Իրանցոց մեջ և սրանցից փոխառությամբ Վրաց մեջ. ինչպես՝ Yadkar որդի Դիմիտրի Բ Թագավորի Վրաց (մ. 1289), Yādkār ʿAli բանաստեղծ (Շահռուխի ժամանակ), Միրզա Եադգար Մուհամմէդ՝ թոռան թոռ Շահռուխի (մ. 1470), Եադգար եղբայր Սուլթան Բաբերի (մ. 1546 թ.) ևն (Justi 143—4)։ Մեր մեջ նույն հիշատակությունը 1402 թվից է և զանազան ձևերով գնում է մինչև ԺԷ դարի վերջերը, որից հետո խափանվում է։ Սրանից է Եդիգարեան ազգանունը (Կովկաս)։

— 1. Յետկար հայր Ներսէս երեցի, որ Երուսաղէմում օրինակեց Գանձարանը՝ 1402 թ.—Նոտարք 19։

— 2. Ետիկար, որի անունով մի խաչքար կա Աքքերմանի Ս. Աստվածածին եկեղեցու հարավային պատի վրա՝ երկաթագիր արձանագրությամբ՝ 1446 թվից, որի մասին խոսում են՝ Л. Меликсет-Беков, Арм. древности в Аккермане, էջ 30, Кучук-Иоаннесов, Стар. арм. надписи и стар. рук. в пределах юго-зап. Руси и в Крыму, էջ 32, Труды Вост. Комм. ИМАО, հտ. II, 3, էջ 64։

— 3. Յետկար աղա, Վայոց ձորի Հերմոնի վանքում, Եսայի գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1473 թ.—Բարխուտ. Արցախ 139։

— Սրանցից ավելի ուշ գալիս են Էտգար 1511 թ. (Ձեռ. Վասպ. 645. հիշվում են երկու հոգի, որոնցից մին արական է, մյուսը իգական), Յադգար 1515 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390), Յետկար 1542 թ. (Տաշեան, Ցուց. 488), Եադգար 1586 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ), Էտկար 1658 թ. (Ձեռ. Թաւր. 13 բ), Ետկար՝ ԺԷ դար (անդ 24 բ), Էդկար՝ ԺԷ դար (Ջքր. սարկ. Բ. 64), վերջին անգամ՝ Էդգար 1678 թ. (Ձեռ. Վասպ. 1023)։ Առանց թվականի են Եթգար (Ձեռ. Վասպ. 430), Էդգար (անդ 442), Էտքար (անդ 767), Ետկար աղա (Արցախ 266)։

— Այս անունը պետք չէ շփոթել Էտկար անվան հետ, որ գործածական է Արևմտահայոց կաթոլիկ համայնքի մեջ և փոխառյալ է ֆրանս. Edgar անունից (օր. Էդկար Շահին նշանավոր պարիզաբնակ նկարիչը, որ կաթոլիկ հայ է)։

*ԵԱԴԻԳԱՐՇԱՀ, ար. < պրս. Yādigār (տես վերը Եադիգար)

+šāh «թագավոր» բառերից։ Մի անգամ գտնում եմ գործածված Յադգարշահ ձևով 1649 թ. (Սրուանձտեանց, Հնոց և նորոց 127)։

*ՅԱԴԻԳԱՐՍՈՒԼԹԱՆ, իգ. < պրս. Yādigār (տես վերը Յադիգար)+sultān «սուլթան» բառից։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1269 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 96) Էդգար Սուլթան ձևով և մի ուրիշը՝ 1535 թ. Յատկարսուլթան ձևով (Ձեռ. Թավր. 88 ա)։

*ՅԱԴԻԽԱՆ, իգ. < պրս. یاد yād «հիշողություն. 2. նկար» բառից+xān, իբր թե «խանի նկարը կամ հիշատակը»։ Իբրև անձնանուն մի անգամ հիշված եմ գտնում 1666 թ. Յատիխան ձևով՝ Ձեռ. Դադեան, Ա. 49 ա։ Հմմտ. հաջորդը։

*ՅԱԴՇԱՀ, ար. < պրս. یاد yād «հիշողություն. 2. նկար» բառից+šāh, իբր թէ «շահի նկարը կամ հիշատակը». հմմտ. նախորդը։ Մի անգամ հիշված եմ գտնում հոգով Յատշէն ձևով՝ 1626 թ. (Թորոս աղբ. Բ. 255)։

*ՅԱԶԳՈՒԼ, իգ. < Թրք. یاز yaz «ամառ» և պրս. گل gul «վարդ» բառերից, իբրև «ամառնավարդ»։ Գործածական է այժմ Կովկասի գյուղերում։ Հնագույն հիշատակություններն են Յազկուլ 1642 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 332) և 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 13)։ ԺԸ դարից են նույնպես Յազգուլ ՀԱ 1890, 21 բ և Յազկուլ ՀԱ 1913, 692։ Վերջին ձևը ավելի հին է քան Յազկուլ, որովհետև հին հայերենը բառասկզբում չունի Յա, այլ միայն յա: Ըստ այսմ օտար անուններից Յաղութ, Յաղուբ նախապես գրվում էին Աղութ, Աղուբ և ավելի ուշ միայն դարձան Յաղութ, Յաղուբ։ Ճիշտ այսպես՝ Յազգուլ անունն էլ հնապես գրված է Ազկուլ. այսպես 1586 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 25 ա) և 1636 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 355)։ Բայց Ազգուլ անունը կարելի է բացատրել երկու ձևով. մին իբրև համառոտված Ազիզգուլ անունից (տես անդ) և մյուսը՝ իբրև Յազգուլ անվան նախաձևը։ Երկուսն էլ ստույգ են։—Այս անունը ունինք նաև շրջված ձևով՝ Գուլյազ (տես անդ), որ ավանդված է մեզ նաև Գուլիազ, Գիւլյազ և Գուլեազ ձևերով (վերջինը տես Նշանեան, Հրատ. Երեմ. չէլ. օրագր. էջ ԴԳ, 1700 թ)։ Բայց Գուլյազ կամ Գուլեազ անունը կարելի չէ մեկնել երկու ձևով, իբրև Գուլ-ազիզ ձևից համառոտված, և կամ Գուլի-եազ (ամառվա վարդ)։ Ստույգ է մի՛ միայն առաջինը, ինչպես գրել ենք մենք էլ. ըստ որում ոչ պրս. կարելի է ասել gul-i yāz (որովհետև yaz «ամառ» Թրք. բառ է) և ոչ էլ Թուրքերեն, որովհետև Թուրքերենում izafet չկա։

*ՅԱԶԻԼՈՒ, իգ. (նաև ար.) < Թրք. يازلو yazəlu, yazulu «գրավոր, գիր ունեցող, ճակատագրված»։ Հիշատակված է ԺԷ դարից սկսած՝ զանազան ձևերով. այսպես՝ Յազուլ (սեռ. Յազուլին) 1658 թ. (Ձեռ. Թաւր. 13 բ)։ Յազիլ (Ձեռ. Նոր-Բայազ. 9 բ 1576-ից ուշ գրված անթվական մի հիշատակարանում), Յազուլ՝ 1713 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 270), Յազլու՝ ար. 1814 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 785)։ Ունինք նաև Յազուլխան, Յազըլխան, Յազլխան՝ ԺԸ դար (Ձեռ. Թաւր. էջ 41—42)։ Այժմ խափանված է։

*ՅԱԶԻՋԻ, ար. < Թրք. يازيجى yazəǰə (հին ձևը yazəči) «քարտուղար, գրագիր». հիշված է 1772 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 15 ա. «ես մահտեսի Յազիչու եղպար Սաֆարս»)։ Կա և նույնի որդին՝ 1809 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 15 բ. «ես մահտեսի Յազիչու որդի մահտեսի Ստեփանս»)։

*ՅԱԽԳՈՒԼ, իգ. գտնում եմ մի անգամ հիշատակված 1661 թ. Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1872 (երկու անգամ գրված Յաղխկուլ ձևով)։ Ըստ իս ծագում է yax-gul ձևից։ Պարսկաստանում (Թեհրան) այժմ گل یخ gul-i-yax է կոչվում մի տեսակ վարդ, որ զուրկ է տերևներից և բացվում է ձմեռը։ Նշանակում է բուն «սառցավարդ»։ Սրա հակադիր ձևն է Խալխգուլ։—Այլ բառ է Աղգուլ, որ տես։

*ՅԱԽՇԻ, ար. < արևել. Թրք. یاخشی yaxši «լավ» բառից, որ նմանապես Թուրքերի մոտ գործածվում է իբրև անձնանուն (բայց իգական)։ Այս Յախշի ձևով ունինք մի անգամ 1674 թվից (Ձեռ. Դադեան, Բ. 46 բ). գործածական է նաև այժմ Ղարաբաղում։ Բայց հնագույն ձևն էր Ախշի, որի հնագույն վկայությունը ԺԵ դարից է (տես տակը)։ Ավելի ուշ ունինք Ախշիբէկ 1595 թ. (Ձեռ. Վասպ. 744), Աշխիբէկ 1600 թ. (Սմբատեանց, Երնջակ 147), իսկ առանց թվականի՝ Ախշիբէկ (Ձեռ. Վասպ. 395), Աշխիբէկ (անդ 215), Աղշիբէկ (անդ 273)։

— Աղշիբէկ, վաղամեռիկ որդի Թումայի՝ եղբոր Ղարիբշահի, որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.— Ձեռ. Վասպ. 502։

*ՅԱՂՄՈՒՐ, ար. < Թրք. ياغمور yaġmur «անձրև» բառից, որ նույնպես իբրև անձնանուն գործածական է. ինչ. Յաղմուր զորավար Լանկթամուրի (Այրարատ 274)։ Հայերենում պահված է երկու ձևով. Աղմուր (հին ձև) որ տես վերը, և ավելի նոր՝ Յաղմուր, որ Եղմուր գրչությամբ ավանդված է 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101 բ)։

*ԵԱՂՈՒԲ, ար. < արաբ. يعقوب Ya'qūb ձևից, որ սովորական է մեր մեջ Յակոբ ձևով (տես այս անունը)։ Եաղուպ ձևով ունինք ամենավաղ 1517 թվից (Ձեռ. Վենետ. Բ. 482), ավելի ուշ 1651 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 576), 1657 թ. (Տաշեան, Ցուց. 355), 1707 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 221 բ), Եագուպ 1629 թ. (Տաշեան, Ցուց. 692)։ Հնապես գրվում էր Աղուբ, որ տես առանձին, միջին ձևն է Յաղուպ՝ 1551 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 324 բ) և անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1463 թվից ավելի ուշ (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 133)։—Սրանից է Եաղուբեան ազգանունը Կովկասում և Տաճկաստանում։—Այժմ խափանված է։

*ԵԱՂՈՒԲՇԱՀ, ար. < արաբ. يعقوب Ya'qūb «Յակոբ» + պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Հնագույն հիշատակությունը ԺԶ դարից է. այսպես՝ Եաղուբշա 1585 թ. (Ձեռ. Վասպ. 650), Եաղուպշահ 1608 թ. (Դրնկ. 133), Եաղուպշա 1621 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 175 բ), 1692 թ. (անդ 30 բ), 1702 թ. (անդ 52 բ) և Յաղուպշա՝ անհայտ թվականով (անդ 133 բ)։ Ավելի հին ձևն է Աղուբշահ, որ տես վերը։

*ԵԱՂՈՒԹ, իգ. < պրս. և թրք. ياقوت yāqūt «հակինթ քարը» բառից. գործածական է եղել ԺԵ դարից սկսած զանազան ձևերով և այժմ էլ կարելի է գտնել հետամնաց տեղերում։ Այսպես՝ Եաղութ 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55), 1587 թ. (անդ 277), Յաղութ 1606 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167 բ), Եաղութ 1615 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41), 1651 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 576), Եաքութ 1796 թ. (Էֆիմ. 448), առանց թվականի՝ Եաղութ կամ Յաղութ (Ձեռ. Հալէպի, Ա. 289—290)։ Սղմամբ կամ համառոտագրությամբ գրված է մի անգամ Եղութ (Ձեռ. Վասպ. 584, թվականն անհայտ)։ Այս գրչությունը իրավունք է տալիս մեզ ասելու, որ Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա գրված Եղուբ անունն էլ, որ իգական է, 1611 թվից, պետք է ուղղել Եաղութ։—Այս անվան ավելի հին ձևն է Աղութ, որ գտնում է մինչև ԺԳ դար (տես առանձին)։—Բոլորովին տարբեր է սրանցից Յեայգունդ, ար., որ հիշված է 1611 թ. Ձեռ. Ագուլ. (Արարատ 1911, 222)՝ սեռ. յեայգունդին ձևով և փոխառյալ է վրաց. იაგუნდი ⴈⴀⴂⴍⴓⴌⴃⴈ «հակինթ քարը» հոմանիշ ձևից։

*ԵԱՇԱՅԻՇ, ար. < թրք. ياشايش yašayəš «կենցաղ, ապրուստ»։ Այս անունով ունինք միայն՝

— Յաշաիշ խոջա, Աղվանից երկրի առաջավորներից մեկը,

որ հիշված է Աղվանից կաթողիկոսի և եպիսկոպոսների հետ՝ 1423 թ.— Նոտարք 72։

*ՅԱՇԱՐ, իգ. < Թրք. یاشار yašar «կապրի» ձևից, որ Մնացական անվան մի ուրիշ նմանիշն է։ Մի անգամ գտնում եմ հիշված 1682 թ.՝ Բարխուտ. Արցախ 73 (տպ. Յաշաք, որ կարդում եմ այսպես)։

*ՅԱՍՄԻՆ, իգ. < պրս. یاسمین yāsemīn «հասմիկ» բառից, որի արևել. Թրք. ձևն է yasaman, իսկ Պոլսի տճկ. դարձած է yasemi. ըստ այսմ ունինք մեր մեջ Յասամին 1575 թ. (Ձեռ. Վասպ. 210), Յասմին 1660 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 151 բ), Յասմի (սեռ. Յասմուն) 1605 թ. (Թորոս աղբ. Բ. 439), Յասաման, որ հիշված 1719—24 թ. (Այրարատ 305)։—Սրանից հնագույն ձևն է Յսմին, որ տես առանձին։

*ՅԱՐ, ար. < պրս. یار yār «սիրելի, բարեկամ». մեր մեջ իբրև անձնանուն գործածված եմ գտնում 1581 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա) և 1674 թ. (անդ. 46 բ)։ Համտ. նաև Յարիկ, Յարում, Յարջան ևն։

*ՅԱՐԱԴԱՆ, իգ. < Թրք. یارادان yaradan «ստեղծող» բառից։ Այս բառը Աստուծո վերադիրն է և մարդու համար չի կարելի գործածել՝ Բայց Թուրքերենում սովորական է գեղեցիկներին ասել Yaradanəna qurban «Ստեղծողիդ մատաղ»։ Սրանից էլ ստացվել է այս անունը, որ մի անգամ գտնում եմ գործածված այլափոխյալ Յայրիտանն ձևով, 1656 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 85)։

Յարամիշ տես Արամիշ։

*ՅԱՐԴՈՒՄ, ար. < Թրք. یاردم yardəm «օգնություն» բառից. իբրև անձնանուն գործածված եմ գտնում մեր մեջ 1621 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 376) և 1658 թ. (Երեմ. չէլ. օրագր. 270). երկուսն էլ գրված Յարտում՝ ըստ արևմտյան տառադարձության։

*ՅԱՐԻԿ, ար. < պրս. یار yār «սիրելի, բարեկամ» բառից՝ հյ.-իկ փաղաքշականով. համտ. Մոլլա Յարի Շիրազեցի բանաստեղծ (Justi 145 բ)։ Հիշված է մի անգամ 1552 թվից առաջ գրված մի Ուրբաթագրքում (Տաշեան, Ցուց. 877)։ Գրված է Յճարիկ, որ պետք է կարդալ վերի ձևով։

*ՅԱՐԻՋԱՆ, ար. < պրս. یارجان yār-i-jān «հոգու սիրելին» ձևից։ Մեր մեջ իբրև անձնանուն գործածված է մի անգամ 1606 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 85)։ Սրանից էլ ունինք Յարճանեան ազգանունը (նշանավոր բանաստեղծ Սիամանթոյի ազգանունն է. ինքն էլ Ակնեցի էր)։

*ԵԱՐՂՈՒԼԻ, ար. < Թրք. یارقولی yar qulə «սիրելույն ծառան» ձևից. Իբրև անձնանուն գտնում եմ մի անգամ գործածված 1676 թ. (Սիսական 259) և մի անգամ էլ 1690 թ. (Սմբատեանց, Երընջակ 296)։

*ԵԱՐՈՒՄ, ար. < Թրք. یارم yarəm «սիրելիս, իմ սիրականը» ձևից. Իբրև անձնանուն գտնում եմ գործածված մեր մեջ մի անգամ 1635 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 476), որից և հաջորդը։

*ԵԱՐՈՒՄՋԱՆ, ար. < նախորդ անունից՝+ջան փաղաքշականով. մի անգամ գտնում եմ գործածված 1670 թ. (Ջեռ. Վասպ. 936). գրված է Յեարում ճան:

*ԵԱՐՎԵԼԻ, ար. < պրս. یار yār «սիրելի, բարեկամ»+արաբ. ولی valī բառերից (վերջինը տես Վալիչյան անվան տակ)։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ գործածված 1653 թ. (Ջեռ. Վեննա. Բ. 1037)։

*ԵԱՒՐԻ, ար. < Թրք. یاوری yavrī «ձագուկ» բառից. (հմմտ. Բալա և Ջագիկ անունները). գրված է նաև Եավրի. սրանից է Եավրուեան ազգանունը (Պոլիս). հնագույն գործածությունը ԺԵ դարից է (տես տակը). ավելի ուշ ունինք 1687 թ. (Ջեռ. Թաւր. 24 բ), 1694 թվին (Ջեռ. Վասպ. 998) և 1742 թ. (անդ 566), 1712 թ. (Ջեռ. Թաւր. 134 բ)։ Նույն անվան հնագույն ձևն է Ավրի, որ հիշում է Կրպտ. եպս.՝ Դոփեանք 137, 190, Ավրիբէկ ձևով՝ 1579 թ. (Նույն անունը գիտե նաև Սմբատեանց՝ Գեղարք. 610, բայց գրում է Եաւրի բէկ)։—Ըստ ակնաբույժ †Քրիստափոր Օհանեանի (Բագու) այս անունն է նաև (Իսրայէլ) Օրի, որ պետք է հասկանալ Աւրի=Ավրի=Եաւրի (անձնական տեղեկություն)։

— Եավրի, որդի պարոն Յովհաննէսի՝ եղբոր խոջա Բաղդասարի՝ ստացողի (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 724 (գրված Յեավրի)։

*ԵԳԱՆ, ար. < Թրք. یگن yegen «եղբորորդի, քեռորդի» բառից. Իբրև անձնանուն գործածված եմ գտնում 1658 թ. Եկան ձևով (Բարխուտ. Արցախ 74) և ԺԸ դարից՝ Էկէն ձևով (Աբր. կրետ. 31)։ Ըստ Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 38 Պարսից շահերից մին Ղարաբաղի մելիք Աւան Բ-ի անունը փոխելով դարձրել է Մելիք Եգեան (մ. 1744 թ.)։ Սրանից են Եգանեան և Մելիք-Եգանեան ազգանունները։

*ԵԴՈՒԱՐԴ, ար. < անգլ. ֆր. Edouard անունից, որ գործածական է հատկապես Անգլիացոց մեջ. այսպես՝ 901—1066 թվերին կան Անգլոսաքսոն 3 թագավորներ, իսկ 1272-ից մինչև 1910 թ. 7 թագավոր Անգլիական գահի վրա։ Կիլիկեցոց ժամանակից

ծանոթ է մեր մեջ Եդուարդ Այասցի՝ դեսպան Օշինի Կիպրոսում, 1311 թ. (ըստ Սիսուան 394 ր. բայց հայ է թե եվրոպացի)։ Այժմ այս անունը նորամուտ է մեր մեջ. հայտնի են Եդուարդ Ղարամեան մեծահարուստ հնդկահայ մեկենաս (մ. 1791) և Հ. Եդուարդ Հիւրմիւզ (1799—1876 Պոլսեցի)՝ Վենետիկի նշանավոր միաբաններից մեկը։ Նշանակում է «պահապան ընչից»։

*ԵԶԴԱՆ, ար. < պրս. یزدان yezdān «արարիչ Աստված» բառից. և որովհետև այս անունը չի կարելի տալ որևէ մարդու, ուստի պետք է ենթադրել թե կրճատված է Եզդանբախշ անունից, որ տես տակը։ Գրվում է Եզդան, Եզտան, Էզդան ձևերով։ Հնագույն հիշատակությունը 1557 թվից է (Ձեռ. Վասպ. 660), ապա 1602 թ. (անդ 802), 1648 թ. (անդ 914), ԺԶ դարից՝ 1671 թվից առաջ (տես իմ Քնն. և համտ. Եղնկայ, էջ 5), անթվական հիշատակությամբ՝ Ձեռ. Վասպ. 391, Քոսեան՝ Հայք ի Զմիւռն. Բ. 21)։

*ԵԶԴԱՆԲԱԽՇ, ար. < պրս. یزدانبخش Yezdānbaxš անունից, որ բուն նշանակում է «աստվածատուր կամ աստվածաշնորհ»։ Այս անունով հայտնի է Պարսից մեջ Վահրամ Չոբինի հակառակորդը (Justi 146 ա)։ Գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Եզդանբախշ որդի Արդուլմսեխի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460—1)։

— 2. Էզդանբախշ սարկավագ, Թուղթ էր կոկում, երբ Աղթամարում Ներսէս աբեղան գրում էր Աւետարանը՝ Թումայի համար, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

— 3. Եզդանբաղշ, հայր խոջա Ղուբաթի, որ Արաշ գեղաքաղաքում, Աղարիա դրչին գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 4. Եզդանբաղշ, որդի խոջա Ղուբաթի, որ Արաղ գեղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Նախորդի թոռն է.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— Նույն անունը հիշված է նաև 1512 և 1573 թ. Եզդանբախշ ձևով (Ձեռ. Վասպ. 83=85 և 678), Եզտանբաշխ 1631 թ. (Bodleian 139), անթվական՝ Էզդանբախ (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 218), Եզտանբաշխ (Ձեռ. Հալէպի, Ա. 272, 273, 275)։

*ԵԶԴԱՆՇԱՀ, ար. < նախորդ Եզդան անունից + šāh. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԳ դարում։

— Եզդանշահ, շինել է Արցախի Մցանիս գյուղում Ս. Սարգիս եկեղեցին՝ 1258 թ. Թվում է իր արձանագրությունը այս թվից,

ուր Բարխուտ. Արցախ 267 սխալ ընթերցմամբ կարդում է «Ես Եղան անշահ...» (ուղղել Եզդանշահ)։

*ԵԶԴԻԽԱՆ, իգ. հիշված է Եզտիխան ձևով 1691 թ. Նոր-Ջուղայում (Ձեռ. Թաւր. 10). ուստի կարելի է կարծել, որ առաջացած լինի Եզդի խան ձևից։ (Եզդը նշանավոր մի քաղաք է Նոր-Ջուղայի մոտ. հմմտ. և հաջորդը)։ Բայց կա նաև իրան. (ասորաձև) Yazdxān անունը (Է դար), որ Justi 149 ա մեկնում է «Yazd իշխան, Աստուածիշխան»։

*ԵԶԴԻԽԱՍ, իգ. հիշված է Եզտիխաս ձևով 1609 թ. (Bodleian 110), 1691 թ. (Ձեռ. Թաւր. 10 ա), նաև Եզդախաս 1701 թ. (Bodleian 207)։ Նախորդի հիման վրա առաջացած է Եզդի խաս ձևից.—Եզդ քաղաքը հայտնի է իր մետաքսեղեն խաս կտորներով։

*ԵԶԴԻՀՍԱՆ, իգ. < պրս. یزد Yazd «Աստված»+արաբ. احسان iḥsān «շնորհ» բառից, իբր «աստվածաշնորհ»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1533 թ. Էզդիփսան ձևով (Ձեռ. Վենետ. Ա. 578), որ և ուղղում և բացատրում եմ վերի ձևով։

*ԵԶԴԻՆ, ար. < պրս. یزدین Yazdīn անունից, որի մանրամասն բացատրությունը տես Յազդ։ Ավանդված է մեզ մեջ հետևյալ ձևերով.

— 1. Եզդի? (սեռ. Եզդու), հայր Ապլհասանի և Խատապի, որոնք մի այգի նվիրեցին Տեկորի վանքին, 1033 թ.— Արձ. Շիրակ 127, Շողակաթ 180։

— 2. Էզտին (հյց. վայրն զէզտին) ազգական տանուտեր Գեորգի, որ ստացավ մի Աւետարան՝ գրված Զաքարիա գրչի ձեռքով, Վան 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։

— 3. Էզտին (սեռ. Էզտինին), հիշված 1575 թ.—Ձեռ. Վասպ. էջ 210։

— 4, Եազտի, իգ! հիշված է 1685 թ.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, էջ 1015)։

*ԵԶԴՈՒՄ, ար. < պրս. یزد Yazd «Աստված» բառից՝ թրք. -um ստացական հոդով, իբր «Աստվածս»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1503 թ. Էզտում ձևով (Ձեռ. Վասպ. 128)։

*ԵԶԵԿԻԱ, ար. ծագումը տես հաջորդի մեջ. հապավյալ անուն. հիշված կա 1676 թ. (Ձեռ. Թաւր. 49 ա)։

*ԵԶԵԿԻԷԼ, ար. < եբր. יחזקאל Yeḥezqēl անունից, որ ծագում է חזק ḥzq «հաստատուն, ուժեղ, զորավոր»+אל ēl «Աստված» բառերից։ Այս անունով հայտնի է Եբրայեցոց նշանավոր մարգարեն Եզեկիէլ, որ չորս մեծ մարգարեներից մեկն է և մար-

դարեացալ Ն. Ք. 595—575 թվերին։ Մեր բառը տառադարձված է հուն. Ἰεζεκιήλ ձևից. հմմտ. նաև լտ. Ezechiel, ֆրանս. Ezéhiel, անգլ. Ezekiel, գերմ. Hezechiel են (Gesenius 222, 297)։ Կենդանի է մեր մեջ Զ դարից մինչև այժմ։ Համառոտված ձևն է Եզեկ, (կա նաև Զեկիէլ ձևը Թիֆլիսում ըստ Արևելք 1889, սեպտ. 30. հմմտ.. նաև տակը № 11)։ Սրանով այս անունը շփոթված է Եզեկիա անվան հետ, որ ուրիշ է. (ծագում է եբր. הזקיה Xizqiyā ձևից, որ դարձյալ նույն արմատից է. հմմտ. հուն. Ἐζεκίας, ասուր. Xazaķiyau, գերմ. Hiskia. Այս անունով հայտնի է Եզեկիա թագավոր Յուդայի՝ (երբ 726—698 Ն. Ք.)։ Այսպեսով ծագել է Եզեկեան ազգանունը։ Մինչև անգամ մարգարեի անունը շփոթելով թագավորի անվան հետ՝ գրված է Եզեկիայ մարգարէ (Տաշեան, Ցուց. 10, 1506 թվից առաջ գրված մի ձեռագրում)։

— 1. Եզեկիէլ դպիր, մասնակցեց Կողոսեայ նշխարաց գյուտին (560 թ).—գրծ. Եզեկիէլի՝ Կղկնտ. Բ. գ։

— 2. Եզեկիէլ աշակերտ Անանիա Շիրակացու «713 թ». տես Հերմոն։—Սամ. անեց. 85։

— 3. Եզեկ եպիսկոպոս, որին սպանեց Ապաղա խանը 1282 թ.—Սամ. անեց. շար. 162։

— 4. Եզեկիէլ գրիչ. օրինակեց Վարդանի Պատմությունը 1307 թ.—Աթան. յուշ. ժգ։

— 5. Եզեկիէլ ոմն ունիթոռական հայ, իր անկարգ վարքի համար վանավեց Հայաստանից. գնաց հաստատվեց Իտալիայի Ֆլորենցիա քաղաքը, ուր հայտարարեց իրեն փոխանորդ Պետրոսի, իր ընկերոջ, որ նստում էր Պադուա քաղաքում և խաբեությամբ հայտարարել էր իրեն՝ եպիսկոպոս Նազարեթ քաղաքի և պատրիարք Երուսաղեմի։ Բենեդիկտոս ԺԲ պապը (1334—1342), որ նստում էր Ավինիոնում, հրամայեց Ֆլորենցիայի եպիսկոպոսին՝ բանտարկել նրան։—Փափազեան, Պատմ. եկեղ. 590։

— 6. Եզեկիէլ եղբայր, բնակվում էր Վենետիկում, 1344 թ.—Հայ-Վենետ. 158։

— 7. Եզեկիէլ, իր երկու եղբայրների՝ Յովհաննէս կրոնավորի և Սիոն քահանայի հետ միասին, երեքով մի Տոնական գրել տվին Ստեփաննոս գրչին, Ուշտունեաց Տշող գյուղում, 1404 թ.—Նոտարք 21։

— 8. Եզեկիէլ սարկավագ, եղբորորդի Գէորգ վրդ. Երզնկացու (№ 102), որից ժառանգեց մի նշանավոր Աստուածաշունչ։ Կապուտ-վանքի միաբան Աւետիքը (№ 61) «վաճառեալ զամենայն ինչս

մեր, զոր ունէաք ի նախնեաց և յազգականաց», գնեց նոյն Աստուածաշունչը՝ 1425 թ.—Նօտարք 79։

— 9. Եզեկիէլ վարդապետ Տփղիսում, 1436 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 27 ա։

— 10. Եզեկիէլ, մերձաւոր Յակոբի, որ ստացավ մի Աւետարան, Երզնկա 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 11. Զիկեէլ, որդի Սարգիս երեցի, որ Ասիլ անուն անձից նվեր ստացավ մի Աւետարան՝ 1488 թ.— Ձեռ. Վասպ. 242։

— 12. Եզեկիէլ Հիզանցի, կոչված քօրօր, եղբայր Յովհաննէս քահանայ գրչի, 14[illegible]7 թ.—Տաշեան, Ցուց. 284։

— 13. Եզեկիէլ, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Խիզանում, Ռուզ տիկնոջ պատվերով գրեց մի Աւետարան, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

†ԵԶՆԻԿ, ար. < հյ. եզն բառից. հմմտ. Ցլիկ, Թրք. էօք ւզ, Բուղա, սանս. Ukşán, զնդ. Uxšan անձնանունները, որոնք նույնպես նշանակում են «եզ»։ Գործածական է եղել մեր մեջ Ե դարից սկսած. այժմ շատ սակավ։

— 1. Եզնիկ Կողբացի, աշակերտ Ս. Մեսրոպի. ուղարկվեց Եդեսիա և ապա Բիւզանդիոն «424 թ», ուսանելու և թարգմանություններ անելու համար։ Եղավ եպիսկոպոս Բագրևանդի և Արշարունեաց։ Մասնակցեց Արտաշատի ժողովին «449թ», պատասխանելու համար Միհրներսեհի նամակին։ Մեծ բաժին ունի Ե դարի առաջին թարգմանության մեջ, և հատկապես Ս. Գրքի երկրորդ թարգմանության՝ հունարենի վրայից, որի մի ընտիր օրինակը ինքը բերեց Պոլսից։ Իր ինքնագիր գործն է «Ընդդէմ աղանդոց» գիրքը, ամենաընտիր հայերենով։ Նրան են ընծայվում նաև Խրատք, Հարցմունք Աշոտոյ և Հարցմունք Արձանայ, որոնք սակայն հարազատ չեն։ Կանոնագրքում կա և «Եզնկայ Կողբացւոյ հայոց վարդապետի վասն պատրաստութեան հաղորդողաց» (տես Ձեռ. Բեռլինի, էջ 43 ա և Ձեռ. Վենետ. Բ. 947)։ Ունինք դարձյալ «Եզնկայ թարգմանչի՝ Յաղագս վեցօրեայ արարչութեան» (Ձեռ. Վենետ. Բ. 1212), որ և «Վասն արարչութեան աւուրց» (Ձեռ. Կարին. № 1092 զ և Tübingen, էջ 112)։—Եզնիկ Կողբացու գերեզմանը և մասունքը ցույց են տալիս Կողբում (տես Սմբատեանց՝ Գեղարքունի 429)։—Եզնիկ ձևով ունին՝ Խոր. Գ. կ. Կոր. 20, 21. Փ. Կոր. 16, 17. Եղիշ. 22. Փարպ. իդ. Վրթ. քերթ. պտկ. 307. Ասող. Բ. ա. Վրդ. իե (հրտր. Էմինի՝ Եզնակ). Եզն. եր. 267. ZAPh 1,206։—Եզնակ ձևով՝ Դաւ. անյ. 99. Կոր. 21.

Յհ. իմաստ. 66. Կիր. 16—17. Մ. մաշտ. 336 ա. Յայսմ. սեպտ. 17, հոկտ. 14, նոյ. 25, փետր. 19. Տարօն. Ա. § 80. Պատմ. սահ. 14. Տաթև. հարց. 543. Առաք. լծ. սահմ. 151, 170. Մին. համզ. 93. — սեռ. Եզնկայ՝ Եղն. Ա. ա. Կնիք հաւ. 51, 130. Օրբ. խա.—Եզնկանն՝ Պոռն. բրձր. 30. Եզնըկայ վարդապետի Խրատք, հրատ. Եզնիկի վերջում.—գրծ. Եզնկաւ՝ Փ. կոր. 18. Ասող. Բ. ա.—Զարբ. Հին դպր. 300—309, Կնիք հաւ. յոյ. 54. Հայկ. աշխատ. Ֆէթթէրի, 83—89.—Եզնիկը թարգմանված է գերմ. Schmid-ի ձեռքով՝ օգնությամբ Հ. Գ. Գալէմքեարեանի. այս վերջինը ցույց տվավ որ Եզնիկը բավական երկար փոխառություններ ունի Արիստիդէսից, Մեթոդիոսից, Հիպպոլիտից, Բարսեղից, Եպիփանից։ Սրանց վրա ուրիշ աղբյուրներ էլ ավելացրեց L. Mariès, Le De Deo d'Eznik de Kolb (արտ. REA, հտ. 4), որ Եզնիկի վրա եղած ուսումնասիրության մեծագույնն ու լավագույնն է։—Հիշել նաև Սարգիսեան, Ձեռ. Վեննա. Բ. 924՝ Եզնիկի անհարազատ գործերի մասին։

— 2. Եզնակ կաթողիկոս, ունի թուղթ առ Մաշտոց. անշուշտ Կողբացին է այլափոխված.—Զարբ. Հին դպր. 782. Ձեռ. Վեննա. Բ. 862։

— 3. Եզնիկ Երեց, ժամանակակից Կոմիտաս «615—628» կաթողիկոսի. թողել է մի կարճ գրվածք «Նշանագիր կարգաց բանից», այն է համառոտ շարք թագաւորաց և հայրապետաց Հայոց, Տրդատից մինչև Կոմիտաս. հրատ. Սամ. Անեցու Պատմության մեջ, էջ 266—8.—սեռ. Եզնկանն՝ անդ 266, 268.—Զարբ. Հին դպր. 426. Հայապ. 72. Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. պատմ. 315. Ձեռ. Վեննա. Բ. 1060 (ուր խոսվում է այն մասին թե այս Եզնիկը թարգմանած լինի Ագաթանգեղոսը հունարենից հայերեն 528 թ)։ Նույնը նաև Manus. bibl. nat. էջ 55՝ որ այդ թարգմանությունը դնում է Կոմիտաս կաթողիկոսի ժամանակ, 620 թ։

*ԵԶՐ, ար. < եբր. עזרא ‘Ezrā անունից, որ ծագում է եբր. עזר ‘zr «օգնել» արմատից (Gesenius 579)։ Այս անունով հայտնի է Հրեից Եզրաս քահանայապետը, որից ավանդված է 4 մարգարեական և պատմական գիրք՝ Ս. Գրքի մեջ։ Ինքն է որ Բաբելոնի գերության գլուխն անցած՝ առաջնորդեց Երուսաղէմ (Ն. Ք. 457 թ)։ Այս անվան օտար ձևերն են հուն. Ἔσδρας, բայց նաև Ἔζρας, լտ. ֆրանս. Esdras, բայց կա նաև լտ. Ezra՝ համեմատ եբրայականին, ասոր. עזרא ‘Azrā (Հիւբշ. 292)։ Մեր մեջ ունի Եզր և Եզրաս ձևերը. կոչականն է Եզրա՛ (Անկ. գիրք հին կտ.

297)։ Գործածական է եղել Զ—Է դարում, այնուհետև խափանվել է Եզր կաթուղիկոսի վատ համբավի պատճառով։

— 1. Եզրաս Անգեղացի, աշակերտ ճարտասան Մովսէսի, որ Բագրևանդ գավառի եպիսկոպոսն էր. ծաղկել է Զ դարում. համացրել է աշակերտներ։—Ասող. Բ. բ. Կիր. 22. Վրդ. լ. Սամ. անեց. 73։

— 2. Եզր կաթուղիկոս, Նիգ գավառի Փառաժնակերտ գյուղից. հաջորդեց Քրիստափորին՝ «630—641 թ»։ Իր ժամանակ Հերակլ կայսրը կրոնական միության առաջ բերելու համար՝ հայտարարեց միակամական դավանանքը, որ ընդունեցին Ասորիքն ու Եգիպտոսը։ Հայաստանն էլ միացնելու համար՝ կայսրը Կարին եկավ և ժողով գումարեց «633 թ»։ Այստեղ Եզրը ընդունեց նույն դավանանքը, ուստի և հայոց կողմից քաղկեդոնիկ համարվելով՝ հալածվեց։ Իր անունը գավազանագրերում գլխավոր դրված նախատառով (գ) է գրվում։ Նորոգել է Գայիանէի տաճարը։ Իր օրով եղավ արաբական առաջին արշավանքը։—Սեբ. լը, լթ. Լծ. կոչ. 165. Յհ. կթ. ժէ—ժթ. Գիրք թղ. ծէ. Մխ. անեց. դ, իդ. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 79, 80. Եղն. եր. 268. Քհնպ. 271. Յհ. կթ. հյր. 275. Մխ. այրիվ. 21, 65. Տաթև. հարց. 541, 544—5. Լմբ. ուկ. 27. Օրբ. իէ, հա. Կիր. 31. Անանուն ժմ. 14. Մին. համդ. 101. Վրդ. լգ, լե. Միխ. աս. իթ (=իը).—Եզրաս՝ Օրբ. իը.—սեռ. Եզրի՝ Սեբ. խ. Յհ. կթ. ժը, ժթ. Գիրք թղ. ծէ. Յհ. իմաստ. 30, 104. Կանոն. 145, 156. Կիր. 34, 39. Օրբ. հկճռ. ը, ժբ. Վրդ. աշխ. 512. Նշպտք. 94. Տաթև. ամ. 667. հարց. 545. Ասող. Բ. բ, դ. Կղկնտ. Բ. ծ. Լմբ. 158. Օրբ. իէ, իը, կը. Վրդ. լե, լը. Միխ. աս. ժը, ժթ. Սիմ. ապար. 128. Յկ. կր. 22. Ջուղ. 51.—Եզրայ՝ Մխ. այրիվ. 65. Օրբ. հկճռ. ը. —Եզրասայ՝ Սիմ. ապար. 117.—բցռ. յԵզրէ՝ Յհ. կթ. ժը. Գիրք թղ. ծէ. Անանուն ժմ. 14.—բցռ. յԵզրայ, սեռ. Եզրայ՝ Գիրք թղ. ծէ, Կանոն. 150. Օրբ. իէ, լ, կը. Միխ. աս. իթ (=իը), Օրբ. հկճռ. ժբ.—գրծ. Եզրիւ՝ Կղկնտ. Գ. իգ (չունի էջին). Լծ. կոչ. 165. Շիր. քրոն. 76.—Եզրիտ (Եզրին հետևողները)՝ Միխ. աս. 353.—Վրաց աղբ. Ա. 38, 44, 45, 46, 78, 80։

*ԵԹԱՐ, իգ. < Թրք. [illegible] yeter «բավական է» բառից.—երբ ծնողները իրար վրա մի քանի աղջիկ զավակ ունենան, վերջինի անունը դնում են Եթար և սրանով կարծում են որ էլ աղջիկ չեն ունենա։ Այսպես նաև Թրք. Bas-di «բավ է», որ Թուրքերի մոտ գործածական է իբրև իգական անուն։ Եթար անունը, որ գրված է նաև Էթար, Եդար ձևերով, գործածական է ԺԶ դարից սկսած։

Հնագույններն են Եթար 1557 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 529), 1568 թ. (Ձեռ. Վասպ. 668), Էթար 1578 թ. (անդ, էջ 9), Էթար 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 91 ա) և շարունակվում է ԺԷ և ԺԸ դարերում. օր. 1756 թ. (Ձեռ. Վասպ. 313).—Համապատասխան հյ. ձևն է Բուտկան, որ տես։

— Եթար անունը հիշատակված է նաև 1336 թ. (եթե այս թվականը ուղիղ է), ըստ Սմբատեանց՝ Գեղարքունի 448, որ Նոր-Բայազետում գտել է մի խաչքար՝ Յեթար անուն անձի հիշատակին՝ նույն թվից։

*ԵԹԱՐԳՈՒԼ, իգ. < նախորդ Եթար անունից + թրք. պրս. gul «վարդ». հիշատակված է մի անգամ Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1490 թվից ուշ (Եթարկուլ ձևով)։

*ԵԹԱՐՓԱՇԱ, իգ. < կազմված է Եթար անունից + փաշա. գործածված է Ե և Է նախաձայնով, սկսած ԺԶ դարից։ Եղած օրինակներն են՝ Էթարփաշա 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647—9),—1567 թ. (Թորոս աղբ. Բ. 257), Եթարփաշա 1573 թ. (Ձեռ. Վասպ. 29), 1580 թ. (անդ 32), 1582 թ. (անդ 696) և մի անգամ էլ ԺԷ դարից՝ 1613 թ. (անդ 846)։ Ուրիշ վկայություն չկա։

*ԵԼԵՒԹԻՒՐՈՍ, ար. < հուն. ἐλεύθερος «ազատ, անկախ» բառից. Հունաց մեջ էլ կա երբեմն անձնանուն՝ Ἐλευθήρ, ῆρος ձևով։ Մեր մեջ ունինք մի անգամ՝

— Ելեւթիւրոս (իմա Ելեւթերոս) կամ Սամուէլ Զանկեցի, իր եղբոր՝ Թովմասի հետ պատգամավոր գնաց Իննովկենտիոս Զ պապի (1352—1362) մոտ՝ օգնություն խնդրելու Ունիթոռական միաբանության համար։ Պապը կարգեց նրան գավառահայր «1356 թ»։—Ազգապ. 1917։

*ԵԼԻԿՈՒՄ, ար. անշուշտ օտար անուն է, ծագումն անհայտ. կարծում եմ չաղաթ. ايليك ilik «ձեռք» բառից՝ ُ um ստացականով, երբեմն ايليكم ilikum «ձեռքս» (Будагов 1, 208)։ Սովորական անուն էր Օրբելեանց տոհմում։ Գրվում է թե Ե և թե Է նախաձայնով։

— 1. Ելիկում Օրբելեան, որդի Լիպարիտի (1178), թոռ Սմբատի և թոռան թոռ Լիպարիտի. կինն է Խաթուն, որդիքն են Լիպարիտ, Ջենա և Իվանե։ Մեծ իշխան Տարսայիճի պապն է։ Իր հայրենի երկրից և Ափխազաց թագավորից հեռանալով՝ գնաց պարսից դուռը՝ աթաբէկ Ելտկուզի մոտ։ Աթաբեկը մեծ սիրով ընդունեց նրան և պարգևեց Համիան քաղաքը։ Սրա որդին է Լիպարիտը, որ եկավ Իվանէ աթաբէկի մոտ և ստացավ

ընդարձակ հողեր Վայոց ձորում և այլուր։ Օրբելեան նշանաւոր ցեղի նախնին է Հայաստանում (1184 թ)։ Պատերազմի գնաց Գանձակ, ուր և մեռաւ։—Օրբ. կգ. Սիսական 187. Չամչ. Գ. 148։

— 2. Էլիկում Օրբելեան, որդի Լիպարիտի՝ իշխանաց իշխանի Սիւնեաց և թոռ Էլիկումի (№ 1) Օրբելեանց. եղբայրներն են Փախրադօլա, Տարսայիճ, Սմբատ արքայ և Իւանէ։ Կինն է Թամթա։ Հաջորդելով իր հօր՝ մտաւ Թաթարների բանակը և արշաւեց մինչև Նփրկերտ, ուր և մեռաւ 1254 թ.—Օրբ. կգ, կե.—սեռ. Էլիկումի՝ Օրբ. կգ, կե.—Արձ. Սիսական 188, 190, 193 (գրված Այլիկում), 201։—Չամչ. Գ. 212, 217—8։

— 3. Էլիգում մեծ իշխան, որի դուստրը՝ Ռուզուքան, կինն է Հասան իշխանի Խաչենի, 1265 թ.—Արձ. Բանաս. 1901, 140։

— 4. Էլիկում Օրբելեան, որդի Ջալալի, մայրն է Գոնցա (№ 3), եղբայր Շահինշահի (մ. 1330), Աղբուղայի և Տարսայիճ-Ստեփաննոսի՝ մեծ եպիսկոպոսի Սիւնեաց, որ Պօղոս վրդ. Կիլիկեցուն գրել տվեց մի Աւետարան, 1314 թ. հիշված է նաև 1331 թ.—Ջեռ. Դաշեան, Բ. 30 ա. Սմբատեանց՝ Երնջակ 151։

— 5. Էլիկում Օրբելեանց, որդի Տարսայիճի, թոռն Լիպարիտի, եղբայր Ստեփաննոս պատմիչի, հայր Բուրթելի և Բուղդայի, կինն է Թամթա խաթունն։ Հաջորդեց իր հօրը 1290 թ. մեռել է 1300 թ. Թաղւում է իր դամբանը՝ հետևյալ գեղեցիկ արձանագրութեամբ. «Թվին ՉԽԹ.—Զգեղեցկատիպն Էլիկում որդի մեծին Տարսայիճին որ առիւծաբէն խրոխտ մռնչէր ընդդէմ այլասեռ գնդին, աղաչեմ յիշել յաղաւթս»։—Օրբ. կե, կը, հ.—սեռ. Էլիկումի՝ Օրբ. կե, հ, հբ.—բց. յԷլիկումէ՝ Օրբ. հ.—Ջեռ. Դաշեան, Բ. 30 ա.— Արձ. Սիսական 144, 192, 193, 205, 525. Չամչ. Գ. 263, 284, 291։

— 6. Էլիկում Օրբելեան, որդի Լիպարիտի (1294), եղբայր Պածածի և Տէր Յովհաննի.—տես Սիսական, էջ 92 Օրբելեանց ազգատոհմի ծառը։

— 7. Էլիկո բէգ, հիշված է Ալանի և Թորոսի հետ, Վայոց ձորի Փաշալու գյուղի մի խաչքարի վրա, 1297 թ.—Արձ. Սիսական 177։

— 8. Էլիկում-Գուգան Օրբելեան, որդի Բեշքէնի, թոռն Բուրթելի (ԺԴ դար).—տես Սիսական, էջ 92 Օրբելեանց ազգատոհմի ծառը։

— 9. Էլիկում Օրբելեան, որդի Սմբատ իշխանաց իշխանի,

եղբայր Ջեսարի, Բուրթելի և Սմբատի, հիշված 1332 թ.—Արձ. Միսական 165։

† ԵԿԱՒ, ար. < հյ. եկաւ բայից, ինչպես կա Թրք. Շահգելդի «շահը եկավ», պրս. Ամիրամադ «էմիրը եկավ» և հյ. Գալուստ։ Մի անգամ հիշված է Եկաւ Մոկացի ոմն ՌԿԴ=1615 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 192)։ Սրանից է Եկաւեան ազգանունը։

† ԵՂԱՒ, ար. հիշված է մի անգամ 1700 թվին, Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 566)։ Եթե ստույգ է, անշուշտ հյ. եղաւ բայից է։

† ԵՂԲԱՅՐ, ար. < հյ. եղբայր բառից. համմտ. հուն. ἀδελφός համանիշը, որ նաև իբրև անձնանուն է գործածվում. ինչ. Ադելփոս եպս. Արաբիսոնի (Զ դար) կամ Ադելփոս եպս. Կոկիսոնի (Ցուցակք, Բ. 42)։ Այսպես են նաև արաբ. Ախի, Ախիկ, Ախիջան անունները, որոնք բուն նշանակում են «եղբայր»։ Մեր մեջ Եղբայր անունը գործածական է եղել Ե դարից սկսած մինչև ԺԸ դար, թեև շատ հազվագյուտ։ Սրա տարբերակներն են Աղբայր, Եղբայրիկ, Աղբայրիկ, Աղբայրանի, Աղբերանի, Աղբրաց, Աղբրացեղ, որոնք տես առանձին։

— 1. Եղբայր եպիսկոպոս Անձևացեաց, մասնակցեց Արտաշատի ժողովին «449 թ», պատասխանելու համար Միհրներսեհի նամակին.—Եղիշ. 22, Փարպ. իգ։

— 2. Աղբայր հիշված է անթվական մի արձանագրության մեջ, որ տես Յովսէփեան, Խաղբակեանք 33 և Եղբայր՝ Շիրակ 166 նույնպես անթվական։

— 3. Նույն անունը գտնում եմ նաև 1781 թվին, Էխպայր կամ Էխպայրբ ձևով, որ Թուրքերեն գրությունից հանելով կարդում է Կարապետեան, Յիշատ. Սամաթիա 97. անշուշտ պետք է հասկանալ Եղբայր անունը։

+ ԵՂԲԱՅՐԻԿ, ար. նախորդ Եղբայր անվան փաղաքշականն է, որի հնագույն հիշատակությունը Է դարից է և մինչև այժմ էլ կա, թեև շատ հազվագյուտ։ Լսած եմ միայն մի անգամ։

— 1. Եղբայրիկ որդի Եւսեբկայ Կամսարականի. հիշված է. Բագարանի արձանագրության մեջ 628 թ.—Կոգեան, Կամսրկն-ները 137։

— 2. Եղբայրիկ տես Աղբերիկ ձևի տակ № 1, որ Մխ. այրիվ. 81 ավանդում է սեռ. Եղբայրկանն ձևով՝ ԺԲ դար։

— 3. Եղբայրիկ առաջնորդ Արջոյ առիճ վանքի, 1211 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 48, 60։

— 4. Եղբայրիկ *(սխ. Եղբայրկան), հայր Վահրամի, որ նվիրներ է արել Յովհաննավանքին 1216 թ.—Արձ. Այրարատ 168, Ջբր. պատ. Գ. էջ 16։*

— 5. Եղբայրիկ *վարդապետ, շինել է Տեղերի եկեղեցին, ինչպես հիշում է իր արձանագրության մեջ, 1221 թ.—*ZAPh *2, 46։*

— 6. Եղբայրիկ *գրիչ, օրինակեց Աւետարանը՝ Մամթուք անուն տիկնոջ համար, 1420 թ.—Ձեռ. Վասպ, 320, 322։*

— 7. Եղբայրիկ, *ամուսին Մամթուք տիկնոջ, որ նրա հոգու համար Եղբայրիկ! գրչին գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 320, 322։*

— 8. Եղբայրիկ *առանց թվականի հիշված է Արձ. Շիրակ 29 և 123։*

*+ ԵՂԲԱՅՐՈՍ, ար. անշուշտ նույն* Եղբայր *անունից է, բայց զարմանալի է հունական-*ոս *վերջավորությունը։ Մի անգամ գտնում եմ Հոռոմոսի 1218 թ. մի արձանագրության վերջում, «Եղբայրոսս յիշեցէք ի Քրիստոս» ձևով (Շիրակ 23 բ), որ ի հարկե փորագրիչ քարտաշի անունն է և ըստ իս պետք է կարդալ* Եղբայրիկս։

*ԵՂԴԱԼ, ար. ծագումը անհայտ, հիշված է մի անգամ 1˝69 թ. Թաւրիզեցի ոմն (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 28 բ)։*

*ԵՂԷԱՆ կամ ԵՂԷԱՆԱՆ, ար. ծագումը անհայտ. իբրև Բագրատունեաց տոհմին հատուկ հին անուն հիշում են երկու ձեռ. Խոր. Բ. կգ.—նույնը* Եղեճան *ձևով հիշում է Մխ. անեց. իա։*

**ԵՂԷՈՆ, ար. < հուն. ἔλαιον «ձեթ, ձիթայուղ» կամ Ἐλαιῶν «Ձիթենեաց լեռը» (Երուսաղէմ)։ Մեր մեջ հիշատակված է ԺԵ դարում։ Միշտ ձևն է* Եղէօն, *բայց գրված է նաև* Եղևօն, *ըստ որում հայերենում* էօ *դառնում է ավելի ուշ* եւօ. *այսպես ունինք Լէոն > Լևոն, Գէորգ > Գևորգ, Մատթէոս > Մատթևոս, Թէոդորոս > Թևադորոս, Թադէոս > Թադևոս։*

— 1. Եղէօն, *հայր Յովհաննէս աբեղայի, հոգևոր եղբոր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ Ամիթում մի Աստուածաշունչ՝ 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 115։*

— 2. Եղևօն, *(երկիցս հիշված), որդի Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։*

**ԵՂԻԱ, ար. < եբր.* אליה Eliyyā *անունից, որ ծագում է* אל El *«Աստված» +* יה yāh *«Եհովա» բառերից և նշանակում է*

«Եհովան է իմ Աստուած»։ Թերևս կապ ունի ասուր. Iliyâu անվան հետ (Gesenius 41)։ Այս անունով էր կոչվում Հրեից նշանավոր մարգարեներից մեկը՝ Եղիա մարգարեն, որ առասպելական անձնավորություն է դարձել և մեծ ժողովրդականություն է վայելում մեր մեջ։ Ունինք Ս. Եղիայի պասը։ Եղիան ոչ միայն հրաշքներ է գործել, այլ և մահ չի տեսել և կենդանի երկինք է բարձրացել (Ն. Բ. 896 թ)։ Այսօր էլ նա նստած է ամպերի բարձունքում և երբ ամպերը որոտում են, Եղիա մարգարեի կառքերն են, որ որոտընդոստ թավալվում են, ասում է սնահավատ ժողովուրդը։ Տառադարձված է հուն. Ἠλίας, լատ. Helias, Elias, ֆրանս. Hélie, Elie, անգլ. գերմ. Elias, ռուս. Илья (փաղաք. Илюша), արաբ. إليا Iliyā են։ Գրականության դրեթե սկզբից մինչև այժմ գործածական է մեր մեջ։ Կրճատ և փաղաքշական ձևերն են՝ Եղի, Եղիկ, Էղիկ, Եղօ, որոնցից էլ ունինք Եղեան, Եղիեան, Եղիայեան, Եղիկեան, Եղոյեան ազգանունները։ Եղիկ ձևը կա հիշված 1597 թ. (Ձեռ. Մեան. 11 ա)։ Սեռ. սղված Եղիին, Եղին, Եղօին տես Ձեռ. Վասպ. 583, 584 (անթվական), որոշյալ հոդով՝ Եղիէն 1585 թ. (անդ 650)։ Գրված է Ելիա ձևով, եթե չէ վրիպակ (տես տակը № 15)։

— 1. Եղիա եպիսկոպոս, 4-րդ առաջնորդ Ծուրտաւի. հաջորդեց Սահակին՝ շուրջ 510 թ.—Ուխտ. Բ. խը.—Նույնը Եղիշայ ձևով ունի Գիրք Թղ. ծա։

— 2. Եղիա փսաղտ (սաղմոսասաց), քաղկեդոնական քարոզիչ, որին Աղուանից Աբաս կաթուղիկոսը «552—596 թ» աքսորեց Աղուանքից։—Կղկնտ. Բ. ը։

— 3. Եղիա քահանա, հայր Դաւիթ հիւպատոսի և Թագաւորական սեղանոյն կենտրի, որ Պոլսում օգնեց Ստեփաննոս Սիւնեցուն կատարելու մի քանի թարգմանություններ հունարենից հայերեն. տես և Դաւիթ հիւպատոս № 31 (Է դար).—Ձեռ. Վեննետ. Բ. 301։

— 4. Եղիա Ա Արճիշեցի, կաթուղիկոս Հայոց «703—717 թ». Բզնունեաց եպիսկոպոսն էր և հաջորդեց Սահակ կթ. Ձորափորեցուն։ Իր օրով Աղուանից Ներսէս կաթուղիկոսը ընդունեց քաղկեդոնական դավանանքը և ուզեց բաժանվել Հայոց կաթուղիկոսի գերիշխանությունից։ Եղիան ամիրապետից զորք բերել տվեց, նրան շղթայի զարկավ և հերձվածին վերջ տվեց «713 թ»։—Ցհ. կթ. իա, իբ. Գիրք Թղ. ծէ. Մխ. անեց. դ. Ասող. Բ. բ. Կղկնտ. Գ. դ, է—թ. Օրբ. ծա, հա. Կիր. 36, ը. Վրդ. լէ, լը. Միխ. ատ. իթ (=իը). Մխ. այրիվ. 21, Ցայսմ. մրտ. 28. Սամ. անեց. 84, 85. Եզն. եր. 268. Անան. ապստ. 137—8, 142. Քհնպ. 271. Ցհ. կթ. հյր՝

275. Տաթև. հարց. 545. Ջամբռ 70, 71.—սեռ. Եղիայի՝ Կանոն. 201. Յհ. կթ. իբ. Գիրք թղ. ծէ. Կղկնտ. Բ. խը. Գ. դ—թ. Օրբ. իե, ծա. Կիր. 37, ը. Յայսմ. ապր. 17. Սամ. անեց. 286. Տաթև. հարց. 545.—բցռ. յԵղիայէ՝ Կղկնտ. Գ. ե.—գործ. Եղիայիւ՝ Օրբ. կը. Օրբ. հկճռ. ժբ.—Ջամչ. Բ. 380—387. Ազգապ. 799—818։

— 5. Եղիա պատրիարք Երուսաղեմի. հաջորդեց Ստեփաննոսին և նստավ 774—797 թ. (ըստ Աղավնունի)։

— 6. Եղիա եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Սողոմոն Ա.-ի (Թ դար).—Օրբ. լգ, հա.

— 7. Եղիա քահանա, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 974 թ.—Շողակաթ 190։

— 8. Եղիա քահանա, ստացող Աւետարանի՝ 986 թ.—Ձեռ. Սանաս. 1 բ։

— 9. Եղիա քահանա, որդի Անտոնի. նորոգեց Ժ դարում գրված մի Աւետարանի կազմը՝ 1111 թ.—Ձեռ. Սանաս. 9 ա։

— 10. Եղիա սարկավագ, եղբայր Պետրոս քահանայի՝ գրչի ի Սկևռայ Վանս. արդեն մեռած էր 1205 թ.—Սիսուան 101։

— 11. Եղիա մեծ վարդապետ, հայր Հաւուց թառի, ժամանակակից Մխիթար Գոշի. նշանավոր երաժիշտ էր. մասնակցեց Զաքարէ սպարապետի Լոռիում գումարած եկեղեցական ժողովին «1208 թ». հիշվում է դեռ 1214 թ. մեռել է ու թաղվել Հաւուց թառում։—Կիր. պ. Մեծոփ. 53, 61 (հիշում է նրա գերեզմանը Հաւուց Թառում՝ «1411 թ»).—Ձեռ. Վենետ. Ա. 593. Այրարատ 356, Ազգապ. 2033, Նոտարք 34։

— 12. Եղիա քահանա, միաբան Հաւուց Թառի. հիշված է 1214 թ.—Այրարատ 356, Ձեռ. Վենետ. Ա. 593։

— 13. Եղիա վարդապետ Խաչենի. եղբայր Գրիգորիսի. ներկա էր Գանձասարի նորակերտ եկեղեցու օծման հանդեսին. մեռել է 1249 թ.—Կիր. իթ.—սեռ. Եղիայի՝ Կիր. իթ։

— 14. Եղիա որդի Տիրատէր! քահանայի. իր եղբոր Ղուկասի հետ միասին մի խաչքար է կանգնեցրել իր հոր հիշատակին՝ Վերին Ախտա գյուղում՝ 1266 թ.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 134, Սիսական 175 բ։

— 15. Եղիա, եղբայր Գովրոս մելիքի, որ Վասպուրականում գնեց մի Աւետարան՝ 1276 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 426։

— 16. Եղիա՝ հայր Վարդան վարդապետի Բաղիշեցւոյ՝ ստացողի Եւագր գրոց, որ ընդօրինակեց Պօղոս երեցը 1384 թ.—Սարգիսեան, Եւագր, Ներած. էջ ճՀԹ։

— 17. Եղիա Վարագեցի, կրոնավոր Արճէշի Արծուաբեր վանքում, ուր իր եղբայրը՝ Անանիա վրդ. Վարագեցի նրա հիշատակին կանգնեցրեց մի խաչքար՝ 1402 թ.—Արճ. Նոտարք 16։

— 18. Եղիա ճգնավոր, եղբայր Վարդան վարդապետի. Բաջբերունեաց Խառաբաստի վանքում սարկավագ էր. և «զամենայն ժամանակս կենաց իւրոց կանգուն կայր յաղօթս առաջի Աստուծոյ». հիշված է 1406 թ.—Մեծոփ. 41։

— 19. Եղիա Ոծոփեցի, աշակերտ Գր. Տաթևացու. ուսանում էր Տաթևի վանքում մինչև 1406 թ.—Մեծոփ. 51. Ազգապ. 1997. Ցայսմ. ապր. 27 (գրում է Մեծոփեցի)։

— 20. Եղիա հոգեղբայր Խաչատուրի, որ Աղթամարում, Թումա կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 311։

— 21. Եղիա, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Սարգիս քահանան Թմբուկ գյուղում, 1425 թ.—Լալայեան, Ազգագր. հանդ. Ա. 158։

— 22. Եղիա քահանա Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 23. Եղիա աբեղա Հադրութեցի. որդի Մեսարի և աշակերտ Տէր Աթանասի. գրիչ. օրինակեց Աւետարանը՝ ձգնաւորի քար անապատում 1428 թվին.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 567)։

— 24. Եղիա աբեղա, կազմեց այն Քարոզգիրքը որ գրել էր Դաւիթ գրիչը՝ 1441 թ.—Ձեռ. Թաւր. 59 բ։

— 25. Եղիա սարկավագ, մերձավոր Աբրահամ կրոնավորի, որ Արճեշում Խալիֆա քահանային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 153։

— 26. Եղիա եպիսկոպոս, առաջնորդ Գանձասարի վանքի, հիշված է 1443, 1457, 1458 և 1467 թվերին։—1458 թվին հիշվում է իբրև վկա մի սահմանային վեճի առթիվ, իսկ 1467 թվին նվերներ է անում Գանձասարի վանքին։ Երևի այս թվին էլ վախճանվել է, որովհետև մի այլ արձանագրության մեջ Գանձասարի առաջնորդ է հիշվում Ներսէսը նույն թվին։—Նոտարք 130, 185, 187, 228, Շահխաթ. Բ. 374—6, Ջալալեան Ա. 158, 185—8, Բ. 244, 495, Արցախ 177։

— 27. Եղիա եպիսկոպոս, թոռ մեծին Բուրթելեանց, Օրբելեան տոհմից, եպիսկոպոս Վայոց ձորի 1475—6 թ.—Կարապետ եպս.՝ Դոփեանք 94։

— 28. Եղիա երեց, որդի Շապանի, գրիչ. Քաջթաղուց գա-

վառի Խոզանավար գյուղում օրինակեց մի Ավետարան, 1490 թ.— Ձեռ. Սևան. 5 աբ, Սմբատեանց, Գեղարքունի 397։

— 29. Եղօ Եղկանց, հայր Թավրէզ տիկնոջ, որ Պարսամ քահանային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Յովաննէս քահանային, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 525։

— 30. Եղիա Ամասիացի, հայր Ամիրդովլաթ մեծ բժշկի, որ ծնվել է շուրջ 1415—25 թ։—Տաշեան, Ցուց. 200 ա։

— 31. Եղիա կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Յովհաննէս Զ-ի և նախորդ Դաւիթ Դ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 32. Եղիա քահանա Խարբերդցի, հայախոս յակոբիկ ասորի, քահանա Խարբերդի Տիրամայր Ս. Աստուածածին եկեղեցու։ Երբ տաճիկները գրավեցին Խարբերդի վեց եկեղեցիները և ուզում էին մզկիթի վերածել, Եղիա քահանան դուրս եկավ կրոնական վեճ բանալու տաճիկ հոգևորականության հետ։ Լավ հմուտ լինելով արևելյան լեզուներին և Ղուրանի վարդապետության, հաղթեց մոլլաներին և ազատեց եկեղեցիները։ Զայրացած տաճիկները ուզեցին նահատակել նրան, բայց շատ չարչարելուց հետո, փրկանքով ազատ արձակեցին։ Այս վեճի պատմությունը գրեց Եղիա քահանայի հոգևոր հայր Մկրտիչ վարդապետը՝ հայերեն և թուրքերեն։ Հրատարակել եմ նախ Արարատ ամսաթերթի մեջ 1908 թ. և ապա առանձին գրքով, որի առաջին կեսը տպված է Վաղարշապատ 1908 թ., երկրորդ կեսը Վիեննա 1930 թ։ Եղիա քահանայի դեպքը տեղի ունեցած պիտի լինի ԺԶ դարից մինչև ԺԷ դարի կեսը։ Իմ ունեցած աղբյուրների վրա կարելի է այժմ ավելացնել՝ Սրուանձտեանի հիշած ձեռագիրը (Թորոս աղբ. Բ. 319—322) և երկու ուրիշ ձեռագիր Բեռլինում (տես Ձեռ. Բեռլինի 71 բ և 74 բ)։ Այս բոլորն էլ մեր հնագույն ձեռագրից ավելի նոր են։

— 33. Եղիա վրդ. Ալաշկերտցի, Նորոգեց Անիի մոտ մեծաշեն մի վանք (1751 թ). Լեզգիները հարձակվեցին վանքի վրա. Եղիան քաջությամբ դուրս եկավ նրանց դեմ, 300 հոգի կոտորեց, բայց ինքն էլ հրացանի հարվածի զոհ գնաց։—Զամչ. Գ. 318։

— 34. Եղիա վարդապետ. մատենագիր. ունի Սահմանք և Կանոնք. Թվականն անհայտ. տես Ձեռ. Կարին, էջ 1։

*ԵՂԻԱԶԱՐ, ար. < եբր. אליעזר Elīʿezer անունից, որ կազմված է אל ēl «Աստված» և עזר ʿezer «օգնություն» բառերից և թերևս նույն է ասուր. Ili-idri, բաբել. Ili-ḫāziri անուններին հետ (Gesenius 42)։ Նշանակում է «Աստուած իմ օգնութիւն

իմ»։ Այս ստուգաբանության համար հմմտ. Եւ անուն երկրորդին Եղիազար. ասէ. Աստուած հօր իմոյ օգնական իմ և ապրեցոյց զիս ի ձեռաց Փարաւոնի (Ել. ԺԸ. 4). Եղիազար՝ Աստուծոյ զօրութիւն լսի (Տաթև. հարց. էջ 391). Եղիազար թարգմանի Աստուած օգնական իմ (Առաք. 463 ա)։ Այս անունը սովորական էր Հրեից մէջ. այսպես են կոչվում՝ Եղիազար որդի ընդոծնին Աբրահամու (Ծն. ԺԵ. 2=Սեբ. Ա. էջ 7), Եղիազար որդի Մովսէս մարգարեի (Ել. ԺԸ։ 4), Եղիազար քահանայապետ՝ որդի Ահարոնի (Ա. Մն. ԻԴ. 1—6) ևն։ Տառադարձված է հուն. Ἐλιέζερ, լտ. Eliezer, բայց նաև հուն. Ἐλεάζαρ, և այս երկու ձևերի խառնուրդն է հյ. Եղիազար։ Հին հայոց մէջ քիչ է գործածված. այժմ էլ սովորական չէ և շփոթվում է Եղիա և Ղազար անունների հետ։ Գրված է Եղնազար՝ 1629 թ. (Կնիք հաւ. յոչ. IV). աղավաղված ձևն եմ համարում Աղազար (որ տես առանձին) և դրանից էլ կրճատված Ազզար (տես Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 1213)։

— 1. Եղիազար կաթուղիկոս Աղուանից. էր եպիսկոպոս Շաքիի, հաջորդեց Ուխտանէս կաթուղիկոսին 683—689. Գիս գյուղում գտավ Ս. Մեսրոպի խաչը. իր հաջորդն է Ներսէս Ա.— Կղկնտ. Բ. լբ, լգ, լդ, խբ, խգ, խդ. Կիր. ը. Մխ. այրեվ. 24. Զամբռ 69. Հայապ. 384.—սեռ. Եղիազարու՝ Կղկնտ. Բ. լգ, լթ (ըստ Էմինի. իսկ ըստ Շահնազ. Եղիազարայ), խբ, խե. Գ. գ, ժբ (Էմին), իդ (Էմին).—Եղիազարայ՝ Կղկնտ. Գ. ժբ և իդ (երկուսն էլ ըստ Շահնազ.)—բցռ. յԵղիազարէ՝ Կղկնտ. Բ. խդ (Էմին)=ի սրբոյ հայրապետէդ Եղիազարու (ըստ Շահնազ.)։

— 2. Եղիազար եպիսկոպոս Գարդմանի, որին հալածեց Աղուանից քաղկեդոնիկ Ներսէս կաթուղիկոսը 703 թ.—Կղկնտ. Գ. դ.—երևի նույն է նաև Եղիազար եպս. Հոշոյ, տես Սամ. անեց. 286։

— 3. Եղիազար միաբան Աստուածընկալ ուխտին՝ 1207 թ.— Այրարատ 255։

— 4. Եղիազար հայր Տփխեցի (այսպես գրված) Շնորհաւորի, որ Հաղբատի ժամատան շինության համար նվիրել է 100 դահեկան՝ 1253 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 29։

— 5. Եղիազար, որդի Յոհան եպիսկոպոսի, երկրորդ աջպահ. թաղված է Մանթէշու եկեղեցում՝ Տօրոս լեռան տակ (ԺԴ դար).— Տաշեան, Ցուց. 358։

— 6. Եղիազար, հայր Գրիգոր կրօնավորի, որ Արծկէում գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ Ղազար քահանային, 1475 թ.— Ձեռ. Մաղն. 36։

— 7. Եղիազար կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Գրիգոր Ը-ի և նախորդ Բաղդասար Ա-ի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։—Ազգապ. 2212 Հաւաքարանից առնելով դնում է «1534 թ»։

— 8. Եղիազար, չորրորդ աջպահ, հաջորդ Յովհաննէս եպիսկոպոսի, Տիլի կոչված տեղում, յԱտանա (1600 թվից առաջ, ԺԶ դար).—Տաշեան, Ցուց. 358։

— 9. Եղիազար, եօթներորդ աջպահ, հաջորդ Սահակի (1600 թվից ուշ).—Տաշեան, Ցուց. 359։

— 10. Եղիազար Այնթապցի կամ Հռոմկլայեցի. Նախ Արղնիի առաջնորդն էր «1647 թ». ապա պատրիարք Երուսաղէմի «1649 թ». բայց հաջորդ տարի ընկավ աթոռից «1650 թ»։ Անցնելով Պոլիս՝ եղավ պատրիարք Պոլսի «1651 թ», բայց Փիլիպպոս կաթողիկոսի ձեռքով գահընկեց եղավ «1652 թ»։ Այնուհետև եղավ Երուսաղէմի պատրիարքական փոխանորդ։ Երբ հույները խլեցին Երուսաղէմի հայոց վանքը «1657 թ», Եղիազարը ամէն ջանք գործ դրավ և երկուս ու կես տարի չարաչար աշխատելուց, նույն իսկ շղթայակապ բանտարկվելուց հետո, կարողացավ ազատել վանքը հույների ձեռքից «1659 թ»։ Այնուհետև, նույն իսկ իր սեփական հարստությունը ծախսելով՝ նորոգեց, ընդարձակեց ու պայծառացրեց վանքը։ Համաձայնություն գոյացնելով Տաճկաց եպարքոսի և Սսոյ Խաչատուր կաթողիկոսի հետ, պետական հրամանագրով հայտարարեց իրեն Տաճկաստանի Հայոց կաթողիկոս, իր իրավասության ենթարկելով ամբողջ Տաճկաստանը (բացի Սսոյ աթոռից), Պոլսի և Երուսաղէմի պատրիարքական աթոռներն էլ միասին առնելով։ Այսպեսով Եղիազարը պառակտեց Ամենայն Հայոց կաթողիկոսությունը և Պարսկաստանն ու Տաճկաստանը առանձին առանձին կաթողիկոսության վերածեց։ Եղիազարը իր օծումն ստացավ Սսոյ կաթողիկոսից «1664 թ» Հալէպում։ Էջմիածնի Յակոբ կաթողիկոսը գնաց Պոլիս և դիմելով Սուլթանին՝ կասեցրեց պետական հրովարտակը «1666 թ»։ Եղիազարը «1671 թվին» դարձյալ հաստատվեց Երուսաղէմի պատրիարք և պահեց այս աթոռը շարունակ 10 տարի, նրան միացնելով նաև կաթողիկոս անունը։ Երբ Էջմիածնի Յակոբ կաթողիկոսը մեռավ «1680 թ», Էջմիածնի միաբանությունը ընտրեց նրան Ամենայն Հայոց կաթողիկոս «1682—1691 թ»։ Վճարեց Էջմիածնի պարտքերը և նորանոր շինություններով զարդարեց։ Նկարը տես Նշանեան, հրատ. Երեմ. Չէլ. օրագր. էջ 4, ընդարձակ կենսագրությունը ժամանակակից մի հիշատակարանում տես Թորոս աղբ. Բ. 400—407։—

*Զքր. սարկ. Բ. լԹ, խ, խդ, ծբ. Նաև Գ. էջ 37. Մ. մաշտ. 336 բ. Զքր. ագուլ. 79, 152. Զամբռ 25. Զեռ. Վեննա. Ա. 340 (հիշվում է իբրև առաջնորդ Երուսաղեմի).—Զամչ. Գ. 682—723, Ազգապ. 2523—2660։*

— 11. Եղիազար *եպիսկոպոս առաջնորդ Սեբաստիոյ և բժիշկ 1744 Թ.— Թորգոմեան, Ներբ. 27, Տաթև. տարեց. 1928, էջ 248—253։*

— 12. Եղիազար *կոչված է նաև Ղազար կԹղ. Ջահկեցին «մ. 1751 Թ».—տես Տաշեան, Ցուց. 699, 865։*

**ԵՂԻՇԷ, ար. ◁ եբր.* אֱלִישָׁע Elīšā' *անձնանունից, որ ծագում է անշուշտ* אל El *«Աստված» բառից։ Հնության մեջ հայտնի էր այս անունով Եբրայեցոց նշանավոր մարգարեն Եղիշէ (Ն. Ք. 903—838), որ Եղիա մարգարեի հաջորդն էր (Դ Թագ. բ, Ղուկ. Դ. 27). իսկ քրիստոնեության ժամանակ՝ Թադէոս առաքյալի աշակերտ Եղիշէն, որ եղավ Աղվանից աշխարհի քարոզիչը։ Տառադարձված է ասոր.* Elīša', *հուն.* 'Ελισά, 'Ελισαιέ, 'Ελισαῖος, ῾Ελισαιέ, 'Ελισσαῖος, *լտ.* Eliseus, *ֆրանս.* Elisée *են։ Հայերենում տառադարձված է երկու ձևով. հնագույն ձևն էր ըստ ասորականին* Եղիշայ, Եղիշէ, *ավելի նորը՝ ըստ հունականին* Եղիսէ *(Հիւբշ. 292)։ Սկզբում այս երկու ձևերը փոխադարձաբար իրար տեղ գործածվում էին, ապա բաժանվեցին։ Այժմ* Եղիսէ *ձևը անգործածական է. ունենք միայն* Եղիշէ, *որի փաղաքշականն է* Եղիշ։*—Իբրև ար. անվան օրինակ հիշված է* Եղիշա՝ *Խոր. քեր. 179։ Կա նաև իբրև իգական անուն, որ տես* Եղիսաբեթ։

— 1. Եղիշէ *աշակերտ Թադէոս առաքյալի. գնաց Երուսաղեմ՝ Յակոբոս առաքյալի մոտ, որից օծվեց եպիսկոպոս, եկավ Աղվանք, ուր և նահատակվեց (Ա դար).—Զամբռ 11, 64, 65 և այլն։*

— 2. Եղիշէ *երեց, անդամ Շահապիվանի ժողովի «444 Թ».— Այրարատ 519, Հայապ. 159, Կիւլէսէրեան՝ Եղիշէ 59։*

— 3. Եղիշէ *եպս. Ամատունեաց, ժամանակցեց Արտաշատի ժողովին «449 Թ», պատասխանելու համար Միհրներսեհի նամակին։—Եղիշ. 22, Փարպ. իգ։*

— 4. Եղիշէ *վարդապետ պատմիչ, հեղինակ Պատմության Վարդանանց. համարում են ատենադպիր Վարդան Մամիկոնեանի. Վարդանանց պատերազմից հետո («451 Թ») ապրեց ու մեռավ՝ ճգնելով Մոկաց ու Ռշտունեաց լեռներում։ Գերեզմանը ցույց են տալիս Ռշտունեաց Ոստանայ վանքում (Հնոց և Նորոց 14), իսկ ըստ Նօտարք 71 և 88 ծան. Ռշտունեաց Պատրկայ վանքում,*

որ այժմ կոչվում է Ջաղար Ս. Նշան (Արտոս հսկա լեռան ստորոտում)։ Եղիշէին են վերագրում նաև ուրիշ կրոնական գրվածքներ, որոնք հրատարակված են առանձին հատորով՝ Վենետիկ 1859 (տես Զարբ. Հին դպր. 334—349, Հայապ. 193)։—Դաւ. անյ. էջ 99, Մխ. անեց. և. Ասող. Ա. ա. Օրբ. ժգ. Արծր. Ա. գ. Բ. բ. Կիր. 3, 16, 17. Պատմ. եղիշ. 41, 43. Ցղ. ժոխ. և դաւթ. 58, 60. Վրդ. և, իե. Ցայսմ. սեպտ. 17, փետր. 19, 27. Մխ. այրիվ. 37, 63. Սամ. անեց. 3. Պամ. սահ. 14. Առաք. լծ. սահմ. 170. Ես. կթղ. էջ ը.—Եղիշայ՝ Արծր. Բ. բ. ZAPh 1, 207.—սեռ. Եղիշէի՝ Եղիշ. 5. Ասող. Բ. բ. Ճշ. 662. Արծր. Բ. բ. Պամ. եղիշ. 39, 40, 42. Ցայսմ. փետր. 27. Սամ. անեց. 71.—Եղիշայի՝ Շնորհ. վիպ. 988. Մխ. դատ. Ա. ճժգ։—Եղիշէի մասին քննական գործերից հիշենք՝ Գրգչ. Բնն. պատմ. Դ. 104—8, Կիւլէսէրեան՝ Եղիշէ, Վիեննա 1909. Արարատ 1868, էջ 89—92. Հայկ. աշխատ. Ֆէթթէրի, էջ 105—115։ Եղիշէի մասին ամենից ընդարձակ գրությունը գրեց Ակինեան, 2 հտ. Վիեննա 1932 և 1938, համարելով նրան կեղծարար և խաբեբա, գործ է կամ Թ դարի։ Այս գրքի հերքումը տվեց Ն. Տէր-Մինասեան, Տեղեկ. ԱրմՖանի 1943, № 3, ընդարձակ հոդվածով, էջ 63—98։ Թե Եղիշէն է առաջ Փարպեցուց և Փարպեցին օգտվել է նրանից՝ այս մասին մի լուրջ նկատողություն տես Ն. Տէր-Մինասեանի նույն հոդվածում, էջ 64—65 և 90։— Հ. Բ. Սարգիսեան, Եղիշէի և Զաքարիա կաթուղիկոսի ի Թաղումն Քրիստոսի ճառերն, տպ. Վենետիկ 1910 ցույց է տալիս թե Եղիշէն իր ճառերում օգտված է Նիկոդիմոսի Աւետարան անվավերականից, Փիլոնից և Եպիփան Կիպրացուց։—Ազգապ. 436—8 միացնում է նախորդ երկուսի հետ (№ 2 և 3) և մահը դնում է «461 թ»։—Թերևս նույն է նախորդի հետ. բայց այս երկուսից տարբեր է՝

— 5. Եղիշէ քահանա, որ ունի Ճառ յայլակերպութիւն Տեառն, տպ. Վենետիկ 1854, Սոփերք հտ. ԺԸ։ Վերնագիրն է «Սրբասիրի Տեառն Եղիշէի քահանայի և ճգնաւոր կրօնաւորի և միայնակեցի ի Թաբօր լերին յայտնութիւն Տեառն առ Պետրոսեանց և ի մեծ աւուր վարդավառին»։ Գնացել է Երուսաղէմ, ինչպես նկարագրում է ինքը, անդ՝ էջ 59, 67։ Սրանից երևում է որ այլ է Վարդանանց պատմիչ Եղիշէն։ Բայց սրան միտ չդնելով Վենետիկցիք՝ նույն ճառը հրատարակել են նաև Եղիշէի մատենագրութեանց մեջ և ՆՀԲ էլ հիշում է այն՝ «Եղիշ. երեց» ձևով (հմմտ. նաև Արրտ. 1869, յնվ. էջ 123—5)։—Նույն

քահանայինն է նաև «Սրբոյն Եղիշէի վարդապետին արարեալ վասն այլակերպութեանն Քրիստոսի», հրտր. Ճշ. էջ 549—556։— Կա նաև Քրիստոսի յարութեան վրա մի գեղեցիկ ճառ «Ս. Եղիշէի Հայոց վարդապետի ասացեալ» Ցայտ. մրտ. 21։ (Հմմտ. Զարբ. Հին դպր. 782)։ Կա դարձյալ «Ս. Եղիշայի Գտիչք չարեաց» աննշան գրվածքը ZAPh 1, 207։ Սարգիսեան, Ձեռ. Վեննետ. Բ. 286 Եղիշէի անունով հիշում է՝

1) Վասն հոգւոց մարդկան թէ ուստի գան.

2) Բնութեամբ կրկին է տեսակ մարդոյ.

3) Մարդ ի յերկինս և ի յերկրի.

4) Զի թէ զմարդկան հոգւոյ կամի ոք ուսանել զկայանս (սրանց քննությունը տես անդ)։ Երկու գրվածք էլ Ձեռ. Սեբ. (=ՀԱ. 1929, էջ 270) այս վերնագրով. 1) Եղիշէի ասացեալ ի բանն Եսայեայ մարգարէի, որ ասէ. Երանի տեղւոյն այնորիկ ուր եզն և էշն կոխեսցեն (այս գրվածքը Ձեռ. Կարին. 127 վերագրվում է Եղիշէ հայոց կաթողիկոսին). 2) «Ո՛վ հաւատացեալ հարք իմ և եղբարք»։

— 6. Եղիշէ վարդապետ, որից ունինք «Հարցմունք և պատասխանիք ի Գիրս Ծննդոց», հրտր. Ակինեան, Վիեննա 1924, իբր Վարդանանց պատմիչ Եղիշէի գործը. որ ի հարկե անհիմն է։ Այս աշխատության մեջ ունինք սեռ. Եղիշէի՝ էջ 47, 78։

— 7. Եղիշէ կաթողիկոս Հայոց, Վանանդի Ոթմսոյ գյուղից էր. նստել է 10 տարի, իբրև հաջորդ Անաստասի և նախորդ՝ Սահակ Գ կաթողիկոսի։ Այս ցուցումներից երևում է, որ պետք է հասկանալ Իսրայէլ կթղ. Ոթմսեցի «667—677 թ»։—Քննդ. 271.—նույնը կոչված է Եղիայ՝ Ցհ. կթ. հյր. 275։

— 8. Եղիշէ ուսուցիչ Թովմա Արծրունի պատմագրի.— սեռ. Եղիշայի՝ դրված է գրքի խորագրում ըստ Զարբ. Հին դպր. 518 ծան. (Թ դար)։

— 9. Եղիսէ Ա կաթողիկոս Աղթամարի. Գագիկ Արծրունու եղբորորդին էր, որին Գէորգ կաթողիկոսը ձեռնադրեց 921 թ. (Ալիշան, Շնորհ. 55).—Արծր. Դ. Թ.—Նոյնը՝ Եղիշէ՝ Հաւաք. 29, 32, 44, 59 (ձեռնադրված է դնում 923 թ), Հայապ. 283. սրա հաջորդն է Դաւիթ Ա։

— 10. Եղիշա երէց, նկարիչ. Սոփիա իշխանուհու կողմից նշանակվեց գործակալ շինության Գնդեվանքի. հիշատակված է Գնդեվանքի դանդակատան արձանագրության մեջ 931 թ.—Օրբ.-խթ. Սիսական 104, 106։

— 11. Եղիշէ Ա. Ռշտունի, կաթուղիկոս Հայոց, եղբայր և հաջորդ Թէոդորոսի Ա. նստավ «941—946 թ» և գահընկեց եղավ անհայտ պատճառով։ Գրված է միշտ Եղիսէ. այսպես՝ Բենդ. 272, Մխ. անեց. դ, Մխ. այրիվ. 21, Ասող. Գ. է, Օրբ. հա, Կիր. 48, Վրդ. խէ, Միխ. սս. իթ (=իը).— մի քանի տեղ նույնը հիշված է Եղիա ձևով. այսպես՝ Եղիա՝ Սամ. անեց. 99.—սեռ. Եղիայի՝ Օրբ. ծա.—բց. Եղիայէ՝ Սամ. անեց. 99. (երեք դեպքում էլ այլ ձձ. Եղիսէ, որ ուղիղ ձևն է)։—Ջամչ. Բ. 827։

— 12. Տէր Եղիսէ, որի հրամանով գրված է մի Ավետարան (Լոնդոնի թանգարան).—Ժ դար.—Զարբ. Թրգմ. 158։

— 13. Եղիշա Կողբացի, ժամանագիր. հիշված է Ժ դարում.—Զարբ. Հին դպր. 569 համարում է վրիպակ՝ փոխանակ Եղնիկ Կողբացի։

— 14. Եղիշէ եպիսկոպոս Ռշտունեաց. իբրև միջնորդ ուղարկվեց Սենեքերիմ Արծրունի թագավորի կողմից Հունաց Վասիլ կայսեր մոտ՝ ստանալու համար Սեբաստիան «1021 թ.»—Ուռհ. 49. Անանուն ժմ. 16. Յայսմ. յունիս 1. Թորոս աղբ. Ա. 234։

— 15. Եղիսէ, եղբայր Բարսեղի. երկուսն էլ աշակերտ Գրիգոր Մագիստրոսի։ Պետրոս Գետադարձ կաթողիկոսը («1019—1058 թ») իր մոտ առավ նրանց և երկուսին էլ եպիսկոպոս ձեռնադրեց։ Երբ գնաց Պոլիս («1047 թ»), իր շքախմբի մեջ էին նաև այս երկուսը։ Երբ Պետրոսը եկավ Սեբաստիա, իր հետ բերավ նաև Եղիսէին և Սեբաստիայի եպիսկոպոս նշանակեց (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 29—33)։ Պետրոսի մահից հետո՝ Խաչիկ կաթուղիկոսի հետ դարձյալ Պոլիս կանչվեց և 3 տարի աքսորում մնաց «1059—1062 թ».—Մագ. Թղ. ե, խե, խգ. Կիր. 53. Սմբ. պատմ. 67. Ուռհ. 105, 106, 138.—սեռ. Եղիսէի՝ Ուռհ. 106։

— 16. Եղիշէ քահանա, հայր Պետրոս երեցի, որ Նիկոպոլսի Խաւմ քաղաքում օրինակեց Ավետարանը, 1223 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 422։

— 17. Եղիշէ Բ Աղբակեցի, կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Ստեփաննոս Գ-ի և նախորդ Զաքարիա Ա-ի (1292—1300)—Հաւաք. 60 (կեղծիք), 66։

— 18. Եղիշէ Գ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Զաքարիա Նահատակի (1393) և նախորդ Սարգիս Գ-ի.—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 19. Եղիշայ երեց. մի Ավետարան գնեց Աղուանից Մաթէոս կաթուղիկոսից՝ 1438 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 44 ա։

— 20. Եղիշէ քահանա, որդի Սատաղայի, որի համար

Աւագոէը վարդապետը գրեց մի Աւետարան, Բոլորաբերդի անապատում, 1475 թ.—Ցովսէփեան՝ Խաղբակեանք 232։

— 21. Տէր Եղիշէ, աթոռակից Յոհաննէս եպիսկոպոսի Վայոց Ձորոյ 1478 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 178, Յովսէփեան՝ Խաղբակեանք 235։

— 22. Եղիշա արքեպիսկոպոս նահանգին Վայոց Ձորի, որդի էշխանաց իշխան Սմբատի, որդւոյ մեծին Տարսայիճի, 1495 թ. —Ձեռ. Վենետ. Ա. 585։

— 23. Եղիշայ եպիսկոպոս, առաջնորդ Եղեգեաց անապատի, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 24. Եղիսէ որդի Մկրտիչի՝ եղբօր Կիրակոս քահանայի, որ Ամ գիւղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 25. Եղիշէ որդի Նըրէկի՝ եղբօր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեւան. 18։

— 26. Եղիշե Բ. աթոռակից Սարգիս Դ կաթուղիկոսի՝ 1504—6 թվերին (Առաք. պատմ. 337). նստավ կաթուղիկոս Հայոց 1506—1515 թվերին, աթոռակից ունենալով Ներսէս և Զաքարիա եպիսկոպոսներին։ Այսպես՝ իբրև կաթուղիկոս հիշված է 1503 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 51) և 1509 թ. (Ձեռ. Վասպ. 640)։ Հիշում է նաև Ջամչ. Գ. 509։ Աղգապ. 2200 և 2208 չի ընդունում իբրև առանձին կաթուղիկոս։ Գուցե նույն է Եղիշէ կաթուղիկոս հիշված ԺԶ դարում՝ Ձեռ. Նոր-Բայազ. 15 ա։

— 27. Եղիսէ, «այր քաջ իբրև զՑուդիթն». երբ Կարնոյ Աբաղա փաշան գրավեց Անկուրիա քաղաքը, բնակիչները իրենց մեծամեծներով ամրացան միջնաբերդը և կռվում էին Աբաղայի բանակի դեմ։ 7 ամիս տեեց պաշարումը և ոչ մի կողմ չկարողացավ հաղթել։ Բերդականների ռազմամթերքը սպառվեց և ստիպված էին անձնատուր լինել։ Եղիսէն մահը աչք առած, գլիշերով իր շալակով 2—3 դանթար ռումբ՝ պաշարողների միջից անցկացնելով բերդը բերեց։ Պաշարվածները զորացան, թշնամին թողեց հեռացավ։ Եղիսէին՝ թեև նա հայ էր, սպահութիյան ատոճան տվին (1623 թ).—Դրնդ. 220։

— 28. Եղիշէ Դուրեան, պատրիարք Պոլսի, հաջորդեց Մատթէոսին «1909 թ». անցավ Երուսաղէմ և եղավ պատրիարք Երուսաղէմի 1921 թ։ Նշանավոր հայագետ։

*ԵՂԻՍԱԲԵԹ, իգ. < եբր. אֱלִישֶׁבַע Elīšeba' անունից, որ

ծագում է אל El «Աստված» և שבע šbʿ «երդում անել» բառերից (Gesenius 42, 803) և նշանակում է «Աստուած է երդումն նորա»։—Եբր. שבע šbʿ «երդնուլ» արմատը ծագում է šbʿ «եօթը» բառից, որովհետև Եբրայեցոց մէջ երդումը կատարվում էր 7 առարկաների միջոցով (հմմտ. Ծն. իա. 28—32)։ Սրա համար է որ ոմանք Եղիսաբեթ անունը մեկնում են այս իմաստով. հմմտ. «Զասպել, որ թարգմանի Եղիսաբէթ. այս է Աստուծոյ եօթներեկ» (Կիր. ծզ)։— Այս անունով հայտնի են Հրեից մէջ Եղիսաբեթ՝ կին Ահարոն քահանայապետի (Ել. զ. 23), և Նոր Կտակարանում՝ Եղիսաբեթ՝ կին Զաքարիա քահանայապետի և մայր Յովհաննէս Մկրտչի (Ղկ. ա)։ Հունարեն տառադարձված է Ἐλισαβέτ, Ἐλισαβεθ, Ἐλεισάβεθ; ասոր. Elīšwaʿ (Հիւբշ. 290), լտ. Elisabeth։ Վերջին ձևով մտած է գրեթե բոլոր եվրոպական լեզուների մէջ, և շատ սովորական անուն է։ Աղված ու փաղաքշական ձևերն են Էլիզա, Էլիզ, Լիզա, Զաբել, Իզաբելլա, Բելա, որ մտել են նաև մեր մէջ՝ իբրև անկախ անուններ։ Հայերենի մէջ տառադարձված է նախ ըստ ասորականի Եղիշաբէթ (այսպես Իրեն. էջ 24), որ ապա տեղի է տվել հուն. Եղիսաբեթ ձևի առաջ։ Մեր մէջ գործածված ենք գտնում ԺԳ դարից սկսած։ Արդի փաղաքշական ձևերն են Եղսա, Եղսի, Եղսօ, Սաբեթ. բայց հնապես կային նաև այլ ձևեր. ինչպես՝ Եղիս (հնագույն հիշատակությունը 1481 թ. տես № 24), Եղիսէ կամ Եղիսա (հնագույնը 1389 թ. տես № 5). Եղիս (1444 թըվից?, տես № 14). Եղսիկ (1595 թվից՝ Ձեռ. Վիեննա. Ա. 695), Եղսում (1700 ական թվերից՝ Զամբռ 179), հիշենք նաև Ղոսբետ (1579 թ. Ձեռ. Վիեննա. Ա. 390), Եղսաբերդ (հնագույնը 1595 թ. Ձեռ. Վիեննա. Ա. 696, ավելի ուշ՝ 1666 թ. Ձեռ. Վասպ. 928), Եղիսաբերդ (1671 թ. Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 310)։

— 1. Եղիսաբեթ կին Սարգսի, եղբոր Կիրակոսի՝ բարեկամի Աւետիս քահանայի, որ գրեց մի Շարակնոց 1258 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 229։

— 2. Եղիսաբեթ դուստր Սահակի, հիշված է 1343 թ?—Տաշեան, Ցուց. 489։

— 3. Եղիսաբեղ, կին Վարդան քահանայի և մայր Աստմ կլոնավորի, որ օրինակեց Լուծմունք Վարդան վարդապետի, Աղթամար 1366 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 846։

— 4. Եղիսաբեթ, դուստր Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 5. Եղիսէ, դուստր Սահակ քահանայի, որ ստացավ Կոս-

տանդին Ա. Բարձրբերդցի կաթուղիկոսի Աւետարանը 1389 թ.— Ջեռ. Վենետ. Ա. 652։

— 6. Եղիսաբեթ Խառաբաստեցի, Բերկրիում ուրացել էր և փողոցային պոռնիկ էր դարձել։ Ապա գնաց Վան և այնտեղ հավատքի գալով՝ նահատակվեց 1391 թ։—Յայսմ. տպ. 24, Նոր վկ. 166—9։ (Բնագրում տպված է աւեր աղջիկ, որ է «պոռնիկ». բայց Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 72, 148 անուն կամ մականուն կարծելով՝ գրում է Աւեր կամ Աւերաղջն)։

— 7. Եղիսա կին Զաքարիայի և մայր Յովհաննէս Մշեցու, որ օրինակեց Աւետարանը՝ Ղազար երեցի համար, 1402 թ.— Manus. brit. mus. 39 ա։

— 8. Եղիսաբեթ, կին Մկրտիչ քահանայի, հայր Կարապետ Դերջանցու, որ Հերմոնի վանքում օրինակեց Քարոզգիրքը, 1421 թ.—Ջեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 9. Եղիսաբեթ հավատավոր կին Երուսաղէմում, հիշված է իբրև «յոյժ երախտաւոր» 1427 թ.—Նոտարք 82։

— 10. Եղիսաբեթ կին Յովսէփի և մայր Մամախիկին ապաշխարողի, որ Վարդան աբեղային գրել տվեց մի Աւետարան՝ Խուրովայ վանքում, 1430 թ.—Ջեռ. Վասպ. 359։

— 11. Եղիսաբեթ դուստր Հայրապետի և քույր Ռստակէս երեցի, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ջեռ. Թուր. 13 ա։

— 12. Եղիսաբեթ (որ և Եղիսա) կին դարբին Թորոսի, որ Սեւերեկում? ստացավ մի Աւետարան 1437 թ?—Ջեռ. Հալէպի, Ա. 65։

— 13. Եղիսաբեթ կին պարոն Իւսուֆի, որ Յովհաննէս եպիսկոպոսի փեսան էր. հիշված է Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցու գավթի արձանագրության մեջ՝ 1442 թ.—Շահազիզ՝ Ազգ. հանդ. Է, էջ 49։

— 14. Ելիս (այսպես՝ փոխանակ Եղիս, եթե սակայն վրիպակ չէ), հիշված է անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Վասպ. 392), որ սակայն 1444 թվից ուշ է։

— 15. Եղիսաբեթ կին Մկրտիչ քահանայի և մայր Կարապետ վարդապետի, վերջին ստացողի Աստուածաշնչի, 1449 թ.— Թորոս աղբ. Բ. 296։

— 16. Եղիսաբեթ, որ և Տալիթայ, կին Աւետիսի և մայր Վարդան գրակապի, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան՝ 1450 թ.—Ջեռ. Թուր. 65 բ=66 բ։

— 17. Եղիսաբեթ դուստր Ստեփաննոսի, քույր Ատոմ քա-

նանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 18. Եղիսաբեթ կին Շահմելիքի և մայր Աստվ կրոնավորի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան՝ 1461 թ.—Նոտարք 200։

— 19. Եղիսաբեթ դուստր պարոն Յակոբի, հիշված է Լեհահայոց դատարանական մի արձանագրության մեջ, 1463 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 87=Նոտարք 210։

— 20. Եղիսաբեթ կին Էլէքսան քահանայի և մայր Կիրակոս քահանայի, որ գրել է Բաղէշում մի Ցայսմաւուրք 1438 թ., մի Ավետարան 1454 թ. և մի Ավետարան էլ 1463 թ.—Նոտարք 118, 173, 215։

— 21. Եղիսաբեթ դուստր պարոն Կոստանդի, որ Եւդոկիայում Անդրէաս երեցին գրել տվեց մի Ավետարան՝ 1463 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 133։

— 22. Եղիսաբեղ, հավատավոր կին, ժերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրակնում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ 1113։

— 23. Եղիսաբեթ կին Յովանէսի և մայր Վարդան աբեղայի, որ Կոռւց անապատում Խաչատուր աբեղային գրել տվեց մի Ավետարան՝ 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 24. Եղիս, հոգևոր քույր նույն Վարդան աբեղայի (տես նախորդը).—Ձեռ. Վասպ. 488։

— 25. Եղիսաբեթ դուստր Յովսէփ քահանայի և քույր Աւետիքանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Ավետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 26. Եղիսաբեթ կին Ազապարոնի և տատ Լիանոսի, որ ստացավ մի Ավետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 130։

— 27. Եղիսաբեթ, ազգական Համանդուլ կույսի, որ Այրի վանքում, Ստեփան աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։

— 28. Եղսաբեթ, դուստր Ստեփաննոսի՝ եղբոր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։

— 29. Եղիսաբեթ կին Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

*ԵՂԻՍԷ տես Եղիշէ։

**ԵՂԿԱՆ**, մր. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1541 թ. մի խաչքարի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարքունի 531)։

***ԵՂՆԱԶԱՐ**, ար. համարում եմ Եղիազար ձևից. ավանդված կա 1719 թ. (Սիսական 486 ա)։

† **ԵՂՆԱՐ**, իգ. < ժղ. եղնար «էգ եղնիկ» բառից. մի անգամ գտնում եմ գործածված ԺԷ դարում (Եղինար ձևով, 1676 թ. Ճանիկեան, Հնութ. Ակնայ, էջ 91). գործածական է նաև այժմ Եղնար կամ Հեղնար ձևով։

† **ԵՂՆԵՐ**, իգ. <հյ. եղն «եղնիկ» բառի հոգնակին է։ Չեմ կարծում, որ նախորդի աղավաղ ձևը լինի։

— 1. Եղներ, տիրակին Աւագ (կամ Տէրաւագ) քահանայի, որ Երուսաղէմում Վրթանէս կրօնաւորին գրել տվեց մի Գանձարան՝ 1497 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— Եղներ անունը հիշատակված է նաև 1526 թ. (Թորոս աղբ. Ա. 60), 1591 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 7 բ, բայց արական!), 1636 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 355 բ, երկու տարբեր կանայք), 1731 թ. (ՀԱ 1894, 51 ա), Աղներ ձևով՝ 1798 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 76 բ), ուստի վրիպակ է եզներ 1526 թ. (Ձեռ. Կես. ածած. 70 ա)։

† **ԵՂՆԻԿ**, իգ. <հյ. եղնիկ կենդանու անունից. հնագույն գործածությունը ԺԲ դարից.

— 1. Եղնիկ (սեռ. Եղնկան) կին Հայրապետի, որ Մանազկերտի Նորատի գյուղում կանգնեցրել է մի հսկա խաչքար՝ 1204 թ.— Թորոս աղբ. Բ. 279։

— Եղնիկ անունը հիշված է ավելի ուշ՝ 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 314), 1588 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1858), 1591 թ. (Տաշեան, Ցուց. 568,) 1691 թ. (Ձեռ. Վասպ. 246). այնուհետև դադարում է։

**ԵՂՈՒԱՋ**, սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ գործածված է անթվական մի հիշատակարանում (1458 թվից ուշ)՝ Ձեռ. Վատ. 430, Եղօուաջ ձևով։

**ԵՂՈՍ**, մր. գուցե Եղիա անունից ձևափոխված է. մի անգամ հիշված է 1557 թ.— Ձեռ. Դաղեան, Ա. 8 ա։

Եղուրլու տես Ուղուրլու։

**ԵՂՈՒՄ**, իգ. ծագումն անծանոթ. մի անգամ գտնում եմ հիշված 1676 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 91)։ Թերևս սրա հետ

նույն է Եղոմ (սեռն ու թվականը անհայտ), որ հիշված է անթվական մի խաչքարի վրա (Բարխուտ. Արցախ 300)։

ԵՂՍԱԼԱՄ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1801 թ. (Ձեռ. Բուլղ.=ՀԱ 1937, 577)։

+ԵՂՎԱՐԴ, ար. < կամ գյուղի անունից և կամ ավելի հավանաբար եղ+վարդ բառերից։ Մի անգամ գործածված է 1684 թ. (Ձեռ. Վատ. 963) և մի անգամ էլ 1796 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 11 բ). երկուսն էլ Եղվարթ ձևով։

*ԵՄԵՆԻԿ, իգ. < արաբ. يمن Yemen երկրանունից. մի անգամ ունինք՝

—Եմենիկ, կին պարոն Խայատրի, որ գնեց մի Ավետարան (ԺԲ դար).—Ropport Arm. 52։

*ԵՄԻՆ իգ. թեև կարելի էր դնել Եմին բառի հետ նույն, բայց որովհետև գրված է ուղ. Ցեմին, սեռ. Ցեմենին, ուստի ավելի լավ եմ համարում դնել < թրք. يمين yemin «երդում» բառից։ Գործածված եմ գտնում երեք անգամ. առաջինը իբրև իգ. սեռ. Ցեմնին ձևով՝ 1706 թ. (Ձեռ. Թավր. 64 բ), երկրորդը ուղ. Ցեմին ձևով, ար. անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Բ. 682, երրորդը՝ Ցեմին պէկ 1670 թ. (Ձեռ. Վատ. 936)։

*ԵՄԻՆ-ՄԵԼԻՔ, իգ. կազմված նախորդից+մելիք. մի անգամ գտնում եմ հիշված ԺԵ դարում։ Բայց գուցէ պետք է հասկանալ Եմեն-մելիք «Եմենի թագավոր». համեմ. Եմենիկ։

— Եմին-մելիք, կին Վահան երեցու և մայր Ավետիք աբեղայի, որ օրինակեց Սաղմոսը՝ Գլախորի վանքում, 1495 թ.—Ձեռ. Սանաս. 24 ա։

ԵՄՐԱՆ, ար. ծագումն անհայտ։ Ըստ Տաշյան, Ցուց. էջ 47 կա Եմրան՝ որդի Աբրահամ Նահապետի, բայց սա գրչի սխալ է և պետք է հասկանալ Զեմրան, ինչպես ունի Ծն. իե. 2 (=հուն. Ζομβρᾶν, այլ ձ. Ζεμβρᾶν, Ζεβρᾶν)։ Ա. Մնաց. ա. 32 գրված է զԵմրան, բայց հույնը այստեղ էլ ունի Ζεμβρᾶμ. Բացի սրանից Զեմրանը Աբրահամի արժանավոր որդիներից չէ և սպասելի չէ, որ նրա անունը գործածված լինի մեր մեջ, այն էլ այնքան ուշ ժամանակ (ԺԱ դար)։ Կարելի է թերևս դնել արաբ. عمران ʿumrān կամ ʿomrān «բարգավաճություն, ճոխություն, բարեկեցություն», բայց խանգարում է նախաձայն ե։

— Եմրան, օգնական Վասակ սպարապետի՝ Թուրքերի դեմ պատերազմում, ուր և մեռավ «1020 թ».—Ուռհ. 13, 14։

*ԵՆԱՆՈՍ, ար. ծագում է Եւս. պատմ. Բ. իդ "Ανανος անու-

նեց, որ ասորի [illegible] տառադարձության սխալ ձայնանիշով ընթերցման արդյունքն է (Կարրիէր. Աբգարու զրոյցը, էջ 59)։ Ըստ Խոր. Բ. իգ նախնի Բագրատունի անուն էր. նույնը Մխ. անեց. խա։

— 1. Ենանոս ասպետ Բագրատունի. գերի Հիւրկանոս քահանայապետին փախցնելով պատժվեց Արշամ թագավորի ձեռքով (Ա դար)։—Խոր. Բ. իգ. Ցհ. կթ. և. Մխ. անեց. ը.—Ենանիոս՝ Արծր. Ա. գ.—Անանիոս՝ Արծր. Ա. գ.—Ենան՝ Ուխտ. Ա. լ.—սեռ. Ենանոսի՝ Խոր. Բ. իգ. Ուխտ. Ա. լ. Մխ. անեց. ը.—Ենանայ՝ Ուխտ. Ա. լ.—Ենիանեայ՝ Արծր. Ա. գ.—բց. յԵնանոսէ՝ Խոր. Բ. իգ։

— 2. Ենանոս որդի Վանեցի. այս զարմանալի անձի պատմությունը հիշված է Manus. brit. mus. 255 ա, բայց ոչ դեպքն է պատմված և ոչ էլ թվականն է տալիս։

Ենարկիսս տես Նարկիսոս։

*ԵՆԳԻԲԱՐ, ար. < հին թրք. یکی yengi «նոր»+ պրս. بار bār «պտուղ» բառերից և նշանակում է «նուբար», որ նույնպես անձնանուն է, ինչպես և սրանց համանիշ Թուրվանդ ձևը։ Ավանդված է մեզ 1647 թ. (Ձեռ. Թուր. 101 բ), 1735 թ. (Ձեռ. Վասպ. 546), 1736 և 1738 թվերին (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ, 44 ա)։ Այժմ Կովկասում կա Ենգիբարեան ազգանունը։

*ԵՆԳԻԲԷԿ, ար. < հին թրք. یکی yengi «նոր» + بك beg «բէգ» բառերից և նշանակում է «նոր իշխան»։ Գործածված է ԺԶ—ԺԷ—ԺԸ դարերում։ Այսպես Ենգիբէկ 1585 թ. (Ձեռ. Վասպ. 699, 704), Ենկիպէկ 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ), Ենգիբակ 1769 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 5 ա), Յէնիբէկ՝ անհայտ թվականով մի հիշատակարանում (Bodleian 148)։

*ԵՆԳԻԽԱՆ, իգ. < հին թրք. یکی yengi «նոր»+xān բառերից և նշանակում է «նոր իշխան». մի անգամ գտնում եմ գործածված 1693 թ. (Ձեռ. Վասպ. 334, 335)։

ԵՆԻԲ, ար. աղուան անուն։

— Ենիբ, սպանող Ջուանշեր արքայի Աղուանից (շուրջ 680 թ).—սեռ. Ենիբայ. «Առեալ չարաբարոյ (Տաճն. չարաբարոյն) Ենիբայ (Տաճն. Ենեբայ)՝ դաւաճանողին Վարազայի (Տաճն. Վարազոյի) զվազըն արքունական...» Կղկնտ. Բ. լգ։

*ԵՆՈՎՍ, ար. < եբր. אנוש Enōs անունից, որ բուն նշանակում է «մարդ» և նույն է արաբ. ناس nās, اناس anās «մարդիկ» բառի հետ (Gesenius 53)։ Այս անունով հայտնի էր Եբրայեցոց մեջ Ենովս նահապետ, որդի Սեթի, որ առաջին անգամ «նա յուսացաւ կոչել զանուն Տեառն Աստուծոյ» (Ծն. դ. 26)։ Բառխ

ծագման տեղյակ են նաև հները. համա. «Ենովս ի քաղդեէրէն մարդ ասի» Յայսմ. մրտ. 14. «Ենովս որ է մարդ» Տաթև. հարց. 288. «Ենովս մարդ ընտրեալ» Տաթև. հարց. 299. տառադարձված է հուն. Ἐνώς, լտ. Enos և հունարենի վրայից էլ հյ. Ենովս: Այս անունը հների մեջ շատ քիչ է գործածված և այժմ էլ բոլորովին խափանված է՝ շփոթվելով Ենովք անվան հետ և տեղի տալով նրա առաջ։

— 1. Ենովս եպիսկոպոս, չհամաձայնվեց Կարնոյ քաղկեդոնականների ժողովի որոշումներին և եկավ Մովսէս Բ. («574—604 թ») կաթուղիկոսի մոտ (Կնիք հաւ. յաջ. 88).—ըց. յԵնովսայ՝ հգկնտ. Բ. խղ (ըստ Էմինի)=յԵնոսեայ (ըստ Տաճն.)։

*ԵՆՈՎՔ, ար. < եբր. חנוך Xanōkh անունից, որ ծագում է חנך ḥnkh «օրհնել, նվիրագործել» բայից և նշանակում է «նուիրեալ» (Gesenius 244—5)։ (Տաթև. հարց. 299 մեկնում է «Ենովք՝ շնորհ», որ ճիշտ չէ)։ Այս անունով հայտնի է եբրայեցոց մեջ Ենովք նահապետը (հայր Մաթուսաղայի), որ ապրեց 365 տարի (Ն. Ք. 622—987) և այնքան հաճելի եղավ Աստուծուն, որ կենդանի երկինք բարձրացավ ըստ Աստվածաշնչական առասպելի (Ծն. Ե. 21—24)։ Տառադարձված է հուն. Ἐνώχ, լտ. Enoch, Henoch, Enochus, պրս. اخنوخ Uxnux. հայերենում դարձել է ըստ հունականին Ենովք։ Կա նաև Ենոք ձևը, որ իբրև ար. անվան օրինակ հիշում են Թր. քեր. 43 և Խոր. քեր. 179։ Քիչ գործածական է ինչպես հնում, նույնպես և այժմ՝ Ենովք և Ենոք ձևերով (Հիւբշ. 334)։

— 1. Ենովք թարգմանիչ, աշակերտ Ս. Մեսրոպի. նշանակվեց Սպերի վրա (Ե դար).—Կոր 18. Խոր. Գ. կ։

— 2. Յենովք վարդապետ կաթուղիկոսարանի (Ժ դար)։—Լաստ. բ։

— 3. Ենովք երեց Վահկացի, գրել է ընդարձակ նախատինք հույների դեմ՝ այն ժամանակ, երբ հունաց Կիւռ Ժան կայսրը գերի տարավ Լևոն Ա-ին («1141 թ») և հունադավանություն ընդունել տալով՝ ստիպեց գրել Հայոց դեմ։ Դրա համար է որ Ն. Լամբրոնացին ասել է. «Անհաւատիկ մի աղբիւրն բղխեաց քաղցր և դառն ըստ ժամանակին պատահման»։—Տաշեան, Ցուց. 335 (գրված Յէնոք), Հայապ. 98, Միսուան 162, 516։

— 4. Ենոք հայր Յորդանանի, որ մի եկեղեցի է կառուցել 1347 թ.—Բարխուտ. Արցախ 363։

— 5. Ենոք քահանա, հայր Աստուածատուր երեցի, որ Տա-

րօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսից գնեց նրա գրած Աւետարանը, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 6. Յենոք, որդի Աստուածատուր երեցի, որ Երզնկայի Թլակ ավանում Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսից գնեց մի Աւետարան, 1370 թ.—Նախորդի թոռն է։—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 7. Ենովք միաբանակեաց, ուսուցիչ Դաւիթ քհ. գրչի, որ օրինակել է Մաշտոցը Հաւուցթառի վանքի համար, 1423 թ.—Այրարատ 357։

— 8. Յենոք որդի Եւլբէկի՝ եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեան. 18։

— 9. Ենովք Շողայեցի, երեց Երզնկայի. համբորդել է Երզընկայից Կարին ՌԽԹ=1600 թ.—Գրիգ. Ժմ. 202։

— 10. Ենովք Ակլայեցի, ժանր մատենագիր 1764 թվից.—Հացունի, Պատմ. տարազի 342։

*ԵՇԻԼ, ար. < Թրք. یشل yešil, արեւել. Թրք. yašil «կանաչ, դալար» բառից. հիշված է Էշիլ, Իաշիլ ձևով 1552 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1853) և Էշիլ, Իաշիլ ձևով 1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 50—51) թե առանձին ոճ, թե նրա պապը և թե Էշիլենց ազգանվան ձևով, ուստի անշուշտ ԺԵ դարից։

*ԵՈԼԴԱՇ, ար. < Թրք. یولداش yoldaš «ուղեկից, ընկեր» բառից. մի անգամ գտնում եմ գործածված Յաւլտաշ ձևով՝ 1515 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390)։

*ԵՈԽՍՈՒՖ տես Յովսէփ:

*ԵՊԻՓԱՆ, ար. այս անվան հետ հմմտ. հուն. ἐπιφάνιος «հայտնություն» և հատկապես «Աստվածայայտնութիւն Քրիստոսի», ἐπιφανής «հայտնի, երեւելի, նշանավոր, ազնվական», որ իբրև տիտղոս է գործածվել Ասորիքում իշխող Անտիոքոս անուն մի քանի թագավորների համար (Անտիոքոս Եպիփան)։ Քրիստոնեության ժամանակ իբրև անձնանուն սկսեցին գործածվել՝ Ἐπιφάνιος > լտ. Epiphanius, Ἐπιφάνης > լտ. Epiphanes, ֆր. Epiphane. Այս անունով հայտնի են Ս. Եպիփան ծնված Պաղեստինում (310—403), Եպիփան Կիպրացի, եկեղեցական հայր և մատենագիր։ (Բուն ծագումն է բառս ἐπι «վրա»+φαίνω «երևալ»)։ Մեր մեջ քիչ է գործածված, այժմ էլ շատ հազվագյուտ։

— 1. Եպիփան Եղեսացի, իմաստասեր և ճարտասան հայ, ազգական Ս. Եպիփանի (ասորի), որ նրա համար գրեց Արարա-

ծոց Մեկնութիւնը։ Այս գրքից հատուածներ տես Ալիշան՝ Հյուսն. 13 շար։

— 2. Եպիփան, հույն, Լուսավորիչը կարգեց նրան Գլակայ վանքի վանահայր Զենոբ ասորուն օգնական. ապա երբ Զենոբը մեռավ, Եպիփանը հաջորդեց նրան և իբրև վանահայր կառավարեց վանքը մինչև իր մահը՝ «352 թ».—Զեն. անտ. Զենոբ, Մամիկ. են, Աղգաղ. 103, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 64։

— 3. Եպիփան, աշակերտ Դանիէլ քորեպիսկոպոսի, ընկեր Շաղիտայ. հույն. վարդապետ Աղձնեաց և մեծ Ծոփաց. Մեծն Ներսէսի («353—373 թ») ժամանակ ճգնում էր «Անահտայ աթոռ» կոչված տեղում։ Ներսէսը կարգեց նրան մենաստանների հայր և տեսուչ։ Ներսէսի մահը տեսիլքով հայտնվեց նրան։ 500 ճգնավոր աշակերտ ուներ, որոնց հետ գնաց հունական մի կղզի, ուր և մեռավ։—Խոր. Գ. ի. Բուզ. Գ. ժդ. Ե. իե, իէ, իը. Մեսր. եր. 113. Ցայսմ. նոյ. 19.—սեռ. Եպիփանու՝ Բուզ. Ե. իե, իէ, իը. Ցայսմ. փետր. 3,

— 4. Եպիփան եպիսկոպոս Մեծ Հայոց. գրել է հունաց Լևոն կայսեր և ընդունել Քաղկեդոնի դավանանքը։—Տաշեան, Ցուց. 109.—հիշված է Բաբգէն կաթողիկոսից («490—516 թ») առաջ և որովհետև նրանից առաջ կան միայն Լևոն Ա կայսր (457—474) և Լևոն Բ (474), ուրեմն սույն Եպիփանն էլ պետք է դնել Ե դարում։

— 5. Եպիփան, մին եօթը խոստաճարակներից, որոնք նահատակվեցին Պարսից ձեռքով «604 թ», Գայլ Վահանի պատերազմին։—Մամիկ. բ. Ցայսմ. սեպտ. 30։

— 6. Եպիփան եպիսկոպոս Մամիկոնէից և վանահայր Գլակայ վանից, հաջորդ Ստեփաննոսի, Եզր կաթողիկոսի հետ մասնակցեց Կարնոյ ժողովին «633 թ».—Մամիկ. գ, դ. Չամչ. Բ. 328։

— 7. Եպիփան միայնակեաց, որին գրել է Ն. Շնորհալին («1166—1173 թ») «Հարցմունք թէ Զի՞նչ են համբարուք և յուշկապարիկք»... (Շողակաթ 40)։

— 8. Եպիփան, որդի Սարգիս քահանայի, որ Կողբում (Ղազախ) մի խաչքար է կանգնեցրել իր և իրայինների հիշատակին՝ 1244 թ.—Արցախ 385։

— 9. Եպիփան կրոնավոր, եղբայր Կոստանդին եպիսկոպոսի՝ առաջնորդի Ռապանայ. գրել տվին մի Աւետարան, Հողմա գրչին, նախ քան 1269 թ.—Ջեռ. Կես. ածած. 46 ա։

Եռատան տես Առատան

*ԵՍԱԴԱՐ, ար. համարում եմ պրս. عيسى ʿīsa «Յիսուս»+ دار dār «կրող, ունեցող» բառերից, որով նշանակում է «նա որ կրում է իր մեջ Յիսուսին». ըստ ձևի հմմտ. պրս. dīvdār, ըստ իմաստի՝ Քրիստափոր։ Մի անգամ կա գործածված ԺԴ դարում։

— Եսադար, որդի Նաթէլի Վայոց ձորեցի, հիշված 1334 թ. —Թորոս աղբ. Բ. 375։

*ԵՍԱՅԻ, ար. < եբր. ישעיהו Išaʿyāhu (կամ նաև ישעיה Išaʿyā) անունից, որ ծագում է ישע išʿ «ազատել» արմատից և նշանակում է բուն «փրկութիւն Տեառն»։ Սրա հետ նույն է ասուր. Yašeʿyāma անունը (Gesenius 326)։ Այս անունով հայտնի է հատկապես Եբրայեցոց չորս մեծ մարգարեներից առաջինը (շուրջ 774—690 Ն. Ք)։ Տառադարձված է հուն. Ἡσαΐας կամ Ἠσαΐας (լտ. Isaias, ֆրանս. Isaïe)։ որից և հյ. Եսայի (փոխանակ լինելու Էսայի, ըստ հունական դ-ի)։ Գրված է նաև Իսայի Եփր. գաղ. 133, սեռ. Իսայեայ Եփր. Բ. կոր. 99, Իսայիաս Աթան. 93։ Գործածական է եղել սկսած Դ դարից և այժմ էլ է։ Ժողովրդական ձևերն են Եսայի, Էսայի, որոնցից էլ Եսայեան, Էսաեան ազգանունները։ Կրճատ կա Սայի՝ Տաշեան, Ցուց. 1016 բ։

— 1. Եսայի քահանա, ընկերակից Հռիփսիմեանց («մ. 301 թ») կույսերի.—սեռ. Եսայեայ՝ Խոր. պատմ. հռիփ. 300. (անորոշ ձևով ասվում է. «Եւ անտի փոխին, և գնացեալ ի գաւառն Մոկաց, Սուրբ Խաչ կոչեցեալ տեղի, որ և մեծ սքանչելիս կատարեաց Աստուած ի ձեռն նոցա պատուական սուրբ խաչին Եսայեայ և Դանիէլի»։ Ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 15 այս երկուսը Հռիփսիմեանց ընկերակցող քահանաներ էին)։

— 2. Եսայի ասպետ, որդի Աշամ Արծրունւոյ. գրեց Յունան և Բարաքիաս նահատակների (մ. 327) ընդարձակ վկայաբանութիւնը, որ և անցավ Հունաց, Լատինաց և Հայոց Յայսմաւուրքի մեջ (մարտ 20—21).—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ, 296։

— 3. Եսայի եպիսկոպոս, Ծ-րդ առաջնորդ Ծուրտաւի. հաջորդեց Ստեփանոս Ա-ի, շուրջ 550 թ.—Ուխտ. Բ. խբ. Գիրք թղ. ծա։

— 4. Եսայի պատկերամարտ քարոզիչ, իր ընկեր Թադէոսի և ուրիշների հետ հիշված է «574—604 թվերին» (տես Յեսու անվան տակ).—Վրթ. քերթ. պտկ. 307. Տաշեան, Ցուց. 207. Զարբ. Հին դպր. 467։

— 5. Եսայի կաթուղիկոս հայոց, Նիգ գավառի Աղապատրուշ կամ Եղիպատրուշ գյուղից էր. մի այրի մուրացիկ կնոջ

միամոր երախան։ Մայրը մուրալով հասել էր Դուին և Կաթողիկոսի դուռն առաջ մուրացկանություն էր անում, «ցրտահար սառուցեալ ի ձմերայնի և տապախարշ արևակէզ յամարայնի»։ Քահանաները քանիցս անգամ հորդորեցին նրան, որ հեռանա դնա, բայց նա պատասխանում էր միշտ. «Ո՞չ գիտէք, զի սակս կաթուղիկոսութեան զօրգեակս իմ աստ մնուցանեմ»։ Վերջապես դժբախտ զույգը կաթողիկոսի ուշադրության կարժանանա, մանուկը կընդունվի հայրապետանոցում, այնտեղ կսնվի և կուսանի և մի օր էլ եպիսկոպոս օծվելով՝ Գողթն գավառի վրա կնշանակվի։ Ըստ իս նա ինքն է Եսայի եպս. Գողթան, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ» (Ազգապ. 839)։ Ավելի ուշ՝ ուղեկից եղավ Սիոն կաթողիկոսին և մասնակցեց Պարտավի եկեղեցական ժողովին «768 թ»։ Սիոն կաթողիկոսի մահից հետո հաջորդեց նրան և գահակալեց «775—788 թ»։ Դիմեց Արաբներին և խնդրեց, որ թեթևացնեն Հայոց վրա դրած հարկերը, բայց ի զուր—Կանոն. 166, Ցհ. կթ. իգ. Ցհ. կթ. հյր. 276. Սամ. անեց. 89. Մխ. անեց. դ. Ասող. Բ. բ, դ. Կղկնտ. Գ. ի (=Շահն-Եսայիա). Մխ. այրիվ. 21. Կիր. 42. Վրդ. խ. Միխ. ատ. իթ (=իը). Եզն. եր. 268. Քհնպ. 272. Օրբ. հա.—Եսայիաս՝ Ղև. խա, խբ.—սեռ. Եսայեայ՝ Սամ. անեց. 89. Յայսմ. ապր. 8. տես և Տաշեան, Ցուց. 653։—Չամչ. Բ. 411—9. Ազգապ. 893—906 (թեև էջ 894 դնում է եպիսկոպոս Գողթան և անդամ Պարտավի ժողովի, բայց այս Եսային չի կցում Մանազկերտի ժողովի անդամ՝ Գողթան Եսայի եպիսկոպոսի հետ. միևնույն ժամանակ, էջ 893 ասում է, որ որբ Եսայիի մանկությունը ընկնում է Յովհան Օձնեցու («717—728 թ») օրերը։ Ըստ իս տեղը մի քիչ պետք է շարժել։ Եսայիի ծնունդը պետք է դնել շուրջ 696 թ. Սահակ Գ Ձորափորեցու («677—703 թ») օրով, երբ ընդունվել է Դուինի հայրապետանոցը. շուրջ 30 տարեկան ձեռնադրվեց եպիսկոպոս Գողթան և մասնակցեց Մանազկերտի ժողովին «726 թ». ընտրվեց կաթողիկոս 79 տարեկան և մեռավ 92 տարեկան։ Եթե այս հաշիվը չընդունվի, պետք է դնել իրար հաջորդող երկու Եսայի եպիսկոպոս Գողթան, ինչ որ անպատեհ է։—Միսական 312 բ ուրիշ անպատեհություն է ստեղծում. Գողթան եպիսկոպոսների ցանկում դնում է այս Եսային 768—773 թ., իսկ 726 թվի Գողթան Եսայի եպիսկոպոսին չի հիշում)։

— 6. Եսայի վարդապետ մուրացիկ (774 թ).—Առաք. պատմ. 479 գրում է. «Թուին ՄԻԳ շրջի տէր Եսայի մուրացիկն».—

*կարծեմ այն հռետոր վանականն է, որ Արաբների դեմ ապըստամբություն էր քարոզում՝ գյուղից գյուղ շրջելով։*

— 7. Եսայի *իշխան Աղուանից (Թ դար). տես Ապումուսէ։*

— 8. Եսայի *իշխան Աղուանից. ներկա էր Տաթևի օծման հանդեսին (906 թ).—Օրբ. խբ (թվականը չի թողնում միացնել նախորդի հետ)։*

— 9. Եսայի, *պատմիչ անծանոթ. հիշում է Ղազար Ջահկեցին.—Հայապ. 13 (Չէ՞ շփոթված Եսայի Հասան—Ջալալեանի հետ)։*

— 10. Եսայի *վանահայր Սանահնի վանքի. երբ Սմբատ Բ թագավորը այցելության եկավ այս վանքը (979 թ.), Տաշիրքը անկախ թագավորություն հայտարարեց և Եսայիին էլ Խաչիկ կաթողիկոսի ձեռքով Տաշրաց եպիսկոպոս ձեռնադրել տվեց։ Հրովարտակը տես Մովսէսեան, Լոռի Կիւր. թգ. 25։*

— 11. Եսայի *կրոնավոր Կարնեցի. բարեկամացավ Հարքի Յակոբոս եպիսկոպոսի հետ և իմանալով նրա հարումը Թոնդրակեցիների աղանդին, մատնեց Սարգիս կաթողիկոսին («992—1019 թ»։—Լաստ. իբ։*

— 12. Եսայի *Ա. պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Մովսէսին 1133—52 (Աղաւնունի)։*

— 13. Եսայի *եպիսկոպոս, առաջնորդ Տարօնի Առաքելոց կամ Ղազարու վանքի. համախոհ Ներսէս Լամբրոնացու. հիշված է 1200 և 1204 թվերին (Լմբ. 229, Տաշեան, Ցուց. 334, Հայապ. 448, 451, Տաթև 1927, 183)։ Զորս քահանաներով գնաց Խլաթ, գնելու համար գերի ընկած մի մեծ Տօնական, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 472—3։*

— 14. Եսայի, *առաջնորդ Բարձրբերդի Խորին անապատի 1270 թ.—Տաթև 1927, 185։*

— 15. Եսայի, *աշակերտ Ներսէս վարդապետի. այս երկուսի համար Լուսեր գրիչը օրինակեց Եզնիկը՝ 1280 թ.- տես իմ Քնն. և համմ. Եզնկայ, էջ 4, 7։*

— 16. Եսայի *գրիչ. օրինակել է Կեսարիոյ Անդրէաս եպիսկոպոսի Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու, 1284 թ.—Ձեռ. Կարին. 164։*

— 17. Եսայի *վարդապետ, օրինակեց Մեկնութիւն Մարգարէութեան Եզեկիէլի, Թանահատի վանքում 1301 թ.—Սմբատեանց, Երնջակ 127։*

— 18. Եսայեաս *վրդ. (Կիլիկիա), որին Կեսարիայի Կոստան-*

գին արքեպիսկոպոսը (ապա կաթողիկոս «1307—1323 թ») նվեր է ուղարկել Գէորգ Սկեռացու Մեկնութիւն մարգարէին Եսայեայ՝ Մրենի Վարդան եպիսկոպոսի ձեռքով: Մնում է իր ձեռագիր նամակը այս առթիվ. «Իմ ի սրտիս սնեալ անխզելի կապով միացեալ և ոգւոյ չափ սիրեցեալ եղբայր ի Քրիստոս և ս. եկեղեցւոյ արդիւնաբան վարդապետ Եսայեաս ի Քրիստոս Կոստանդին նուաստ եպիսկոպոսէ Կեսարիու ղՔրիստոսական ընկալ ողջոյն սր. վերնատանն և ծանիր որ զմեկնութիւնն զոր խոստացայ, յղարկեմ ձեր սրբութեան. նա տվի ի ձեռ Վարդան Մրենու եպիսկոպոսի որ բերէ առ ձեզ. աղաչեմ որ երբ գիրքս առ ձեզ հասանի, նա զձեր բարիոք կենալոյն զորպէսն և զգրոցս թէ հասաւ առ ձեզ՝ գրեա ի մեզ. ի Քրիստոս ս. աղօթքն յիշէ զմեզ աղաչեմ...»: —Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. բ. 1845: (Այս նամակը՝ որ մեզ բերինք ժամանակի ընտանի լեզվից իբրև մի սիրուն նմուշ, գրված է 1307 թվից քիչ առաջ):

— 19. Եսայի եպիսկոպոս Թեսաղոնիկէի, անդամ Սսոյ ժողովի «1307 թ».—Չամչ. Գ. 309, Ազգապ. 1785:

— 20. Եսայի քահանա, շնորհեց Աստուածատուր գրչին Աւետարանը՝ օրինակելու համար, 1317 թ.—Manus. brit. mus. 20 բ:

— 21. Եսայի վարդապետ, որի հետևորդ Կիրակոս վարդապետը օրինակել է Աստուածաշունչը 1317 թ.—Ջեռ. Կարին. 13:

— 22. Եսայի վրդ. Հայկազուն. ժամանագիր. ունի Մեկնութիւն Եզեկիէլի, որից 5 օրինակ հիշատակում է Ջեռ. Կարին. 153, հնագույնը ՉՀԱ=1322 թվից: Զարբ. Հին դպր. 783 համարում է առանձին ժամանագիր, բայց ըստ իս Եսայի Նչեցին է, որ ունի արդարև Մեկնութիւն Եզեկիէլի:

— 23. Եսայի (գրված կամ կարդացված է Եսաւոյ, որ բոլորովին անսովոր անուն է մեր մեջ) րաբունապետ, որի օրով սկսվել և նրա աղոթքով վերջացել է Վայոց ձորում Սելիմի կարավանատան շինությունը՝ 1332 թ. ըստ արձանագրության (Սիսական 164): Ըստ իս Եսայի Նչեցին է, ինչպես դնում է նաև Սիսական, էջ 165 բ ծան:

— 24. Եսայի Նչեցի, Սանոյ Նիչ ավանից, աշակերտ Ներսէս Մշեցու՝ աշակերտի Վարդանայ մեծի (Թորոս աղբ. Բ 483). հաջորդեց իր ուսուցչին՝ ստանալով վարդապետական աստիճան 1284 թ. նստավ Սիւնեաց (Վայոց ձոր) Գլաձորի վանքը, որ նրա օրով հռչակավոր դարձավ: Իր աշակերտների թիվը հասցնում են

363, որոնցից նշանավոր են Յովհաննէս Արճիշեցի, Մխիթար Սասնեցի, Տիրատուր վարդապետ, Յովհաննէս Որոտնեցի (Նոտաքք 29, 36, 76), Գրիգոր Մեռեւյարոյց, Յովհան Երզնկացի, Խաչատուր Կեչառեցի ևն։ Կոչված է «մեծ վարժապետ»։ Իր գործերն են՝ Մեկնութիւն Քերականին, Վերլուծութիւն Դիոնեսիոսի Արիոպագացւոյ Աստուածաբանութեան (որի լուսանցքներում մնում է Նչեցու ինքնաձեռագիրը ըստ Տողակաթ 212), Լուծմունք յեսայեայ մարգարէութեանն, Ճառք, Մեկնութիւն Եզեկիէլ մարգարէի (գրել է 1307 թ. Սիւնեաց վերադիտող Ստեփաննոս Օրբէլեանի առաջարկութեամբ. այս առթիվ երկուսի մէջև եղած թղթակցութիւնը տես Tübingen, էջ 10—11. համա. նաև վերը՝ № 22), Թուղթ առ Տ. Մատթէոս, Թուղթ Եսայեայ վարդապետի ի պատասխանի ընդդէմ պարոն Հեթումի հիւռիկոսցւոյն՝ վասն կարգաց և կրօնից Հայաստանեայց եկեղեցւոյն և վասն դաւանութեան հաւատոյ, վասն ժողոյման Զատկին և Եփեսոսի երկրորդ ժողովոյն, և վասն Քաղկեդոնի ժողովոյն, և վասն բաժակին ջրոյ, Պատճառ Ս. Աստուածին՝ որ Հայք և Ասորիք, Հապաշք և Ղպտիք «որ խաչեցարիւ» ասեն միայն, Ճառ Խաչի, Ճառ Արարչութեան, Պատասխանի Թղթոյն Ֆռանկաց, որ գրեալ էին առ Հայք վասն նախատանաց և ոչ միաբանութեան (Թորոս աղբ. Բ. 395, Զարբ. Նոր մատ. 192 և ավելի ընդարձակ Ձեռ. Վենետ. Բ. 732)։ Եսայի վրդ. Նչեցին ստորագրում է նաև այն թղթին, որ գրեցին աբեղյան կրոնավորները Գրիգոր Է Անաւարզեցի («1293—1307 թ») կաթուղիկոսին և այն թղթին՝ որ գրեցին Կոստանդին Գ կաթուղիկոսին («1307—1323 թ»)՝ բողոքելով նրանց մացրած կաթոլիկական նորմուծութեանց դեմ հայ եկեղեցու մեջ (Bodleian 85)։ 1305 թվին Գրիգոր Անաւարզեցի կաթուղիկոսից նվեր ստացավ Շնորհալու Ընդհանրականը և այլ թղթեր (Տողակաթ 209)։ Յովհաննէս և Կիրակոս Երզնկացի դպիրներին օրինակել է տվել մի Աստուածաշունչ՝ 1318 թ. (Տողակաթ 211)։ Իր ձեռագիրը տես Վիեննայի Մխիթարեանց Ձեռ. № 517։ Մեռել է «1333 թ» (ըստ Ազգապ.), բայց դեռ կենդանի է հիշված 1334 թ.՝ Թորոս աղբ. Բ. 375, Ձեռ. Դաշեան, Բ. 30 և ավելի ուշ՝ 1337 թ. Ձեռ. Բեռլինի 26 բ։ Ըստ այսմ Սիսական մահը դնում է 1338 թ. որով Նչեցու ամբողջ ուսուցչական գործունեությունը լինում է 54 տարի 1284—1338։—Օրբ. կը. Մ. մաշտ. 336 բ. Յայսմ. փետր. 11. Առաք. պատմ. 340.—Ցեսայի՝ Սամ. անեց. շար. 168.—Եսայիաս՝ Մի. ժեծոփ. 29, 30. Տաշեան, Ցուց. 807?—ակռ. Եսայ

եայ՝ *Պարգ. 695. Մեծոփ. 15.* Manus. brit. mus. *22 բ. Ձեռ. Վիեննա. Բ. 858*,—Յեսայեա՝ *Ցայմ. ապր. 27.—տես նաև Տաշեան, Ցուց. 114, 137, 180, 359, 454—5, 781—3, 941, 1032, 1039 և 1083. Զարբ. Նոր մատ. 191—3, Այրարատ 268, Տաշեան՝ Ժղվ. առ. Վարդանայ 119, Հայապ. 525—6, 546, Ցուշիկք, Բ. 480, Ձեռ. Դաշեան, Բ. 29 բ, Սխակյան 131—7 (ուր գրվում է Դրաձորի դպրոցի պատմությունը և Նչեցու գործերի նկարն ու նկարագրությունը)։*

— 25. Նայի *պարոն, իր հիշատակ իր ծնողների՝ Թէոդոսիայում շինել է մի «սուլուխ, որ է ջրո տման», ինչպես արձանագրված է Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու արևմտյան դռան աջ կողմը, 1372 թ*—Кучук-Иоаннесов, Стар. арм. над... юго-зап. Руси, *էջ 36։*

— 26. Նայի *իշխան Մերդինի. Վրաց Գիորգի թագավորը ուղարկեց նրան Լենկթիմուրի մոտ (1387), խնդրելով որ չարշավի Վրաստան.—Վրայ ազր. Բ. 134, 143։*

— 27. Նայի *Բ. պատրիարք Երուսաղեմի, հաջորդեց Գրիգոր Դ-ի՝ 1391—94 թ։*

— 28. Նայի *աբեղա, գրիչ. օրինակել է մի Տաղարան, Սսում 1395 թ.—Բամաջեան, Լեռն Ե. 161։*

— 29. Նայի *Գ. արքեպիսկոպոս և աթոռակալ պատրիարքության Երուսաղեմի. Մարտիրոս Ա. Եգիպտացու փոխակերն էր «1430—1439 թ»։—Պոլսի Ղալաթիոյ թաղի Ս. Լուսաւորիչ եկեղեցու արձանագրության մեջ 1436 թվին հիշվում են Թէոդորոս կաթուղիկոս և Երուսաղեմի պատրիարք Նայի։ Այս թվականը սխալ է (տես Նոտարք 106 ծան.), որովհետև Թէոդորոս (Բ) կաթուղիկոսը նստել է «1382—1392 թ». բայց Նայի Գ-ի համար հարմար է։—Նային գտնվում էր Պոլսում և նրա միջոցով Եւգինէոսպապը բանակցության մտավ Կոստանդին Զ Վահկացի կաթուղիկոսի հետ և հրավիրեց մասնակցելու Ֆլորենտիոյ ժողովին («1443 թ»).—տես.* Նայեայ՝ *Նշչ. լաւ. 423.—Ազգապ. 2077, Պալճեան 80—84, որ տալիս է նաև Նայիի հետ եղած թղթակցության պատճենը և կարծում է (էջ 92), որ Ֆլորենտիոյ ժողովին մասնակցող երկու հայերից մեկն է, երկրորդը լինելով Յովհաննէս արքեպիսկոպոսը։*

— 30. Նայի *կրոնավոր, որի հիշատակին մի խաչ է կանգնեցրած Ցղնայի Ս. Սարգիս եկեղեցում, 1441 թ.—Լալայեան, Ազգագր. հանդ. ԺԱ 321—2։*

— 31. **Եսայի** քահանա, հայր Յովանէս սարկավագի, որին Աքանդարի որդի Յոհանէսը մի Շարակնոց նվիրեց Արպելանում, 1449 թ.—Նորայրք 161, Manus. brit. mus. 95 բ, (վերջինում Աքանդարի տեղ տպված է Ժանկտար!)։

— 32. **Եսայի** ծաղկարար. նկարազարդեց այն Ճառընտիրը, որ օրինակել էր Մատթէոս գրիչը Նորավանքում, 1456 թ.—Զարբ. Թրգմ. 727։

— 33. **Եսայի** սարկավագ, որդի Մատթէոս քահանայի, որի համար Հայրապետ եպիսկոպոսը մի Ճաշոց արտագրեց Անաւարզայում (Կիլիկիա) 1466 թ. Եսայի սարկավագն էլ նրա համար Թուղթ էր կոկում։—Ձեռ. Հալէպի, Ա 235 բ։

— 34. **Եսայի**, նկարիչ և գրիչ. Ցետկար աղայի համար օրինակեց Աւետարանը Վայոց ձորի Հերմոնի վանքում, 1473 թ.—Արցախ 139։

— 35. **Եսայի** վարդապետ, հարազատ Մատթէոս գրչի, որ օրինակեց Գիրք Թղթոցը 1426—76 թ.—Կրպտ. եպս.՝ Դրփեանք 189։

— 36. **Եսայի** կազմարար. կազմել է այն Աւետարանը, որ Ալեքսիանոս եպիսկոպոսը օրինակեց Արքայից վանքում, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ։

— 37. **Եսայի** ձեռնասնունդ որդի Յովհաննէս եպիսկոպոսի, որ էր առաջնորդ Գեղարդայ վանքի, 1488 թ.—Այրարատ 346։

— 38. **Էսայի** երեց, մեռավ ու թաղվեց Սուչավայի Ս. Խաչ եկեղեցում, 1497 թ.—Տան, Արևելեան Հայք, Թրգմ. Գալեմքեարեան, էջ 19 (ՀԱ 1891, էջ 39)։

— 39. **Յիսայի** Հռոմկլայեցի, ճարտարապետ, նորոգեց Հալէպի հայոց եկեղեցին 1499 թ.—Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 27։

— 40. **Եսայի**, որդի Իսրայէլի. Սիւնեաց մելիքն էր. սպանեց Սիւնեաց աշխարհի մեծ խանին և գաղթեց Ղարաբաղ (1687). խանի զորքերը հետամուտ են լինում նրան. Եսային Մռաւ լեռան ձորերում ջարդում է նրանց, խանի եօթը որդիներին սպանում և հաստատվելով Մռաւ սարի շրջանում, հիմնում է Ջրաբերդի մելիքությունը։ Մեռել է 1728 թ.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 18։

— 41. **Եսայի** Հասան-Ջալալեան, որդի Վելիջան բէգի (մ. 1686), կաթուղիկոս Աղուանից, Սիմէոն Դ և Երեմիա (մ. 1700) կաթուղիկոսների մահից հետո, ինքնագլուխ օծվեց կաթուղիկոս և նստավ Գանձասարում «1702 Թ»՝ իր վրա միացնելով Աղուանից երկու պառակտված աթոռները։ Էջմիածնի Նահապետ կաթուղիկոսը կան-

չեց նրան էջմիածին և հաստատելով նրա պաշտոնը՝ ուղարկեց իր աթոռը։ Նահապետ կաթողիկոսի մահից հետո, Սիմէոն Դ-ի ազգականներից Ներսէս Դ օծվեց կաթողիկոս Աղվանից. իբր հակաթոռ Եսայիի (1706 թ)։ Աղեքսանդր կաթողիկոս Ջուղայեցին երկուսին էլ հրավիրեց էջմիածին, Ներսէսին կարգալույծ արեց և բանադրեց, իսկ Եսայիին վերահաստատեց։ Աղեքսանդրի հաջորդ Աստվածատուր Համադանցին կրկնեց իր նախորդի կարգադրությունը։—Եսային Գանձասարում մելիքների ժողով գումարեց և Իսրայէլ Օրիի ծրագրին պաշտպան հանդիսացավ։ Այսպէսով ներկայանում է մեզ իբրև Ղարաբաղի ապստամբության պարագլուխ։ Լեզգիների արշավանքի ժամանակ 10,000 հայոց բանակ կազմեց և պաշտպանեց երկիրը։ Մեծն Պետրոսի հետ բանակցության մտավ՝ Պարսից դեմ կռվելու և երկիրը նրանց ձեռքից ազատելու համար։ «1726 թվին» նա քշեց Ղարաբաղ արշավող Օսմանեան գունդը, ինքն էլ զենքով մասնակցելով կռիվներին։ Երբ Ռուսները Շվեդական պատերազմով զբաղված էին և չէին կարող օգնել նրան, Եսային էլ քաշվեց գործից՝ մինչև իր մահը «1728 թ»։ Գրել է Պատմութիւն Աղուանից, որ իր ժամանակի դեպքերի ընդարձակ նկարագրությունն է, որ հասնում է մինչև 1723 թ։ Այս գործի մի խեղճուկ համառոտությունը հրատարակեց Բաղդասար մետրապոլիտը Շուշում 1839 թ. կա նաև մի ուրիշ տպ. Երուսաղէմ 1868։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 20, 37, 51. Ազգագ. 2771. Լէօ, Հայկ. տպագր. 257, 271, 388։

— 42. Եսայի իշխան Ագուլիսի. երբ Պարսից թագավոր Ազատ խանը Նախիջևանը նվաճելուց հետո ուզեց նաև Ագուլիսը կողոպտել, Եսային քաջությամբ դեմ կանգնեց նրան, բայց չկարողանալով երկար դիմադրել, հաղթվեց և ինքն էլ սպանվեց (1752 թ)։—Ջամչ. Գ. 853։

— 43. Եսայի վրդ. Թոխաթցի. ունի ժամանակագրութիւն (ընդհանուր), աշխարհի սկզբից մինչև1760 թ։ Ուրեմն հեղինակը ԺԸ դարից է։—Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 208։

— 44. Մելիք Եսայի Մելիք-Ավանեան. Ղարաբաղի Դիզակ գավառի մելիք Ավանի որդին էր, որ հաջորդեց իր երեց եղբոր Մելիք-Արամին (1745 թ)։ Լավ հասկանալով ժամանակի պահանջները, առաջինն եղավ Ղարաբաղի մելիքների մեջ, որ մտցրեց պարտադիր զինվորական ծառայություն և կանոնավոր բանակ։ Այս բանակով նա քաջությամբ կռվում և իր երկիրը զերծ էր պահում թշնամիների հարձակումից։ Շատ պատերազմներ ունե-

ցավ Մելիք Շահնազարի, Փանահ խանի և սրա որդի Իբրահիմ խանի հետ։ Վերջին անգամ Իբրահիմ խանը երդմամբ խնդրեց, որ Տող բերդից իջնի և հաշտվի, բայց իսկույն բանտարկեց նրան և բանտի մեջ խեղդել տվեց (1781 թ)։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 65, 103. Առաքել վրդ.՝ Դիզակի մելիքութ. էջ 43—62 (որ նույնը պատմում է տարբեր ձևով)։

— 45. Եսայի Դ. Կարապետեան, Թալասցի, պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Յովհաննէս Ը-ին՝ աթոռը մոտ 4 տարի թափուր մնալուց հետո։ Գահակալեց «1864—1885 թ»։ Հիմնեց Երուսաղէմի վանքում տպարան, ձեռագրատուն և թանգարան. ինքն է որ առաջին անգամ ցուցակագրեց Երուսաղէմի ձեռագրերը և սկսեց հրատարակել Սիոն ամսագիրը.—Ազգապ. 4088։

— 46. Եսայի (գրված է Եսայեաս) վարդապետ, հորինել է «Մենդագիր լուսնոյ» տոմարական աշխատությունը։ Թվականը հայտնի չէ։—Տաշեան, Ցուց. 420։

*ԵՍԱՆ, իգ. (գրված է մի անգամ Եսայն և երկրորդ անգամ Եսան). համարում եմ արաբ. احسان iḥsān «շնորհ, պարգև» բառից, որ իրոք էլ պարսկական արտասանությամբ դառնում է ehsān.—Մի անգամ գործածված եմ գտնում ԺԵ դարում։

— Եսան տիկին, կին Մատթէոս քահանայի, ազգական կամ մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ օրինակեց Յայսմաւուրքը Կոթիփորոյ վանքում (Գուգարք), 1427 թ.—Նօտարք 84, 85։

*ԵՍԱՆԲԷԿ, իգ. կազմված է նախորդից+բէգ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1615 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա)։

*ԵՍԹԵՐ, իգ. < եբր. אסתר Esthēr անունից, որ հրեա մեկնիչները համարում են պրս. ستاره sitāra «աստղ» բառից ծագած։ Նոր քննիչներից ոմանք համեմատում են ասուր. Ištar ձևի հետ։ Այս անունով հայտնի է հրեա գեղեցկուհին Եսթեր՝ Պարսից Ասուերոս կամ Արտաշէս թագավորի կինը, որ իր աղերսանքով փրկեց հրեա ժողովուրդը ընդհանուր կոտորածից (շուրջ 509 Ն. Ք.)։ Այս պատմությունն է նվիրված Աստուածաշնչի մի գիրքը, որ կոչվում է «Գիրք Եսթերայ»։ Տառադարձված է հուն. Ἐσθήρ (լատ. ֆրանս. գերմ. Esther, ռուս. Есфирь են), որից և հյ. Եսթեր։ Հներից ավանդված չէ. երկու անգամ հիշատակված է ԺԵ և ԺԶ դարերում. այժմ էլ անսովոր չէ։

— Եսթեր կին Առաքելի և մայր խոջա Խաչատուրի, որ Արճէշում Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— Եսբեր հիշված է երկրորդ անգամ 1653 թ. (Ձեռ. Վենետ. բ. 1037)։

*ԵՍՈՒԽԱՂԷՆ կամ ԱՐՍՎԱՂԷՆ*. ար. անուն աղուան. ծագումն անհայտ. բայց երևի իրանական է։

— 1. Արսվաղեն կամ Վարազվաղան, դաշնակից Տիգրան մեծի որդի Տիգրան փոքրի. Վրաց թագավորի հետ միասին պատերազմեց Պոմպէոսի դեմ (64 և 63 թ. Ն. Ք).—Գաթըրճեան, Տիեզ. պատմ. Բ. 75։

— 2. Եսուաղեն թագավոր Աղուանից. հաջորդեց Ասայի. իր օրով Ս. Մեսրոպ եկավ Աղուանք և գրեր հնարելով՝ հիմք դրավ Աղուանից գրականության (Ե դար).—Կաղկնտ. Ա. ժե. Բ. գ (Շահն).—Եսվաղեն՝ Օրբ. գ, ժե, իե. Մխ. այրիվ. 23.—Եսվաղեն՝ Կիր. ը.—Արսվաղեն՝ Կղկնտ. Բ. գ (էմին), Խոր. Գ. ծգ.—Արսվաղ՝ Կոր. 19.—սեռ. Եսուաղենայ՝ Կղկնտ. Ա. իգ։

**ԵՐԱԶՄԱԿ*, ար. < պհլ. razm, պրս. رزم razm «պատերազմ» բառից, որ տվել է նախ *Երազմ, և ապա փաղաքշական ձևով Երազմակ։ Թե այս բառը Իրանյանց մեջ էլ իբրև անձնանուն գործածական էր՝ ցույց են տալիս պրս. Razmyōzān > Ռազմիոզան (բուն «պատերազմ յուզող» անունը (Հիւբշ. 39, 69), ինչպես և Zanda-Razm որդի Սամանգանի թագավորի (Շահն. հտ. Զ. էջ 100)։

— Երազմակ դահճապետ Արշակ Բ թագավորի, որի հրամանով գլխատեց Գնելին՝ «359 թ».—Բուզ. Դ. ժե։

*ԵՐԱԽՆԱՒՈՒ*, ար. ծագումն անհայտ։

— Երախնաւու Անձևացի, պատանի սեգ յամենայնի, որ ամուսնացավ Արտաւազդ Բ-ի կանանցից մեկի հետ։ Տիրան Ա տըվեց նրան երկրորդական գահը, Արտաւազդի ամբողջ ժառանգությունը և արևելյան բանակի հրամանատարությունը (142 թ. ըստ Չամչ).—Խոր. Բ. կը։

*ԵՐԱՄ*, ար. ծագումն անհայտ. գործածական է եղել ԺԸ դարում, որից էլ ունինք այժմ Երամեան ազգանունը։ Այսպես հիշված են Երամ 1720 ական թվերին (Աբր. երև. 16), Երամ ոմն 1769 թ. (Գալէմքեարեան, Կենսագր. Սարգիս արքեպս. 336), Երամ անունով մի տղա՝ հիշված 1825 թ. (Իզմիտ. դկ. էջ 500՝ տպագրիչի հիշատակարանում), Երամ Երամեան ամիրա՝ 1831 թ. (Ազգապ. 3651)։

*ԵՐԱՆ*, ար. ծագումն անհայտ. գուցե նույն ընդ Երանի կամ Երանոս, որ տես տակը։ Հիշված է իբրև ար. անձնանվան օրինակ՝

Անան. քեր. 140, որից էլ Երանեան ազգանունը՝ նույնպես հիշված անդ։ Տես նաև Երանուհի և մանավանդ Իրանշահ։

†ԵՐԱՆԵԱԼ, ար. < հյ. երանեալ բառից, իբրև թրգմ. հուն. Մակար անվան։ Բայց որովհետև եալ վերջավորությունը դառնում է ել (հմմտ. Առաքեալ > Առաքել), ուստի այս բառն էլ դարձել է Երանել. այնպես որ գործածված է սեռ. Երանելին ձևով՝ անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1253 թ. (Թորոս աղբ. Բ. 361)։

†ԵՐԱՆԵԱԿ, իգ. < հյ. երանի, երանիկ «երջանիկ» բառից. իբր համազորներն են Երանուհի, Երջանիկ, Macarius, Բարխուդար, Խուքլու, Felix Ֆելիքս, Beate, Բեաթրիս կամ Բեաթրիչե, Fortunatus. Հիշված է Բ դարում և ամենահին հայկական անուններից մեկն է։

— Երանեակ, դուստր Տիրան Ա-ի, ամուսնացավ Տրդատ Բագրատունու հետ՝ 149 թ. (ըստ Զամչ.)—Խոր. Բ. կգ։

†ԵՐԱՆԻ, ար. < հյ. երանի «երջանիկ, բախտավոր» բառից. հիշված է 1793 թ. (Ձեռ. Թաւր. 45 բ)։

†ԵՐԱՆԻԿ, իգ. < հյ. երանիկ «երջանիկ» բառից. հմմտ. Երանեակ անունը։

— 1. Երանիկ, գործածված է Հեթում Ա թագավորի կնոջ՝ Զապել թագուհու անվան փոխարեն՝ մի արծաթյա սկիհի շրթանց վրա արձանագրված, այսպես. «Պահեա Տէ՛ր զՀեթում թագաւորն և զթագուհի կին նորա Երանիկն»։ (Այս սկիհը գտնված է Երուսաղեմի մոտակա Քերեք քաղաքի ավերակներում, 1878 թվի պեղումների ժամանակ. տես Գ. սրկ. Սարաճեան, ՀԱ 1898, էջ 57։ Հոդվածագիրը գրում է թե այստեղ Երանիկ պետք է հասկանալ «երանելի»)։

— 2. Աղված Երնիկ ձևով գործածված է անթվական մի հիշատակարանում, որ հայտնի չէ նույնպես սեռը, բայց հավանաբար արական է. այսպես՝ «Եւ կենդանի զաւակացն Ստեփնայ և Հայրապետի, Երնիկի և Կարապետի» (Թորոս աղբ. Բ. 335)։

— Երանիկ անունը իբր իգական գործածական էր Պոլսում ԺԹ դարում։

*ԵՐԱՆՈՍ, ար. < հուն. Εἰρηναῖος անունից, որ բուն նշանակում է «խաղաղարար, խաղաղասեր» և ծագում է εἰρήνη «խաղաղություն» բառից։ Այս անունով հայտնի են Իրենեոս «Հետևող առաքելոց», որի գործերից թարգմանված կա հայերեն, և Իրենեոս եպիսկոպոս Լիոնի, որ նահատակվել է 203 թ. (Փափազեանց,

Պատմ. եկեղ. 101)։ Տառադարձված է լտ. Ireneus, ֆրանս. Irénée, հայերէն ունինք զանազան ձևերով՝ Իրենէոս, Իրենիոս, Երինոս, Երենիոս, Երինէոս, Երիանոս (տես Տաշեան, Ցուց. 1094 գ.)։ Բայց այս բոլորը իբրև օտար ձևեր։ Հայացած ձևն է Երանոս, որ գործածված է ԺԴ—ԺԵ դարերում (տես տակը)։ Ավելի ուշ ԺԶ դարից հմմտ. Երանոս տանուտեր Սեբաստ քաղաքում 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55), Երանոս ոմն 1608 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695)։ Գործածական էր նաև անցյալ դարում։ Այս անունով է «Երանոս աղբար կամ Թապլաքեար վարժապետը» կատակերգություն (Ակնայ բարբառով, տպ. Պոլիս) և Երանոս գյուղ Նոր-Բայազետի։— Երանոսի իգականն է Իրենե, որ տես։

— 1. Երիանոս, երկրորդ առաջնորդ Խորին անապատի (Կիլիկիա). մեռել էր նախ քան 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 234, Սիսուան 151։

— 2. Երանոս, հոգեղբայր միայնակյաց Բալունի, որ գրել տվեց մի Ավետարան 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

— 3. Երանոս որդի Լիանոսի, որ ստացավ մի Ավետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

+ ԵՐԱՆՈՒՀԻ, իգ. < հյ. Երանի «երջանիկ» բառից՝ իգական-ուհի մասնիկով. հմմտ. իր համազորը՝ Երանեակ։ Գործածվել է ԺԵ դարից սկսած և այժմ էլ գործածական է, փաղաքշականն էլ համարելով Երան, Երանիկ:

— 1. Երանուհի քույր Տալիթայի և մորաքույր Վարդան գրակալի, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 2. Երանուհի (սեռ. Երանուհե), հիշված է Թէոդոսիայի ավերակ մի եկեղեցու խաչքարի վրա՝ 1472 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 353։

— 3. Երանուհի, կին Ներսէս քահանայի Բաբերդցոյ, որ Մովսէս աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

— Երանուհի անունը հիշված է նաև 1548 թ. (Ձեռ. Սեբ.= ՀԱ 1925, 378), 1560 թ. (Տաշեան, Ցուց. 314)։ Սրա կրճատ ձևն է Երան՝ 1633 թ. (Տաշեան, Ցուց. 808)։

*ԵՐԱՏՈՅ, իգ. < յուն. Ἐρατώ անունից, որ ինը մուսաներից մեկն է և անձնավորում է ներդաշնակությունը։ Ծագում է ἐρατός «սիրուն, սիրելի» բառից։ Սրա արականն է Ἐράτων, որ իբրև անձնանուն գործածված է հունաց մեջ։

— Երատոյ, քոյր և կին Տիգրանի. իր ամուսին եղբօր հետ թագավորեց Ն. Ք. 6 թ. վտարվելով Հայաստանից, երկրորդ անգամ թագավորեց առանձին 13—14 թ., բայց դարձյալ մերժվեց. Արտաշիսի ցեղի վերջին ժառանգն էր. Կա իր անունով դրամ։— Գրգչ. Քնն. պատմ. Բ. 187—190, Լէօ Ա 439, 450։

*ԵՐԴԱՄ, ար. < թրք. یوردام yordam «շքեղություն, արտաքին փայլ, դեմքի հարդարանք». այս ձևով (եօրտամ) և այս իմաստով գործածական է այժմ էլ Պոլսահայ բարբառով։ Կա նաև նույնից Եօրտամեան ազգանունը։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ գործածված 1617 թ. Երդամ ոմն, որ Իլվովում մի բժշկական ձեռագիր է գնել Ղազար վարդապետից (ՀԱ 1924, էջ 322, Bibl. nat. № 244, Կամենից 173, Ամիրտ. անգ. էջ 624 հիշատակարանում)։

*ԵՐԵՄԵՆ, ար. անշուշտ Երեմիա անունն է, որ այսպես ձևափոխվել է Թէոդոսիայի թանգարանում պահվող մի քարի արձանագրության մեջ. «Սուրբ Յակոբին աջս բարեխաւս է պր. Երեմենին և կողակցի Նազմեղին և ծնողացն Տովերին և Խաչմելիքին»։ Թվական չունի։ (Кучук-Иоаннесов, Стар. арм. над. Юго-Зап. Руси, էջ 39)։— Երեմիա անունը Երեմինայ գրված է նաև Վարդան պատմիչի մի հիշատակության մեջ, որ տես Յովսէփեան, Խաղբակեանք 86։

*ԵՐԵՄԻԱ, ար. < եբր. ירמיה Irəməyā կամ ירמיהו Irəməyāhu անունից, որի ծագումը լավ բացատրված չէ. դրվում է רמה rmh «խաբել, դավաճանել, լքանել, թողնել, թշնամուն մատնել» արմատից (Gesenius 320, 761), իբր «լքված?» Այս անունով հայտնի է Երեմիա՝ եբրայեցոց չորս մեծ մարգարեներից մեկը, որ գրեց Երուսաղէմի ողբը։ Ապրել է մոտ 650—586 Ն. Ք.։ Տառադարձված է հուն. Ἰερεμίας (լտ. Jeremias, ֆր. Jérémie, արաբ. ارميا Armiyā են), որից էլ հայ ձևը։ Գործածական է մեր մեջ Ե դարից մինչև այժմ՝ Երեմիա, Երեմիաս, փաղաքշական Երեմ, Երմի ձևերով. սրանից է Երեմեան ազգանունը (Հիւբշ. 334)։

— 1. Երեմիա կաթողիկոս Աղուանից. սրա օրով Ս. Մեսրոպ գնաց Աղուանք և հօրինեց Աղվանից գրերը (Ե դարի սկիզբը).— Կղկնտ. Բ. գ. Գ. իդ. Կոր. 19. Խոր. Գ. ծդ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384.—սեռ. Երեմիայի՝ Կոր. 19։

— 2. Երեմիա աշակերտ և սարկավագ Ս. Սահակի. փոխադրեց և ամփոփեց սրբի մարմինը Աշտիշատ «438 թ».— Կոր. 25. Փ. Կոր. 28.—սեռ. Երեմիայի՝ Խոր. Գ. կէ։

— 3. Երեմիա *եպիսկոպոս Մարդպետական. մասնակցեց Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին «449 թ».—Եղիշ. 22. Փարպ. իգ։*

— 4. Երեմիա *եպիսկոպոս Ապահունեաց, մասնակցեց Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին «449 թ».—Փարպ. իգ.—նույնը* Երեմիաս *ձևով՝ Եղիշ. 22։*

— 5. Երեմիա *երեց, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Այրարատ 519, Հայապ. 159։—Հավանաբար նույն է հաջորդի հետ։*

— 6. Երեմիա *երեց ի Նոր քաղաքէ. ուղարկվեց Վարդան Մամիկոնեանի կողմից, համոզելու և ետ դարձնելու համար նրան Յունաստանից «450 թ».—Փարպ. լ [Զամչ. Բ. 47 համարում է Ս. Սահակի սարկավագապետը՝ №. 2]։*

— 7. Երեմիա *եպիսկոպոս Ապահունեաց, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։*

— 8. Երեմիա *առաջնորդ Վարագի, հաջորդեց Յովէլին, նստավ 40 տարի և մեռավ շուրջ 740 թ.—Հայապ. 232։*

— 9. Երեմիա *ճգնավոր, բնակվում էր Նիգ գավառի Թեղենեաց անապատը. ընկեր Ստեփաննոս Ասողիկի (Ժ դար).—տես.* Երեմիայի՝ *Ասող. Գ. Թ։*

— 10. Երեմիա *վանահայր Մարմաշէնի. գահակալության թվականը հայտնի չէ. գիտուն մարդ էր և հրաշագործի համբավ էր հանել. 1033 թվին վանքը հանձնեց իր աշակերտ Սոսթենէսին և քաշվեց Յովհաննավանքը, ուր ճգնեց ու մեռավ.—Արձ. Շիրակ 148, Ջբր. սարկ. Գ. է և էջ 11, 29, 30։—Ըստ Կոստանեանի նստել է 986 թվին, որ Մարմաշէնի շինության սկիզբն է (շինությունը ավարտվել է 1029 թվին)։ Բայց սխալ է Երեմիայի գահակալությունը դնել 986-ին, որովհետև ըստ Ջբր. սարկ. Երեմիան հաջորդել է մի ուրիշ վանահոր, որի անունը չի տալիս։ Ալիշանն էլ (Այրարատ 166 ա) 933 թվին Մարմաշէնի վանահայր Երեմիային բերում է Յովհաննավանք՝ բանակցելու Մխիթար առաջնորդի հետ. մինչդեռ այդ թվին դեռ Մարմաշէնը հիմնված չէր։ Բացի սրանից Ջբր. սարկ. Գ. 10 (որից և Շիրակ 152) Երեմիայի հաջորդ Սոսթենէսին էլ Երեմիայի հետ բերում է Մխիթարի մոտ՝ 1033 թ. կամ քիչ ուշ։—Թերևս այս է այն «Երեմիա սուրբ հայրը», որի գամբարանը գտնվում է Յովհաննավանքում, ըստ Էջմիածնի № 936 Ճառընտրի հիշատակարանի, որ գրված է 1687 թվին։*

— 11. Երեմիա *Անձրևիկ, նշանավոր վարդապետ, աշակերտել էր Սարգիս (=Յովհաննէս Սարկավագ) Փառխոսեցուն. մի օր ուսուցիչը ասաց նրան թե «լռէ՛ լեր». Երեմիան 3 տարի չխոսեց. եղավ չորակեր՝ 30 տարի։ Իր ուսուցիչը մեռել է ՇՀԸ=1129 թ. ուստի Երեմիան էլ մեռած պետք է լինի այս թվից ավելի ուշ (ԺԲ դար)։—Վրք. հ. Սամ. անեց. 128.—Զարբ. Հին դպր. 615,*

— 12. Երեմիա՝ *հայր Ստեփաննոս մեծ եպիսկոպոսի, որ սպանվեց Հապարացոց արշավանքին՝ 1181 թ.—Օրբ. ժմ. 20։*

— 13. Երեմիա *սուրբ ծերունի, մեռել է 1256 թ. և իր գերեզմանը գտնվում է Դսեղում, Բարձրաքաշ Ս. Գրիգոր վանքի մոտ (Յարութիւնեան, Ներս. դպր. սաների Ս. ճնպրհ. էջ 67)։*

— 14. Երեմիա *առաջնորդ Աղջոց վանից. հյուրընկալեց Վարդան պատմիչին, որ ավարտեց այստեղ իր «Մեկնութիւն Դանիէլի» աշխատությունը՝ 1268 թ.—հիշված է նաև 1270 թվի արձանագրության մեջ։—Այրարատ 354, Շողակաթ 33, Տաթև 1927, 182, Յովսէփեան՝ Խաղբակեանք 63, 85։*

— 15. Երեմիա *քահանա, որդի Տիրատուրի. Կարնոյ Կան գյուղում, Յովհաննէս երեցին գրել տվեց մի չքնաղ Ավետարան։ Բացի սրանից, շինեց նաև մի վկայարան, որի վրա շատ դրամ վատնեց և որ ավարտեց 1283 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 643—4։*

— 16. Երեմիա *քահանա, որդի Կիրակոսի. աշակերտ Գէորգ Սկևռացու. երկու անգամ Հեթում Բ թագավորի մոտ գնաց և իր ուսուցչի գրած «Մեկնութիւն Եսայեայ» աշխատությունը տանելով՝ արտագրել տվեց Լևոն գրչին՝ 1295 թ։ Հաջորդ տարին էլ (1296 թ) Երեմիան Օշին գրչին արտագրել տվեց Վարդանի «Մեկնութիւն Հնգամատենի» գործը։—Զարբ. Հին. դպր. 721, Սիսուան 103, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 69։*

— 17. Երեմիա *գրիչ. փորագրել է Ամիր-Ջէսի արձանագրությունը Բջնիում, 1358 թ.—Շահխաթ. Բ. 185, Այրարատ 274։*

— 18. Երեմիա *կրոնավոր, ստացող. Զաքարիա աբեղային, Անապատիկ գյուղում օրինակել տվեց Մեկնութիւն Պատարագի, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։*

— 19. Երեմիա *սարկավագ, որդի Թադէոս քահանայի, որ հյուրընկալեց Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսին, երբ սա պանդխտել էր Երզնկա, 1370 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 780։*

— 20. Երեմիա *վարդապետ, նշանավոր մարդ էր, որի մահը հիշատակված է Յովհաննէս Որոտնեցու հետ՝ 1385 թ.—«Թուին*

ԳԼԴ Թուրքն էառ զՍրոսն և Կախիկ վարդապետն և Երեմիայ վարդապետն մեռան».—Առաք. պատմ. 484։

— 21. Երեմիա վրդ. միաբան Տաթևի վանից. Սիմէոնին և Գալուստ վարդապետին գրել տվեց Տաթևացու Հարցմանց գիրքը՝ 1403 թ. նույն ինքն հեղինակի կենդանության ժամանակ.—Ձեռ. Դաշեան, Ա. 66 բ։

— 22. Երեմիա, մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ գրեց մի Յայսմաւուրք Փորովանքում, 1427 թ.—Նոտարք 85։

— 23. Երեմիա աբեղա, գրիչ. մասնակցել է մի Յայսմաւուրքի խմբական արտագրության և գրել է նրանից 10 տետր, ստացող Ներսէս քահանայի համար, Երզնկա 1446 թ.—Նոտարք 149։

— 24. Երեմիա կրոնավոր, գրիչ. Սեպուհ լեռան Ս. Լուսավորիչ վանքում օրինակեց Աւետարանը՝ 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 423, Նոտարք 161։

— 25. Երեմիա աբեղա, միաբան Սրկղունից վանից՝ 1459 թ.—Նոտարք 192, Յովսէփեան՝ Խաղբակեանք 234։

— 26. Երեմիա սարկավագ, գրիչ. օրինակեց մի Մաշտոց և Գանձարան, Բղխում, 1464 թ.—Bodleian 32։

— 27. Երեմիա գրիչ. Կոնթեր գյուղում, ստացող Ջօրայի համար օրինակեց Մաշտոցը 1474 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 339։

— 28. Երեմիա Բիւզանդացի, իր որդի Գրիգոր վարդապետի խնդրանոք գրեց Քարոզգիրք հայերեն և տաճկերեն, թարգմանեց Կտակ խաչելութեան Յակոբ Ղրիմեցւոյ (1679 թ).—Տաշեան, Ցուց. 859—860։

— 29. Երեմիա չէլէպի Քէօմիւրճեան, կարող գրիչ և ճարտար թարգմանիչ։ Ծնվել է Պոլսում, 1637 թ. հայրը Սամաթիա թաղի պատրիարքանիստ եկեղեցու Մարտիրոս քահանան էր, իսկ պապը Կամախից գաղթել էր Կելիպոլու։ Սովորեց գրաբար, թուրքերեն, հունարեն և լատիներեն լեզուները, ինչպես նաև եվրոպական լեզուներ. դրա համար էլ վարել է շատ կարևոր պաշտոններ պետական շրջանակներում և եվրոպական դեսպանատներում։ Դարձավ նախ Պոլսի Մարտիրոս Կաֆայեցի պատրիարքի խորհրդականն ու նոտարը։ Այդ օրվանից սկսած ազդու և ամբողջական մասնակցություն ունեցավ հայ ազգային-եկեղեցական բոլոր գործերին, միշտ պաշտպան կանգնելով հայ ազգի և հայ եկեղեցու շահերին։ Այսպես են՝ Պոլսի և Երուսաղէմի պատրիարքական վեճերը, Եղիազար հակաթոռ կաթուղիկոսի հարցը, կաթոլիկ հայերի կռիվները են, որոնց համար Երեմիան ճամբորդեց Պրուսա, Ադրիա-

նուպոլիս, Ռոտոսթո, Հալեպ, Երուսաղեմ և Ղրիմի ու Պոնտոսի վրայով մինչև Էջմիածին։ 1677 թվին հիմնեց Պոլսում հայ տպարան, ուր տպեց նախ Շնորհալու Յիսուս Որդին և ապա իր մի աշխատությունը «Գովարանություն Տնօրինական տեղեաց յԵրուսաղէմ», որ Երուսաղեմի ոտանավոր նկարագրությունն է՝ 40 տողերից բաղկացած։ Տպարանը շուտ փակվեց, բայց իր գործը շարունակեցին ուրիշները, այնպես որ Երեմիան մնում է իբրև Պոլսահայ տպագրության նախահայրը։—Մեռել է 1695 թվին, թողնելով բազմաթիվ աշխատություններ, որոնք են. Օսմանեան պատմութիւն ընդարձակ (5 հատոր) և ապա համառոտ (մի հատոր), Տնօրինական տեղիք (տես վերը), Ստամպօլոյ Պատմութիւն, Եկեղեցեաց պատմութիւն, Տարեգրական պատմութիւն, ճառեր, նամակներ և տաղեր։ Տաճիկ գրականագետների խնդրանոք թարգմանել է Խորենացու Պատմությունը տաճկերեն, ավելացնելով նաև Բագրատունեաց և Ռուբինեանց համառոտ պատմությունը։ Տաճկերենի է թարգմանել նաև Աղեքսանդրի պատմությունը (ոտանավոր), Նոր կտակարանը (մասամբ նաև Հին կտակարանը) և Յայսմաւուրքը (համառոտ)։ Շատ բաներ թարգմանել է հունարենից և լատիներենից հայերեն։ Մի եվրոպական դեսպանի խնդրանոք գրել է Պարսից, Հնդկաց, Անատոլիայի և հատկապես Հայաստանի մանրամասն աշխարհագրությունը և վիճակագրությունը (քարտեզով)։ Իր կարևորագույն գործերն են՝ 1) «Ստամպօլոյ պատմութիւն», սա Պոլսի թաղերի ոտանավոր նկարագիրն է, որ ընծայված է ինչ որ Վարդան վարդապետի։ Հեղինակը այս Վարդանին Եդի Գուլէի առաջ նավ նստեցնելով, Պոլսի եզերքով՝ Նառլը գափուի և Սամաթիայի առաջով անցնելով, հասնում է մինչև Այվանսարայ։ Այստեղ թողնում են նավակը և ձիով գնում են Պալըքլըի հայոց գերեզմանատունը, ապա Պալաթ, Էյուպ, անցնում են Ոսկեղջիւրը, Ղալաթիա, Բերա, Թօփհանէ, նավակով իջնում են ամբողջ Վոսփորի եվրոպական ափը՝ Պէօյիւք-տէրէի և Սարը-եարի առաջով մինչև Ֆէնէր՝ Սև ծովի բերանը։ Այստեղից անցնում են Ասիական ափը և Պէյքօզից սկսած բոլոր դարաստաններն ու պալատները դիտելով գալիս են Իւսկիւտար, Գատըքէօյ, Ֆէնէր։ Այստեղից մի ակնարկ գցելով Իշխանաց կղզիների վրա, նորից անցնում են Պոլիս։ Այս ամբողջ ոտանավորը 2084 տող է. ավարտված 1684 թվին. գրական արժեքից զուրկ, թուրքերեն բառերով խառն, անհամ գրաբար, պարունակում է հաճախ հայ կյանքի վերաբերյալ համառոտ ակնարկներ։ Հրատարակեց շատ

ընդարձակ ծանոթություններով բժ. Թորգոմեան, Վիեննա 1913 թ. 2) Օրագրութիւն, որ հրատարակեց Նշանեան, Երուսաղէմ 1939 թ. մի սովոր հատոր, շքեղ տպագրությամբ. պարունակում է 144 էջ ներածությունից հետո՝ հեղինակի բուն գործը, որ պատահած դեպքերի օրը օրին գրված արձանագրությունն է՝ սկսած 1648 թվից մինչև 1662։ Հեղինակը ձեռնարկել է այս աշխատությամբ՝ 12 տարեկան հասակում։ Առանձնապես գրական արժանիք չունի. լեզուն էլ ռամիկ գրաբար. բայց ժամանակակից բոլոր ազգային և քաղաքական դեպքերի մանրամասն պատմությունն է, միասին առնելով նաև բոլորովին անհատական դեպքեր և առօրյա հիշողություններ, որոնք սակայն մեծ արժեք ունեն տեղական զուտ ժողովրդական կյանքի ուսումնասիրության համար։ Օրինակ՝ էջ 246—250, Պոլսի հայ, հույն, թուրք և հրյա 53 արհեստակցական միությունների ցուցադրական հանդեսի նկարագրությունը։ Չէլէպիի այս գրվածքը մի տեսակ սևագրություն է, որի մաքրագրությունն է ներկայացնում Տարեգրական պատմությունը, որի ձեռագիրը գտնվում է Վենետիկում և դեռ անտիպ է։ Այս բոլորը չափազանց կարևոր է ժամանակակից պատմության համար։ Հրատարակիչը գրքի վերջում (էջ 405—670) դրել է Չէլէպիի նամակները, գանձերն ու տաղերը։—Զարբ. Նոր մատեն. 441—4, Չամչ. Գ. 680—723. Շողակաթ, էջ 47—65, Այրարատ 180, Առաք. պատմ. 509, Ազգապ. 2612, 2660. Հայապ. 133. Լէօ, Հայկ. տպագր. Ա. 268—279. ամենից ավելի ընդարձակ են՝ Նշանեան, Օրագրութիւն Եր. Չէլէպի Քէօմիւրճեանի, Ակինեան՝ Երեմ. Չէլէպի Քէօմիւրճեան, կեանքն ու գրական գործունէութիւնը, Վիեննա 1933։

— 30. Երեմիա Մեղրեցի, վարդապետ Էջմիածնի. ունի Բառարան հայոց լեզուի, տպ. Ալիկոռնա 1698 (բ տպ. Պոլիս 1729, բոլորովին անփոփոխ, հսկողությամբ Սարգիս եպիսկոպոսի). տես Ձեռ. Թաւր. 53 ա, Նորայր, Հայկ. բառաքնն. էջ 20։ Երեմիան հրատարակիչ, բայց սխալմամբ համարված է հեղինակ Աղուէսագրքի, տպ. Էջմիածին 1698 (տես Տաշեան, Ցուց. 1055 գ և Ժողովածոյք Առակաց Վարդանայ, Վիեննա 1900, էջ 8—9)։

— 31. Երեմիա Հասան-Ջալալեան, կաթողիկոս Աղուանից, նստում էր Գանձասարում. սրա կենսագրությունը տես Սիմէոն Դ (Ջամբռ 80—81)։ Երբ Պետրոս Դ Խանձկեցին մեռավ (1675) և Սիմէոն Խոտորաշէնցին նստավ Երիցմանկանց վանքում հակաթոռ, Էջմիածնի Յակոբ Ջուղայեցի կաթողիկոսը կանչեց այս Երեմի-

ային և կաթուղիկոս օծելով ուղարկեց Գանձասար (1676 թ). մեռավ 1700 թ. և իրեն հաջորդեց Եսայի Հասան-Ջալալյանց։— Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 69, Րաֆֆի՝ Խամսայի մելիքութ. 20, Ազգապ. 2771։

— 32. Երեմիա դպիր Կարնեցի, տաղասաց (1758 թ). իր տաղերից չորսի մասին տես Տաշյան, Ցուց. 460։

— 33. Երեմիա երաժիշտ, որի դամբարանը գտնվում է Հառիճում ԺԷ=568 թվականով։ Ալիշան (Շիրակ 163) իրավամբ կարծում է, որ թվականի հարյուրավորը ընկած է. ուստի և թվականն անհայտ։

+ԵՐԵՍԽ, իգ. < Երասխ գետի անունից. հիշված է մի անգամ 1657 թ. Ղափանի Գողիս գյուղի շրջանում (Միսական 75 բ)։ Այս կողմերում Արաքս (Թրք. պրս. Արազ) գետը մինչև այժմ էլ իր հին հայկական անունը պահում է ժողովրդական բարբառում։

+ԵՐԵՒԱՆ, ար. < անշուշտ Երևան քաղաքի անունից. թեև շատ հազվագյուտ, բայց գտնում եմ երեք անգամ գործածված ԺԳ—ԺԷ դարերում, հետևյալ ձևով.

— 1. Երիվան ոմն, եղբայր Մխիթարի, շինել է Ս. Ստեփաննոս անունով մի եկեղեցի և նորոգել է ուրիշ եկեղեցիներ՝ Խաչենում, 1265 թ.—Արձ. Բարխուտ. Արցախ 168։

— Բ. Երևան երեց, քահանա Կախմխի գյուղի, 1383 թ.— Ջեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— Գ. Երևան հիշված է նաև 1609 թ.—Դրնղ. 150։

+ԵՐԵՒՈՒՄ, ար. < հյ. երևումն բառից, այն է «Երևումն Ս. Խաչի» կամ «Երևման Ս. խաչ»։ Անցյալ դարում գործածական էր Պոլսում։ Հնագույն գործածությունը գտնում եմ երկու անգամ, երկուսն էլ սխալ գրչությամբ։ Այսպես՝ Ցերում ձևով 1591 թ. Սանահնում գրված սխալաշատ մի հիշատակարանում (ՀԱ 1887, 56 բ). և սեռ. Եռումին ձևով 1713 թ. (Ջեռ. Թաւր. 131 բ) և նույն ձևով 1749 թ. մի գերեզմանաքարի վրա (Քոսյան, Հայք ի Զմիւռնիա, Ա. 91)։ Տես և Երիվխաթուն։

+ԵՐԷՑ, ար. < հյ. երէց բառից. հմմտ. Անդրանիկ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում. բայց հմմտ. նաև Երէցտիկին և Երիցակ։

—Ֆրա Երէց. գրիչ. ունիթոռական. Քռնայ վանքում օրինակեց Ալբերտի Աստուածաբանութիւն, Քարոզ վասն պահոց, Գիրք

յաղագս մոլութեանց, Բան յաղագս հինգ զգայութեանց, Յաղագըս տասնաբանեայ օրինաց՝ 1344 թ.—Ձեռ. Կարին. 7։

+ԵՐԷՑՏԻԿԻՆ, իգ. < հյ. երէց+տիկին բառերից, իբրև «երէցակին»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1334 թ. մի Աւետարանի հիշատակության մեջ, որ բերում է Թորոս ալբ. Բ. 375 շատ կրճատված ձևով. այնպես որ չի հասկացվում թե ով է այս Երէցտիկինը։

ԵՐԻՆԱՐ, իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ՝ 1347 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 463)։ Գուցե վրիպակ է և պետք է կարդալ Եղինար=Եղնար։

Երինէ տես Իրենէ։

ԵՐԻՋԱՆ, ար. ծագումն անհայտ. հիշված են 1713 թ. երկու տարբեր անձինք՝ Ձեռ. Թաւր. 131 բ՝ Երիճան ձևով։

ԵՐԻՎԽԱԹՈԻՆ, իգ. ծագումն անհայտ. չգիտենք թե Երիվ արդյոք Արև բառից է ձևափոխված, թե Երևան բառի կրճատ ձևն է։ Մի անգամ գտնում եմ գործածված 1347 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 756)։

+ԵՐԻՑԱԿ, ար. < հյ. երէց «քահանա» բառի նվազականից. հմմտ. Տէրտէր անունը։ Անսովոր էր հնում. այժմ էլ գործածական չէ։

—Երիցակ եպիսկոպոս, աշակերտ Գիւտ կամ Վասակ ճգնավորի. նախապես ճգնավոր էր Երիցվանից. շինեց Նոր-Երուսաղէմ կոչված եկեղեցին. Մուշէ կաթողիկոսից ձեռնադրվեց եպիսկոպոս Սիւնեաց՝ իբրև հաջորդ Մուշէի (Զ դարի սկիզբը).—Օրբ. ժԹ, իա, հա. Մխ. այրիվ. 63. Զքր. սարկ. Գ. 5.—սեռ. Երիցակայ՝ Օրբ. ժԹ, խե։

+ԵՐԾԱԹ, ար. < հյ. երծաթ բառից ձևափոխված, ինչ որ տեղ տեղ սովորական է Կովկասում. հիշված է Յովհաննավանքի անթվական մի արձանագրության մեջ, որ թերևս ԺԳ կամ ԺԴ դարից է։—Զքր. սարկ. Գ. 26, Այրարատ 175, Շահխ. Բ. էջ 110. Բանասէր 1903, էջ 31. ընթերցվածը անստույգ է. ոմանք կարդում են երծաթ, ոմանք երկաթ, որով նույնանում է հաջորդ անվան հետ։

+ԵՐԿԱԹ, ար. < հյ. երկաթ բառից, ինչպես ունինք թթր. Թիմուր կամ Թամուր անունը, որ նշանակում է «երկաթ»։ Գործածված է ԺԴ դարից։ Անսովոր էր հնում, այժմ էլ անգործածական։

— Երկաթ ոմն (գրված է Արկաթ, ինչպես արտասանվում է այժմ էլ Ղարաբաղի բարբառում). Նվիրատու Ս. Թորոս ուխտի (ԺԴ դար)։—Տաշեան, Ցուց. 666։

+ ԵՐԿԱՅՆ, ար. < հյ. երկայն բառից. գործածված է ԺԳ դարում. հնում անսովոր էր. այժմ էլ անգործածական (կամ գործածվում է իբրև մականուն)։

— Երկայն քահանա Բաբերդցի (1223—61 թվերին).—Տաշեան, Ցուց. 20։

*ԵՐՄՈՆԷ, իգ. < հուն. Ἑρμιόνη անունից, որ կապվում է Ἑρμῆς «Հերմէս» աստուծու անվան հետ։ Հերմէսը աստվածների պատգամաբերն էր, որ աստուածների հրամանները բերում էր մարդկանց, խոսքի և պերճախոսության աստվածը, որ անձնավորում էր արշալույսն ու վերջալույսը միանգամայն։ Հայտնի է այս անունով Երմոնէ դուստր Մենելաոսի (Հոմերի Ոդիսականից), քրիստոնեության ժամանակ Երմոնէ կույս՝ նահատակուհի (Յայսմ. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 286)։ Լտ. ձևով Hermione, Hermiona, որ այժմ մերոնք գործ են ածում Հերմինէ ձևով։ Հնից ավանդված չէ բնավ. բայց անցյալ դարում գործածական էր Պոլսում. կրճատ ձևերն էին Էրմոնէ, Էլմոնիա, աղավ. Իլիմոնէ։

+ԵՐՆՋԻԿ, իգ. < հյ. երինջ բառից. անսովոր անուն, որ այժմ էլ անգործածական է։

— Երինջիկ, կին Սիսակ կամ Բաղակ նահապետի (և կամ սրանց ժառանգներից մեկի). շինեց Երնջակ բերդը, որ իր անունով կոչվեց. այսպես և գավառը։—Օրբ. ը։

ԵՐՈՒԱԶ, ար. ծագումն անհայտ. բայց անշուշտ իրանական։

— 1. Երուազ, որդի Արտաւազդ Ա-ի, եղբայր Փոքր Տիգրանի, որ Հայոց թագավոր էր կարգված Հռովմայեցոց կողմից։ Երուազը պատանդ էր Հռովմում. Հռովմայեցիք կոչում էին նրան՝ հոր անունով Արտաւազդ։ Երբ Փոքր Տիգրանը մեռավ, Օգոստոս կայսրը Հայոց թագավոր նշանակեց այս Երուազին, որին մեծ զորքով ուղարկեց Հայաստան։ Հայերը Հռովմայեցոց բանակը ջարդեցին, Երուազին վռնդեցին և իրենց թագավոր դրին մի ուրիշ Փոքր Տիգրան (Յ. Ք. 2 թ)։—Չամչ. Ա. 279։

— 2. Երուազ, եղբայր Երուանդ Բ թագավորի (68—88 թ.) որի ձեռքով կարգվեց քրմապետ Բագարանում։ Արտաշէս Բ սպանեց նրան և տեղը կարգեց Մոգպաշտէ անուն անձին.—Խոր. Բ. լէ, խ, խը. Ասող. Ա. ե. Վրդ. ժէ.—սեռ. Երուազայ՝ Խոր. Բ. խը. Սամ. անեց. 56։

*ԵՐՈՒԱՆԴ, պր. < պհլ. arvand=զնդ. aurva-, aurvant- «արագ. 2. քաջ» բառից. հմմտ. սանս. arvant «քաջընթացիկ, արագընթաց (ձի)»։ Իբրև ար. անուն գործածական էր Իրանցոց մէջ. այպէս՝ 'Ορόντας, 'Ορόντης՝ մի խումբ պարսիկ սատրապներ Հայաստանում (Դ դար Ն. Ք), Orontes՝ Լիւկիացոց գլխավորը, ընկեր Ենէասի (Վիրգիլիոս), պրս. اروند Arvand՝ հայր Լոհրասպ արքայի (Շահնամէ)։ Ըստ Շահն. հտ. 1, էջ 70 պհլ. Arwand՝ Տիգրիս գետի անունն է, որ և պրս. اروند Arvand. իբրև հասարակ անուն՝ այս բառը նշանակում է «իղձ, փափագ. 2. շուք և փառաւորութիւն. 3. փորձ» (ԳԴ 101)։ Նոյն բառից կազմված անձնանուններ են նաև զնդ. Aurvaṭ-aspa՝ հայր Վշտասպի (որ բուն նշանակում է «արագաձի, նա որ արագընթաց ձի ունի»), պհլ. Arvandasp, յուն. 'Οροντοβάτης (Horn 266, Bartholomae 200, Հիւբշ. 40)։

— 1. Երուանդ Ա. Սակաւակեաց, որդի և յաջորդ Հայկակ Բ-ի, թագավոր Հայկազն Ն. Ք. 569 թ. (Զամչ. Ա. 101).—Խոր. Ա. իբ. Բ. կե. Յհ. կթ. գ. Ուխտ. Ա. իգ. Մխ. այրիվ. 18, 55. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. է. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 46. Մին. համզ. 11. Վրաց պտմ. Ա. 74.—սեռ. Երուանդայ՝ Խոր. Բ. կե. Ասող. Ա. ե. Վրդ. ժէ.—Երուանդեան Տիգրան՝ Խոր. Ա. իդ, լա. Անան. քեր. 144։

— 2. Երուանդ Բ. որդի կնոջ արշակունւոյ. բռնակալեց Հայոց թագաւորական գահը՝ Սանատրուկից յետոյ, որի ամբողջ սերունդը կոտորեց. փախավ միայն և ազատվեց մանուկ Արտաշէսը, որ ապավինելով Պարսից թագավորի մոտ, նրա մոտ էլ մեծացավ, ապա նրանից զորք ստանալով՝ եկավ Հայաստան, սպանեց Երուանդին և իր հոր գահին տեր դարձավ։ Երուանդը գահակալել է 68—88 թ. ըստ Զամչ. Ա. 328, 339։—Խոր. Բ. ժ, լէ, լը, խ, խբ, խդ—խզ. Ուխտ. Ա. խա, ծզ. Մխ. անեց. գ, թ, ժ, ի. Ասող. Ա. ե. Զքր. եպս. 280. Շնորհ. վիպ. 314. Կղկնտ. Ա. ը. Արծր. Ա. է, ը. Վրդ. ժէ. Նհպտք. 89. Պոմ. վր. ե. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 55. Մխ. այրիվ. 18. Մին. համզ. 19. Զքր. սարկ. Ա. 2.—Երեւանդ՝ Վրդ. աշխ. 505.—սեռ. Երուանդայ, բց. յԵրուանդայ՝ Խոր. Բ. լէ—լթ, խբ, խդ—խթ, գ. Ուխտ. Ա. խա, խք. Մխ. անեց. ի. Ասող. Ա. ե. Կղկնտ. Ա. ը. Արծր. Ա. է, ը. Սամ. անեց. 56.—Երուանդական զաւակ՝ Խոր. Բ. խդ.—Երուանդեայ քաղաք՝ Մին. համզ. 19։—Ըստ Վրաց պտմ. Ա. 155 կոչվում է Մեծն Իւարվանդ, գրավեց Քարթլիի սահմանները, Ծունդա և Ար-

տահան քաղաքները մինչև Կուր։ Սմբատը սպանեց նրան և նրա փոխարէն գահ բարձրացրեց Երուանդի եղբօրը՝ Արտաշանին (=Արտաշէս Բ)։—Երուանդի և Արտաշէսի վէպի մասին ընդարձակ տես †Աբեղեան, Հայ ժող. առասպ. 284—325։

— 3. Երուանդ՝ որդի և հաջորդ Արշակ անծանօթ թագավորի Հայոց. —Սեբ. բ։

— 4. Երուանդ (Բ?) թագավոր Հայոց. գեներից կապվեց «ի գետս և ի մայրս» Եղիշ. հրց. 51. տես և Մառ, Ամառն. ուղևորութ. Վիեննա 1892, էջ 14։

— 5. Երուանդ ի նահանգէն Գամրաց, առաջնորդ Կեսարիոյ՝ իբրև հաջորդ Թէոփիլոսի, 65—78 թ. իրեն էլ հաջորդեց Սիւքիանոս։—Արրտ. 1868, 58 ա, 104 բ։

†ԵՐՋԱՆԻԿ, իգ. < հյ. երջանիկ բառից. հմմտ. իր համազորները Երանեակ անվան տակ։ Գործածական էր Պոլսում՝ անցյալ դարում, բայց հազվադեպ։

*ԵՒԱ, իգ. < եբր. חוה Xavā անունից, որ նշանակում է «կյանք». ըստ Ծն. գ. 1 նախամօր անունն է, որ Ծն. գ. 20 թարգմանաբար գրված է «կեանք». «Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ Կեանս. զի նա է մայր ամենայն կենդանեաց». այսպես և հուն. գրված է Ζωή «կեանք», մինչ Ծն. գ. 1 տառադարձված է Εὔα (=լտ. Eva, ֆր. Eve), որից և հյ. Եւա։ Եբրայեցին երկու դեպքում էլ ունի Xavā.—բառիս ստուգաբանության համար հները տալիս են սխալ բացատրություններ. այսպես՝ Յայսմ. մրտ. 14 «Ադամն կաւ ասի և Եւայն օձ». Վրք. և վկ. Ա 424 «Եւա ածումն թարգմանի ըստ ընդարձակութեան լեզուին Գամրաց»։—Այս անունը հնից չի ավանդված. առաջին անգամ երևում է ԺԵ դարում (տես տակը), ապա 1595 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 696՝ Եւէ ձևով), 1652 թ. (Ձեռ. Վասպ. 462), 1658 թ. (Ձեռ. Թաւր. 51 բ), 1670 թ. (Ձեռ. Վասպ. 938), 1710 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 330), 1716 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 829), 1731 թ. (Ձեռ. Վասպ. 1022)։ Անցյալ դարում դեռ գործածական էր (հմմտ. Էֆիմ. 448), բայց այժմ խափանված է։

— Եւա (սեռ. Էվին ձևով), կին Դանիէլի և մայր Վալաթի, որ Բաղրեւրունեաց Ալանց գյուղաքաղաքում, Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Թորոս աղբ. Բ. 365։

*ԵՒԱԳՐ, ար. < հուն. Εὔαγρος (=լտ. Euagrus) անունից, որ բուն նշանակում է «լավ որսորդ»՝ կազմված լինելով εὖ «լավ» և ἄγρα «որս» բառերից։ Իբրև անձնանուն քիչ է գործածված

հունաց մեջ։ Այս անունով հայտնի է Եւագր կամ Եւագրիոս Պոնտացի, մատենագիր, որի գործերը թարգմանված կան հայերեն։ Այս անունը մեր մեջ էլ է անսովոր. հիշված կա մի անգամ ԺԳ դարում (ճիշտը ԺԲ դարում) և մի անգամ էլ ԺԶ դարում (գրված Եվագր՝ Տաշեան, Ցուց. 883)։ Անցյալ դարում Պոլսում լսել եմ Եւագրի ձևով։

— Եւագր, որի որդու այգին գնել է Երևանում Մխիթար անուն անձը և նվիրել Հառիճի վանքին՝ 1224 թ.—Շահխաթ. Բ 265, Շիրակ 162։

*ԵՒԱՆԳՈՒԼ, ար. < պրս. ایوان eyvān «վերնատուն, պատըշգամբ»+گل gul «վարդ» բառերից, իբր «պատշգամբի վարդ»։ Առանձին գործածված չէ. բայց ենթադրում եմ Եւանգուլեան ազգանունից, որ գործածական է այժմ Կովկասում։

ԵՒԱՇԻՔ, ար. ծագումը ինձ անհայտ. լեհահայ անուն է. մի անգամ գտնում եմ հիշատակված 1463 թվի դատական արձանագրության մեջ (Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 87)։

*ԵՒԳԻՆԷ, իգ. < հուն. Εὐγενία անունից, որ բուն նշանակում է «բարեծնունդ, այն է՝ ազնվատոհմ, ազնվական». ծագում է εὖ «լավ»+γένος «ծնունդ» բառերից։ Իբրև իգական անուն գործածական էր հունաց մեջ, որոնցից անցավ լատիններին (Eugenia) և այլ եվրոպացոց (ֆրանս. գերմ. Eugenie, անգլ. Eugenia, ռուս. Евгения)։ Հին ժամանակ այս անունով հայտնի է եղել Եւգինէ սրբուհի, նահատակված 262 թ., որի վկայաբանությունը ունինք և մեր Յայսմավուրքում։ Մեր մեջ այս անունը հնից ավանդված է միայն մի անգամ ԺԵ դարում (ավելի ճիշտ ԺԴ դարից)։ Մի անգամ էլ հիշված է 1669 թ. (Ձեռ. Թաւր. 85 բ)։ Այնուհետև գործածված չէ։ Բայց գործածական է այժմ Կովկասում (ռուսերենի ազդեցությամբ)։ Միևնույն՝ անվան ֆրանսիական արտասանությունն է Էօժէնի, որ գործածական է Արևմտահայոց մեջ, մանավանդ կրճատ Էօժէն ձևով։ Պարսկահայոց մեջ էլ կա Էօժէնիկ, Օժէնիկ, Օժիկ, փաղաքշական ձևերով։ Եվրոպայում հայտնի էր Էօժէնի կայսրուհին (կին Նապոլէոն Գ-ի) 1853—1870 Տես Ժէնիա անունը, նաև հաջորդը։

— Եւգինէ՝ մեծ մայր Յոհաննէս կրոնավորի, որ Յակոբ աբեղային գրել տվեց մի Ավետարան՝ Բերկրիի Եղավանքում, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։

*ԵՒԳԻՆԷՈՍ, ար. < հուն. Εὐγένιος անունից, որ նախորդի արական է. Եվրոպացոց մեջ գործածական է լատ. Eugenius, ֆրանս. Eu-

gène, գերմ. Eugen, անգլ. Eugenius, Eugene, ռուս. Евгений են ձևերով։ Հին ժամանակ հայտնի եղան Եւգինէոս քահանա նահատակ, Եւգինէոս, Սեբաստացի վկա (տես տակը) են, որոնց վկայաբանությունը մտած է մեր Յայսմաւուրքի մեջ (Եւգինէոս, Եւգենիոս, Եւգինոս ձևերով)։ Հայտնի են Հռոմի պապերից չորսը, որոնցից առաջինը (654—657) կաթոլիկ եկեղեցու սրբերից է։ Հայոց մեջ այս անունը հնից ավանդված չէ. անսովոր է այժմ էլ. բայց կա կաթոլիկ հայոց մեջ (ինչ. Հ. Եւգինէոս Համբարեան, Մխիթարեան Վիեննայի, տես Տաշեան, Ցուց. 883) և ռուսախոս Հայոց մեջ (այսպես Նոր-Նախիջևանում՝ փաղաքշական Եւգենիկ ձևով)։

— Եւգինէոս, զորական Հռովմեական բանակում. տեսնելով Եւստրատիոսի չարչարանքը, ինքն էլ գնաց միացավ և նահատակվեց քրիստոնեության համար (Դ դար)։—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 481։

*ԵՒԴՈԿԻԱ, իգ. < հուն. Εὐδοκία անունից, որ նշանակում է բուն «բարի կամեցողություն, բարի կամք» (εὐδοκέω «գոհանալ, գնահատել, համաձայնել, հաճել» բայից, որ կազմված է εὖ «լավ»+δοκέω «երևալ» բառերից)։ Այս անունով հայտնի են Եւդոկիա կայսրուհի (կին Թէոդոս Բ. կայսեր) 401—460 թ., Եւդոկիա վկայուհի, որի վկայաբանությունը անցած է մեր Յայսմաւուրքի մեջ։ Տարածված է լատ. Eudocia, ֆրանս. Eudocie, ռուս. Евдокия, որ պետք չէ շփոթել Եւդոքսիա < հուն. Εὐδοξία, լատ. Eudoxia, ֆրանս. Eudoxie, ռուս. Евдоксия (փաղք. Дуня, Дуся) անվան հետ։ Այս վերջինը նշանակում է հուն. «բարի համբավ, հռչակ, հաճություն»)։ Սրանք ավանդված չեն մեր մեջ հնից. բայց այժմ կան Նոր-Նախիջևանում և այլ ռուսախոս հայոց շրջանում ռուսական Դուսիա, Դունիա ձևերը։

— 1. Եւդոկիա, դուստր Վասիլ Ա (867—886) հայազգի կայսեր հունաց.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 213։

— 2. Եւդոկիա, դուստր Լևոն Զ. Իմաստասեր հայազգի կայսեր Հունաց. ծնվել է 884 թվին և պատմության մեջ դեր չէ ունեցել.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 378, 382։

— 3. Եւդոկիա, դուստր Կոստանդին Ը (1025—1028) հայազգի կայսեր Հունաց. ծնվել է Հեղինէ կայսրուհուց։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 570։

*ԵՒԹԱՂԻՈՍ, ար. < հուն. Εὐθάλιος անունից, որ բուն նշանակում է «լավ ճյուղեր արձակած» (կազմվում է εὖ «լավ»+θαλία, θαλλία, θαλλός «նորածիլ ճյուղ» բառից). կրճատ ձևն է

Ուքաղ (Հիւբշ. 334—5)։ Այս անունով հայտնի է մեր պատմության մեջ Ուքաղիոս՝ եղբայր Սոփիա Կեսարացու, որ էր Լուսավորչի սանուն (Ագգաթ. 74)։

— Ուտաղիոս, քրմի որդի, որին Լուսավորիչը սովորեցրեց և կարգեց եպիսկոպոս Բասենի.—Ագաթ. § 845 (ձեռ. Եւտալիոս, Եւտադիոս, Տաղիոս)=Արաբ. Ագաթ. 71 (Ուլթաղիոս)։

*ԵՒԹԵՐԻՈՍ, ար. < հուն. Εὐθηρος անունից, որ բուն նշանակում է «նա որ լավ որսում է» (εὐ «լավ»+θήρα «որս» բառերից)։

— Ուքերիոս, հայազգի սենեկապան Յուլիանոսի։ Գերմանացոց ջարդելուց հետո, Յուլիանոսը քաշվել էր Սենոն ձմեռելու. Գերմանացիք եկան պաշարեցին նրան. Յուլիանոսը օգնություն խնդրեց Մարկելլոս զորավարից, բայց նա չեկավ. այլ գնաց Կոստանդիոս կայսեր մոտ և սկսեց չարախոսել Յուլիանոսի մասին։ Յուլիանոսը ուղարկեց Եւթերիոսին կայսեր մոտ. Նա գնաց և այնպիսի ջերմությամբ պաշտպանեց Յուլիանոսին, որ կայսրը Մարկելլոսին հանցավոր ճանաչեց և զրկեց զորավարության պաշտոնից (357)։— Կաթըրճեան, Տիեզ. պատմ. Բ. 323։

*ԵՒԹԻՄԻԱ, իգ. < հուն. εὐθυμία բառից, որ նշանակում է «քաջություն, վստահություն, ուրախություն»։ Կար հունաց մեջ Εὔθυμος արական անունը, որի բուն նշանակությունն է «վեհանձն, քաջ, եռանդուն, վստահ» (կազմված է εὐ «լավ»+θυμός «հոգի, սիրտ, կամք, փափագ» բառերից)։ Այս անունով ունինք Ուքիմիոս քահանա, Փոքր—Հայոց Մելիտինե քաղաքից, նշանավոր ճգնավոր, ժամանակակից Թեոդոս մեծի (379—395 թ.). իր վարքը մտել է Յայսմավուրքի մեջ (Սոփեր. Հայկ. վրք. սրբ. ԺԲ. 161)։ Իգական ձևը հնից չէ ավանդված. բայց անցյալ դարում գործածական էր Պոլսում՝ կրճատ Էֆտիմ, մանավանդ փաղաքշական Էֆտիկ ձևով։

*ԵՒԹԻՈՍ, ար. < հուն. Εὐθίας անունից, որ ծագում է εὐθύς «ուղիղ, շիտակ» բառից։ Այս անունով ունինք՝

— Ուքիոս (գրված նաև Ուիքիոս, Ուտիքիոս), եպիսկոպոս Փոքր-Հայոց Սատաղ քաղաքի, անդամ Նիկիո ժողովի (325 թ.)—Տաշեան, Ցուց. 655, Ալիշան՝ Արշալ. քրիստ. 241)։

*ԵՒՂԱՂ, ար. < հուն. Εὐλάλιος անունից, որ ծագում է εὔλαλος «գեղեցկախոս, գեղեցիկ խոսող» բառից (կազմված εὐ «լավ»+λαλέω «խոսել» բառից)։ Հին ժամանակ գործածական էր այս անունը թե ար. և թե իգ. ձևով։ Այսպես Εὐλάλιος (լտ. Eu-

lalius) եպիսկոպոս Գամբայ, Eulalia (=ֆրանս. Eulalie) մանկահասակ նահատակուհի (303 թ), որի վրա է գրված ֆրանսերեն ամենահին պոեման: Մեր մեջ գործածված է միայն մի անգամ Ե դարում (Հիւբշ. 334):

— Եւղաղ եպիսկոպոս Մարդաղւոյ, ժամանակցեց Արտաշատի ժողովին («449 թ»)՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին.—Եղիշ. 22:—Ըստ Ալիշան, Յուշիկք, Ա. 341 թարգմանել է Թէոդորոս Մոպսուեստացու հերձվածողական գրվածքը:—Նույն անձը նշանակված է «Տէր Զաւ՝ Մանանաղւոյ եպիսկոպոս» Փարպ. իգ. այսպես է ձեռագրում. իսկ հրատարակիչները դարձրել են Զաւէն:

*ԵՒՊՐԱՔՍԻԱ, իգ. < հուն. Εὐπραξία անունից, որ նշանակում է «բարեբախտություն, հաջողություն, բարի վարմունք» (կազմված εὖ «լավ»+πρᾶξις «գործք, վարմունք» բառից): Գործածական էր հույնաց մեջ թե ար. (Εὐπράξιος) ձևով և թե իգական: Հայտնի է օր. Եւպրաքսիա վկայուհին, որի վկայաբանությունը մտել է և մեր Յայսմաւուրքի մեջ՝ Եպրաքսէ անունով: Մեր մեջ հնից ավանդված է մի անգամ արական (առասպել) և մի անգամ իգական (ԺԵ դարից): Իգականը կա նաև ավելի ուշ՝ Եպրաքսէ 1796 թ. (Էֆիմ. 448). իսկ անցյալ դարում գործածական էր Պոլսում՝ Եպրաքսի և կրճատ՝ Էպրուկ, Էպրու, Էպրուհի ձևերով:

— 1. Եւպրաքսիոս հայրապետ Հայոց, որի գրվածքներից երկու հատակոտոր հիշում է եթովպական մի ձեռագիր (առասպել):—Գաթըրճեան, Պատարագամատոյցք 66:

— 2. Եպրաքսի, դուստր Ներսէս քահանայի, քույր Աւետիքի և հորաքույր Վարդան գրակալի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ:

*ԵՒՍԵԲԻՈՍ, ար. < հուն. Εὐσέβιος անունից, որ ծագում է εὐσεβής «բարեպաշտ» բառից (εὖ «լավ»+σέβω «պատվել, պաշտել աստվածներին, վախենալ նրանցից» բառերից): Հին ժամանակ նշանավոր են եղել Եւսեբիոս եպիսկոպոս Կեսարիոյ, մատենագիր (267—340 թ), որ գրել է Քրոնիկոնը և Պատմութիւն եկեղեցական (երկուսն էլ թարգմանված հայերեն Ոսկեդարում),—Ս. Եւսեբիոս՝ պապ Հռոմի (310 թ): Տառադարձված է լտ. Eusebius, ֆրանս. Eusèbe, ռուս. Евсей. Մեր մեջ հնապես անսովոր էր. այժմ բոլորովին անգործածական (Հիւբշ. 335):

— 1. Եւսեբիոս, քրմի որդի էր, Լուսաւորիչը սովորեցրեց նրան և ձեռնադրեց եպիսկոպոս (Դ դար).—Ագաթ. § 845 (ձեռ. Եւսեբէոս, Եւսեբիս).—արաբ. Ագաթ. 71 նույնին դնում է Դարանաղեաց եպիսկոպոս։

— 2. Սեբէոս պատմիչ, տես այս անվան տակ։

*ԵՒՍԵՐԿԻՈՍ*, ար. ծագումը անհայտ. անշուշտ հուն. մի ինչ որ εὖ «լավ» բառով սկսող անունից աղավաղված։ Մի անգամ հիշված է Է դարում։

— Եւսերկիոս Կամսարական, հայր Եղբայրիկի, հիշված Բագարանի արձանագրության մեջ 628 թ.—Կոգեան, Կմսրկնները 137։

**ԵՒՍՏԱԹԷՈՍ*, ար. ⊲ հուն. Εὐστάθιος անունից, որ բուն նշանակում է «հաստատուն, կայուն, մտքով ու գործով հավասարակշիռ» (εὐσταθής համանիշ ածականից, որ կազմված է εὖ «լավ» + ἵστημι «կանգնեցնել» բառերից)։ Այս անունով հայտնի է Եւստաթիոս Թեսաղոնիկեցին, որ մեկնաբանել է Հոմերոսը։— Հայերենում ունենք նաև կրճատ ձևով Ստաթէ։

— 1. Եւստաթէոս աշակերտ Թադէոս առաքյալի, որից ձեռնադրվեց եպիսկոպոս Սիւնեաց և է Սիւնեաց առաջին եպիսկոպոսը։ Սրա անունով է շինվել Տաթևի վանքը.—Ջամբռ 11, Ալիշան՝ Արշալ. քրիստ. 23։

— 2. Եւստաթէոս եպիսկոպոս Սեբաստիոյ. ազգով հայ էր. իր պճնասիրության պատճառով կարգազուրկ եղավ Կեսարիայի եպիսկոպոսից, որ իր հայրն էր. բայց հետո թողեց իր զարդարուն հագուստները, քահանայի սովորական զգեստ հագավ և նույն իսկ առանձին վանական կարգի սահմանադրության հեղինակ դարձավ (Ն. Դուրեան, Ազգ. պատմ. էջ 255)։ Եւստաթիոս շատ մեծ ազդեցություն ունեցավ հռոմեական պետության ներքո ապրող Հայոց աշխարհի վրա։ Իր հօրինած վանական կարգը տարածվեց Փոքր-Ասիայում և Փոքր Հայքում։ Իր կուսակիցները կազմեցին Եւստաթեանց խմբակցությունը, որի գլուխն էր ինքը։ Եւստաթեանները շատ խստակյաց էին. արհամարհում էին ամուսնությունը, հրաժարվում էին մսեղեն կերակուրներից և խորշում էին ամուսնացյալ քահանաների պատարագից ևն։ Բայց հատկապես արհամարհում էին Մարտիրոսների պատվին եղած պաշտամունքը և նրանց մասնակցողներին։ Այս խստության համար գումարվեց իր դեմ Գանգրայի ժողովը, որ Եւստաթիոսին աթոռից զցելով, նրա տեղ դրավ Բարսեղ Կեսարացու եղբայր

Պետրոսին (380)։ Ժողովը այս առթիվ գրեց «Թուղթ սիւնհոդոսական առ եպիսկոպոսունս Հայոց», ուր նզովվում են նրանք, որ նահատակների պաշտամունքը չեն ընդունում (Տաշեան, Վարդապետութիւն Առաքելոց, էջ 63—65, ըստ Սոկրատի և Սոզոմենոսի Եկեղ. պատմ.)։ Ավելի ընդարձակ տես Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա. էջ 291։

*ԵՒՍՏԱԹԻՈՍ, ար. < հուն. Εὐστάχιος անունից, որ բուն նշանակում է «գեղեցկահասկ» (ծագում է εὖ «լավ» + στάχυς «հասկ» բառերից)։ Տառադարձված է լտ. Eustachius, ֆրանս. Eustache: Այս անունով հայտնի է Ս. Եւստաթիոս, որ Տրայիանոսի բանակում զինվոր էր և Ադրիանոսի ժամանակ նահատակվեց։ Մեր մեջ անսովոր է. հիշատակվում է միայն՝

— Եւստաթիոս եպիսկոպոս Հայոց մեծաց. գրեց Լևոն կայսեր և ընդունեց Քաղկեդոնի դավանանքը (Ե դար).—Տաշեան, Ցուց. 109 (Եվստաքիոս ձևով).—տես Եպիփան № 4.

*ԵՒՍՏՐԱՏԻՈՍ, ար. < հուն. Εὔστρατος անունից, որ բուն նշանակում է «քաջ զորական»։

— Եւստրատիոս, Եկեղեաց գավառի Արաբրակ կամ Արօրակ քաղաքից հայ իշխան, որ ծառայում էր հռոմեական բանակում, իբրև համարակալ։ Հմուտ էր զանազան գիտությանց, նաև փիլիսոփայական ուսմանց։ Հավատքը չուրանալով նահատակվեց Սեբաստիայում (Դ դար)։ Բուն անունն էր Տէր Ցուսիկ, որ հույները դարձրել են Կիռ Իսիքոս, լատինները Cirisices.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 481, Վրք. և Վկ. Ա. 435, Ալիշան՝ Արշալ. քրիստ. էջ 180։

*ԵՒՏՐՈՊԻՈՍ, ար, < հուն. Εὐτρόπιος անունից, որ ծագում է εὐτροπία «փոփոխամտություն, բարի տրամադրություն, բարի բնավորություն» բառից։ Անսովոր անուն. ունինք մի անգամ՝

— Եւտրոպիոս հայազգի սենեկապան Արկադիոս կայսեր (395 թ). համոզեց նրան ամուսնանալու Եւդոքսիայի հետ, որ ֆրանկների զորավարի աղջիկն էր։ Կողմնակից էր Յովհաննէս Ոսկեբերանի ընտրության իբրև պատրիարք Կոստանդնուպոլսի, ուստի հակառակ նրա կամքին, խաբկանքով հանեց նրան Անտիոքից և Պոլսի աթոռը բարձրացրեց (398)։ Եւտրոպիոս սենեկապանը այնուհետև շատ բարձր պաշտոնների հասավ, եղավ բդեշխ, պատրիկ, հրապարակներում իր ոսկեղեն արձանները կանգնեցրին։ Բայց Եւտրոպիոս շատ վատ էր վարվում ազնվականների հետ և եկեղեցու իրավունքներն էլ կրճատում էր։ Ջուր էր հոր-

գրում նրան Յովհ. Ոսկեբերանը չափավորել էր արարքները։ Վերջապես իր հակառակորդները խռովություն հանեցին նրա դեմ և նրա գլուխը պահանջեցին։ Եւտրոպիոս ապաստանեց եկեղեցին։ Ոսկեբերանը բարեխոսեց և կարողացավ ազատել նրան մահվանից և միայն Կիպրոս աքսոր ուղարկվեց։ Բայց հետո Եւդոքսիա թագուհին բերել տվեց նրան Կիպրոսից և գլխատել տվեց (399 թ)։—Գաթըրճեան, Տիեզ. պատմ. 384—386։

*ԵՒՓԻՄԷ, իգ. < հուն. Εὐφημία անունից, որի բուն նշանակությունն է «բարի բախտ բերող խոսք, կրոնական լռություն, աղոթքից առաջ տիրող լռությունը, անպարկեշտ կամ անքաղաքավար մի խոսք չգործածելը, բարեձայնություն, գովեստ» (կազմված է εὖ «լավ»+φημί «խոսել» բառերից)։ Իբրև իգ. անուն գործածվում է հունաց մեջ Εὐφημία, Εὐφημιάς, Εὐφήμη ձևերով։ Վերջին ձևով հայտնի է Եւփիմէ (լտ. Eupheme)՝ մուսաների դայակը։ Քրիստոնեության ժամանակ հայտնի է Եւփիմիա, Եւփիմէա կույս՝ նահատակուհի (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 134)։ Հայոց մեջ հին ժամանակ չէ գործածված. Կիլիկեանց ժամանակ գործածական էր Ֆիմի ձևով, որ տես առանձին։ Անցյալ դարում կար Պոլսում Եւփիմէ կամ Եփիմէ ձևով։

*ԵՒՔԱՐԻՍ, իգ. < հուն. εὔχαρις «բարեշնորհ, շնորհալի, սիրելի, դուրեկան» բառից (կազմված εὖ «լավ»+χάρις «շնորհ» բառերից)։ Հնում գործածված չէ այս անունը։ Բայց ԺԹ դարում հիշատակված եմ գտնում Զմիւռնիայում (Քօսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 171, 212)։

*ԵՓՐԵՄ, ար. < եբր. אפרים Efraim անունից, որ ծագում է פרה frh «պտղաբերել» արմատից (Gesenius, 61, 657). հմմտ. «Կոչեաց Եփրեմ, զի ասէ՝ թէ Աճեցոյց զիս Աստուած յերկրի տառապանաց իմոց» (Ծն. խա. 52). «Եփրեմն թարգմանի փարթամ» (Մոլութ. 241 ա)· «Եփրեմն թարգմանի պտղաւէտ և նշանակէ զփարթամ ազգն» (Մոլութ. 256 բ)։ Այս անունով հայտնի է Յովսէփ նահապետի երկրորդ որդին, որ Իսրայէլի մի մեծ ցեղի նահապետն եղաւ։ Ասորիների մեջ էլ հայտնի էր Ս. Եփրեմ Ասորի (մ. 373), որի գործերը թարգմանված են հայերեն՝ Ե դարում (Փափազեան, Պատմ. եկեղ. 206)։ Տառադարձված է հուն. Ἐφραΐμ (լտ. Ephraim, Ephraïmus, ֆրանս. Ephraïm, Ephrem, ասոր. Afrēm, ռուս. Ефрем. Հայերենը ճիշտ չի համապատասխանում ոչ ասորիին և ոչ հունարենին։ Հունարենից տառադարձվելու դեպքում պիտի ունենայինք Եփրայիմ, ինչպես ունինք

էլ իրոք Յհ. ժա. 54՝ իբրև քաղաքի անուն. «Ի քաղաք մի, որում անուն էր Եփրայիմ»։ Հավանաբար մեր բառը ասորերենից է (Հիւբշ. 292), որի նախաձայնը որոշ դպրոցում հնչվել է e։ Գործածական է մեր մեջ Դ դարից մինչև այժմ Եփրեմ ձևով։ Սրա փաղաքշականն է արդյոք Եփրիկ, որից Եփրիկեան ազգանունը։ Միջին ձևը՝ Եփրիկ հիշված է 1776 թ. (Գալէմքեարեան, Կենս. Սարգիս արք. 294)։ Բայց կարող է լինել նաև Եփրիանոս անունից։

— 1. Եփրեմ վանահայր Գլակայ վանքի. հաջորդեց Ստեփաննոս վանահորը։ Ստեփաննոսը նստել է «352 թ», Եփրեմը նստել է 28 տարի. ուստի սրա վանահայրության շրջանը լինում է Դ դարի վերջին քառորդում։—Մամիկ. ա։ Ըստ Ազգապ. 222 սրա հետ նույն է՝

— 2. Եփրեմ հայր և տեսուչ մենաստանների՝ կարգված Մեծն Ներսէս «353—373 թ» հայրապետից։—Խոր. Գ. ի։

— 3. Եփրեմ եպիսկոպոս, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Այրարատ 519, Հայապ. 159։

— 4. Եփրեմ, նշանավոր վարդապետ (Ը դար).—Կիր. 40. Սամ. անեց. 89 (դնում է 775 թ). Մխ. այրիվ. 67 (դնում է 771 թ)։

— 5. Եփրեմ արքեպիսկոպոս Բջնիի. ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին՝ նրա Պոլիս ուղևորության ժամանակ «1047 թ»։ Վերադառնալով իր աթոռը՝ աջակցեց Գր. Մագիստրոսին՝ ջնջելու Թոնդրակեցոց աղանդը, որոնցից հազարից ավելի մարդ մկրտեց։—Մատ. Թղ. ծը, կէ. Ուռհ. 105։

— 6. Եփրեմ, որդի Սարգիս քահանայի, որ Կողբում (Ղազախ) մի խաչքար է կանգնեցրել իր որդոց և իր ազգականների հիշատակին, 1244 թ.—Արցախ 385։

— 7. Եփրեմ,կրոնավոր, գրիչ. իր վաղամեռիկ Աւգեր անուն աղջկա հիշատակին գրեց Կիւրղի Երուսաղէմացու Կոչումն ընծայութեան գիրքը՝ 1277 թ.—Տաշեան, Ցուց. 694։

— 8. Եփրեմ քահանա, գրիչ. Գլաձորում, իր ընկեր Դաւիթ քահանայի հետ արտագրեց մի Աստուածաշունչ՝ Ներսէս վրդ. Սասնեցու համար, 1332 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 126, Զարբ. Թրգմ. 148, Հայապ. 546։

— 9. Եփրեմ վարդապետ վանահայր Թանատի վանուց, 1348 թ.—Արձ. Սիսական 122։

— 10. Եփրեմ քահանա, որդի Գրիգոր քահանայի. հորից իբրև ժառանգություն ստացավ մի Աստուածաշունչ, որ գրել էր Կարապետ գրիչը՝ 1341 թ։ Ավելի ուշ Եփրեմ քահանան նույն

գիրքը նվիրեց Վարագայ վանքին, 1354 թ—Ձեռ. Վենետ, Ա. 94, Անկ. գիրք հին կտ. յոզ. էջ ժե։

— 11. Եփրեմ աշակերտ Աբրահամկէս վարդապետի. երկուսով միասին կազմեցին Մեկնութիւն Մատթէի՝ քաղելով Ոսկեբերանից, որի բնագիրը գրված է եղել 1355 թ. (տես Նորայր, Հայկ. բառաք. 22)։—Զարբ. Հին դպր. 703 դնում է ԺԲ դար։ Համաձայն մի հին վավերական վկայության՝ Շնորհալուց (մ. 1173) հետո է (տես Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 113 բ)։ Նույնը վկայում է նաև Ձեռ. Դաշեան, Բ. 48 ա։ Բայց սրանք չեն հակասում վերևում հիշված 1355 թվին։

— 12. Եփրեմ, հոգևոր եղբայր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, էջ 4 ա։

— 13. Եփրեմ վարդապետ, գրիչ. օրինակել է Բարթուղիմէոս եպս. Մարաղացու Վեցօրէից գիրքը, ՊԻ=1371 թ.—Ձեռ. Կարին. 205 (տպ. ՊՆ, ուղղել ՊԻ)։

— 14. Եփրեմ քահանա, հայր Նիկեղոս կրոնավորի, որ Վանում, Յովհաննէս երեցին գրել տվեց Եղիշէի Պատմութիւնը 1381 թ։—Թորոս աղբ. Բ. 334։

— 15. Եփրեմ եպիսկոպոս Ղափանցի. էջմիածնի նվիրակն էր Պոլսում 1683 թ. կուսակիցներ շահելով՝ գահազուրկ արեց Կարապետ Կեսարացուն և եղավ պատրիարք Պոլսի՝ 1684—86 թ. այս թվին Կարապետը տապալեց նրան և աթոռին տեր դարձավ (Ազգապ. 2640)։ 1694 թվին նորից Եփրեմը գահ բարձրացավ՝ իբրև հաջորդ Մատթէոս Սարը պատրիարքի (Ազգապ. 2665), աթոռակալ ունենալով Թորոս քահանան և Աստուածատուր ավագ քահանան (Ձեռ. Վենետ. Բ. 133)։ Եղավ ազգային շահերի ազդու պաշտպան և կաթոլիկության հակառակորդ։ Պաշտոնանկ եղավ 1698-ին և նրա տեղ անցավ Մելքիսեդեկը (Ազգապ. 2683)։ Այդ միջոցին գնաց առաջնորդ Ադրիանուպոլսի և 1701 թվին նորից Պոլսի պատրիարք դարձավ։ Կաթոլիկների դեմ կռվի մեջ բավական ուժեղ չհամարվելով, ընդհանուր ժողովրդական ցույցով տապալվեց գահից և նրա տեղ նստեց Ավետիք պատրիարքը (1702 թ)։—Չամչ. Գ. 727—733, Ազգապ. 2706։

— 16. Եփրեմ Ա. Աջապահեանց, կաթողիկոս Սսոյ «1771—1784 թ». հաջորդեց Գաբրիէլին. գրել է Պատմութիւն և շարունակութիւն կաթողիկոսաց, Ազգաբանութիւն Աջպահից, Ռոտանաւոր պատմութիւն Աջպահից, Կենսագրութիւն Ղուկասու և Միքայէլի

Աջպահեանց, Մեկնութիւն Յովհաննու մարգարէի, Բարող են։ Սսոյ բռնակալ Գողան Օղլուից թունավորվելով սպանվեց 1784 թ.—Զարբ. Հին գ.պր. 722. Ազգապ. 3173. Տաշեան, Ցուց. 1087։ Ձեռ. Թաւր. 127—9, Սիսուան 219—221։

— 17. Եփրեմ կաթողիկոս Հայոց «1809—1830 թ»։ Ծնվել է «1748 թ» Երևանի մոտիկ Զորագյուղում. նախ եղավ նվիրակ Հնդկաստանի և ապա Ռուսաստանի։ Յովսէփ Արղութեանի մահից հետո կարգվեց առաջնորդ Ռուսաստանի։ Ներկայացավ Ռուսաց կայսեր և պատիվներ ու շքանշան ստանալով՝ դարձավ էջմիածին։ Բայց պարսիկ խաների դրած խոշոր տուգանքներին չկարողանալով դիմանալ, հրաժարվեց գահից «1822 թ» և քաշվեց Հաղբատ։ Տեղի ունեցավ ռուս-պարսկական պատերազմը, որի գլխավոր օժանդակն էր Ներսէս Աշտարակեցին։ Սրա վախճանումից հետո, Եփրեմը նորից նստավ աթոռը «1828 թ», բայց չկարողանալով համարվել Ռուսաց կայսեր պահանջներին, վերջնականապես հրաժարվեց գահից «1830 թ»։ Մեռավ 1835 թ.— Ազգապ. 3377—3626, 3672։

— 18. Եփրեմ Բ Տէր-Մանուէլեան Աջպահեանց, կաթողիկոս Սսոյ «1823—1833 թ». հաջորդեց Կիրակոսին. հրաժարվեց գահից 1833 թ.—Ազգապ. 3614, 3758։

*ԵՓՐԻԱՆՈՍ, ար. < հուն. Εὐφρόνιος անունից, որ ծագում է εὐ-φρων «ուրախ, զվարթ, բարեհաճ, բարեմիտ» բառից։ Հայերենի մեջ աղավաղվելով ստացել է զանազան ձևեր. այսպես Եփրիանոս, Եփրանոս, Իբրիանոս, Իբրանոս, որից էլ Իբրանոսեան ազգանունը։ Գործածված է ԺԵ—ԺԶ դարերում, բայց գուցե ավելի հին էլ է (տես տակը № 1)։ Նույն անունն է թերևս նաև Աբրանեա, որ տես առանձին։—Տես նաև Եփրեմ անունը։

— 1. Եփրիանոս, Նեստորաց ազգի ժամանակից (Թվականը?).—Ձեռ. Վեննա. Ա. 473։

— 2. Եփրիանոս քահանա, որին Աստուածատուրը մի Աւետարան նվիրեց 1488 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 492։

— 3. Եփրիանոս Գուգարացի, Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

—Հիշված է նաև Իբրիանոս 1522 թ. (Ձեռ. Թաւր. 13 ա), Եփրանոս 1568 թ. (Թորոս աղբ. Բ. 441)։

*ԵՓՐՈՍԻՆԷ, իգ. < հուն. Εὐφροσύνη անունից, որ նշանակում է բուն «ուրախութիւն, հաճույք» և նախորդ անվան էլ արմատակից է։ Այս անունով հայտնի էր երեք Շնորհներից մեկը

(լտ. Euphrosyne)։ Քրիստոնեության ժամանակ էլ՝ Եփրոսինէ։ կույս, որի վկայաբանությունը մտած է Յայսմավուրքի և Հարանց վարքի մեջ։ Այս անունը մեր մեջ անսովոր է. գործածված է միայն ԺԵ—ԺԸ դարերում՝ զանազան խանգարված ձևերով. այսպես՝ առաջին անգամ 1469 թ. (տես տակը), ապա 1526 թ. Եբրոսինէ (Ձեռ. Գես. ածած. 70 ա), ավելի ուշ՝ Եբրեսիմէ 1567 թ. (Rapport Arm. էջ 15), Իբրիսիմէ 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 233 բ), Եփրոսիմ 1605 թ. (Ձեռ. Վասպ. 820), Իփրոսինէ 1608 թ. (անդ 827), Եպբրամեր 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86բ), Եփրոսինէ 1635 թ. (Ձեռ. Վասպ. 886), 1666 թ. (Ձեռ. Սանաս. 5 բ), Եփրոսիմէ 1666 թ. (Rapport Arm. 13), Եփրեսիմէ 1682 թ. (Ձեռ. Վասպ. 580), Եփրոսինէ 1697 թ. (Ձեռ. Թաւր. 49 բ), Եփրեսիմա 1702 թ. (Manus. brit. mus. 167 բ), Եբրիսիմ 1707 թ. (Ձեռ. Վասպ. 508), Իբրսիմ 1719 թ. (Ձեռ. Սանաս. 5 ա), Իպփրսիմէ 1749 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 450), Եփրոսինէ 1793 թ. (Այրարատ 315), 1796 թ. (Էջմ. 448), և առանց թվականի՝ Երփեսիմ, Իբրիսիմ (Ձեռ. Վասպ. 426, 248)։

— 1. Եփրիսինէ, դուստր Մկրտիչ քահանայի, որ Բյուրականում օրինակեց Ժողովածու քերթուածոյ, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

— 2. Եփրոսինէ, հունաց Կոստանդին Զ կայսեր (780—797) աղջիկն էր՝ ծնված հայազգի Մարիանէ կայսրուհուց։ 8 տարեկան էր, երբ ընտանեկան մեծ դավաճանության զոհ գնաց։ Իր տատը՝ չարաբարո Իրենէ կայսրուհին աքսորեց Մարիանէ կայսրուհուն (Եփրոսինէի մորը), կուրացրեց իր որդի Կոստանդին Զ-ին (Եփրոսինէի հորը) և մանկահասակ Եփրոսինէին էլ Պրինկիպոյի վանքում փակեց։ Եփրոսինէն «կրօնաւորական ուխտերը կատարեց, ընտանեցաւ վանքի մթնոլորտին հետ, և երկրաւոր իղձերը, գիշերվան վերջին աստղերուն պէս, մի առ մի մարեցան իր սրտին մէջ»։ Մի օր Միքայէլ Թլուատ կայսրը (820—829) զբոսանքի համար կղզին գնալով՝ տեսավ Եփրոսինէ կույսին և նրա դեմքը ջնջեց «իր հոգիէն բոլոր այն պատկերները, զոր տեսած էր իր ընդարձակ պետութեան մէջ»։ Որոշեց ամուսնանալ գեղեցիկ հայուհու հետ։ Բայց սրա համար երկու արգելք կար. նախ որ ինքը ամուսնացած էր և երկրորդ՝ որ կրոնավորուհու հետ ամուսնություն կարելի չէր կնքել։ Այդ միջոցին Միքայէլ կայսեր կինը՝ Թեկղա մեռավ, որով առաջին արգելքը ինքնին վերացավ։ Երկրորդի համար կայսրը ծրագրեց մի կեղծ ողբերգություն, որի դերասանները եղան կայսրը և ծերակույ-

տի անդամները։ Ժամադրված օրը կայսրը սուգ մտած՝ նստած էր գահին. ասում էր. «Կեանքը այլևս վերջացած է ինձ համար»։ Ծերակուտականները ներս մտան, սկսեցին մխիթարել և խնդրել, որ երկրի բարօրության համար բարեհաճի նորից ամուսնանալ, որովհետև, եթե հանկարծ Թէոփիլոս գահաժառանգ որդին մեռնէր, Ով պիտի կառավարէր երկիրը։ Կայսերական ցեղը պիտի ջնջվէր։ Կայսրը մերժեց, ասելով թե իր կնոջ մահից հետո, ինքը ապրում է միայն սգալու համար և արցունքները իր բառերը խեղդեցին։ Այն ժամանակ ծերակուտականները սրերը մերկացրած՝ կայսեր վրա վազեցին և մահ սպառնացան, եթե խոսք չտա։ Կայսրը հայտնեց, որ ինքը միայն Պրինկիպոյի վանքի հայուհուն է հավանած, բայց նա կրոնավորուհի է և նրա հետ ամուսնանալ անհնարին է։ Ծերակուտականները հրճվանքի աղաղակով դուրս ելան և իսկույն բերին Անտոն պատրիարքի հրամանը, որով նա արձակում էր Եւփրոսինէին իր կրոնական ուխտից։ Այդ միջոցին «իր խաղաղ կցցեկին մէջ, սենեկին սրբազան միայնութենէն շրջապատված, զբաղած էր Եւփրոսինէ իր սովորական աղօթքներուն, երկնային սիրոյ արտասուքներով մխիթարված՝ կառաջադրէր դեռ աւելի իր սիրտը անջատել երկրէս, Աստուծոյ մերձենալ, երբ յանկարծ ծովեզերքին վրայ լսվեցաւ կիթառներու, տաւիղներու, թմբուկներու, փողերու միաձայնութիւն մը, որ բիւզանդական զուարթութեամբ անդորր մթնոլորտը կը թրթռացնէին։ Հարսանեկան խումբն էր, եկած էին Եւփրոսինէն տանելու... Հռոմէական պետութեան կայսրուհին ընտրված էր... մահացուցման խստագոյն ձևերէն՝ հաճոյքներու կեդրոնավայր փոխադրված էր» (826)։ Չորս տարի կայսրուհի մնաց. զավակ չունեցավ. մանրամասնություններ պակասում են իր առանձնական կյանքի վրա։ Բայց թվում է թէ իր սիրտը, առաքինության հետ պատվաստված, հաճախ զզվեց արքունական կյանքի գաղտնի և անսանձ ոճիրներից, և Թէոփիլոսին ամուսնացնելուց հետո, հրաժեշտ տվավ արքունիքին, առանձնացավ Պրինկիպոյի վանքը, «հոն վերստին գտաւ իր սենեակը, իր աղօթքները, իր բարեպաշտ արցունքները, և սրտի խաղաղութիւնը, որուն ճըշմարիտ յարգը այժմ միայն կը ճանչնար, աշխարհային կեանքի ալեկոծութիւնները տեսնալէ յետոյ» (830)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 347—354։

*ՅՕԼԲԷԳ, ար. < Թրք. یول yol «ճանապարհ»+beg «բէգ» բառերից. հիշված է 1506 թ. և ավելի ուշ՝ 1662 թ., երկուսն էլ

Սերաթ քաղաքում (Տաշեան, Ցուց. 55, 313)։ Գրված է Եօլպէյ, Եաւլպէկ, Յօլպէկ, Եօլաւշ ձևերով։

*ԵՕՆՈՒԶ, ար. < արաբ. يونس Yūnūs «Յովնան» (մարգարէի անունն է), որ դարձել է թրք. يونز yonuz «գլփին»։

— Եօնուզ, տաղասաց ԺԶ դարու.—Ալիշան, Յուշիկք, Բ. 125։

# Զ

*ԶԱԲԵԼ, իգ. < եվր. Isabella անունից, որ Եղիսաբեթ անվան փաղաքշականն է. հմմտ. «Զապել, որ թարգմանի Եղիսաբեթ, այս է Աստուծոյ եօթներեկ» (Կիր. ծզ).—«Զապիլ... որ ըստ ֆռանգաց լեզուին Զապիլ կոչի» (Վրդ. ձգ)։—Այս անունը մտավ մեր մեջ ԺԲ դարում (գրվում է Զաբել, բայց Կիլիկիայում և այժմ էլ Արևմտահայոց մեջ նոր տառադարձությամբ սովորական է Զապել ձևով)։ Որ և Զապլուն։

— 1. Զապէլ, դուստր Humfery-ի՝ տեառն Թարաքի (դղեակ և քաղաք Ասորիքում), կին Ռուբէն Բ-ի (մ. «1187 թ»).—Սիսուան 79, Հայապ. 347։

— 2. Զապէլ թագուհի, որ և Սիպիլ, դուստր Ամաւրիի, Լուսինեան ֆրանսիական տոհմից, քույր Կիպրոսի Հուգոն թագավորի, երկրորդ կին Լևոն Բ թագավորի Ռուբինեանց, որ ամուսնացավ «1210 թ». իր աղջիկն է համանուն Զապէլ թագուհին.—Սմբ. պատմ. 117.—Սիպիլ՝ Հեթ. ժմնկ.—Մրն. համզ. 42, 43 հյց. զԶապէլ դարձել է Սպասել, զՍաբել:

— 3. Զապել թագուհի, դուստր Լևոն Բ թագավորի Ռուբինեանց. ծնվել է «1215 թ» (ըստ Ձեռ. Օշ. 97 ա՝ «ՈԿԵ (1216) ծնաւ դուստր թագաւորին Լևոնի՝ Զապէլ»)։ ՈԿԷ=1218 թվին հայտարարվեց ժառանգ պետության։ Հայրը նշանեց նրան Հունգարիայի Անդրէաս թագավորի Անդրէաս որդու հետ, որով սա պիտի լիներ Հայոց թագավորության ժառանգ. բայց Լևոնի մահից հետո Զապէլը ամուսնացավ Անտիոքի իշխանի որդի Փիլիպպոսի հետ, որ հայտարարվեց թագավոր Հայոց («1222 թ»)։ Սրա անփառունակ մահից հետո Զապելը ստիպվեց ամուսնանալ Կոստանդին պայլի որդի Հեթումի հետ, որ եղավ թագավոր Հայոց «1226—1270 թ»)։ Զապելը շինեց Սիս քաղաքի հիվանդանոցը «1241 թ», ուր ինքն էլ իբրև գթության քույր ծառայում էր,

խնամելով ամիրական հիվանդներին։ Մեռավ «1252 թ»՝ այրի թողնելով Հեթում թագավորին։—Զաբել՝ Կիր. է.—Զապէլ՝ Կիր. լէ, ծզ. Մխ. ատ. իը (=իէ). Սամ. անեց. շար. 147—150. Հեթ. ժմնկ. Զեռ. օչ. 98 ա. Վանր. ոտ. 217, 219. Սմբ. պտմ. 121—2. Գամ. կլլ. 209—211. Գամ. ռուբ. 220. Գամ. լմբ. 239, 241. Նհպտք. 104. ZAPh 1, 182, 183.—Զապիլ՝ Վրդ. ձգ (իսկ հրատ. Էմինի՝ Զապէլ խաթուն).—Եղիսաբեթ՝ Վրդ. ձգ. Մխ. ատ. իը (=իէ).—սեռ. Զապելի՝ Մխ. ատ. յաւել. Մխ. ատ. յիշ. Վանր. ոտ. 219.—բց. Զապելէ՝ Գամ. ռուբ. 220.—Տաշեան, Ցուց. 771, 1041. Զարբ. Թրգմ. 567. Յուշիկք Ա. 121—161։—Զապել թագուհու շինած հիվանդանոցի արձանագրությունն է՝

Յարմարութ Շինուածոյ Հիւանդանոցիս
Քրիստոսասէր Թագուհւոյ Զապելի
ի Թվին հայոց ՈՂ

այս արձանագրությունը, ինչպես ասում է Սիսուան 223 (որից և Գուլամիրեան, Կիլիկիա, էջ 137) գտնվել է 1833 թվին, Սսի կաթուղիկոսարանի արևելյան պարսպի կողքին՝ մի այլազգու հողում, արձանագրված մի քարի վրա։ Այս քարը այլ ևս չկա, որովհետև նույն այլազգին նախանձից այդ քարը կտոր կտոր է արել. բայց «արձանագիրն ընդօրինակեալ մնայցէ յաւերժական յիշատակ՝ յիշատակելոյն ի Թագուհիս Սիսուանայ, լեռնածինն Զապելի»։ Ալիշան այս արձանագրությունը գտնում է նաև հիշատակված մի ժամանակագրության մեջ, որ տես Սիսուան, էջ 539։—Հետաքրքրական է դարձյալ նույն Զապել թագուհու անվան մի ուրիշ հիշատակությունը՝ Ասորիքի Քեսեք քաղաքի Ս. Յակոբ եկեղեցու մի արձանագրության մեջ։ Այս եկեղեցին շինել էր Հեթում Ա. թագավորը Յեսպոնիոնի պատերազմից հաղթական վերադարձին։ Արձանագրությունը գտնվել է 1878 թ. Քեսեքում, մի սև մարմարի վրա և հետևյալ բովանդակությունն ունի. «Աս եկեղեցին սուրբ Յակովբ անունով Հեթմոյ թագաւորին ժամանակ շինուեցաւ Երանուհի Տիկնոջ Զապելին Յեսպոնիոնի պատերազմէն վերջը յաղթական ելնալով ՉԶ» (1257 թ)։ Այս թվին Զապելը արդեն մեռած էր, ուստի եկեղեցին շինված է միայն նրա հիշատակին և Երանուհի բառը այստեղ ոչ թե իբր անուն է գործածված, այլ «երանելի, հոգելույս» իմաստով (տես Աստուածատուր եպս. Յովհաննիսեան, Գամ. Երուսաղէմի, էջ 187, որից առնելով՝ Գեորգ սարկ. Սարգսեան՝ ՀԱ 1898, էջ 57 ա)։

— 4. Զապէլ, դուստր Թէոդոս քահանայի և քույր Կոստան-

դին Հոխիսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան՝ 1269 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 656։

— 5. Զապէլ դուստր Հեթում Ա. թագաւորի և քոյր Լևոն Գ-ի («1270—1289 թ»). մեռաւ առանց ամուսնանալու.—Պատմ. կիլ. 211. Սիսուան 79։

— 6. Զապէլ դուստր Յոպպէի Գուլտոն իշխանի. Ստեփաննոս Դ կաթուղիկոսի արտոնութեամբ ամուսնացաւ երրորդ աստիճանի ազգական Սմբատ իշխանի հետ։ Պապը մերժեց Հայոց կաթուղիկոսի շնորհած արտոնութիւնը և նոր արտոնութիւն տւեց նրան՝ «1298 թ»։—Ազգապ. 1730, 1757—9 (ըստ Կղեմէս Կալանոսի, էջ 412)։

— 7. Զապէլ, անդրանիկ դուստր Լևոն Գ թագաւորի և քոյր Հեթում Բ-ի. ծնվել է 1362 թ. կին Ամաւրի (Amaury de Lusignan) տեառն Սրոյ (Տիւրոսի) և որդւոյ Կի ու Լուզինեան թագաւորին Կիպրոսի։ Այս թագաւորը գահ բարձրացաւ շուրջ «1294 թ», բայց սպանվեց «1310 թ» և այրի Զապէլը իր հինգ որդիներով (Հուգոն, Հենրիկոս, Գուիտոն, Յովհաննէս և Բեմունդ) Կիլիկիա անցաւ։ Օշին պայլի հրամանով խեղդամահ սպանվեց։—Պատմ. կիլ. 212. Ջեռ. օչ. 99 ա. Հայապ. 544. Զարբ. Թրգմ. 728. Ազգապ. 1746, 1816. Յուշիկք Ա. 160, Բ 564։—Շփոթվում է Զապլունի հետ. ըստ Ալիշան, Յուշիկք Ա 160՝ Լևոն Գ ունէր երեք դուստր. Զապլուն, Զապէլ և Սիպիլ. իսկ ըստ Մին. համռ. 47՝ Զապլուն, Ռիթա և Թեֆանո։

— 8. Զապէլ, դուստր Օշինի՝ տեառն Սարվանդիքարի. ամուսնացաւ Թորոսի հետ, որի մայրն էր Մարիամ դուստր Հեթում թագաւորի և հայրը՝ Կի Իպլենեան ֆրանգ ազնվականը (ԺԴ դար).—Սիսուան 209 բ։

— 9. Զապէլ Թագուհի, դուստր Հեթում պատմիչի, կին Օշին թագաւորի. ծնաւ Լևոն (Ե) որդին և մեռաւ երկունքից «1310 թ».—Սմբ. պատմ. 128. Յիշատ. (Karst, Դատաստ. էջ ե). Զարբ. Թրգմ. 308. Ալիշան, Յուշիկք Ա. 122. Տաշեան, Ցուց. 906. Ազգապ. 1816. (ըստ Զամչ. Գ. 319 Օշինի կինն է Աննա (մայր Լևոնի), երկրորդ կինն է Յովհաննա՝ դուստր թագաւորին Սիկիլիոյ)։

— 10. Զապէլ, դուստր Օշին պայլի, առաջին կին Լևոն Ե թագաւորի, որ նրա մահից հետո երկրորդ անգամ ամուսնացաւ Սիկիլիայի Ֆրեդերիկ թագաւորի դուստր՝ Էլէոնորայի (կամ Կոստանդիա) հետ, 1332 թ.—Սիսուան 543։

— 11. Զապէլ, բնակվում էր Վենետիկում, Հայոց տան մեջ, 1344 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 158։

— 12. Զաբէլ? (գրված կամ տպված Ղբէլ),] կին Գրիգորի, մայր Ստեփանոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.—Manus. brit. mus. 8 բ։

— 13. Զապէլ, մայր Վարդան քահանայի, որ Երզնկայում գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 14. Զաբէլ անունը մի անգամ էլ հիշված եմ գտնում 1509 թ. (Ձեռ. Վասպ. 637), որից հետո դադարում է։ Վերակենդանացավ մեր ազգային զարթնումի ժամանակ և այժմ սովորական անուն է։

ԶԱԲԵՐ, ար. ծագումն անհայտ. աղվանական անուն է։

— Զաբեր, որդի Արսվաղէն Թագավորի Աղուանից. միացավ Պոմպէոսի դեսպան Կանիդիոսի հետ.—Գաթըրճեան, Տիեզ. պատմ. Բ. 75։

*ԶԱԲՈՒՂՈՆ, ար. < եբր. זבלון Zəbulun անվան հուն. Ζαβουλών տառադարձութիւնից. Այս անունով հայտնի է Եբրայեցոց Յակոբ նահապետի վեցերորդ որդին, որի ցեղը թվով գերազանցում էր հրեից մեջ։ Ծագում է זבל zbl «բնակվել» արմատից և նշանակում է «բնակութիւն, բնակարան» (Gesenius 192)։ Ստուգաբանութիւնը տալիս է Ծն. Լ. 20 հետևյալ ձևով. «Եւ ասէ Լիա (մայր Զաբուղոնի). Պարգևեաց ինձ Աստուած պարգև բարի, յայսմ հետէ բնակեսցէ ընդ իս (հյ. թրգմ. սիրեսցէ զիս) այր իմ, զի ծնայ նմա որդիս վեց, և կոչեաց զանուն նորա Զաբուղոն»։ Այս անունը գործածված չէ հայոց մեջ. մի անգամ միայն գտնում եմ հիշված՝

— Տէր Զաբուղոն, պապ Աբխողամի, որ իր Ղուկաս, Բասիդէս և Սմբատ եղբայրների հետ անթվական մի արձանագրութիւն է թողել Անիից 2 ժամ հեռու Հաջի Վէլի հույն գյուղի մեջ, իբրև շենքի պահպանակ (տես Բասմաճեան, Բանաս. 1907, էջ 93—94)։

*ԶԱԴԱ, իգ. < պրս. زاده zāda «ծնեալ» բառից, որ թուրքերենում նաև «աղնվական» իմաստն ունի։ Իբրև իգական անուն հիշատակված է 1511 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 4 բ), 1627 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395), 1694 թ. (Ձեռ. Վասպ. 998՝ սեռ. Զատին ձևով), ինչպես և անթվական մի հիշատակութեան մեջ (Ձեռ. Վասպ. 450՝ սեռ. Զադին ձևով)։ Պոլսում կար Զատեեան ազգա-

նունը, որից կարելի է ենթադրել թե Զատե եղել է նաև արական անուն. հմմտ. Շահզադա, Ամիրզադէ. տես և հաջորդը։

*ԶԱԴԱՄՓԱՇԱ, իգ. < պրս. زاده zāda «ծնեալ»+ پاشا paša «փաշա» բառերից և նշանակում է «ծնած փաշա է»։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։

— Զադամփաշա, դուստր բրուտ Ստեփանոս տանուտերի, որ վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան՝ 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

ԶԱԶ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված է այս անունով՝

— Զազ, կին Գրիգոր իշխան Խաղբակեանի, եկեղեցական սպասներ է նվիրել Աղջոց Ս. Ստեփանոս վանքին (1220 թ)։— Յովսէփեան, Խաղբակեանք 63, 84։

*ԶԱԶԱ, ար. < վրաց. Զազա անունից, որ Դավիթ անվան փաղաքշականն է՝ շատ տարածված Կախեթում (ըստ Սուրէն Երեմեանի). հիշատակված է մի քանի անգամ ԺԴ-ԺԵ դարերում։ Սրա փաղաքշականն էլ է Զազիկ։

— 1. Զազա, որդի Իւանէ Բ-ի, թոռն Շահնշահ Ա-ի, որ էր թոռնորդի Զաքարէ Ա-ի։ Զազայի եղբայրներն են Շահնշահ Բ ամիրսպասալար, Աղբուղա, Արտաշիր և Վահրամ աթաբէկ պարոնաց պարոն։ Զազան էլ աթաբէկ էր և հիշված է իր եղբոր Վահրամի մեծ արձանագրության մեջ՝ Հոռոմոսում 1336 թ. (տես. Զազին ձևով)։ Մահվանից հետո էլ հիշատակված է Անիի երկու անթվական արձանագրության մեջ՝ տես. Զազին և Զազախն ձևերով.—Շիրակ 28, 62։

— 2. Զազա, աթաբէկ և ամիր, որդի Զաքարէի Գ, եղբայր Շահնշահի, թոռնորդի Զաքարէի և Իւանէի, տիրեց Բջնիին և շինացրեց (1358 թ).—Այրարատ 273, Հայապ. 447։

— 3. Զազա, իբրև իշխան Գանձասարի հիշված մի արձանագրության մեջ՝ 1407 թ.—Շահխաթ. Ա. 210, Բ. 374, Նոտարք 25։

ԶԱԶԻԲԷԿ, ար. ծագումը անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Bodleian 148). եթե սակայն ուղղելի չէ Ղազիբէկ։

*ԶԱԶԻԿ, ար. նախորդ Զազա անվան փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։ Սրանից է Զազիկ-եան ազգանունը (Արաբկիր), որ տես Տաշեան, Ցուց. 787 բ։

— Զազիկ, տանուտեր «Ծարայ երկրին», հիշված 1411 թ.—

Նոտարք 40 (նույնը Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 185 գրում է Ղազիկ)։

ԶԱԶԻՓԱՑ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված եմ գտնում ԺԳ դարում։

— Զազիփայ (միայն որոշյալ Զազիփէն ձևով), կին Թիրքիշի, որ ստացավ մի Ավետարան՝ Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463)։

*ԶԱԼ, ար. < պրս. زال Zāl անունից, որ բուն նշանակում է «ծեր». սովորական է նաև վրաց մեջ Զաալ ձևով (ըստ Ս. Երեմեանի). Պարսից պատմության մեջ նշանավոր է Զալ, որ Ռուստեմի հայրն էր (մորից ծնունդ սրա մազերը, ունքերն ու արտևանունքերը սպիտակ էին, ուստի այս անունն ստացավ). կան նաև Զալ ոմն պաշտոնյա Կախեթի Ալեքսանդր թագավորի՝ ԺԶ դար (Justi 378), Զալ խան Երևանի՝ ԺԷ դար (Զքր. սարկ. Բ. 102)։ Մեր մեջ հիշատակված է Զալ՝ 1655 թվի մի արձանագրության մեջ (Այրարատ 340), Զալ 1654 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 115, 120 և Սիսական 84—85), Զալ 1678 թ. (Զամբռ 184) և Զալի ձևով էլ՝ 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1914, 119)։ Սրանից է Զալեան ազգանունը (Կովկաս)։

ԶԱԼԻՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում՝ սեռ. Զալինին ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 31 ա)։

ԶԱԼՏՈՒՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԴ դարում։

— Զալտուն, դուստր Յովսէփի և կին Սարգիս քահանայի, որ Սսում, Անդրէաս քահանայի համար գրեց ու ծաղկեց մի Ավետարան 1336 թ.—Ձեռ. Վատպ. 185։

ԶԱԽՆՈՑ, ար. ծագումն ինձ անհայտ. գործածված է Լեհահայոց մեջ ԺԶ-ԺԷ դարերում. այսպես 1564 թ. (Տաշեան, Ցուց. 918), 1572 թ. (անդ 909), 1666 թ. (անդ՝ 498)։

*ԶԱՀԻԴ, իգ. < արաբ. زاهد zāhid «ջերմեռանդ, բարեպաշտ» բառից, որ սակայն արական է. իգականն է زاهده zāhide.—Թուրքերի մեջ կա հիշված Զէհիդ բէկ անունով մի իշխան՝ 1499 թ. (տես Ակինեան, Գաւազանագիրք 123=Սարգիսեան, Ձեռ. Վենետ. Ա. 577)։ Մեր մեջ հիշված եմ գտնում երկու անգամ, իգական. Զայիթ 1732 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 317) և Զինիտ՝ անթվական մի հիշատակարանում (Rapport Belgique 48, 49, 52)։

**ԶԱՀՎԻԼ** կամ **ԶԱՀՁԻԼ**, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԸ դարում։

— Զահվիլ (կամ Զահֆիլ), դուստր Յովհաննէսի, կին Բայրամի, գրել տվեց մի Գանձարան՝ Մկրտիչ երեցին, Մուղնիում 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

**ԶԱՂԼԷ**, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1662 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 350).— Համեմ. Աղլէմ։

***ԶԱՄԱՆ**, իգ. < արաբ. زمان zamān «ժամանակ» բառից, բայց կրճատված է հաջորդից. գործածված է ԺԷ-ԺԸ դարերում. եղած վկայությունները են՝ 1668 թ. (Ձեռ. Վասպ. 392), ԺԷ դար (Զամբռ 180, 268), 1708 թ. (Ձեռ. Վասպ. 564), 1720 թ. (անդ 1002), 1756 թ. (անդ 313)։ Այժմ կա Թուրքերի մոտ։

***ԶԱՄԱՆՓԱՇԱ**, իգ. < պրս. زمان پاشا Zamān-pāšā ձևից, որ բուն նշանակում է «ժամանակի փաշան»։ Ավելի սովորական գործածություն ունի կրճատ Զաման ձևով, որ տես վերը։ Ամբողջական Զամանփաշա ձևով գտնում եմ մի անգամ գործածված 1562 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 157 բ)։

***ԶԱՄԲԱՂ**, ար. և իգ. < պրս. زنبق zanbaq, որ և թրք. zanbaġ «շուշան ծաղիկը»։ Գործածված եմ գտնում մեր մեջ՝ միայն երկու անգամ ԺԳ, ԺԵ դարերում։

— 1. Զըմբաղ, կին Վարդանի, և մայր Ալէքս պարոնի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1220 թ.—Rapport Arm. 53։

— 2. Զեմպաղ, որդի Տերիմի և եղբայր Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մոնտխոն գյուղում օգնեց Յովանէս աբեղային՝ գրելու Յայսմաւուրքը, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

† **ԶԱՄԷՆ**, իգ. կրճատված է հաջորդ Զամենտիկին անունից, որ տես։ Այսպիսի կրճատ ձևով գտնում եմ մի անգամ գործածված ԺԴ դարում։

— Զամեն, կին Վասիլի և մեծ մայր Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում, իր հորից՝ Հեթում քահանայից ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 613։

† **ԶԱՄԷՆՏԻԿԻՆ**, իգ. կազմված է ճիշտ Ամենտիկին բառի պես, բայց ստացել է նաև զ նախդիր։ Գործածական է նաև կրճատ Զամեն ձևով, ինչպես որ Ամենտիկին անունն էլ գործածական է Ամեն ձևով (արդյոք Զամեն որևէ ազդեցություն չէ՞ կրած Զաման անունից)։

— 1. Զամենտիկին, մայր Ամենաւագ Դերջանցու, որ նահատակվեց «1335 թ».—Նոր վկ. 129։

— 2. Զամենտիկին, քույր Կարապետի և հորաքույր Քրիստոսատուր կրոնավորի, որ Ղրիմի Սուրխաթ քաղաքում Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.— Ձեռ. Վասպ. 7։

*ԶԱՅԱՆԴ, իգ. < պրս. زاینده zāyande «ծնանող» բառից։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԶ դարում.

— Զայանդ, դուստր Կիրակոս քահանայի և քույր Ներսէս եպիսկոպոս Զեթունցու (1526 թ).—Ձեռ. Կես. ածած. 70 ա։

ԶԱՅԻՄ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված 1733 թ. (Ձեռ. Վասպ. 1040)։

*ԶԱՅԻՓԽԱՆ, իգ. < արաբ. ضعیف za'īf «տկար, նիհար»+պրս. xān բառերից. (բայց պարսից ժողովրդական լեզվով zayife բառը նշանակում է նաև «կին» և ամուսինը իր կնոջ կանչելու ժամանակ այս բառն է գործածում։ Մեր մեջ իբրև իգական անուն գտնում եմ գործածված մի անգամ 1661 թ. (Ձեռ. Թաւր. 65 բ)։

† ԶԱՆԱԶԱՆ, իգ. < հյ. զանազան բառից, որ թեև այժմ «տեսակ տեսակ» իմաստն ունի, բայց Ոսկեդարյան հայերենում նշանակում էր «գեղեցիկ, չքնաղ» և այս իմաստն է որ ներկայ է նաև այս անվան մեջ։ Գործածված է ԺԷ-ԺԸ դարերում և կենդանի է նաև մինչև այժմ։ Հնագույն վկայությունները են՝ 1655 թ. (Ձեռ. Վասպ. 553), 1666 թ. (Ձեռ. Սանաս. 5 բ), 1684 թ. (Ձեռ. Վասպ. 963), 1796 թ. (Էջմ. 448) են։ Ամենաուշ ձևերից է Զանեզան 1801 թ. (Ձեռ. Բուլգ. ՀԱ 1937, 577)։ Կրճատ ձևն է թվում Զան կամ Զանի, որ տես առանձին։

*ԶԱՆԳԱԿ, ար. < պհլ. *Zangak անունից, որ անշուշտ zang, zangak «զանգակ» հասարակ անունից է։ Հմմտ. պրս. زنگه Zanga՝ որդի Շավարանի, որ և Zanga-i šāvarān՝ Պարսից Քէյքաւուս թագավորի զորավարներից մին՝ Մազանդարանի արշավանքում (Շահն. հտ. 1, էջ 443), زنگله Zangala (որ և Zangula)՝ «է անուն քաջի միոջ Թուրանականի, որ ի մարտին Տիւվազդէհրիւնի սպանաւ ի ձեռս Ֆիւրուհիլ քաջին Իրանականի» Շահն. հտ. 3, էջ 457 (Հիւբշ. 40)։ Հիշված է մի անգամ Ե դարում։

— Զանգակ երեց ուրացյալ, կուսակից և գործիք Վասակի՝ ընդդեմ ուխտապահների.—Եղիշ. 71, Փարպ. լզ։—Այս մասին տես իմ հոդվածը Արարատ 1911, էջ 228, որի ամփոփումը հետևյալն է.—Փարպեցու մոտ կարդում ենք. «Զանգակ մի ոմն, Սա-

հակ ձայնող և միւս ոմն Պետրոս Երկաթի»։ Առաջին հրատարակիչները կարծել են թե «մի ոմն» բառերը Ջանգակի վերադիրն են՝ աղավաղ ձևով մեզ հասած։ Նոր հրատարակիչները (Մխաբյան և Մալխասեան) հաջող կերպով ուղղում են «մի ոմն Սահակ ձայնող և միւս ոմն Պետրոս երկաթի»։ Իսկ Ջանգակ անունը կարծում են ավելորդ և կամ «ձայնող» ածականի մի ուրիշ համանիշը։ Այս վերջին կարծիքը սխալ է։ Ջանգակ անունը պետք է պահել անփոփոխ, որովհետև նույնը գիտե նաև Եղիշէն։

*ՋԱՆԳԻՇԱՀ, ար. < պրս. زنگی zangi «խափշիկ»+šāh «թագավոր»։ Պարսից մեջ էլ այս բառը իբրև անձնանուն էր գործածվում. օր. Գուլիստանի հեղինակ Շեյխ Սաադիի. մեկենասը Աբուբաքր աթաբէկի պապը կոչվում էր Զանգի։ Զանգի անունն էր կրում նաև Հալէբի ամիրան, որ գրավեց Եդեսիան 1144 թ. և որի առման վրա Շնորհալին գրեց իր «Ողբ Եդեսիոյ» եղերերգությունը։ Մեր մեջ գործածված եմ գտնում միայն մի անգամ՝ ԺԵ դարում, այն է՝

— Ջանգիշա, ամուսին Գունաշէ, հոգևոր մոր Յովհաննէս աբեղայի, որ ստացավ մի Աւետարան, Աղբակի Ասփսթան գյուղում, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 բ (սեռ. Ջանգիշին ձևով)։

ՋԱՆԴԱՂԱՆ, ար. ծագումն անհայտ։

— 1. Ջանդաղան, Ռստոմեայ անից, մատնիչ. Վարդանանց զորավարքները Վասակին էր տանում. բռնվեց Արծակ գյուղում և Բերդկունք տարվելով՝ քարկոծվեց «450 թ».—Փարպ. լբ։

— 2. Ζανδαλᾶς հետևորդ բանակի Ներսէս զորավարի՝ 552 թ.—Justi 379 ա։

†ՋԱՆԻ, իգ. կրճատ կամ փաղաքշական ձևն է Ջանազան անվան, որ տես։ Հնագույն հիշատակությունն է սեռ. Ջանուն ձևով՝ 1517 թ. մի տապանաքարի վրա, Շամախու Գեօքչայ գավառի Նորաշէն գյուղում (Բարխուտ. Աղուանից երկ. էջ 200), երկրորդ՝ Ջանին 1687 թ. (Ձեռ. Թաւր. 24 բ), երրորդ՝ անթվական Ջանի (Ձեռ. Վեննա. Ա. 736)։

*ՋԱՊԼՈՒՆ, իգ.—մի այլ ձևն է Ջապել անվան, որ տես առանձին. գործածված է եղել Կիլիկեցոց մեջ ԺԳ—ԺԴ դարերում. բայց գտնում եմ նաև ԺԵ—ԺԶ դարերում Ջապլու ձևով (անշուշտ վերջաձայն ն հոդ կարծելով ջնջված)։

— 1. Ջապլուն, դուստր Հեթում Ա թագավորի. ամուսնացավ Անտիոքի իշխան Բեմունդի հետ՝ 1254 թ. այրիացավ 1275 թ. և եղավ իր մանկահասակ Բեմունդ որդու խնամակալը։ Սրանից

*շուրջ 14 տարի հետո՝ Եգիպտոսի սուլթան Աշրաֆը գրավեց Անտիոքը և Լատինների իշխանության վերջ տվեց.—Ալիշան՝ Յուշիկք Բ 536, 561, Շահազիզ՝ Պատմ. պատկ. 120։*

— 2. Զապլուն, *դուստր Լևոն Գ թագավորի Ռուբինեանց. ծնվել է 1273 թ.—Ձեռ. օշ. 99 ր. Յուշիկք Ա. 160 (տես և Զապել, № 7)։—Մին. համդ. 47 գրում է* Աբլուն, *նախաձայն զ հայցականի նշան կարծելով!*

— 3. Զապլուն, *դուստր Սիր Գրիգորի և թոռն Ստեփաննոս արքեպիսկոպոսի Տարսոնի. վաղամեռիկ եղավ 1293 թ.—Սիսուան էջ 74։*

— 4. Զապլուն *տիկին, դուստր Գունդստաբլի Հայոց. իր որդիքն են Հեթում, Վասիլ, Օշին և իր աղջիկներն են Շահանդուխտ և Ակոց։ Ստեփաննոս սարկավագին գրել տվեց մի Ավետարան, 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1924, 519)։*

— 5. Զապլուն, *դուստր Թորոսի և քույր Օշին թագավորի. երբ Օշինը մեռավ «1320 թ» և Օշին պայլը մանկահասակ Լևոն Ե-ին խնամակալ կարգվելով՝ ամուսնացավ Օշինի կնոջ Էլէոնորայի հետ, սպանեց սույն Զապլունին՝ իր անդրանիկ որդու հետ, բայց ինքն էլ հետո իր երկու եղբայրների հետ սպանվեց Լևոնի հրամանով։—Սամ. անեց. շար. 157։*

— 6. Զապլու *ձևով գործածված է Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցու բակում գտնված մի խաչքարի արձանագրության մեջ, որ հետևյալն է. «Ցիշատակ է սբ նշանքս Էմինին և իւր կողակցին Զապլուին և իւր ծնողացն թվ. ՊՂԲ» (=1443 թ)։—Շահազիզ, Ազգագր. հանդ.* VII, *էջ 49։*

— 7. Զապլու, *տիկին Սեբաթցի (1506 թ),—Տաշեան, Ցուց. 55։*

**ԶԱՌԱԽ**, *ար. թվում է թե կազմված է պրս.* زرورق zar-varaq *«ոսկեթերթ» բառից, որի մի այլ ձևափոխությունն եմ համարում* զօռախ *«նկարիչ» բառը՝ Օրբել. 187 (տես Արմ. Բառ.)։ Գործածված է միայն մի անգամ՝ 1756 թ. (Ձեռ. Վասպ. 313)։*

**ԶԱՌԻԿ**, *որդի Դալաա-Իբն-Ղալատ-Էլմէլիք-Էսսալիհ հայազգի վեզիրին Եգիպտոսի (մ. 1161). հաջորդեց իր հորը, բայց մի բռնավորի ձեռքով զրկվեց պաշտոնից. Նրա տեղն անցավ Եուսուֆ Սալահադդին.—Ալիշան, Շնորհ. 168, Արուսահլ պատմ. էջ 72։*

***ԶԱՌՂԱԼԱՄ**, *իգ. < պրս.* زر zar *«ոսկի»+արաբ.* قلم qalam *«գրիչ» բառերից, իբր «ոսկեծիր» (ակնարկելով ունքերի նուրբ գծվածքը)։ Գործածական է Ղարաբաղ ինչպես և Թուրքերի մոտ։*

***ԶԱՌՈՒՄ**; *ար. < պրս.* زر zar *«ոսկի» բառից, որ ստացել*

է-ստ ստացական հոդը, իբր թե «ոսկիս». հիշված է մի անգամ 1681 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 27 բ)։

**ՋԱՍԻԲ**, ար. ծագումն անհայտ։ Այս անունով մեկը հիշված է 1616 թ. (հրատր. Սամ. անեց. էջ ժե)։

+**ՋԱՏԷՐ**, ար. այս ձևով հիշված է մի անգամ անթվական մի Յայսմաւուրքի հիշատակարանում։ Ձեռագիրը գրված պետք է լինի Հալեբում (Ձեռ. Հալեպի, Ա, 289 բ)։ Հրատարակիչը՝ Արտաւազդ արքեպս. Սիւրմէեան համարում է Ծատուր բառից։ Այս ենթադրությունը ճիշտ է, որովհետև այս Ջատէրը հիշված է Մուրատի, Մուսայի, Մուղալի և ուրիշների հետ, իսկ երկու ուրիշ անգամ էլ՝ դարձյալ նույն անձերի հետ հիշատակվելով՝ գրված է Ծատուածատուր։

+**ՋԱՏԻԿ**, ար. < հյ. զատիկ «տօն յարութեան» բառից, ինչպես ունինք Յարութիւն=հուն. Անաստաս համանիշ անունները. հմմտ. նաև ֆրանս. Pascal, թրք. Բայրամ, հյ. Տօնական, արաբ. عيد ʿīd են։ Մեր մեջ հիշված է ժե դարից և մինչև այժմ գործածական է։ Սրանից է Ջատիկյան ազգանունը։

— 1. Զատիկ ոմն, հայր Լեհահայոց իշխան Գրիգորի. այս Գրիգորը մեռել է 1565 թվին. ուստի Ջատիկը ժե դարի վերջից է.—Ալիշան, Կամենից 36։

— 2. Զատիկ ոմն, Լէմբերգցի, հիշված 1572 թ.—Տաշեան, Ցուց. 908։

— 3. Զատիկ ոմն գրիչ. օրինակել է Գրիգոր Նազիանզացու Աստուածաբանութիւնը՝ 1617 թ.—Ձեռ. Կարին. էջ 6։

— 4. Զատիկ հիշված է նաև անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 295) և սեռ. Զատկանն! ձևով մի ուրիշ անթվական հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 242)։ Այս վերջինը սակայն պետք է լինի իգական, որովհետև հիշված է իգական անունների շարքում։

**ՋԱՏԿԱՐ**, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ժե դարում։

— Զատկար (սեռ. Ջատկարին), եղբայր Սէթի և Ղազարի, հորեղբայր Հնազանդի, որ փնեց մի Աւետարան և նվիրեց Երզընկայի Խայիք գյուղի եկեղեցուն, 1404 թ.—Թորոս աղբ. Ա. 66։

**ՋԱՏՈՑ**, իգ. ծագումն անհայտ. անշուշտ կրճատ փաղաքշական ձև է. մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակարանում՝ Բանասէր 1899, էջ 129։

*ՋԱՐԳՈՒԼ, ար. < պրս. زر zar+ گل gul «ոսկի» բառերից

և նշանակում է «ոսկեվարդ». հիշատակված է մի անգամ Զարկուլ ձևով 1713 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 34 բ)։ Գործածական է այժմ Թուրքերի մեջ իբր իգ։

***ՁԱՐԴԱԳՈՒՆ,** սեռն անհայտ. < պրս. زردگون zardagūn «դեղնագույն» բառից. համտ. Դեղին, Սարի, Սարուխան, Սարիբէգ անունները, որոնք բոլոր նշանակում են «դեղին»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԲ դարում։

— Զարդագուն, որի հոգուն մի խաչքար է կանգնեցրել Մարգարիտ ոմն, 1155 թ.—(խաչքարը գտնվում է այժմ Գանձակի Զովգառ կամ Հարցհանգիստ գյուղի եկեղեցում, բայց բերված է Մլքնաբերդ սարից)։—Բարխուտ. Արցախ 292, Լալայեանց, Ազգագր. հանդ. Ե. 310։

***ՁԱՐԴԱՄԲԵՐ,** իգ. (սեռն անհայտ). < պրս. زرد zard «դեղին»+արաբ. عنبر 'anber «յամբար անուշահոտ ծաղիկը» բառերից. հիշված է Զարդմբեր ձևով՝ նախորդ Զարդագուն անվան հետ, նույն խաչքարի վրա, 1155 թ։

**+ՁԱՐԴԱՐ,** իգ. < հյ. զարդար բառից. հիշատակված է սկսած ԺԵ դարից և այժմ էլ գործածական է. կրճատ ձևն է Զարդ, գործածված 1756 թ. (Տաշեան, Ցուց. 461). փաղաքշականն է Զարդարիկ, որ տես առանձին։ Զարդար ձևով հիշված է 1605 թ. (Դրնդ. 71), 1798 թ. (Կամենից 182, ՀԱ 1890, 21 բ), 1648 թ. (Ձեռ. Վասպ. 909), 1652 թ. (Երեմ. չէլ. օրագր. 24), 1749 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 450), 1796 թ. (Էֆիմ. 448), առանց թվականի (Ձեռ. Վասպ. 618)։—Սրանից է Զարդարեան ազգանունը։

**+ ՁԱՐԴԱՐԻԿ,** իգ. նախորդ Զարդար անվան փաղաքշականն է. հիշված է 1410 թ. (այսինքն 200 տարի ավելի առաջ քան Զարդար. տես տակը)։

— Զարդրիկ, կին Թումայի, որ մեռավ 1410 թ. և «սուգ եթող մեզ յաւիտեան, և զամուսին իւր զԶարդըրիկ, որ ոչ մխիթարեցաւ և ոչ զարդըրեցաւ, այլ ի տարաջէ ի սուգ մտաւ».— Ձեռ. Վասպ. 164։

— Զարդարիկ ձևով հիշված է մի անգամ էլ 1586 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 668։

**+ ՁԱՐԴԽԱԹՈՒՆ,** իգ. կազմված է նույն զարդ բառից+ խաթուն. մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակության մեջ, որ դրված է 1296 թվից հետո (Ձեռ. Վասպ. էջ 122)։

*ԶԱՐԵՀ, ար. իրանական անուն է. հմմտ. պրս. زره Zarah հայր Արժանգի՝ զորավարին Թուրանցոց (Շահն. հտ. 3, էջ 14), Զարեհ՝ որդի Պերոզի՝ թագավորին Պարսից (Փարպ)։ Հայերենի միջին ձևն է *Զարեհ։ Գործածական է Ն. Ք. Բ դարից սկսած մինչև Ց. Ք. չորրորդ դարը, որից հետո դադարում է։ Վերակենդանացավ անցյալ դարում և այժմ սովորական անուն է (Հիւբշ. էջ 40)։

— 1. Զարեհ, առաջին թագավոր, որ ազատեց Հայաստանը Ասորեստանցոց ծառայությունից, ապստամբելով Սենեքերիմի դեմ։ Արմենակի ցեղից էր։—Սեբ. ա (էջ 6),—սեռ. Զարեհի՝ Մխ. ասոր. 19։

— 2. Զարեհ թագավոր Հայկազն, որդի և հաջորդ Ներսեհի (Ն. Ք. 440 թ. ըստ Չամչ. Ա. 121). սրանից է սերում Զարեհավանից կամ Զարեհավանեան ցեղը.—Խոր. Ա. լա, Բ. ը. Ցհ. կթ. գ. Վրդ. է. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 46. Մխ. համդ. 12, 55.— Զարեհ՝ Մխ. անեց. գ.—բց. ի Զարեհէ՝ Ցհ. կթ. գ. Ուխտ. Ա. իե. Սամ. անեց. 46. Մխ. անեց. 12։

— 3. Զարեհ, զորավար Սելևկյանց. որին Անտիոքոս Գ նշանակեց կառավարիչ արևմտյան Հայաստանի։ Հռոմի հետ բանակցության մտնելով և միացած Մեծ Հայքի կառավարիչ Արտաշեսի հետ, միասին թոթափեցին Սելևկյան լուծը և Հայաստանը անկախ հայտարարեցին (Ն. Ք. 189)։ Զարեհ նստավ Ծոփք, Եկեղիք, իսկ Արտաշեսը՝ Արտաշատում։—Կեղծ է նույնի անունով գտնված դրամը, ուր կարդացվում է Zadriades ձևը (Հիւբշ. 506)։— Գրգչ. Քնն. պատմ. Ա. 81, Լէօ, Ա. 384, Չամչ. Ա. 204—7, Ստրաբոն Հայոց մասին 57, 65 (գրում է ըստ հնագույն ձևի՝ Ζαριάδρης)։

— 4. Զարեհ, երեց որդի Մեծն Տիգրանի, Կլեոպատրա կնոջից, որ Մեծն Միհրդատի աղջիկն էր։ Ապստամբեց հոր դեմ և պատերազմի մեջ սպանվեց։—Գրգչ. Քնն. պատմ. Բ. 151, Լէօ Ա. 417, Մանանդյան՝ Տիգրան Բ. էջ 173։

— 5. Զարեհ, որդի Արտաշես Բ-ի, զորավար Հայոց հյուսիսային բանակի. հաղթվելով Վրաց Քարձամ թագավորից, բռնվեց ու բանտարկվեց։ Երկու եղբայրները՝ Արտավազդ և Տիրան և զորավարն Սմբատ Բագրատունի ազատեցին նրան (Բ դար).— Խոր. Բ. ծգ. Պատմ. վր. 6.—սեռ. Զարեհի՝ Խոր. Բ. ծե.—Վրաց ազր. Ա. 159 (գրում է Զարեհ)։

— 6. Զարեհ, նահապետ Մեծ-Ծոփաց. ուղեկից եղավ Յու-

*սիկին՝ կեսարիա ձեռնադրութեան գնալու ժամանակ «341 թ».— Բուզ. Գ. ժը։*

— 7. Զարեհ *իշխան Մոկաց, երբև անգամ շքախմբի՝ ուղեկից եղավ Մեծն Ներսէսին, երբ գնում էր Կեսարիա ձեռնադրըվելու «353 թ»։—Մեսր. եր. 25։*

***ԶԱՐԻ**, ար. ծագումը անհայտ. հիշված է երկու անգամ՝ 1389 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 759, 760)։*

****ԶԱՐԻԿ**, իգ. անշուշտ փաղաքշական ձևն է* Զարուհի *անվան, ինչպես գործածական է նաև այժմ։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Վասպ. 550), որ երևի գրված է 1691 թ. կամ քիչ առաջ։*

****ԶԱՐԻՖ**, իգ. < արաբ.* ظريف zarīf *«վայելուչ, սիրուն, նըրբագեղ» բառից։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ սկսած ԺԵ դարից և անցյալ դարում դեռ գործածական էր։ Այժմ Թուրքերի մոտ Զարիֆա։*

— 1. Զերիֆ *խաթուն, երիցկին Աստուածատուր քահանայի, հիշված է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի մի արձանագրության մեջ՝ 1480 թ.—Շահազիզ, Ազգագր. հանդ. Ե, էջ 72 և Ն. Նախջ. Ս. Խաչ վանքը, էջ 12։*

— 2. Զարիֆխաթուն *ձևով գործածված է նաև 1691 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 31 ա), իսկ պարզ* Զարիֆ *ձևով՝ 1693 թ. (Ջեռ. Վասպ. 334—5), ԺԷ դար (Զքր. ագուլ. 5), 1731 թ. (Ջեռ. Վասպ. 52), 1742 թ. (անդ 565), 1756 թ. (անդ 314)։*

****ԶԱՐԻՖՄԵԼԷՔ**, իգ. < արաբ.* ظريف zarīf *«նրբագեղ»+* ملك melek *«հրեշտակ» բառերից։ Գործածված է երկու անգամ, մեկը* Զարիֆմելիք*, երկրորդը* Զարիւմելէք *ձևով (Ձեռ. Թաւր. 74 ա, 71 ա), երկուսն էլ անթվական հիշատակարաններում (բայց գըրված 1311 թվից հետո)։*

*+ **ԶԱՐՄԱՅՐ**, ար. < հյ.* զարմ *(անալ)+*այր *բառերից, իբր թե «զարմանալի այր», ինչպես ունենք* Նոքայր, Հրայր, Ժիրայր, Տիրայր *անունները՝ բոլորն էլ կազմված* այր *«տղամարդ» բառով։ Խորենացու հնարած անուններից է, որ ուրիշ անգամ չէ գործածված հայոց պատմության մեջ։ Վերակենդանացավ անցյալ դարում։* (Justi *383 ա դնում է* զարմ *«ցեղ»+*այր *բառերից)։*

— Զարմայր *նահապետ Հայկազն, որդի և հաջորդ Հօրոյի (Ն. Ք. 1194 թ. ըստ Ջամչ.) Եթովպական զորքով մասնակցեց*

Տրովադայի պատերազմին՝ իբր օգնական Պրիամոսի։ Մեռավ այդ պատերազմում՝ 1182 թ։—Խոր. Ա. ժթ. լբ. Յհ. կթ. բ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. Է. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 18, 50. Մին. համգ. 9,10.—Վրաց աղբ. Ա. 74 Հայկազն նահապետների շարքը տալու ժամանակ մոռանում է հիշել Զարմայրին և նրա տեղ դնում է Սավազեա, Կամպրա, Միուտեվտա անունների շարքը։ Այս անունները ուրիշ ոչ մի տեղից հայտնի չեն և ամենամեծ թյուրիմացությամբ առաջացել են Խորենացու հետևյալ հատվածից. «Սա աւգնական Պարիամու ի Տեւտամայ» !!!

+ԶԱՐՄԱՆԱԶԱՆ, իգ. < հյ. զարման(ալի)+զան «ցեղ, սերունդ» բառերից, ինչպես ունինք «այլազան, սրբազան, զանազան բառը. վերջինը նաև իբր իգական անձնանուն. հմմտ. Աբեգնազան, որ սակայն նազ, նազանի, նազելի բառերից է կազմված։—Զարմանազանը Ցարեթի կինն էր «ըստ մերոց վարդապետաց» (ասում է Ալիշան՝ Հյտ. 39)։ Այժմ էլ երբեմն գործածվում է Զարմանազան կամ Զարմազան ձևով՝ անշուշտ գրական աղբյուրներից։

*ԶԱՐՄԱՆԴՈՒԽՏ, իգ. < պհլ. zarmān «ծերունի» = պրս. زرمان zarmān + دخت duxt «դուստր» բառերից, որով Զարմանդուխտ նշանակում է «ծերունու դուստրը» (Հիւբշ. 41)։ Ըստ. այսմ սխալ է մեկնել հյ. «զարման(ալի) դուստր» ձևով, ինչպես կարծվում է մեր մեջ, ժողովրդական ստուգաբանությամբ, համաձայն հյ. բառի պատահական նմանության։ Հիշված է Ա-Բ դարերում և ավելի ուշ։ Կենդանի է նաև այժմ Զարմանդուխտ, կրճատ Զարման, փղքշ. Զարմիկ ձևերով (սակայն սրանք կարող են առաջացած լինել նաև Զարմանուհի անունից, որ տես)։—Պետք չէ շփոթել պրս. Āzarmīduxt իգական անվան հետ, ինչպես անում են մեր պատմագիրներից ոմանք. այսպես՝ Կիր. և Մխ. առ. գրում են Զարմանդուխտ, Վրդ. լգ Զամբիկ՝ փխ. Ազարմիդուխտ թագուհի Պարսից, դուստր Խոսրովի և գահակից Բորի։ Ծագում է āzarm «պատիվ, ամոթ»+duxt «դուստր» բառերից)։

— 1. Զարմանդուխտ, ազնվական կին, Սանդուխտ կույսի քարոզությամբ՝ իր ամբողջ գերդաստանով ընդունեց քրիստոնեությունը և նահատակվեց Սանատրուկ թագավորի ձեռքով (48 թ. ըստ Ջամչ. Ա. 297)։—Վկ. Թադ. 40. Ուխտ. Ա. խ. Ցայսմ. դեկտ. 23.—Զարմանադուխտ՝ Պամ. Թադ. 68, 69.—սեռ. Զարմանդխտոյ՝ Ցայսմ. դեկտ. 23.—Զարմանադխտոյ՝ Պամ. Թադ. 69։

— 2. Զարմանդուխտ թագուհի, կին Պապ («368—374 թ»)

թագավորի Հայոց.—Բուզ. Ե. լէ, լը. Մեսր. եր. 123.—սեռ. Զարմանդխտոյ՝ Բուզ. Ե. լը։

— 3. Զարմանդուխտ, կին Տաճատ իշխանի, մայր Զորտուանէլի Մամիկոնեան, որ Տարօնի իշխանն էր՝ 1104 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 474. Հայապ. 397։

— 4. Զարմանդուխտ, հայ դյուցազնուհի. իր իսկ ձեռքով ըսպանեց երկու Եգիպտացի զորապետներ՝ Էօմէրը, Առանայի դաշտում, և Ալին՝ Սսի դաշտում (ԺԳ դար).—Սիսուան 227, Բիւրքճեան, Հայկական Կիլիկիա 29։

— 5. Զարմանի, դուստր Ստեփանոսի և քույր Կարապետ քահանայի, որ Ոստանում օրինակեց Գանձարանը, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։ (Սակայն կարելի է կարծել, որ այստեղ զ նախդիր է և հետևաբար անունն է Արմանի (հայ), որ ԺԵ դարում գործածական իգական անուն էր Վասպուրականում։ Տես վերը Արմանի անունը։—Վերոհիշեալ անունը հիշված է հետևյալ ձևով. «Զքոյրն իմ զարմանի և զեղբայրն իմ զյովանէս քահանայ»)։

— 6. Զարմանդուխտ (մղտեսի), որ Բաղէշում՝ Կիրակոս քահանային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Ս. Գէորգ եկեղեցուն, 1463 թ.—Նոտարք 215։

— 7. Զարմանդուխտ, կին Մուրատի, որ Արճէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498։

— 8. Զարման, դուստր Շահի, հորեղբորորդի Զաքարիա աբեղայի, որ գնեց մի Շարակնոց՝ 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 9. Զարմանդուխտ, քույր Հաթուշի, կնոջ խոջա Զօզի, որ Յոհանէս գրչին գրել տվից մի Աւետարան և նվիրեց Անջողոց Ս. Աստուածածին եկեղեցուն, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 10. Զարմանդուխտ անունը կրճատված է նաև Զառմ ձևով, ինչպես գտնում ենք անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 125 բ ուղ. Զառմն ձևով, և սեռ. Զառմին 125 ա՝ «մարցն Զառմին» են, որ քիչ հետո կրկնվելով՝ դառնում է «Զառման, Զարման» անդ 125 բ)։—Նույնը չէ սակայն Ձեռ. Վասպ. 627 զԱռմին, որ բնարկե վրիպակ է և պետք է ուղղել զԱսմին։

+ԶԱՐՄԱՆՈՒՀԻ, իգ. < հյ. զարման(ալ) բառից՝ իգականակերտ-ուհի մասնիկով. մի անգամ հիշատակված է ԺԴ դարում։

— Զարմանուհի, կին Հեթում զորավարի Կոստանդին Ե թագավորի. երբ Հեթումը դավաճանությամբ սպանվեց, Զարմանուհին պատերազմիկ մի խմբի գլուխն անցած քաշվեց լեռները

(«1370 թվից հետո»).—Սիսուան 184, Ազգագ. 1928։—Օննիկ Մահտեսեան, Սուրիահայ տարեց. 1925, էջ 127 ասում է թե Զարմանուհին գնացել է Զեյթուն, տիրել է կապան բերդին և իր որդի Գէորգի հետ միասին իշխել է 5 տարի։

*ԶԱՐՄԵԼԷՔ, իգ. < պրս. زر zar «ոսկի»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից։ Գտնում եմ գործածված մի անգամ ԺԳ դարում։

— Զարմէլէք, կին Արիստակէս քահանայի և մայր Յովհաննէս քահանայի, որ Սիմէոնց Բարաղնիս ձեռնատառով գրել տվեց մի Աւետարան, 1280 թ.—Ձեռ. Վասպ. 104։

*ԶԱՐՄԻՀՐ, ար. < պրս. Zarmihr անունից, որ կազմված է زر zar «ոսկի»+مهر mihr «Միհր աստված» բառերից։ Հմմտ. Zarmihr որդի Սուխրայի (Տաբարի), Զարմիհր Հազարաւուխտ՝ պարսիկ զորավար Պերոզ Թագավորի (Փարպեցի) են (Հիւբշ. 41)։

— 1. Զարմիհր, Աղուանից իշխանական տոհմից, փեսայացավ Բաչն Վարդանին՝ Միհրանեան տոհմից (Է դար)։—Կղկնտ. Բ. ԺԷ։

— 2. Զարմիհր ի Վարազ-Բուրզաքեան, իշխան աղուան, Թագավորական ցեղից (706 թ).—Կղկնտ. Գ. Ը, Ժ. հրտր. Սամ. անեց. 286։

+ԶԱՐՄՈՒՀԻ, իգ. նորակերտ անուն. ձևափոխված Զարմանդուխտ անունից և կամ իբրև իգական Զարմայր անվան։ Ձևապես զարմ «ցեղ, ազնիվ սերունդ» բառի իգականն է։

ԶԱՐՈՒ, ար. ծագումն անհայտ. հիշված է ԺԷ և ԺԸ դարում՝ երկու անգամ. նախ Զարու ձևով՝ 1638 թվից ուշ, իբրև տանուտեր (ռէս) Դեղձից գյուղի (Ձեռ. Վասպ. 897) և երկրորդ՝ սեռ. Զարոյին? ձևով, 1742 թ. (Ձեռ. Վասպ. 565)։ Ըստ այսմ կապ չունի Զարուհի իգ. անվան հետ։

*ԶԱՐՈՒՀԻ, իգ. < պրս. زر zar «ոսկի» բառից+հյ.-ուհի իգականակերտ մասնիկով. հմմտ. պրս. Zar-bānū դուստր Ռուսթէմի (Justi 381 ա), Zār-duxt հիշված մի կնիքի վրա (Justi 381 բ), Ζαρίνα թագուհի Սակաց (Justi 382 ա). բոլորն էլ պրս. zar «ոսկի» բառից։ Հայերենի մեջ միայն մի անգամ է գործածված և այն էլ Հայկազեան հարստության շրջանում. ուստի հավանաբար Խորենացու հնարած անուններից է։ Վերակենդանացավ անցյալ դարում։ Կրճատ և փաղաքշական ձևերն են Զարօ, Զարուկ։

— Զարուհի, թագուհի Հայոց, կին Տիգրան Ա-ի.—Խոր. Ա. ԻԹ.—րց. ի Զարուհեայ՝ Խոր. Ա. ԻԹ։

*ԶԱՒԱՆ, ար. < ըստ իս զնդ. Zavan անունից, որ թերևս

զնդ. zavan «կոչ» բառից է (ըստ Bartholomae 1669. տես և Justi 384 բ)։ Մի անգամ ունենք Հայկազեանց հարստության շըրջանից։

— Զաւան նահապետ Հայկազանց, հաջորդ Արբակի, Ն. Ք. 1568 թ. ըստ Զամչեանի.—Խոր. Ա. ժթ. Յհ. կթ. բ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե (հրտր. Շահն. ունի Հաւան ձևով). Վրդ. է. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 45. Մխն. համդ. 9.—Զաւէն՝ Մխ. այրիվ. 17, 48.—Գզավան՝ Վրաց պտմ. Ա. 74։

*ԶԱՒԷՆ, պր. կազմված է իրան.-en փաղաքշական մասնիկով, ինչպես են Սուրէն, Արտէն, Գուրգէն, Վազգէն (Հիւբշ. 90). ըստ իս ծագում է պրս. Zaw անունից (որ է զնդ. Uzawa)։ Այս անունով հայտնի են Zaw նախահայր Աֆրասիաբի, Zaw որդի Հարասպի և Zaw որդի Թահմասպի՝ առասպելական թագավոր Պարսից (Շահն. հտ. 1, էջ 344, Justi 337)։ Զնդ. բառը կազմված է ըստ Bartholomae 410 uz մասնիկով av «օգնել» արմատից և բուն նշանակում է «օգնող, օգնական»։ Մեր մեջ գործածված է Դ դարում, այնուհետև խափանված։ Նորերս վերակենդանացավ, հատկապես Կովկասում։

— 1. Զաւէն եպիսկոպոս Բասենի, հիշված 364 թ.—Այրարատ 43։

— 2. Զաւէն եպիսկոպոս Ցուրտաւի. Մեծն Ներսէսի ուղեկիցներից, երբ նա գնում էր Կեսարիա ձեռնադրվելու «353 թ».—Մեսր. եր. 26։

— 3. Զաւէն Մանազկերտցի, կաթողիկոս Հայոց, Աղբիանոսի տոհմից, հաջորդեց Շահակ կամ Յուսիկ Բ կաթողիկոսին. նստավ «377—381 թ».—Խոր. Գ. խ. Բուզ. Զ. բ. Յհ. կթ. ժգ. Մխ. անեց. գ. Ասող. Բ. ա. Օրբ. հա. Արծր. Ա. ժա. Կիր. 13. Պտմ. ներս. 28. Վրդ. խդ. Միխ. աս. իթ (=իը). Մխ. այրիվ. 20. Սամ. անեց. 67. Քհնպ. 270. Յհ. կթ. հյր. 273.—գրված Զաւրէն՝ Եզն. երէց 267—8.—սեռ. Զաւենայ՝ Խոր. Գ. խա. Բուզ. Զ. բ (ցանկում), գ. Սամ. անեց. 67. Ասող. Բ. ա. Կիր. 14. Միխ. աս. իթ (=իը).—Զաւինայ՝ Բուզ. Զ. բ—դ, ժե։

— 4. Զաւէն տես Եւղաղ:

ԶԱՒՐԱԿ, տր. ծագումն անհայտ։

— 1. Զաւրակ Գղաւոնեան, իշխան. անդամ Դուինի Բ ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ.—Թերևս նույն է հաջորդի հետ և թերևս էլ պետք է կարդալ «Գազաւոնեան», որով կլինի Զաւրակ որդի Գազաւոնի—Կոգեան, Կմարկններ 121։

— 2. Զուրակ Կամսարական. օգնական Վարդան Բ Մամիկոնեանի. 571 թվի ապստամբության ժամանակ կոտորեց Պարսից զորքը. ջարդեց Սուրէն մարզպանի 15,000-անոց բանակը, Սուրէնին էլ սպանեց և գրավեց Դուինը։—Սեբ. Զուրակայ՝ Անան. կիտ. 20,22. Հայապ. 234. Տաշեան, Ցուց. 176. Կոգեան, Կամսարկանները 122—127։

*ԶԱՓՐԱՆ, ար. < պրս. արաբ. zaʿfrān, zaʿfarān «քրքում» բառից. հմմտ. Դեղին, Սարու են համազորները (Հիւբշ. 41)։ Տես նաև Զափրանիկ։

— Զափրան կամ Գորգ Զափրան, Գնունեաց ցեղից. հավատարիմ ծառա Գրիգոր Դերենիկ Բ Արծրունու, որ տես։—Գորգ Զափրան՝ Սուտ-Շապհ. 40, 41.—Զափրան՝ անդ 41, 43—46, 48։

*ԶԱՓՐԱՆԻԿ, ար. պրս. zaʿfarānī «քրքմագույն» ձևից (Հիւբշ. 41). տես Զափրան։

— Զափրանիկ իշխան Մոկացի, հավանաբար եղբորորդի Մոկաց Դավիթ եպիսկոպոսի. գնաց Պոլիս և եղավ զորավար Վարդ Սկլերոսի, որ էր հայ ապստամբ։ Նշանավոր դարձավ Մանզկերտ զորավար անունով։ Հաղթեց կայսեր բանակին (Ժ դար).—Ասող. Գ. ժդ։—Դարձել է Մանկլիկ ճգնավոր՝ Սիմէոն Ապարանցու մոտ, էջ 136 և 140. միջնորդել է Հունաց կայսեր մոտ՝ Ապարանից խաչը ուղարկելու Ստեփաննոս եպիսկոպոս Ապարանցուն։ Հմմտ. Մանզկերտ, որ հիշված է Գր. Նար. մատ. 380։—Զամչ. Բ. 847, 850 գրում է Ափրանիկ (զ նախդիր կարծելով), որ սխալ է։

*ԶԱՔԱԹ (կամ Զաքատ), ար. < արաբ. زكاة zakāt «պարտադիր ողորմություն, որ մահմեդական շարիաթը հրամայում է տալ աղքատներին և է հասույթի մի քառասներորդ մասը»։ Հիշված է երեք անգամ. նախ՝ Զաքատ 1551 թ. (Ձեռ. Վիեն. Ա. 534), երկրորդն է՝

— 2. Զաքաթ Կամախեցի, որի եղբորորդին՝ Սկանդար գրել տվեց մի Մայր Մաշտոց՝ 1567 թ. Կամենից քաղաքում.—Յիշ. Զաքաթին՝ Տաշեան, Ցուց. 310։

— 3. Զաքաթ, հիշված է անթվական մի հիշատակարանում, Manus. brit. mus. 56 ա։

*ԶԱՔԱՐԻԱ, ար. < եբր. זכריה Zəkhariyā անունից, որ բուն նշանակում է «յիշատակ Տեառն». ծագում է זכר zkhr = արաբ. ذكر zikr «հիշել» արմատից (Gesenius 198—199)։ Հմմտ. նաև זכר zākhār, ասոր. zakrā, ասուր. zikaru, արաբ. ذكر zakar

«տղամարդ»։ Այս անունով հայտնի են Եբրայեցոց մեջ Զաքարիա մարգարէ, որ փոքր մարգարեներից 11-րդն է և մարգարեացել է Ն. Ք. 520 թ., Զաքարիա քահանայապետ՝ հայր Յովհաննէս Մկրտչի (Ղուկ. Ա. 3)։ Տառադարձված է հուն. Ζαχαρίας (լտ. գերմ. Zacharias, ֆրանս. Zacharie, ռուս. Захария, Захар, անգլ. Zachary, Zach, արաբ. زكريا Zakariyā), որից և հյ. Զաքարիա (Հիւբշ. 336)։ Այս անունը գործածական է մեր մեջ Ա դարից մինչև այժմ։ Կրճատ ձևերն են՝ Զաքար (որից Զաքարեան ազգանունը), Զաքի (հիշված է 1612 թ.՝ Դրնդ. 176), Զաքարիկ (հիշված է անդ՝ 586), Զաքօ, Զքօ (Ազգագր. 2359), գւռ. Զաքի։

— 1. Զաքարիա, աշակերտ Թադէոս առաքյալի, որի ձեռքով ձեռնադրվեց եպիսկոպոս. եղավ առաջնորդ Եդեսիայի և ապա առաջնորդ Արտազի «68—72 թ»։ Համարվում է Արտազի թեմի առաջին առաջնորդը։ Նահատակվեց Սանատրուկի ձեռքով՝ «72 թ»։ Նրան են ընծայված կանոնք Թադէոսի առաքելոյ։—Գիրք թղ. ղը. Միխ. աս. իթ (=իը). Չքր. եպս. 280. Պատմ. թադ. 72, 75. Գիւտ նշ. թադ. 90. Կանոն. 215. Կանոնք թադ. 425. Յայսմ. դեկտ. 23, մայ. 30. Տաթև. ձմ. ղէ.—Զաքարէ՝ Ուխտ. Ա. խ.—Զաքարիաս՝ Վկ. թադ. 53.—տես և Տաշեան, Վարդ. առաք. 135—141, Արրտ. 1868, դեկտ. էջ 102։

— 2. Զաքարիա Ա. կաթողիկոս Աղուանից, հաջորդ Գրիգորի (Դ դար)։—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384։

— 3. Զաքարիա, հայր Առաքելի, որ մի խաչքար է կանգնեցրել իր հոր հիշատակին՝ Երուսաղեմում, ԻԱ=572 թ.—Տաշեան, Ակնարկ 137՝ հանելով Տ. վ. Գալեանի «Սուրբ երկիր» աշխատութիւնից, Ա. էջ 113։—Կասկածելի է, որովհետև այդքան հին գրերում դեռ Առաքել ձևը չկար, այլ Առաքեալ. 2) սեռ. Զաքարիա ձևը (փխ. Զաքարեայ) չի գտնվում հների մոտ։ Տարակույս չկա, որ հարյուրավոր թվանշանը ընկած կամ հապավված է։

— 4. Զաքարիա Բ. կաթողիկոս Աղուանից. Պարտաւի վանական էր. պահեց քաղաքը Հերակլ կայսեր ժամանակ. նախապես Վիրոյ կաթողիկոսի տեղակալն էր. ընտրվեց կաթողիկոս Աղուանից և նստավ 629—644 թ. իր օրով Սիւնիքը բաժանվելով հայոց կաթողիկոսությունից՝ Աղուանից կաթողիկոսության հպատակվեց։ Իրեն հաջորդեց Յոհան Բ.—Կղկնտ. Բ. ժ. Գ. իդ. Օրբ. իա. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384.—բց. ի Զաքարիայ՝ Կղկնտ. Բ. խը։

— 5. Զաքարիա վանահայր. եղավ եպիսկոպոս Մեծիրանց

(703)՝ իբրև հաջորդ Յովէլի. քաղկեդոնիկ.—Կղկնտ. Գ. գ. հրատ. Սամ. անեց. 286։

— 6. **Զաքարիա** Ա. Ձագեցի, կաթուղիկոս Հայոց «855—876 թ». Կոտայք գավառի Ձագ գյուղից մի սրբակյաց մարդ էր. Սմբատ Բագրատունու (Խոստովանող) առաջարկությամբ՝ Շիրակավանի ժողովում ընտրվեց կաթուղիկոս, երբ դեռ աշխարհական էր. և մի օրվա մեջ կրոնական բոլոր աստիճանները ստանալով՝ նստավ հաջորդ Յովհաննէս Դ Ովայեցու։ Իր ժամանակ Պոլսի Փոտ պատրիարքը սկսել էր հալածել հայերին՝ նրանց հերձվածող համարելով։ Զաքարիան գրեց Թուղթ առ Փոտ՝ պաշտպանելու համար հայ եկեղեցու դավանանքը։ Փոտը պատասխանեց մի ընդարձակ թղթով, որի առթիվ Զաքարիան գումարեց Շիրակավանի ժողովը (862 թ) և հերքելով Փոտի պատճառաբանությունները՝ ուղարկեց նրան։ Ունի գրած մի խումբ ճառեր, որոնք դեռ անտիպ են. տես Տաշեան, Ցուց. էջ 1087 և Tübingen 58, Զարբ. Հին դպր. 500—503, Թրգմ. 730, 748—9, Ձեռ. Կարին. 81, 98, 136. այսպես նաև Մեկնութիւն Մատթէոսի աւետարանին՝ Ձեռ. Կարին. 116—7 և Ձեռ. Վեննա. Բ. 90, 91, 427, 453, 1078, և Ներբողեան ի յարութիւն Քրիստոսի՝ Ձեռ. Կարին. 117 ևն։ Հիշելի է հատկապես Զաքարիայի «Ճառ ի փոխումն Աստուածամօրն և պատկերի նորին», որ Մանանդեան, Խորենացու առեղծվածի լուծումը, էջ 157 համարում էր թե Խորենացու աշխատակցությամբ կազմված մի գործ է և որից էլ հետևեցնում էր թե Խորենացին Թ դարից է։ Այս մեծ թյուրիմացության մասին տես Աշ. Աբրահամեանի պատասխանը՝ իր «Խորենացուն վերագրվող Աշխարհացոյցի հեղինակի հարցի շուրջը» աշխատության մեջ (Երևան 1940, էջ 85—91)։—Հ. Բ. Սարգիսեան գրեց «Եղիշէի և Զաքարիա կաթուղիկոսի ի Թաղումն Քրիստոսի ճառերն» աշխատությունը (Վեննա. 1910), որի մեջ ասում է թե Զաքարիան մեծապես օգտված է Եղիշէի ճառերից, Նիկոդիմոսի Աւետարանից և Եպիփան Կիպրացուց, հատկապես իր «Ի մեծի աւուր շաբաթու Թաղման Տեառն» ճառի մեջ։—Յհ. Կթ. իգ, իը. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21, 70. Ասող. Բ. բ. Օրբ. հա. Կիր. 43. Վրդ. խգ, խե. Միխ. սա. իթ (=իը). Սամ. անեց. 92, 94. Քհնպ. 272. Յհ. կթ. հյր. 276.—**Զաքարիայ**՝ Արծր. Գ. ժգ, ժգ, ժթ.—**Զաքարիաս**՝ Յհ. կթ. իէ. Վրդ. խգ.—սեռ. **Զաքարիայի**՝ Արծր. Գ. ժգ, իբ. Կիր. 45. Մաղ. Թղ. կէ.—սեռ. **Զաքարիայ**՝ Միխ. սա. իթ (=իը).—բց. ի **Զաքարիայէ**՝ Օրբ. լթ. Արծր. Գ. ժգ.—

դրծ. Զաքարիայի՝ *Օրբ. լզ։—Իր անունը հիշատակված է ժամանակակից մի արձանագրության մեջ՝ 567 թ. «ՅԺԶ թուականին Հայոց յիշխանութեան Աշոտոյ և ի տէրութեան Սմբատայ Հայոց սպարապետի Բագրատունւոյ և ի կաթուղիկոսութեան* Զաքարիայի» *(Արձ. Թալիշի, Շահխաթ. Բ. էջ 61, Այրարատ 144, Բանաս. 1903, էջ 26—27՝ երկու օրինակ, որոնց նույնության մտադիր չէ եղած հրատարակիչը)։—Զամբռ 71 ասում է, որ իբր թե ըստ ոմանց Զաքարիան քաղկեդոնական է եղել, ուստի չեն հաշվում կաթուղիկոսների շարքում։*

— 7. Զաքարիա *եպիսկոպոս Վաղարշակերտի, 1022 թ.—Այրարատ 523։*

— 8. Զաքարե, *հայրն է Վարդի, որ կալվածներ է նվիրել Ծախաքարի Ս. Յովհաննէս եկեղեցուն, 1061 թ.—Սիսական 154։*

— 9. Զաքարիա *աբեղա, գրիչ. Վանում օրինակեց Աւետարանը՝ 1111 թ.—Ձեռ. Տաշեան, Ա. 8 բ։*

— 10. Զաքարիա *Ա. իշխան, որդի Աւագ Սարգսի, որ Զաքարեանց-Երկայնաբազուկեան տոհմի նախահայրն է (ԺԱ դար). հայր Սարգիս մեծի՝ իշխանաց իշխանի (մ. 1184) և պապ Զաքարէ Բ ամիրսպասալարի և Իւանէ աթաբէկի.—Չքր. սարկ. Գ. 11 ա.—սեռ.* Զաքարեի՝ *Օրբ. կե.*—Զաքարիայի՝ *Կիր. 72. Չքր. սարկ. Գ. 12. Շողակաթ 74.*—Զաքարի՝ *Վրդ. ձբ.—սեռ.* Զաքարիայ՝ *Կիր. բ.—Հայապ. 447. Արձ. 1187 թ. Ազգագր. հանդ. Գ. 304, Է. 391։*

— 11. Զաքարե, *որդի Վահրամի, թոռն Զաքարէ Ա-ի և եղբօրորդի Սարգիս մեծի (մ. 1187). եղբայրն է Սարգիս, որդին Վահրամ Գագել (Շողակաթ 76)։ Զաքարէ և Սարգիս եղբայրները Վրաց ծառայության մեջ էին և նվաճեցին շատ տեղեր (ԺԲ դար).—Կիր. բ։*

— 12. Զաքարիա Բլու *(կամ Գլու), որդի Քարեմի, հայր Վահրամ իշխանի Գագայ, որ տիրեց Շամքորի (ԺԲ դար). հաջողությամբ պատերազմեց Թաթարների դեմ՝ Իւանէ աթաբեգի հետ միասին՝ Կոտմանի դաշտում (1214 թ).—սեռ.* Զաքարիայ՝ *Վրդ. ձգ.*—Զաքարեի՝ *Մաղաք. աբ. 6, 15։—Չամչ. Գ. 186։*

— 13. Զաքարիա *Բ մեծն, ամիրսպասալար Վրաց, որդի Սարգսի մեծի Աղբուղայ և թոռն Զաքարէի Ա. մայրն է Սահակադուխտ կամ Սանդուխտ՝ դուստր Քուրդ իշխանի։ Ամուսնացել էր Սասնոյ իշխանի աղջկա հետ, որի անունը չէ հիշատակված։ Որդին է Շահնշահ, եղբայրը Յովհաննէս=Իւանէ։ Լոռւի տէրն*

էր. Թամար թագուհին կցեց նաև Ռուսթու քաղաքը։ Միացած իր եղբոր՝ Իվանեի հետ գրավեց Շաքիի և Արցախի նահանգներից մինչև Ներքին Բասեն և Բարկուշատից մինչև Լոռի։ 1191 թվին գրավեց Շիրակը, 1196 թվին Անբերդը, 1199 թվին Անին՝ վերջ տալով Շեդդադյանների իշխանության, 1201 թվին Բջնին, 1203 թվին Դուինը, 1206 թվին Կարսը։ Հարկատու դարձրեց Կարնոյ սուլթանին, ապա արշավեց Վանի և Խլաթի վրա. զարկավ Շահի Արմէնին և պաշարեց Խլաթը։ Այստեղ Զաքարեի եղբայրը՝ Իվանէն իր անզգուշության ընկավ թշնամու ձեռքը։ Զաքարէն ստիպվեց՝ իր եղբորն ազատելու համար, հաշտվել Սուլթանի հետ՝ կնության տալով Իվանէի դուստր Թամթային։ Այսպես ազատվեց Խլաթը։ (Հաշտության պայմանների մասին արար պատմագիրների տված տեղեկությունները՝ տես Յովսէփեան, Խաղբակեանք 10)։ Այսպես 20 տարի կռվելով՝ Զաքարէն նվաճեց Հայաստանի մեծ մասը, որ խլեց Պարսիկներից և դրավ Վրաց անվանական իշխանության տակ։ Հայաստանը մահմեդական լծից ազատելուց հետո, իր վերջին արշավանքը ուղղեց Պարսկաստանի վրա, ուր նվաճեց Մարանդն ու Արդաբիլը։ Նշանավոր է հատկապես այս քաղաքի արշավանքը։ Արդաբիլի Սուլթանը հանկարծակի հարձակումով գրավել էր Անին և նույն իսկ եկեղեցիներում 12,000 հայ կոտորել։ Սրան ի վրեժ Զաքարէն արշավեց Արդաբիլ, սուլթանին, ինչպես և նրա կանանց ու զավակներին գերի բռնեց և մզկիթի մեջ 12,000 ընտրյալ մահմեդականներ՝ իշխաններ, մուղրիներ և կուրաններ սրի քաշեց ու նավթով այրեց։ Արդաբիլից վերադարձին՝ հիվանդացավ ու մեռավ 1214 թ։ Թաղվեց Սանահնի վանքում։ (NB. Զաքարիայի մահվան թվականը Շիրակ 175 դընում է 1214. բայց Ազգապ. 1587 դնում է 1212։ Այս վերջինը սակայն սխալ է, ըստ որում Խծկոնից մեծ արձանագրության մեջ դեռ կենդանի է Զաքարիան 1214 թվին. տես Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. էջ 32)։ Զաքարէի գրաված Հայաստանը ավելի մեծ էր քան Բագրատունեաց և Սիւնեաց թագավորությունները միասին։ Այդ երկիրը վրացական մի գավառ չէր, այլ մի պետություն, որի իշխողներն էին Զաքարէն և Իվանէն։ Ժամանակակիցները կոչում են նրանց «աշխարհակալ, թագաւոր», մինչև անգամ «տիեզերակալ» (Արձ. Այրարատ 340)։ Ավելի սովորական է «շահնշահ» տիտղոսը, որ է «թագաւորաց թագաւոր»։ Ինքը Զաքարիան կոչում է իրեն «ես Զաքարէ մանդատորթու խուցէս ամիր սպասալար հայոց և վրաց» (Արձ. Շիրակ 161)։

Հյուսիսային Հայաստանը լցված է երկու եղբայրների թողած, կամ նրանց անունով գրված բազմաթիվ արձանագրություններով՝ 1206, 1211, 1214, 1215 և այլ թվականներով (տես Այրարատ 62, 67, 112, 162, Գեղարքունիք 183, Շիրակ 161՝ Հառիճի մեծ արձանագրությունը, Շահխաթ. Բ. 370=Արցախ 366՝ Հաղարծինի մեծ արձանագրությունը են), որոնք պատմում են Զաքարէի և Իւանէի շինարարական գործունեությունը, նվիրաբերությունները են։ Երկու եղբայրների նկարը՝ մեծահասակ և փառաղէմ, իրար դիմաց կանգնած և ձեռք ձեռքի տված մնում է Հառիճում (օրինակը տես Շիրակ 160)։—Թեև Իւանէն վրացական դավանանքն էր ընդունել, բայց Զաքարէն մինչև մահը հավատարիմ մնաց իր եկեղեցուն. և թեև ուզեց մի քանի փոփոխություններ մտցնել տոների և ծեսերի մեջ, և այս առթիվ գումարեց Լոռիի և Անիի ժողովները («1208 թ»), բայց սրանք էլ ապարդյուն անցան։— Զաքարիա՝ Կիր. գ, ժբ. Մխ. այրիվ. 79. Զքր. սարկ. Գ. 3, 11, 12.—Զաքարէ՝ Օրբ. կբ, կդ, կե. Օրբ. ժմ. 22, 23. Կիր. 72, բ-դ, զ, ժբ, իը. Վրդ. ձբ, ձգ. Անանուն ժմ. 19. Մխ. այրիվ. 80. Սամ. անեց. շար. 147, 149. Զքր. սարկ. Գ. 11, 12.--սեռ. Զաքարիայ՝ Կիր. բ, գ.—Զաքարեայ՝ Զքր. սարկ. Գ. 11.—Զաքարի՝ Վրդ. ձբ. (հրատ. էմինի՝ Զաքարէի).—Զաքարէի՝ Օրբ.՝ կբ, կե. Օրբ. ժմ. 25. Կիր. 56, գ, զ, ժա, ժդ, ժե, ի, իէ.— Զաքարիայի՝ Օրբ. կը. Կիր. 51, 56. Մխիթ. աս. իը (=իէ). Օրբ. հկճա. ժբ.—սեռ. Զաքարէ! Կիր. լգ, լը, կբ.—բց. Զաքարէէ՝ Օրբ. կդ. Զքր. սարկ. Գ. 12.—ZAPh 2, 45. Շողակաթ 74. Ուղեգրութ. Ա. 19. Վրաց տղբ. Բ. 11, 12, 14, 16—24, 34, 36, 43, 44, 51, Սիսուան 507—8։ — Զաքարիայի մասին Վրաց պատմիչը հետևյալ գովասանականն է տալիս. «Ապա առաջ եկավ մեծ տրտմություն, քանի որ վախճանվեց Զաքարիա ամիրսպասալարը, Սարգիս ամիրսպասալարի որդին, որ հույժ մեծարեցավ և լի էր ամենայն բարիքներով, հաղթող, քաջ և հույժ մաքառող... Սրան ողբացին թագավորն և Վրաստանի ամեն մի մարդ, քանի որ այս ժամանակներին իշխանների միջև նրանից ավելի քաջարի ոչ ոք չէր երևացել, ինչպես նաև տոհմական ծագումով։ Նա Արտաքսէս Երկայնաբազուկի տոհմից էր և դավանությամբ հայ էր, և օժտված էր աստվածային և մարդկային բոլոր բարիքներով» (Վրաց տղբ. Բ. 24)։—Այս գովասանական խոսքերի հետ հմմտ. Ալիշանի էլ խորհրդածությունը՝ Սիսուան 507 բ. «Քաջերից քաջն էր Զաքարիան. թեև տեղով հեռու և Լևոն Բ-ի իշխանության սահ-

ժաններից դուրս, բայց համբավով կցորդակից և մտերիմ։ Արժանավոր էին երկուսն էլ միասին լինելու։ Եթե բախտը տված լիներ, որ երկուսն էլ միանգամայն, մի ընդարձակ ասպարեզում, մի նպատակով գործեին, այն ժամանակ Հայաստանը կհանգստանար «հանուրց հրաշափառագոյն»։ Զաքարիան Վրաց Թամար գերահռչակ և գեղապանծ թագուհու առաջին պաշտոնյան էր. սուսեր և վահան ամբողջ Կովկասի և վերին Հայաստանի։ Գրեթե միևնույն ժամանակ, այս երկու անզուգական անձինքը՝ Լևոն և Զաքարե, հանդես էին եկել իրենց մեծամեծ գործերով՝ հայկական աշխարհի թատերաբեմի երկու ծայրերում.—Լևոնը նոր թագավորություն և գրեթե նոր աշխարհ հարդարելով Հայոց համար, իսկ Զաքարեն՝ Հայոց հին աշխարհը, որ Արաբներից և Պարսիկներից ոտնակոխ էր եղել դարերից ի վեր, իր անվկանդ թրով փոյթ ընդ փոյթ ազատելով, և բռնացող ամբարտավանների ջլերը ջախջախելով, և կարոտյալների հարկադիրներին հարկատու դարձնելով։ Քսան տարի անդուլ պատերազմեց նա դաշտում և պարիսպների տակ և միշտ հաղթական, Երասխի ամբողջ ընդարձակ և հոյակուռ գետահովիտը ազատեց այլազգի լծից, և ավելի հեռու՝ արևմուտք անցնելով, նեղեց և հարկի տակ դրեց Կարնոյ Սուլթանին, ավերեց Պարսկաստանը մինչև Արտավիլ...»։

— 14. ზაქარია Գագելի, որդի Վարդանի Դադեանի, տեառն Կայենի և Օրբեթի. հավատարիմ մնաց Վրաց Թամար թագուհուն (1184—1213), մինչ իր եղբայրը՝ Իւանէն մասնակցում էր թագուհու դեմ ապստամբության։ Թամարը վարձատրեց նրան՝ շնորհելով Գագը մինչև Գանձակ.—Վրաց աղբ. Բ. 12, 13. 24, 34, և 55:

— 15. ზაქარე, որ և Նասրադօլա, որդի Վախթանկ Բ Տօնկիկի՝ իշխանին Խաչենոյ (մ. 1214), եղբայր Հասան Ջալալ Դօլայի և Իւանէի, քեռորդի ზაქარეი և Իւանէի։ Ունի անթվական մի արձանագրություն (տպ. Բանասէր 1901, 136), որից երևում է որ կինն է Արզուխաթուն։ Իւանէ Աթաբէկի հետ կռվի գնացին Գանձակի հոնների դեմ, բայց հաղթվեցին և երեք եղբայրներով գերի ընկան։ Երկրորդ անգամ Իվանէն եկավ նրանց վրա, հաղթեց և երեքին էլ ազատեց (1224 թ).—ზაქარე՝ Կիր. իբ. Վրդ. ձգ.—ნასრადოლა՝ Վրդ. ձգ. (ըստ հրատ. Էմինի՝ ნასბატალე)։—Զամչ. Գ. 185, 202։—Գանձասարում կա մի մեծ արձանագրություն 1240 թվից, որ թողել է Հասան Ջալալ Դօլան

և ուր հիշատակում է նաև Զաքարէ եղբորը (Շահխաթ. Բ. 371—2, Արցախ 173)։

— 16. Զաքարէ, նորոգել է Գեղարդի Ս. Աստուածածին եկեղեցին և մի կալված է նվիրել նրան՝ իր կնոջ Մամքանի հետ, 1257 թ.—Արձ. Այրարատ 343, Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 103։

— 17. Զաքարէ Գ. ամիրսպասալար, երեց որդի Շահնշահի, թոռն Զաքարէ ամիրսպասալարի. կինն է Ուխտեաց տեր Սարգսի աղջիկը, որի անունը ավանդված չէ (Շիրակ 175). Թաթարների բանակումն էր Բաղդադը պաշարելու ժամանակ (1258). Թաթարների Արղուն անուն հարկահանը չարախոսեց նրա մասին Հուլաղուի առաջ, իբր թե միացել է թշնամիների հետ և գրգռում է Վրացիներին՝ ապստամբվելու Թաթարների դեմ։ Հուլաղուն առանց քննելու՝ հրամայեց սպանել. Արղունը կանչեց նրան և տեղն ու տեղը հոշոտեց («1261 թ»)։—Կիր. ծր, կա, կր. Օրբ. ժմ. 26. Անանուն ժմ. 23. Մխ. այրիվ. 83. Առաք. պատմ. 482.—սեռ. Զաքարէ! Կիր. խե. Վրդ. դդ.--Զաքարէի՝ Կիր. կր.—բց. ի Զաքարէէ՝ Կիր. խե.—Վրաց պղբ. Բ. 59. տես և Ուղեգրութ. Ա. 19։

— 18. Զաքարիա հեքիմ (բժիշկ), որի որդին՝ Բլ-Հասան բժիշկ նվերներ է արել Հոռոմոսի վանքին, 1273 թ.—Արձ. Շիրակ 22 բ։

— 19. Զաքարիա, վաղամեռիկ որդի Խաչիկ քահանայի՝ ուսուցչի Յովհաննէս քահանայի, որ օրինակեց մի Աւետարան, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 335։

— 20. Զաքարիա գրիչ. գրեց, ծաղկեց և կազմեց մի Աւետարան, Թումայ և Հայրապետ քահանաների համար, 1304 թ.—Ջեռ. Վասպ. 143։

— 21. Զաքարիա Գանլաւունի, «հեզուպ և առաջնորդ տանս մեծի աթապակ ամիրսպասալար Շահնշահի Բ, քաջ և ընտիր պատերազմող», հիշված 1313 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 15։

— 22. Զաքարիա, առաջնորդ Արճէշի, 1314 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 660։

— 23. Տէր Զաքարիա, միաբանեց 1311 թվին գրված մի Աւետարանի՝ 1324 թվին.—Ջեռ. Թաւր. 73 բ։

— 24. Զաքարիա, պարոն Կոտայքի, որդի Սահիպ Դիւանի (թաթար), որ ամուսնացած էր Աւագի դուստր Խոշաքի հետ. թոռն է Աւագի և թոռնորդին է Իւանէ աթաբէգի. հիշված է

1297—1325 թվերին. ներել է Բջնիի զանազան հարկերը.—Արձ. Այրարատ 273 բ, 292, Շողակաթ Ա. 24, 25, Շիրակ 175, Հայապ. էջ 447։

— 25. Զաքարիա, որդի Անանուրի, որ նրա և իր կնոջ Ղուտալշաքի հիշատակին շինել է Աշտարակի Ս. Աստվածածնին եկեղեցու դուռն ու պարիսպը, և Ս. Մարիանէին էլ հողեր է նվիրել 1325 և 1326 թվերին։—Արձ. Շահխաթ. Բ. 85, 88, Այրարատ 186—7։

— 26. Զաքարիա (սեռ. Զաքարէ), հայր Խաթունի, որի հիշատակին մի պղնձե խաչ է շինել տվել՝ 1329 թ.—Շահազիզ, Ն. Նախիջևանի Ս. Խաչ վանքը, էջ 7։

— 27. Զաքարիա Ծործորեցի, որդի Մանուէլի, եպիսկոպոս Արտազու և առաջնորդ Ս. Թադէի վանաց. հաջորդեց Յովսէփ Արտազեցուն. նորոգեց վանքը 1320 և 1329 թվերին. օգնեց Յովհաննէս Երզնկացուն (Ծործորեցի) թարգմանելու Թովմա Աքուինացու «Յաղագս տնօրինութեան Քրիստոսի» (1325 թ). ունի Յիշատակարան յաջորդաց նոյն վանքի (1330 թ. տես Արար. 1868, 104 ա), Պատմութիւն ժողովոց, Պատմութիւն ժողովոյն Կարնոյ, Թուղթ առ Յովհաննէս Օրբելեան Սիւնեցի (որ տես Զամչ. Գ. 306, Ձեռ. Վիեննա. Բ. 694).—Զաքարէ՝ Սամ. անեց. շար. 157.—Զաքարիա՝ Զբր. եպս. 281.—Հացունի, Ճաշեր 489, Տաշեան, Ցուց. 114, 179, 681, 777 և 1087. Զարբ. Թրգմ. 275. Հայապ. 115, 546. Արշալոյս քրիստ. 21. Ձեռ. Սեան. 21 ա (հիշատակում է 1315 թվին), Ձեռ. Վիեննա. Ա. 126 (հիշատակում է 1332 թ)։—Իր արձանագրությունը 1329 թվից՝ մի հին ձեռագրից հանելով հրատարակեց Շահխաթ. Բ, էջ 350, նույնը ունի Փրանգեան, Ատրպատական, էջ 28, իսկ լավագույնն է Խաչիկ վրդ. Դադեանի հրատարակածը՝ Արար. 1898, էջ 89։

— 28. Զաքար Խանակահցի, ազգական Ներսէս վրդ. Սասնեցու. նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. 546։

— 29. Զաքարիա Ա. Սեֆեդինեան, կաթողիկոս Աղթամարի «1296—1336 թ». Սեֆեդին Ա. արքայունի որդին և Ստեփաննոս Գ Տղայ կաթողիկոսի կրտսեր եղբայրն ու հաջորդը։ Երբ Ստեփաննոսը մեռավ (1296?), հայրը Սեֆեդին արդեն մեռած էր. մեծացավ իր եղբոր Ամիր Գուրգէնի և իր հորեղբայրներ՝ Գուրջիբէկի և Նուրադինի խնամակալության տակ։ Սիւնեաց մետրապոլիտ Ստեփաննոս Օրբելեանի բարեկամն ու թղթակիցն էր. նրա առաջարկությամբ՝ օրինակել տվեց Թովմա Արծրունու

Պատմությունը (1303)։—1318 թվին, երբ Ղարբանդաղուլ խանը մեծամեծ հարկեր դրավ թե՛ կրոնավորների և թե աշխարհականների վրա, Զաքարիա կաթողիկոսը գնաց Բաղդադ և մի տարի մնալով այնտեղ, հազիվ կարողացավ գոնե կրոնավորների վրայից վերացնել հարկը։—Աբու-Սայիդ խանը 1335 թվին մեռնելով՝ նստավ Արփա խանը։ Բայց որովհետև սա քրիստոնյա էր, Բաղդադից եկավ Աբու-Սայիդի մորեղբայր Ալի փաշա նույնը, Արփա խանին սպանեց՝ նրա իշխանության 6-րդ ամսում և նրա տեղ գահի վրա դրեց Մուսի խանին (1336)։ Բայց Մուսի խանի իշխանությունը անվանական էր և Ալի փաշան էր, որ մեկ և կես տարի ինքնագլուխ վարեց իշխանությունը։ Հակառակ լինելով քրիստոնեության, հրամայեց քանդել նրանց եկեղեցիները. և Մուսուլից մինչև Խլաթ և Սալմաստ՝ շատ եկեղեցիներ քանդվեցին, մինչև որ Զաքարիա կաթողիկոսը գնաց սույն Ալի փաշայի մոտ և չար հրամանը վերացրեց՝ 1336 թ։ (Սամ. անեց. շար. 159, Մկ. մեծոփ. 28)։ Զաքարիան զբաղվել է նաև շինարարությամբ, շինել է Լիմ կղզու վրա Ս. Գէորգ եկեղեցին, Արճէշի Մատղավանքը, Աղթամարի մեջ մի ձմեռնային և մի ամառնային ժամատուն, որոնց քարերը Խլաթից է բերել տվել։ Գրել է տվել մի Ցայսմավուրք և մի Սարգիս-գիրք։ Նաև օրենք է դրել, որ Աղթամարի թեմում, եթե մի կրոնավոր կամ մելիք կամ ռէս (գյուղապետ) մեռնի, նրա գրքերը և հանդերձը Աղթամարի վանքին բաժին լինին։—Ուղ. Զաքարիայ և Զաքարիաս, սեռ. Զաքարիայի, բց. Զաքարիայէ ձևերով՝ Արծր. յաւել.—Նաև Թովմա Արծրունու ձեռագրում (հրատ. Պատկ. էջ 76 ծան. և էջ 319՝ կա սեռ. Զաքարիայի, էջ 319՝ բց. Զաքարիայէ.—Հաւաք. 39—41, 43, 44, 46—47, 60 (ըստ Հաւաքարանի՝ Զաքարիան հաջորդեց Եղիշէի և նստավ 1300—1334 թ), Ակինեան՝ Գաւազանագիրք 45—58. Զարբ. Թրգմ. 196, 413.—հիշված է 1303 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 45 բ), 1309 թ. (անդ Բ. 53 բ և Ձեռ. Ծեր.=ՀԱ 1923, 73), 1320 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 30 ա), Manus. brit. mus. 59 բ. Նոտարք 175։

— 30. Զաքարիա կրոնավոր, ծաղկեց այն Աւետարանը, որ Կարապետ կրոնավորը գրեց մահտեսի Խնտուլի համար, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 31. Զաքարէ, որդի Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբեւր գյուղում, իր հորից՝ Հեթում քահանայից ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

— 32. Զաքարիա, *առաջնորդ Բաղենեաց վանքի, 1357 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 51 բ։*

— 33. Զաքարիա, *ծաղկող. նկարազարդեց այն Աւետարանը՝ որ գրեց Կարապետ կրօնաւորը՝ Թանգխաթունի համար, 1358 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 563)։*

— 34. Զաքարէ Դ *սպասալար երկայնաբազուկ (մխարգրձել), որդի Շահնշահ Բ ամիրսպասալարի (մ. 1320), մայրն է Խուանդզէ՝ դուստր Շամշադին Սահիպ-Դիւանի, կինն է Վանանէ՝ դուստր Աթաբէկ Սադունի։ Հիշված է նախ 1310 թվին (Արձ. Շիրակ 79), հայրը՝ Շահնշահ Բ՝ իբրև տէր Անւոյ մեռավ 1320 թ. և նրան հաջորդեց ինքը Զաքարէ Դ. սրան էլ հաջորդել է Շահնշահ Գ 1358 թ. (Շիրակ 101, 62, 74)։—Հայապ. 447։*

— 35. Զաքարէ *աղա, եղբայր Ավրամի՝ մեծ հօր Յակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն Ընծայութեան, շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։*

— 36. Զաքարա *աբեղա, որդի Թադէոսի. գրիչ. Անապատիկ գյուղում, Երեմիա կրօնաւորի համար օրինակել է Մեկնութիւն Պատարագի, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։*

— 37. Զաքարիա, *մերձավոր Վարդանի, որ գնեց մի Աւետարան 1374 թ.—Ձեռ. Վասպ. 144։*

— 38. Զաքարիա, *առաջնորդ Գողթն գավառի, 1375 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 179։*

— 39. Զաքարիա *եպիսկոպոս. ականատես եղավ Սիս քաղաքի առման (1375 թ)։ Իր հիշատակարանը այս առթիվ՝ տես Տաշեան, Ցուց. 906, նաև* Karst, *Դատաստ. էջ* III b, *Զարբ. Թրգմ. 308, Հայապ. 542։*

— 40. Զաքարիա, *եղբայր Մանուէլ եպիսկոպոսի Բջնոյ, 1375 թ.—Տաշեան, Ցուց. 259։*

— 41. Զաքար, *Թիլի Թև կինն! է մուղասի Հասանի, որ Մերտինում գնեց և ազատեց գերի ընկած մի Ճառընտիր, 1377 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 65։*

— 42. Զաքարիա, *ազգական Կարապետ կրօնաւորի, որ Սղկայու վանքում գրել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—այս թվին Զաքարիան արդեն մեռած էր.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։*

— 43. Զաքարիա, *հայր Կարապետ կրօնաւորի, որ օրինակել տվեց Հին Կտակարանը, Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 848—851)։*

— 44. **Զաքարէ** *եպիսկոպոս, որդի Գէորգ քահանայի և հան-գուցյալ եղբայր Սահակ քահանայի, որ ստացավ Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի Աւետարանը, 1389 թ.—Ձեռ. Վե-նետ. Ա. 652։*

— 45. **Զաքարիա**, *որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Կա-րապետ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1389 թ. Զաքարիան օգնում էր գրչության և ծաղկում ձեռագիրը.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 765)։*

— 46. **Զաքարիա Բ.** *կաթողիկոս Աղթամարի. հավանաբար Դավիթ Բ կաթողիկոսի եղբորորդին էր. ըստ Հաւաք. 40 և Ազ-գապատում 1932՝ հաջորդել է Ներսէս Փոլատին՝ 1378 թ. իսկ ըստ Ակինեան, Գաւազանագիրք 67—70 և Ազգապատումի վեր-ջում դրված ցանկի՝ հաջորդել է Դավիթ Բ-ին 1369 թ։ (Հաւաք. 61 ցանկում դրված է հաջորդ Թադէոս Բ-ի և նախորդ Եղիշէ Գ-ի)։ Լենկթիմուրի արշավանքին, Վանի կոտորածի ժամանակ, գերի ընկավ Լենկթիմուրի ձեռքը, բայց կարողացավ ազատվել «1387 թ»։ Ոստան քաղաքի դատավոր՝ պարսիկ մոլլա Ջաֆարը չար մտադրությամբ եկավ Զաքարիայի մոտ և իր մախաղը ու-զեց ավանդ թողնել։ Զաքարիան նրա միտքը հասկացավ և խընդ-րեց որ ուրիշ տեղ տանի։ Մոլլան բարկացավ և հայհոյելով՝ վրան հարձակվեց ու սկսեց ապտակել։ Ժողովուրդ հավաքվեց։ Մոլլան այն ժամանակ իր շորերը պատառոտեց, միրուսը փետեց և այնպես արյունաշաղախ շտապեց Աղթամարից Ոստան, գանգատ-վելու ամիրա Ազզինի մոտ, որ նույն միջոցին բաղանիսումն էր։ Կաթողիկոսն էլ դիմեց նրա մոտ։ Ամիրան առաջարկեց ուրա-նալ հավատքը և մահմեդական դառնալով՝ ազատվել ամբաստա-նությունից։ Կաթողիկոսը մերժեց. ամբոխը վրան հարձակվեց և հենց բաղանիսում սուրը նրա կուշտը խրեցին։ Հետո բաղանի-սից դուրս քաշեցին, քարկոծեցին և մերկացրած ու վզին չվան գցած՝ փողոցներով քաշ էին տալիս։ Կաթողիկոսը աղոթելով նահատակվեց «1393 թվի հունիսի 25 դշ. օրը»։ Իր վկայաբանու-թյունը մտել է Յայսմաւուրքի մեջ։ Կա նաև մի գանձ Գրիգորի անունով (որ ըստ Ակինեանի Խլաթեցին է. նա է գրել նաև նույն վկայաբանությունը). ունի նաև մի ողբ, հրատ. Հալայեանց՝ Ջուախք, էջ 306—308։—Յայսմ. յունիս 26, Մեծոփ. 71. Սամ. անեց. շար. 172, Նոր վկ. էջ 170—183, Առաք. պատմ. 485, Ակին-եան, Գաւազանագիրք 67—70, Հաւաք. 3, 40, 82, 83։*

— 47. **Զաքարիա**, *հայր Յովհաննէս Մշեցու, որ օրինակեց*

Աւետարանը՝ Ղազար երեցի համար, 1402 թ.—Manus. brit. mus. 39 ա։

— 48. Զաքարիա կրոնավոր, տվեց Ոսկեփորիկի իր օրինակը Աստուածատուր գրչին՝ արտագրելու համար, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 49. Զաքարիա կրոնավոր, կոչված է փիլիսոփա, այն է «հրաժիշտ». նշանավոր գրիչ, որ ծաղկել է Աղթամարում։ Գրել է մի Աւետարան՝ Թադէոս կրոնավորի համար, 1393 թ. (Նոտարք 1=Ձեռ. Վասպ. 228—9), մի երկրորդ Աւետարան Դանիէլ տանուտերի համար 1399 թ. (Ձեռ. Վասպ. 235), ծաղկել է Կարապետ քահանայի գրած մի Աւետարանը՝ 1392 թ. (Ձեռ. Վասպ. 227), և իր եղբորորդի և աշակերտ Դանիէլ գրչի գրած Աւետարանը՝ 1403 թ. (Նոտարք 20)։ Այս Զաքարիայի գերդաստանը հիշատակված է Ձեռ. Վասպ. 229 և 235՝ այսպես. հայրն է Մկրտիչ քահանա, մայրը՝ Թանկ խաթուն, եղբայրներն են՝ Կարապետ քահանա, Յովհաննէս և Խաչիկ, քույրը՝ Խէր խաթուն (որ 1399 թվին արդեն մեռած էր), ուսուցիչն է Կարապետ կրոնավոր, որ նույնպես մեռած էր հիշյալ թվին։ Կարծեմ թե նույն Խաչիկն է, որ 1402 թվին սարկավագ է ձեռնադրվել և կոչվել Ներսէս (Ձեռ. Վասպ. 289)։ Դարձյալ հիշվում է Զաքարայ փիլիսոփան իբրև ուսուցիչ Դանիէլ սարկավագի, որ օրինակեց Մաշտոցը՝ Կիրակոս քահանայի համար, Աղթամար 1404 թ. (Թորոս աղբ. Բ. 277), 1421 թ. (Նոտարք 67), 1433 թ. (Ձեռ. Վասպ. 366), 1436, թ. (անդ 375=Նոտարք 107)։ 1441 թ. (Ձեռ. Վասպ. 383=Նոտարք 127)։—Երևի նույն անձն է Զաքարիա փիլիսոփա վարդապետը, որ հիմնել է Աղթամարի Ս. Խաչ վանքը, Դաւիթ կաթուղիկոսի (1393—1423) օրով։—Աղգապ. 2014։

— 50. Զաքարբեկ, Մեծոփայ վանքի ճարտարապետներից մեկն է. մյուսներն են՝ Ասոմ, Սիրուն, Դաւիթ, Տիրատուր, Մկրտիչ, Յովհաննէս, Յովսէփ, Ղազար, մյուս Ասոմ, Մարտիրոս և Կիրակոս։ Սրանց բոլորի գլխավորն էր Ֆարաճ, որ ազգով հույն էր՝ Լէնկթիմուրի տարած գերիներից մեկը (ըստ Մեծոփ. 58)։ Շինությունը սկսվեց 1402 թ. և վերջացավ 7 տարուց՝ 1409 թ.—Մեծոփ. 58, Նոտարք 30 (վերջինս արտագրել է եկեղեցու պատի մեծ արձանագրությունից). Աղգապ. 2001։

— 51. Զաքարիա եպիսկոպոս, առաջնորդ Ագդէի վանից, 1410 թ.—Նոտարք 39, Կարապետ եպս.՝ Դոփեանք 185։

— 52. Զաքարայ, որդի Համազասպի և եղբայր Վարդանէս

աբեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում օրինակեց Գանձարանը՝ 1412 թ.—Manus. brit. mus. 120 բ։

— 53՝ Զաքարիա քահանա, պաշտոնակից Սարգիս եպիսկոպոսի, որ օրինակեց Աւետարանը՝ 1416 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։

— 54. Զաքարայ, որդի Թումա գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ Աղթամարում, 1418 թ. հիշված է իր երկու եղբայրների՝ Կարապետ և Վարդան կրոնավորի (?) հետ (Ձեռ. Վասպ. 311)։ 15 տարի հետո (1433 թ.) հայրը հիշում է սրանց՝ ասելով «զհանգուցեալ ողայքն մեր», առանց անունները տալու (Ձեռ. Վասպ. էջ 366)։

— 55. Զաքարիա քահանա, եղբայր Մամթութի՝ կնոջ Եղբայրեկի. այս Մամթութը Եղբայրեկ գրչին գրել ավեց մի Աւետարան և նվիրեց իր երկու քահանա եղբայրներին՝ Զաքարին և Կոստանդին՝ 1420 թ։—Ձեռ. Վասպ. 320։

— 56. Զաքար, մայր! Աստուածատուր երեցի, որին օգնեց կազմելու համար քայքայված մի Հաւաքածու, Շաթխոյ գավառի Ծղկունք գյուղում, 1420 թ.—Տաշեան. Ցուց. 666։

— 57. Զաքարիէ, տանուտեր Արծկէի, հավատքը չուրանալով՝ նահատակվեց Թաթարներից, վիզը պարան անցկացրած խեղդելով՝ 1420 թ.—Մեծոփ. 110 (ուր սակայն թվականը անորոշ է), Զամչ. Գ. 441, Նոր վկ. 229, Ազգապ. 2055։

— 58. Զաքարայ կրոնավոր, որ էր քեռի՝ ծաղկող և կազմարար Մելքիսեթ քահանայի ի Սանահին, 1421 թ.—Տաշեան. Ցուց. էջ 873։

— 59. Զաքար քահանա, մերձավոր Ստեփանոս կրոնավորի, որ Վանում՝ Կարապետ երեցին գրել ավեց մի Աւետարան, 1421 թ. բայց դեռ գիրքը չվերջացած՝ մեռավ նույն թվին։—Ձեռ. Վասպ. 341 (տպված է այնպես, որ Զաքար քահանան դառնում է Ստեփաննոսի հայրը. մինչդեռ Ստեփաննոսի հայրն է Թումայ)։

— 60. Զաքարէ (հոգով Զաքարէն), տանուտեր Բերկրիի. հիշված է մյուս տանուտերների (Շիրինշահ, Պարոնշահ) և իր որդիների հետ (Հազարբէկ, Ֆռանգ, Ստոմ, Յովանէս) 1422 թ.—Ձեռ. Վասպ. 350։

— 61. Զաքարիա անունով հիշվում են երկու կաթուղիկոս, որոնք իրար են հաջորդել նախ քան 1427 թ. երբ գրված է այն Յայսմաւուրքը, որ գրել է Սարգիս եպիսկոպոսը Կոթի Փորավանքում և որ հիշում է նրանց ուրիշ կաթուղիկոսների հետ։ Սրանցից առաջինը Զաքարիա Ա. Ձագեցին է («855—876 թ»),

որի հաջորդն է Գէորգ Բ Գառնեցի։ Մինչև 1427 թիվը ուրիշ Զաքարիա չկա և չգիտեմ թե ում է ակնարկում Սարգիս գրիչը (Նոտարք 85)։

— 62. **Զաքարիա** որդի Աղիղբէգի Եղիվարդեցւոյ և Թոռ Գամրիկէլի. 1925 թվին գնեց Մուղրի գյուղը և նվիրեց Յովհաննավանքին. հիշված է նաև 1428 թ.—Այրարատ 197, 172 ա, Հայկապ. 569. Զքր. պատմ. Գ. 21. Նոտարք 77։

— 63. **Զաքարիա** աբեղա Տեղերցի. սովի պատճառով փախավ Այրարատեան գավառից և ապաստանեց Թովմա Մեծոփեցու մոտ՝ 1431 թ.—Այրարատ 147, Մեծոփ. 94։

— 64. **Զաքարիա** վարդապետ, աշակերտ Թովմա Մեծոփեցու. իր աշակերտակից Մկրտիչ և Յովհաննէս վարդապետների հետ միասին, Մեծոփում գրեցին մի ժամագիրք, 1427—1432 թ.—Ձեռ. Մխիթ. 19—20. Գաթըրճեան՝ Պարգմ. 86։

— 65. **Զաքար** Կաֆայեցի, որի եղբայրը Յովհաննէս աբեղա, վերաբնակվելով Մարաշ. նրա հիշատակին արտագրել է մի Պատարագամատոյց, 1434 թ.—ՀԱ 1894, էջ 51 ա։

— 66. **Զաքարայ** սարկավագ, որդի Դանիէլ քահանայի, որ օրինակեց մի Աւետարան՝ Աղթամարում, 1436 թ. այս թվին արդեն մեռել էր սույն Զաքարան.—Ձեռ. Վասպ. 376, 383։

— 67. **Զաքարիա** առաջնորդ Հաղբատի վանից. հիշված է նախ 1417 թվին (Նոտարք 52), ապա 1437 թ. (Manus. brit. mus. 96 բ և Նոտարք 112) և վերջապես 1438 թ. (Հայկապ. 558 և Նոտարք 115), որ անում է 21 տարի։ Վերջին անգամ կրում է արքեպիսկոպոսական տիտղոս։

— 68. **Զաքարէ** եպիսկոպոս Նորավանից, անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։

— 69. **Զաքարէ** եպիսկոպոս սուրբ ուխտին Առաքելոց. թըղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։

— 70. **Զաքարէ** կրօնաւոր ի յԱստուածածնայ.—Դրնդ. 311.—Նոյն է ընդ Զաքարէ վրդ. Վարագայ № 77.—Մեծոփ. յիշ. բ։

— 71. **Զաքարա**, որդի Դանիէլ քահանայի, որ օրինակեց Աւետարանը՝ Աղթամար, 1441 թ. Զաքարան օգնում էր նրան թուղթ կոկելով։—Ձեռ. Վասպ. 383։

— 72. **Զաքարիա** արքեպիսկոպոս Վանայ.—հիշված է Մեծոփ. 36 (ըստ Տէր Զաքարիայէ ձեռով). գտնվել է Վանում, Լենկթիմուրի արշավանքի ժամանակ (1387 թ). գերի է ընկել Պօղոս վարդապետի հետ Լենկթիմուրի ձեռքը. բայց բաժնի ընկ-

նելով Զաղաթայ մի իշխանի, սրա բարեսրտությամբ ազատվել են երկուսն էլ։ Պատմել են Թովմա Մեծոփեցուն Վանի կոտորածի սարսափելի պատմությունը։ Թովման կոչում է «ի սուրբ հօրէն՝ որբաղան արքեպիսկոպոսէն Տէր Զաքարիայէ»։ Կարելի է կարծել որ Զաքարիա Բ նահատակ կաթուղիկոսն է։ Բայց ինչու Թովման չի կոչում «կաթուղիկոս», մանավանդ «նահատակ կաթուղիկոս»։ Հարցը ավելի բարդանում է նրանով, որ Զամչ. Գ. 425 մեջ բերելով Մեծոփեցու հիշյալ կոչումը բառացի, արքեպիսկոպոսին կոչում է Զաքէոս և ոչ թե Զաքարիա։ Միևնույն ժամանակ ունինք Զաքէոս եպիսկոպոս Արճէշի (№ 4) և հետևաբար Զամչեանի ընթերցվածը արդյոք ավելի ստույգ չէ՞։

— 73. Զաքարէ, որդի Վարդազատի, ռէս Ցիննենից գյուղի (Շատախ), եղբայր Թումայի, որ նույնպես ռէս էր նույն գյուղի, 1451 թ.—Նոտարք 168։

— 74. Զաքարիա, որդի Մահտեսի Ստեփաննոսի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1457 թ.—Այս թվից քիչ առաջ «սուտ քրիստոնեայ ընկերն իւր (Զաքարիայի) խաբեաց զնա՝ ասելով թէ գնանք գինի ծախենք. և ածեալ զնա ի տուն, յարձակեցաւ ի վերայ նորա և սպան զնա՝ երկրորդ Կայէնն, որ եսպան զեղբայրն իւր զԱբէլ»։—Ձեռ. Թաւր. 103 բ։

— 75. Զաքարիա աբեղա, միաբան և ուսուցիչ Երուսաղէմի Ս. Յակոբի վանքում, 1457 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 166 ա։

— 76. Զաքար, տանուտեր Եղեգիս գյուղի, օգնեց նյութապես և բարոյապես Յովհաննէս քահանային՝ գրելու համար Աւետարանը Սորավանք գյուղում, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 429։

— 77. Զաքարիա վարդապետ Վարագայ վանից. անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ»։ Իբրև վանահայր հիշվում է դեռ 1446, 1452, 1454 և 145՝ թվերին.—Մեծոփ. յիշ. ա. Թորոսալբ. Բ. 479. Նոտարք 122, 154, 169, 175—6, 188։

— 78. Զաքար (սեռ. Զաքարուն), հայր խոջա Աբդլազիզի, որ Ոստան քաղաքի տանուտերն էր և ազատեց մի ճաշոց՝ 1459 թ.—Նոտարք 194։

— 79. Զաքարիա, գրիչ. օրինակեց մի Աւետարան՝ Հերմոնի վանքում, 1460 թ.—Ձեռ. Կարին. 17, Նոտարք 195, Սմբատեանց՝ Երնջակ 120, 176։

— 80. Զաքարիա քահանա, գրիչ. Տիւրիկում օրինակեց Աւետարանը՝ Ներսէս եպիսկոպոսի համար, 1462 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 51։

— 81. Զաքարիա Գ կաթողիկոս Աղթամարի «1434—1464 թ». մելիք կամ ամիր Ստեփաննոսի որդին էր և Դավիթ Գ («1393—1433 թ») կաթողիկոսի եղբորորդին։ Ժամանակակիցները համարում էին Գագիկ Արծրունի թագավորի ցեղից (տես Նոտարք 208)։ Դավիթ Գ իր կենդանության ժամանակ արդեն նրան աթոռակից էր ձեռնադրել և իբրև ապագա հաջորդ էր նըշանակել։ Դրա համար էլ 1419 թվին իր անունը հիշված է Դավիթ կաթողիկոսի հետ (Նոտարք 59) և դեռ ավելի շուտ 1414 թվին՝ առանձին, հայրապետ տիտղոսով (Ձեռ. Վասպ. 249)։ Աղթամարի նշանավոր կաթողիկոսներից մեկն է, որ և այլազգիների աչքում ազդեցիկ և մեծարգի էր։ Բարեկամություն էր հաստատել Ղարա-Յուսուֆի որդի Ջիհանշահի հետ և նրա միջոցով կարողացավ ժողովուրդին մեծ բարիքներ անել։ 1459 թվին, երբ Ղլիճ-Ասլան ասպատակում էր Վասպուրականը և սպառնում էր նաև Աղթամարին, անձամբ գնաց Խոյ՝ Ջիհանշահի մոտ և նրա օգնությունը խնդրեց։ Ջիհանշահը իր բանակով արշավեց Ղլիճ-Ասլանի վրա և երկիրը ազատեց։ Կաթողիկոսական աթոռի փոխադրության ժամանակ (1441), օգնեց ինքն էլ, հուսալով որ Ամենայն Հայոց կաթողիկոս կընտրվի։ Բայց երբ ընտրվեց Կիրակոս Վիրապեցին և հետո էլ Գրիգոր Մակուեցին, իր փառասիրության մեջ վիրավորված, գնաց կողմնակի միջոցի։ Երբ որ Ջիհանշահը նվաճեց Իրակ, Հրէ (Թեհրան) և Խորասան գավառները և հաղթական մուտքն էր կատարում Թավրիզ (1460), Զաքարիան մեծ ընծաներով գնաց շնորհավորելու Փաթշահին և մեծ ընդունելություն գտավ։ Այս միջոցին արեց իր առաջարկը և իբրև պարգև ստացավ Էջմիածինը։ Զաքարիան իսկույն գնաց Էջմիածին, վտարեց Գրիգոր Ժ Մակուեցուն և երկու աթոռների կաթողիկոսությունը իր վրա միացրած, գահակալեց Էջմիածնում (1460)։ Հաջորդ տարին նոր կռիվ ծագեց Ջիհանշահի և Ջիհանգիրի միջև, որ Ուլաթի սուլթանն էր։ Ջիհանշահը 12,000 ձիավոր ուղարկեց Ուլաթի վրա, գրավեց, քանդեց և բնակիչներին գերի վարեց։ Նույն պատուհասը պիտի կրեին նաև Բաղեշ, Սասուն և Տարոն։ Զաքարիան ներկայացավ Ջիհանշահին, իր անձը փրկանք դրավ և խոստացավ Բաղեշի ամիրայից հարկը վերցնելով՝ հանձնել Ջիհանշահին։ Թագավորը գրավոր իրավունք տվեց նրան՝ կատարելու ինչ որ ցանկանա։ Զաքարիան վերցրեց հրամանագիրը և իսկույն «ձիընթաց արշավմամբ» հասավ Բաղեշ։ Ամիրան իր մեծամեծներով ընդունեց նրան պատվով, տարավ

բերդի գլուխը և հանձն առավ կատարելու ինչ որ Զաքարիան կամենա, միայն թե Ուլաթի զորքը յետ դարձնի։ Զաքարիան դիմեց Ջիհանշահին և Ուլաթը պաշարող 12,000 զորքը ետ դարձրեց։ Երեք ամիս տևեցին այս բանակցությունները, բայց վերջացան հաջողությամբ. Զաքարիան հարկերը անձամբ ներկայացրեց Ջիհանշահին, խաղաղությունը հաստատեց և հայ ու քուրդ ժողովուրդը երախտապարտ մնաց նրան։ Զաքարիան փառքով վերադարձավ Էջմիածին։ Իր հակառակորդները, որոնց գլուխն էր Գրիգոր Ժ Մակուեցին, պատեհ առիթ գտնելով այն, որ Ջիհանշահը Իրակ, Շիրազ և Քիրման ծագած ապստամբությունը զսպելու համար այն կողմերն էր գնացել, չարախոսեցին Ջիհանշահի որդի Հասան-Ալիի մոտ, որ այն ժամանակ թափառում էր Արարատի կողմերը։ Հասան-Ալին թշնամացավ Զաքարիայի հետ և ուզեց բռնել նրան ու կողոպտել։ Զաքարիան առավ Լուսավորչի աջը և եկեղեցական սպասները և փախավ Աղթամար (1461)։ Նորից վերադարձավ Էջմիածին, ուր իր թշնամիների ձեռքով թունավորմամբ սպանվեց, մինչև իր մահը կրելով Ամենայն Հայոց կաթողիկոսի տիտղոսը (1464)։—Ծեծոփ. յիշ. բ. Զքր. սարկ. Ա 5—6, Առաք. պատմ. 324—329, 336—337, Այրարատ 198, 231, 500, Հուաք. 41—42, 62. Ակինեան՝ Գաւազանագիրք 85—108, Ազգապ. 2061, 2169, Ձեռ. Դադեան, Բ 57 ր, Rapport Belgique 145. Նոտարք 103, 113, 119 (այս վերջինը ՊՁԸ=1439 թվին է գրված և ուր ասված է թե Զաքարիան կաթողիկոս է նստել այդ թվին, մինչդեռ այլուստ գիտենք որ Զաքարիան կաթողիկոս էր դեռ 1414 և 1419 թվերին։ Այս անպատեհությունը վերացնելու համար՝ Ակինեան, Գաւազանագիրք նույն ՊՁԸ թվականը ուղղում է ՊԺԸ=1369։ Բայց դժվար կարելի է ենթադրել, որ գրիչը այսպիսի սովորական և ամենակարևոր կետում սխալված լինի։ Ուստի շատ ավելի լավ է Փիրղալէմեանի բացատրությունը՝ թե Զաքարիան թէև Դաւթի կենդանության ձեռնադրված էր կաթողիկոս, բայց պաշտոնապես գահակալել էր 1439 թվին), Ազգագր. հանդ. Ի. 211 (Արձ. 1444 թվից)։

— 82. **Զաքարէ** աբեղա, գրիչ. Աշտաց երկրի Անկլունաց վանքում օրինակեց Աւետարանը՝ կոշկակար Մարտիրոսի պատվերով, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588, Այրարատ 52։

— 83. **Զաքարէ** քահանա, մի քանի ընկերների հետ գնել է մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 261։

— 84. **Զաքարիա** քահանա, որդի Մելքիսեթի, գրիչ. օրինա-

կել է Աւետարանը՝ Աղների համար, Աշտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ադուլ. (Արրտ. 1911, էջ 219, 220), Марр, Тексты и Разыскания, գիրք VII, էջ 27—28։

— 85. Ջաֆարէ, որդի Փարաճի, որ Հալէպում, Մելքիսեթ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 97 ա։

— 86. Ջաֆարէ, իր եղբայր Խաչատուրի հետ միասին մի խաչ են կանգնեցրել Ծարում՝ իրենց հոր և եղբայրների հիշատակին, 1484 թ.—Արցախ 406։

— 87. Ջաֆար քահանա, եղբայր Աբրահամ աբեղայի՝ գրչի ի Բոլորաձոր, 1484 թ.—Տաշեան, Ցուց. 885։

— 88. Ջաֆարիա վարդապետ, ուսուցիչ Մարգարայ գրչի, որ Աղբակում օրինակեց Աւետարանը 1487 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84։

— 89. Ջաֆարէ, որդի Յուսէփի, որ իր և ընտանիքի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Թէոդոսիա, 1487 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 351։

— 90. Ջաֆարիա, Թվլի գրիչ, որ Աղթամարում օրինակել է Աւետարանը 1487 թ.—Ձեռ. Վասպ. 505։

— 91. Ջաֆարայ աբեղա, որդի Երկէլի, որ գնեց մի Շարական՝ 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27։

— 92. Ջաֆարայ, Թվլի հորեղբայր Յակոբ աբեղայի, որ գրեց մի Շարական՝ Եղեգեաց գավառի Հերմոնի վանքում, 1426 թ. Զաքարան էլ օգնում էր նրան. որդին մեռած էր 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 93. Ջաֆարա կրոնավոր, միաբան Ուրծայ անապատի, 1491 թ.—Այրարատ 443։

— 94. Ջաֆար, որի հիշատակին մի խաչքար կա կանգնեցրած Երնջակ գավառի Շոռոթ գյուղում, 1493 թ.—Սիսական 356, Սեդրակեան, Հնութ. Երնջակու, էջ 124։

— 95. Ջաֆարիա Դ կաթուղիկոս Աղթամարի. Թվլի թե որդին էր Սմբատ Թագավորի, հորեղբայր Գրիգորիս Ա Աղթամարցու, եղբորորդի Ստեփաննոս Դ կաթուղիկոսի, որին և հաջորդեց։ Ակինեան՝ Գւզնգիրք 119—121 գահակալության թվականը դնում է 1489 թ, որ ձեռագիրներում վկայված է, ուստի և ստույգ։ Մոհվան թվականը դնում է 1496, որ սակայն վկայված չէ։ Իր վրա հղած հիշատակարանները ցնում են մինչև 1490 թ։ Այնուհետև հիշվում է Ատոմ կաթուղիկոս 1496 թ։ Ակինեան, անդ՝ 121

*այս 1496 թիվը երբ ստույգ թվական չի դնում Ատոմի գահակալության, ուրեմն կարող է ավելի առաջ եղած լինել։—Թորոս աղբ. Բ 447 հիշատակարանում ասված է թե Աղթամարի Զաքարիա կաթուղիկոսը մեռել է ՋԽԴ=1495 թվի «յանցեալ ամին» (այն է 1494 թ)։ Չգիտեմ ինչու Ակինեան, անդ 115 գտնելով որ այդ թվին մեռած Զաքարիա կաթուղիկոս չկա, հանգիստ սրտով ՋԽԴ ուղղում է ՋԺԴ=1465։ Ընդհակառակը այս թիվը պետք էր դնել Զաքարիայի մահվան թվական, ինչպես արել է Ազգապ. 2212, որ և կլինի Ատոմի գահակալության թվականը։ Ըստ այսմ մենք դնում ենք* Զաքարիա *Դ 1489—1494, Ատոմ 1494—1510?*

— 96. Զաքարիա, *եղբայր Աբրահամ րաբունապետի, որ Վայոց ձորի Եղեգիս գյուղի Վերի-Նորավանք կոչված վանքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522։*

— 97. Զաքարիա, *գրիչ. աշակերտ Նահատակ Կարապետ քահանայի. Վանում գրել է մի Աւետարան, որ ստացավ տանուտէր Պետրոսը, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։*

— 98. Զաքարիա *սարկավագ, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Բաղէշի մոտիկ Աւեխու վանքում, 1496 թ.—Թորոս աղբ. Բ. 426։*

— 99. Զաքար, *որդի Աթաբագի և եղբայր Սպահանի, որ Սաղմոսավանքում մի Աւետարան գրել տվեց Յովհաննէս աբեղային, 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։*

— 100. Զաքարիա *աբեղա, միաբան Սրկղունից Սպիտակաւոր Աստուածածին վանքի, որի առաջնորդն էր իր հորեղբայրը՝ Աւագտէր։ Այս այն անձն է, որ ըստ Սմբատեանց՝ Երնջակ 121 կոչվում է Զաքարէ և օրինակել է մի Աւետարան՝ Վայոց Ձորի Սկղունդ գյուղում, 1475 թ։—Աւագտէրի մահից հետո՝ Զաքարիան եղավ առաջնորդ նույն վանքի, 1498 թ.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 235—238։*

— 101, Զաքարիա *վարդապետ, միաբան Աղբակու Երնկանի գյուղի Ս. Աստուածածին վանքի. երախտավոր Մարգարայ գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1490 և 1498 թվերին.—Ձեռ. Վասպ. 512, 528։*

— 102. Զաքարիա *գրիչ. օրինակել է «Յառաջաբան Պաւղոսի առաքելոյ», ԺԵ դար? բնագիրը եղել է Սարգիս գրչի օրինակը։*—Марр, Тексты и Разысканія, VII, *էջ 98։*

— 103. Զաքարայ *երեց, ունէր մի Աւետարան, որ գրել էր՝ Բարսեղ քահանան 1480? թվին. վաճառեց Աւետիք քահանային*

նրա որդի Մելքիսեդ քահանայի գործածության համար, 1500 թ. —Ձեռ. Հայէպի, Ա. 68 բ։

— 104. Զաքարէ արքեպիսկոպոս, վանահայր Հաւուցթառի, յազատորդեաց. հիշված է 1423 թվից. եղավ հակառակորդ Կիրակոս Վիրապեցու. անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».— Մեծոփ. յիշ. ա, գ. Դրնդ. 313—5.—սեռ. Զաքարէի՝ Մեծոփ. յիշ. գ. Այրարատ 357. Թորոս աղբ. Ա. 233.—սեռ. Զաքարիայ՝ Թորոս աղբ. Բ. 339, Նոտարք 73, 123։ Զամբռը, էջ 275—8 ընդարձակ խոսում է այս Զաքարիայի և Հաւուցթառ վանքի մասին։ Հաւուցթառ գյուղի մոտ է Կարմիր վանքը, որ հիմնել է Սմբատ Բագրատունու որդի Աշոտ իշխանը՝ 684 թ. Սահակ Ձորափորեցի կաթուղիկոսի օրով։ Աշոտը իր որդուն ուղարկել էր Պոլիս՝ Հերակլի թոռ Կոստանդ կայսեր մոտ, որ շնորհել էր նրան անձեռագործ պատկերը։ Աշոտը շինել էր այդ վանքը, այնտեղ դրել այդ պատկերը և սրա անունով վանքը կոչել էր Ամենափրկիչ։ Աշոտը սպանվեց Գրիգոր Մամիկոնեանի ձեռքով և թաղվեց նույն վանքում։ Գրիգոր Մագիստրոսը նորոգեց, ընդարձակեց և հարստացրեց այս վանքը, առաջնորդ դնելով իր որդի Վահրամին (Գրիգոր Վկայասէր)։ Վանքը շարունակեց իր գոյությունը և Մագիստրոսի ժառանգները առաջնորդ նստան այնտեղ մինչև վերջին ժամանակները։ Աստուածատուր Համատանցի կաթուղիկոսը նորոգեց վանքը 1721 թ։ Պեղումների միջոցին գտնվեց Մագիստրոսի արձանագրությունը 1013 թ. (տես Զամբռ 276=Այրարատ 354)։ Մագիստրոսի ցեղից նստող առաջնորդներից էր հիշյալ Զաքարիան, որ Կիրակոս կաթուղիկոսի հակառակորդներից էր և նրան գահազուրկ անելով՝ գահ բարձրացրեց Գրիգոր Ժ Մակուեցուն՝ 1443 թ։ Այս Զաքարիան վանքի համար գնել էր 9 գյուղ՝ 1487 թ. և նույնը հաստատել էր Շահ Իսմայիլի ձեռքով՝ 1500 թ. (Այրարատ 357)։ Ավելի ուշ, նույն կալվածները Զաքարիայի ազգականները խլել և իրենց մեջ են բաժանել։ (Որովհետև 1423 թվին հիշված է արդեն իբր արքեպիսկոպոս, ուրեմն ծնունդը պետք է դնել գոնե 1393 թ. հետևաբար վերջին թվականները ճիշտ չեն, որովհետև ենթադրում են հարյուրից ավելի տարիք)։

— 105. Զաքարիա Բ Վաղարշապատցի, կաթուղիկոս Հայոց «1515—1520 թ».—Ազգապ. 2217 ասում է, որ Զաքարիան թեև կաթուղիկոս է դրված 1515 թվին, բայց ավելի հին պետք է լինի, գոնե 1506 թվին՝ իբրև աթոռակից Եղիշէ Բ-ի։ Նույնը նաև Ազգապ. 2208։ Ես կարծում եմ, թե սա է որ հիշված է Զաքարիա

կաթողիկոս անունով՝ Տարոնում (Ձեռ. Վասպ. 619) 1503 թվին, ըստ որում 1503 թվին Աղթամարի կաթողիկոսն էր Ատոմ (1494—1510?) և այս Զաքարիան չէր կարող Աղթամարի կաթողիկոս համարվել—Առաք. պատմ. 337. Ազգապ. 2217—2223։

— 106. Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց. կոչվում է նաև Գնունցի, Խժըժցի, Լմեցի, Պռօշեանց, ըստ որում պատկանում էր Պռօշեանների հին ցեղին։ Աշակերտ Գրիգոր Աղթամարցու և Յովնէփ վարդապետի. գրիչ, նկարիչ և տաղասաց։ Սովորել է նախ Սըրկղունից Սպիտակաւոր Ս. Աստուածածին վանքում, Եսայի վարդապետի մոտ։ Գնացել է Լիմ անապատը և աշակերտել երկու Գրիգոր Աղթամարցի կաթողիկոսներին և եպիսկոպոս ձեռնադրըվել։ Հաստատվել է Գնունեաց Խժիժ կամ Խժիշկ գյուղում։ Անցել է Հռոմ, ուր օրինակել և նկարներով զարդարել է Խաչատուր Կեչառեցու խմբագրած Վարուց Ալեքսանդրի և Կաֆայից մի օրինակը, իր կողմից ավելացնելով մի քանի նոր ոտանավորներ (կաֆաներ)։ Ապա այս ձեռագիրը բերել է Հայաստան՝ իբր նվեր իր ուսուցիչ Եսայի վարդապետին (սխալ է կարծել թե սա Եսայի Նչեցին է, որ մեռել է 1333 թ)։ 1544 թվին Պոլսումն էր և հաստատվել էր Սամաթիա նշանավոր հայաբնակ թաղի Սուլումանաթըր կոչված եկեղեցում, ուր Պոլսի Աստուածատուր պատրիարքի խնդրանոք գրել, ծաղկել և նրան է նվիրել Կալիսթենեսի Վարուց Ալեքսանդրի մի նոր օրինակը՝ 1544 թ։ Արտագրած ունի նաև մի Շարական՝ Լիմ անապատում, 1576 թ։—Տաշեան, Ուսումն. Ստ. Կալիսթենեայ, էջ 89—90, 124—133, 156—160, Ցուց. 367—8, Յովսէփեան՝ Խաղբակեանք 240—247։ Առանձին մենագրություն ունի Ակինեան՝ «Զաքարիա եպս. Գնունեաց և իւր տաղերը», Վիեննա 1910։

— 107. Զաքարիա կաթողիկոս Սսոյ, որ 1572 և 1585 թըվերին իր 4 եպիսկոպոսների հետ միասին հպատակության թուղթ է գրել Գրիգոր ԺԴ և Սեքստոս Ե պապերին.—Տաշեան, Ցուց. 111։ (Այս թվերին այդ անունով կաթողիկոս չկա Սսում)։

— 108. Զաքարիա վրդ. հիշված է իբրև հայրապետ Վանում (ուրեմն Աղթամար) 1608 թ. (Ձեռ. Վասպ. 832)։—Ակինեան՝ Գւղնգիրք, էջ 130 Աղթամարի աթոռը 1606—1660 թվերին անորոշ է գտնում. գահակալ կաթողիկոսներ չեն հիշված։ Ուստի կարող ենք ըստ այս վկայության հայրապետ ճանաչել Զաքարիային՝ 1608 թ։ Սակայն հիշենք միանգամայն, որ Զաքարիա Ա պատրիարք Պոլսի (№ 109) առաջնորդ էր 1606—8 թվերին Վա-

նում, ուսկից ապա փոխադրվեց. և այդ Զաքարիա հայրապետը կարող է այս Զաքարիան լինել։

— 109. **Զաքարիա** *Ա Վանեցի, պատրիարք Պոլսի. կոչված է Գիշու որդի կամ Գէշոյեանց. ծնվել է «շուրջ 1570 թ», սովորել Վարագայ վանքում, աշակերտելով Բարսեղ Աւանցցի վարդապետին։ Անցավ Պոլիս, ուր պարապում էր ուսուցչությամբ։ «1606 թվին», Վանի առաջնորդ էր, ուսկից փոխադրվելով «1608 թ», Մելքիսեդ կաթուղիկոսի կողմից ուղարկվեց Եվրոպա՝ իբրև նվիրակ։ Այս առթիվ եղավ Հռոմում, երկու տարուց հետո վերադարձավ Պոլիս և պատրիարքական աթոռին տեր դարձավ։ Այնուհետև Զաքարիա, Յովհաննէս Խուլ և Գրիգոր Կեսարացի իրար ձեռքից խլխլում են աթոռը։ Գրիգորի մահից հետո Զաքարիան դահակալում է «1636 թ», մինչև իր մահը՝ «1639 թ»։—Առաք. պատմ. 183, 184. Ազգապ. 2309, 2316, 2463. Ազգ. մատ. ՀԸ, էջ 13 և 42—63։*

— 110. **Զաքարիա** *եպիսկոպոս Վաղարշապատցի. Շահաբասի արշավանքի ժամանակ գերի տարվեց Նոր-Ջուղա, ուր կրթվեց և սովորեց 5 լեզու։ Քարտուղար եղավ Դավիթ և Մովսէս կաթուղիկոսներին։ Նստել է առաջնորդ Յովհաննավանից՝ «1637—1659 թվերին». նվիրակ գնաց Պոլիս, Ջուղա և Երուսաղէմ, նորոգեց Յովհաննավանքը, որ և ազատեց Պարսից հարկերից։ Մեռել է 1659 թվին։ Իր միակ երկասիրությունն է պատմական ընդարձակ մի Յիշատակարան, որի մէջ պատմում է Մովսէս, Փիլիպպոս և Յակոբ կաթուղիկոսների կյանքը։ Իր կյանքը ընդարձակ տես Զքր. սարկ. Գ. գլ. ժդ. Առաք. պատմ. 268—9.—Տաշեան, Ցուց. 1028. Զարբ. Նոր մատեն. 171։*

— 111. **Զաֆար**, *որդի Սահրատի Շէհրիմանեանց, Պարսկաստանի հայ վաճառականների կողմից Ռուսաց Ալեքսի կայսեր նվեր բերավ մեծագին արքայական մի գահ, որի վրա հյուսված էին 2100 ընտիր ակունք և 3 շարք մարգարիտ (1660 թ)։ Սրա վրա Պարսկահայոց վաճառականների ընկերությունը առևտրական դաշն կնքեց Ռուսաց հետ և իրավունք ստացավ Ռուսաստանում ազատ վաճառականություն անելու։—Միսաքեան 446։*

— 112. **Զաքարիա** *երեց, գրել է Պատմութիւն կամ Դաւաղանագիրք՝ 1689 թ.—Հայապ. 133։*

— 113. **Զաքարիա** *Ագուլեցի, որդի Աղամիրի Բրդունց. ծնվել է Ագուլիսում, 1630 թ. վաճառականության համար դուրս է եկել Ագուլիսից առաջին անգամ 1646 թ. և ճանապարհորդել է շարունակ Պարսկաստան (մինչև Սպահան), Տաճկաստան, Իտա-*

լիա, Գերմանիա, Հոլանդիա ևն. իր ճանապարհորդության պատմությունը օրը օրին գրի է առել իր հիշատակարանում, որ գրված է Հին Ջուղայի բարբառով։ Այստեղ գտնում ենք ոչ միայն այն ժամանակի տնտեսական և առևտրական կյանքին վերաբերյալ ընդարձակ տեղեկություններ, այլ և ԺԷ դարի ազգային-քաղաքական իրադարձությունները։ Հրատարակված է Երևան, 1938, «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը» վերնագրով։ — Ցուցիկք Բ 125 հիշում է իբր տաղասաց։ Մեռել է 1691 թ։—Զքր. ագուլ. էջ 29, 159 ևն, Լէօ, Հայկ. տպագր. 194։

— 114. Զաքարիա (որ և Զաքեոս) սարկավագ Քանաքեռցի. որդի Մկրտչի. ծագմամբ վրացի էր. ծնվել է 1627 թ. (ըստ Անյայտ աղանդներ, էջ 7). 50 տարուց ավելի միաբան Ցովհաննավանքի։ Այստեղ աշակերտել է Զաքարիա եպս. Վաղարշապատցուն, որ Փիլիպպոս կաթողիկոսի կողմից առաջնորդ էր նշանակված նույն վանքին։ Զաքարիա եպիսկոպոսը նորոգեց նույն վանքը 1637 թ. և ապա առանձին դպրոց բանալով՝ իր աշակերտ Զաքարիային էլ ուսուցիչ կարգեց (Այրարատ 10, 173—4)։ Զաքարիա եպիսկոպոսի մահից (1659) հետո՝ աշակերտեց նրա հաջորդ Ցովհաննէս վարդապետին։ Բայց իր ոտքի կաղության պատճառով ավելի բարձր աստիճանի չհասավ։ Ճանապարհորդել է Պոլիս, Զմիւռնիա, Կարին։ Գրել է իր ժամանակի պատմությունը, որ Առաքել Դավրիժեցու Պատմության շարունակությունն է և հասնում է մինչև 1699 թ։ Այս աշխատությունը տպված է Վաղարշապատ 1870. գրքի վերջում կա նաև «Կոնդակ Ցովհաննավանից», որ Ցովհաննավանքի պատմությունն է՝ հիմնըված ավանդության և վանքի արձանագրությունների վրա։— Զքր. սարկ. Բ. 140, 143. Գ. 1, (31), 35, 42, 44, 45.—Ա. էջ դ ոտանավորի մեջ և էջ 1՝ բնագրում հյուսած. նաև էջ 66. Զաքեոս ձևով՝ Ա. էջ 4.—տես իր ձեռագիր հիշատակարանը № 936 Ճառընտիր Ձեռ. Էջմիածնի (1687 թվից), Այրարատ 174, 178 (իր ձեռագրի նմանահանությամբ), Զարբ. Նոր մատեն. 179—184. Լէօ՝ Հայկ. տպագր. Ա. 280—284. ZAPh 2,295. Արար. 1870, էջ 151—5։

— 115. Զաքար Ղարիբ, տաղասաց (ԺԶ—ԺԷ դար). ունի պանդխտական տաղեր.—տես Նղշ. 46 և Տաշեան, Ցուց. 856։

— 116. Զաքարիա փիլիսոփա, աշակերտ Մարգար Պարոնտէրի ի Վարագ. ունի երգեր և գանձեր (ԺԷ դար).—Ազգապ. 2261։

— 117. Զաքարիա վարդապետ, տաղասաց. ժամանակն ան-

հայտ.—տե՛ս Ձեռ. Հալէպի, Ա 208 ա (ձեռագիրը 1743 թվից է)։

— 118. Զաքարիա քահանա Շեհրիմանեան, Նոր-Ջուղայեցի, ապրում էր Իտալիայում. նշանավոր է Իտալական գրականության մեջ իբրև փիլիսոփա բանաստեղծ։ 1764 թվին հրատարակել է ծածկանունով 4 փոքր հատոր, որոնցից գլխավորն է «Ճանապարհորդութիւն Ենրիկոյ Վանտոնի ի Թագաւորութիւնս կապկաց և շնագլխոց», որի մեջ մեծ ճարտարությամբ ծաղրում է սուտ գիտուններին, քաղաքագետներին, բժիշկներին ևն։ Քննադատները համարում են գերազանց քան բոլոր Իտալական փիլիսոփայական վեպերը և նախատիպ Սուիֆտի «Գուլլիվերի ճամբորդության»։ Ունի նաև «Բժիշկներ և բժշկութիւն», մի քերթված «Նրագ Արիստիպպոսի» ևն ևն։ Մեռել է 1784 թ.—Ալիշան՝ Հայ-Վենետ. 507—508, Սիսական 476։

— 119. Զաքարիա Կաղզուանցի, պատրիարք Պոլսի «1773—1781 թ». հաջորդ Գրիգոր Պասմաճեան պատրիարքի. նախապես աշակերտել էր Էջմիածնի դպրոցում. ազգեցիկ և կամքի տեր մարդ էր. նվիրակ Էջմիածնի, ընտրվեց պատրիարք։ Գիտենալով որ կաթոլիկական հոսանքի դեմ պայքարելու լավագույն միջոցը կրթությունն է, ուժ տվեց Մայր վարժարանին, ուր ինքն էլ ուսուցիչ էր, և հասցրեց 7 եպիսկոպոս և 4 վարդապետ։ Միևնույն ժամանակ բաց արավ Պոլսում բազմաթիվ թաղային վարժարաններ։ Այսպեսով ինքը եղավ ազգային և ժողովրդական հայ դպրոցի հիմնադիրը։ Կաթոլիկների դեմ լինելով ազդու հակառակորդ և ետ առնելով նրանց խլած եկեղեցիները, գրգռեց լատիններին։ Ավստրիայի ու Ֆրանսիայի դեսպանները միացած՝ դիմեցին Սուլթանին և Զաքարիային գահընկեց արին («1781 թ»)։ Նրա փոխարեն նստավ Յովհաննէս Համադանցին, և որովհետև սա ավելի եւս խստությամբ վարվում էր կաթոլիկների հետ, ուստի նրան էլ գահընկեց արին և ժողովրդական մեծ ցույցերով ետ բերին Զաքարիային («1782 թ»)։ Զաքարիան շարունակեց իր հոգածու և ուսումնասեր աշխատանքը՝ մինչև իր մահը «1799 թ»։ Ստացել է «ազգասէր» վերադիրը, որ ոմանք բացատրում են «ազգից սիրված», և ոչ թե միայն «ազգը սիրող»։—Ազգապ. 3090—98, 3147, 3155, 3195. Մ. մաշտ. 337 ա. Տաշեան, Ցուց. 118, 810, 991։

— 120. Զաքարիա Տէր-Պետրոսեան, Կոփեցի, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Գաբրիէլ Նիկոմիդիացի պատրիարքին 1841 թ. նախկին աշակերտ Էջմիածնի և Վենետիկի. ապա միա-

բան Երուսաղէմի. բացվել առաջին անգամ տպարան Երուսաղէմի վանքում (1833 թ). մեռել է 1846 թ.—Ազգապ. 3743, 3829։

— 121. Ջաքար խաթուն, իգ. հիշված է 1526 թվից ուշ գըր-ված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Մաղն. էջ 15).—Թվում է թե պետք է ուղղել Շաքար, բայց Զաքար ձևով իգական անուններ տեսանք վերևում № 41 և 56։

*ԶԱՔԵՈՍ, որ. ավելի հարազատ ձևն է Զակքեոս, որ տառադարձված է հուն. Ζακχαῖος (> լտ. Zacchaius, ֆր. Zachée) անունից։ Այս անունով հայտնի էր Երիքովում հրեա մեծահարուստ մի մաքսապետ կամ հարկահան, որ հավատալով Յիսուսի քարոզության, ուզեց տեսնել նրան։ Հասակը շատ ցածր լինելով բարձրացավ ծառի վրա. Յիսուսը կանչեց նրան իր մոտ և նրա տունը հյուր գնաց։ Մեղավոր Զաքէոսը դարձի եկավ և իր հարստության կեսը աղքատներին բաշխեց (Ղուկ. ԺԹ. 1—10)։ Կա նաև նույն անունով մի եպիսկոպոս Երուսաղէմի՝ Բ դարի սկզբում։ Հույն բառը ծագել է եբր. זַכַּי Zakkai անունից, որ բուն նշանակում է «անմեղ, արդար» (Gesenius 197)։ Մեր մեջ շատ քիչ է գործածված այս անունը, բայց կա այժմ էլ Զաքի ձևով, որից Զաքիեան։ Տփոթվում է Զաքարիայի հետ։

— 1. Զակքեոս, աշակերտ Թադէոս առաքյալի, ըստ Ալիշան, Լաբուբ. յուշ. էջ ժդ.—Թվի թե շփոթված է Զաքարիայի հետ։ Ունի կանոններ (տես Ջեռ. Վիեննա. Բ. 618)։

— 2. Զակքեոս, անծանոթ պատմիչ Է դարու. գրել է Եկեղեցական պատմություն՝ սկսած առաքյալներից մինչև 700 թ. Ձեռագիրը գտնվում է Նոր-Ջուղայի գրադարանում. բայց մնում է անհայտ—Հայապ. 72։

— 3. Զակքեոս, հիշված է Գրիգոր անուն անձի հետ (№ 356), Գոշավանքի զանգակատունը, եկեղեցիներն ու պարիսպները շինողների շարքում, 1291 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 368, Յարութիւնեան՝ Ազգագր. հանդ. Ժ. 35, Արցախ 353։

— 4. Զաքեոս եպիսկոպոս Արճէշի կամ Բաջբերունեաց, վանահայր Սուխարայ կամ Ծառաքասարի վանքի, ուր Սարգիս Ապրակունեցին գնաց հաստատեց իր դպրեվանքը, «1389 թ»։ Ձեռնադրել է Կիրակոս Վիրապեցուն 1397 թ. մեռել է նախ քան «1401 թ».—Մեծոփ. յիշ. ա. Մեծոփ. 35, Դրնդ. 312.—սեռ Զաքեոսի՝ Մեծոփ. 37.—Ազգապ. 2000, Ջեռ. Վիեննա. Բ. 1072։ (Ըստ Նոտարք 20 սրա եղբորորդին և հաջորդն է Կարապետ վարդապետ, որ նրա

հիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ 1404 թ)։—Տես և Զաքարիա № 72։

— 5. Զաքի երեց Երզնկացի, տաղասաց. ունի Երզնկայի երկրաշարժի վրա մի տաղ, 1482 թ.—Manus. brit. mus. 284 ա։

— 6. Զակքէոս տես Զաքարիա № 114։

— 7. Զաքի անունը հիշված է նաև անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վիեննա. Ա. 736։

— 8. Շատ ուշ՝ 1676 թ. հիշված է Զաքէոս գրիչ (Ձեռ. Թաւր. 96)։

— 9. Սրանց հետ նույն է արդյոք Զաքին, որ իբր նախատակ հիշում է Բարխուտարեանց՝ Արցախ 243 > Նոր վկ. 695 (առանց թվականի)։

† ԶԳՕՆ, ար. < հյ. զգօն «խելոք, իմաստուն» բառից. որբան համապատասխան է գալիս Զիրաք անունը, որ տես։ Զգօն անունը մեր մեջ չէ գործածված. բայց ունինք Ե դարից Զգօնի գիրքը. «Գիրք որ կոչի Զգօն, արարեալ Ս. Յակոբայ հրեցս երանեալ հայրապետին Մծբին քաղաքի» (տպ. Պոլիս 1824)։ Բայց զարմանալի կերպով ունինք մի անգամ՝

— Զգօն, որդի Ստեփանոսի, եղբայր Տէրատուր քահանայի, որ Երուսաղէմում Վրթանէս կրոնավորին գրել տվեց մի Գանձարան՝ 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ (ձեռագրում այս բառը քերված է եղել և հրատարակիչն էլ դնում է հարցականով)։

*ԶԵԲԵԴԷՈՍ, ար. տառադարձված է հուն. Ζεβεδαῖος (լատ. Zebedaeus, ֆրանս. Zébédée) ձևից, որ ծագում է եբր. זבדיה Zəbadyāh անունից (նշանակում է «պարգև Աստուծոյ» և առաջանում է եբր. זבד zbd «նվեր, նվիրել» բայից. Gesenius 191)։ Հին Կտակարանում այս և նման անուններով ծանոթ են շատ անձինք. իսկ Նոր Կտակարանից հայտնի է Յակոբոս և Յովհաննէս առաքյալների հայրը, որով և այս առաքյալները կոչվում են «որդիք Զեբեդեայ», այլ և «Որդիք Որոտման» (համտ. Մատթ. դ. 21՝ սեռ. Զեբեդեայ և գրծ. Զեբեդեաւ ձևերը)։ Այս առաքյալների մայրը՝ Սողոմէ, մի օր ներկայացավ Յիսուսին և խնդրեց, որ իր որդիներից մին Յիսուսի աջ, մյուսը ձախ կողմը նստի արքայության մեջ (Մատթ. ի. 20)։ Թեև Զեբեդէոս և իր կինը ուրիշ բանով հայտնի չեն, բայց նրանց անունը գործածական է մեր մեջ. սակայն շատ հազվադեպ։ Արական ձևն է Զեբեթ, որ կա այժմ (այսպես էր կոչվում մեր համալսարանի դասախոսներից մեկը +)։ Իգականն է՝ Զեբեթէ Ձեռ. Պետերբ. № 4 (ԺԷ դար),

Զիրիքա Ջեռ. էջմ. № 613 (ԺԷ դար), հոգով՝ Զիրեքէն՝ 1683 թ. (Manus. brit. mus. 36 ա), Զերեքայն 1695 թ. (Ջեռ. Հալէպի. Ա. էջ 376)։

ՁԵԹԻԼՓԱՇԱ, իգ. ծագումն անշուշտ օտար է, բայց ձևի պատճառով անստույգ. գտնում ենք մի անգամ գործածված 1453 թ. (Նոտարք 171, որ գրում է սեռ. Ձէթիլփաշին, և Ջեռ. Վասպ. 136, որ գրում է Ձեթիլփաշին),—հմմտ. Էդիլմելիք, Էգիլշահ, Էդիլբէգ։

— Ձեթիլփաշա, կին մահտեսի Շահփաշայի, որ ետ գնեց և նորոգել տվեց գողացված մի Աւետարան, 1453 թ։ Տես նախահիշատակյալ երկու տեղերը։

ՁԵՄԵՆԴՈՍ, ար. ծագումն անհայտ. բայց անշուշտ օտար։

— Ձեմենդոս եպիսկոպոս, երկրորդ առաջնորդ Արտազի, հաջորդեց Զաքարիային։ Սանատրուկ թագավորի ժամանակ բոլոր ճանապարհների վրա իշխան էր. իր եղբայրը Սանատրուկի դահճապետն էր, որ երբ պիտի գլխատեր Թադէոս առաքյալին, սխալմամբ իր եղբոր՝ Ձեմենդոսին սպանեց։ Եվ որովհետև Ձեմենդոսը շատ բարի մի մարդ էր, Թադէոսը աղոթեց և «կենդանացրեց նրան»։ Սրա վրա Ձեմենդոսը քրիստոնյա դարձավ և Թադէոսը կարգեց նրան առաջնորդ հավատացելոց։ Աթոռը նստել է «72—76 թ»։—Ձեմենդոս՝ Ուխտ. Ա. խ.—Ձեմենդոս՝ Վկ. Թադ. 55, 56. Պատմ. Թադ. 73—75. Յայսմ. դեկտ. 23. Զքր. եպս. 280.—Ձեմենտիոս՝ Յայսմ. դեկտ. 23.—սեռ. Ձեմենտոսու՝ Յայսմ. դեկտ.23.— Արրտ. 1868 թ. դեկտ. էջ 102։

*ՁԵՆԱԴԻՆ, ար. < արաբ. زين الدين zeyn-ad-dīn «զարդ կրոնի» ձևից. այժմ գործածվում է Թուրքերի մոտ, բայց իբր իգական անուն. մեր մեջ մի անգամ գտնում ենք գործածված ԺԴ դարում։

— Ձենատին, որդի Նորիկ Գանձակեցու, որ գնեց մի Աւետարան, 1350 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 388)։

*ՁԵՆԱՏ-ՄԵԼԻՔ, իգ. < արաբ. زينت ziynat «զարդարանք, վայելչություն»+ مليك melīk «թագավոր» բառից։ Այժմ Թուրքերի մոտ կա Զինեթ իգական անունը։ Մի անգամ գտնում ենք գործածված ԺԵ դարում։

— Ձենատմելիք (կամ Զիադ-մելիք), կին Ստեփաննոսի և տատ Էդիլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ջեռ. Վասպ. 472—3։

*ՁԵՆՈԲ, ար. < հուն. Ζηνόβιος անունից, որ ծագում է Ζῆν

«Դիոս, Զևս, Արամազդ»+βίος «կյանք» բառերից։ Այս անունով նշանավոր են Զենոբիոս եպիսկոպոս ասորի, աշակերտ Եփրեմի, Զենոբիոս եպիսկոպոս Նահատակ։ Հայ բառը ավելի մոտիկ է ասոր. ܙܝܢܘܒ Zinōb ձևին, որից էլ փոխառյալ է (Հիւբշ. 336)։ Հընում քիչ է գործածված, նույնպես և այժմ։

— 1. Զենոբ Գլակ ասորի. աշակերտ Լուսավորչի. ձեռնադըրվեց եպիսկոպոս և կարգվեց վանահայր Ս. Կարապետի վանից, որով և վանքը իր անունով կոչվեց Գլակայ վանք։ Գրել է Պատմութիւն Տարօնոյ, այն է Լուսավորչի պատմությունը Դ դար՝ ըստ ավանդության, Է դարի կեղծիք՝ ըստ քննական բանասիրության։ Կեղծիքի զվարճալի ապացույցներից մեկն է հետևյալ տողը. «Եւ դուք մի ինչ աղարտէք զսակաւ պատմութիւնս և կամ թէ Ագաթանգեղոս զայդ ոչ յիշէ. զի ես յառաջագոյն գրեցի քան զնա» (տպ. Երևան 1941, էջ 65)։—Զենոբ՝ Ուխտ. Ա. հգ. Զեն. 17, 18. Մամիկ. ա. Յայսմ. օգոստ. 11. Մխ. այրիվ. 37. Դրնղ. 515.—Գլակ՝ Յայսմ. օգոստ. 11, նոյ. 29.—Գլակայ վանք՝ Սմբ. պատմ. 72.—սեռ. Զենոբայ՝ Ուխտ. Ա. ծէ. Զեն. 7, 18—20. Մամիկ. էջ 59.60. Մխ. այրիվ. 60. Օրբ. գ. Մեծոփ. 21. Յայսմ. նոյ. 18.—Զենովբայ՝ Զեն. անտ. 59.—Գլակայ՝ Վրդն. աշխ. 516։—Զարբ. Հին. դպր. 234—8, Թրգմ. 46—49. Խալաթեան՝ Զենոբ Գլակ, Վիեննա 1893. Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 29. ՀԱ 1912, 493։

— 2. Զենովբ, հայր Ալիի, որ Պարսկաստանից գալով, շինեց մի եկեղեցի՝ Արցախի Վերին-Թաղավարդ գյուղում, 1228 թ.—Արձ. Արցախ. 91։

*ԶԵՆՈԲԻԱ, իգ. < հուն. Ζηνοβία անունից, որ կազմված է Ζήν «Զևս, Արամազդ»+βία «ուժ, զորություն» բառերից. ըստ այսմ Զենոբիա դառնում է «աստվածազոր»։ Այս անունով հայտնի էր Զենոբիա թագուհի Պալմիրայի, որի ժամանակ Պալմիրան Արևելքի ամենածաղկած երկիրն էր (գերի ընկավ Աւրելիանոսի ձեռքը՝ 273 թվին)։

— Զենոբիա, դուստր Միհրդատի, կին Հռադամիստ վրացու, թագուհի հայոց. Տրդատ-Արտաշէսի ձեռքից փախչելու ժամանակ, Հռադամիստը իր հղի կնոջը թշնամու ձեռքին չթողնելու համար, զարկավ նրան, բայց նա չմեռավ և ազատվելով մահից՝ ընկավ Տրդատի ձեռքը (53 թ)։ Տրդատը պատվով պահեց նրան մինչև մահը։—Գրգշ. Բնն. Պատմ. Բ. 205—212, Զամչ. Ա. 306, Լէօ Ա. 459։—Զենոբիա թագուհու կյանքը ողբերգության նյութ են դարձ-

րել երկու արևմտյան նշանավոր հեղինակներ՝ Crébillon 1674—1762 թ. և Metastasio 1698—1782 թ. վերջինը հայերենի թարգմանեց Վեննետիկի միաբան՝ Հ. Եղ. Հիւրմիւզ (տես REA 10,125—7)։

*ԶԵՆՈՆ, ար. < հուն. Ζήνων անունից, որ հավանաբար ծագում է Ζῆν «Զևս, Արամազդ» անունից, որից նաև Ζηνοβία, Ζηνογένης, Ζηνόδοτος, Ζηνόθεμις, Ζηνοφάνης, Ζηνόφαντος, Ζηνοφίλα են անունները։ Զենոն (լտ. Zenon) անունով հայտնի են՝ 1) Զենոն, հիմնադիր դիալեկտիկայի, 2) Զենոն փիլիսոփա՝ հիմնադիր ստոյիկյան փիլիսոփայության՝ Ն. Ք. Դ. դար,՝ 3) Զենոն փիլիսոփա եպիկուրյան, ուսուցիչ Կիկերոնի, 4) Զենոն Իսավրացի, կայսր Արևելյան կայսրության (474—491 թ) են։

— 1. Զենոն, որդի Պոլեմոն թագավորի Պոնտացոց. պսակվեց թագավոր Հայոց՝ Արտաշես անունով (18—34 թ). իրան հաջորդեց Արշակ.—Գրգշ. Բ. 197—9, Justi 37 ա, Լէօ Ա. 453։

— 2. Զենոն մարմնիչ, «պիղծ և չարագործ», որ Արծկեցի Մուրատշահ անուն բարեպաշտ և ողորմած անձին չարախոսեց քաղաքապետի առաջ և նա էլ բանտարկեց նրան և ապա դղեկից ցած գցելով նահատակեց (1420 թ. ըստ Զամչ. Գ. 441).—Մեծոփ. 110. Աղգապ. 2055 (Մուրատշահին կոչում է նաև Վաղին). Նոր վկ. 230։

*ԶԵՐԻԹԱՑ, իգ. < պրս. زرین Zerrīn «ոսկեղեն»+تا tā «հատ» բառերից, որով ամբողջը դառնում է «ոսկեհատ»։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԷ դարում, որ է Զերիթայ խանում 1689 թ. (Bodleian 164)։

*ԶԵԻՍ ար. < հուն. Ζεύς Աստվածների հայրը. գործածված է մեր Արամազդի համար. հմմտ. Եւ անդ կործանեցին զբագինն Զևս դիցն Արամազդայ (Ագաթ)։

† ԶԵՓԻԻՌ, իգ. < հյ. զեփիւռ «քաղցրաշունչ քամի» բառից, որ հունական ծագում ունի. Նորակերտ անուն, որ գործածական է Արևմտահայոց մեջ. հնից չէ ավանդված։

*ԶԻԱԴԲԱԽՇ, ար. < արաբ. زیاد ziyād «առավելություն» կամ زیاده ziyāde «առավել»+պրս. بخش baxš «բաշխել» բառերից, իբրև «առատալաբաշխ» (նա որին ավելի է բաշխված)։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։

— Զիատբախշ,| որդի Աբդուլմսեհի. մեռավ 1327 թ.—Զեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 461)։

*ԶԻԱԴՄԵԼԻՔ, իգ. < արաբ. زیاده ziyāde «առավել»+ملیك

melik «թագավոր» (իբր «ավելի քան թագավոր»)։ Մի անգամ գտնում ենք գործածված՝

— Զիադմելիք, դուստր Խաչերեսի և քույր Թադէոս աբեղայի, որ գնեց 1352 թվին գրված մի Աստուածաշունչ։ Գնման թըվականը անհայտ է։—Զեռ. Վասպ. 8։ (Տես և Զենատ-մելիք)։

*ԶԻԱԴՓԱՇԱ, իգ. < արաբ. زياده ziyāde «առավել»+پاشا paša բառերից (իբր թե ավելի քան փաշա). համմտ. Զիադմելիք։ Երկու անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում (Զեռ. Վասպ. 450), երկուսն էլ գրված Զիաքփաշա, ուր ք կարծում եմ թավացած՝ հաջորդ փ-ի ազդեցությամբ, փոխանակ դ։ Տես և Զիաք։

*ԶԻԱԹ, ար. < նախորդ Զիադփաշա կամ նման մի անունից (հատկապես տես Զիաքանդար) կրճատված ձև։ Այժմ էլ գործածական է Թուրքերի մեջ Զիյադ ձևով՝ իբր արական անուն։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ հիշատակված 1592 թ. (Զեռ. Վասպ. էջ 724)։

ԶԻԱԹԱՆԴԱՐ, ար. ծագումն անհայտ, թեև անշուշտ օտար է՝ նման նախորդներին։ Գործածված եմ գտնում մի անգամ ԺԸ դարում (Զեռ. Թաւր. 18 բ)։

*ԶԻԲԱ, իգ. < պրս. زيبا zībā «գեղեցիկ և վայելուչ» բառից. Պարսից մեջ ես կա Zībāčihra իգական անունը, որ բուն նշանակում է «գեղադեմ» (Justi 384 բ)։ Զիպա անունը գործածական էր Պոլսում՝ անցյալ դարում։ Հնագույն հիշատակությունը գտնում եմ ԺԷ դարից (Զեռ. Սանաս. 17 բ)։

*ԶԻԲԻԴԱ, իգ. < արաբ. زبيده Zebīda անունից. այս անունով հայտնի է Հարուն-էլ-Ռաշիդ ամիրապետի կինը (Կամուս, հտ. Ա. էջ 615). այժմ էլ գործածական է Թուրքերի մոտ՝ Զիբեյդա ձևով, իբրև իգական անուն։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ հիշված Զիպիտա ձևով՝ 1771 թ. (Այրարատ 226)։

ԶԻԹԱՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1685 թ. (Bodleian 244)։

*ԶԻԺԱԶԱԴԷ, իգ. < անշուշտ օտար է և հատկապես փոխառյալ պարսկերենից, ինչպես ցույց են տալիս ž ձայնը և բառի երկրորդ մասը՝ زاده zāda «ծնյալ, ծնունդ»։ Բայց որովհետև չկա պարսկերենում զիժա ձևով մի բառ, ուստի առաջարկում եմ կարդալ Զիյազադա, որ է < արաբ. ضيا ziyā «լույս, արևի ցոլքը»+պրս. زاده zada «զարկած», իբր «լույս ցոլացած»։ Մի անգամ գտնում եմ հիշված 1771 թ. (Այրարատ 226)։ Այժմ էլ Թուրքերի

մեջ գործածական է Զիյա արական անունը, որ իրենք էլ ըմբռնում են իբրև «ցոլք, լույս»։

*ԶԻԼԻ, իգ. < կրճատված է Զիլիխան ձևից, որ տես տակը։ Այս կրճատ ձևով գտնում եմ մի անգամ գործածված 1668 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 296)։

*ԶԻԼԻԽԱՆ, իգ. (որոշիչ հոդով՝ Զիլիխանն) < արաբ. ظل zill «ստվեր, շուք»+պրս. خان xān բառերից. ամբողջը լինում է zill-i xān «խանի ստվերը կամ շվաքը». հմմտ. zill-i-sultān (պարսկական իշխանական տիտղոս) և zill-ullah «ստվեր Աստուծու» (Օսմանցի Սուլթանների տիտղոսը)։ Մեր մեջ Զիլիխան անունը մի անգամ գտնում եմ հիշված 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3 բ), Սրանից կրճատված ձև է Զիլի, որ տես վերը։

*ԶԻԼՓԻ, իգ. < պրս. زلف zulf, zülf «խոպոպիք» բառից, իբրև ած. zülfī, որ է իբր «Վարսենիկ»։ Հիշված է 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101 բ), 1648 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 37 ա, 38 բ), 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 բ)։ Ավելի հարազատ գրչություն է ներկայացնում Զիլֆի՝ 1668 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 212 ա)։ Այս վերջին ձևով գործածական է նաև այժմ Թուրքերի մեջ էլ (Զիւլֆի ձևով), բայց արական է։ Տես և հաջորդը։

*ԶԻԼՓԻԽԱՆ, իգ. կազմված է նախորդ Զիլփի անունից+xān «խան»։ Հիշված է 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ)։

*ԶԻԽԱԹՈՒՆ, իգ. կարծում եմ < արաբ. ضيا ziyā «լույս, ցոլք» բառից+xatun «խաթուն»։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 260)։

*ԶԻԿ, ար. < իրանական Zīk անունից, որ ըստ Justi մի բարձր տիտղոսի և պաշտոնի անուն է, որ հետո հատուկ անուն դարձավ։ Այս անունով հայտնի են՝ Զիկ նուիրակ, որ Շապուհ արքան Պարսից իբրև դատաւորակ նշանակեց Հայոց Խոսրով Գ թագավորին (Բուզ. Զ. ա.), Զիկ՝ նուիրակապետ Պարսից (Բուզ. Դ. լե.)։ Տառադարձված է հուն. Ζηχ-ᾶν, արաբ. Zix (Հիւբշ. 41, Justi 385 բ)։

— 1. Զիկ Դիմաքսեան, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Այրարատ 519, Հայապ. 160 (սեռ. Զկայ), Ազգապ. 331 (ըստ մի օրինակի)։

— 2. Զիկ տէր Վանանդայ, մասնակցեց Դուինի եկեղեցական ժողովին, որ գումարեց Բաբկէն կաթողիկոսը՝ 506 թ.—Գիրք Թղ. ը (էջ 42). Ազգապ. 504 (վերջինս գրում է Զիկ Դիմաքս-

եան, որ սակայն չի համապատասխանում Գիրք Թղթոցին, որից արտագրում է ինքն էլ։ Այսպեսով Զիկ Դիմաքսեանը նույնանում է Նախորդի հետ, որ 62 տարիների անջրպետով բաժանված է սրանից։ Եթե Զիկ Ա. Դիմաքսեանը Շահապիվանի ժողովին մասնակցած լիներ 30 տարեկան հասակում, Դուինի ժողովի ժամանակ պիտի լիներ 92 տարեկան, որ անհնարին չէ, թեև դժվարին։ Կարևոր է միայն իմանալ թե ինչ աղբյուրի վրա հենվելով Ազգապատումը Զիկ Վանանդեցին դարձնում է Զիկ Դիմաքսեան)։

*ԶԻՆԱ, իգ. հնից չէ ավանդված. գործածական է այժմ Կովկասում, փոխառությամբ ռուս. Зина անունից, որ փաղաքշականն է Зинаида անվան։ Այս վերջինն էլ փոխառյալ է հունարենից և ծագում է Ζήν «Զևս, Արամազդ» աստուծու անունից։ Բուն նշանակում է «դուստր Զևսի»։ Այս անունով հայտնի է Պողոս առաքյալի ազգական և աշակերտ Զենայիտա կամ Զինայիտա նահատակուհին, որ նահատակվեց Տարսոնում՝ Ա. դար (Յայսմ. Սիսուան 266 ա).—ֆրանս. Zenéide, գերմ. Zeneide, անգլ. Zeneida.

+ԶԻՆԱՒՈՐ, այր. < հյ. զինաւոր բառից, որ Ս. Սարգսի վերադիրն է. գործածական է այժմ Ղարաբաղում. պատահաբար կա նաև պրս. Zīnāwar անունը (Justi 264 ա, 386 ա)։

*ԶԻՐԱԿ, այր. < պրս. زيرك Zīrak անունից, որ բուն նշանակում է «խելոք, սրամիտ»։ Այս անունով էր կոչվում այն իմաստուն մոգպետը, որ Զոհակին գուշակեց նրա մահը և Ֆրեդունի գալուստը (Շահն. հտ. 1, էջ 54). հմմտ. նաև ժիրաք զորավար Թուրք (Արծր. Գ. ը), Zīrak իշխան աֆղան Կանդահարում (Justi 386 բ)։ Գործածված է մեր մեջ ԺԶ—ԺԷ—ԺԸ դարերում։ Այսպես՝ հնագույնն է 1557 թ. (Ձեռ. Վասպ. 660), ապա գալիս են 1604 թ. (Թորոս աղբ. Բ. 267. միասին հիշված են երեք եղբայրներ՝ Զիրաք, Շիրաք, Միրաք), 1626 թ. (Ձեռ. Վասպ. 872), 1627 թ. (Ֆ. Մուրատ, Ցայտ. յավ. էջ յխա և շար.), 1649 թ. (Երեմ. չել. օրագր. 7), 1682 թ. (Ձեռ. Վասպ. 580), 1708 թ. (անդ 564—5), և վերջին անգամ՝ 1710 թ. (անդ 1032)։ Առանց թվականի հիշատակություն է Թորոս աղբ. Բ. 342։ Այժմ խափանված է։ Սրա փաղաքշական ձևն է Զիրօ, որ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 550)։

ԶԻՐՀԱՄ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԸ դարից ուշ (Ձեռ. Թավր. 41 բ)։

ԶՄԵՂ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված

եմ գտնում անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1509 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 644, սեռ. Զըմեղին ձևով)։

*ԶՄՐՈՒԹ, իգ. < Թրք. زمرد zümrüt «զմրուխտ» բառից, որ իբրև անձնանուն գործածական է նաև Իսլամների մոտ. հմմտ. Zemroud դուստր Բաղդադի իշխանի (Les mille et un jours, Paris 1844, էջ 64)։ Հայոց մեջ գործածվում է երբեմն Զմրուխտ ձևով, բայց ավելի շատ Զմրութ: Հնագույն հիշատակությունը 1393 թվից է (տես տակը)· տալիս ենք նաև ԺԵ դարի հիշատակությունները. չենք հիշում ԺԶ—ԺԷ դարերի հիշատակությունները՝ կենդանի է մինչև այժմ հետնյալ վայրերում։

— 1. Զմրութ, դուստր Խնկիկի և քույր Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան 1392 թ. և մի Աւետարան էլ Զաքարիա կրոնավորին՝ 1393 թ.—Ձեռ. Վասպ. 226—8։

— 2. Զմրութ, կին Ստեփանոսի և մայր Յովհաննէս տրեղայի, որ Մոկաց Սուրբկանց գյուղում գնեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 204։

— 3. Զմրութ, կին Առաքելի և տատ Յովհաննէս տանուտերի, որ Աղթամարում՝ Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1436 թ։—Ձեռ. Վասպ. 373։

— 4. Զմրութ, դուստր Ներսէս քահանայի և քույր Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ Նախավկայի վանքի առաջնորդն էր և ստացավ մի Յայսմաւուրք, 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։

— 5. Զմրութ, կին Մկրտչի՝ հոգևոր հոր Գրիգոր քահանայի, որ Աղթամարում գրեց մի Աւետարան՝ Սուլտան-մելէքի համար, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 414։

— 6. Զմրութ, կին Յովհաննէս քահանայի և մայր Վարդան գրչի, որ Վան քաղաքում զանազան ձեռագրեր է արտագրել 1452--1465 թվերին (տես Վարդան անվան տակ).—Ձեռ. Վասպ. 138, Նոտարք 111, 169, 171, 172, 222։

— 7. Զմրութ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ 1114։

— 8. Զմրութ քույր Զահվիլի, որ Մուղնիում ստացավ մի Գանձարան, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

— 9. Զմրութ, կին Ստեփաննոսի՝ որդւոյ Արապշահի, որ իր Յովհաննէս քհ., Յակոբ և Սուլթանշահ եղբայրների հետ գրել

տվեց մի Ավետարան, Մարգարայ գրչին՝ Աղբակի Երնկանի գյուղում, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

+ԶՄՐՈՒԽՏ, իգ. < հյ. զմրուխտ թանկագին քարի անունից. համմտ. իր համանիշ և համազոր անունը՝ Զմրութ։ Հիշատակված է մեր մեջ ԺԳ և ԺԵ դարերում, մի մի անգամ. ապա խափանվել է՝ տեղի տալով Զմրութ անվան, որ թուրքերեն է։

— 1. Զմրուխտ խաթուն, Պարսից ազնվական ցեղից. ընդունեց քրիստոնեությունը և եղավ կին Խաւռաս իշխանաց իշխանի (1212—23 թ)։—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 17։

— 2. Զմրուխտ խաթուն, կին Սմբատի, կալվածներ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1234 թ.—Արձ. Շիրակ 24։

— 3. Զմրուխտ խաթուն, կին Պլտուխի (կամ Պտուղի) և մայր Դանիէլ աբեղայի, որ Մաղարդի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1427 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)=Ձեռ. Վենետ. Ա. 414։

— 4. Զմրուխք, հետո էլ Զրմուխք ձևով հիշված է 1708 թ. (Ձեռ. Վասպ. 563—4)։

*ԶՆԴԱՆՇԱՀ, ար. < պրս. سند Sind (Սինդ գավառի անունն է՝ Հնդկաստանում)+شاه šāh «թագավոր» (իբր Սինդի երկրի արքա)։ Գտնում եմ գործածված մի անգամ ԺԳ դարում։

— Զնդանշահ, իր կնոջ Մարթայի հետ ուխտի գնաց Արտավազայ վանքը, իր քեռի Սարգսի առաջնորդության ժամանակ և նվերներ արեց վանքին, 1224 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի, էջ 365։

*ԶՈԶԱՆ. իգ. < քրդ. zozan «ամառանոց» բառից. հիշատակված եմ գտնում երկու անգամ, երկուսն էլ անթվական հիշատակությանց մեջ, առաջինը 1453 թվից հետո (Ձեռ. Վասպ. 419՝ տպված Զօղան) և երկրորդը՝ 1481 թվից հետո (Ձեռ. Վասպ. 489՝ սեռ. Զօզանին ձևով)։

*ԶՈԹԻԿՈՍ, ար. < հուն. ζωτικός «կենսատու, կենսալի» կամ մի ուրիշ նման ձևից աղճատված։ Մի անգամ հիշված եմ գտնում՝

— Զոթիկոս եպիսկոպոս ի կողմանս Հայոց, 160 թ.—Արար. 1868, 58 ա։

*ԶՈՀԱԼ, իգ. < արաբ. زحل zuḥal «Երևակ մոլորակը» բառից։ Ամենահին վկայությունը ԺԳ դարից է (տես տակը), որից հետո դադարում է գործածությունից։ Նորից է երևան գալիս ԺԶ դարում և գնում է մինչև ԺԸ դարի կեսը։ Այնուհետև խափանվում է։

— 1. Զուխալ Կարըցի, որդի Գորգիկի, նվերներ է արել Անիի կաթուղիկէին, 1235 թ.—Արձ. Շիրակ 72։

— Զոհալ ձևով հիշատակված է 1507 թ. (Կամենից 161), 1601 թ. (Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 548), 1605 թ. (Manus. brit. mus. 71 բ), 1617 թ. (Ձեռ. Վեներ. Ա. 509), 1621 թ. (Թորոս աղբ. Բ. 425), 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 279 բ), և վերջին անգամ 1724 թ. (ՀԱ 1894, էջ 50 ա)։

***ԶՈՀԱԿ**, ար. < արաբ. ضحاك Zoḥāk կամ Zaḥāk անունից, որ Պարսից Աժդահակ թագավորի անվան կրճատ Դահակ ձևից է տառադարձված։ Մեր մեջ գործածված եմ գտնում միայն մի անգամ, ԺԳ դարում՝

— Զոհագ, մերձավոր Ցովսէփ փիլիսոփայի, որ Դրազարկի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1295 թ.— Բարխուտ. Արցախ 41։

***ԶՈՀՐԱԲ**, ար. < պրս. سهراب Suhrāb անունից, որ բուն նշանակում է «կարմրափայլ» (կազմված է surx «կարմիր»+āb «ջուր, փայլ» բառերից՝ ըստ Justi 313 ա)։ Այս անունով էր կոչվում Ռոստամ քաջի որդին, որի համար Շահն. հտ. 2, էջ 64 ասված է. «Նրա բերանը ժպտում էր և նրա դեմքը փայլում էր, դրա համար նրա անունը դրավ Սոհրաբ»։ Այս անունով ուրիշ անձինք (թվով ընդ ամենը 27 հոգի) տես Justi 212—3։ Պատահական նմանություն ունի պրս. زهراب zuhrāb «է թույն ինչ որ ի պահու առաւօտու յառաջ քան զամենայն թռչունս զարթուցեալ՝ աղաղակէ»։ (Justi 388 ա այս վերջինից է դնում թն. հյ. Զոհրաբ և թե վրաց. Zurab ձևերը։ Հնագույն գործածությունը մեր մեջ ԺԵ դարից է և կենդանի է մինչև այսօր, որից էլ Զոհրաբեան ազգանունը։ Գրված է ըստ զանազան ձեռագրերի՝ Սուրապ, Զուրաբ, Զոհրաբ, Զօհրապ, Զոհրապ, Զորաբ, Զաւրհապ, Զաւհրապ, Զաւրապ ձևերով։ Այսպես Զաւրհապ 1505 թ. (Մխական 42, 50, Կրպտ. եպս. Դոփեանք 98), Զօհրապ 1555 թ. (Матер. Арх. Кавк. III, 96), Զաւրհապ 1556 (Մխական 182), 1578 թ. (Կրպտ. եպս. Դոփեանք 187—8, Ձեռ. Վասպ. 11), Զոհրապ 1609 թ. (Ձեռ. Մեր.=ՀԱ 1927, 142), Զաւհրապ 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 բ, Մխական 359), Զօրապ 1654 թ. (Մխական 84—85), Զաւրապ 1655 թ. (Այրարատ 340), Սուրապ 1726 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 22 բ)։

— 1. Զաւհրապ քաջ, որդի Ցովհաննէսի, որ նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Վասակաշէն (Բասարգեչար) գյու-

ղում, 1456 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 604։ (Սրա հետ նույն է Սիսական 71 «Բաջ Զոհրայ, ի Թվ. Ջէ» (=1458 թ.)=Ջալալեան, Բ. 119, Նօտարք 188. Թվականի տարբերությունը Ե և Է տառերի նմանության պատճառով է)։

— 2. Զաւհրապ, նահատակվել է «ի սէրն Քրիստոսի» 1576 թ. գերեզմանաքարը գտնվում է Աղամխան գյուղի գերեզմանատան մեջ։—Սմբատեանց, Գեղարքունի 508։

*ԶՈՀՐԱՑ, իգ. < արաբ. زهره zuhra «արուսյակ, լուսաստղ» բառից, որ Մահմեդականների մոտ այժմ էլ իգական անուն է։ Իբրև հասարակ անուն ավանդված է մեր մեջ Է դարից (Շիր.), բայց իբրև անձնանուն՝ հնագույն հիշատակությունը ԺԲ դարից է։

— 1. Զարհայ! դուստր Ռոմանոսի և քույր Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշէնի նշանավոր Աւետարանը։ 1211 թվին արդեն մեռած էր։—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 43։

— 2. Զոհրայ, կին Սարգսի, հիշված է 1311 թվից հետո (ԺԵ դար).—Ջեռ. Թաւր. 74 բ։

— 3. Զոհրա, հիշված է 1593 թ.—Ջեռ. Ագուլ. (Արար. 1911, էջ 562)։

ԶՈՂՈՄ, ար. ծագումն անհայտ. գուցե Սողոմոն? մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1574 թվից առաջ.—Ջեռ. Վասպ. 681։

ԶՈՄՆ, ար. ծագումն անհայտ. մի անգամ միայն ունինք ավանդված՝

— Զոմն, իշխան Սահառունեաց. մին այն չորս նախարարներից, որոնց Տիրան Բ ուղարկեց Դանիէլ քորեպիսկոպոսի մոտ, հրավիրելու կաթուղիկոսական աթոռը «347 թ».—Բուզ. Գ. ժդ։ (Գրգչ. Բնն. Պատմ. Գ. 33 ընդունելով հայցական հոլով, ուղղականը դնում է Ոմն։ Իսկ Marquart, Հայ Բդեաշխք, Վիեննա 1903, էջ 12 զոմն, ոմն համարում է միջակ անուն «մեկը, մեկին»։ Նըկատում է նաև, որ Բուզ. Գ. ժբ «Սահառունեաց իշխանը դիտմամբ բոլոր յիշուած իշխաններուն մէջ անանուն կը մնայ»)։

*ԶՈՅԷ, իգ. < հուն. Ζωή անունից, որ բուն նշանակում է «կյանք». սրանից է նաև ռուս. Зоя. մեր մեջ չէ գործածված. կա միայն՝

— Զոյէ, դուստր հունաց Կոստանդին Ը կայսեր, որ Արշակունեաց հարստության վերջին շառավիղն էր։ Զոյէ նախանձոտ, մեքենայող և անհանդարտ մեկն էր. ամուսնացավ Ռոմանոս Արգիրոսի հետ, որ Կոստանդին Ը-ից հետո կայսր հրատարակվեց

(1028 թ)։ Զար Զոյէն նախ մի վանքի մէջ փակեց իր քրոջ՝ Թէոդորային և ապա թունավորեց իր ամուսնուն՝ Ռոմանոսին, բայց տեսնելով որ մահը ուշանում է, բաղնիքի մէջ խեղդել տվեց։ Նրա մահվանից հետո ամուսնացավ Միքայէլ Դ-ի և սրա մահվանից հետո էլ Միքայէլ Ե-ի հետ (1041)։ Երկրի իշխանությունը ամբողջապես իր ձեռքն առնելու համար, Միքայէլ կայսրը Զոյէին վանքի մէջ փակեց. սրա վրա ժողովուրդը ապստամբվեց և մեծ բազմությամբ պալատի վրա արշավեց։ Ապստամբների մէջ մեծ դեր ունեցան մանավանդ կանայք, որոնք հերարձակ ու փայտերով զինված ավերում թալանում էին ամեն ինչ և կոտորում հակառակորդներին։ Նրանք պահանջում էին Զոյէին, որին իրենց մայրն էին կոչում։ Երբ ամբոխը հասավ պալատ, քարացած մնաց, երբ պատշգամբում տեսավ Զոյէին, թագը գլխին, թագավորական ծիրանին հագած. և իր ամենաճոխ զարդերով զարդարված։ Իր ամուսինը՝ Միքայէլ Ե խոհեմություն էր ունեցել վանքից հանելու նրան և պալատ փոխադրելու։ Բայց նա անխոհեմություն էր ունեցել Զոյէի կողքին կանգնած՝ դուրս գալու ժողովրդի առաջ։ Ամբոխը սկսեց նախատել ու նետերով հարվածել նրան։ Կայսրը հրամայեց իր զորավարին՝ կոտորել ամբոխը. նույն օրը 2000 դիակ փռվեց ժողովուրդից։ Բայց այս կոտորածը ավելի գրգռեց ժողովրդին, որ երկրորդ օրը նոր ուժերով և ավելի կատաղությամբ հարձակվեց պալատի վրա։ Հազար զոհ նորից ընկավ ժողովուրդից։ Բայց ժողովուրդը չընկճվեց, գրավից պալատը, ջարդեց փշրեց ամեն ինչ, կայսրը փախավ և մի վանք մտնելով իր կյանքը ազատեց (1042)։ Ամբոխը վանքից արձակեց Զոյէի քրոջ՝ Թէոդորային և երկուսին միասին կայսրուհի հրատարակեց։ Մի ժամանակ հետո Թէոդորան կրկին վանք մտավ, իսկ Զոյէն ամուսնացավ Կոստանդին Մոնոմախոսի հետ (1042—1055)։ Զոյէն մեռավ 1050 թվին և հույն եկեղեցու սրբոց կարգը դասվեց։—Տէր Սահակեան, Հայ կայսերք 381—395։

*ԶՈՍԻՄԷ, իգ. < հուն. Ζωσίμη անունից, որ նշանակում է «կորովի, կենսունակ» (ծագում է ζώω «ապրել» բայից)։ Կա նաև նույնի արականը, որ է Ζώσιμος, որ և իբրև հասարակ անուն նշանակում է «կորովի, կայտառ»։ Իբրև անձնանուն՝ երկուսն էլ գործածական էին հունաց և լատինների մէջ։ Այսպես կան՝ Զոսիմոս՝ հույն պատմիչ Ե դարից, Zosimus պապ Հռոմի 417—8 թ., Զոսիմոս զօրական՝ նահատակ, Զոսիմոս լեռնական կրոնավոր նահատակ, Զոսիմոս ճգնավոր, որոնց վկայաբանությունը անցել

է մեր Յայսմաւուրքի մեջ։ Արական ձևը տես հաջորդով. իսկ իգ. Զօսիմէ ձևը հիշում է Թր. քեր. 40 իբրև օրինակ հատուկ անվան, որ չկա հույն բնագրում։ Շատ ավելի ուշ ունինք Լեհահայոց մեջ Զօսիմէ անունը՝ 1630 թվից (գրված է Զօսեմ. տես Տաշեան, Ցուց. 953)։

*ԶՈՍԻՄՈՍ, ար. ծագումը տես նախորդ հոդվածում։ Գտնված է մեր մեջ մի անգամ Զօսիմա ձևով. այսպես՝

— Զօսիմա քահանա Հաղարծնի. շինել է տվել մի անագին կաթսա և նվիրել նույն վանքին՝ 1232 թ։ Կաթսան գտնվեց Հաղարծնի վանքի խցերի առաջ թաղված և այժմ Հայաստանի Պետական պատմական թանգարանումն է։ Արձանագրությունն է. «Ի Թ. ՈՁԱ ես Զոսիմա քահանայ մեղապարտ անձամբ ստացա զկոբս յարդեանց իմոց. միաբանքս ետուն ինձ ի տարին Ա ժամ Գորգա զաւրավարի տանին»։—Սմբատեանց՝ Գեղարքունի 182, Բարխուտարեանց՝ Արցախ 369, Շողակաթ 184։

ԶՈՐԹ, ար. ծագումն անհայտ։

— Զօրթ եպիսկոպոս, խորհրդական Մեծն Ներսէսի («353—373 թ») և տեսուչ աղքատանոցների.—Բուզ. Զ. ե.—սեռ. Զօրթայ՝ անդ։

ԶՈՐԹՈՒԱԶ, ար. ծագումն անհայտ։

— Զօրթուազ եպիսկոպոս Վանանդի. ժամանակակից Խոսրով Գ (մ. «415 թ») թագավորի.—Բուզ. Զ. ժբ.—սեռ. Զօրթուազու՝ Բուզ. Զ. ժբ. (ցանկում Զօրթուազայ)։ [Զամչ. Ա. 448 գրում է Զորթուաս]։

ԶՈՒԱՏ, ար. ծագումն անհայտ։

— Զուատ, եղբայր Սարգիս աբեղայի, որ օրինակեց Ոսկեփորիկը Գլաձորում, 1317 թ. այդ թվականից առաջ Զուատը նահատակվել էր անօրեններից՝ տակավին երիտասարդ հասակում.—Ձեռ. Վիեն. Բ. 857, Սխական 133, Նոր վկ. 120. Ազգապ. 1838։

*ԶՈՒԱՐ, ար. < պրս. زوار Zavār անունից, որ բուն նշանակում է «սպասավոր». Ռուստամ քաջի եղբոր անունն է։ Հայոց մեջ ունինք մի անգամ ԺԸ դարից (տես տակը), բայց կա նաև Զուարեան ազգանունը (Կովկաս)։

— Զուար քահանա Ճիյէրճիօղլու. գրել է Երուսաղէմի Ս. Տեղեաց նկարագրությունը և ազգային կյանքը (1712 թ)։—Երեմ. չէլ. օրագր. առաջաբան, էջ իբ, ծան.)։

*ԶՈՒԱՐԷՆ, ար. փաղաքշական անուն, որ կազմված է իրան.

ēn մասնիկով. ինչ. Սուրէն, Գուրգէն, Արտէն, Վազգէն, Բաբկէն են (Հիւբշ. 90). հմմտ. زواره Zawārа զորավար պարսիկ՝ Համավերանի ճանապարհորդում (Շահն. հտ. 2, էջ 23)։

— ԶուարէՆ Անձաւացի, Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին («452 Թ»).—Եղիշ. 150։ (Զամչ. Բ. 86 գրում է Զուարէն կամ Զուրէն)։

+ԶՈՒԱՐԹ, իգ. < հյ. Զուարթ «ուրախ» ածականից. նորակերտ անուն. համապատասխան են հյ. Ուրախ և պրս. خرم Xurram անունը (արական), որ նույնպես նշանակում է «ուրախ» (ՓԴ 204)։

*ԶՈՒԱՐԻԿ, ար. < Զուար անունից -իկ փաղաքշական մասնիկով։

— Զուարիկ, զավակ Թումայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 Թ.—Ջեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 850)։

+ ԶՈՒԶԱՅ, իգ. < հյ. զուզայ բառից, որ մի տեսակ արծաթե դրամի անուն էր և գործածվում էր դեռ Ժ դարում (տես Արմ. Բառ.)։

— 1. Զուզայ (սեռ. Զուզին ձևով), մայր Յովհաննէս քահանայի, որ մի այգի է նվիրել Մակարավանքին (Ղազախ), 1260 Թ.—Բարխուտ. Արցախ 375։

— 2. Զուզայ (սեռ. Զուզային) մայր (կամ կին) Մխիթարի, որ էր առաջնորդ Նորատուս գյուղի (Թվականն անհայտ)։—Շահխաթ. Բ. 239, Սիսական 47, Սմբատեանց՝ Գեղարքունի 485։

ԶՈՒԹՂՈՒ, ար. ծագումն ինձ անհայտ. մեկ անգամ գտնում եմ գործածված 1624 թվի մի արձանագրության մեջ՝ Յովսէփեան՝ Խաղբակեանք 252։

ԶՈՒԻԹ, ար. ծագումն անհայտ։

— Զուիթ երեց Արտաշատի. աշակերտ Մեծն Ներսէսի. իբրև հովիվ՝ կամովին հետևեց գերիների բանակին դեպի Պարսկաստան և Շապուհի ձեռքով նահատակվեց (Արշակ Բ-ի գերությունից հետո), «369 Թ»։—Բուզ. Դ. ծե, ծզ. Սամ. անեց. 67.—Զըւատ՝ Յայսմ. փետր. 3.—սեռ. Զուիթայ երիցու՝ Բուզ. Դ. ծզ, ծէ.—սըրանից սխալվելով Խորենացին, գրել է ուղ. Զուիթայ, որով և հյց. զԶուիթայ երէց՝ Խոր. Գ. լե.—զԶուիթայ երիցուէ՝ Խոր. Գ. լե.—նրան հետևելով՝ ուղ. Զուիթայ՝ Արծր. Ա. Ժ.—զԶուիթայ քահանայէ՝ Արծր. Ա. Ժ.—նաև սեռ. Զուատայ՝ Յայսմ. փետր. 3.—այլ ձձ. Զուբա, Զուիղա՝ տես Տաշեան, Ցուց. 1088։

*ԶՈՒԼԱԼ, իգ. < արաբ. زلال zulāl «պարզ, մաքուր, հստակ, վճիտ»։ Զուլալ բառը սակայն Պարսից մեջ ունի շատ հատկանշական նշանակություն, որ Գէորգ դպիրը իր Բառարանում (էջ 72 բ) հետևյալ ձևով է բացատրում. «Բայց որ առ մարգիկ հռչակեալ է՝ այն է, զի մինչ ի յոյժ բարձրագոյն լերինս ձիւնն ոչ հալի, և ամ ըստ ամէ յիրերաց վերայ ձիւն անղացեալ՝ հնանայ, արտադրի ի մէջ ձեանն իր ինչ հանգոյն որդան ըստ չափու մատին, և ջուրն որ է ի մէջ նորին՝ այնչափ քաղցր է՝ մինչև հաւասարիլ նմա քաղցրութեան շէքէրի, և այն է որ կոչի Զիւլալ»։ Սրա հետ կարելի է համեմատել Ստրաբոնի տված տեղեկությունը. «Ասում են թե ձյունի մեջ սառչելուց դատարկ գնդեր են ձևանում, որոնք պարունակում են մաքուր ջուր. սրանց պատյանը կտրում են ու խմում։ Ձյունի մեջ կան նաև անասնիկներ, որ Ապոլլոնիդեսը կոչում է սկոլեքս (որդ), իսկ Թէոփանեսը Թրիփս (ցեց)։ Այս անասնիկների ծնունդը նմանեցնում են այն ճանճիկներին, որոնք առաջ են գալիս բովերի բոցից ու կաղախից» (Ստրաբոն [Հայոց մասին], Երևան 1940, էջ 57)։ Մեր մեջ Զուլալ իբրև անձնանուն գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։ Այժմ խափանված է։

— 1. Զուլալ (խաթուն), դուստր Յովհաննէսի և կին Արթուխշահի. Աղթամարում Գրիգոր արեղային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Սալնապատի Ս. Կարապետ եկեղեցուն, 1470 թ։—Ջեռ. Վասպ. 459։

— 2. Զուլալ խաթուն, ազգական Էդլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ջեռ. Վասպ. 473։

— 3. Զուլալ խաթուն, թերևս կին Տէր Յովհաննէս Մանկասարի՝ ուսուցչի Յովհաննէս քահանայի, որ Արճէշի Սոսկոն գյուղում օրինակեց մի Աւետարան, 1489 թ։ Զուլալ խաթունը «շատ մէրութիւն» արել էր գրչին։—Թորոս աղբ. Բ. 437։

— Զուլալ անունը հիշված է նաև 1534 թ. (Ջեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 52 ա), 1552 թ. (Ջեռ. Վասպ. 654—5), 1576 թ. (տպ. գՈւլալ՝ Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 470), 1675 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 83). մի քանի անգամ էլ հիշված է Ջեռ. Արգ. յովհ. էջ 163—4 (ԺԸ դար). բայց հրատարակիչը գ-ով հայցական է կարծել և էջ 235 անվանացանկում էլ դնում է Ուլալ!

*ԶՈՒԼՂՐԷՆ, ար. < արաբ. ذوالقرنين Zūlqarneyn ձևից, որ Մեծն Ալեքսանդրի անունն է։

— Զուլղրէն, որդի Յակոբ Զուղայեցու, որ 1550 թվին հաստատվել էր Հնդկաստանի Բիջմիր քաղաքում։ Մի օր, Հնդկաց

Աքբար Թագավորը տեսնելով իննամյա Զուլըրէնին, շատ է հավանում նրա գեղեցկության և ինքը որդի չունենալով՝ որդեգրում է նրան, իբրև ապագա ժառանգ Թագավորության։ Հայրը համաձայն է առնում տալ որդուն, միմիայն այն պայմանով, որ որդունպահեր իբրև հայ-քրիստոնյա։ Աքբարը խոստանում է և իր խոստումը կատարում։ 1563 Թվին Աքբարը ունենում է մի արու զավակ՝ Միրզա Սալիմ անունով։ Երբ Աքբարը մեռնում է (1605), Միրզա Սալիմը դառնում է Թագավոր՝ Նուրադդին Ջանգիր անունով։ Զուլըրէնը կասկածելով որ եղբայրը կսպանի նրան, քաշվում է Բանգալայի Հուգլի քաղաքը և առանձնանում մի պալատում։ Ապա ընտրում է ճգնական կյանք և դառնում նշանավոր բանաստեղծ։ Նա գրում է հնդկերեն լեզվով սքանչելի բանաստեղծություններ կյանքի ունայնության մասին։ Նրանք այնքան գեղեցիկ են, որ անցել են Հնդիկների Ռագմալ կոչված հռչակավոր Տաղարանի մեջ (Գ. Լևոնեան, Հայկաշէն 1917, № 1)։—Սխալ է Զուլղրէն անունը աղավաղյալ համարելով՝ ուղղել և դարձնել Սուրէն։

ԶՈՒԼՈՒ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԳ դարից ուշ՝ անհայտ Թվականով։

— Զուլու խաթուն, հիշված է 1279 Թ. գրված մի ձեռագրի մեջ՝ բուն տիրոջ անունը եղծելով (Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 5)։

*ԶՈՒԼՈՒՄ, իգ. < արաբ. ظلم zulm (ժղ. zulum) «անիրավություն, բռնություն, հարստահարություն». բայց ժողովրդական գործածությամբ նշանակում է նաև «շատ, յոյժ, շատ աչքի ընկնող, չափազանց» և նման իմաստներով։ Մի անգամ գտնում եմ գործածված Ջեռ. Վասպ. 583 անԹվական մի հիշատակարանում, որ Լալայեանը դնում է ԺՇ դարից։

ԶՈՒՆԱԹ, ար. (ձևն անորոշ, ուստի ծագումն էլ անհայտ), մի անգամ գտնում եմ գործածված ԺԳ դարում։

— Զունաթ, որդի Հայրանունի. իր եղբայրների (Սասանայ և Վահրամ) հետ շինել է Տաշքէնդ (Նոր-Բայազէտ) գյուղի Ս. Աստուածածին եկեղեցին (ԺԳ դար).—Սիսական 72 (Զունաթ ձևով), Սմբատեանց՝ Գեղարքունի 629 (Զունիթ ձևով)։

ԶՈՒՊԱՅ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1576 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 8 բ)։

ԶՈՒՍ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված ԺԳ դարում։

— Զուս, հայր կամ պապ Մխիթարի Միսալուքենց, որ շինել է Անիի Ս. Փրկիչ եկեղեցու զանգակատունը, ուր կախել է և զանգակներ, 1291 թ.—Շիրակ 86, Սարգիսեան՝ Տեղագր. 124։

*ԶՈՒՐԱԹ*, ար. ծագումն ինձ անհայտ (հմմտ. Սուրաթ). մի անգամ գտնում եմ հիշատակված մի անթվական հիշատակարանում (Ջեռ. Նոր-Բայազ. 31 բ)։

Ζουρβανέλης, ար. դեսպան որ Բասենի կիւրապաղատը ուղարկեց Կոստանդին Պերփիրոժէն (911—944 թ) կայսեր մոտ— Justi 388 (հմմտ. Զրուանդ)։

*ԶՏԱՆ*, իգ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված ժԵ դարում։

— Զըտան, կին կամ մերձավոր ոմն՝ տանուտեր խոջա Խըդըրշահի, որ Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ջեռ. Վասպ. 496։

**ԶՐԵՒԱՆԴԱՏ*, ար. < պհլ. Zurvāndāt, պրս. زرواندا Zarvāndād անունից, որ նշանակում է բուն «ժամանակից ստեղծված». նույն է զնդ. zrvō-dāta-(Հիւբշ. 42)։ Ավելի հետո Զրուանը (որ է «ժամանակ» < զնդ. zrvan-) ըմբռնվելով իբր աստված (Bartholomae 1704), կամ նույն իսկ նույնանալով Զրադաշտի հետ (ԳԴ 66 Zarvān buzurk=Zardušt buzurk), Զրուանդատ ըմբռնվել է իբր «Զրուանի ստեղծածը»։ Այս անունով հայտնի են Պարսից մեջ Զրուանդատ՝ հայր Մահդատ մոգի, Զրուանդատ՝ որդի Միհր-Ներսեհի։

— Զրեւանդատ տանուտեր Գողթան, հաջորդեց Սահակ Տարոնեցուն (նախ քան Լուսաւորիչ՝ ըստ Ազգարպ. 55).—Օրբ. ե. Սիսական 312։

**ԶՐՈՒԱՆԴ*, ար. < պհլ. Zurvān, պրս. Zarvān ձևից, որ է զնդ. zrvan—«ժամանակ», հետո աստվածացյալ (Հիւբշ. 42)։ Հմմտ. Եզն. 113 «Մինչ չև բնաւ էր ինչ, ասեն, ոչ երկինք և ոչ երկիր և ոչ այլ ինչ արարած, որ յերկինս կամ յերկրի, Զրուան ոմն անուն էր,որ թարգմանի բախտ կամ փառք»։ Տառադարձված է հուն. Ζουρουάμ, ասոր. Z(u)rvān.—Ունինք Պարսից մեջ Զերվան՝ սեննեկապետ Նուշիրվանի (Տահհ. հտ. 6, էջ 234). բայց կա նաև Zarēvand՝ Մազանդարանցի քաջ ոմն (Justi 381 բ), Zōraṇd, Zawrand՝ մոգ որին Շապուհը դեսպան ուղարկեց Յուլիանոսի մոտ (Justi 387 բ)։

— 1. Զրուան՝ Հայկ նահապետի հայրը! սեռ. Զրուանայ՝ Սեբ. ա (տես Մատիկեան ՀԱ 1913,28)։

— 2. Զրուանդ, որդի Խլղաթի (1606 թ).—Ջեռ. Թաւր. 21։

— 3. Զրուանդ՝ հիշված 1606 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 85։

— 4. Զըրւանդ տանուտէր 1608 թ.—Ջեռ. Վասպ. 256։

*ԶՐՈՒԱՆԴՈՒԽՏ, իգ. < պհլ. zurvān (տես նախորդ երկուսը) + duxt «դուստր» բառերից (Հիւբշ. 42)։ Այս անունով հայտնի է Պարսից թագուհի Զրուանդուխտ (Միխ. ստ. տպ. 1870, էջ 319). մեր մեջ էլ ունինք՝

— Զրուանդուխտ թագուհի Հայոց, կին Խոսրով Գ-ի (մ. «415 թ»). Պարսից թագավորի քույրն էր.—Բուզ. Ջ. ա։

Զօրա տես Զօրավար։

*ԶՕՐԱԲԱԲԷԼ, ար. < եբր. זרבבל Zərubābel անունից, որ է բաբել. Zēr-Bābili «սերունդ Բաբելոնի» (Gesenius 205)։ Այս անունով հայտնի է Հրէից մեջ Դաւթի ցեղից մի իշխան, որ հրյա ժողովուրդը Բաբելոնի գերութիւնից հայրենիք վերադարձրեց (Ն. Ք. 536) և նորոգեց Երուսաղէմի տաճարը (Եզր. Բ. 2, Անգէ ա և շար)։ Տառադարձված է հուն. Ζοροβάβελ (լտ. ֆրանս. Zorobabel), որից և հյ. պիտի լիներ *Զօրօբաբէլ։ Բայց շփոթվելով և հայկական մի բարդութեան ձև ստանալով՝ կազմվել է Զօրաբաբէլ (օ տառով և ա հօդակապով)։ Մեր մեջ այս անվան հին գոյութեան համար վկայութիւն չունինք. բայց նրանից է Զօրաբաբէլեան ազգանունը (1847 թ. Ազգապ. 3813)։

ԶՕՐԱՅ, ար. ծագումը անհայտ. (Justi 387 ա ուզում է դնել ասոր. ܙܥܘܪܐ zʿūrā «փոքր» բառից)։

— 1. Զօրայ նահապետ Գնթունեաց. չարախոսեց Արշամ թագավորի (10—1 թ) մոտ, թե Բագրատունիք ուզում են ապստամբել։—Խոր. Բ. իդ.—գրված Զուրա՝ Յհ. կթ. ե.—սեռ. Զուրայի՝ Ուխտ. Ա. լ։

— 2. Զօրայ նահապետ Ռշտունեաց, որդի Մանաճիհր Ռըշտունու, տեր Աղթամարի, սպարապետ հայոց հարավային գնդի. Տիրան Բ («339—350 թ») թագավորի հրամանով ուղարկվեց օգնական Յուլիանոս կայսեր. բայց անսաստելով ետ դառնալու պատճառով՝ ընտանյոք կոտորվեց։—Խոր. Գ. ժե.—Զուրայ՝ Հաւաք. 11, 12.—սեռ. Զօրայի՝ Խոր. Գ. ժե (երկու ձ. Զարայի).—Զուրայի՝ Հաւաք. 11, 12։

— 3. Զուրայ, որդի Քաջն Վարդան Մամիկոնեանի. հօրը հետ նահատակվեց Աւարայրի դաշտում «451 թ».—Ցարբ. Հին դպր. 299, Հայապ. 190։—Սրանցից դուրս, այս մասին խոսված է նաև

Երուսաղէմի № 1 քառահատոր մեծ ճառընտրի մէջ՝ Պատմ. վարուց Թաթլոյ, օրինակված 1419 թ. տես Գ. եպս. Յովսէփեանի ժողովածուն, որ այժմ գտնվում է Երևանի Մատենադարանում, ինչպես հաղորդեց ինձ տիկ. Ռուզան Տիտանեան, 1943 թ. դեկտ. 24-ին։

+ ԶՕՐԱՎԱՐ, ար. < հյ. զօրավար բառից, որ Ս. Սարգսի և Բաշն Վարդանի վերադիրն է։ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 214 կարծում է թե մեր մէջ այս անունը ներկայացնում է Ս. Գէորգը)։ Պարսից մէջ էլ կա زوراور Zōrāwar իբրև անձնանուն, որ ունի նույն նշանակությունը. հմմտ. Zōrāwar xān ժամանագիր, Zōrāwar Singh թարգմանիչ հնդկերենից (Justi 387 բ)։

— 1. Զօրավար, որդի Ապիրատի, թոռն Գր. Մագիստրոսի, եղբայր Գրիգոր Գ կաթուղիկոսի, Ներսէս Շնորհալու (մ. 1173) և Վասլի։—Պատմ. լմբ. 226. Տաշեան, Ցուց. 638. Հայապ. 414.—որ և Շահան (տես այս անունը)։

— 2. Զաւրավփր քահանա, նվեր է տացել մի Աւետարան՝ Միխայլ անուն ոսկերչից, Որմենի (Ուրմիա?) քաղաքում, 1201 թ.—Շողակաթ 193։

— 3. Զաւրվար միակեաց, հիշված Կիլիկիայի Բաղնէկունք գյուղում (Ատանա), 1292 թ.—Թորոս աղբ. Բ. 436։

— 4. Զաւրվար գրիչ, աշակերտ Տէր Գրիգոր Զաղրոցի. օրինակեց Աւետարանը Տիւրիկում, 1480 թ.—Թորոս աղբ. Ա. 231։

— 5. Զօրվար, հիշված է 1593 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 194 բ։

— 6. Զօրավար, հիշված է 1622 թ.—Դրնդ. 614։

— 7. Զաւրվար երեց, որդի Ստեփանոս քահանայի. իր դեռաբույս զավակի՝ Յովհաննէս սարկաւագի համար գրեց մի Աւետարան (ՃՒԸ և ՃԸԲ).—Թորոս աղբ. Ա. 230։

— Այս անունն է որ կրճատմամբ դարձել է Զօրա (փաղաքշաբար Զօրիկ). որից էլ Զօրայեան, Զօրեան ազգանունները։ Զօրա անվան ամենահին հիշատակությունն է՝

— 8. Զօրա (գրված է որոշիչ հոդով՝ Զաւրան), որդի Թաթուլի, ստացավ մի Մաշտոց, որ գրել տվեց Երեմիա գրչին և նվիրեց Կոնթեր գյուղի եկեղեցուն, 1474 թ։—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 339)։

— Սրանից շատ ավելի ուշ՝ գտնում ենք Գալաթի (Պոլիս) Ս. Հրեշտակապետ եկեղեցու աղբյուրի արձանագրության մէջ՝ Զօրայ ձևով, 1836 թ. (տես Բանասէր 1899, էջ 125)։

— Զաւրիկ ձևը գտնում ենք 1578 թ.(Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925·

472), որից Ջուրիկեանց ազգանունը (Կարին)՝ հիշված 1810 թ. (Նոր. վկ. 631)։

ՋՈՐԱՓԱՇԱ, իբրև իգ. անուն հիշված է 1678 թ. Նոր-Ջուղայում (Ձեռ. Բեռլինի, 13 ա). բայց ավելի հին է Ջարափաշա, մր. 1553 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 578)։ Չգիտեմ թե ինչպես պետք է կապել նախորդի հետ։

# Է

ԷԱՆՈՍ, ար. ծագումը ինձ անհայտ։

— Էանոս, իր կնոջ՝ [Խա]թունի և իր որդու՝ Սագոնի հետ նվերներ է արել Տեղերի վանքին (թվականն անհայտ)։—Արձ. Բանաս. 1903, էջ 29։

ԷԱՉԻ, ար. ծագումը ինձ անհայտ։ (Գրված է նաև Իաչէ, Եւաչէ՝ Հայապ. 529, Եաչի, Յէաչի, սեռ. Էաչոյ)։

— Էաչի, որդի ամիր Հասանի, թոռ Պռօշի, որդւոյ Վասակայ, Պռօշեանց կամ Խաղբակեանց ցեղից. ծնվել է 1268—73 թվերի միջև. ամուսնացավ Ելիկում Օրբելեանի դուստր Մամախաթունի հետ. հիշված է բազմաթիվ արձանագրությանց մեջ, որոնցից նշանավոր են Խոտակերաց Ս. Նշանի (պահվում է էջմիածնի տաճարում) և Ցախաքարի արձանագրությունները (տես Շահխաթ. Ա. 65, Բ, 365, Սիսական 156)։ Իր որդիներն են՝ Վասակ, Ամիր Հասան Բ, Ամիր Ասաթ և Ջումի։ Մեռել է 1317 թ։— Օրբ. կը, կթ.—սեռ. Էաչոյ՝ Օրբ. կե.—գրված Իաչէ՝ Տաշեան, ծղվ. առ. վրդ. 119.—Այրարատ 269. Ցովսէփեան, Խաղբակեանք 181—189։

ԷԱՍԼԱԻՈՒՐ, ար. ծագումը անհայտ. մի անգամ հիշված՝ թվականն անհայտ մի տապանաքարի արձանագրության մեջ՝ Սուրմալու գավառի Արասգօլ գյուղում (Ս. Հայկունի, Բագրևանդ 365)։

*ԷԲԱԹ, իգ. < արաբ. هيبت heybat «ահ, սարսափ, վախ, բայց նաև՝ պատկառանք». այս բառը Ղազանի թաթարների մոտ դարձել է ايبت eybet և նշանակում է «գերազանց, զարմանալի, գեղեցիկ» (Будагов, հտ. 2, էջ 317 ա)։ Արդի թուրքերի մոտ էլ կա Հէյբաթ անունը, որ արական է։ Սրանից է Բագվի մոտ Բիբի-Հէյբաթ արվարձանը, որ այսպես է կոչված Հէյբաթ սրբի

*անունով։ Մեր մեջ* Էքաք *իգական է և հիշված է միայն մի ան-գամ 1671 թ.* (Bodleian *161)։*

*ԷԳՆԱ, ար. Թվում է թե ծագել է Իգնատիոս անունից. գործածական էր անցյալ դարում Պոլսում, և նրանից է ծագել Էգնայեան ազգանունը։ Քոսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 292 հիշում է ժամանակակից ոմն՝* Հէքնա *Քիպրիթճեան անունով։*

**ԷԴԻԼ, ար. < արաբ.* عادل ʿādil *«արդար» բառից, իբրև անձնանուն գործածական էր նաև Իսլամների մոտ. հմմտ.* Էդիլ *ամիրա Սուլթանբէկի, հպատակվեց Էլէնկթիմուրին (Մեծոփ. 12=Աղգապ. 1968),* Էդիլ՝ *Երևանի Թուրք մեծամեծներից մին (Զքր. սարկ. Բ. 58), նաև* Ատլշահ *եղբորորդի Նատիրշահի, Թագավորեց Ատրպատականում, 1747 թ. (Ջամչ. Գ. 837)։ Մեր մեջ գործած-ված է ԺԵ—ԺԸ դարերում։ Սրանից է* Էդիլեան *ազգանունը։ Հմմտ. նաև* Ադիլխան, Էդիլշահ, Էդիլ-մելիք, Էտիլբէգ։

— 1. Էտիլ, *որդի Սողոմոնի և եղբայր Կարապետ քահանայի, որ Ղազար անուն անձից նվեր ստացավ մի Ավետարան, որ գրել էր տվել Սարգիս աբեղային, 1479 թ.—Ձեռ. Կես. ածած. 47 բ։*

— 2. Էտիլ, *հիշված է 1480 թ. Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի մի արձանագրության մեջ։—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, էջ 72 և Նոր-Նախիջ. Ս. Խաչ վանքը, էջ 12։*

— 3. Էտիլ, *որդի Նուրիճանի, որ Ագուլիսում, Գրիգոր աբե-ղային գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։*

— 4. Էտիլ, *հորեղբորորդի Զաքար աբեղայի, որ գնեց մի Շարակնոց՝ 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։*

— Էդիլ *անունը ավելի ուշ հիշված է՝ սեռ.* Էդլին *ձևով, փգ! 1543 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 377), սեռ.* Յետիլին, *իգ! 1555 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 335),* Էտիլ *1579 թ. (Տան, Արևել. Հայք 19),* Այդիլ՝ *1695 թ. (Ձեռ. Թաւր. 133 բ), ԺԸ դարից (Գով-րիկեան, Հայք յԵղխսար. Բ. 174)։*

**ԷԴԻԼԲԷԿ, ար. < արաբ.* عادل ʿādil *«արդար»+թրք.* بك beg *«իշխան» բառերից։ Երկու անգամ ավանդված է ԺԵ դարում և մի անգամ էլ ԺԷ դարում։*

— 1. Յետելբէկ, *եղբայր Ղազար գրչի, որ Տրապիզոնում օրինակեց Հարանց վարքը՝ 1422 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 58 ա։*

— 2. Էտիլպէկ, *որդի պարոն Թորոսի և կրտսեր եղբայր էլպաշի Էմինպէկի (տես այս անունը). մեռավ Կեսարիայում, 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։*

— 3. Էտլի-բէկ (*այսպես տպված*), *հորեղբայր Մարխաժի, որ Վանում, Յովանէս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1617 թ.—Ձեռ. Վասպ. 854։*

*ԷԴԻԼՄԵԼԻՔ. *իգ.* < *արաբ.* عادل ʿādil «*արդար*»+ ملك melik «*թագավոր*» *բառերից. հիշատակված է ԺԵ դարից։*

— 1. Էդըլմէլիք, *դուստր Թուլուխի և քույր Յովհաննէս քահանայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Նոտարք 69։*

— 2. Ետիլմելիք, *ազգական Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Ավետարան, 1425 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 486։*

— Էդիլմելիք *իբր իգ. հիշված է նաև անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1304 թվից ուշ.—Ձեռ. Վասպ. 144։*

*ԷԴԻԼՇԱՀ, *ար.* < *արաբ.* عادل ʿādil «*արդար*»+*պրս.* شاه šāh «*թագավոր*» *բառերից։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։*

— 1. Էդըլշա *սարկավագ, որդի Յովհաննէս քահանայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Նոտարք 69։*

— 2. Էդիլշայ, *տանուտեր Ագուլիսի, նշանավոր իր բարեպաշտությամբ, «տածող և խնամածու Ագուլեաց, հայր որբոց և այրեաց», 1425 թ.—Սիսական 326։*

— 3. Էտիլշա, *հայր Խուդադադի. Ալլահդադի և Շահպարոնի. գրել տվին մի Յայսմաւուրք և ընծայեցին Սակուաբերդի Ս. Ստեփաննոս եկեղեցուն՝ 1491 թ.—Այրարատ 443։*

— 4. Էդիլշայ, *որդի Ստեփանոսի, տանուտեր, ծերացած հասակում, Յովանէս գրչին գրել տվեց մի Ավետարան, Արծկէ 1463 թ.— Ձեռ. Վեննա. Ա. 620։*

— 5. Էդըլշայ *խոջա, որդի Վարդանի. մայրն է Գոնդուլէ (որ և կոչվում է Գոնդուլխաթուն, Գոնդուլփաշա)։ Կռուց անապատում, Խաչատուր աբեղային գրել է տվել մի Ավետարան, 1475 թ։ Այս Էդըլշահը ունի մեծ գերդաստան. հայրենի պապն է Ստեփաննոս և տատը Ձենատմելիք (կամ Ջիադմելիք). մայրենի պապը՝ Սարգիս և տատը՝ Արուսխաթուն. եղբայրներն են Խդըրշահ, Սուլթանշահ (կինը Շահում, որդին Ադուպշահ), Աքանդար, Մխիթար, կինն է Խաթունջան, որդիքն են Կարապետ, Յովհաննէս, Միրաք։ Գերդաստանի մյուս անդամներն են Միրանշահ, Գուլաք, Աբգար, Սիրուն, Միրիջան, Մեքայէլ, Զուլալխաթուն, որոնց ազգականական կապը չկարողացա գտնել։—Ձեռ. Վասպ. 472—3։*

6. — Էտիլշայ, հայր Խոնաքար տիկնոջ, որ Ալեքսիանոս աբեղային գրել տվեց մի Աւետարան, Խորոսկայ վանքում, 1490 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— Էտըլշա անունը հիշված է նաև 1604 թ. (Ձեռ. Վասպ. 812) և սեռ. Էդիլշին ձևով 1608 թ. (անդ 827)։

*ԷԼԱՄԻՐ, ար. < Թթր. ايل el «ժողովուրդ»+արաբ. امير amīr «իշխան» բառերից և նշանակում է «ժողովրդի իշխան»։

— Էլամիր, հիշված է անթվական մի հիշատակարանում (Manus. brit. mus. 55=56)։

*ԷԼԲԱՍԱՆ, ար. < Թթր. ايل el «ժողովուրդ» + باصان basan «կոխող, ոտնակոխ անող»? մի անգամ գտնում եմ հիշված ԺԳ դարում։

— Էլպասան Զարգրանեցի, իր հորեղբորորդի Տօղանի հետ միասին օգնեցին (անշուշտ դրամապես) մի Աստուածաշնչի արտագրությանը, Գայլեձոր 1332 թ?—Ձեռ. Վենետ. Ա. 127, Հայապ. էջ 549։

*ԷԼԲԷԳԻ, ար. < Թթր. ايل el «ժողովուրդ»+ بك beg «իշխան» բառերից. որով ايل بكى el-begi նշանակում է «ժողովրդի իշխան». մեր մեջ գործածված է ԺԵ—ԺԸ դարերում։

— Էլբէկ, որդի Ամիրբէկի և եղբայր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեան. 18։

— Այս անունը գործածված է նաև Էլպէկ ձևով՝ 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 բ), Էլիպէկ ձևով՝ 1689 թ. (Զամբռ. 169), Էլբէկի 1707 թ? (Ձեռ. Վասպ. 1027), թվականն անհայտ՝ Էլպէկ (Բանաս. 1903, 31)։ Իբրև այժմ գործածական անուն հիշված է Էլպակ՝ Մալխասեան, Հօրոտ-մօրոտ, հտ. Գ, էջ 46։ Սրանից է Էլիբէգեան ազգանունը (Կովկաս)։

*ԷԼԴԱՐ, ար. < Թթր. ايل el «ժողովուրդ»+պրս. دار dār «ունող, կրող, պահող». հմմտ. պրս. jihāndār «պահող աշխարհի» (թագավորներին տրված տիտղոս), Թթր. ايلخان Ilxān «ցեղապետ. 2. մոնղոլական մի հարստության անուն» (Будагов 1, 206), ايلخانى Ilxānī «հրամանատար զորաց. 2. թաթարական անուն» (ԳԴ). այսպես էր կոչվում օրինակ՝ Ճենկիզ խանի պապը։ Էլդար իբրև անձնանուն գործածված էր մեր մեջ, որից Էլդարեան ազգանունը։

† ԷԼԷՆՏԻԿԻՆ, իգ. ծագումն անորոշ. ինձ թվում է թե հյ. Է՛լ եւ տիկին «նորից նույն տիկին» ձևից է (իբրև մի համանէշ

Անթառամ անվան) և ոչ թէ ֆրանս. Hélène «Հեղինէ» անունից՝ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակության մեջ՝ Ջեռ. Թաւր. 73 ա (Խաչիկ քահանայի երիցկինն է)։

*ԷԼԹԱՆԳ, իգ. < թթր. ايل el «ժողովուրդ»+պրս. تنگ tang «թանկ, թանկագին», որով ايل تنگى el-tengi «ժողովուրդի թանկագինը»։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԵ դարում։

— Էլթանգի, կին Ղազարի և մայր Սարգիս աբեղայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Նոտարք 113 (գրում է Էլթանգ), Ջեռ. Վասպ. 376 (գրում է Ելթանգի)։

*ԷԼԹԻ, իգ. < թրք. التى elti «ներ, տագերակին» բառից. իբրև անձնանուն գործածական էր նաև Թաթարների մեջ. օրինակ՝ Էլթի խաթուն, տարի կին Չարմաղան զորավարի, որ հրավիրեց իր մոտ՝ Մուղան և պատվեց Աղվանից Ներսէս Բ կաթողիկոսին (1235—1261 թ)։ Մեր մեջ գործածված է ԺԳ—ԺԴ դարերում։ Փաղաքշական ձևն է Էլթիկ (Ջեռ. Թաւր. 96 ա)։

— 1. Ելթի, կին Հասանի Շիրանշահեան՝ Մ●ծկողմանց իշխանի, որ Կեսարիայից բերել տվեց մի Աւետարան և նվիրեց Եղիշէ առաքեալի վանքին 1266 թ.—Բարխուտ. Պատմ. Աղուանից 145։

— 2. Էլթի (սեռ. Ելթոյն ձևով), մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին գրել տվին մի Աւետարան, 1304 թ.—Ջեռ. Վասպ.143։

— 3. Էլթին կամ Էլթիկ, կին պարոն Գորգի, միասին գործակից եղան իրենց որդի Յոհան վրդ. Քռնեցուն և Քռնիի վանքը նվիրեցին Երնջակի ունիթոռներին, 1330 թ.—Ջեռ. Բեռլինի, 57 բ. Սիսական 374 աբ։ Տաշեան, Ցուց. 720, Աղգապ. 1845, REA 10, 43։

— Ելթի (սեռ. Ելթէ! ձևով) հիշված է Գոշավանքի անթվական մի արձանագրության մեջ՝ Աղգագր. հանդ. Ժ, էջ 25։

*ԷԼԹՈՒԹԱՆ, ար. < թրք. الطوتان el-tutan «ձեռք բռնող» (այսինքն՝ օգնական, ձեռնտու)։ Մի անգամ գտնում եմ գործածված 1420 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Վասպ. 321)։

*ԷԼԻԱԶ, ար. < արաբ. الياس Elyās անունից, որ Եղիա մարգարեի անունն է (Կամուս, Բ. 309). օր. Էլիազ սուլթան, որ Շահաբասի գիրի տարած հայությունը քշեց Սպահան (Առաք. պտմ. 32)։ Մեր մեջ գործածված է ԺԷ դարում և սիրելի է եղած հատկապես Հնդկահայոց մեջ։ Հնագույն հիշատակությունն է 1618 թ. (Manus. brit. mus. 13 ա), ապա գալիս են 1629 թ. Նոր-Ջու-

դա (Կնիք հաւ. յոյ. էջ IV), 1652 թ? (Ձեռ. Վենետ. Ա. 762), 1671 թ. (Յովսէփեան՝ Խաղբակեանք, 254), 1684 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 49 բ), որոնցից ավելի նշանավոր է՝.

— Էլիազ, որդի խոջա Փանոսի, որ շինեց Երևանի Զորավոր եկեղեցին՝ Նահապետ կաթողիկոսի («1691—1705 թ») օրով. —Շահազիզ, Հին Երևանը 191։

*ԷԼԻԶ կամ ԷԼԻԶԱ, իգ. < եւր. Elisabeth անվան կրճատ Elisa, Elise ձևից. նորամուտ անուն. ավելի ընդարձակ տես Եղիսաբեթ։

*ԷԼԻՆԱԽ տես Ալինախ։

— 1. Էլինախ, հայր Յովհաննէս քահանայի, որ Ծարի Գետամէջ վանքում գրել տվեց մի Ճաշոց, 1411 թ.—Կրպտ. եպս.՝ Դոփեանք 184։

— 2. Էլինախ աղա ոմն, հիշված է անթվական մի արձանագրության մեջ՝ Շնաթաղ գյուղում (Սիսիանի Լորաձոր գավառ). —Ազգագր. հանդ. Գ. 160։

*ԷԼԻՓԱՇԱ, ար. < թթր. ایل el «ցեղ, ժողովուրդ»+ پاشا paša «փաշա» բառերից, իբր «ժողովրդական փաշան»։ Հմմտ. Էլիբէգ, Էլմելիք ևն՝ Հիշված է մի անգամ 1629 թ. (Կնիք հաւ. յոյ. էջ IV)։

*ԷԼԽԱԹՈՒՆ, իգ. < թթր. ایل el «ժողովուրդ»+xatun բառերից, իբր «ժողովուրդի իշխանուհին»։ Գործածված է մեր մեջ ԺԳ—ԺԵ դարերում։ Սրա կրճատ ձևն է Էլխաթ, որ մի անգամ գործածված է անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Թաւր. 74 ա։

— 1. Էլխաթուն, կին Դաւթի, որ Մրէնի կաթողիկէին նվերներ է արել՝ 1295 թ.—Շիրակ 140։

— 2. Էլխաթուն, կին Թադէոսի և մայր Զաքարիա աբեղայի, որ Անապատիկ գյուղում օրինակեց Մեկնութիւն Պատարագի, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։

— 3. Էլխաթուն, կին Խութլուբէկի և մայր Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ծանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 4. Էլխաթուն, դուստր Խնկիկի և քույր Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1392 թ. և մի ուրիշ Աւետարան էլ Զաքարիա գրչին 1393 թ.—Ձեռ. Վասպ. 226—8։

— 5. Էլխաթուն, կին Ներսէս սարկավագի՝ եղբոր Յովհաննէս գրչի, որ Խիզանում, Յովհաննէս քահանայի համար օրինակեց Աւետարանը, 1402 թ.—Ձեռ. Վասպ. 289։

— 6. Էլխաթուն, մայր կամ կին Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց՝ 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277։

— 7. Էլխաթուն, կին Գարաքմազի և մայր Աստուածատուր երեցի Արծնեցւոյ (Կոտայք), ԺԵ դարի սկիզբը.—Այրարատ 288։

— 8. Էլխաթուն, դուստր Անդրէասի և քույր Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 663։

— 9. Էլխաթուն, կին Բուքիո և մայր Մկրտիչ կրոնավորի, որ Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 151։

— 10. Էլխաթուն, դուստր Պատրանի (հայրը) և Էդլի (մայրը), կին Խաչատուրի։ Մեռավ մատաղ հասակում։ Մեռած ժամանակ խնդրեց և կտակ արավ թե «յիմ հալալ յընչիցն ինձ յիշատակ Աւետարան մի առէք և դիք ի գիւղս Խոտախոն, ի դուռն սուրբ Հրեշտակապետին»։ Ամուսինը և ծնողները կատարեցին նրա խնդիրքը և Գրիգոր աբեղային գրել տվին մի Աւետարան, 1543 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 377։

*ԷԼԽՈՒԹԼՈՒ, իգ. < Թթր. ایل el «ժողովուրդ»+ قوتلو qutlu «երջանիկ, բախտավոր» բառերից, իբրև «ժողովուրդից բախտավորը»։

— 1. Էլխութլու, կին Ամիր Ասադի (1328), Թոռնորդւոյ Պռօշ իշխանի Խաղբակեանց.—Յովսէփեան, Խաղբակեանք 203 և տոհմագրական տախտակը։

— 2. Էլխութլու, կին Յակոբշահի և մայր Թաւրիզեցի խոջա Մասուտշահի, որի խնդրանոք Գրիգոր Ծաթեացին գրեց իր Ոսկեփորիկը (1407 թ).—Տաշեան, Ցուց. 402, Նոտարք 27։

*ԷԼՄԱ, իգ. < Թրք. الما elma «խնձոր» բառից, ինչպես ունինք Խնձոր, Խնձորիկ և Խնձորշահ անունները։ Մի անգամ գրտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Էլմա, կին Թադէոսի և մայր Սարգիս գրչի, որ օրինակել է Աւետարանը Տաթևում, 1427 թ.—Ձեռ. Սևան, 8 ա։

Էլմաս տես Ալմաս:

*ԷԼՄԷԼԻՔ, ար. < Թթր. ایل el «ժողովուրդ»+ ملك melik «թագավոր» բառերից և նշանակում է «ժողովուրդի թագավոր»։ Հմմտ. Էլդար, Էլխաթուն, Էլխութլու։ Գործածված է մեր մեջ ԺԵ դարում։

— 1 Էլմելիք, հայր Գրիգոր Արծկեցու, որ գրեց մի Աւետարան, Մաղարդու վանքում, 1427 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 414։

— 2. Ելմելիք (և նախատառով), որդի պարոն Սիմէոնի, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 3. Էլմելիք հիշատակված է նաև երկու անթվական հիշատակարանում, Ձեռ. Վասպ. 186 և Ձեռ. Վենետ. Բ. 420։

ԷԼՄՈՒՂԴԱ, ար. այս անստույգ ձևով գործածված է մի անգամ 1301 թ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։ Երզնկայի Գէորգ քահանայի որդին է. «Կենակցի մերոյ կարճահասակի Նուզատն կոչեցելոյ և զաւակի իւրոյ Էլմուղդա փոխեցելոյ առ Քրիստոս»։ Ըստ երևույթին սխալական է. ուստի ուղղականը կարող է լինել Էլմուղիպ, որ կարող ենք բացատրել իբրև թթր. ایل el «ժողովուրդ»+արաբ. محب muhibb «սիրելի» բառերից (այն է «ժողովրդի սիրելին»)?

*ԷԼՉԻԲԷԳ, ար. < թթր. թրք. ایلچی elči «դեսպան»+ بك beg «բէգ» բառերից։ Իբրև անձնանուն հիշված է մի անգամ Ձեռ. Վենետ. Ա. 414, թվականն անհայտ (բայց 1427 թվականից առաջ)։ Սրանից ունինք այժմ Էլչիբեգեան ազգանունը (Կովկաս)։

*ԷԼՉԻԿ, իգ. < թթր. ایلچیچك Elčiček անունից, որ արական էր. ըստ ԳԴ, էջ 79 «է անուն արքայորդւոյ միոջ»։ Կազմված է թթր. ایل el «ժողովուրդ» և چیچك čiček «ծաղիկ» բառերից և նշանակում է «ժողովուրդի ծաղիկը»։ Մեր մեջ գործածված է ավելի պատշաճ կերպով՝ իբրև իգ. անուն, Էլչեկ, Էլչիկ, ինչպես նաև Էլչու ձևերով՝ ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Էլչու, կին Հազարբէկի և մայր պարոն Կիրակոս Սարփեցու, որ գնման միջնորդ եղավ տանուտեր Էդիլշահի և Յովհաննէս վրչի մէջն, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 2. Ելչիկ, կին Ապուհարի և մայր Համթայ առաջնորդ Բարսեղ եպիսկոպոսի, 1634 թ.—Թորոս աղբ. Բ. 430։

— 3. Էլչեկ, կին Կիրակոսի, մայր Երեմիա ստացողի, 1644 թ.—Տաշեան, Ցուց. 584 (գրված Ելչեկ, Էլչօ)։

*ԷԼՊԻՍ, իգ. < հուն. Ἐλπίς անունից, որ նշանակում է «հույս»։ Այս անունով հայտնի է սրբուհին Ելպիս, դուստր Սոփիայի. «Յիշատակ վարուց սրբոյն Սոփեայ և երից դստերցն Պիստիսի, Ելպիսի և Ագապի, որ է հայերէն Հավատ, Յոյս, Սէր, և Սոփիան՝ իմաստութիւն» (Յայսմ. > Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 398)։ Հնից ավանդված չէ մեր մեջ. բայց գործածական է այժմ Արևմտահայոց մեջ։

ԷԼՔԷԼՋԱՑ, մր. ծագումն անհայտ և ընթերցվածն էլ անստույգ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1497 թվի մի արձանագրության մեջ՝ Ներքին Ագուլիսում (Դաշտ)։ — Ազգագր. հանդ. ԺԱ. 313։

ԷԽԱՐ, մր. անստույգ ընթերցվածով և ծագումն անհայտ անուն, որ մի անգամ գտնում եմ գրված Գանձակ գյուղի (Շամախի) մի տապանաքարի վրա, որ ըստ Բարխուտ. Աղվանից երկ. 196 կրում է ՄԹ թվականը, ինչ որ կամ սխալ է և կամ հարյուրավորը պակաս։

*ԷԽՏԻԱՐ, ար. < արաբ. اختيار ixtiyār բառն է, որ նշանակում է «ընտրություն, կամք», բայց Թուրքերենում ստացել է «ծեր, ծերունի» նշանակությունը։ Մեր մեջ իբրև անձնանուն է գործածված ԺԶ—ԺԷ դարերում, ապա խափանված։ Այսպես՝ Ըխտիար 1601 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 548. սրա կողքին գտնված անվերծանելի բառը (ելսբըրդսևս պետք է կարդալ եղբօրօրդօցս), Էխտիար 1617 թ. (Bodleian 76), 1629 թ. (ՀԱ. 1913, 693, հիշված իբրև «պապ, մեծ հայր», ուստի ԺԶ դարից), Եղքիար՝ 1656 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 604), Եխթիար՝ 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1924, 517), Եղտիար՝ անհայտ թվականով (Ձեռ. Վենետ. Բ. 682)։ Երևի սրա փաղաքշականն է Էխթիկ, որ հիշված է Պոլսում ԺԷ դար (Զամչ. Գ. 672, Ազգապ. 2518)։ Համեմ. Ծեր, Հալւոր։

ԷՀԻՍԷ, ար. խանգարված անուն։ Այսպես է կոչվում Տաթևի 1513 թ. ժողովի անդամներից մեկը՝ Էհիսէ որդի Պաստախի (այսպես Օրբ. ԺՄ. 46, իսկ Սիսական 34 բ գրում է Էկլիես)։ Թվի թե ագետ գրչի վրիպակ է, փոխանակ Եղիսէ։

*ԷՀՏԻՊԱՐ, ար.< արաբ. اعتبار iʿtibār «յարգ, վարկ», որ ավաղությամբ ժողովրդական լեզվի մեջ դարձել է իթիբար, ըխթիբար, էհթիբար ևն։ Իբրև անձնանուն գտնում եմ մի անգամ գործածված 1738 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ)։

*ԷՄԻԲԷԿ, ար. < արաբ. عم ʿamm «հորեղբայր» (ժղ. լեզվով դարձած ամու, ամի)+beg բառերից։ Իբրև անձնանուն գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում Էմիբեկ ձևով (Bodleian 148)։ Սրա կրճատ ձևն է ԷՄՊԻԿ, որ հիշված է 1658 թ. (Ձեռ. Կես. ածած. 54 աբ)։

*ԷՄԻՆ, ար. < արաբ. امين emīn «վստահ, ապահով» բառից։ Սովորական անուն է իսլամների մոտ։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԵ դարից. ավելի սովորական էր Հնդկահայոց մեջ. կար նաև հազվագյուտ կերպով մեր ժամանակում (ինչ.

† Էմին Տէր-Գրիգորեանը՝ Թատրերգակ Երեւանում)։ Հմմտ. Նաև Եմին, որ համարել եմ Թրք. يمين yemin «երդում» բառից և գրել եմ սրանից տարբեր անուն։ Այսպես է նաև այսօր Թուրքերի մեջ, ուր տարբեր արական անուններ են Yemin և Emin.

— 1. Էմին ուն, որ իր կնոջ Զապլուի հետ մի խաչքար է կանգնեցրել 1443 Թ. (գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցու բակում)։—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, 49։

— 2. Եմին, որդի Խզրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 Թ.— Rapport Belgique 34։

— Էմին անունը հիշված է նաև 1565 Թ. (Ձեռ. Մաղն. 26), 1602 Թ. (Միսական 446 ր), 1649 Թ. (REA 10, 51), Հէմին՝ 1650 ական Թ. (Զամբռ 187)։

*ԷՄԻՆԲԷԿ, ար. < Նախորդ Էմին բառից+Թրք. beg, որ և տաճկական արտասանությամբ դարձել է bey.

— 1. Էմինպէ(յ), որի անունով մի խաչքար է կանգնեցրած Աքքերմանում, 1447 Թ.—Кучук—Иоаннесов, Стар. Арм. надписи... Юго-зап. Руси, էջ 34։

— 2. Էմին պէկ, պարոն Էլպաշի, որդի պարոն Թորոսի. Կեսարիայում, Տէր Յովանէ Նաղաշին գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։

*ԷՄԻՆԱԴԻՆ, ար. < արաբ. امين الدين emīn-ad-dīn «ապահով կրոնի վրա» բառից, որ նաև Իսլամների մեջ իբրև անձնանուն է գործածվում։ Մեր մեջ աղավաղ դարձել է Եմինադին, Էմնադին:

— 1. Եմինադին, որ իբրև վկա հիշատակվում է Կաֆա (Թէոդոսիա) քաղաքում, մի Աւետարանի գնման համար, 1437 Թ.—Ձեռ. Սեւ.=ՀԱ 1926, 238։

— 2. Էմնադին, քեռու որդի մահտեսի Շահբաշայի, որ Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 Թ.—Նոտարք 171, Ձեռ. Վատք. 136։

*ԷՄԻՆԷ, իգ. < արաբ. امينه Emīne անունից, որ շատ սովորական է Իսլամների մեջ և նշանակում է «ապահով» (Էմին ձևի իգականն է)։ Գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԵ դարերում։ (Գրըված է նաև Եմինե, որով միացած արական ձևին)։

— 1. Եմինայ, դուստր Երանոսի՝ հորեղբոր Բաւում միայնակյացի, որ՝ գրել տվեց մի Աւետարան, 1330 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

— 2. Էմին տիկին, գնեց մի Աւետարան՝ Մատթէոս գրչից և նվիրեց Սարգիս քահանային, 1447 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 9։

— 3. Էմնա խաթուն, քույր Թովմա վրդ. Մինասենց նշանավոր գրչի, երկրորդ կին Գուրջիբէկի և մայր Ստեփաննոս Դ (1465—1489) կաթուղիկոսի Աղթամարի։—Ակինեան՝ Գաւազանագիրք 108—9, Նոտաբք 159 (1448 թ), Ձեռ. Վասպ. 434, 437 (1460—61 թ)։

— 4. Եմին, դուստր Մելիքի, որ էր տնտես Բաբերդի Բերդակ վանքի, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

— 5. Էմին, քույր Ստեփաննոս Թոխաթեցի տաղասացի, որ ծնված է 1558 թ.—Ակինեան, Հինգ պանդ. տաղաս. էջ 121։

— 6. Էմին, իբր իգ. անուն գործածված է 1321 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 565)։

*ԷՄԻՆԷ-ՍՈՒԼԹԱՆ, իգ. նույն Էմինէ անունից+սուլթան բառից, որ հետագիր դրվելով կազմում է իգական։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 391)։

*ԷՄԻՆ-ՄԵԼԻՔ, իգ. < արաբ. أمينة Emīne անվան հետ միացած مليكة melike «իշխանուհի»։ Գործածված է մեր մեջ ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Էմին-մելիք, դուստր Աբիստակէս քահանայի և քույր Յովհաննէս քահանայի, որ Սիւնեաց Քարադնիս վանքում գրել տվեց մի Աւետարան, 1280 թ.—Ձեռ. Վասպ. 104։

— 2. Էմինմելիք, կին Սիմէոն քահանայի. միասին կանգնեցրել են մի խաչքար՝ 1464 թ. այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Լուսավորիչ եկեղեցում.—Ծահազիզ, Ազգագր. հանդ. Է, էջ 50։

— 3. Եմինմելիք ձևով գործածված է նաև անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 628)։

*ԷՄԻՆ-ՓԱՇԱ, իգ. < արաբ. أمين emīn+թրք. پاشا paša բառերից. հիշատակված է անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վենետ. Բ. 1013։

*ԷՄԻՐԶԱ, ար. ծագումը տես Ամիրզադէ. հիշված է զանազան ձևերով. այսպես՝ Էմիրզէ՝ 1602 թ. (Հայ. Վենետ. 471), Իմիրզէ՝ 1674 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 13 բ), Էմիրզէ՝ ԺԷ դար (Ազգ. մատ. ՀԸ, էջ 72), Իմիրզա՝ 1701 թ. (Սիւրմէեան, Պատմ, Հալէպի ազգ. գերեզմ. 32 բ), Էմիրզա՝ 1813 թ. (Թորոս աղբ. Բ. 452)։

Սրանից է Էմիրզէնեան ազգանունը (հիշված 1781 թ. Ազգագր. 3148)։

*ԷՄԻՐԷՆ տես Կղեմես անվան տակ։

*ԷՄԽԱԹՈՒՆ, իգ. ըստ իս պետք է հասկանալ Էմնախաթուն (որ է Էմինէ խաթուն, տես վերը № 3). մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում (Բարխուտ. Արցախ, էջ 40)։

*ԷՄՄԱ, իգ. նորամուտ անուն. Մանուէլգացցայի «Հիվանդ սէր» վեպի հերոսուհու անունն է (ա տպ. 1893 թ., բ տպ. 1905 թ. Ալեքսանդրապոլ), որ մտավ ու տարածվեց մեր մեջ նույն վեպի ազդեցությամբ։

*ԷՄՄԱՆՈՒԷԼ, ար. < եբր. עמנו אל ʿEmmānu-ēl անունից, որ բուն նշանակում է «Աստուած է մեզ հետ» (Gesenius 37). հմմտ. «Ծնցի որդի և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանի՝ Ընդ մեզ Աստուած» (Մատթ. Ա. 23=Ես. է. 14)։ Տառադարձված է հուն. Ἐμμανουήλ, լտ. ֆրանս. Emmanuel, որի կրճատն է հուն. Μανουήλ, ֆրանս. Manuel, ռուս. Мануил են։ Սովորական անուն էր Եվրոպացոց մեջ. հիշենք հատկապես Մանուէլ Ա. Կոմնենոս՝ կայսր Հունաց (1143—1180), Մանուէլ Բ Պալէոլոգ՝ կայսր Հունաց (1391—1425), Էմմանուէլ Ա Թագավոր Պորտուգալիայի՝ (1495—1521) են։ Մեր մեջ Էմմանուէլ ձևը քիչ է գործածված. այսպես ունինք՝ Էմմանուէլ 1697 թ. (Պատմ. գաղթ. Լիվոռնոյի, էջ 261), Հ. Էմմանուէլ՝ Մխիթարեան միաբան 1730 թվից (Տաշեան, Ցուց. 681), Էմմանուէլ Եսայեան՝ գրականագետ (Պոլիս, ԺԹ դարի վերջերը)։ Ավելի սովորական է կրճատ Մանուէլ ձևը, որ տես առանձին (Հիւբշ 335)։

ԷՄՆԻԱԶ, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է 1736 թ. (Ջուղ. 269). սրանից է Էմնիազեան ազգանունը (Ջուղա, 1785 թ).—Այրարատ 225։

*ԷՅԵՆ, ար. < թրք. یکن yegen «եղբորորդի, քեռորդի» բառն է, որ ժողովրդական լեզվով հնչվում է yeyen. առաջին ձևից առաջանում է Եգան, որ տես վերը. երկրորդ ձևով էլ հիշատակված է Էյեն՝ մելիք ոմն 1736 թ. (Դիւտ. աշխ. XIII, էջ 307, 338),

*ԷՆԱԿՈԼՈՓ, ար. վրացերեն նշանակում է «լեզվի տուփ» (իբր թե շատ ճարտարախոս). տիտղոս, որ տվել են Վրացիք հայազգի թարգման Միրզա Զուրաբին (1600—1650 թ). տես Գ. Շեր-

մազանեան, Երևելի հայկազունք ի՛Պարսկաստան, Ռոստով 1890, էջ 201։ Սրանից է Էնտէկօլօփեան ազգանունը (Պարսկաստան)։

*ԷՆԷԲԷԿ, ար. անշուշտ Թուրքական անուն էր. այս անունով կար Պոլսում, մեր Սամաթիա թաղում մի դարաբլուր (կոչվում էր Թրք. Էյնէբէկ), որ իհարկե նույն անձնանունից է առաջացած։ Թվի թե պետք է մեկնել عینی بك ʿaynì-beg «ճիշտ ու ճիշտ բէկ, իսկական բէգ»։ Ավանդված է մեր մեջ մի անգամ, Ցղնա գյուղի եկեղեցու անթվական մի խաչքարի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. ԺԱ, 321—2)։

*ԷՆԻԱԹ, ար. < արաբ. عنایت ināyat «ողորմություն» բառից, իբր عنایت الله ināyet-ullah «ողորմութիւն Աստուծոյ»։ Հնագույն գործածություններն են Էինաթ (!) 1521—29 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382), Էնիաթ՝ 1575 թ. (Rapport Belgique 24), Էնիաթ՝ 1576 թ. (Ձեռ. Վասպ. 578), որից հետո շատ անգամ հիշատակվում է ամբողջ ԺԶ—ԺԷ դարերում։ Վերջին հիշատակությունը գտնում եմ 1808 թ. (Ձեռ. Վասպ. 360)։ Սրանից է Խօջա-Էյնաթեան ազգանունը, որ կրում էր մեր համալսարանի դասախոսներից մեկը (մ. 1943 թ)։

*ԷՊՐՈՒԿ } տես Եւպրաքսիա։
*ԷՊՐՈՒՀԻ }

ԷՊՐՈՒՄ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք հիշված Խօջա Էպրում, որի անվան մի խաչքար է կանգնեցրած Երնջակում, 1573 թ.—Սիսական 422։

*ԷՍԱՅԲԷԳ, ար. < Իսայի անունից ժողովրդական ձև. հիշված է օր. 1579 թ. (Կարապետ եպս.՝ Դուխեանք 137)։ Տես և Իսա ձևով կազմված անունները։

*ԷՍԱՆ, ար. և իգ. < արաբ. احسان iḥsān (որ Պարսկաստանում հնչվում է ehsān) «շնորհ»։

— 1. Էսան, դուստր Սարխութայի, որ ավեց նրան իբրև հոգեորդի Մովսէս քահանային, 1387 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

— 2. Էսան պէյ, ար. քանիցս անգամ հիշված է 1601—1602 թ. իբրև դատավոր հայոց Զամոսցա քաղաքի (Ձեռ. Լվով=ՀԱ. 1937, 142, REA, 7,120)։

ԷՍԷՐԲԷԿ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է 1646 թվին՝ Լեհահայոց մեջ՝ Էսէրպէկ ձևով (Տաշեան, Ցուց. 923)։

*ԷՍԻԼ, ար. նույն է անշուշտ Ասիլ ձևի հետ, որ տես վերը. և նրա հետ ծագում է اصیل aṣīl «ազնվական, ազնվատոհմ» բառից։

Մի անգամ գտնում եմ գործածված 1655 թ. (Երեմ. չէլ. օրագր. էջ 92)։

ԷՍՈՒԳՆԱ, իգ. ձևով և ծագմամբ անհայտ. մի անգամ գըտնում ենք հիշատակված Գանձասարի 1301 թվի մի արձանագրության մեջ՝ հետևյալ ձևով. «Ես Էսուգնաս դուստր մեծ ամիր Հասանայ...», ուր հայտնի չէ թե ս վերջաձայնը դիմորոշ հոդ է, թե պատկանում է արմատին։ Նվերներ է արել նույն վանքին։

ԷՍՏԱՏ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1728 թ. (Ջեռ. Ազուլ.=Արար. 1911, 120) և մի անգամ էլ 1798 թվից քիչ հետո. վերջինը թվի վրացական ծագումից (Սմբատեանց, Երնջակ 294)։

*ԷՍՔԷՐ, ար. նույն է Ասքար ձևի հետ և նրա հետ միասին ծագում է արաբ. عسكر ʿasker «զինվոր» բառից, որ Տաճիկների մոտ տարական անձնանուն է։ Այս Էսքէր ձևով գտնում եմ մի անգամ գործածված 1657 թ. (Երեմ. չէլ. օրագր. 260—1)։

ԷՎԱԴ, ար. նույն է Այվատ անվան հետ, որի ծագումն ինձ անհայտ է։ Այս ձևի տակ հիշված են՝

— 1. Էվատ, որդի Համզայի, որ նրա հիշատակին մի խաչ է կանգնեցրել շուրջ 1473 թ.—Բարխուտ. Արցախ, 299։

— 2. Էվատ, հիշված է 1590 թ. (Ջեռ. Վեննա. Ա. 720)։

— 3. Յեւատ մղտեսի, «որ զամենայն ինչս իւր ետ ի սուրբ վանքս. և զինչ խնդրեց ի սուրբ Փրկչէն գտաւ».—Արձ. Տրապիզոնի Ամենափրկիչ վանքի (անթվական). տես Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 85։

ԷՎԱԴՄԵԼԻՔ, իգ. նույն է Այվատմելիք անվան հետ, որ տես։ Այսպես ունինք՝

— Յեւաթմելիք, վաղամեռիկ դուստր Գրիգորի և քույր Կոշկակար Մարտիրոսի. որ Աշոտաց երկրի Անկուենաց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ։—Ջեռ. Վեննա. Ա. 588, Այրարատ 52։

ԷՎԱԴՇԱՀ, ար. ծագում է նույն Այվադ անունից+շահ։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարում։

— 1. Էվատշա (գրված է Յեւատշա, Յեաչա, Էվաչա), որդի Խաչերեսի. գնեց մի հին, սքանչելի Աւետարան և նվիրեց Վերի Ս. Աստուածածին եկեղեցուն (Տրապիզոն), 1425 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 485—6։

— 2. Եւատշայ, փեսա խոջա Աստուածատուրի, որ ազատեց

Նորեկը Թուրքմանի գերութիւնից և նվիրեց Վարագ ի վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 55 ա։

— 3. Էվատշայ Ոստանցի, որդի Ամիր Սարգսի, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Վանտիշատ գյուղի Եղիշէ վրդ. եկեղեցուն, 1426 թ.—Նօտարք 81։—Նույնը ունի Ձեռ. Վասպ. 355, բայց թվականը դնում է 1428։

— 4. Էվատշայ, փեսա (քրոջ ամուսին) տանուտեր բրուտ Ստեփանոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 5. Էվատշա, «լերդահատոր հարազատ» (իմա սիրելի եղբայր) Ատոմ քահանայի, որ Վանում գնեց մի Աւետարան, 1440 թ.—Ձեռ. Վասպ. 313։

— 6. Էվատշայ փաշ, մեծ հրախտիք ունի այն Աւետարանի վրա, որ գրել տվեց Սուլթան Մելէքը՝ 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։

— 7. Էվարշայ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրակնում օրինակեց ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 8. Եւատշայ, որդի Լիանոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 թ.—Թօրոս աղբ. Ա. 120։

— 9. Եւադշայ, որդի Դանիէլի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— Այս անունը հիշված է նաև Էւատշա ձևով՝ 1512 թ. (Ձեռ. Վասպ. 83) և 1644 թ. (անդ 276), և առանց թվականի՝ Էվատշահ (Manus. brit. mus. 28 բ), Իւատշահ՝ Ձեռ. Թաւր. 71 ա։

ԷՎԱԶ, ար. նույն է Այվազ անվան հետ, որ տես վերը և տրված վկայութեանց վրա ավելացրու՝ Էվազ 1680 թ. (Ձեռ. Վասպ. 570) և անթվական (անդ 136), ավելի ուշ՝ 1703 թ. (Ձեռ. Թաւր. 100 բ)։

*ԷՎԱԼ, ար. < արաբ. اول evvel «առաջին» բառից (նախածին կամ անդրանիկ իմաստով)։ Մի անգամ գտնում եմ գործածված ժէ դար, Էվալ կամ Իվալ ձևով՝ 1671 թ. (Ձեռ. Ազդ.= Եփրատ. 1911, 314 և Սմբատեանց՝ Երնջակ 305)։

*ԷՎԷԼԻՆԱ, իգ. նորաձեւ եվրոպական անուն, որ մտավ մեր մեջ Գր. Արծրունու համանուն վեպի ազդեցությամբ. (տպ. Թիֆլիս 1891)։

*ԷՎԼԱԴՄԵԼԻՔ (սեռն անհայտ) < արաբ. اولاد evlād «որ-

դիք» (Թրքական գործածությամբ «օտար»)+ ملك melik «Թագավոր» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Էլլամելիք, մերձավոր Կիրակոս երեց Բաղիշեցու, որ մի Աւետարան նվիրեց Կապուտ գեղի Ս. Յակոբ եկեղեցուն, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 116։

ԷՎՈՒՄ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԸ դարում (Ջամբռ 175)։

ԷՐ հայկազն, որի մասին Պլատոն, Հասարակապետութ. Գիրք Ժ, § ժզ պատմում է հետևյալը՝ իբրև ոմանց ծանոթ զրույց.— Էրը քաջ հայկազուն էր, ծննդեամբ Պամփիւլացի. պատերազմի մեջ մեռավ. տասն օր հետո դիակը գտան անապատ և տարին իր տունը. երկու օր հետո խարույկի վրա դրին, որպեսզի այրեն. հանկարծ կենդանացավ, ելավ կանգնեց և սկսեց պատմել ինչ որ տեսել էր հանդերձյալ աշխարհում՝ արդար և մեղավոր հոգիների վարձի և պատժի մասին. բայց ինքը ամենևին չէր հիշում, թե ինչ կերպով իր հոգին նորից վերադարձել էր իր մարմնի մեջ։—Ալիշան, Հայաստ. յառաջ քան զլինելն Հյստ. էջ 191 պատմելով այս զրույցը, գտնում է որ սա Արա գեղեցկի պատմությունն է, որ բերնից բերան անցել է Հունաստան և հասել է Պլատոնին՝ Մարաբասից 2—3 դար առաջ։ Հունարենում գրված է Ἤρ, Ἠρός։

*ԷՐԴՈՂԴԻ, ար. < թրք. ار er «տղամարդ»+طوغدی doğdi «ծնվեց» բառերից։ Վկայված է մեր մեջ ԺԷ դարում, երկու անգամ. առաջինը Էրտողտե ձևով (որ Էրտողտի ձևի միջին հայերեն սեռականն է) 1629 թ. Ձեռ. Վենետ. Ա. 241, և երկրորդը՝ Էրտողտու (թրք. er-doğdu) ձևով, 1614 թ. Manus. brit. mus. 213 բ)։

ԷՐԿԻԼ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Էրկիլ, հայր Զաքարիա աբեղայի, որ Յակոբ քահանայից գնեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ)։

*ԷՐՄԻՆԱ, ար. < արաբ. ارمنی ermeni «հայ» կամ Արմենակ բառից, որից ունինք՝

— Էրմենա-բին-Լաթա-բին-Աումար-բին-Նաֆէս-բին-Նուհ, ըստ Արաբների այն անձն է, որ առաջին անգամ բնակութիւն հաստատեց Հայաստանում (Իպն-Խալլիքան 14)։ Սրանցից Նուհը Նոյ նահապետն է, Նաֆէս=Յաբեթ, Աումար=Գամեր, Լաթա պիտի լինի Թորգոմ կամ Հայկ, իսկ Էրմինա՝ Արմենակն է։

*ԷՖՐԻԿ տես Եփրեմ։

*ԷՕԶԲԷԳ, աւ. < Թթւ. Թրք. اوزبك özbeg թաթարական ցեղի անունից։ Մի անգամ իբրև անձնանուն գտնում եմ գործածված անթվական, բայց շատ հետին մի արձանագրության մեջ, որ գտնվում է Տրապիզոնի Ամենափրկիչ վանքում, էզպեկ չէլեպի ձևով (Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 85)։

*ԷՕԺԷՆ, տես Եւգինէ:

*ԷՖԼԱՆ, իգ. < արաբ. الوان elvān «գույնզգույն, երփներանգ» բառից, որ հոլովասուն դարձել է ալվան: Ձևափոխության համար հմմտ. Թրք. علو alev > ժղ. alef «բոց»։ Գործածական էր Պոլսում՝ անցյալ դարում, թեև հազվագյուտ։

*ԷՖՏԻԿ տես Եւթիմիա:

*ԷՖՐԱԶ, իգ. < ֆրանս. Euphrasie անունից, որ ծագում է հուն. εὐφρασία «ուրախություն» բառից։ Գործածական էր Պոլսում, անցյալ դարում, բայց հազվագյուտ։

# Ը

*ԸԹԱՐԹԻՓՇԱ, իգ. < արաբ. عطر 'ətr «խորդենի, կընկենի, geranium բույսը. 2. անուշահոտություն, духи»+Թրք. تپسى tepsi (ժղ. tepši) «ափսէ», որով ամբողջը լինում է «անուշահոտություններով լիքը մատուցարան»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Ըթար-թիփշա, դուստր Թումայի և քույր տանուտեր խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

ԸԽԼՈՒՄ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1610 թ.—Ձեռ. Կես. ածած. 52 աբ, Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1866։

— *ԸՆԴՄԵԼԻՔ, իգ. < արաբ. هند Hind «Հնդկաստան»+ملك melik «թագավոր» բառերից (կա նաև արաբ. هندو Hindū իգական անուն). բուն իմաստն է «Հնդկաստանի թագուհի»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Ընդ-մէլիք, կին Սահակ քահանայի, որ Սուրս գյուղի քահանան էր և տանուտեր Առաքելից ստացավ մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

† ԸՆԾԱՅ, իգ. < հյ. ընծայ «նվեր» բառից, ակնարկությամբ Ընծայումն Ս. Աստուածածնի տոնի։ Կա նաև Ընձայեաց

Ս. Աստուածածին վանքը։ Գործածական էր Պոլսում՝ անցյալ դարում, բայց շատ հազվագյուտ։ Մորս անունն էր և ուրիշից նույն անունը չեմ լսած։

+ԸՆՁԱԿ, ար. < հյ. ընձ «վագր» բառի նվազականից և ըստ իս այս է ուղղագույն ձևը, որ ապա դարձել է Ընձաք, Ընծակ, Ընծաք. վերջինիս վրայից Մաղ. Թղ. ԺԹ հարմարեցնում է մի ստուգաբանություն. «Ընծաք. սա ընծայեալ ի բազմաց արքայից»։

— 1. Ընձակ, նահապետ Հայկազն, հաջորդ Հրանդի. Ն. Բ. 1242 Թ. ըստ Զամչ.—գրված է՝ Ընձաք՝ Խոր. Ա. ԺԹ. Մխ. այրիվ. 18.—Ընձակ՝ Ցհ. կԹ. բ. Կղկնտ. Ա. ԺԵ (ըստ Էմինի). Վրդ. է. Մխ. այրիվ. 50.—Ընծակ՝ Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ԺԵ (ըստ Շահնազ.). Վրդ. է (Էմինի). Սամ. անեց. 45. Միխ. համռ. 9.— Ընծաք՝ Մաղ. Թղ. ԺԹ.—հմմտ. նաև Ընձաքիսար կամ Ընձաքեարս տեղանունը։

— 2. Ընձակ թարգմանիչ. Կորյունի հետ գնաց Երուսաղեմ, որտեղից բերին Կյուրղի Ապաշխարող արձակելու կարգը (Ե դար). —ըստ իս շփոթված է Արձանի հետ.—Զարբ. Հին դպր. 310. Զամչ. Ա. 536։

— 3. Ընձի՞կ, շինել է Կարսի պարիսպը՝ 1234 Թ. հիշված է սեռ. Ընձկանն ձևով՝ հետևյալ արձանագրության մեջ, որ փորագրված է Կարսի արևմտյան պարիսպներից մեկի վրա.

ՈՁԳ

ՏՐ ԱԾ ՁԱՒՐ[ԱՑՈ] ՁԹԱԳԱՒՈՐ
Ն ՄԵՐ . . . ԼԵՐ ԱՅԼԱՁԳԵՑ ԿԱՏ
ԱՐԵՑԱՒ ԲՐՋՆԵՐՍ ՋԵՌԱՄԲ
ԸՆՁԿԱՆՆ ԳԱՁՆԻՆ ԵՒ ՈՂՏԻՆ

(տես Սարգիսեան, Տեղագր. 104, Այրարատ. 85, Կրպէ՝ Կարս քաղաք, էջ 26)։

† ԸՆՁԵՐ, ար. < հյ. ընձ բառի հոգնակի ընձեր ձևից։ Մի անգամ գործածված է ԺԳ դարում։

— Ընձեր, նկարազարդել է այն չքնաղ Աւետարանը, որ գրել տվեց Երեմիաս քահանան, Կարնոյ Կան գյուղում, 1283 Թ. —Ձեռ. Վիեննա. Ա. 644։

+ԸՆՁՈՒՂ, ար. այս անունը ավանդված է Պրոկոպիոսի մոտ, որ գրում է Ἀνζαλᾶς (Justi 18). Զամչ. գրում է Ընձուղ,

որ կարելի է հասկանալ հյ. ընճիւղ «ծիլ». բայց որովհետև այսպիսի անուն այլուստ հայտնի չէ, ուստի համարում եմ Ընջուղ, որ տես հաջորդով։

— Ընճուղ, հայ զինակիր կամ թիկնապահ Ներսէս պատրիկի՝ զորավարի Յուստինիանոս կայսեր. ըմբշամարտեց Գոթաց Կոկաս հսկայի հետ և սպանեց նրան (552 թ).—Զամչ. Բ. 272։

+ԸՆՋՈՒՂ, ար. <հյ. ընջուղ «երինջ» բառից։

— Ընջուղ, իշխան Ակէոյ, կողմնակից Վասակի՝ ընդդեմ ուխտապահների (Ե դար).—Եղիշ. 71։

*ԸՌԱՆԱ, իգ. <արաբ. رعنا ra'nā «գեղեցիկ, սիրուն, շատ լավ». Թեև բառը արաբերեն է, բայց ԳԴ դրել է նաև իր Պարսկերեն բառարանում (էջ 581) և Թուրքերեն լեզվով (ոչ հայերեն) բացատրում է այսպես. «այն սիրունին է, որ իր ոտքը նազով է ցույց տալիս»։ Բանաստեղծությանց մեջ հաճախ պատահում ենք گل رعنا gul-i ra'nā «գեղեցիկ վարդ, կեսը կարմիր և կեսը դեղին վարդ»։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԵ դարերում, ընդամենը երկու անգամ Ըռնա և Ըռանա ձևերով։

— 1. Ըռնա, տատ (մեծ մայր) Առաքելի, որ այլազգիներից ազատեց մի հին ու քայքայված Ավետարան, և պակասները նորից գրել տալով և գիրքը կազմելով նվիրեց Կախմխի եկեղեցուն, 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— 2. Ըռանա խաթուն, կին Աղից պէկի և մայր Ասլիմելիքի, որ Հայրապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, Ծառիկու վանքում, 1447 թ.—Նոտարք 157։

# Թ

*ԹԱԲԱՌՈՒԿ, իգ. և ար. <արաբ. تبرک tabarruk «օրհնություն ստանալ» բառից, որ Վանի հայ բարբառում (ինչպես և Ալթայում) ստացել է «չնաշխարհիկ» նշանակությունը։ Իբրև արական անուն գործածված է մեր մեջ ԺԵ դարից և հիշված բոլոր վկայությունները հետևյալ չորսն են։

— 1. Թաբառուք, հոգևոր մայր Ազարիա սարկավագի, որ Արաշ գեղաքաղաքում գրեց մի Ավետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 2. Թաբառուկ, իբր եգական՝ հիշված է 1612 թ. (կամ ավելի ուշ).—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 3. Թագառուկ, եղբայր Աւետիս Ոստանցի նահատակի, որ հաւատքը չուրանալով նահատակվեց «1656 թ»․ եղբայրը կատարեց նրա հանդիսավոր թաղումը՝ Առակ գյուղում։—Առաք. պատմ. 426 > Նոր վկ. 482։

— 4. Թագառուք (տպված է Թապառ ոք), իր կնոջ՝ Թուրվանդի հետ ստացավ մի Աւետարան, որ գրեց գրիչ Նահապետ քահանան Ապարանից գյուղում, 1698 թ.—Ձեռ. Վասպ. 988։

† ԹԱԳՈՍԿԻ, իգ. < հյ. թագ և ոսկի բառերից. իբրև թե նա «որ ոսկի թագ ունի գլխին» (ակնարկությամբ ոսկենման դեղնագույն մազերի)։ Գործածված է երկու անգամ ԺԴ դարում։

— 1. Թագոսկի, կին «փառօք ի փառս բարձրացեալ տիսալար» Գրիգորի, որ հիշված է 1369 թվին գրված մի Մաշտոցում։—Թորոս աղբ. Բ. 427։

— 2. Թագոսկի ոմն (ԺԴ դար).—Տաշեան, Ցուց. 666։

† ԹԱԳՈՒՀԻ, իգ. < հյ. թագուհի բառից, ինչպես ունինք լտ. Regina, հուն. Վասիլիկ, արաբ. Մլքէ, Սուլթան, հյ. Դշխոյ համանիշ անունները։ Սկսել է գործածվել Ա դարից և կենդանի է մինչև այսօր։ Արդի փաղաքշական ձևերն են Թագուկ, Թագուշ, Թագու, Թագուն, Պոլսում նաև Թագուհիցա։

— 1. Թագուհի, քույր Սանատրուկ թագաւորի հայոց, քրիստոնյա դարձավ Բարթուղիմէոս առաքյալի քարոզությամբ և նահատակվեց իր եղբոր ձեռքով (50 թ. ըստ Ջամչ. Ա. 298).—Ցայսմ. դեկտ. 2։

— 2. Թագուհի, ազնվական կին՝ Ուտի գավառի Բագնաց գյուղից. նահատակվեց Հոնաց զորավարի ձեռքով Աստեղաբլուրում (465 թ. ըստ Ջամչ. Բ. 127).—Կղկնտ. Ա. ԻԹ. Ցայսմ. մրտ. 29.—սեռ. Թագուհոյ՝ Ցայսմ. մրտ. 29։

— 3. Թագուհի, կին Բակուրան սեպաստոսի, որդւոյ Սմբատայ, տեառն Լամբրոնի և Պապեռոնի. նվեր ստացավ մի Աւետարան, որ գրել էր իր եղբայրը, 1194 թ.—Rapport Arm. 47։

— 4. Թագուհի ոմն, հիշված է Խարբերդում՝ Կոզմա գրչի գրած Աւետարանի հիշատակարանում, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 400։

— 5. Թագուհի, կին Շարափշահի Պահլաւունւոյ՝ որդւոյ Ապիրատի. նվերներ է արել Բագնայրին 1234 թ.—Ալիշան՝ Շնորհ. 14, Արձ. Շիրակ 119։

— 6. Թագուհի, առաջին կին Ուսեկ իշխանի, որ շինել է

Տփղիսի Ս. Գէորգ եկեղեցին, 1251 թ։ Սրա որդիներն են Ճար և Բարխաատին.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 9—10։

— 7. Թագուհի, մերձավոր Շնորհաւոր Տփխիսեցու, որ Հաղբատի վանքին 100 դահեկան է նվիրել ժամատան շինության համար, 1253 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 29։

— 8. Թագուհի, կին Սարգսի և մայր Վարդան գրչի, որ օրինակել է երկու ձեռագիր՝ Վախտանկ իշխանի համար, 1279—80 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 6։

— 9. Թագուհի, դուստր Սահակ երեցի, մի տուն և մի այգի է նվիրել Աշտարակի Ս. Մարիանէ ժամուն, 1281 թ.—Այրարատ 186։

— 10. Թագուհի, կին Ումեկի և մայր Ճար Մանազկերտցու, որ նվիրատվություններ է արել Գոշավանքին, 1283 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 367, Ազգագր. հանդ. Ժ. 28, Արցախ 350։

— 11. Թագուհի, կին Երեմիաս քահանայի, որ Կարնոյ կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 644։

— 12. Թագուհի, կին Դաւթի և մայր Կողբեցի Որդեկ երեցի, որ մի տուն և մի այգի է նվիրել Արջոյ առիճի Ս. Լուսաւորիչ եկեղեցուն՝ 1289 թ.—Արձ. Շիրակ 123։

— 13. Թագուհի, նվիրատու Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքի, 1295 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 35։

— 14. Թագու(հ)ի, կին Վիրապշահի և մայր Թումա քահանայի, որ Սիւնիքում արտագրեց Աւետարանը 1315 թ.—Շողակաթ 210։

— 15. Թագուհի, դուստր Սեփեդին արքայունի և քույր Աղթամարի Ստեփաննոս և Զաքարիա (մ. 1336) կաթուղիկոսների.—Ակինեան՝ Գաւազանագիրք 42։

— 16. Թագուհի, կին Ումեկի և մայր Խոսրովշահի, որ ստացավ Բաբերդում մի հին Աւետարան և նորոգել տվեց 1346 թ.—ՀԱ 1926, էջ 344։

— 17. Թագուխի, կին Կարապետի և մայր Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում գրեց մի Աւետարան, 1338 թ.—Ջեռ. Վասպ. 198։

— 18. Թագուհի, կին պարոն Յովանէսի, որ Կարապետ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Թորոս աղբ. Բ. 355։

— 19. Թագուշ (տես. Թագուշէ), դուստր Կարապետի և քույր

Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում, Ստեփանոս քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 20. Թագուհի, կին Շահնշահի ստացողի, 1378 թ.—Տաշեան, Ցուց. 692։

— 21. Թագուհի, դուստր Խաթուն տիկնոջ, որ Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վասպ. 352։

— 22. Թագուհի, դուստր Մամաաիկին ապաշխարողի, որ Ստեփանոս կրոնավորի հետ միասին Վարդան գրչին գրել տվին մի Աւետարան՝ Խոսրովայ վանքում, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 359։

— 23. Թագուհի, կին տանուտեր Յովանէսի, որ գնեց 1391 թվին գրված մի Աւետարան՝ 1461 թ.—Ձեռ. Վասպ. 226։

— 24. Թագուհի, կին Կիրակոս Սարփեցու, որ գնի միջնորդ եղավ տանուտեր Էտիլշահի և Յովհանէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 25. Թագուհի, կին Վարդանի և մայր Յոհանի, որ ստացավ մի Աւետարան 1482 թ.—Ձեռ. Վասպ. 492։

— 26. Թագուհի, կին Յովհաննէսի, որ Յովհաննէս քահանայի հետ միասին, Բերկրիի Առեղս գյուղում, Սարգիս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— 27. Թագուհի, կին Շաքարի և մայր Աստմի, որ իր կնոջ՝ Խաթիրի հետ գրել տվեց մի Աւետարան՝ Մարգարայ գրչին, Աղբակու Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526, 528։

ԹԱԳՎՈՇ, ար. ծագումն ինձ անհայտ։ Այս անունով գիտեմ միայն՝

— Թագվոշ ոմն, որի եղբորորդի Դոդոնայի որդին է նշանավոր Ֆրիկ տաղասացը (ԺԵ դար)։—Յուշիկք Բ. 125։

† ԹԱԳԻՈՐ, ար. < հյ. թագաւոր բառից, ինչպես կա հուն. Βασιλεύς > Վասիլ անունը, որ բուն նշանակում է «թագավոր»։ Գործածական է ԺԳ դարից մինչև այժմ (հատկապես Արևմտահայոց մեջ)։ Սրանից է Թագւորեան ազգանունը։ Նույն են նաև Արքայ և Խոսրով անունները։

— 1. Թագվոր, որդի Պողոս մելիքի, դեռ կաթնկեր մանուկ էր 1276 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 426։

— 2. Թագաւոր (այսպես միջին ա ձայնավորով, որ այլուր չկա), որդի Մարտիրոսի և եղբայր Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան, 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

— 3. Թագւոր մանկտաւագ, հայր Պօղոս սարկաւագի ստացողի, 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։

— 4. Թագուոր, հայր Զաքարիա աբեղայի, որ Անապատիկ գյուղում օրինակել է Մեկնութիւն Պատարագի, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։

— 5. Թագւոր ոմն, հիշված 1420 թվից առաջ.—Տաշեան, Ցուց. 666։

†**ԹԱԳԻՈՐՇԱՀ**, ար. < հյ. թագաւոր բառից+պրս. شاه šāh, որ նույնպես նշանակում է «թագավոր»։ Հմմտ. Մելիքշահ։ Գործածվել է մեր մեջ ԺԲ—ԺԵ դարերում, գուցե և ավելի ուշ։

— 1. Թագվորշահ, հոգաբարձու էր կարգված Սիր Սիմոնի կողմից, որ մի խանութ էր նվիրել Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքին, 1303 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 35։

— 2. Թագւորշահ դպիր, որ Երուսաղէմում, Ստեփաննոս կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1360 թ։—Թորոս աղբ. Բ. 438։

— 3. Թագվորշա դպիր, որդի Մկրտչի, որոնց անունով մի խաչքար է կանգնեցրած Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցու բակում (անթվական)։—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, էջ 58։

— 4. Թագւորշահ, հիշված է անթվական մի հիշատակարանում, որ դրված է 1311 թվին գրված մի Աւետարանում։—Ձեռ. Թաւր. 71 ա։

— 5. Թագոշահ (գրված է հոդով՝ Թագոշան). հիշված է 1475 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում։—Ձեռ. Մաղն. 35։

***ԹԱԴԷՈՍ**, ար. < հուն. Θαδδαῖος ձևից, որի ծագումը համարում են ասորական՝ «իմաստուն» նշանակությամբ։ Ուրիշ լեզուներով տառադարձված են լտ. անգլ. Thaddeus, գերմ. Thaddäus, ֆրանս. Thaddée, ռուս. Фаддей։ Այս անունով հայտնի է 12 առաքյալներից մեկը. հմմտ. Մտթ. Ժ. 3. «Ղեբէոս, որ անուանեցաւն Թադէոս»։ Համարվում է Հայաստանի առաջին քարոզիչը։ Գործածական է մեր մեջ Ե դարից մինչև այժմ։ Ժողովրդական ձևերն են Թաթէոս, Թաթոս, Թաթևոս, Թևոս, գրված նաև Թաթէ (Տաշեան, Ցուց. 828), Թադդէոս, Թադոս, կրճատ Թաթօ (Ձեռ. Վենետ. Ա. 790)։

— 1. Թադէոս եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Իսրայէլին. նստավ 30 տարի. վախճանվել է 451 թվից քիչ առաջ. ուրեմն գահակալել է շուրջ 421 թվին.—Չքր. եպս. 281. Արրտ. 1868 դեկտ. էջ 103 ա։

— 2. Թադէոս եպիսկոպոս Մեհնունեաց, ժամանակակից Ներսէս Բ («548—557 թ») կաթուղիկոսի. հիշվում է Նեստորականների դեմ գրված երկու թղթերի մեջ.—Գիրք թղ. ժէ (գրված Մեհեննունեաց).—սեռ. Թադէոսի՝ Գիրք թղ. ժզ։

— 3. Թադէոս, պատկերամարտ քարոզիչ, որ Յեսուի և Գրիգորի հետ միասին փախչելով Մովսէս Բ կաթուղիկոսի («547—604 թ») մոտից, գնացին քարոզելու Սոթք, Արցախ և Աղուանք, ուր բռնվելով Գարգմանի իշխանից, քշվեցան Հայաստան և դարձան հավատքի.—Վրթ. քերթ. պտկ. 307. Կղկնտ. Բ. խդ. (հրատ. Էմինի)=Թադդէոս (հրատ. Շահնազ.).—Զարբ. Հին դպր. 467. Տաշեան, Ցուց. 207։

— 4. Թադէոս եպիսկոպոս Առնոյ, անդամ Դուինի «607 թվի» ժողովի.—Ուխտ. Բ. լ.—Թադէոս եպս. Առնայոյ՝ Գիրք թղ. լը.—սեռ. Թադէոսի՝ Ուխտ. Բ. լէ.— Թադէոսի Առանայ եպսի՝ Գիրք թղ. խ.—բց. ի Թադէոսէ Առանոյ եպսէ՝ Գիրք թղ. լթ։

— 5. Թադէոս վանահայր Գլակայ վանուց. հաջորդ Բարսեղի. իր ժամանակ եղավ 7 խոտաճարակների նահատակությունը «604 թ».—Մամիկ. ա.—որ և Թոդիկ՝ Մամիկ. ա, բ, էջ 59.—սեռ. Թոդկայ՝ Մամիկ. ա։

— 6. Թադէոս վարդապետ Գիտնական. ունի ճոռոմ լեզվով ճառեր Աստվածածնի և Համբարձման վրա (Է դար). երբեմն շփոթվում է Թէոդորոս Քռթենաւորի հետ.—տես Հայկ. բառ. Բ. 130" և Տաշեան, Ցուց. 1091 ա։

— 7. Թադէոս եպիսկոպոս Ոստան, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ», որ գումարեց Յովհան Գ Օձնեցի կաթուղիկոսը.—Գիրք թղ. ծէ. Կանոն. 149։

— 8. Թադէոս, հայր Վարդիկի, որ իբրև վկա հիշված է Տաթևի 881 թվի կալվածագրում.—սեռ. Թադոսի՝ Օրբ. լթ։

— 9. Թադէոս եպիսկոպոս Կոգովտի, եղբորորդի Մուշեղի. հիշված է 999 թվին.—Այրարատ 495, 497, Հայապ. 310։

— 10. Թադէոս Ակէացի, որդի Շերեփայ, եղբայր Ցխսէի, բերդապահ Վանի. չարաչար հալածեց Գարոնից՝ Գերատայ դաշտում (Ժ դար).—Արծր. Գ. իբ, իթ. Դ. գ.—սեռ. Թադէոսի՝ Արծր. Գ. իբ, իթ.—Թադէի՝ Արծր. Դ. գ։

— 11. Թադէոս, «այր անպարտելի գրչութեամբ». ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթուղիկոսին՝ դեպի Պոլիս ճամբորդության ժամանակ «1047 թ».—Ուռհ. 105։

— 12. Թադէոս մեծ իշխան, որդի Թոռնիկի Բ և հայր Թոռ-

նեկլի Գ (ԺԱ դար).—Արծր. Դ. ժբ. Հաւաք. 37.—սեռ. Թադէոսի՝ Արծր. Դ. ժբ. Հաւաք. 37։

— 13. Թադէոս վարդապետ, ուսուցիչ Յովհաննէս Մարմետցի կրոնավորի, որ հեղինակել է Մեկնութիւն Եսայեայ, 1118 թ։ Այս թվին արդեն Թադէոս վարդապետը մեռած էր և թաղված Մարմետում։—Շողակաթ 195, Ձեռ. էջմ. 1209=1239. տես Արրտ. 1913, էջ 50, 51։

— 14. Թադէոս գրիչ, բնակվում էր Նպատանի մեջ՝ Թեղենիի վանքը, 1178 թ.—Տաթև 1927, 184։ Հմմտ. տակը № 17։

— 15. Թադէոս եպիսկոպոս Կիպրոսի, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պտճ. 199։

— 16. Թադէոս վարդապետ, Բջնեցի Մարտիրոս երեցին գրել տվեց Մեկնութիւն Ղուկասու Աւետարանի, 1184 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 304։

— 17. Թադէոս գրիչ. Թեղենեաց վանքում գրեց Յովհաննու Մեկնութիւնը 1198 թ.—Այրարատ 257, Հայապ. 371.—Թվի թե նույն է նախորդ № 14։

— 18. Թադէոս վարդապետ, մխաբան Հաւուցթառի. իր եղբոր՝ Հայրապետ քահանայի հետ՝ Իգնատիոս գրչին գրել տվեց մի գեղեցիկ Աւետարան, որ նվիրեց նույն վանքին, 1214 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 592—3, Այրարատ 356։

— 19. Թադէոս, եղբայր Սիոն գրչի, Մուշեղկայ գյուղի Նորսեսի անապատում, 1210 թ.—Դուրեան, Ուսումն. 230։

— 20. Թադէոս, հայր Յոհաննէսի, որ իր Գլիձորի ջաղացը նվիրեց Հոռոմոսի վանքին, ուր և թաղվեց, 1217 թ.—Արձ. Շիրակ 23։

— 21. Թադէոս կրոնավոր, գրիչ. մի քանի ընկերներով արտագրել է Ճառընտիրը, Կոստանդին վանահոր հրամանով, Կապոսի Ս. Լուսաւորիչ անապատում, 1224 թ։—Այս է Վենետկի Ա Ճառընտիրը՝ ահավոր մեծությամբ։—Զարբ. Թրգմ. 729. Աւգեր. Լիակ. Վրք. սրբ. ԺԱ, էջ հա. Ձեռ. Վենետ. Բ. 33, 34։

— 22. Թադէոս քահանա, գրիչ. օրինակեց Նարեկը և նվիրեց Հռոմի հայոց հյուրատան, 1226 թ.—Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 273 բ)։

— 23. Թադէոս վարդապետ, ձեռնասուն որդի Հեթում Ա թագավորի, որի ծախսով հիմնեց Ս. Փրկչի անապատը, 1242 թ., որպեսզի Հեթում թագավորը կյանքի վերջում ճգներ այնտեղ։ Այս մատուռը, որ այժմ կիսավեր է, գտնվում է Զանտըր բերդից մի ժամ հեռու, Տէյիրմէն-տէրէսի կոչված դժվարակոխ կիրճում,

Բիլլաէ-պողազը կամ Բէչլի-պողազը կոչված տեղը, անմատչելի դահավանդի վրա։ Ունի մի աննման հոյակապ արձանագրություն, ամբողջ երկաթագիր, 19 երկարաձիգ տողերով, ամեն մի տողը մինչև 100 տառ։ Այս նշանավոր արձանագրությունը առաջին անգամ կարդացել է հեռադիտակով 12 ժամ աշխատելով Հ. Կղեմէս Սիպիլեանը, որի ընթերցումը հրատարակեց Ալիշան, Սիսուան 75։ Զնկատիպ լուսանկարը հրատարակեց Lohmann Ernst Im Kloster zu Sis (Striegau 1901), էջ 20։ Տեղի անմատչելի բարձրության պատճառով լուսանկարը յաջող չէ։ Գրվածքի երկար ու լայնաձիգ տողերը, գործածված բազմաթիվ փակագրերը և քարերի մաշվածությունը ավելի են դժվարացնում գործը։ Լոմանի զնկատիպից ընթեռնելով և Սիպիլեանի ընթերցվածի հետ համեմատելով, հաջողագույն մի ընթերցված հրատարակեց Տաշեան, ՀԱ. 1901, էջ 310—311։ Արձանագրության մեջ տրվում է Կոստանդինի թագավորահոր ծննդաբանությունը և անապատի հիմնադրության պատմությունը՝ Թադէոս վարդապետի բերանով։ Տալիս եմ այստեղ սրա վերջին խոսքերը. «Արդ նուաստս վարդապետաց Թադէոս, ձեռնասուն որդի գոլով «Հայոց թագաւորահօրն» (կամ՝ Հեթում թագաւորի) և հրամայեալ մերում տրպութեան սկիզբն առնել այսմ անապատիս վասն անձին իւրոյ ի բաց ելանել ի սորաքարշութենէ կենցաղոյս և վասն հոգւոյ հոգալ։ Եւ ես հնազանդ կամաւք կատարեցի զհրամայեալն ինձ և ի յանդ ել միայնարանս։ Արդ աղաչեմ զամենեսեան վասն Աստուծոյ, որք հանդիպիք կամ բնակիք աստ, զյառաջասացեալ իշխանաց իշխան զԹագաւորահայրն Կոստ. յիշեսջիք աղաւթիւք առ Տէր հանդերձ որդւովք և զարմիւք. և զմերս նուաստութիւն. զի բազումս տառապեցա. Թեպէտ և ծախքն արքունական էր, այլ տեղս դժուար, և ես ցաւոտ անձամբ. վասն յուսոյ և յարութեան յաւժար կամաւք աշխատէի. աղաչեմ անտես չառնել զմիանձն... անապատիս»։

— 24. Թադէոս, վանահայր Ուռագ անապատի (Կիլիկիա), Գրիգոր գրչին տվեց Միխայէլ ասորու ժամանակագրութեան ձեռագիրը՝ արտագրելու համար, Ակներ անապատում, 1273 թ.— Միխ. աս. ը տպ. էջ 45, Սիսուան 154 ա։

— 25. Թադէ, որդի Անդուրի, իր հոր և իր մոր Մանքուի հետ միասին նվէրներ են արել Գոշավանքին, 1277 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Ժ, էջ 25։

— 26. Թաթէոս, հայր Մկրտիչ քահանայի, որ Կարբիում

օրինակեց Խոսրով Անձևացու Մեկնութիւն ժամակարգության, Պատարագամատոյց, Մեսրոպ երէց, Զենոբ Գլակ և Յովհան Մամիկոնեան, 1278 թ.—Պատմ. Տարօնոյ, Երևան 1941, էջ XIII։

— 27. Թադէոս քահանա, իր եղբայր Յովհաննէս քահանայի հետ միասին Մոմիկ սարկավագին գրել տվեց մի Աւետարան, Ուռուքարի Ս. Գէորգ եկեղեցու համար, 1292 թ.—Շողակաթ 207։

— 28. Թադէոս քահանա, մեծ հայր Կոստանդին քահանայի, որ Պօղոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1284 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 57 բ։

— 29. Թադէոս, հօրեղբայր Գրիգոր քահանայի, որ Սկեռայ վանքում, Ստեփանոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1293 թ.—Ձեռ. Վասպ. 112։

— 30. Թադէոս, հայր Աւագ անապատի կիլիկիա (ԺԳ դար).—Տաշեան, Ցուց. 361։

— 31. Թադէոս քահանա, որի խնդրանքով գրեց Վարդան իր Խրատքը (ԺԳ դար).—տես.—Թադէոսի՝ Տաշեան, Ցուց. 815—6։

— 32. Թադէոս վարդապետ Քաջբերունեաց, հրաման տվեց Մխիթար Սասնեցուն վարդապետելու (ԺԳ դարի վերջը).—Մկ. մեծոփ. 30։

— 33. Թադէոս, գրիչ. Այրարատեան գավառի Նանօնից վանքում, Եսայի Նչեցու հրամանով և Յովհաննէս վարդապետի խնդրանոք օրինակեց Մեկնութիւն Երկոտասան մարգարէից, 1303 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 45 բ, Ակինեան՝ Գաւազանագիրք 50։

— 34. Թադոս կրոնավոր, Կաֆա 1305 թ.—(տես Աւետիք № 29).—Ձեռ. Վիեննա. Բ. 511։

— 35. Թադէոս Ձագավանեցի, ոտաբոբիկ ճգնում էր Յովհաննավանքում, 1318 թ.—Այրարատ 172, 291։

— 36. Թադէոս եպիսկոպոս Բագաւանի, հիշված 1321 թ.—Այրարատ 523։

— 37. Թադէոս արքեպիսկոպոս Կաֆայի, իր 4 ընկերներով միասին ուղարկվեց Լևոն Ե-ի կողմից Հռոմի պապի մոտ՝ օգնություն խնդրելու համար «1326 թ».—Ալիշան՝ Հայ-Վենետ. 114, Հայապ. 537, Ազգապ. 1840, Սիսուան 558 բ։

— 38. Թադէոս քահանա, որդի Գրիգոր քահանայի, որ Փոսի վանքում, Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1329 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 518)։

— 39. Թադէոս եպիսկոպոս Կաֆայի, ունիթոռական. Թարգմանեց լատիներենից Իննովկենտիոս Դ պապի Մեկնութիւն պա-

տարագի, 1354 թ։ Մեռել է 1357 թ.—Այրարատ 545, Ջեռ. Վիեն. 7—8։—Սրա հետ նույնանում է—Թադէոս եպս., որ թարգմանել է լատինական Մաշտոցը հայերենի. համարվում է թե Կաֆացի էր, ձեռնադրվել է Յովհաննէս ԻԲ (1316—34) պապից՝ Ավինյոնում. հունարենից հայերենի է թարգմանել Վկայաբանութիւնը (տես Manus. brit. mus. 65 բ)։

— 40. Թադէոս կրոնավոր, միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքի, հիշվում է 1366 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 846։

— 41. Թադէոս քահանա, հյուրընկալեց Տարոնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսին, երբ սա պանդխտել էր Երզնկա, 1370 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 780։

— 42. Թադէոս քահանա, ստացավ մի Մանրուսմունք, որի վրա Ստեփանոս գրչին գրել տվեց մի քանի հաւելուածներ, 1371 թ.—Bodleian 20։

— 43. Թադէոս, ավագ քահանա Գաւաշի. հայր Յոհաննէս երաժիշտ քահանայի, 1389 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 44. Թադէոս կրոնավոր, փիլիսոփա (այն է երաժիշտ), որդի Խնկիկի, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Լիմ կղզու Ս. Գէորգ եկեղեցուն, 1392 թ.—Ջեռ. Վասպ. 225—8։ Մի տարի անց, նույն Թադէոս կրոնավորը, Աղթամարում, Զաքարիա փիլիսոփա նշանավոր գրչին գրել տվեց մի ուրիշ Աւետարան, որ նվիրեց Խառաբաստայ Ս. Աստվածածին վանքին, 1393 թ.—Նոտարք, էջ 1—2։

— 45. Թադէոս, եղբայր պարոն Թումայի. երկուսն էլ հիշված են այն Մաշտոցի հիշատակարանում, որ գրեց Թումա գրիչը Վանում, Առոմ միայնակեցի համար, 1393 թ.—Նոտարք 3։

— 46. Թադէոս, ուսուցիչ Թադէոս միայնակեցի (տես հաջորդը). անունը չի տրված, բայց հասկացվում է հետևյալ տողից, որ ուղղված է Թադէոս միայնակեցին.

Գեղեցիկ վարս դու ընկալար, յանուանակցեն քում վարժեցար։—Նոտարք 4։

— 47. Թադէոս միայնակեց. երեք հարուստ մարդ էր, «հեզ և խոնարհ, առաքինի և յոյժ արդար». ծերության ժամանակ հայր ու մայր, տուն ու հարստություն թողեց և վանք քաշվելով՝ ճգնավոր դարձավ, ուսուցիչ ունենալով համանուն մի անձ (տես № 46)։ Նշանավոր եղավ իր ճգնությամբ և իր անունը գյուղ ու քաղաք տարածվեց։ Նրա մասին մի գովեստ է գրել Թովմաս գրիչը (Վան, 1393 թ), որից դնում եմ հետևյալ տողերը.

Պարոն Թադոս հեզ և խոնարհ,
 առաքինի և յոյժ արդար,
Աղաւնապէս դու ծերացար,
 Սիմէոնի հանդունեցար,
Դէմ բարութեան ես դու ճարտար
 և չարութեան ես խիստ տկար,
Ցաշխարհիս ոչ զբաղեցար,
 ոչ կաշառօք յիմարեցար,
Թողեր զտուն, զհայր և զմայր,
 առանձնական բնակեցար,
Որպէս ասէ Տէրն արդար
 յԱւետարանն աստուածաբար,
Թէ. որ ոչ թողու զհայր և զմայր,
 ոչ երևի սուրբ և արդար՝
Ոնց զհրամանս Փրկչին լուար,
 ջերմ սիրով զնա ընկալար,
Թողեր զամէն ինչ որ քեզ կայր,
 հետ Քրիստոսի հետևեցար։
Պողովատիկ զէն զգեցար,
 դեմ թշնամւոյն ի մարտ մտար.
Ոչ ի նմանէ դու յաղթեցար,
 այլ կոխեցեր զնա չարաչար։
Թեպէտ որ ես անձամբ տկար,
 բայց հոգւովդ սուրբ ես և արդար.
Պարծանք ազգին քո ծանուցար,
 գիւղ ի քաղաք համբաւեցար.
Գեղեցիկ վարս դու ընկալար,
 յանուանակցէն քում վարժեցար։
Ջմարմինդ ճնշես յոյժ չարաչար,
 զի զկեանքս անցաւոր համարեցար։
Փոխան ճգանցդ որ ճգնեցար,
 Տէրն տացէ քեզ մխիթար.
Ուր Աբրահամ է հայրն արդար,
 երթաս հանգչիս դու անդ յերկար։
Ուրախութիւն անդ անպառ,
 խոստումն և տալն է անվճար։
Միայնակեաց Թադէոս եղբայր,
 զբարին քեզ մէն մի կամենար.

Այլ աղաչեմ զՏէրն բարերար,
որ ամենայնի տայ հաւասար.
Ինձ որ գրիչս եմ ապիկար,
Թումայ անուն գործովքս չար...

Այս գովեստը Նոտարք (էջ 4) արտագրել է Գրիգոր Ծերենց Խլաթեցու Պատմութիւնից, որի մասին ավելի ընդարձակ տեղեկություն չունինք։ Տես և Թովմաս գրիչ։

— 48. Թադէոս քահանա, նախորդ № 44 ի պապն է.—Ձեռ. Վասպ. 226։

— 49. Թադէոս Ա. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Գրիգոր Դ-ի և նախորդ Սիմէոնի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 50. Թադէոս Բ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Յովհաննէս Ե-ի և նախորդ Զաքարիա Նահատակի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 51. Թադէոս, պապ Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 Թ.—Թորոս աղբ. Բ. 277։

— 52. Թադէոս ոմն մերձավոր Մարտիրոս քահանայի, որ Դաւթից (№ 173) գնեց մի Աւետարան, 1410 Թ.—Ձեռ. Վասպ. էջ 164։

— 53. Թադէոս, որդի Յովհաննէս քահանայի, որ Ծարի Գետամէջ վանքում գրել տվեց մի Ճաշոց, 1411 Թ.—Կրպտ. եպս.՝ Դօփեանք 184։

— 54. Թադէոս քահանա, որդի Խնկայ, Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1412 Թ.—Ձեռ. Դաղեան Բ. 30 բ։

— 55. Թադէոս քահանա, պաշտոնակից Սարգիս եպիսկոպոսի, որ օրինակեց Աւետարանը, 1416 Թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։

— 56. Թադէոս քահանա, որդի Վարդանի, Թրակա! որ և Մոկս գավառի Կաղթանց գյուղում, Յոհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1409 Թ., ի ժառանգութիւն իր որդի Յովհաննէսի, որ սարկավագ էր այդ թվին, իսկ իր որդի Աստուածատուրը (№ 70) վաղամեռիկ վախճանվել էր (Ձեռ. Վասպ. 293)։ Չորս տարի հետո, 1413 թվին, նույն Թադէոս քահանան Մոկաց Շպատայ վանքում, Կարապետ գրչին գրել է տալիս մի մեծ Ճառընտիր-Տօնական՝ իր որդի Յովհաննէսի համար, որ արդեն «դեռաբուսիկ քահանա» է (Ձեռ. Հալէպի, Ա. 269)։ Երկու գրիչներն էլ գովում են Թադէոս քահանայի ողորմածությունը և ուսումնասիրությունը։ Առաջինը ասում է. «Այն անեղական պահա-

պան լինի նոցա և ողորմեսցի ամենայն ննջեցելոցն նոցա. ամէն։ Ձի յայս դառն և ի նեղ տարին զմեզ կերակրեցին. Քրիստոս Աստուած զնոսա կերակրէ իւր անմահական հացիւն»։ Երկրորդն ասում է. «Ով քահանայք առաջինք և յետինք, լաւ խնամով պահեցէք և կարդացէք, զի գիրքն մարդոյ հոգի է և կեանք. Թէ գրեանքս չէին, նա աշխարհս ամէն ի կռապաշտութիւն անկանէր։ Աստուած փառաւորէ զԹադէոսի հոգին, որ Ողիմ (այժմ Ողմի) գեղից լուսաւորիչ եղև, ժողովեաց զաստուածային ծաղկունքըն՝ Աւետարան, Տարեգիրք, Յայսմաւուրք, Տօնական. Ճշմարիտ Աստուածն գիտէ որ շատ երախտիք է ի վերայ ձեր, ով պատուական տանուտերայք և տանտիկնայք, մեծ և փոքր առհասարակ, լաւ հարկիք արարէք Թադէոսից, իբրև ծնօղի ձերոյ. զի խիստ շատ աշխատեցաւ յերթևեկութիւն ս. գրոցս։

— 57. Թադէոս քահանա, եղբայր Եղբայրիկ գրչի, որ Մամթուլթ տիկնոջ համար գրեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. էջ 322։

— 58. Թադէոս կրոնավոր, միջնորդ եղավ, որ Սարգիս ոմն գնեց Աւետարանը Կարապետ գրչից և նվիրեց Ալանայ Ս. Նշանին, 1425 թ.—Նոտարք 78։

— 59. Թադէոս, հայր Սարգիս գրչի, որ օրինակել է Տաթևում մի Աւետարան, 1427 թ.—Ձեռ. Սևան. 8 ա։

— 60. Թադէոս, իբրև հանգուցյալ հայրապետ ոմն հիշում է գրիչ Սարգիս եպիսկոպոսը՝ 1427 թ.—Նոտարք 85։

— 61. Թադէոս, միաբան Ս. Լուսաւորիչ կամ Ս. Կարապետ (Զորեհանգիստ) վանքի, 1429 թ.—Նոտարք 92։

— 62. Թադէոս Ավրամենց, կրոնավոր, գրիչ. Կաֆայի Ս. Անտոն վանքում օրինակեց Հարանց վարքը, 1430 թ.—Նոտարք 95։

— 63. Թադէոս պարոն Եկեղեաց գավառում, հիշված 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 64. Թաթէոս կրոնավոր, նահատակվել է Ղազար կրոնավորի հետ միասին՝ Կաֆայում (Թէոդոսիա), ուր գտնվում է նրանց հիշատակին մի արձանագրություն, 1442 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհս 351, որից և Նոտարք 128։

— 65. Թադէոս, միաբան Ոստանի Պտղկի վանից, 1444 թ.—Ձեռ. Նոր.-Բայազ. 41 բ։

— 66. Թադէոս քահանա, իր եղբոր Կարապետ քահանայի հետ սպասավորում էր Գաւաշի Ամենափրկիչ և Ս. Կիրակոս եկեղեցիներում, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 388։

— 67. Թադէոս աբեղա Տարօնի, հիշված է Գրիգոր Ժ Մակուեցի կաթողիկոսի կոնդակում, 1445 թ.—Նոտարք 142։

— 68. Թադէոս, ուսուցիչ Իսրայէլ քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում, Աղնեցի Թովմա տանուտերի համար գրեց մի Ավետարան, 1447 թ.—Ձեռ. Վասպ. 400, Նոտարք 156։

— 69. Թադէոս, իր կնոջ հետ մի խաչքար է կանգնեցրել իրենց հիշատակին՝ Թէոդոսխայի Ս. Սարգիս եկեղեցում, 1449 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 350։

— 70. Թադէոս փրա Շահապունեցի, ունիթոռական, գնաց Կաֆայի Ս. Նիկոլ վանքը և լատիններից գնեց «Բրէվիարը», որ և կազմել տվեց 1450 թ.—Manus. brit. mus. 159 բ, Նոտարք 164, Սիսական 482։

— 71. Թադէոս ճգնավոր, միաբան Վարագայ վանքի. հիշված է 1454 թ.—Նոտարք 176։

— 72. Թադէոս սարկավագ, գրիչ. Երուսաղէմում, Սարայի վանքում օրինակեց Ավետարանը, 1455 թ. ձեռագիրը այժմ գտնըվում է Հալէպում.—Տաթև տարեց. 1925, 292, Ձեռ. Հալէպի, Ա. 58—59։

— 73. Թադէոս քահանա Նորավանից, հիշված է 1456 թ.—Զարբ. Թրգմ. 727։

— 74. Թադէոս կրոնավոր Կաֆայեցի, Երուսաղէմ ուխտի էր գնում, ճանապարհին ընկղմվեց ծովում։ Ուսուցիչ էր եղել մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի, որ գրել տվեց մի Ցայսմաւուրք՝ Լիմ կղզում, 1452—57 թվերին և երախտիքով հիշում է նրան։—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 ա։

— 75. Թադէոս հայրապետ Աղթամարի, հիշված է 1460 թ.—Նոտարք 197, Ձեռ. Վասպ. 434։

— 76. Թադոս ոՑՆ, հիշված է Մարվանիս գյուղի (Գողթն) եկեղեցու մի խաչքարի վրա, 1460 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 325։

— 77. Թադէոս, հայր Սուլթան խաթունի՝ կնոջ խոջա Խաչատուրի, որ Արճեշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— 78. Թադէոս քահանա, իր պաշտոնակից Առաքէն, Կիրակոս և Գրիգոր քահանաների հետ միջնորդ եղավ Զարմանդուխտ տիկնոջ Ավետարանը նվիրելու Բաղէշի Ս. Գէորգ եկեղեցուն, 1463 թ.—Նոտարք 215։

— 79. Թադէոս եպիսկոպոս Բիւրականի և Անբերդի, հիշված 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114, Այրարատ 158։

— 80. Թադէոս կրօնավոր, նորէց կազմեց մի հին Աւետարան՝ Գողթան Աղւորիա արքեպիսկոպոսի ծախսով, 1471 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 388)։

— 81. Թաթոս, հայր Զօրայի, որ Երեմիա գրչին գրել տվեց մի Մաշտոց և նվիրեց Կոնթերն գյուղի եկեղեցուն, 1474 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։

— 82. Թադէոս սարկավագ Ագուլեաց եկեղեցու, 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 300։

— 83. Թադէոս ճգնավոր, ուսուցիչ Մարգարայ գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ Աղբակում, 1487 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84։

— 84. Թադէոս, հայր Շնոֆոր պարոնի, որ պարտիզպան էր Սեբաստիայում և Մխիթար գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

— 85. Թադէոս, եղբորորդի Զաքարայ աբեղայի, որ գնեց մի Շարակնոց՝ 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 ա։

— 86. Թադէոս, նորընծա քահանա էր, մայրը Մարթա նրա համար գնեց Ցուսիկ աբեղայի գրած Մաշտոցը, 1491 թ.—Bodleian 29։

— 87. Թադէոս, որդի Գալուստի և եղբայր Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 135։

— 88. Թադէոս Գ. կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Աբրահամ Բ-ի և նախորդ Դաւիթ Ե-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 89. Թադէոս Դ կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Զաքարիա Գ-ի և նախորդ Միքայէլ Բ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։

— 90. Թադէոս Ա. աթոռակալ Սարգիս Գ կաթողիկոսի «1499—1504 թ».—Առաք. պատմ. 337։

— 91. Թադէոս երեց Սեբաստացի, հավատքի համար նահատակվեց «1534 թ».—Զամչ. Գ. 516 > Նոր վկ. 371, Ազգապ. 2228։

— 92. Թադէոս Սեբաստացի, հիշատակագիր ԺԶ դարում, ըստ Ազգապ. 2263։ Թերևս նույն է Թադէոս վրդ. Սեբաստացի, տաղասաց, որ ունի Ողբ մանկամողովի վրայ (1542 թ) և «Շահ Թահմազի արշաւանքի մասին» (1551 թ).—Զամչ. Գ. 513—5։ Հիշված է նաև Թադէոս կրոնավոր տաղասաց, որի տաղերից տես

*Բազմ*. *1862, 66 և 1875, 351, Կոստանեանց, Նոր ժող. Բ. 8, Գ. 3, Տաշեան, Ցուց. 1089։*

— 93. Թադէոս *Բ. ընտրվեց աթոռակալ Գրիգոր ԺԲ Վաղարշապատցի կաթուղիկոսի Հայոց՝ Առաքել Ա-ի հետ միասին, «1576 թ». հիշված է հենց 1576 թվին՝ իբրև նորընտիր կաթուղիկոս (Ձեռ. Նոր-Բայազ. 8 բ), այցելել է «1577 թվին» Վենետիկ (Հայ-Վենետ. 332—3) և շուտով՝ Լեհաստանի վրայով դարձել է Էջմիածին։ Հիշված է դարձյալ 1578 թվին Իլով քաղաքում գրված մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 438)։ 1581 թվին (Ձեռ. Դադեան, Բ. 32 ա և Ձեռ. Հալէպի, Ա. 198 բ), 1583 թվին՝ Տաշեան, Ցուց. 1028. արդեն վախճանված է 1584 թվին (Ազգապ. 2279)։—Առաք. պատ. 338, Ալիշան, Կամենից 50, 136, Ազգապ. 2269։*

— 94. Թադէոս *եպիսկոպոս, նվիրակ Էջմիածնի, հիմնեց Արմաշի նշանավոր վանքը (Նիկոմիդիայի մոտ)՝ «1611 թ.—Ազգապ. 2370—71։*

— 95. Թադէոս *քահանա Համազասպեան, Սպահանի (Նոր-Ջուղայի) Երեան թաղից. ունի «Ոտանաւոր պատմութիւն Պետրոս աւագ գնդաւորին Հայոց» (1668 թ), որ հրատարակված է ՀԱ 1887, 168—172 և 194—7։ Գնաց Վենետիկ և այնտեղ տպարան բանալով՝ տպագրեց զանազան գրքեր. ինչպես՝ Խորհրդատետր, Ճաշոց ատենի (1686 թ).—Զամչ. Գ. 664, Տաշեան, Ցուց. 887—8։*

**ԹԱԶԱ, իգ. < պրս.* تازه tāza *«նոր, թարմ, մատղաշ» բառից. գործածական է այժմ Ղարաբաղում։ Տես և հաջորդները։*

**ԹԱԶԱԳՈՒԼ, իգ. < պրս.* تازه tāza+گل gul *«վարդ» բառերից, իբր «նորավարդ»։ Հիշատակված է ԺԷ դարից սկսած և այժմ էլ գործածական է։ Հնագույն հիշատակություններն են՝ 1648 թ? (Ձեռ. Վաղպ. 911), 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 48), 1663 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 406), 1678 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 2 բ), 1696 թ. (Տաշեան, Ցուց. 591), 1720 թ. (Ձեռ. Վաղպ. 1001)։*

*ԹԱԶԱԶ, ար. ծագումը անհայտ։ Ունինք միայն՝*

— Թազազ *հայ իշխան, որ Միքայէլ պատրիկի հետ կռվեց և հաղթեց Արաբաց Աբդուլկաբիր զորավարին՝ հիջրէթի 163 թ. (շուրջ 779 թ).—Խալաթեան, Արաբ. մատ. 93 (գրված է նաև* طراز ṭārāz, *որ ուզում է կարդալ* Թորոս *)։*

* *ԹԱԶԱԽԱՆ, իգ. < պրս.* تازه tāza+خان xān *«իշխան» բա-*

ների. մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1490 թվից ուշ (Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ)։

*ԹԱԶԱՄԵԼԻՔ, իգ. < պրս. تازه tāza + արաբ. ملک melik «թագավոր» բառերից։

— 1. Թազամելիք, կին Կարապետ քահանայի և մայր Աստուածատուր քահանայի, որ Խլաթում գրեց Ավետարանը, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 2. Թաղայմէլիք (վրիպակով տպված Ղ), կին Կարապետ քահանայի և մայր Յովանէս քահանայի, որ Խլաթում, պարոն Ամիրդօլի համար օրինակեց մի Ճաշոց, 1450 թ.—Նոտարք 164։

*ԹԱԶԱՒ, իգ. հիշված է սեռ. Թազաւին ձևով՝ անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վասպ. 186.—կարծում եմ որ պետք է ուղղել Թազային. ուղղականն է Թազա, որ տես առանձին։

† ԹԱԹ, ար. < հյ. թաթ «ձեռք» բառից. տես Թաթուլ № 3։

*ԹԱԹԱՐ, ար. և իգ. <թաթար ազգի անունից. սրանից են կազմված նաև Թաթարխան, Թաթարբէկ, Թաթարխաթուն են, որոնք տես առանձին։ Թաթար անունը սկսում է գործածվել ԺԵ դարից և գնում է մինչև ԺԸ դարը. այնուհետև դադարում է։ ԺԵ դարից ունինք երկու վկայություն (տես տակը). այնուհետև հիշվում է 1534 թ. (Ձեռ. Վասպ. 649), 1575 թ. (անդ 688), 1592 թ. (անդ 724), 1597 թ. (անդ 215), 1602 թ. (անդ 802), 1608 թ. (անդ 831), 1609 թ. (անդ 835), 1610 թ. (անդ 838), 1613 թ. (անդ 845), 1638 թ. (անդ 884), 1668 թ. (անդ 278) և վերջին անգամ 1701 թ. (անդ 1027)։ Այս բոլորը իգական են, բացի երեքից, այն է 1592 թ., 1668 թ. և 1701 թ։ Արական է նաև անթվական մի հիշատակարանում, որ հիշում է Քոսեան, Հայք ի Ջմիւռն. Բ. 19։

— 1. Թաթար, պարոն, հայր Փաշայի, որի քաջության վրա նախանձելով այլազգիները՝ սպանեցին Զորակերտ գյուղում, 1451 թվին?—Այրարատ 120, 123։

— 2. Թաթար, որդի Յովհաննէսի՝ հօրեղբօր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

*ԹԱԹԱՐԲէԿ, ար. < նախորդ Թաթար անունից + բէկ, որ և դառնում է նշան արականի։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում, այն է՝

— Թաթարբէկ տանուտէր, որդի Մոմեղէնի, որ Նարեկ գիւղում, Պասկ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1420 թ։—Նոտարք 61, 62=Ձեռ. Վասպ. 326—7։

*ԹԱԹԱՐԽԱԹՈՒՆ, իգ. < կազմված է նախորդ Թաթար բառից+խաթուն։ Մի անգամ գտնում ենք հիշատակված ԺԵ դարում։

— Թաթարխաթուն, կին Միրիջանի՝ եղբոր խոջա Խըրշահի, որ Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ։—Ձեռ. Վասպ. 496։

— Թաթարխաթուն անունը մի անգամ ևս հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Ա. 789։

*ԹԱԹԱՐԽԱՆ, ար. < նույն թաթար բառից+xān, իբր թե «թաթարական իշխան»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1721 թ. (Բարխուտ. Աղվանից երկ. 110)։

†ԹԱԹԻԿ, ար. < հյ. թաթ «ձեռք» բառի փաղաքշական ձևից, ինչպես ունինք նաև Թաթուլ։

— 1. Թաթիկ, աշակերտ Ս. Մեսրոպի, մասնակցեց նրա հուղարկավորության և թաղման հանդեսին «439 թ»։ Եղավ կրոնավոր Օշականի նորակերտ տաճարում։—Խոր. Գ. կէ.—գրված Թադիկ՝ Կոր. 27. Փ. կոր. 32, 34։—Զամչ. Ա. 534 և Ազգապ. 393 նույն են համարում՝

— 2. Թաթիկ եպիսկոպոս Բասենի, մասնակցեց Արտաշատի ժողովին («449 թ»)՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին։ Ղևոնդեաններից առաջ քշվեց Պարսկաստան և նահատակվեց Ասորեստանում, այն է Խուժաստան «454 թ»։—Եղիշ. 22, 139. Փարպ. իգ, խբ. Վրդ. իէ.—Թադիկ՝ Ցայսմ. յուլ. 31.—սեռ. Թաթկայ՝ Փարպ. խթ։

— 3. Թադիկ, հայր Մարտիրոսի Խանականցոյ, ազգական Ներսէս վարդապետ Սամնեցու, նվիրատու ձեռագրի (1332 թ)։—Հայապ. 546։

*ԹԱԹԼՈՒԲԷԿ, ար. < թրք. طتلو tatlu «քաղցր, համեղ, անուշ» բառից, որ հնչվում է գւռ. datlu, ժղ. tatlu+بك beg «իշխան»։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 302)։—Տես և Տաթլու։

†ԹԱԹՈՒԼ, ար. < հյ. թաթուլ «անասունների առջևի ոտքը» բառից, որ թաթ բառի փաղաքշականն է։ Այս երկու անունների (Թաթ և Թաթուլ) նույնության համար հմմտ. տակը Թաթուլ Կամսարական (№ 3)։ Այս անունը հիշատակված է մեր

մեջ Ն դարից և այժմ էլ գործածական է։ Գրված է (արևմտահայ տառադարձությամբ 'Դադուլ' 1621 թ. Եաղլովցա քաղաքում գրված մի ձեռագրում (Բիւրակն 1899, 15 ա)։

— 1. Թաթուլ եպիսկոպոս Տարոնի, Մեծն Ներսէսի ուղեկիցներից մեկը, երբ սա գնում էր Կեսարիա՝ կաթողիկոս օծվելու, «353 թ».—Մեսր. եր. 26։

— 2. Թաթուլ Վանանդեցի, մասնակցեց Վարդանանց պատերազմին «451 թ».—սեռ. Թաթլոյ՝ Եղիշ. 90. Յայսմ. օգոստ. 7 (սխալմամբ գրում է Մանդակունի).—գրծ. Թաթլաւ՝ Փարպ. լթ։

— 3. Թաթուլ Կամսարական, Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մեկն «452 թ».—Եղիշ. 150.—Նույն անձը կոչված է Թաթ Կամսարական՝ Փարպ. խէ։

— 4. Թաթուլ Դիմաքսեան, մասնակցեց Վարդանանց պատերազմին «451 թ», որից հետո բանտարկվեց Պարսկաստանում 12 տարի և ապա արձակվելով վերադարձավ Հայաստան «462 թ»։—Եղիշ. 77, 150. Փարպ. լդ, խէ. Յայսմ. օգոստ. 7։

— 5. Թաթուլ ճգնավոր. իր եղբոր՝ Վարոսի և իր աշակերտ Թումայի հետ ճգնում էր Վարդանանց պատերազմից («451 թ») հետո, Գիւտ կաթողիկոսի ժամանակ («461—478 թ»)։ Իր անունով է Թաթլոյ վանքը. իրեն են ընծայվում «Երատք առ աշակերտ իւր Թովմաս».—Ասող. Բ. բ. Վրդ. իը. Յայսմ. սեպտ. 30, դեկտ. 29, 30, մրտ. 6. Ցից. Թաթ. 47, 49, 50. 52. Կիր. 21. Սամ. անեց. 72 (դնում է 494 թվին, որ շատ ուշ է). Մխ. այրիվ. 62.—սեռ. Թաթլոյ՝ Ճշ. 664. Յայսմ. սեպտ. 30, դեկտ. 29, 30, մրտ. 6. Ցից. Թաթ. 47—51, 59. Վրդն. աշխ. 504.—գրծ. Թաթուլիւ՝ Ցից. Թաթ. 48.—Տաշեան, Ցուց. 1089, Զարբ. Հին դպր. 298. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է, 22. Ազգապ. 444.—տես և Աճառ. անվան տակ։

— 6. Թաթուլ եպիսկոպոս Արշարունեաց (Կամսարականաց). ժամանակակից է Բաբկէն կաթողիկոսին («490—516 թ») և ստորագրում է այն թղթին, որ գրեց Բաբկէնը Պարսկաստանի ուղղափառներին։ Ըստ Այրարատ 56 բ տրված տախտակի՝ հաջորդել է Յովհան եպիսկոպոսին, դահակալել է 9 տարի և իրեն էլ հաջորդել է Թովմաս եպիսկոպոսը։ Ըստ այսմ իր թվականը կարելի է դնել 501—510, որ համապատասխանում է Բաբկէնի տարեթվին.—բց. ի Թաթլոյ՝ Գիրք Թղ. ը.—Տաշեան, Ցուց. 656, Այրարատ 56, Զամչ. Բ. 374, Ջեռ. Հալէպի, Բ. 132 ա։

— 7. Թաքուլ, *իշխան կամ հարկահան, որ ներել է Տեկորի հարկերը, 1018 թ.—Շիրակ 134։*

— 8. Թաքուլ, *սպարապետ Կարուց Գագիկ թագավորի. քաջությամբ կռվեց Տուղրիլի զորքերի դեմ և նրանց մեծ կոտորած տվեց։ Բայց իր ձին վիրավորվելով, ինքն էլ բռնվեց։ Երբ հանեցին Տուղրիլի առաջ, Տուղրիլը տեսնելով նրա փառավոր արտաքինը, շատ ափսոսաց։ Եվ որովհետև պատերազմում իր սիրելի Արսուրան իշխանի որդին վիրավորված էր, ասաց Թաթուլին. «Եթե նա ապրի, քեզ էլ կազատեմ»։ Թաթուլն անվեհեր պատասխանեց. «Եթե հարվածը իմն է, չի ապրիլ»։ Երեք օր հետո Արսուրանի որդին մեռավ, Տուղրիլը սպանեց Թաթուլին և նրա աջ բազուկը կտրելով՝ ուղարկեց Արսուրանին, ասելով. «Որդիդ վատ բազուկից մեռած չէ» (1053).—Լաստ. ժզ. Զամչ. Բ. 955։*

— 9. Թաքուլ, *իշխան էր նշանակված Յունաց կողմից Մարաշում. ժոսլին լատին իշխանը գրավեց քաղաքը նրա ձեռքից. Թաթուլը Տիրամոր հաչակավոր պատկերը չթողեց լատինների ձեռքը, այլ ծախեց Թորոս Ա-ին և ինքը քաշվեց Պոլիս («1104 թ»)։—Վրդ. կե. Ուռհ. 272, (298). Սիսուան 546 բ։*

— 10. Թաքուլ, *որդի Պարոնշահի, որ գրել տվեց մի Ավետարան, 1329 թ. (Ձեռ. Վասպ. 179)։ Այս Ավետարանն է, որ Թաթուլը արտագրության համար տվեց Յովհաննէս գրչին, Բզնունեաց Աղէթ գյուղում, 1330 թ.—Ձեռ. Թաւր. 2 բ։*

— 11. Թաքուլ, *մերձավոր Կարապետ գրչի, որ մահտեսի Խնդուի համար օրինակեց Ավետարանը, 1357 թ.—Ձեռ. Վասպ. էջ 214։*

— 12. Թաքուլ, *ազգական Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277։*

*ԹԱԼԱ, սեռն անհայտ. այս անունը գտնում եմ մի անգամ գործածված Հռիփսիմէի տաճարի մի արձանագրության մեջ (ՉԽԵ=1296 թվից), որ հրատարակեց Յովսէփեան՝ Արար. 1898, 442։ Գրված է «Ես Շիրին խաթունս, ու Պայալուն… ու Թաւղթէս ու Թալէս…»։ Սրանք բոլոր երևում են իշխանավոր մարդիկ, որոնք ներել են բամբակի հարկը։ Ըստ իս Թալա (անձնական հոդով Թալէս) ծագում է արաբ.* طالع ṭāli' *(ժղ.* taleh*) «բախտ, ճակատագիր» բառից։*

— Թալա *(սեռ. Թալայի ձևով) գործածված է երկրորդ անգամ Մարմաշէնի մի տապանագրում, 1342 թվից. «Այս հանգիստ է Նլու? խաթունին դստեր Թալայի, թվ. ՉՂԱ»։ Անշուշտ մեռ-*

նողն է Նլու խաթունը, իսկ Թալա նրա հայրն է։ Սրանով էլ որոշվում է անվան սեռը (Շիրակ 149)։

*ԹԱԼԱԲՇԱՀ, իգ. < արաբ. طلب ṭalab «ուզածը, փափագ, խնդրանք»+պրս. شاه šāh «թագավոր», որով ամբողջը լինում է «թագավորի փափագածը»։ Իբրև անձնանուն գտնում եմ գործածված երկու անգամ. առաջինը Թալապշայ ձևով, երբ իգ. 1623 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 630), երկրորդը՝ անթվական մի հիշատակարանում՝ Թալապշա ձևով (սեռն անորոշ)՝ Ջեռ. Վասպ. 766։

*ԹԱԼԱՅԻ (բուն անունն է Աբուլ-Ղալաթ-Թալայի-բին-Ռուզգիք, մականվանյալ էլ-մէլիք-էս-Սալիհ), Եգիպտոսի վեզիրն էր։ Սրա պապը Հայաստանի կողմերից գալով՝ ընտանիքով հաստատվել էր Եգիպտոսում։ Ինքը ծնվել է 1102 թ։ Ֆաթիմինների պալատում կրթվելուց և զինվորական ասպարեզում պատրաստվելուց հետո, այս քաջ, վարչագետ, բայց խստաբարո հայազգին ձեռք առավ վեզիրության պաշտոնը և միջնադարյան Եգիպտոսի ճակատագիրը վարեց երկար ժամանակ։ Նախապես կառավարիչ էր Վերին Եգիպտոսի մի նահանգում։ Երբ Եգիպտոսի գահակալ էզ-Զաֆիր-Իսմայիլը սպանվեց, պալատականները դիմեցին սրան և իր օգնությունը խնդրեցին սպանության հեղինակ Աբբասի և նրա որդի Նասրի դեմ։ Սալիհ Բեդեվիններից մի մեծ բազմության գլուխն անցած դիմեց Կահիրէ. երբ քաղաքին մոտեցավ, Աբբասը Նասրի և իր ընկերների հետ փախավ։ Նա վեզիր եղավ 1154 թվին և Եգիպտոսի բացարձակ տերը դարձավ։ Միաժամանակ բանաստեղծ էր. ունի երկու հատոր դիվան (հավաքածու արաբերեն բանաստեղծությանց)։ Վեզիրական պաշտոնը վարեց էլ-Ֆայեզ խալիֆայի և նրա հաջորդ էլ-Ադիդի ժամանակ, որին իր աղջիկը կնության էր տվել։ Թալայի այս Ադիդին գրեթե իր խաղալիքն էր դարձրել և իր ուզած ձևով կառավարում էր Եգիպտոսը։ Նրանից ազատվելու համար էր, որ թագավորը դավադրություն սարքեց և Թալայիին սպանել տվեց 1161 թվին։ Իր ծախսով շինել է Կահիրէում Բաբ-Զավիլայի հոյակապ մզկիթը, որ մինչև այսօր կանգուն է մնում և Ֆաթիմեան ճարտարապետության հրաշալիքներից մեկն է համարվում։ Նորոգվեց 1934 թվին։ Իբն հաջորդեց որդին Մուհիդդինը։—Իբն Խալլիքան, էջ 180, 184—9, 197. տես և վերը Աբուլ-Ղալաթ, Ա հտ. էջ 23—24։

*ԹԱԼԱՆԲԵՑ, ար. < թրք. تالان talan «ավար, կողոպուտ»+ بك beg «իշխան» բառերից։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ գործածված 1511 թ.—Ջեռ. Վասպ. 646։

*ԹԱԼԻՇ, ար. < պրս. تالش tāliš (Գիլանի գավառում բնակվող մի իրանական ժողովուրդի անունն է)։ Կա նաև تالش و دیلم Tāliš u Daylam «է անուն երկուց քաղաքաց որք են մօտ իրերաց, յորս լինին յոյժ գեղանիք»։ Գործածական է այժմ Ղարաբաղում, թե՛ հայերի և թե իսլամների մեջ։

*ԹԱՀԱՐ, ար. < արաբ. طهر ṭahr «մաքուր» բառից (Կամուս, Բ. 11)։

— 1. Թաար, երևելի վարպետ քանդակագործ, ունի երկու նշանավոր խաչքար՝ Անապատի եկեղեցում, որ կառուցել է Դավիթ իշխան Կիւրիկեան, 1198 թ.—Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 169։

— 2. Թահար, հիշված է 1327 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում, Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 462)։

• *ԹԱՀԻՐ, ար. < արաբ. طاهر ṭāhir անունից, որ բուն նշանակում է «մաքուր»։ Գործածական է նաև Պարսից մեջ. հայտնի է օրինակ՝ Բաբա Թահիր] պարսիկ բանաստեղծը։ Մեր մեջ գործածված եմ գտնում նախ 1579 թ. Թահիր ոմն իգ! (Կարապետ եպս.՝ Դոփեանք 137), երկրորդ՝ Դահիր ար. 1655 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 48) և երրորդ՝ Թահիր ար. 1687 թ. (Ջեռ. Թաւր. 24 բ)։ Սրանից է Թահիրեան ազգանունը։

*ԹԱՀՄԱԶ, ար. < պրս. Tahmāsp (արաբական է-ով) < պազենդ. tahmāspā անունից, որ կազմված է հպրս. taxma «ուժեղ»+aspa «ձի» բառերից։ Ամբողջը նշանակում է «ուժեղ ձի, նա որ ուժեղ ձիեր ունի»։ Այս անունով հայտնի են Թահմասպ որդի Մինոչիհրի, հայր Զաւ թագավորի (Շահնամէ), Թահմասպ որդի Իսմայիլի, թագավոր Պարսից 1524—76 (հայոց մեջ գրված Թահմազ), Թահմաս ազնվական վրացի (1615 թ), Թահմասպ որդի Շահաբասի են (Justi 319)։ Մեր մեջ գործածված եմ գտնում մի անգամ Թահմազ ձեռք՝ 1678 թ. (Զամբռ 184). Նույնից կա նաև Թահմազեան ազգանունը։

ԹԱՋՆԱՅ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԴ դարում։

— Թաճնայ, կին Յովհաննէսի, միասին շինել են Գայլեձորի Սպիտակաւոր Աստուածածին վանքի զանգակատունը, 1321 թ.—Բաջբերունի, Արրտ. 1889, 56, Սիսական 137 (վերջինս գրում է Թաճնայ, բայց անունների ցանկում Թաճնա)։

*ԹԱՂԱ, ար. < վրաց. თაყა (Թաղա) անունից։ Գործածված է ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Թաղա, եղբայր Մինա խաթունի, որ էր երկրորդ կին Տարսայիճի Օրբելեանց (մ. 1290 թ)՝ եղբոր Սմբատ արքայի.— Արձ. Սիսական 203։

— 2. Թաղա, պարոն և երկրակալ Տայոց, հիշված 1313 թ.— յիշ. ИАН 1911, էջ 1300։

— 3. Թաղա հիշված է նաև երեք արձանագրության մեջ 1654—5 թ. (մի քանի անգամ)։—Այրարատ 340, Սմբատեանց՝ Գեղարքունի 115, 120. Սիսական 84—85։

— Այս Թաղա անունից կազմված հին ազգանուն է նաև Թաղեանց, որ գտնում ենք Նորավանքի ժամատան առաջին տապանաքարի վրա (Սիսական, էջ 193)։

ԹԱՂԱԶԱՐ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Թաղազար› հայր Թուրվանդա խաթունի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1448 թ.—Ձեռ. Վասպ. 402։ (Հիշում է այսպես. «Ծնաւղաց իւրոց Թաղազարի և Սաքախ մելիքի և եղբաւրն Սաղդադնին...»։ Նույնը քիչ հետո, էջ 404 կրկնելով՝ ասում է «Ջծնաւղսն իւր՝ զՍաղդադին և զքոյրն զՍաղդաթ»։ Հայտնի երևում է որ արտագրության ժամանակ ծնողների անունները փոխցրած է։ Այսպեսով միջոց չունինք ստուգելու Թաղազար անվան ձևը)։

ԹԱՂԱՄԻՔ, իգ. ծագումն ինձ անհայտ։

— Թաղամիք, դուստր Համազասպի և քույր Վարդանէս աբեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում օրինակեց Գանձարանը, 1412 թ.—Manus. brit. mus. 120 բ (ձեռագրի Թաղամիք ընթերցվածը ուղղում է Թաղամելիք)։

*ԹԱՂԷՍ, ար. կրճատված է Եւթաղիոս անունից, որ Լուսաւորչի դայակի եղբոր անունն է։ Ծագումը տես անդ։ Հատուկ անվան սկզբում եւ վանկի անկման լավագույն օրինակն է Եւսեբիոս > Սեբէոս։ Կարելի չէ մտածել Թաղէս < հուն. Θαλῆς փիլիսոփայի անվան մասին, որ շատ հին, անսովոր և հեթանոսական անուն է։

— Թաղէս, քահանա Ոստան քաղաքի Ս. Ստեփաննոս նախավկայ եկեղեցու. հիշված է 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

*ԹԱՂԻ, ար. < արաբ. تقي taqī «երկյուղած, բարեպաշտ, աստվածավախ». այժմ էլ կենդանի անուն է Իրանում և հնչվում է Թաղի։

— 1. Թաղի (տպ. Ես Կոռոսս ու Թուղիս, իմն Հոռոմս ու Թաղիս). հիշված է 1557 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 7 բ։

— 2. Թաղին *(սեռ. Թաղինին), ար. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 31 ա)։*

***ԹԱՂԻԱԴԻՆ**, *ար.* < *արաբ.* تقي الدين Taqī-ad-dīn *«բարեպաշտ ի կրօնս» ձևից։ Թեև գրված է նաև* Թաղիաքին, *բայց ուղիղ ձևն է* Թաղիադին, *որին համաձայն է գալիս թե արաբերենը և թե մանավանդ վրաց.* თაყაიდინ Թաղաիդին: *Հիշատակված է միայն ԺԳ դարում, ապա դադարած։ Սրա կրճատ ձևից է Թաղիադեան ազգանունը։*

— 1. Թաղիադին, *հայր Սարգսի, որից Հաղբատի առաջնորդ Համազասպ եպիսկոպոսի եղբայր Գրիգորը գնեց Ագռաւաձորը և նվիրեց նույն վանքին, 1249 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 25։*

— 2. Թաղիաքին *Բագրատունի, որդի Կիւրիկէ Դ-ի, եղբայր Փահլաւունի և Աղսարթանի, մեծ իշխան. մասնակցեց Թաթարաց Հուլաղու խանի արշավանքին դեպի Բաղդադ 1256 թ. և ի դարձին Մուֆարղին, որ գրավեցին 2 տարի հետո։ Այստեղ ձեռք բերեց Ս. Բարթուղիմէոսի աջը, որ փոխադրեց Հաղբատ (1259)։—* Թաղիաքին՝ *Կիր. 73.—* Թաղէաքին՝ *Մաղաք. աբ. 28.—Ջամչ. Գ. 186, 256—7, Մովսէսեան՝ Լոռիի կիւր. թգ. 78։*

— 3. Թաղիադին *սպասալար, որ շինել է տվել Կարսի բուրգերը (թվականն անհայտ)։ Այս անունը եղծված ձևով գտնում ենք Կարսի ներքնաբերդի մի բարձր աշտարակի վրա, որից կարդացվում է միայն հետևյալը.*

*. . . . . . . . .ինեց*
*բուրջ . . . . . . ի թե*
*սո | ան . . . . .ա.. ի ար*
*ձել ամ| . . . . . ալարթաղի*
*ադինճա/ . . . . ոգյողութս*

*(Սարգիսեան, Տեղագրութ. 104, Ալիշան՝ Այրարատ 85, Կրպէ՝ Կարս քաղաք 26)։—Ալիշանը սրանցից վերծանում է «շինեցաւ բուրջս... սպասալար Թաղիադին... յաղութս»։*

***ԹԱՂԻԱՆՈՍ**, *ար.* < *հուն.* θαλία, θαλλός *«մատղաշ ծիլ, բողբոջ» բառից, որ տալիս է զանազան անձնանուններ. ինչ.* Θάλεια, Θαλῆς, Θαλία, Θάλιος, Θαλλίσκος, Θάλλος, Θαλλοῦσα, Εὐθαλής > *հյ.* Եւթաղ, *լտ.* Thalius, Thalinus, Thallus *են։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ հիշատակված 1507 թ.* Դեղանոս *ձևով (Ձեռ. Վապ. 623)։ Սրանից է* Թաղիանոսեան *ազգանունը։ Համազոր ձևեր են հյ.* Բարունակ, Ջաջուռ, *թրք.* Բուդաղ:

*ԹԱՂՎԵՐԴԻՇ, ար. < թրք. تڭرى tangri, taṅgri «Աստված»+ وردى verdi «տվեց» բառերից, իբրև «Աստուածատուր»։ Սխալ հավելված է շ ձայնը։ Իբրև անձնանուն՝ այս ձևի տակ մի անգամ գտնում եմ գործածված 1732 թ.—Սխսական 372։

*ԹԱՃԻԿ, հիշված է մի անգամ իբրև ար. 1650 թ. (Ջեռ. Սեր.=ՀԱ 1926, 44) և երկու անգամ էլ իբրև իգ. առաջինը Թաճիկ՝ կին Ամիրի և մայր Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում, Անանիա աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1469 թ. (Ջեռ. Թաւր. 132 բ), և երկրորդը՝ 1439 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Տաշեան, Ցուց. 50)։ Չեմ կարծում, որ պրս. تاجيك tāǰik թուրքական միջինասիական ցեղի անունից լինի, այլ ավելի հավանաբար պրս. تاج tāǰ «թագ» բառից կազմված մի անվան կրճատ կամ գգվական ձևն է. համմ. հյ. Թաջդին, Թաջգոհար, Թաջեր, Թաջմելիք, Թաջխաթուն անունները և պրս. Tāǰbānu իշխանուհի ոմն, որ 1748 թվին գրված մի վեպի հերոսուհին է (Justi 318 բ)։—Ըստ այսմ պետք է կարդալ Թաջիկ։

*ԹԱՄ, ար. < արաբ. تام tām «ամբողջ, կատարյալ» բառից։ Հիշատակված է միայն երեք անգամ, հետեյալ ձևով. համմ. Թամիկ։

— 1. Թամ, հիշված է Խծկոնքի 1216 թվականի մեծ արձանագրության մեջ՝ վանքի նվիրատուների ցանկում.—Կրպէ, Ազգագր. հանդ. Ա. 45, Յուսիկ եպս.՝ Արրտ. 1904, 990։

— 2. Թամ, հիշված է 1606 թ.—Դրնդ. 104։

— 3. Թամ, հիշված է 1670 թվի մի հիշատակարանում՝ Ծանիկեան, Հնութ. Ակնայ 90։

*ԹԱՄԱԶ, ար. կամ նույն է Թահմազ անվան հետ, որ տես վերը, և կամ կրճատված է Թամազիզ անունից, որ սակայն իգական է։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1664 թվի մի հիշատակության մեջ, որ տես Սմբատեանց, Երնջակ 84։

*ԹԱՄԱԶԻԶ, իգ. < արաբ. تام tām «ամբողջ, կատարյալ»+ عزيز ʿazīz «մաքուր, նվիրական, սուրբ» բառերից (ուրեմն և հյ. «լիամաքուր»)։ Գտնում եմ մի անգամ գործածված ԺԳ դարում։

— Թամազիզ, կին Հայրապետի և մայր Հաղիայի, որ Երզընկայի Ս. Կիրակոս վանքին նվիրեց մի Ավետարան, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 298։

*ԹԱՄԱՂՈՒԼ, ար. < արաբ. تام tām «ամբողջ, կատարյալ»+ عقل ʿaql «խելք». ամբողջը թուրքական բարդություն է, որ նշա-

նակում է «խելահաս»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1672 թ.—Սիսական 183։ Հմմտ. Թամեր։

***ԹԱՄԱՄ**, իգ. < արաբ. تمام tamām «կատարյալ» բառից. հմմտ. «էր անուն նորա Թամամ, որ է կատարեալ կամ լցեալ» (Նոր վկ. 521)։ Իբրև արական անուն գործածական է Արաբների մեջ. հմմտ. Միխ. աս. 384 և Իբն-ի-Բատուտա, Ա. էջ 253։ Մեր մեջ իբրև իգական անուն գործածական է սկսած ԺԳ դարից մինչև այժմ։ Դնում եմ հին օրինակները. դանց եմ առնում 1500 թվից ուշ եղած հիշատակությունները։

— 1. Թամամ, ուխտի է գնացել Արտաւազդայ վանքը և մի այգի է նվիրել՝ շուրջ 1224 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 365։

— 2. Թամամ, իր հարազատ Շնորհիկի հետ վաղամեռիկ եղավ. Վահրամ կսկծալի հայրը նրանց հիշատակին մի խաչքար կանգնեցրեց 1282 թ.—Այրարատ 125, Բանասէր 1901, 132—3։

— 3. Թամամ, կին Հազարշահի Շիկրակեցւոյ, հիշված 1313 թ.—յիշ. ИАН 1911, էջ 1300։

— 4. Թամամ, դուստր Խնկիկի և քույր Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում, Զաքարիա գրչին գրել տվեց մի Աւետարան 1393 թ.—Ձեռ. Վասպ. 228 (բայց նույն անձը հիշատակվելով նաև էջ 227, կոչված է Թամքայ. ուստի երկուսից մին սխալ է)։

— 5. Թամամ, կին Հնդուի և մայր Ստեփանոս երաժշտի՝ ուսուցչի Թադէոս քահանայի, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1412 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 30 բ։

— 6. Թամամ, դուստր Մարտիրոսի և քույր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 7. Թամամ, դուստր Ասիլմելիք տատի, որ գրիչ Ներսէս աբեղայից գնեց մի Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 241։

— 8. Թամամ, դուստր Ստեփաննոսի՝ եղբոր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։

— 9. Թամամ Շաղկերտցի, որ և Կատարեալ. դուստր տանուտեր Մալխասի. հայրը ուզեց բռնի ամուսնացնել նրան Երևանի կառավարիչ Մուրթուզա-Ղուլիի հետ։ Թամամը գիշերանց փախավ Մուրթուզայի. տնից և Հրազդան գետի քերծերից իրան ցած գցեց։ Երբ հասավ Նզվարդ, տանուտեր Սահակը վախենալով Մուրթուզայից, բռնեց ու խեղդամահ արավ նրան։ Թողվեց իբր

նահատակ՝ եկեղեցու պատի տակ «ՌՃԽ=1691 թվին»։—Զքր. սարկ. Բ. 128—131 > Նոր վկ. 521—4, Ազգապ. 2744։—Երևի սրա վրա է հորինված «Տաղ ս. կուսին Թամարիոյ! Շախկերտացւոյ. Վերջին վկայ կոյս Թամարիա» (Վարդան տաղասացի).—Տաշեան, Ցուց. 1008։

***ԹԱՄԱՆ**, ար. < թթր. تمن taman «կատարյալ» բառից, որ արաբ. تمام tamām համանիշի ձևափոխությունն է (Будагов, 1, 337)։ Մի անգամ իբրև անձնանուն հիշված եմ գտնում մեր մեջ 1621 թ. (Ջեռ. Դաղեան, Ա. 47 ա)։ Սրանից է Թամանեան ազգանունը (Նոր-Նախիջևան)։ Այս ազգանունն էր կրում մեր նշանավոր ճարտարապետ Ակադ. Ալեքսանդր Թամանեանը († 1936 թ. Երևան)։

***ԹԱՄԱՐ**, իգ. < եբր. תמר Tāmār անունից, որ նշանակում է բուն «արմավենի»։ Այս անունով ծանոթ են Ս. գրքում՝ Թամար դուստր Յուդայի, անառակ կին (Ծն. ԼԸ 6—26), Թամար դուստր Դաւիթ թագաւորի (Եւ Աբիսողոմայ որդւոյ Դաւթի էր քոյր մի յոյժ գեղեցիկ տեսլեամբ և անուն նորա Թամար. Բ. Թագ. ԺԳ. 1), Թամար դուստր Աբիսողոմի և հարսն Սողոմոնի (Եւ ծնան Աբիսողոմայ երեք ուստերք և դուստր մի և անուն նորա Թամար. և նա էր կին գեղեցիկ յոյժ տեսլեամբ և եղև կին Ռոբովամայ որդւոյ Սողոմոնի. Բ. Թագ. ԺԴ. 27)։ Սրանցից առաջինը (հանրակին Թամարը) հիշված է նաև Մատթ. Ա. 3 («Յուդա ծնաւ զՓարէս և զԶարա ի Թամարայ»)։ Տառադարձված է հուն. Θάμαρ (լատ. Thamar), որից և հյ. Թամար։ Սովորական անուն դարձավ Վրաց մեջ, ուր նշանավոր է Թամար Թագուհին (1184—1212)։ Մեր մեջ շատ հին ժամանակ գործածական չէր այս անունը։ Խոր. պատմ. տծծն. էջ 286 հիշում է Թամար (գրծ. Թամարաւ), բայց օտար է։ Առաջին անգամ երևում է մեր մեջ Թամար անունը Ժ դարում. շատանում է ԺԲ—ԺԵ դարերում և մինչև այժմ էլ գործածական է Կովկասում (վրացական ազդեցությամբ), իսկ Արևմտահայոց մեջ գոյություն չունի։ Ասվում է նաև Թամարա։ Հմմտ. վերը Թամամ № 9 անվան տակ Թամարիա։ Իսկ Թումար տես առանձին։

— 1. Թամար Թագուհի, կին Գագիկ Ա Արծրունի Թագաւորի, որ գահակալեց «908—937 Թ»։ Թամարը ինքն էլ Թագաւորական ցեղից էր. իր ամուսնու մահվան վրա («937 Թ») երեք տարի սուգ պահեց, մինչև Թագաւորեց որդին Ամիր-Գուրգէն։—Հաւաք. 26, 33։

— 2. Թամար Թագուհի, կին Կյուրիկե Գ թագավորի, մայր Աբասի, Ռուսուքանի, Մամքանի, Վանեի, Բաւրինայի և Մարիամի, որ նրանց հիշատակին թողել է մի արձանագրություն 1185 թ։ Գերեզմանը գտնում է Հաղբատում։—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 64, Մովսէսեան՝ Լոռիի հիւր. թագ. պատմ. 63, Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 167, Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 77, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 21—23, Ազգագր. հանդ. Է, 400—401։

— 3. Թամար, կին հեջուր Վահրամի, որոնց հիշատակին պատարագ է սահմանել տվել Հոռոմոսի վանքում՝ Վասակ որդի Դաւթի և թոռն Կիւրիկէ թագավորի, տէր Նոր-բերդի, 1229 թ.—Շիրակ 23, 162, Սարգիսեան՝ Տեղագր. 153, Արրա, 1870, 271։

— 4. Թամար, կին Գրիգորի, որ իր եղբոր՝ Մարտիրոսի և ուրիշների հետ շինել են Գոշավանքի Ս. Գրիգոր եկեղեցին, 1231 թ.—Արցախ 352, Ազգագր. հանդ. Ժ, 31։

— 5. Թամար, մայր Տուտիկի, որ շինեց Յովհաննաձորում Երրորդութեան տաճարը՝ 1241 թ.—Ազգագր. հանդ. Է, 342։

— 6. Թամար, կին Մխիթարի, որ նվերներ է արել Ակոռիի Ս. Յակոբ վանքին, 1271 թ.—Այրարատ 471։

— 7. Թամար, կին Յովհաննէս քահանայի, որ Սիւնեաց Քարաղնիս մենաստանում գրել տվեց մի Աւետարան, 1280 թ.—Ձեռ. Վասպ. 104։

— 8. Թամար, կին Սադուն աթաբէգ ամիրսպասալարի, որ մեռավ 1283 թ.—Օրբ. Ժմ. 28։

— 9. Թամար, կին Աւետիքի, մայր Յովհաննէս քահանայի, որ գրեց մի Աւետարան՝ 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 335։

— 10. Թամար, դուստր Բուղդայ իշխանի, կին Աղբուղայի՝ որդւոյ Շահանշահի՝ որդւոյ Զաքարէ Բ ամիրսպասալարի (ԺԳ դար).—Հայապ. 447, Շիրակ 62։

— 11. Թամար (որ և Գոհար) Մոկացի, կին Թումայի։ Մի քուրդ սիրահարվեց նրան և ուզեց ամուսնուն սպանելով՝ կնոջը խլել։ Ընտանիքով փախան Աղթամար կղզին, ուր ապահով ապրում էին։ 4—5 տարի հետո, մի օր, գործով գնացին Ոստան. Քրդերը տեսան նրանց և կնոջը բռնելով՝ տարին Ամիրադղնի մոտ, ամբաստանելով թե առաջ նա մահմեդական է դարձել։ Ամիրադղին իշխանը անհոգ գտնվեց. բայց նրա չար կինը՝ Փաշախաթուն Թուրքման, սպառնաց նրան չարաչար տանջել, եթե չուրանա հավատքը։ Թամարը քաջությամբ պատասխանեց. «Ըն-

*դէ՞ր յամես, Փաշա, և ոչ ածես ի վերայ իմ զոր սպառնասդ, զի ես պատրաստ եմ ի մեռանել վասն Քրիստոսի Աստուծոյն իմոյ. և թէ վասն մեծարանացդ զոր խոստանաս, Փաշա, կարծես թէ հաւանիմ. և ո՛չ բնաւ. զի թէ զիս ի տեղի քո նստուցանես և զհուքմ իշխանութեանդ քո և զտիկնութիւնդ՝ զոր ունիս, ինձ տաս և զշխոյ աշխարհիս կացուցանես, չկարեմ փոխանակել սիրոյն Քրիստոսի»։ Փաշախաթունը չկարողանալով նրան տանջանքներով համոզել, ուղարկեց մոլլային։ Թամարը ասաց նրան. «Գիտացի՛ր, մոլնայ, որ թէ զամենայն մարմինս իմ մասն մասն կտրատել տաս, որպէս զչամիչդ առաջի քո, ես զՔրիստոս ոչ ուրանամ»։ Ոստանի տանուտերները 1000 դեկան կաշառք դրին Փաշայի առաջ, որպէսզի ազատեն Թամարին, բայց Փաշան չընդունեց և հրամայեց քարկոծելով սպանել անմեղ կնոջ («1396 թ»)։—*Թամար, Գոհար՝ *Յայսմ. ապր. 24.—սեռ.* Թամարայ՝ *անդ։—Նոր վկ. 186—197 (ուր* Փաշա *անունը տիտղոս կարծվելով՝ միշտ գրվել է սխալմամբ փոքրատառ)։*

— 12. Թամար, *կին Պատրիկ քարգործի (քարտաշ), հիշված 1410 թ?—Ձեռ. Վասպ. 164։*

— 13. Թամար, *կին Վարդանի և մայր Թադէոս քահանայի, որ Մոկաց Կաղթանց գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1409 թ. և չորս տարի հետո էլ, Մոկաց Ծպատայ վանքում, Կարապետ կրոնավորին մի Ճառընտիր-Տօնական, 1413 թ.—Ձեռ. Վասպ. 293, 294 (երկու տեղում էլ գրում է* Թամարա, *որոնցից առաջինը կարող ենք համարել սեռական, բայց երկրորդը ուղղական է), Ձեռ. Հալէպի, Ա. 269, 270 (երկուսն էլ* Թամար)։

— 14. Թամար, *դուստր Թովմայի, կին Մկրտիչի և հորեղբորդուստր Յովհաննէս գրչի, որ Ջերմաձորի Ակոռոյ վանքում օրինակեց Աւետարանը՝ 1417 թ.—Ձեռ. Վասպ. 303—304։*

— 15. Թամար, *կին Թումայի և մայր Խաչատուրի, որ Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 311։*

— 16. Թամար *խաթուն, կին Բարաքշայի, հոգևոր հոր Դանիէլ աբեղայի, որ գնեց Քարոզգիրքը՝ 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։*

— 17. Թամար, *կին Կաքաւի՝ եղբօրորդւոյ մահտեսի Ստեփանոսի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 բ։*

— 18. Թամար, *կին Թումայի և մայր Ղազար դպրի, որ Գամաղիելի վանքում, Սարգիս անուն անձի համար գրեց մի Ավետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 452։*

— 19. Թամար *իշխանուհի, կին Բաբաջանի, որ տես վերը, № 2, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1113։*

— 20. Թամար, *դուստր տանուտեր Սահակի կամ սրա եղբոր՝ Ատոմի, որոնք Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվին մի Ավետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։*

— 21. Թամար, *դուստր Վարդանի և քույր Յոհանի, որ Խիզանում, Մկրտիչ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1482 թ.—Ձեռ. Վասպ. 492։*

— 22. Թամար, *կին Ազիլշահի, որ գրել տվեց մի Յայսմավուրք և նվիրեց Սակոաբերդի եկեղեցուն, 1491 թ.—Այրարատ էջ 443։*

— 23. Թամար, *կին Սահակի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 24. Թամար, *կին Խաչատուրի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 25. Թամար, *կին Սուլթանի, եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։*

***ԹԱՄԵԼ,*** *սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ հիշված է 1241 թվի մի արձանագրության մեջ, որով՝ նվերներ է արել Մակարավանքին (Ղազախ).—Արցախ 374։*

***ԹԱՄԹԱ*** *կամ* ***ԹԱՄԹԻ,*** *իգ. ծագումն ինձ անհայտ։*

— 1. Թամթի, *դուստր Սարգիս իշխանաց իշխանի, քույր Զաքարէ սպասալարի (մ. 1214) և Իւանէ աթաբէկի († 1231). կին Վախթանգի Սակաեանց (մ. 1214).—Օրբ. կե. Հայաստ. 447. Շիրակ 175 (տախտակում)։*

— 2. Թամթա, *դուստր Իւանէ աթաբէկի։ Երբ Իւանէն Խլաթի պաշարման ժամանակ իր անխոհեմության պատճառով գերի ընկավ սուլթանի ձեռքը, հաշտության պայմաններից մեկն էլ այն էր, որ Իւանէն Թամթային կին տար սուլթանին։ Այսպեսով Թամթան ամուսնացավ նախ Ավագ Նէջմէդդինի հետ (1210 թ) և ապա Աշրաֆ սուլթանի հետ։ Այս ամուսնությունը ունեցավ շատ բարի հետևանքներ. Թամթան շատ օգնություն արեց տեղական*

քրիստոնյաներին և թեթևացրեց նրանց վիճակը։ Նրա շնորհիվ մեղմացան Խլաթի սուլթանների հարաբերությունները իրենց հպատակ հայոց հետ. ապա նրանք դարձան հայոց ու վրաց դաշնակից։ Թաթարների արշավանքի ժամանակ Թամթան գերի տարվեց Թաթարների մոտ, բայց շուտով ետ դարձավ պատվով և իշխանությամբ։ Նույն իսկ տեր դարձավ Խլաթի սուլթանության։—Կիր. բ, ժէ, լը.—Թամթի՝ Օրբ. ժմ. 23.—սեռ. Թամթայ՝ Կիր. լը.—Յովսէփեան՝ Խաղբակեանք, 9—10։

— 3. Թամթա, կին Զաքարէ սպասալարի՝ ըստ Բարխուտ. Պատմ. աղվանից 191 (այլուստ հայտնի չէ Զաքարէ սպասալարի կնոջ անունը, որ Սասնոյ իշխանի աղջիկն էր. ուստի աղբյուրը լավ պետք է ստուգել. արդյոք չէ՞ շփոթված Զաքարէի քրոջ և կամ Իւանէի աղջկա հետ, որոնք նույնպես Թամթա են կոչվում)։

— 4. Թամթա, կին Ելիկումի Օրբելեան, որ Սիւնեաց իշխանաց իշխան Լիպարիտի որդին էր և մեռավ Նփրկերտի արշավանքում՝ 1254 թ։ Սրա որդին է Բուրթէլ, որ իր մոր հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Նորավանքում, 1261 թ.—սեռ. Թամթայ՝ Արձ. Սիսական 201։

— 5. Թամթա, կին Զումշայի՝ տեառն Տաշրաց. լինելով անզավակ, իրենց հիշատակին՝ երկուսով մի խաչքար են կանգնեցրել հին Ղրխրուլաղ գյուղում (Նոր-Բայազիտ), 1297 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 618 (նույնը ունի և Սիսական 71, բայց այնպես որ Տաշուրը դառնում է անձնանուն և Զումշայ տեղանուն),

— 6. Թամթա խաթուն, Վայոց ձորի Ս. Աստուածածնի վանքին (Իւլգիւրտ գյուղ) այգի է նվիրել, 1308 թ.—Արձ. Սիսական 167։—Նհւյն է սրա հետ՝

— 7. Թամթայ խաթուն, կին Ելիկումի՝ որդւոյ աթաբէգ Տարսայիճի և մայր Բուրթէլի և Բուղդայի (№ 2), որոնց հիշատակին մի խաչ է կանգնեցրել Նորավանքում, 1308 թ.—Սիսական 195։—Սրա գերեզմանը գտնվում է Նորավանքում, 1312 թ. այս արձանագրությամբ. «Զաշխարհաշէն դշխոյափառ. պարոն զԹամթայ խաթունն մայր Բուրթէլին յիշեցէք. թվին ՉԿԱ»—Սիսական 192։—Այս իշխանուհու անթվական մի արձանագրությունն էլ ունի Սիսական 193։

— 8. Թամթա, կին Զաքարիայի և մայր Կարապետ կրոնավորի, որ օրինակել տվեց Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—Ջեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 848—851)։

— 9. Թամթայ, դուստր Խնկիկի և քույր Թադէոս փիլիսո-

վայր, որ Աղթամարում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1392 թ.—Ձեռ. Վասպ. 226—7։ (Նույն անձը 1393 թվին էլ մի ուրիշ Ավետարան է գրել տվել. այստեղ Թամթան կոչված է Թամամ (Ձեռ. Վասպ. 228). բայց որովհետև առաջին տեղում կրկնված է երկու անգամ, իսկ այստեղ մի անգամ միայն, ուստի Թամամ ձևը սխալ արտագրված եմ համարում)։

— 10. Թամթա խաթուն, կին Հասան-Բուղայի, մայր Գրիգոր եպս. Աշտարակեցի գրչի, 1478 թ.—Այրարատ 274։

— 11. Թամթէ, այս ձևով է գրված անթվական մի արձանագրության մեջ, որով Թամթէ՝ կին Անդրիաս քահանայի նվերներ է արել իր ամուսնու հետ միասին՝ Հաղբատի վանքին, Յովհաննէս եպիսկոպոսի առաջնորդության ժամանակ.—Արձ. Երզընկեանց, Հնախ. տեղագր. 31։ (Հաղբատի առաջնորդներ Յովհաննէս անունով մի քանիսը կան. հատկապես հիշենք Յովհաննէս Ա. 1207—1221 թ., Յովհաննէս Բ 1221—33, Յովհաննէս Գ մ. 1243 թ)։

*ԹԱՄԹԻԿ*, իգ. նախորդ Թամթա անվան փաղաքշականն է։ Այս անունը հիշատակված է երկու անգամ.

— 1. Թամթիկ, որի տապանաքարը գտնվում է Նորավանքի ժամատան մեջ՝ հետևյալ անթվական (հավանաբար ԺԳ դար) արձանագրությամբ. «Աւրխորդ Թամթիկինն է».—Սիսական 193։ (Ալիշանը կարծում է որ Ելիկումի թոռն է, այսպես կոչված իր Թամթա կնոջ անունով)։

— 2. Թամթիկ, կին Նորիկ Գանձակեցու, որ Շահանշահի որդի Խութլուշահից գնեց մի Ավետարան, 1350 թ.—Ձեռ. Ազգ. (Արրտ. 1911, 388)։

*ԹԱՄԻԿ*, իգ. Թամ անվան փաղաքշականն է (տես անդ)։ Հիշված է մի անգամ ԺԵ դարում՝

— Թամիկ, դուստր Գուգարի, քույր Մելիքսեթի, որ Երևան վանքի վանահայրն էր 1460 թ.—Այրիվ. 16 բ։

*ԹԱՄՂԻՄԵԼԻՔ*, իգ. < Թրք. Թթր. تمغا tamġa, طمغا tamġa կամ دمغا damġa «կնիք, դրոշմ»+արաբ. ملك melik «իշխան» (իմա «կընքոյ տէր, կնքոյ իշխանուհի»)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Դաշեան, Բ. 31 բ)։

*ԹԱՄՈՒՐ*, ար. < Թթր. تيمور Timur կամ تمر Temir անունից, որ բուն նշանակում է «երկաթ»=տճկ. دمير demir կամ دمور demur (Будагов 1, 377—8). հմմտ. Թիմուր կամ Թիմուրլենկ աշխարհակալը (1336—1405 թ)։ Մեր մեջ գործածված է

ԺԵ դարում Թամուր ձևով, կա նաև Դամուր ձևով՝ ԺԴ դարում (տես անդ)։ Բայց անշուշտ կային նաև Թամիր, Դեմուր, Թիմուր ձևերը, որովհետև ունինք Թամիրեան, Դեմուրեան, Թիմուրեան ազգանունները։

— 1. Դամուր, տանուտեր Արծկէի? հիշված 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583 բ։

— 2. Թամուր, հայր Բաղէշի Յովհաննէս արքեպիսկոպոսի՝ Թամուրենց ազգանունով. հիշված 1463 թ.—Ազգապ. 2171։

— 3. Թամուր, որդի Յակոբի, որ Երզնկայում ստացավ մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 4. Թամուր, հայր Մխիթար գրչի, որ Շնոֆոր պարոնի համար օրինակեց Յայսմաւուրքը, Սեբաստիա 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

*ԹԱՄՈՒՐԽԱՆ, ար. < նույն Թամուր անունից+խան. Ադրբեջանում ունինք Թեմուրխան-Շուրա քաղաքը։ Մեր մեջ իբրև անձնանուն հիշված եմ գտնում 1661 թվի մի հիշատակարանում՝ Թեմուրխան ձևով (Manus. brit. mus. 302 ա)։

*ԹԱՄՍԵՐ, իգ. < արաբ. tām تم «կատարյալ»+պրս. سر ser «գլուխ» բառերից. ամբողջի նշանակությունն է «կատարյալ գլխով, իմաստուն, խելոք»։ Հմմտ. Թամաղուլ։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ միայն երկու. անգամ, ԺԳ դարում։

— 1. Թամսեր, կին պարոն Դաւթի, որ Գնդեվանք մենաստանի տերն էր, 1284 թ.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 139։

— 2. Թամսեր, կին Վասակի և մայր պարոն Նէքնէքի, որ Բերկրիում, Խաչեր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 151, 153։

*ԹԱՄՐԱԶ, ար. ըստ ձևի նման է պրս. تامراز tāmrāz բառին, որ կազմված է արաբ. تم tāmm «ամբողջ, կատարյալ»+պրս. راز rāz «խորհուրդ» բառերից. և նշանակում է «նա որի խորհուրդը կատարյալ է»։ Բայց այսպիսի անուն չկա Պարսից մեջ. ուստի այս համեմատությունը պետք է թողնել։ Ըստ իս պետք է կապել Պարսից հին առասպելական շրջանի Taxmō Urupa անվան հետ։ Ըստ Ավեստայի սա Իրանցոց երկրորդ թագավորն է. ավելի ուշ աղավաղվելով դարձավ Taxmūraf, Tahmūrath (ṭ նախաձայնով), طهمورث Tahmūras որդի Հուշենգի և հայր Ջեմշիդի (այսպես Ֆիրդուսին)։ Այնուհետև այս անունը տարածվեց Պարսից մեջ. հմմտ. Օր. Tahmūrath եղբայր Շիրվանշահի ԺԴ դար)։ Այժմ էլ Փարսիների մոտ սովորական է Tehmuras ձևով։ Նույն անունը ան-

ցավ Վրաց, ուր սովորական դարձավ Theimuraz ձևով։ Justi հիշում է 10 իշխանի անուն, որոնցից վերջինն է Թեյմուրազ՝ որդի Կախեթի Հերակլ Բ թագավորի (մ. 1827)։ Վրաց այս անունը հայերը դարձրել են Թամրազ. հմմտ. Թամրազ՝ որդի Ալեքսանդրի՝ թագավորի Վրաց (Առաք. պատմ. 70)։ Ավեստական Taxmō Urupa անունը Justi 320 և Bartholomae 1532 չեն մեկնում. ըստ իս պետք է դնել taxma «քաջ, ուժեղ»+urupa «շուն» բառերից և մեկնել «ուժեղ շուն»։ Հայտնի է որ Ավեստական շրջանում շունը իդեալական արարածն էր։ Մեր մեջ գործածված է ԺԷ դարից սկսած. հիշված է նախ 1686 թվից հետո՝ Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 399, 1716 թ. (Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 50) և անթվական մի հիշատակարանում (Rapport Belgique 128, Թեմրեզ ձևով)։ Սրանից է Թամրազեան ազգանունը։

— Թամրազ, որդի Բեգլար Ա-ի. նշանակվեց խնամակալ Աբով Բ-ի որդի պատանի Իսուբին (1728). բայց ուզելով խլել Գուլստանի մելիքությունը, դավաճանությամբ մահ նյութեց նրան. Իսուբը ազատվեց նրա ձեռքից, կռվով գրավեց նրա բերդը, Թամրազին էլ գերի բռնեց և կախաղան բարձրացնելով՝ խլեց նրանից իր գահը։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 13—17։

*ԹԱՅԻԲ, ար. < արաբ. طيب ṭayyib «լավ, ընտիր, հաճելի». իբրև անձնանուն գործածվել է մեր մեջ մի անգամ 1557 թ. (Ձեռ. վեննա. Ա. 529 Թայիպ ձևով)։ Բայց տես և հաջորդ երկուսը։

*ԹԱՅԻԲՇԱՀ, ար. < կազմված է նախորդից+պրս. شاه šāh «թագավոր». գրված է Թախպշահ, Թայիփշա և Թեփշի. գործածված է երկու անգամ ԺԵ դարում, որով և մի դարով հնանում է նախորդի թվականը։

— 1. Թայիփշայ մահտեսի, որդի Ամիրբէկի և եղբայր Շահփաշայի, որ Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Նոտարք 171, Ձեռ. Վասպ. 136։

— 2. Թափիշայ (և քիչ հետո՝ սեռ. Թեփշին), որդի Էրկիլի և եղբայր Զաքարայ աբեղայի, որ գրիչ Յակոբ աբեղայից գնեց մի Շարակնոց, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 ա։

ԹԱՅԻԿ, իգ. ծագումը ինձ անհայտ։ Գործածված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Թայիկ, կին Վահրամի՝ որդւոյ Եղբայրիկի. միասին նվերներ են արել Յովհաննավանքին, 1216 թ.—Արձ. Զքր. պատմ. Գ. 16, Այրարատ 168 (սեռ. Թայիկանն)։

— 2. Թայիկ թագուհի, դուստր Շարափշահի՝ որդւոյ Ապիրատի

և կին Սանայի՝ որդւոյ Խաւաս իշխանաց իշխանի. զանազան նվերներ է արել Բագնայրին և Հոռոմոսին, 1262 և 1269 թ.— Ալիշան, Շնորհ. 14, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 17. Շիրակ 28, 119 (գրված Թաիկ, սեռ. Թաիկանս)։

— 3. Թայիկ, որի անթվական գերեզմանը գտնվում է Հաղբատի մեծ տաճարի ժամատան մեջ, ուր է նաև Սանայի գերեզմանը.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր. հանդ. Է, 400—401։—Նույն է արդյոք նախորդի հետ։

— 4. Թայիկ, դուստր Սարգսի՝ որդւոյ? Խորիշահի, կանգնեցրել է մի խաչքար՝ Վայոց Ձորի Բարագլուխ գյուղում, 1290 թ.— Սիսական 162։

— 5. Թայիկ, եղբայր իշխանաց իշխան Թէոդոս Չըքինի, որդւոյ Բուրդ Գ իշխանի Անըերդցոյ, որդւոյ Տայիրի, թոռին մեծ Բրդին, որդւոյ Վաչէի. հիշված է ԺԴ դարի առաջին կեսին.— Արձ. Այրարատ 171 ա, 253, Շահխաթ. Բ. էջ 107, Ջքր. պատմ. Գ. 24։

— 6. Թայիկ, հիշված է Յովհաննավանքի անթվական մի արձանագրության մեջ՝ իբր նվիրատու.—Ջքր. պատմ. Գ. 25, Այրարատ 171։

*ԹԱՆԱՅ, իգ. < պրս. تنها tanhā «մենակ». մի անգամ հիշված է 1668 թ.— Տաշեան, Ացաթ. առ Գէորգայ, էջ ժա։

*ԹԱՆԱՆԴ, ար. < պրս. تاننده tānanda «կարողացող» բառից, որ ժողովրդական ձև է՝ փոխանակ ասելու tuvānanda.—հիշված է մի անգամ ԺՁ դարում։

— Թանանդ, սարկավագ Թադէոս առաքելոյ վանից, 1574 թ.—Ջեռ. Դաղեան, Բ. 13 ա։

†ԹԱՆԳ (կամ Թանկ), ար. և իգ. < հյ. թանգ «թանկագին, արժեքավոր» բառից, ինչպես կա նաև Բահալու, որ է թրք. bahalu «թանկագին»։ Կան նաև Թանկիկ, Թանկխաթուն, Թանկմամա, Թանկտիկին են անունները, որոնք տես առանձին։

— 1. Թանգ, կին Վարդի, որ տանուտերն էր Բագարանի և մի այգի է նվիրել Բագարանի մայր եկեղեցուն, 1224 թ.—Այրարատ 67։

— 2. Թանկ, կանգնեցրել է մի խաչքար Արատէսի ձորակում, 1263 թ.—Սիսական 144, Արրտ. 1888, 773։

— 3. Թանկ, քույր Թուխանի, վանահոր Փերճերի վանից (Կիլիկիա). հիշված է 1325 թ.—REA 8, 30, Սիսուան 153 բ։

— 4. Թանկ, *մայր Ոսկեթուփի և զոքանչ Մկրտիչ երեցի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 666։*

— Թանկ *եղել է նաև արական անուն, ուստի ունինք Թանգեան կամ Մելիք-Թանգեան ազգանունը։*

†*ԹԱՆԳԱԳԻՆ, իգ. նորակերտ հայկական անստվոր անուն. օր. Խորհ. Հայաստ. 1935 դեկտ. 31, էջ ա։*

†*ԹԱՆԳԱԶԻԶ, իգ. < հյ.* Թանգ+*արաբ.* عزيز ʿazīz *«սուրբ, նվիրական» բառերից։ Ավանդված է ԺԳ դարից (տես տակը), ապա շատ ավելի ուշ՝ 1647 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 692) և անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 627), որ գրված է 1507 թվից հետո։*

— Թանկազիզ, *կին Մխիթարի և մայր Խութլուբէկի և Թիրքիշի, որոնք Ցակոբ աբեղային գրել տվին մի Ավետարան, Կարսի Գողխս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463—4)։*

†*ԹԱՆԳԵՐ, իգ. < հյ.* թանգ *բառի հոգնակի ձևից կազմված։*

— 1. Թանկեր, *դուստր Խաչատուր քահանայի և քույր Գրիգոր գրչի, որ Կարինում օրինակեց Ավետարանը, 1230 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 572։*

— 2. Թանգեր, *ծերունի կին, որ իր հանգուցյալ հորս Ալիծի հիշատակին գրել տվեց մի Ավետարան՝ Ցովհաննէս գրչին, Կիլիկիա 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 396—7։*

†*ԹԱՆԳԻ, ար. կրճատված է փաղաքշական* Թանգիկ *ձևից։ Մի անգամ գտնում եմ գործածված 1694 թ. (Ձեռ. Վասպ. 997* Թանկին *ձևով)։*

†*ԹԱՆԳԻԿ, իգ. վերոհիշյալ* Թանգ *անվան փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ՝ հիշատակված անթվական մի արձանագրության մեջ, որ գտնվում է Արջոյառիճի ավերակ եկեղեցում (Շիրակ 123)։ Հիշված է նաև 1475 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Մաղն. 35) և 1664 թվից հետո (Տաշեան, Ցուց. 922)։*

†*ԹԱՆԳԽԱԹՈՒՆ, իգ. < նախորդ Թանգ անունից+*խաթուն, *որ այս դեպքում ծառայում է իգականը արականից զանազանելու համար։ Գործածվում է ԺԴ դարից սկսած մինչև ԺԸ դար։*

— 1. Թանկխաթուն, *հորաքույր Հայրապետ գրչի, որ Կիլիկիայի Փոս անապատում օրինակեց «Սանդուղք աստուածային ելից» գիրքը՝ 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։*

— 2. Թանկխաթուն, *որդի Դաւթի, կին Ցովհաննէսի. գրել տվեց մի Ավետարան՝ Կարապետ կրոնավորին, 1358 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 563)։*

— 3. Թանկխաթուն, դուստր Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ օրինակել տվեց Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 4. Թանկխաթուն, կին Թումայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 5. Թանկխաթուն, կին Մկրտիչ քահանայի և մայր Կարապետ քահանայի և Զաքարիա կրոնավորի։ Վերջին երկուսից Կարապետ քահանան Աղթամարում օրինակեց Ճառընտիրը՝ 1389 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 765), ապա նույն տեղում, Թադէոս փիլիսոփայի համար արտագրեց Աւետարանը՝ 1392 թ։ Երկրորդը՝ Զաքարայ կրոնավորը Աղթամարում արտագրեց Աւետարանը՝ նույն Թադէոս փիլիսոփայի համար՝ 1393 թ. և մի ուրիշ Աւետարան էլ տանուտեր Դանիէլի համար՝ Աղթամար 1399 թ.—Ձեռ. Վասպ. 227, 229, 235. (տես և Զաքարիա № 49)։

— 6. Թանկխաթուն, կին Գորգի և մայր Մարտիրոս քահանայի, որ Դաւթից ետ գնեց մի Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 7. Թանկխաթուն, կին Սարգսի և մայր Կիրակոս քահանայի, որ Ոստանում, Թումա քահանային գրել տվեց մի Աւետարան՝ 1414 թ.—Ձեռ. Վասպ. 299։

— 8. Թանկխաթուն, քրոջ աղջիկն է Թումա քահանայի, որ Վարդան արեղային գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 332։

— 9. Թանկխաթուն, կին Յովհաննէսի և մայր Կարապետ դրչի, որ Խլաթում օրինակեց Աստուածաշունչը՝ 1418—1422 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 114։

— 10. Թանգխաթուն, կին Մարգարէի և մայր Ջանիբէկի, որի կինը՝ Սալչուկ խաթուն գրել տվեց մի Մաշտոց, Հայրապետ դրչին՝ 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 338։

— 11. Թանկխաթուն, եղբայր Յովանէսի և հօրեղբայր Վարդան արեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր արեղային գրել տվեց Աւետարանը՝ 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։

— Հաջորդ դարերից հիշատակելի են Թանխաթուն (կ բաց թողված) 1583 թ. (Manus. brit. mus. 26 բ), Թանկնաթուն 1599 թ. (Ձեռ. Վասպ. 757), Թանդխաթուն 1682 (անդ 1004), վերջին անգամ՝ Թանկխաթուն՝ 1712 թ. (անդ 1035)։ Անթվական է Թանկխաթուն կամ Թանկհաթուն՝ Ձեռ. Հալէպի,

Ա. 272—4։ Հատկապես հիշելու արժանի է Թանգխաթուն, կին Բուչակի՝ թոռան Նահապետ Բուչակի (հիշված 1637 թ), որ տես Տեղեկ. Հմլս. 2, էջ 192։

† ԹԱՆԳՄԱՄԱ, իգ. < Թանգ+մամա «մայր» բառերից. հիշված է մի անգամ ԺԵ դարում. համմտ. Թանգմայր:

— Թանկմամա Կոնիռապատցի, օգնեց գնելու մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

† ԹԱՆԳՄԱՅՐ, իգ. < հյ. Թանգ+մայր բառերից, որից մայր նաև ժղ. մեր ձևով։ Ավանդված է երկու անգամ, որոնցից առաջինը՝ Թանկմեր հիշված է 1627 թ. (Ձեռ. Վասպ. 874), երկրորդը՝ Թանկմայր հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1293 թվից ուշ։

† ԹԱՆԳՄԵԼԻՔ, իգ. < հյ. Թանգ+արաբ. մելիք բառերից։ Ավանդված է երկու անգամ ԺԵ դարում։

— 1. Թանգմելիք, կին Խաչատուրի և մայր Առաքել աբեղայի, որ Ուշտունեաց Բերդաձոր վանքում Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1448 թ.—Ձեռ. Վասպ. 400։

— 2. Թանգմելիք, «զաւակ» (դուստր) Սահակ քահանայի՝ Սուրս գյուղի, հիշված 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

† ԹԱՆԳՈՑ, իգ. < հյ. Թանգ բառից՝-ոց մասնիկով, իբր «թանգանոց». մի անգամ ավանդված է ԺԳ դարից։

— Թանգոց, դուստր Մխիթարի և քույր Խութլուբէկի և Թիրքիշի, որոնք գրել տվին մի Աւետարան՝ Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463)։

*ԹԱՆԳՈՒԶ, իգ. < թթր. تنكز tengiz «ծով» բառից, որ թաթարների մեջ էլ անձնանուն է, բայց արական։ Օր تنكزخان Tengizxan ցեղապետ Սելճուքեանց, պապ Հուլաղուի (Իբնի-Բատուտա Գ. 22 և 105)։ Ավանդված է մեր մեջ մի անգամ ԺԴ դարում։

— Թանգուզ, կին Յովհաննէսի, որ իր որդի Մարգարին տվեց Մովսէս քահանային իբր հոգեորդի, հետո երեց դարձնելու համար (1387 թ)։—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

*ԹԱՆԳՈՒԼՉԻՉԻ, իգ. < թթր. تان tan կամ طاك taṅ «արշալույս»+گل gul «վարդ»+چیچك čiček «ծաղիկ». ամբողջը պիտի լինի تانگلچیچکی tan-gul-čičeyi «արշալույսի վարդածաղիկը»։ Մեր մեջ իբրև անձնանուն գործածված է մի անգամ անթվական մի գերեզմանի արձանագրության մեջ՝ Սիսիանի Լոռաձոր գավառի Շնաթաղ գյուղում.—Ազգագր. հանդ. Գ. 160։

† **ԹԱՆԳՏԻԿԻՆ**, *իգ. < հյ.* Թանգ+տիկին *բառերից. հմմտ. Թանգխաթուն։ Մի անգամ ունինք ավանդված՝*

— Թանկտիկին, *կին Գորգի և մայր Հայրապետ աբեղա գրչի (նախ քան 1420 թ).—Տաշեան, Ցուց. 665։*

***ԹԱՆԳՐԻՂՈՒԼԻ**, *ար. < թթր.* تكرى taṅgri, *թրք.* تكرى tanrə *«Աստված»+*قول qul *«ծառա» բառերից։ Թուրքերի մեջ էլ գործածական է* Tanriquli *«Աստուածատուր» անունը։ Համազորներն են արաբ.* عبدالله ʿabdullah, *պրս.* خدابنده Xudābanda, *հուն.* Θεόδουλος, *որոնք միևնույն նշանակությունն ունին։ Մեր մեջ գործածվել է՝ սկսած ԺԳ դարից մինչև ԺԷ դար։*

— 1. Թանկրէղուլ, *յաղատացն Սմբատայ՝ որդւոյ Լիպարիտի Օրբելեանց. Գուտենի գյուղի գյուղապետն էր։ Սվանների Դաւիթ թագավորը փախչելով թաթարների զորավար Բաչու նուինի կալանքից, որ գտնվում էր Հաբանդի Զագեձորում, անցավ Գուտենի գյուղի գլխով։ Թանգրիղուլ ձիով արշավեց նրա ետևից՝ նրան բռնելու համար։ Դաւիթը լսելով որ նա Սմբատի ազատներից է, նետեց նրա առաջ այն քսակը, որի մեջ գտնվում էր մի թանկագին գոհար։ Այս գոհարը աղա Սմբատը նվիրեց խանին և մեծ շնորհների արժանացավ (ԺԳ դար)։—Օրբ. կե.—Ջամչ. Գ. 245, Սիսական 110։*

— 2. Թանգրղուլ, *մելիք Փառկուն գյուղի. ուրիշների հետ վկայություն է տալիս Տաթևի կալվածների համար՝ 1332 թ.— Արձ. Ազգագր. հանդ. Գ. 141։*

— *Ավելի ուշ հիշատակված են Թանկրիղուլ՝ 1513 թ. (Օրբ. ժմ. յաւել. 46=Սիսական 34 ա), Թանկրիզուլի 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 8 բ), Թաղրիղուլի 1619 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 722), Թանղրիղուլի՝ ԺԷ դար (տես Ձեռ. Էջմ. № 909)։*

***ԹԱՆԳՐԻՎԵՐԴԻ**, *ար. < թրք.* تكرى tangri *«Աստուած»+*ويردى verdi *«տվեց» բառերից, որով ամբողջը լինում է «Աստուածատուր»։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։*

— Թաղրիվերդի, *որդի խոջա Յովանէսի՝ հորեղբորորդւոյ խոջա Յովսէփի, որ Տարօնի իշխանն էր և Պօղոս վարդապետին գրել տվեց Մուշում մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, էջ 263։*

***ԹԱՆԳՐԻՎԵՐՄԻՇ**, *ար. < թրք. թթր.* تكرى tangri *«Աստված»+*ويرمش vermiš *«տված» բառերից, որով ամբողջը լինում է «Աստուածատուր»։ Տես այս անունը։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։*

— 1. Թանղրիվերմիշ *աղա, որին հիշում է Մկրտիչ Նաղաշը իր նկարազարդած Աստուածաշնչի մեջ 1418—22 թ. իբրև այցե-*

լու.—Ձեռ. Վենետ. Ա. 114 (սոսկալի աղավաղումով տրված է Թանղրուէր Մեշաղայն)։

— 2. Սրա թաթարական ձևն է Թենգրի-պիրմիշ, որ խաչքար է կանգնեցրել 1461 թ. (այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցու բակում).—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, 58։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ Թաղրիվերմիշ 1533 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 717), Թանղրիվէրմիշ 1654 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 385), Թաղնրիվէրմիշ 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653)։

† ԹԱՆԳՕ, իգ. < հյ. Թանգ կամ Թանգիկ անունից կոչական -օ մասնիկով։ Գտնում եմ երկու անգամ հիշատակված, առաջինը՝ Թանգու ձևով, 1645 թ. (Ձեռ. Վասպ. 296, քիչ հետո Թանգո), երկրորդը՝ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1453 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 419՝ Թանկօ ձևով)։

ԹԱՆԹԱԿ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1631 թ. (Bodleian 139)։

*ԹԱՆՍՈՒԽ, իգ. < պրս. تنسخ tansux «իր որ իցէ յոյժ սակաւագիւտ և աննման, և կարի պատուական և անհանդէտ» (ԳԴ), որ և արաբացել ձևով تنسق tansuq. նույնը թթր. تنكسوخ tangsux կամ تانسوق tansuq «զարմանալի, հրաշալի, հազվագյուտ, հաճելի» (Будагов 1, 727), թրք. تنسوخ tensux «անուշահոտ ծխանելիք»։ Գործածական է եղել ԺԵ—ԺԷ դարերում և մինչև ԺԹ դարն էլ գործածական էր։

— 1. Թանսու խաթուն, կին Կարապետ երեցի, որ Վանում օրինակեց Ավետարանը Ստեփաննոս կրոնավորի համար, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 341։

— 2. Թանկսուխ կամ Թանկսուղ, ազգական Սարգիս եպիսկոպոսի, որ Կոթիփորայ վանքում օրինակեց Յայսմաւուրքը՝ 1427 թ.—Նոտարք 84, 85։

— 3. Թանսուխ, դուստր Փողոց Կոնիապատցու, քենի Արիստակէս երեցի, որ ստացավ մի Ավետարան՝ 1435 թ.—Ձեռ. Թավր. էջ 13 բ։

— 4. Թանսուխ, կին Յովհաննէս գրչի. մեռավ իր որդի Պաղտասարի հետ՝ մեծ մահտարաժամին, 1458 թ.—Նոտարք 190։

— 5. Թանկսուղ, դուստր Գուզարի, քույր Մելիքսեթ կրոնավորի, որ Երերան վանքի վանահայրն էր, 1460 թ.—Այրիվ. 16 բ։

— 6. Թանսուխ, կին Գրիգորի և մայր Յակոբ քահանայի, որ Խարբերդում օրինակեց Ավետարանը, 1469 թ.—Bodleian 8։

— 7. Թանսուխ (տպված Թանուխ), կին Յովհաննէս քահանայի, որ Երզնկայի Ուռիկ գյուղում, Մանուէլ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։

— 8. Տանսուխ, կին Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 9. Տանսուխ, դուստր Գրիգորի՝ ազգականի Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 10. Թա(ն)սուխ դուստր Սահակի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 11. Թանսուխ, կին ոմն (ԺԵ դար).—Ձեռ. Էջմ. № 945։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Տանսուխ 1512 (Ձեռ. Վենետ. Ա. 646), Թանքսող՝ ծերունի կին՝ 1513 թ. (Ձեռ. Վասպ. 135), նաև Թանգսիզ, որ.! հիշված 1564 թ. (Սըմբատեանց, Սաղիան 243), որ ըստ իս վրիպակ է և պետք է ուղղել Թանգսիղ:

— 12. Թանսուղ ոմն, որ Աւետարանի համար մի ծածկոց է նվիրել 1560 թ. (Տաշեան, Ցուց. 313—4 համարում է «կազմող, կազմարար», բայց անշուշտ ոչ, որովհետև Թանսուղ կնոջ անուն է և «ծածկոյթ» նվիրելուց չի հետևում թե կազմող է)։

— Թանսուխ՝ ԺԶ դար (Տաշեան, Ցուց. 102), Թանկսող! 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101), վերջապես Թանսուֆ՝ 1715 թվից ուշ (Թորոս աղբ. Բ. 368), որ գործածական էր Պոլսում Թէնսուֆ ձևով՝ ԺԹ դարում, հետո խափանվեց։

*ԹԱՋԳՈՒՀԱՐ, իգ. < պրս. تاج tāǰ «թագ»+گوهر gūhar «գոհար» բառերից. ամբողջը նշանակում է «թագի գոհարը»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Թաջգուհար, դուստր Էրկիլի և քույր Ջաքար աբեղայի, որ Յակոբ աբեղայից գնեց մի Շարակնոց, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

*ԹԱՋԴԻՆ, ար. < արաբ. تاج الدين Tāǰ-ed-dīn անունից, որ նշանակում է «թագ կրոնի»։ Վկայված է նախ ԺԳ դարից, ապա ԺԵ դարից և ԺԷ դարից։

— 1. Թաշտին, մի խաչքար է կանգնեցրել իր և իր ծնողների անվան՝ Կողբում (Ղազախ), 1291 թ.—Արցախ 386։

— 2. Թաջդին խօճա, որդի Ամիր Հասանի. Արճէշում, Կարա-

պետ երեցին գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1437 թ. (Նոտարք 111). գնել է Շամօյից մի ջաղաց և նվիրել Ս. Յովաննէս վանքին (անդ 112)։ Թաճդինի ընտանիքի անդամներն են հայրը՝ Ամիր Հասան, մայրը՝ Թաւրէզ մելի՛ք, կինը՝ Դիլքուշատ, հանգուցյալ կինը՝ Ալամշա, որդիքը՝ Սքանդար և Նասրադին, եղբայրները՝ Ամիրդօլ, Արդուլքարիմ, Կարապետ, Մկրտիչ, քույրերն են Շիրին խաթուն, Շադի, Արմէլիք, պապը՝ Սուլէմանշահ, տատը՝ Շարմէլիք, հորեղբայրը՝ Ամիրալի (Նոտարք 164)։ Սրանք հիշված են 1437, 1450 և 1455 թվերին (Նոտարք 178)։

— 3. Թաջտին, հորեղբայր Յոհաննէս սարկավագի, որ Համիթում գնեց և նորոգեց Վարագից բերի տարված մի Աւետարան, 1581 թ.—Թորոս աղբ. Բ. 430։

— 4. Թաժդին (չ դարձած ժ), եղբայր Սիմէոն վարդապետի, որ ստացավ մի Աւետարան և ծաղկել տվեց՝ 1647 թ.—Ձեռ. Վասպ. 601։

— Թանտին հիշված է 1600-ական թվերին (Դրնղ. էջ ժ), և Թաժդին ձևով՝ 1413-ից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Հալէպի, Ա. 271)։

*ԹԱՋԵՐ, իգ. < պրս. تاج tāǰ «թագ» բառի հայաձև հոգնակին։ Իբրև անձնանուն գործածված է ԺԳ—ԺԼ դարերում։

— 1. Թաճեր, ամուսին Աւագտիկնոջ, որ պատկի ներքև իրեն բաժին ընկած «կէս ակն ձիթահանքը» նվիրեց Բագնայրին, 1207 թ.—Արձ. Շիրակ 122։

— 2. Թաճեր, կին Մանկիկ երեցի և մայր Գարեգին երեցի, որ իր գանձագին Նորադբերիկ գյուղը նվիրեց Բագնայրին՝ 1262 թ.—Արձ. Շիրակ 119.

— 3. Թաճեր, կին Ամիր-Հասանի և մայր Էաչիի՝ թոռան Պռօշի Խաղբակեան, տիրել է Շահապունեաց երկրին, կազմել է Խոտակերաց Ս. Նշանի պահարանը, 1300 թ.—Արձ. Շահխաթ. Ա. 65, Բ. 365։

— 4. Թաջեր, դուստր Ուքանի, եղբայր Պապաքի. կին Հասան սպարապետի Հայոց, որդւոյ Պռօշի՝ մեծ իշխանի Խաչենոյ։ Իր որդին է Էաչին։ Գրել է տվել մի Նարեկ՝ 1286 թ. մի տուն է նվիրել Թանադի վանքին, 1307 թ.—Արձ. Սիսական 121, Այրարատ 269, Յովսէփեան՝ Խաղբակեանք 147, 154։

— 5. Թաճիր, կին Կիրակոսի և մայր Վարդան Ղրիմեցի աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Աւետարանը՝ 1371 թ.—Ձեռ. Վասպ. 220։

— Թաճեր, *իբր առ. անուն հիշված է 1627 թ.—Ձեռ. Ներս. 40 բ։*

***ԹԱՃԷ**, իգ. Թվի կրճատ ձև Թաճերի. մի անգամ գտնում եմ ավանդված ԺԵ դարում։*

— Թաջէ, *հորեղբորդուստր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 582։*

***ԹԱՃԽԱԹՈՒՆ**, իգ. < պրս.* تاج tāj+խաթուն *բառերից։ Իբրև անձնանուն ավանդված է մեր մեջ ԺԵ դարից, ապա խափանված։*

— 1. Թաճխաթուն, *կին Սաղոնի և մայր Հոփսիմէի, որ Գամաղիէլի վանքում, Յոհաննէս դրչին գրել տվեց մի Ավետարան, 1427 թ.—Նոտարք 82։*

— 2. Թաճխաթուն, *կին Հայրապետ կրոնավորի, որ ստացավ մի Ավետարան, 1431 թ.—Նոտարք 98։*

— 3. Թաճհաթուն, *կին Ուֆիկի և մայր Ներսէս քահանայի, որ իր եղբայրների հետ մի Ավետարան գրել տվեց Թումա կրոնավորին, Ուրանց գյուղում, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364—6։*

— 4. Թաճհաթուն, *դուստր Պարոնի և քույր տանուտեր Մկրտիչի, որ Դանիէլ քահանային գրել տվեց մի Ավետարան, Աղթամար 1441 թ.—Ձեռ. Վասպ. 382։*

— 5. Թաճխաթուն, *դուստր Բուրթելի և քույր Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։*

***ԹԱՃՄԵԼԷՔ** կամ **ԹԱՃՄԵԼԻՔ**, իգ. < պրս.* تاج tāj *«թագ»+արաբ.* ملك melek *«հրեշտակ» կամ* مليك melīk *«թագավոր» բառերից։ Ավանդված է մեր մեջ ԺԴ—ԺԵ դարերից. այնուհետև խափանված է։*

— 1. Թաճմելիք, *դուստր Ստեփանոս քահանայի, որ մի հին Ավետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.—* Manus. brit. mus. *8 բ։*

— 2. Թաճմելէք, *կին Ասլանի, ի Սեբաստիա, 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107 (գրված է* Թաճմելէք, *իսկ էջ 1090 ցանկում* Թաճմէլիք):

— 3. Թաճմելէք, *կին Յոհանի՝ հոգևոր եղբոր Վարդան աբեղայի, որ գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Ոստանի Պատրըկի վանքին, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։*

— 4. Թաճմելիք, *մորաքույր Յովհաննէս քահանայի, որ Կա-*

րապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Վանում, 1422 թ.—Նոտարք 69։

— Անթվական արձանագրություններից հիշենք Թանատի վանքից՝ Սիսական 123 (երեու արձ.) և Արատեսի վանքից՝ Սիսական 143 (բոլորն էլ Թաջմելիք ձևով)։

*ԹԱՋՈՒՄ, իգ. < պրս. تاج tāǰ «թագ» բառից՝ թրք. ստացական م -um «իմ» հոդով. ամբողջը նշանակում է «թագս». հմմտ. Աղամ, Շահում, Բեգում անունները։ Կա նաև Թաջումաղա ձևով։ Գործածված է ԺԶ—ԺԸ դարերում։

— Թաճում, հիշված 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա), Թաջումաղա 1597 թ. (Ձեռ. Վասպ. 215), Թաճում 1620 թ. (անդ 199), Թաջում 1704 թ. (Ձեռ. Թաւր. 69 բ)։

*ԹԱՋՏԻԿԻՆ, իգ. < պրս. تاج tāǰ «թագ»+հյ. տիկին բառերից. ամբողջը համապատասխան է դուրս գալիս Թագուհի անվան։ Երկու անգամ հիշատակված է ԺԴ դարում։

— 1. Թաճ տիկին, իր ծախսով գրել տվեց մի Շարական՝ Աւետիս գրչին, 1341 թ.—Manus. bibl. nat. էջ 32։

— 2. Թաճտիկին, կին Յակոբ քահանայի, որ օրինակեց Աւետարանը 1353 թ.—Ձեռ. Թաւր. 135 բ։

*ԹԱՌԱ, ար. < պրս. تارا tārā «աստղ» բառից։ Այսպիսի անուն ավանդված չէ. բայց ենթադրում եմ, որ գործածված է եղել, որովհետև մի կողմից ունինք Թառուկ փաղաքշականը և մյուս կողմից Թառայեան ազգանունը։

Թառան տես Անթառամ։

ԹԱՌԲԷԿ (կամ Թոռբէկի), իգ. ծագումն անստույգ։ Գործածված է երեք անգամ. առաջինը 1646 թ. (Ձեռ. Վասպ. 904՝ գրված կամ տպված Թոռբէկի), երկրորդը՝ 1638 թ. կամ քիչ ուշ (անդ 896), երրորդը՝ անհայտ թվականով, բայց 1608 թվից հետո (անդ 829)։

*ԹԱՌԼԱՆ, իգ. < չաղաթ. թրք. ترلان tarlan «բազէ, շահէն». գործածվում է նաև «գեղեցիկ, փարթամ» իմաստով՝ թե հայոց և թե թուրքերի մոտ։ Երկուսի մոտ էլ այժմ գործածական է իբրև իգ. անձնանուն։ Հնից ավանդված եմ գտնում երկու անգամ. Առաջինը՝ իբրև իգ. հիշված ԺԷ դարի վերջը՝ REA հտ. 2 (1922), էջ 252 (գրված Թռլան), երկրորդը՝ Թառլան, ար, հիշված 1686 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 399)։

† ԹԱՌԽԱԹՈՒՆ, իգ. կազմված է թառ+խաթուն բառերից. առաջինը կարծում եմ Անթառամ անունից կրճատված (տես տակը

Թառուկ)։ Մի անգամ գտնում եմ գործածված 1689 թ. Ջեռ. Վասպ. 970)։

*ԹԱՌՂՈՒՄԱՇ, իգ. < պրս. تار tār «մետաքս թել»+արաբ. قماش qumāš «կերպաս, հյուսված կտորեղեն» բառերից, իբրև «կերպասի թել կամ թելով հյուսված կերպաս»։ Հիշված եմ գտնում երկու անգամ. առաջինը 1609 թ. (Bodleian 110), երկրորդը՝ 1673 թվից քիչ ուշ՝ Ջեռ. Սանաս. 15 բ)։

*ԹԱՌՈՒԿ, ար. ինձ թվում է թե Թառ անվան փաղաքշականն է. և այս ձևով իբրև ար. անձնանուն ունինք՝

— Թառուկ, որդի Ամիրասի Երզնկացու՝ գրչի ի Տրապիզոն 1657 թ.—Տաշեան, Ցուց. 355։

— Բայց Թառուկ կա նաև իբրև իգ. և այս ձևով՝ Անթառամ անվան փաղաքշականն է (տես անդ)։

*ԹԱՍԱԼՈՒ, ար. < արաբ. تسلی tasalli «սփոփանք, մխիթարանք» բառից. իր համազորներն են՝ եբր. Նաւում և հյ. Մխիթար. գործածական էր ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Թասալու՝ հորեղբորորդի Խօջա Բաղդասարի, որ ստացավ մի ձեռագիր (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 724։

— 2. Թասալի, հայր Ռստակէս քահանայի, 1619 թ.—Ջեռ. Թաւր. 68 ա։

— 3. Թասալի տիկ, հիշված 1620 թ.—Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 25 բ։

— 4. Թասալու, եղբայր Յովհաննէսի, Տեեցի, հիշված 1650 թ.—Տաշեան, Ցուց. 934։

ԹԱՐԱՂՈՒԼ, ար. ծագումն ինձ անհայտ. հմմտ. չաղաթ. ترانکول tarangul «մի տեսակ թուփ» (Будагов 1, 347) և կիրգիզ. طارغل tarġəl «սև բծերով կարմիր գույն կովի» (անդ 1, 723)։

*ԹԱՐԱՄԻՇ, ար. < թրք. تورمك töremek «սերել, բազմանալ, առաջ գալ» բայի անց. դերբ. töremiš «աճած, սերած, բազմացած» ձևից։ Մի անգամ գտնում եմ ավանդված սխալատիպ Թարամիյ ձևով՝ 1667 թ. (Ջեռ. Վասպ. 930)։ Տես և Թորամիշ։

*ԹԱՐԳՈՒԼ, ար. < պրս. تر tar «թարմ»+گل gul «վարդ», որով ամբողջը լինում է «թարմ վարդ»։ Իբրև անձնանուն չէ ավանդված. բայց երևի գոյություն ունեցել է, որից կազմված է Թարգուլեան ազգանունը (Վան)։

ԹԱՐԹԱՐ, իգ. կամ վրիպակ է՝ փոխանակ Թաքար, որ նույնպես իգական անուն է, և կամ եթե վրիպակ չէ, ծագում է Ղարաբաղի նշանավոր Թարթար գետի անունից, որի հին հայկա-

կան անունն է Տրտու (Թուրքերը փոխել են Տրտու անունը վե-րածելով կերգիդ. تارتار tartar „коростель ջրահավ» անվան (Бу-дагов 1, 722)։—Թարթար անունը մի անգամ գտնում եմ հիշա-տակված՝ 1554 թ. (Ձեռ. Վասպ. 98)։

*ԹԱՐԹԻԲ, իգ. < արաբ. ترتيب tartīb «կարգադրություն, կար-գավորություն, կանխապատրաստություն, կարգ» բառից։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԶ—ԺԷ դարերում. այս-պես 1551 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 324), 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 551), և անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Բ. 348). բոլորն էլ գրված Թարթիպ։

*ԹԱՐԹԻԲՇԱՀ, իգ. կազմված է նախորդ անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Գործածված է ԺԶ դարում, երկու անգամ 1534 թ. Թարթիփշա ձևով (Ձեռ. Վասպ. 647 և Տաշեան, Ցուց. 434)։

*ԹԱՐԽԱՆ, ար. < պրս. ترخان tarxān «որ արքունի հրամանաւ եղեալ իցէ ազատ ի հարկաց և յանձն ապաստան կացուցեալ, որ զինչ և խօսիցի, կամ թէ զինչ գործ պակասութեան առնիցէ, ոչ յանդիմանի և ոչ կշտամբի», արաբ. طرخان ṭarxān «վերիրից ա-վելի բարձր մի աստիճան»։ Անձնանուն էր նաև Պարսից մեջ. օր. Թարխան զորավար Արջասպի՝ թագավորի Թուրքաց Պղնձէ քաղաքի (Շահն. հտ. 4, էջ 433)։ Գործածվել է մեր մեջ ԺԵ—ԺԶ դարերում, որից և Թարխանեան ազգանունը (Կովկաս)։

— 1. Թարհան, թոռն Խոսրովի, որ Բունաշէն գյուղում, Մխի-թար քահանային գրել տվեց մի Ավետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 2. Թարխան, կին Մելքոնի, որդւոյ Խոջա Յովհաննէսի՝ հորեղբորորդւոյ խոջա Յովսէփի, որ էր իշխան Տարօնի և Մուշում, Պօղոս վարդապետին գրել տվեց Ավետարանը՝ 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— Թարխան անունը հիշված է նաև 1513 թ. (Օրբ. Ժմ. յավել. 46=Սիսական 34 ա), 1579 թ. (Ձեռ. Վասպ. 344), 1610 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 9 ա (տպված է Թարխուն, պետք է կար-դալ Թարխան, ինչպես գրված է քիչ հետո), 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928), ԺԶ դար (Ձեռ. Թաւր. 43)։

ԹԱՐՄ. անստույգ անուն։ Այս անունով հիշատակված է մի հայ իշխան, Ատրպատականին սահմանակից մի գավառից. կոտորեց Ատրպատականի Լաշկարիստան իշխանի զորքը Հիջրեթի 326=Քր. 936 թ. ըստ Իբն-էլ-Աթիրի արաբ պատմչի։ Գրված է

طرم ṭrm կամ طردم ṭrdm, որ անշուշտ աղավաղ ձև է։—Խալաթեան, Արաբ. մատ. 145։

*ԹԱՐՄԱՐ*, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1488 թվից ուշ (Ձեռ. Վենետ. Ա. 492)։

*ԹԱՐՈՒՄ*, ար. ծագումն ինձ անհայտ. ավանդված չէ. բայց երևի գործածական անուն էր, որովհետև կա Թարումեան ազգանունը (Կովկաս)։

**ԹԱՐՋԻՄԱՆ*, ար. < արաբ. ترجمان tarǰimān «թարգման» բառից. իբրև անձնանուն հիշված է մի անգամ 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734)։

**ԹԱՐՎԵՐԴԻ*, ար. < թրք. թթր. تکری وردی Taňri-verdi «Աստուածատուր» անունից, որ կազմված է թթր. taňri «աստված»+verdi «տվեց» բառերից. հմմտ. Xudāverdi, Allahverdi համանիշ ձևերը։ Առանձին չէ ավանդված, բայց սրանից է Թարվերդեան ազգանունը։

*ԹԱՐՓԱՇԱ*, սեռ. անհայտ, նույնպես և ծագումը. մի անգամ հիշատակված է 1509 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 643)։

**ԹԱՐՔԱՆ*, իգ. < պրս. ترکا tarkā «տիկին, խաթուն, տանտիկին» բառից (տես ԳԴ Պրս. բռ. էջ 125)։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԳ—ԺԶ դարերում։

— 1. Թաքան խաթուն (ր ընկած կամ վրիպակ), կին Աւագպարոնի և մայր Ջանխաթունի, որ նվերներ է արել Յովհաննավանքին, 1279—1300 թ.—Արձ. Զքր. պատմ. Գ. 26. Այրարատ 171։

— 2. Թարքան, կին Մարտիրոսի, որ Տփղիսում, Խաչատուր սարկավագին գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։

— 3. Թարքան (հոդով՝ Թարքանն), վաղամեռիկ կին Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակել է Կիւրղի Կոչումն ընծայութեանը. մեռել է շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28։

— 4. Թարքան խաթուն, հիշված 1525 թ.—Ձեռ. Վասպ. 418։

— 5. Թարֆան խաթուն, հիշված 1389 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 759)։—Չպետք է շփոթել Թուրվանդի հետ, որովհետև քիչ հետո երկուսը միասին հիշվում են։

— 6. Թերկան խաթուն ձևով հիշված է մի ուրիշ անթվական արձանագրության մեջ, որ այժմ գտնվում է Նոր-Նախիջև-

վանի Ս. խաչ վանքում (Շահազիզ, Նոր-Նախիջ. Ս. Խաչ վանքը, էջ 12)։

*ԹԱՒԱԴ, ար. < վրաց. თავადი թավադի «գլխավոր, իշխան» բառից. երևի գործածական էր իբրև անձնանուն մեր մեջ, որովհետև ունինք սրանից Թաւադեան ազգանունը (Կովկաս). համա. Իշխան, Կնեազ համանիշ անունները։

*ԹԱՒԱՐ, ար. և իգ. < Թրք. تَوار tavar «եզ, տավար» բառից, բայց ավելի հարմար է կաղանի Թթր. تَوار tavar «մետաքսե կտոր, ատլաս» (Будагов 1, 382)։ Իբրև իգ. անուն հիշատակված է Թավար 1658 թ. (Արցախ 74), իսկ իբրև ար. անուն հիշված է Թաւար իշխան Ջահկեցի, 1750 թ. (Ջամչ. Գ. 845)։ Սրանից է Թաւարբեգեան ազգանունը (Կովկաս)։

*ԹԱՒԱՔԱԼ, ար. < արաբ. توكل tavakkul «ապավինիլ» բայից, որից կա հատկապես توكل على الله tavakkul-ʿal-Allah «յԱստուած ապաւինեալ», որ համապատասխանում է մեր Աստուածապով անվան։ Կրճատ ձևով ասվում է Թաւաքալ. հիշվում է օր. Երևանի խաներից մեկը՝ Թաւաքեալ անունով (Այրարատ 308)։ Սրանից է նաև Թաւաքալեան ազգանունը (Կովկաս).—Թրք. ժողովրդական լեզվով նույն արաբերեն բառից կազմված է توكلى tevekkülli (ժղ. tevekelli) «միամիտ, պարզամիտ», որից և Երևանի ժղ. բարբառով թավաքյալի։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Թեւաքալ ոմն, հիշված է Տաթևի վանքին կալվածներ նվիրելու առթիվ, 1332 թ.—Ազգագր. հանդ. Գ. 141։

— 2. Թաւաքալ, որդի Վարդանի, ազգական Կարապետ կրոնավորի, որ արտագրել տվեց Հին կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—այս թվին Թաւաքալը մեռած էր.—Ջեռ. Ացուլ. (Արա. 1911, 850)։

— 3. Թաւաքալ, որդի Կարապետի, տանուտեր Հալէպի. Լենկթիմուրի արշավանքի ժամանակ, սովից նեղված գնաց Անթափ՝ հաց գնելու. տեսավ այնտեղ գերի ընկած մի Աւետարան «ի ձեռըս այլազգեաց և յոյժ արտասուեաց, վասն այնորիկ, զի անարգէին զԱւետարանս և զՔրիստոս. և յիշեաց զբանն Քրիստոսին որ ասէ. Գանձեցէք ձեզ գանձս յերկինս. և զմիւսն թէ Երանի այնոցիկ որ ունի զաւակ ի Սիոն և ընտանի յԵրուսաղէմ։ Յայնժամ աստուածային սիրովն վառեալ փափագեցաւ ս. Աւետարանիս, ետ զիւր հացի գին և էառ զսուրբ Աւետարանս և ազատեաց յանաւրէնաց և եբեր յիւր տուն և ուրախացաւ»։ Ապա նվիրեց

Հալէպի եկեղեցուն (1400 Թ)։ Այժմ գտնվում է Վենետիկում (№ 88)։—A. Surméyan, La vie et la cult. à Alep, էջ 17, Ձեռ. Վենետ. Ա. 401—2։

— 4. Թաւաքալ, հայր Յովսէփ միաբանակեցի, որ Յովանէս վարդապետի արտագրած կիսատ Աւետարանը վերջացրեց «գրելով և ծաղկելով և կազմելով» Լիմ անապատում, 1439 Թ.—Ձեռ. Վասպ. 380։

— 5. Թաւաքալ, հայր Յովհաննէս քահանայի, որ մի արկածի զոհ գնաց 1458 Թ. (ավելին տես Յովհաննէս անվան տակ).—Ձեռ. Վասպ. 429։

— 6. Թաւաքալ, հորեղբայր Սարգսի, որ Ղազար գրչին գրել տվեց մի Աւետարան, Խիզանի Գամաղիէլ վանքում, 1468 Թ.—Ձեռ. Վասպ. 451։

— 7. Թաւաքալ, որդի Թօղանի և եղբայր Փաշայի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Թովմա առաքեալի վանքում, 1471 Թ.—Ձեռ. Վասպ. 463։

— 8. Թաւագալ, ազգական Լիմնոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 Թ.—Թորոս աղբ. Ա. 120։

— Ավելի ուշ եղած հիշատակություններ են՝ Թաւաքալ 1500 Թ. (Տաշեան, Ցուց. 486), Թավագալ 1670 Թ. (Ձեռ. Վասպ. 936)։

ԹԱՒԻ, աբ. արդյոք Թաւաքալ անվան կրճատ ձև՞ն է, մի անգամ հիշված է 1719—24 թվերին (Այրարատ 305)։

*ԹԱՒՐԷԶ, իգ. < պրս. تبریز Tabrīz քաղաքի անունից, որ Պարսկական Ատրպատականի մայրաքաղաքն է։ Սկզբում ասվում էր Թաւրէզխաթուն, ապա կրճատվելով՝ ասվեց միայն Թաւրէզ. կա նաև Թաւրէզմելիք։ Գործածվել է ԺԵ դարից սկսած և գնում է մինչև ԺԸ դարը։ Վերջին հիշատակությունը 1713 թվից է։

— 1. Թավրէզ խաթուն, դուստր Ծերունի և քույր Յովհաննէս կրոնավորի, որ գնեց մի հին Շարական և նորոգել տվեց 1465 Թ.—Rapport Belgique 145։

— 2. Թաւրէզխաթուն, դուստր խոջա Ղուրաթի, որ Արաշ գեղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 Թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 3. Թավրէզ, դուստր Եղօի Եղկանց, կին Ղուզիկ Մսեհի, գրել տվեց Պարսամ քահանային մի Աւետարան և նվիրեց Յովհաննէս քահանային, 1498 Թ.—Ձեռ. Վասպ. 525—6։

— Ավելի ուշ հիշատակություններ են՝ Թաւրվէզ 1507 Թ. (Ձեռ. Վասպ. 623), Թարվիզ 1587 Թ. (Bodleian 107), Թաւրէզ

1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 233 ա), Թաւրիզ 1588 (Ձեռ. Վասպ. 709), Թաւրէզ 1608 թ. (Manus. brit. mus. 43 բ). չենք հիշում ԺԸ դարի մյուս հիշատակությունները, որոնք բավական շատ են և որոնց վերջինն է Թարվէզ 1698 թ. (Ձեռ. Վասպ. 983), իսկ ամենավերջինը՝ 1713 թ. (անդ 984)։

*ԹԱՒՐԷԶՄԵԼԻՔ, իգ. <նույն Թաւրէզ քաղաքի անունից+արաբ. ملك melīk «թագավոր»։ Գործածված է միայն ԺԵ դարում։

— Թավրէզմէլիք, կին Ամիրհասանի. որդիքն են Ամիրղօլ և Թաճդին, որոնք տես առանձին. հիշված է 1437, 1450, 1455 թվերին.—Նօտարք 111, 112, 164, 178։—Այսպես է կոչվում նաև Ամիրղօլի դուստրը, կրելով իր տատի անունը, 1455 թ.—Նօտարք 178։

— Անթվական մի հիշատակարանում էլ կա Թավրէժմէլիք (Ձեռ. Թաւր. 73 բ)։

†ԹԱՓԻՉ, ար. <հյ. թափիչ «լվացարար» բառից։ Միայն մի անգամ հիշված է իբրև Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի («1221—67 թ») հայրանունը՝ հետևյալ ձևով. «Ի ՈՀԱ թվին նստուցին ի Սիս կաթողիկոս զտէր Կոստընդին մեծափառ՝ որդի Թափչի՝ի Բարձրբերդ» (Օրբ. ԺԱ. 23)։ Այլուստ գիտենք, որ այս կաթուղիկոսի հոր անունն էր Վահրամ, որ «ստոսկական անձ մը եղած էր» (տես Ազգապ. 1601 և ազգաբանությունն էլ Սիսուան 151)։ Սրանց մեջ չի ասված թե հայրը ինչ արհեստի մարդ էր։ Ուստի Թափիչը կամ Կոստանդինի հոր երկրորդ անունն է և կամ թե նրա արհեստը։

*ԹԵԼԼԻ կամ ԹԵԼԼՈՒ, իգ. <Թրք. تللو tellu կամ تللى telli «ոսկեհյուս թելեր ունեցող»։ Գործածված է ԺԷ դարից. այսպես՝ Թելի 1674 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 բ), Թելլու 1808 թ. (Բարխուտ. Աղուանից երկ. 234), Թիլի 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101 բ), Թիլի 1662 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 653). կենդանի է հետևյալ վայրերում։

*ԹԵԼԼԻԽԱՆ, իգ. ավանդված է Թիլլիխան ձևով՝ 1681 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 303)։

*ԹԵԼԼԻՓԱՇԱ, իգ. <նույն թելլի բառից+փաշա: Ավանդված է ԺԵ դարից, ուստի նախորդն էլ նույն ժամանակից կար։

— 1. Թելափաշա (կամ Թելլիփաշա), դուստր տանուտեր Սադաղայի, որ Աղթամարում, Թումայ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480, 482։

— 2. Թելիփաշա, կին Ղուբաթի՝ եղբոր խոջա Խաղնադարի, որ գրել տվեց մի Աւետարան, 1579 թ.—Ձեռ. Վասպ. 689։

— *Ավելի ուշ ժամանակից հիշված են* Թիլիփաշա *1613 թ. (Ձեռ. Վասպ. 845),* Թիլիփաշայ *1626 թ. (Թորոս աղբ. Բ. 255),* Թիլիփաշա՝ *ԺԷ դար?* (Bodleian *18), անթվական՝ Ձեռ. Թաւր. 135 բ։*

**ԹԵԼԽԱՆ, իգ. (իմա Թելլի-խան). հիշված է մի անգամ ՌՄԼԴ=1785 թվի մի շիրմի արձանագրության մեջ՝* Թէլխան *ձեւով (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 89)։*

**ԹԵԿՂԻ, իգ. < հուն.* Θέκλα *(որից լտ.* Thecla, *ռուս.* Фекла) *անունից (կազմված է* θεός *«Աստված»+*κλέω *«փառաբանել» բառերից և նշանակում է բուն «աստվածային փառաբանություն»)։ Հնից հայտնի է սրբուհին Թեկղի նախավկայուհին, որի վկայաբանությունը մտած է նաև մեր Յայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ 423)։ Մեր մեջ սովորական չի եղել. հնից ավանդված է մի անգամ Թանատի վանքի անթվական մի արձանագրության մեջ (Սիսական 122), շատ ավելի ուշ՝ 1676 թ. (Ծանիկեան, Հնութ. Ակնայ 91), նաև* Թեկղի խաթուն, *որ Հնդկաստանից մի վարագույր նվիրեց Երևանի եկեղեցուն, 1800 թ. (Շահազիզ, Հին Երևանը 207)։ Գործածական էր ԺԹ դարի վերջերը Պոլսում։ Բյուզանդական պատմության մեջ էլ հայտնի է* Թեկլա՝ *քույր Վասիլ Ա (867—886) հայ կայսեր և կին Միքայէլ Արբշիռ կայսեր (Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 353, 377)։*

*ԹԵՂԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ (եթե չկա վրիպակ). մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 736)։*

*ԹԵՄԱՆ, իգ. ծագումն ինձ անհայտ։*

— Թեման, *կին Առաքելի. երկուսով նպաստեցին մի Աւետարանի գրության՝ 1280—1320 թվերի միջև։— Ձեռ. Թաւր. 27։*

*ԹԵՄՐ, ար. ծագումն անհայտ։*

— Թեմր *եպիսկոպոս Մեհնունեաց, ժամանակակից Բաբկէն կաթողիկոսի «490—516 թ». ստորագրում է այն թղթին, որ Բաբկէն կաթողիկոսը գրեց Պարսկաստանի ուղղափառներին.—բց.* ի Թեմրայ՝ *Գիրք թղ. ը։*

*ԹԵՆԻ, իգ. ծագումն անհայտ։ Մի անգամ միայն ունինք՝*

— Թենի, *կին Մաթէի, պաշտոնյա Շահանշահի, Զաքարեանց ամիրսպասալարի ցեղից. վերաշինել է Անիի Ս. Լուսաւորիչ եկեղեցու խանգարված աղբյուրը՝ 1310 թ։—Արձ. Շիրակ 79։— Սրա փաղաքշական ձևն է՝*

*ԹԵՆԻԿ, իգ. որ հիշված է ԺԸ դարում (Ձեռ. Էջմ. № 945)։*

Թենսուփ տես Թանսուլ:

ԹԵՇՖԷՆ, ար. ծագումն անհայտ (եթե չկա վրիպակ). հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Դալեան, Բ. 31 բ՝ գրված Թեշֆէն): Հմմտ. Պեշքէն:

ԹԵՐ, ար. ծագումն անհայտ. մի անգամ ունինք՝

— Թէր, հայր Հայրապետի, որ մի խաչքար է կանգնեցրել Դսեղում (Լոռի).—Ազգագր. հանդ. Է, 424, Յարութիւնեան, Ներս. դպր. սաների Ա ճանապ. 63 (առանց թվականի):

ԹԵՐԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ: Ավանդված է մի անգամ ԺԳ դարից:

— Թերան Անեցի, օգնությամբ Վարդերի գնել է մի պատմագիրք և նվիրել Ս. Գրիգոր եկեղեցուն, 1246 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 512 (պետք է կարդալ «Ես Թերանս հանեցիս, որ գնեցի (և ոչ թե նորոգեցի)...»:

*ԹԵՐԵԶԱ, իգ. < իտալ. Teresa, ֆրանս. Thérèse անունից, որ ծագում է լտ. Therasia անունից և այս էլ հուն. Θηρασία կղզու անունից: (Այս կղզին գտնվում է Եգեյան ծովում, Կրետեի մոտ և ունի համանուն մի քաղաք): Այս անունով հայտնի է սրբուհին Թերեզա, սպանուհի (1515—1582), որ կաթոլիկ եկեղեցու նշանավոր սրբուհիներից է: Այս անունը այժմ գործածական է ավելի կաթոլիկ հայոց մեջ՝ Թերեզա կամ Թերեզ ձևով: Հնագույն հիշատակությունները են՝ Թերեզայ Տիւզեանց, նախ քան 1738 թ. (Մէնէվիշեան, Ազգաբ. Տիւզեանց 12), Թերեզա 1796 թ. (յիշատ. էֆիմ. 448), Թերեզիա (Տաշեան, Ցուց. 1090):

ԹԵՐԻՖԱՂ, իգ. ծագումն ինձ անհայտ: Այս անունով գիտեմ Թերիֆաղ՝ դուստր Նահապետ Ագուլեցու, 1687 թ.—Սիսական 335 ա:

† ԹԵՒ, մր. < հյ. թև բառից, որի համազորներն են Բազուկ, Թաթուլ, Ձեռէս: Սեռ. Թևոյ ձևով գործածված է Երուսաղեմի Ձիթենեաց լեռան մոզայիկ արձանագրության մեջ, որ հետևյալն է. «Վասն աղաւթից և փրկութեան Թեւայ Արասու և Մուրկանս».—Արար. 1876, էջ 195, Պալեան, Ս. Երկիր 300—3 > Տաշեան, Ակնարկ 137:—Սրա փաղաքշականն է Թևիկ, որ տես:

Թևան տես Թէոդորոս:

*ԹԵՒԱՆՈՒ տես Թէոփանօ:

— Թևանու, որդին Լամբրոնի. Ներսէս Լամբրոնացու († «1198 թ.») եղբոր Թոռան՝ Հեթումի կինը.—Հացունի, Դաստ. էջ 75:

† ԹԵՒԻԿ, ար. < Թև անվան (տես վերը) փաղաքշականն է։ Հիշատակված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 39 ա)։

*ԹԵՒՈՆԴԻԿ, իգ. գործածական է եղել Պոլսում, անցյալ դարում, ըստ Թէոդիկի (Պոլսի հայեվարը. ձեռագրի լուսանկարը, որ գտնվում է մեր համալսարանում)։ Նույն է Թէոդոս:

ԹԵՒՈՒՄ, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է մի անգամ 1738 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ)։

*ԹԵՖԱՐԻԿ, իգ. < արաբ. تفاريق tefārīq «նվեր տալու մանր ոսկուն առարկաներ». արդի գործածությամբ եղել է թրք. «մի տեսակ կծու անուշահոտություն, որ գործածում են տաճիկ կանայք»։ Իբրև իգ. անուն գործածական էր Պոլսում, անցյալ դարում։

*ԹԷՈԴՈՍ, ար. < հուն. Θεοδόσιος անունից, որ նշանակում է «Աստուածատուր» (կազմված Θεός «Աստուած»+δόσις «տալը, տվածը» բառերից > լտ. Theodosius, ֆրանս. Théodose. Այս անունով հայտնի են՝ Թէոդոս Ա Մեծն, կայսր Հռովմայեցոց 379—395, Թէոդոս Բ կայսր Յունաց 408—450, Թէոդոս Գ կայսր Յունաց 715—717։ Առաջինը համարվում է եկեղեցու պաշտպան և իր վարքը մտած է մեր Յայսմաւուրքի մեջ։ Հաճախ այս անունը շփոթվում է Թէոդորոսի հետ. և ուր որ շփոթություն կա, ուղիղ ձևը համարում եմ Թէոդոս։ Ժողովրդական Թաքոս ձևը չի ծագում սրանից, այլ Թադէոս անունից, ինչպես ցույց է տալիս Մաքոս, որ ծագում է Մատթէոս անունից։ Տես և Թեոնդիկ։

— 1. Թէոդոս (կամ Թէոդորոս) Տրպատունի. ապստամբվեց Սամուէլ Վահևունու հետ Պարսից Խոսրով Բ թագավորի դեմ, բայց շուտով հաշտվեցին։ Այնուհետև ապստամբվեց Յունաց Մորիկ կայսեր դեմ († 602). բայց հաղթվելով փախավ Խոսրովի մոտ, որ կապեց նրան և հանձնեց թշնամիներին։—Սեբ. ժդ, ժե։

— 2. Թէոդոս (կամ Թէոդորոս) եպիսկոպոս Մարդպետական կամ Սեպհական գնդին. մասնակցեց Դուինի «607 թվի» ժողովին։—Թէոդոս՝ Ուխտ. Բ. լ. Գիրք Թղ. լը։—Թէոդորոս՝ Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ.—սեռ. Թէոդորոսի՝ Օրբ. իե.—բց. ի Թէոդոսէ՝ Ուխտ. Բ. լբ.—ի Թէոդորոսէ՝ Գիրք Թղ. ծե. Կղկնտ. Բ. խթ։

— 3. Թէոդոս Խորխոռունի. հույն գնդի զորավարն էր. Խոսրովի և Փոկասի (602—610) պատերազմի ժամանակ Պարսից հանձնեց Անգղ բերդը և իր հույներին կոտորել տվեց։ Իբրև պար-

գե՝ կանչվեց Պարսից պալատը, բայց մի ժամանակ հետո կասկածվելով՝ սպանվեց։—Սեբ. ը։

— 4. Թեոդոս եպիսկոպոս Գնունեաց, անդամ Դունայ «645 թվի» ժողովի.—Տաշեան, Ցուց. 654, Այրարատ 135, Կանոն. 130 (վերջինս Թեոդորոս). Ջամչ. Բ. 345 (գրում է Թադեոս). լավագույնն է Շողակաթ 174 Արճ. Մաստարայի, ուր ունինք սեռ. Թեոդորոսի, Այրարատ 135։

— 5. Թեոդոս տես Թոդրոս։

— 6. Թեոդոս (կամ Փլաւիոս Թէոդոս), որդի Մօրիկ հայկազն կայսեր Հունաց. ծնվել է 585 թ. հինգ տարեկան հասակում թագավոր պսակվեց և կոչվեց Կեսար (590 թ). ամուսնացավ Գերմանոսի աղջկա հետ՝ 601 թ. երբ Մօրիկը գլխատվեց իր որդիներով միասին, Թէոդոսը փախել ապաստանել էր Ս. Սոփիա եկեղեցին. բայց բռնի դուրս հանեցին և գլխատեցին (602 թ)։ Միայն Սէբէոս պատմիչը (գլ. իԹ, լա, լբ) պատմում է թե Թէոդոսը փախավ ապավինեց Պարսից թագավորի մոտ, որ թագ ավեց նրան և այս առթիվ երկու պետությանց մեջև մեծ խռովություն ծագեց։—Տէր Սահակեան, Հայ կայսրք, Ա. 123, 262, 302, 305։

— 7. Թեոդոս (կամ Թէոդոսիոս), որդի Լեոն Ե Հայ կայսեր (813—820 թ.) Հունաց. երբ Միքայէլ Բ սպանեց Լեոնին, նրա չորս որդիներին էլ ներքինացրեց. Թէոդոսը իսկույն մեռավ, մյուսները կենդանի մնալով՝ վանք դրվեցին (820 թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսրք, Ա. 194, 334, Ջամչ. Բ. 432։

— 8. Թեոդոս տես Թորոս Ա։

— 9. Թեոդոս, ուրացյալ դատավոր Սեբաստիոյ (1155 թ).— Նոր վկ. էջ 8—9 (գրված Թոտոս)։

— 10. Թեոդոս եպիսկոպոս, առաջնորդ Տիւրիկի, 1174 թ.— Զարբ. Թրգմ. 726, Ձեռ. Վենետ. Բ. 510։

— 11. Թեոդոս, փոխանորդ վանահոր՝ Նորաշէնի անապատում, Մուշեղկայ գյուղում, 1210 թ.—Դուրեան, Ուսումն. 231։

— 12. Թեոդոս, վանահայր Տուրուբերանի Խարձի անապատում, 1228—9 թ.—Ցովսէփեան՝ Խաղբակեանք 93։

— 13. Թէոդոս, քեռայր Վարդան և Սարգիս քահանաների, որոնք Երզնկայի Կապոսի վանքում գրել տվին Տօնամակը՝ 1230 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1214։

— 14. Թեոդոս, սպասավոր Կոստանդին Ա կաթողիկոսի, որի կողմից նվերներ տարավ Հայաստանի եկեղեցիներին «1247 թ».—տես. Թեոդոսի՝ Կեր. խա։

— 15. Թէոդոս (*կամ Թէոդորոս*) *Զրքին* (*թրք. «տգեղ»*), *որդի Բուրդ Գ Անբերդցու* (*1317 թ*), *իշխանաց իշխան. կինն է Խուանդ խաթուն. երկուսն էլ նվիրատու Յովհաննավանքի։—Արձ. Այրարատ 171 ա, 253—4։*

— 16. Թէոդոս, *փակակալ Մաշկևոր վանքի, 1259 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 55 բ։*

— 17. Թէոդոս *քահանա, հայր Կոստանդին Հռիփսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Ավետարան, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 656.*

— 18. Թէաւդոս, *նախորդի թոռն է։—Անդ 656։*

***ԹԷՈԴՈՍԻԱ**, *իգ. <հուն.* Θεοδοσία *անունից, որ բուն նշանակում է «նվիրաբերություն առ Աստուած»։ Հայոց մեջ չէ գործածված. այս անունով գիտենք միայն՝*

— Թէոդոսիա, *դուստր Արշաւիր հայկազն պատրիկի* (№ 9), *ամուսնացավ Լևոն Հայկազնի հետ, որ ապա եղավ կայսր Հունաց՝ Լևոն Ե անունով* (813—820 թ)։ *Երբ Լևոնը սպանվեց, իր 4 որդիների հետ՝ Թէոդոսիա կայսրուհին էլ աքսորվեց Պրոտի կղզին, ուր ապրում էր մենության մեջ պետական թոշակով* (820 թ)։—*Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 156, 191, 194. Բ. 337—8, 344—6. Զամչ. Բ. 432։*

***ԹԷՈԴՈՍԻՈՍ**, *ար. տես* Թէոդոս *անունը և հատկապես № 7։*

***ԹԷՈԴՈՐԱ**, *իգ. ծագումը տես* Թէոդորոս։

— 1. Թէոդորա *Ա. Մամիկոնեան ցեղից. թոռն նշանավոր զորավար Մանուէլ Մամիկոնեանի և քույր Վարդ Մամիկոնեանի։ Հունաց Թէոփիլոս կայսրը հաջորդելով Միքայէլ Թլվատին, ուզեց ամուսնանալ իր երկրի ամենագեղեցիկ աղջկա հետ։ Հրովարտակներ և դեսպաններ ուղարկվեցին ամեն կողմ և հրավիրեցին բոլոր գեղեցկուհիներին Բիւզանդական պալատը։ Թէոփիլոս երիտասարդ կայսրը անցավ բոլոր շքեղազարդ գեղեցկուհիների առաջով և իր ձեռքի ոսկի խնձորը կարկառեց ամենից գեղեցկին, որ սույն Թէոդորա հայուհին էր։ Ամուսնությունը կնքվեց և Թէոդորան հռչակվեց կայսրուհի (830 թ)։ 12 տարի իշխեց Թէոփիլոս կայսրը և մեռավ. նրան հաջորդեց մանկահասակ որդին Միքայէլ Արբշիռ, որի խնամակալներն եղան Թէոդորա, Վարդ և Մանուէլ Մամիկոնեանները։ Թէոդորա կայսրուհին ձեռք առնելով պետության սանձը, իր բոլոր ուժով նետվեց քաղաքականության ասպարեզը, ջանալով ջնջել ներքին կռիվները և արտաքին պատերազմներով էլ ընդարձակել պետության սահմանները։ Հայ կայ-*

րուհին ցույց տվեց մի հանճար, որին կարող էին նախանձել բազմաթիվ կայսրներ։ Նա միանգամայն կայսր էր և պատրիարք, և իր գործերն էլ ռազմագիտական էին և եկեղեցական։ Սքլավոնները տիրել էին Պելոպոնեսին. Թէոդորան բոլոր արևելյան բանակները հավաքեց և իր Թէոկտիստոս սենեկապանի հրամանատարությամբ Թշնամու վրա ուղարկեց։ Բարբարոսները հաղթվեցին և հպատակվեցին։ Կարբէաս անուն պաւլիկեան երիտասարդը հիմնեց Տիւրիկէ քաղաքը և արաբների հետ դաշնակցելով՝ կազմակերպեց մի մեծ ընդդիմադիր ուժ հունաց կայսրության դեմ։ Թէոդորան ուղարկեց նրանց դեմ իր Փեդրոնաս եղբորը, որ նվաճեց նրանց։ Թեև Պաւլիկյանների վերջնական նվաճման պատիվը պահված էր Վասիլ Արշակունուն։ Բայց իր լավագույն գործը այն եղավ, որ Խազարներին ու Բուլղարներին քրիստոնյա դարձրեց, միանգամայն և վերջինների գրականության սկիզբը դրավ։ Բուլղարների Թագավորը՝ Բոգորիս պատերազմի հայտարարություն ուղարկեց կայսրուհուն։ Կայսրուհին պատասխանեց. «Մի խրոխտար. ես անձամբ բանակի գլուխը պիտի անցնեմ, վրադ պիտի գամ և քեզ պիտի ջախջախեմ։ Իսկ եթե բախտը ինձ մատնի, իրավունք չպիտի ունենաս պարծենալու, որովհետև մի կնոջ ես հաղթել»։ Այս պատասխանը ետ կասեցրեց Թագավորին, որ խնդրեց կայսրուհուց ազատ արձակել իր հարազատ քրոջը և սրանով վերջ տալ կռվին։ Բուլղար Թագավորի քույրը հունաց մոտ մնալով՝ վաղուց արդեն քրիստոնյա էր դարձել և հայրենիք վերադառնալով՝ համոզեց իր եղբորն էլ թե ճշմարիտ կրոնը քրիստոնեությունն է։ Բոգորիսը քրիստոնյա դարձավ և ժողովուրդի ապստամբությունը զսպելով՝ քրիստոնեությունը պետության կրոնը հայտարարեց։ Թագավորը խնդրեց կայսրուհուց մի քարոզիչ ուղարկել իրենց։ Նա էլ ուղարկեց Կիւրեղ եպիսկոպոսին, որ Մեթոդիոս կրոնավորի հետ միացած՝ ամբողջ Բուլղարիան դարձի բերավ (853)։ Նույն Կիւրեղը հայ կայսրուհու հրամանով մի անգամ Խազարների երկիրն էր գնացել և քրիստոնյա էր դարձրել (847)։ Այժմ էլ Բուլղարներին քրիստոնյա դարձնելուց հետո, հնարեց սլավական այբուբենը և Ս. Գիրքը թարգմանելով՝ սլավոնական գրականության հիմնադիր եղավ։ Ինչպես հայտնի է, այս այբուբենը կազմված էր հունարենից, պակաս տառերը լրացնելով ուրիշ աղբյուրներից. այսպես Ш եբրայերենից, Ц և Ч հայերենից, իսկ Щ տառը երկուսի գումարից։ Տասներկու տարի այսպես երկիրը կառավարելուց հետո, զգված իր եղբոր՝ Վարդի

դավադրական արարքներից, Թէոդորան հրաժարական տվեց և բոլորովին հեռացավ քաղաքական ասպարեզից (854)։ Վերջապես նա վանք քաշվեց և այնպիսի առաքինի միանձնուհի հանդիսացավ, որ իր մահվանից հետո (867), նույն եկեղեցու սրբերի կարգը դասվեց։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 355—374։

— 2. Թեոդորա Բ, կայսրուհի հունաց. Կոստանդին Պերփեռուժէն հայազգի կայսեր դուստրն էր և քույր Ռոմանոս Բ կայսեր։ Այնքան առաքինի կին էր, որ երբ իր եղբայրը՝ Ռոմանոս Բ գահ բարձրացավ, նրան իր մյուս քույրերի հետ վանք դրավ (969 թ.)։ Երբ Յովհաննէս Զմշկիկ հայազգին սպանեց Նիկեփորին և գահ բարձրացավ, իր տոհմին ազնվականություն տալու համար ամուսնացավ այս Թէոդորայի հետ (971)։ Վանքից պալատ փոխադրվելով՝ իբր կայսրուհի էլ նա վարեց առաքինի կյանք։ Պատմությունը իր մասին լռում է. և նույն իսկ հայտնի չէ թե իր ամուսնու՝ Զմշկիկի սպանությունից (976 թ.) հետո, ինչ եղավ այս սրբակեցիկ կայսրուհու վիճակը։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 379—380։

— 3. Թեոդորա Գ. կայսրուհի հունաց. դուստր Կոստանդին Ը կայսեր, որ Արշակունեաց հարստության վերջին շառավիղն էր. քույր Զոյէ կայսրուհու, որի կյանքը տես առանձին։ Զոյէն՝ նախանձոտ կին, վանքի մեջ փակեց Թէոդորային։ Երբ ժողովուրդը ապստամբվելով՝ գահազուրկ արեց Միքայէլ Ե կայսեր (1042), վանքից էլ հանեց թե Զոյէին և թե Թէոդորային և երկուսին միասին կայսրուհի հրատարակեց, երբ այս վերջինը 70 տարեկան պառավ էր արդեն։ Թէոդորայի իշխանությունը երկու ամիս միայն տևեց, մինչև որ Զոյէն ամուսնացավ Կոստանդին Մոնոմախոսի հետ և իշխանությունը նրան անցավ։ Թէոդորան նորից վանք մտավ։ Երբ Մոնոմախոսը մեռավ (1055), գահը անցավ դարձյալ Թէոդորային, որ վանքից գահ բարձրացավ։ Շատ երջանիկ կյանք ունեցավ. երկիրը ապրում էր բախտավորության մեջ, և այդպես մնաց մինչև Թէոդորայի մահը (1056 թ.)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 381—398։

*ԹԷՈԴՈՐՈՍ, ար. < հուն. Θεόδωρος (> Theodorus, ֆրանս. Théodore) անունից, որ նշանակում է «աստվածանվեր» (Θεός «Աստված»+δῶρον «նվեր» բառերից)։ Ռուս. Феодор կամ Федор. Կա նաև սրա հակադիր ձևը՝ ար. Դորոթեոս և իգ. Դորոթեա։ Սովորական անուն էր հին հույների և հռովմայեցոց մեջ և հետո քրիստոնեության ժամանակ։ Հայտնի են օր. Թեոդորոս՝ նույն

*ողբերգակ բանաստեղծը, Թեոդորոս Բիւզանդացի՝ սոփեստոս, ժամանակակից Սոկրատի, Թեոդորոս փիլիսոփա Կիւրենացի՝ կոչեցեալն անաստուած, Թեոդորոս Գադարացի՝ հռետոր, ուսուցիչ Տիբերիոսի, Թեոդորոս բժիշկ՝ Դ դարի հեղինակ, Թեոդորոս Ա պապ Հռոմի 642—649, Թեոդորոս Բ պապ 898 թ., Թեոդորոս Ա Լասկարիս՝ հիմնադիր Նիկիոյ կայսրության 1204—1222, բացի սրանցից՝ նաև Թեոդորոս անունով մի խումբ վկաներ Յայսմաւուրքի մեջ, ինչպես՝ Թեոդորոս Աղեքսանդրացի, Թեոդորոս Աֆրիկեցի, Թեոդորոս զորավար, Թեոդորոս ստրատելատ ևն։ Կա նաև նույն անվան իգականը՝* Θεοδώρα *(Թեոդորա)։ Այս անունով հայտնի է Թեոդորա կայսրուհին, փառատենչ կին Յուստինիանոսի, եղավ կայսրության հոգին (527—548 թ)։ Մեր մեջ Թեոդորոս անունը գործածական է Ե դարից մինչև այժմ. կրճատ ձևերն են Թոդրոս, Թորոս (տես առանձին), Թեան Ղրբ., գրված նաև* Դեոդորոս *1668 թ. (Տաշեան, Ցուց. 887),* Թոտորե. *հնչվում է նաև* Թևադորոս, թևադրոս: *Իգականը գործածված չէ մեր մեջ (Հիւբշ. 336)։*

— 1. **Թեոդորոս** *տես* Աթենադորոս:

— 2. **Թեոդորոս** *քերթող, պատմագիր Ե կամ Զ դարու.— Արծր. Ա. գ. Զարբ. Հին դպր. 783։*

— 3. **Թեոդորոս** *նախարար հայ, նստում էր Նփրկերտ քաղաքում և իշխում էր Դ Հայոց՝ հունաց իշխանության տակ։ Երբ Պարսից Կաւատ թագավորը արշավեց նրա վրա՝ Ղարդ Մամիկոնեան սպարապետի հետ, Թեոդորոսը վախեցավ և մտնելով նրա հովանավորության տակ, հաստատվեց իր իշխանության մեջ (502 թ)։—Զամչ. Բ. 232։*

— 4. **Թեոդորոս** *եպիսկոպոս Կարնոյ, կոչված փիլիսոփայապետ. քաղկեդոնական հակառակորդ Մովսէս Բ. կաթուղիկոսի («574—604 թ»). ժողով գումարեց Կարինում, ուր Յովհանը ընտրվեց հակաթոռ կաթուղիկոս Յունահայոց։—Կղկնտ. Բ. խզ. Զամբռ 66։*

— 5. **Թեոդորոս** *Սիւնեցի, եղբօրորդի Կոմիտաս կաթուղիկոսի, աշակերտ Սիւնեաց Մաթուսաղա եպիսկոպոսի։ Երբ Եզր կաթուղիկոսը («630—641 թ») հրավիրեց Մաթուսաղային Կարնոյ ժողովին «633 թ», Մաթուսաղան հրաժարվեց և իր տեղ ուղարկեց Թեոդորոսին, որ ոչ միայն չհակառակվեց, այլ և ինքն էլ քաղկեդոնական դարձավ։—Օրբ. իէ.—բց.* Թեոդորոսե՝ *Օրբ. իէ։—Զարբ. Հին դպր. 797—8. Տաշեան, Ցուց. 114։—Ըստ Ազգապ.*

672 Թէոդորոս Քռթենաւորն է։ Այս երկուսի մասին ընդարձակ տես Սնդրակեան, Հայ. եկեղ. պատմ. 329—346։

— 6. Թեոդորոս Ռշտունի. սրա առաջարկությամբ Քրիստափոր Գ ընտրվեց կաթուղիկոս («628 թ»)։ Դաւիթ Սահառունու արտաքսումից հետո, դիմադրեց թշնամիներին և պաշտպանեց երկիրը քաջությամբ։ Արաբների առաջին արշավանքին («640 թ»), ընկավ նրանց ետևից, ազատելու համար Դվինի 35,000 գերիներին, բայց անհաջող։ Իր այս քաջության համար՝ կայսրը նրան Հայաստանի պատրիկ նշանակեց։ Թովմա հույն զորավարի խարդախությամբ կալանավորվեց և Պոլիս տարվեց. բայց արդարացավ և պատվով դարձավ Հայաստան։ Արաբների դեմ մի քանի հաղթություն տարավ։ Իվերջո տեսնելով հույների թուլամորթությունը, անցավ Արաբների կողմը և դաշնագիր կնքեց Մուավիէ զորավարի հետ՝ 652 թ. (ըստ Առաքելյան, Տեղեկ. Արմֆանի, 1941, № 1, էջ 61—64)։ Կանչվելով Դամասկոս, ամիրապետից նշանակվեց իշխան Հայոց, Վրաց, Աղուանից և Կովկասի։ Վերջին տարիները անցան հիվանդագին։ Դարձյալ գնաց Դամասկոս, ուր և մեռավ «658 թ»։ Կոչված է նաև Սահառունի։—Սեբ. լթ, խբ, խգ, խդ, խէ, ծ, Ղև. բ—դ. Յհ. կթ. ժթ. Մխ. այբիվ. 19. Մխ. անեց. գ, իէ. Ասող. Բ. բ, դ. Օրբ. իէ. Կիր. 32. Վրդ. լգ. Սամ. անեց. 80. Զուգ. 55.—Թեոդոս՝ Սուտ-Շապհ. 29, 30. Վրդ. խդ. (հրտր. Էմինի՝ Թէոդորոս). Նհպտք. 94. Սիմ. ապար. 117, 125, 128.—սեռ. Թեոդորոսի՝ Սեբ. լը, խ, խդ, Ղև. գ, դ, ը. Յհ. կթ. ժէ, ժթ. Մխ. անեց. իդ. Ասող. Բ. բ, դ. Օրբ. իէ. Կիր. 35. Վրդ. լե, լգ. Միխ. աս. իթ (=իը).—Թեովդորայ՝ Հայապ. 230.—գրծ. Թեոդորոսիւ՝ Սեբ. խդ.—Տես և Տաշեան, Ցուց. 114. Վրաց. աղբ. Ա. 46, 79 (Տոտրուս Օրուստունի)։—Արաբական տիրապետության առաջին շրջանի բնութագրության և հատկապես Թէոդորոս Ռշտունու քաղաքական գործունեության մասին մի գեղեցիկ մենագրություն ունի Բ. Առաքելյան, Արմֆանի Գիտական ժողովածու, Երևան 1941, էջ 65—106, ուր նա ցույց է տալիս Թէոդորոս Ռշտունուն իբրև 7-րդ դարի կեսերի «ամենատաղանդավոր և փայլուն քաղաքական ու ռազմական գործիչը», որ դեն գցելով թե բյուզանդական և թե արաբական կողմնորոշումը, հանուն հայ ժողովրդի անկախության, նախաձեռնող հանդիսացավ նրա պատմական բախտի պաշտպանության, և միջազգային բարդ պայմաններում, պայքարի գլուխ կանգնելով՝ անկաշառ կերպով պաշտպանեց նրա շահերը։ Նա կարողացավ ազատել Հայաստանը

Բուզանդիայի նվաճողական ճանկերից և նրա անվանական իշխանության տակ՝ իրական տերն ու կառավարիչը դարձավ երկրի։ Եվ երբ անկախության հույսերը անհաջող անցան, չարիքների փոքրագույնը ընտրելով՝ կնքեց Հայաստանի համար ձեռնտու հաշտության պայմանագիր Արաբների հետ։ Թէոդորոս Ռըշտունու անունով մի գեղեցիկ պատմական վեպ ունի Ծերենցը (տպ. Տփխիս 1881), որի ոգին նույն է ինչ որ Բ. Առաքելեանի վերոհիշյալ մենագրությունը։

— 7. **Թէոդորոս** Վահևունի, մին այն երեք իշխաններից, որոնք Արաբների առաջին արշավանքի գույժը հասցրին Դուին («640 թ»)։ Երբ Կոստանդին կայսրը Կարին եկավ, Թէոդորոսը բռնեց Արփայս բերդը և անցավ Արաբների կողմը («652 թ»)։— Սեբ. խ, խգ։

— 8. **Թէոդորոս** իշխան, Կոստանս կայսեր ժամանակ (641—668 թ.) եղավ հունաց զորավար և իր բարեխոսությամբ ազատեց աքսորական Վարազտիրոցին։— Սեբ. խբ։— Մանանդեան, Մանր հետազոտ. էջ 58—61 գտնում է որ այս անձը ոմանք շփոթում են Թէոդորոս Ռշտունու հետ և կարիք է զգում զանազանելու նրանց։

— 9. **Թէոդորոս** Քռթենավոր, ճգնավոր և վանահայր Արագածոտն գավառի Ս. Աստուածածին վանքի, ուսուցիչ Յովհան Օձնեցու. մատենագիր Է դարու. ունի խրթնաբան ճառեր (տպ. Վենետ. 1833), որոնց մեջ նշանավոր է «Ընդդէմ Մայրագոմեցւոյ» ճառը։ Վախճանվել է մոտ 680 թ։— Յհ. Իմաստ. էջ 2. Ցայմ. ապր. 17.—սեռ. **Թէոդորոսի**՝ Թէոդ. քռթ. 147, 159, 172.— Զարբ. Հին դպր. 469—471, 479, Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին 49, Սեդրակեան՝ Հայ. եկեղ. պտկր. էջ 329—346 (մերժում է Քռթենավորի գոյությունը, որ համարում է կաթոլիկական կեղծիք)։

— 10. **Թէոդորոս** եպիսկոպոս Յունահայոց. մասնակցեց Պոլսի 680 թվի եկեղեցական ժողովին.— Զամչ. Բ. 369։

— 11. **Թէոդորոս**. այս անունն է տալիս մի անգամ Կղկնտ. Բ. իը՝ իբրև տիտղոս Աղուանից Ջուանշիր իշխանին, որ սպանվեց շուրջ 680 թ։

— 12. **Թէոդորոս**, կոչված Դագոն. աշակերտ Դավիթ Բագրևանդացու. գրել է Հերքում երկու բնության դավանողների դեմ, որ սկսում է այսպես. «Անստացական բանն Աստուած է

մարդանալն...». պարունակում է 8 կարճ գլուխ (Է դար)։—Bodleian 160։

— 13. Թէոդորոս Վստամ Ցարեմանեան, իշխան աղուան (Է դար).—հրատ. Սամ. անեց. 286։—Նծւյն է՝

— 14. Թէոդորոս ի Ցանաստոյեան (ըստ Էմինի) կամ Թէոդորոս յԱնաստոյեան (ըստ Շահն.) իշխան աղուան՝ (706 թ)։—Կղկնտ. Գ. ը։

— 15. Թէոդորոս եպիսկոպոս Արշամունեաց, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 16. Թէոդորոս եպիսկոպոս Բզնունեաց. անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Գիրք թղ. ծէ (Կնիք հաւ. յոչ. էջ 103), Կանոն. 149։

— 17. Թէոդորոս կաթուղիկոս Աղուանից (781—785). էր եպիսկոպոս Գարդմանի. հաջորդեց Սողոմոն Ա-ին.—Կղկնտ. Գ. իդ. Մխ. այրիվ. 24.—Թորոս՝ Կիր. ը, Հայապ. 384։

— 18. Թէոդորոս, աշակերտ Մովսէս քերթողի, որի համար գրեց Պիտոյից գիրքը.—Խոր. մատ. 580.—կոչ. Թէոդորէ՛ անդ.—սեռ. Թէոդորի՝ անդ 581.— Թէոդոսի՝ Կիր. 16։

— 19. Թէոդորոս (գրված Թոդորոս) Վարազի, ժամանակցեց արաբ զորավար Մուսէի դեմ պատերազմին, «851 թ»։—Արծր Բ. զ։

— 20. Թէոդորոս, վանական Մաքենեաց վանքում, ուսուցիչ Մաշտոց (ծն. շուրջ 835 թ) կաթուղիկոսի.—Ստեփ. սեան. 44. Զարբ. Հին դպր. 506։

— 21. Թէոդորոս եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Եղիային (Թ դար).—Օրբ. լդ, հա։

— 22. Թէոդորոս քահանա, վանահայր Երիցու վանից (Թ դար).—Օրբ. խե.—սեռ. Թէոդորոսի՝ Օրբ. խե.—գրծ. Թէոդորոսիւ՝ Օրբ. խե։

— 23. Թէոդորոս վաներեց Հոգեաց վանից (Թ դար).—Արծր. Գ. ժէ,

— 24. Թէոդորոս, հայր Սիմեաց ազատ Ջևանշէրի, որ հիշված է Տաթևի 844 թվականի կալվածագրում.—սեռ. Թէոդորոսի՝ Օրբ. լը։

— 25. Թէոդորոս սարկավագ, վերակացու շինության. Բիւրականում ենթարկվեց Նսըր ոստիկանի պաշարման և նահատակվեց «926 թ».—Յհ. կթ. կզ։

— 26. Թէոդորոս Ա Ռշտունի, կաթուղիկոս Հայոց «930—941 թ». հաջորդեց Ստեփանոսին և նստավ Աղթամարում. իր

*օրով շինվեցին բազմաթիվ վանքեր Հայաստանում։—Սամ. անեց. 99. Բհնպ. 272. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Ասող. Գ. գ. Օրբ. ծա, հա. Կիր. 48. Վրդ. խէ (հրատ. Էմինի՝* Թէոդոս). *Մխ. աս. իթ (=իը).—սեռ.* Թէոդորոսի՝ *Ասող. Գ. է. Անան. ապստ. 142 ա. Օրբ. ծա.—բցռ.* ի Թէոդորոսէ՝ *Օրբ. ծգ.*—Թէորոս! *Նոտարք, էջ 85?*

— 27. Թէոդոր *ոմն, որի համար հոգեպաշտոն է կարգել Իգնատիոս եպիսկոպոս եկեղեցւոյն Ձանկլի գյուղի (1030 թ).— Այրարատ 48։*

— 28. Թէոդոր *Բագրատունի, հունաց կայսրության պաշտոնյա, ստացավ պրոտոսպաթարիոս տիտղոսը Լևոն Զ (886—912) և Կոստանդին Է (913—959) կայսրների ժամանակ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ: 464։*

— 29. Թէոդոր *Խորձեանացի, որի հունարեն կնիքը գտնվել է Ժ—ԺԱ դարից.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 577։*

— 30. Թէոդորոս, *եղբորորդի Սամուէլ եպիսկոպոսի Եկեղեաց (ԺԱ դար).—Լաստ. իգ։*

— 31. Թոդորոս, *որի անունով մի խաչքար կա կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքի գերեզմանատանում, 1057 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 17։*

— 32. Թէոդորոս *Ալախոսիկ. փակակալն էր Ջահան գավառի Հոնի քաղաքի եկեղեցու. եպիսկոպոս դառան Սարգիս կաթողիկոսի, նշանավոր երաժիշտ էր. Փիլարտոսի հրամանով կաթողիկոս նստեց Հոնիում, իբրև հաջորդ Սարգսի («1077 թ»). Բարսեղ կաթողիկոսը գցեց նրան աթոռից «1090 թ». գրել է Մեկնութիւն չորից Աւետարանչաց (Զմչ. Բ. 1001, Զարբ. Հին դպր. 604). վախճանվել է 1095 թ»։—Վրդ. կ, կբ. Ուռհ. 228—9, 241, 252.*—Թորոս՝ *Ուռհ. 215. Գր. եր. 374. Սամ. անեց. 118.—սեռ.* Թէոդորոսի՝ *Ուռհ. 240։*

— 33. Թէոդորոս, *որդի Քրիստափոր քարագործի. գրիչ և նկարիչ. Քեսուն գավառի Մախթլէ գյուղից. ապրում էր Եգիպտոսում, թողել է մի արձանագրություն Սոհակ քաղաքի մոտ գտնված ղպտիական Դեյր-էլ-Աբյադ վանքում, 1074—1120 թվերից.—Տաթև 1927, էջ 191։*

— 34. Թէոդորոս, *խնդրեց Մովսէս վարդապետ Երզնկացուց՝ խմբագրել Խոսրով Անձևացու ժամակարգութեան Մեկնութիւնը՝ 1293 թ.—Տաշեան, Ցուց. 135—137.—կոչ.* Թէոդորէ՝ *Խոսր. էջ ե և 91։*

— 35. Թէոդորոս արեղա Սեբաստացի, որդի Գոհարինէ նահատակի, Սեբաստիայի Ալիբասան չարաբարո ամիրայի ժամանակ, որ Դանիշմանների ցեղից էր և մի տարի առաջ նահատակել էր նրա հորը և ազգականներին։ Այլազգիները չարախոսեցին Ալիբասանի մոտ, թե Թէոդորոսը անարգում է միշտ նրան և մահմեդական կրոնը։ Ամիրան կանչեց, պարգևներ խոստացավ, բանտարկեց, չարչարեց, որ ուրանա իր կրոնը, և երբ ամեն ինչ զուր անցավ, սրով կտրատելով սպանեցին «1156 Թ»։—Յայսմ. յունիս 22.—սեռ. Թէոդորոսի՝ անդ.—Նոր վկ. 3—11, ուր կոչված է նաև Թորոս՝ էջ 4, 9։

— 36. Թէոդորոս եպիսկոպոս Աշմուշատի, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 Թ».—Շնորհ. պատճ. 199. Տաշեան, Ցուց. 350։

— 37. Թէոդորոս վարժապետ Տարօնում, համախոհ Ներսէս Լամբրոնացու. հիշված 1204 Թ.—Լմբ. 229, Հայապ. 448։

— 38. Թէոդորոս Կեսարացի, նահատակ. աղքատ արհեստավոր էր. պարտքի պատճառով նեղվելով իր պահանջատերից, ուրացավ հավատքը. բայց զղջալով՝ գնաց սահմանամերձ Խերշահր (=հյ. Շնորհավոր) քաղաքը, ուր ապրում էր իբրև ծածուկ քրիստոնյա։ Բռնվելով տարվեց Կեսարիա, Սուլեյման շահ Սուլթան Ռուգնադինի մոտ, որ Խլիճ-Ասլանի որդին էր։ Սուլթանը սպառնաց, չարչարեց, մեծամեծ պարգևներ խոստացավ, մոլլաներին և դատավորին հանձնելով ջանացին համոզել, բայց այդ բոլորը զուր անցավ։ «Դիւրին է շարժել կամ փոփոխել լերինս բարձրացեալս, որ կայ հանդէպ մեր, քան թէ յիմոց մտացս փոփոխել և կամ ի բաց կալ ի հաւատոցս», ասում էր անսասան նահատակը։ Կախաղանի մոտ տարին, գլուխը կացինով ջարդեցին և քարկոծելով սպանեցին «1204 Թ»։—Վրք. և վկ. Ա. 550—568.—սեռ. Թէոդորոսի՝ անդ.—կոչ. Թէոդորէ՝ Վրք. և վկ. Ա. 559, 564։—Նոր վկ. 73—93։

— 39. Թէոդորոս, ի հիշատակ իր կնոջ՝ գրել տվեց մի Աւետարան՝ Թորոս քահանային և Ստեփաննոսին Գոյներիցանց (ԺԳ դար).—Ջեռ. Թաւր. 27 (գրված է Թաւտաւրէ, որ է արդի հուն. Թոդորի):

— 40. Թէոդորոս, գրիչ Երուսաղէմի № 1546 կրկնագիր Աւետարանի (ԺԳ դար).—տես ՀԱ 1925, 464։

— 41. Թէոդորոս սարկավագ Անարզաբայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 Թ.—Զարբ. Թրգմ. 265, REA 2, 283, Գաթըրճեան՝ Պտրգմտ. 84։

— 42. Թէոդորոս աբեղա՝ Սեբաստիոյ Ս. Նշան վանքի. հավատքը չուրանալով նահատակվեց Ստեփաննոս եպիսկոպոսի հետ, Սեբաստիոյ սուլթան Բուրհանադդինի ձեռքով՝ «1387 թ».— Թէոդորոս կամ Թորոս՝ Յայսմ. յունիս 23, Նոր վկ. 139։

— 43. Թէոդորոս Բ կաթողիկոս Սսոյ «1382—1392 թ». գնաց Եգիպտոս և սուլթանից ընդունվեց մեծ պատվով։ Սակ քրիստոնյաների նենգությամբ՝ մելիք Օմարի ձեռքով չարաչար սպանվեց՝ 16 տանուտերների հետ միասին «1392 թ», որի վրա Եգիպտոսի սուլթանն էլ չարաչար սպանեց Օմարին.—Մեծոփ. 71, Սամ. անեց. շար. 170, 172, Առաք. պատ. 336. Ձեռ. Ներս. 31 բ (գրված Թորոս), Ալիշան՝ Կամենից 9—13, 217—220, ուր գրված է իր կոնդակը՝ ուղղված Լեհահայերին։—Զարմանալի է, որ 1394 թվին, Բաբերդի սահմանում գրված մի ձեռագրում, դեռ կենդանի է հիշվում սույն Թէոդորոսը (Նոտարք 6)։

— 44. Թէոդորոս կաթողիկոս Հայոց, 1436 թ։ Այսպես է հիշատակվում Պոլսի Ղալաթիա թաղի Ս. Լուսավորիչ եկեղեցու արձանագրության մեջ, որ գրված է 1733 թվին (տես Նոտարք 106, Կիւլէսէրեան՝ ՀԱ 1903, 343)։ Բայց այս թվին Թէոդորոս կաթողիկոս չկա (տես վերը Եսայի №29)։

— 45. Թէոդորոս, թարգմանիչ Ոսկեբերանի գործերի. տեղն ու թվականը անհայտ.—Ալիշան. Յուշիկք Բ. 99։

— 46. Թէոդորոս վանական Սիոնի-(այս արձանագրությունը գտնվում է Սիսիանի Ղարաքիլիսայի եկեղեցու կաթողիկէում գտնված երեք անդրիններից մեկի շուրջը, առանց թվականի. տես Ազգագր. հանդ. Գ. 188)։

— 47. Թէոդորոս երգիչ. ունի տաղեր. տես Բազմ. 1862, էջ 87, 88 և 1875, էջ 351 են.—Տաշեան. Ցուց. 1091 (թվականն անհայտ է)։

— 48. Թէոդորոս Ա. Խորենացի, պատրիարք Երուսաղեմի, «1752—1761 թ». կոչվում է նաև Կորդուացի, Մշեցի կամ Ճգնազգեաց. հաջորդեց Յակոբ Նալեան պատրիարքին. գրված է Թորոս՝ Տաշեան, Ցուց. 717։ Զարմանալի է, որ 1710 թվին Վան գրված մի Ավետարանում (Ձեռ. Վասպ. 1031) հիշատակություն կա այս պատրիարքի մասին։

— 49. Թէոդորոս, կաթողիկոս Աղթամարի «1792—1794 թ». հաջորդ Մարկոսի և նախորդ Միքայէլի. ունի բանաստեղծական գործեր.—Ակինեան, Գաւազանագիրք 166 (հաւաքարանը չգիտէ)։ Ազգապ. 3175 Աղթամարի աթոռի վրա է բարձրացնում

Թէոդորոսին 1792 թ., բայց իբրև հաջորդ Յովհաննէս Սպարկերտցու։

— 50. Թէոդորոս (կամ Թորոս) Աջպահեանց, կաթողիկոս Սսոյ՝ 1784—1796. հաջորդեց Եփրեմի. գտնվում էր Պոլսում, երբ լսվեց Եփրեմի մահը. նույն տեղում օծվեց կաթողիկոս և շտապով ուղարկվեց աթոռը. սպանվեց Սսի բռնակալից։—Ազգապ. 3173—75 (դնում է մահը 1791 թ. բայց իր եղբորորդին և հաջորդը՝ Կիրակոս, անձամբ հիշատակագրում է թէ Թորոսը «փոխեցաւ» (և ոչ թէ սպանվեց) 1796 սեպտ. 24, իսկ ինքը գահակալեց 1797 փետր. 14 (տես Ձեռ. Հալէպի, Բ. 31 բ)։ Հմմտ. նաև Ձեռ. Թաւր. 127—9 իր խնդրանոք գրված «Ցոփեանու մեկնութեան» ժամին՝ Եփրեմ վրդ. Սսեցու հեղինակութեամբ։

— 51. Թէոդորոս Բ Վանեցի, պատրիարք Երուսաղէմի, «1800—1818 թ». հաջորդեց Պետրոս Եւդոկիացուն։ Սրա օրով հայոց վանքը այրվելով՝ Թէոդորոս պատրիարքը վերաշինեց (1812 թ) և Սուլթանական հրամանով՝ Հունաց տնձգություններին վերջ տվավ։

*ԹԷՈԿՏԻՍՏԱ, իգ. < հուն. Θεόκτιστα անունից, որ նշանակում է «աստուածակերտ» (այն է Աստուծուց ստեղծված)։ Այս անունը մեր մեջ չէ գործածված. գիտենք միայն՝

— 1. Թէոկտիստա, քույր Մօրիկ հայկազն կայսեր Հունաց († 602). ամուսնացավ Գրիգոր իշխանի հետ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 304։

— 2. Թէոկտիստէ, դուստր Մօրիկ հայկազն կայսեր. իր մոր՝ Կոստանդինայի և իր մյուս երկու քույրերի՝ Անաստասիայի և Կլէոպատրայի հետ վանքի մեջ բանտարկվեց Փոկաս կայսեր հրամանով՝ Մօրիկի սպանվելուց հետո (602 թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 305։

— 3. Թէոկտիստա (որ և Ֆլորինա), կին Մարինոսի և մայր Հունաց Թէոդորա Ա Մամիկոնեան կայսրուհու՝ 830—867 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 358, 374։

*ԹԷՈՎՆԱՍ, ար. < հուն. Θέων անունից (լտ. Theon). այս անունով հայտնի են մի փիլիսոփա, մի նկարիչ ևն։ Թէոնի գործը թարգմանված հայերենի՝ գտնվեց և հրատարակվեց «Թէոնեայ յաղագս ճարտասանական կրթութեանց» վերնագրով, Երևան 1938։ (Թեև կա θέων «վազող» (θέω «վազել» արմատից), բայց այս անվան հետ կապ չունի)։

— Թէովնաս, մին 7 խոտաճարակներից, որոնք նահատակ-

վեցին Պարսից ձեռքով՝ Գայլ Վահանի պատերազմի ժամանակ ընդդեմ Միհրան զորավարի, «604 թ»։—Մամիկ. բ. Յայսմ. սեպտ. 30։

ԹԷՈՏԻՆԱ, ար. անշուշտ օտար ծագումով։ Այս անունով գիտենք միայն՝

— Թէոտինա, հազարապետ Սանատրուկ թագավորի (38—68 թ). հավատաց Բարթուղիմէոս առաքյալի քարոզությանը և նահատակվեց։—Հայապ. 53։

Թէոփանիոյ տես Թէոփանիո:

*ԹԷՈՓԻԼԱԿՏՈՍ, ար. < հուն Θεοφύλακτος «աստուածապահ, Աստուծուց պահպանված» անունից։ Հայոց մեջ ավանդված չէ, բայց ունինք՝

— 1. Թէոփիլակտոս, մի հայ զինվոր, որ ծառայում էր հունական բանակում։—Վասիլ Արշակունի կայսրը 870 թվին Արևելք էր գնացել՝ Արաբների դեմ կռվելու։ Պատերազմի խառնուրդի ժամանակ, մոլեկան եռանդից մղված, բազմության մեջ նետվեց և սկսեց գետինը ողողել արաբացի արյունով։ Հանկարծ պաշարվեց թշնամիներից. մահն անխուսափելի էր։ Այդ հուսահատ րոպեին, անծանոթ մի ձիավոր, սուրը շողշողացնելով և ահ սփռելով իր շուրջը, ճեղքեց թշնամիներին և կայսեր բռնելով՝ դուրս հանեց վտանգից։ Հաղթության գիշերը չլուսացած, Վասիլ իր վրանը կանչել հրամայեց դիցազնին։ Զինվորներ գունդագունդ կայսեր ներկայացան, ամեն մեկը երդվելով թե այդ քաջը ինքն է։ Վասիլ նրանցից ոչ մեկին չէր ճանաչում։ Ամենից հետո ներս մտավ մեկը. Վասիլ իսկույն ճանաչեց իր ազատարարին. նույն կրակոտ աչերն էին, նույն վիթխարի հասակը և նույն խրոխտ դեմքը։ Վասիլ գրկեց նրան և հարցրեց. «Ո՞վ ես դու»։—«Մի հայ գեղացի, պատասխանեց նա, անունս է Թէոփիլակտոս Ավաստակտոս, Լեկաբեննեանց ցեղից»։—«Խնդրիր ինձնից, ի՛նչ վարձք ես ուզում»։—«Մի արտ, պատասխանեց նա, ընտանիքս կերակրելու համար»։ Վասիլ գեղացուն պատրիկ անվանեց, նրա Ռոմանոս որդու հետ Պոլիս տարավ։ Այս Ռոմանոսը հետագային կայսր դարձավ, իսկ նրա որդին էլ՝ պատրիարք Կոստանդնուպոլսի (տես հաջորդը)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 216, Բ. 34—35։

— 2. Թէոփիլակտոս, որդի Ռոմանոս Լեկաբեննոս կայսեր և Թեոն նախորդի։ Ռոմանոսը կայսերական գահը ձեռք ձգելուց հետո, եկեղեցական իշխանությունն էլ ձեռք վերցնելու համար

իր որդի Թէոփիլակտոսին կղերիկոս անել տվեց և ապա պատրիարք, երբ դեռ հազիվ 16 տարեկան էր (940 թ)։ Զարմանալի մարդ եղավ սա։ Փոխանակ եկեղեցու վրա մտածելու, իր ախոռով էր զբաղվում։ 2000 ձի ուներ, որոնց պալատական իշխանուհիների նման էր պահում։ Գարու տեղ տալիս էին նրանց ազնիվ կերակուրներ՝ անուշահոտ գինիներով եփված։ Բալսամոն, կինամոն, ամեն տեսակ համեմներ ուղարկվում էին պատրիարքարան, որտեղից տարվում էին ձիերին։ Մի ավագ հինգշաբթի օր, երբ պատրիարքը ձայնավոր պատարագ էր անում, ավետեցին իրեն թե մի ձի քուռակ է ծնել։ Իսկույն եկեղեցական զգեստները հանեց, ախոռ վազեց, քուռակին տեսավ, ուրախությամբ վերադարձավ և պատարագը շարունակեց։ Լինելով շատ զվարթ մարդ, ձանձրանում էր եկեղեցական արարողություններից։ Հավատացյալներին զվարճացնելու համար, հրամայեց պարելով ժամերգություն կատարել։ Այս սովորությունը երկու դար պահպանվեց հավատարմությամբ։ Մի քանի շարական երգելուց հետո, սկսվում էր հարսանեկան մի երգ. ապա քահանա և աշխարհական սկսում էին պարել։ Թէոփիլակտոսի այս նոր օրենքը զվարթության դարագլուխ բացավ հույն եկեղեցու պատմության մեջ։ Պատրիարքը եղերական վախճան ունեցավ։ Մի օր ծովափում ձիախաղի ժամանակ, ձին սահեց, պատրիարքը զարնվեց քարերին, հորդահոս արյուն վազեց։ Անկողին փոխադրեցին, երկու տարի պառկեց և ջրգողությամբ մեռավ, 956 թ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 50—53, 93, Զամչ. Բ. 833։

*ԹԷՈՓԻԼՈՍ, ար. < հուն. Θεόφιλος անունից (=լտ. Theophilus, ֆրանս. Théophile), որ բուն նշանակում է «աստվածասէր» (հուն. Θεός «Աստված»+φιλέω «սիրել» բառերից)։ Սրանից թարգմանաբար կազմված է հյ. Աստուածասէր անունը, ինչպես կա և գերմ. Gottlieb.—Այս անունով հայտնի են Ս. Թէոփիլոս Անտիոքացի († 190 թ), Թէոփիլոս իրավաբան Յուստինիանոս կայսեր, Թէոփիլոս պատրիարք Աղեքսանդրացի, Թէոփիլոս աշակերտ Ոսկեբերանի և Թէոփիլոս անունով մի խումբ նահատակներ Յայսմաւուրքում։ Բայց այս բոլորից կարևոր է հիշել Թեոփիլոս աշակերտ առաքելոց, հիշված Ղուկ. Ա. 3 և Գծ. Ա 1։ (Այս երկու գրքերը գրվել են նույն աշակերտի խնդրանոք)։ Հայերենում տառադարձված է Թեոփիլոս, բայց համաձայն հունարենի՝ կոչ. Թեոփիլէ։ Այսպես՝ վերի երկու հատվածներում (Կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ.—Զբանն առաջին զոր արարի վասն ամենայնի,

ո Թէոփիլէ)։ Այս երկու հատվածների պատճառով էլ՝ ավելի ուշ, կոչական ձևը շփոթվելով ուղղականի հետ, Թեոփիլե դարձել է ուղղական (տես տակը), ինչպես գործածվում էր նաև Պոլսում, անցյալ դարում։

— 1. Թեոփիլոս եպիսկոպոս Արշարունեաց և Կամսարական տան, հաջորդեց Յոսխին, նստավ 610—646 թ. հիշված է Ալամանի արձանագրության մեջ (637 թ.) և Մրենի անթվական արձանագրության մեջ.—Տաշեան, Ցուց. 656, Չամչ. Բ. 374, Այրարատ 56, 114 (Արձ. գրված Թէոփիղոս), Շիրակ 125 (Արձ. գրված Թեոփիղոս), Շողակաթ 174 (Թէովփիղոսի), Կոգեան՝ Կամսարկանները 135, 140։ Սրա հետ նույն պետք է համարել՝

— 2. Թեոփիլոս եպիսկոպոս Աշմունեաց, անդամ Դունայ ժողովի (645 թ).—Տաշեան, Ցուց. 654, Կանոն. 130, Չամչ. Բ. 345։

— 3. Թեոփիլոս Կուրկուաս, հայազգի զորավար հունաց, նվաճեց Պոնտոսը և եղավ Խաղտեաց կառավարիչ։ Եղբայրն է Յովհաննէս Կուրկուասի (Գուրգէն)։ Այս երկու զորավարներն էլ 924 թվին գտնվում էին Փոքր Հայքում։ Թէոփիլոսի թոռն է Յովհաննէս Չմշկիկ՝ հունաց մեծափառ կայսրը։—Ազգապ. 1074, Չամչ. Բ. 825, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 127, 130։

— 4. Թեոփիլե որդն Շպղթանցի, 1214 թ.—Տաշեան, Ցուց. 705։

*ԹԷՈՓԻՍՏԷ, իգ. ծագումը տես Թէոփիստոս, որի իգականն է։ Հնից չէ ավանդված. անցյալ դարում գործածական էր Պոլսում, բայց շատ սակավ։

*ԹԷՈՓԻՍՏՈՍ, ար. < հուն. Θεόπιστος անունից, որ նշանակում է «աստուածահաւատ» (Θεός «Աստուած»+πιστεύω «հավատալ» բառերից)։ Սրա իգականն է Θεοπίστη, որից հյ. Թեոփիստե։ Այս երկուսը նոր տառադարձությամբ են (π > պ-ի փոխարէն փ). հնագույն տառադարձությունն է Թէոպիստոս, Թէոպիստէ, Թէոպիստիա, ինչպես ունինք Յայսմաւուրքում, իբրև հույն նահատակի և նահատակուհու անուն (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ջ. 251)։ Այս անվան իգական ձևը թեև կար Պոլսում, բայց արականը անգործածական էր։ Հնից ունինք՝

— Թեոփիստոս, հայ-հոռոմ փիլիսոփա. գիտեր հայերեն և հունարեն լեզուները։ Բալուի հճույն թե հայ-հոռոմ իշխանի դրդումով գրեց մի վիճաբանական գրվածք Հայոց կրոնի դեմ և ուղարկեց Սասնոյ Զորտուանէլ իշխանին (1101)։ Պօղոս Տարոնացին գրեց դրա ընդարձակ պատասխանը։—Ուղ. Թեոփիստոս՝ Տարօն. յիշ.—կոչ. Թեոփիստե՝ Տարօն. Ա § 2—4, 15, 46, 75, 95,

97. Բ. § 5, 9, 12, 17, 22, 25.—սեռ. Թեոփիստեայ՝ Տարօն. Ա § 1.—բցռ. ի Թեոփիստեէ՝ Տարօն. Բ. § 25։—Ըստ Ջարբ. Հին դպր. 605 և Թրգմ. 472, 612 նույն է Միջագետքի Թեոպիստե հույն հռետորի հետ, որի մասին տես Կիրակոս վարդապետ գիտնական։

*ԹԷՈՖԱՆՕ, իգ. < հուն. Θεοφάνη (> լտ. Theophane) անունից, որի արականն էլ է Θεοφάνης (> լտ. Theophanes, ֆրանս. Théophane). բուն նշանակում է «աստուածայայտնութիւն» (Θεός «Աստված»+φαίνω «երևալ» բառերից)։ Նախաքրիստոնեական շրջանում հուն. Θεοφάνια «աստուածայայտնութիւն» էր կոչվում աստվածների արձանների ցուցադրության տոնը Դելփիում։ Քրիստոնեության ժամանակ եղավ «Քրիստոսի ծննդեան տոնը»։ Այս անունով հայտնի են Թէոփանէ՝ դուստր Բիսալտեսի՝ Նեպտոնի ձեռքով դարձավ մաքի, Թէոփանէս (ար.) Միտիլինեցի, գրել է Պոմպէոսի կենսագրությունը։ Արականը մեր մեջ չէ գործածված. իգականը ունինք հետևյալ ձևերով.

— 1. Թեոփանօ, դուստր հունաց Կոստանդին Պերփիւռուժէն հայազգի կայսեր, որ ամուսնացել էր նույնպես հայազգի Ռոմանոս Լեկաբենոսի Հեղինէ աղջկա հետ՝ 919 թվին։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 472։

— 2. Թեոփանօ (կամ Ստեփանէ) դուստր Ռոմանոս Բ հայազգի կայսեր, որ ամուսնացել էր մի գինեպանի Թէոֆանօ անուն աղջկա հետ (956 թ)։ Մի տարի հետո ծնվեց Վասիլ Բ որդին (957 թ)։ Այս Վասիլի երկու քույրերն են Թէոֆանօ և Աննա։ Աննան ամուսնացավ Ռուսաց Վլադիմիր Ա կայսեր հետ (տես Աննա № 6), իսկ Թէոֆանօն՝ Գերմանացոց Օթոն Բ կայսեր (973—983) հետ, որ իբրև ժառանգություն պահանջում էր Վասիլից Իտալիան։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 275—6, 492։

— 3. Թևանու տես առանձին։

— 4. Թեփանօ, կին Թորոս քահանայի՝ եղբոր Կոստանդին քահանա Հռիփսիմեցու, որ Կիլիկիայում գրեց մի Ավետարան, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 656։

— 5. Թեփանօ, դուստր Օշին մարաջախտի՝ որդւոյ Կոստանդին Լամբրոնացւոյ. հիշված է 1274 թվին ի Սիս.—ՀԱ 1898, 246 և 248։

— 6. Թեոփանօ, կին Սմբատ Գունդստապլ († 1276 թ) սպարապետի Հայոց.—սեռ. Թեփանօյի՝ Անսիզք 93, Սիսուան 72։

— 7. Թևանի կամ Թևանօ տես Կեռան։

— 8. Թիփանիա *Թագուհի Կիպրոսի, հիշված Կոստանդին պայլի ընտանիքի հետ՝ 1286 թ.—Ձեռ. Վասպ. 110։*

— 9. Թեֆանոյ, *դուստր Լևոն Գ-ի և քույր Հեթում Բ թագավորի. ծնվել է 1278 թ. իբրև երկվորյակ քույր Ռիթայի (Ձեռ. օչ. 100 ա)։ Հունաց կայսեր դիմումի վրա՝ գնաց Պոլիս և նշանվեց սեբաստոկրատոր Յովհաննէս Կոմնենոսի որդի՝ Դուկասի հետ։ Այս առթիվ Թէֆանոյի անունը փոխեցին և դրին Թէոդորա։ Երբ Թէոդորան ճանապարհ ընկավ գնալու համար իր փեսացուի մոտ, ճանապարհին հիվանդացավ, մեռավ ու թաղվեց Թեսալոնիկէում, 1296 թ։—Գառմ. կիլ. 212. Մին. համդ. 47. Զամչ. Գ. 295. Զարբ. Նոր մատ. 240. Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 401—3։*

— 10. Թեֆանու, *հոգևոր մայր Կոստանդին քահանայի, որ Մլիճի վանքում գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1307 թ.—*Manus. brit. mus. *242 բ. Սիսուան 74։*

— 11. Թեֆանօ, *մորաքույր Վասիլ սարկավագի. սրախողխող եղավ արաբ ավազակներից, Կիլիկիա 1330 թ.—Սիսուան, էջ 5 բ։*

— 12. Թեֆանու, *դուստր Գրիգոր քահանայի և քույր Սարգիս Պիծակ նշանավոր նկարչի. հիշված է 1332 թվին, իբրև արդեն հանգուցյալ։—Շողակաթ 212։*

— 13. Թէփանէ, *կին Յովսէփի և զոքանչ Սարգիս քահանայի, որ Սիսում գրեց մի Աւետարան, Անդրէաս քահանայի համար, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։*

— 14. Թիփանէ *տիկին, դուստր պարոն Ասպետի, իր եղբոր Վահրամի հետ գնեց մի Աւետարան, որ նվիրեցին Կիպրոսի եկեղեցուն, 1468 թ.—Ձեռ. Միւնխ. 8 բ։*

*ԹԹԻԿ, ար. մի անգամ հիշված է 1622 թ. (Դրնդ. 614). արդյոք հյ.* թութ *բառի գգվական ձևն է, թե* Թէոդիկ *անվան սղումը։*

† *ԹԻԹԵՂՆԻԿ. իգ. < հյ.* թիթեղն *բառի փաղաքշական* թիթեղնիկ *ձևից, որ միջին հայերենում և զանազան բարբառներում նշանակում է «թիթեռնիկ» (տես Արմ. Բառ. հտ. Բ, էջ 1226)։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԱ դարում. այն է՝*

— Թիթեղնիկ *(սեռ.* Թիթեղնիկայ*), կին Ոհանի, որ իրենց երկուսի հիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ Արցախի Խաչեն գավառի Դահրու գյուղում, 1071 թ. (Բարխուտ. Արցախ 156)։*

*ԹԻՄԱ, իգ. ծագումը ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։*

— Թիմա, կին Մովսէս քահանայի, որ ստացավ մի Յայսմաւուրք, 1439 թ.—Հյց. զԹիմայն՝ Տաշեան, Ցուց. 49։

ԹԻՄԵՐ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում. այն է՝

— Թիմեր, հայր Ամենաւագ Դերջանցու, որ նահատակվեց «1335 Թ»։—Նոր վկ. 129 > Ազգատ. 1860։

Թիմուր տես Թամուր։

*ԹԻՆԱԹԻՆ, իգ. < վրաց. თინათინი Թինաթինի անունից, որ բուն նշանակում է «լույսի ցոլացում» և համազոր է մեր Շողակաթ անվան։ Այս անունով է կոչվում Շոթա Ռուսթավելու Վագրենավորի հերոսուհին, որ ներկայացնում է Վրաց Թամար թագուհին։ Այս անունը հիշված կա մեր մեջ 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 119) և 1775 թ. (Ձեռ. Թաւր. 18 բ՝ երկու տարբեր անձինք)։

*ԹԻՐՔԻՇ, ար. < պրս. ترکش tīrkeš կամ terkeš «կապարճ» բառից։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարից։

— Թիրքիշ, որդի Մխիթարի. իր եղբոր Խութլուբէկի հետ միասին՝ Յակոբ աբեղային գրել տվեց մի Աւետարան, Կարսի Գողխս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463—4)։

*ԹԻՒԲԱՆՈՒՇԱՀ, իգ. < թթր. توبان tūban «խոնարհ, նվաստ» +պրս. شاه šāh բառերից (հմմտ. Будагов 1, 383)։ կամ թերևս ավելի բանաստեղծաբար՝ պրս. تو tuva «ծալք»+بنفشه banafša «մանիշակ», որով ամբողջը լինում է «մանուշակի ծալք»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում, այն է՝

— Թիւբանուշա, կին Գրիգոր քահանայի և մայր Թումա և Տիրացու քահանաների, որոնք նրանց հիշատակին մի խաչ են կանգնեցրել Մարցում (Բորչալու), 1285 թ.—Ազգագր. հանդ. Է, էջ 350։

ԹՄԼԱՆ, իգ. գործածված է մի անգամ անթվական մի հիշատակության մեջ՝ հետևյալ ձևով. «Վարդանին և հաւրն Թոմասին և մաւրն Խրմզին և մեծ պապուն Քուլէֆին, և մեծ մաւրն Թմլան... հոգւոյն» (Թորոս աղբ. Բ. 361)։ Տեղը պահանջում է, որ համարենք սեռական հոլով. բայց ուղղականը հայտնի չէ, հետևվաբար նաև ծագումը։

ԹՈԴԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ։ Երկու անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— 1. Թոդան Խաչպան, հայր Յովհաննէս երեց Խաչպանի, որ գնեց մի Աւետարան, 1411 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 232։

— 2. Թօդաճ (կամ Թոթան), հայր Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463—4։

— 3. Թոդաճ անունը հիշատակված եմ գտնում նաև 1596 թ.—Ձեռ. Թաւր. 76 ա։

*ԹՈԴԻԿ, ար. < կրճատված է Թէոդոս անունից. երկուսի միջին ձևն է Թէոդիկ: Գրված է նաև Թոքիկ, Թաւքիկ: Հիշատակված է է, ժԸ դարերում՝ ընդ ամենը երեք անգամ։

— 1. Թոքիկ, վանահայր Գլակայ վանից, ժամանակակից Գայլ Վահանի († 606 թ)։—Ավանդված է սեռ. Թոքկայ ձևով՝ Յայսմ. սեպտ. 30.—Զամչ. Բ. 307 և Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է. 42 գրում են Թոդիկ։—Տես նաև Թադէոս № 5։

— 2. Թոդիկ ճգնավոր, ճգնում էր Վարագ լեռան վրա. գտավ այնտեղ մի խաչ, ուր և հիմնվեց Վարագայ վանքը, Ներսէս Շինող կաթուղիկոսի օրով՝ «660 թ»։—Յայսմ. փետր. 26.—սեռ. Թոդկայ՝ Մխ. այրիվ. 65, Առաք. պատմ. 380. Շահխաթ. Բ. 368=Արցախ 336—7 (Արձ. 1231 թվից՝ սեռ. Թօրկայ ձևով), Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 171.—Հայտպ. 229—232, Ձեռ. Վենետ. Բ. 392։

— 3. Թաւքիկ, որդի Շիրազմամայի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

Թողոլ տես Թօղօլ:

*ԹՈԴՐՈՍ, ար. < Թէոդորոս անունից կրճատմամբ, ինչպես կա նաև Նոր հուն. Thodori «Թէոդորոս»։ Ավելի ևս կրճատ ձևն է Թորոս:

— Թոդրոս, աղանդապետ Թոնդրակեցոց, հաջորդեց Սմբատին, որ ժամանակակից էր Յովհաննէս Դրասխանակերտցի («?98—929 թ») կաթուղիկոսին։—Մաղ. թղ. կէ։ (Սրա հետ համեմ. Թէոդոս աղանդապետ Թոնդրակեցոց, որի ժամանակն անհայտ է, ըստ Հայտպ. 551)։

*ԹՈԽԹԱՄԻՇ, ար. < թթր. توختامیش toxtamiš «ղխմացկուն, ամուր» բառից, որ ծագում է طوقتامق toqtamaq «ղխմանալ, մնալ, տոկալ» բայից (Будагов, 1, 750)։ Թաթարների մեջ էլ գործածական էր իբրև անձնանուն. օր. Թօխթամիշ խան Ղրիմի (նստում էր Բախչէսարայ քաղաքում, 1380 թ. Զամչ. Գ. 420)։ Մեր մեջ հիշված է մի անգամ, շուրջ 1550 թ. (Ձեռ. Դադեան. Բ. 47 ա, տպ. Թաւղթամիլ, ցանկում Թաւղթաւիլ, ուղղել Թոխթամիշ)։

ԹՈԽԻ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշված եմ

գտնում ԺԶ կամ ԺԷ՞ դարում (Ջեռ. Դաղեան, Ա. 58 բ, գրված Թօխի)։

*ԹՈԽՈՒՄ, ար. < պրս. تخم toxm «սերմ» բառից. որ Թրք. դարձել է toxum. Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԷ դարում (Ջամբռ 286)։

*ԹՈՀՖԱ, իգ. < արաբ. تحفه tuḥfa «ընծա, պարգև» բառից, որ Թուրքերենում դարձել է töhfe «չքնաղ իր, չնաշխարհիկ բան» (ավելի հեգնական իմաստով)։ Իբրև անձնանուն գտնում եմ մի անգամ հիշատակված մեր մեջ 1731 Թ.—Ջեռ. Վասպ. 1022 (գըրված կամ տպված՝ սեռ. Թօհ-վային)։

ԹՈՂԱԹ, ար. ծագումը ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի արձանագրության մեջ, Աստապատ գտնված մի խաչքարի վրա (Սիսական 509)։

*ԹՈՂԹԱ, սեռը անհայտ. Թերևս ար. բայց պետք է կարդալ Թօխթա, որով ծագում է Թթր. توخته կամ طوخته toxta «կանգ, կանգնիր, լռիր» բառից (Будагов 1, 750)։ Եթե սակայն այս իմաստը անհարմար համարվի իբրև անձնանուն գործածելու, պետք է դնել կրճատված Թօխթամիշ անունից, որ նույն բառից է ծագում (տես վերը առանձին)։ Մի անգամ գտնում եմ հիշված Հռիփսիմէի տաճարի մի արձանագրության մեջ՝ 1296 Թ.(հրատ. Յովսէփեան, Արրտ. 1898, էջ 442, գրված Թաւղթխս՝ անձնական ս հոդով)։

†ԹՈՌՆ, ար. < հյ. Թոռն բառից, որից է նաև գգվական Թոռնիկ անունը (տես առանձին)։ Հիշատակված եմ գտնում 1606 Թ (կամ ավելի ուշ?) Թոռն ձևով՝ Ծանիկեան, Հնութ. Ակնայ 85։ Ավելի ուշ դարձել է Թոռուն, ինչպես ունինք «ոմն Մուշեցի՝ Թոռուն անուանեալ» ԺԸ դար (Աբր. երև. էջ 53)։ Սրանից է Թոռունեան ազգանունը (որ կրում էր իմ Սեբաստացի դասընկերներից մեկը), որի սրբագրյալ ձևն է Թոռնեան (Վիեննայի Մխիթարյան հայրերից)։

†ԹՈՌՆԻԿ, ար. < հյ. թոռն բառից (տես նախորդը). հմմտ. իր համազորներից՝ Բոյս, Զագիկ։

— 1. Թոռնիկ Բագրատունի, որի որդին մասնակցեց արաբ զորավար Մուսէի դեմ պատերազմին՝ «851 Թ».—սեռ. Թոռնկայ՝ Արծր. Բ. գ։

— 2. Թոռնիկ Տարօնեցի, նախորդի ցեղից. որդի Ἀπογάνεμ-ի, եղբայր Վահանի և Սմբատի։ Հոր մահից հետո, այս երեքը ժառանգեցին Տարօնի երկիրը։ Թոռնիկը իր մահվան ժամանակ

կտակեց, որ երկիրը անցնի հունաց և սրա փոխարեն իրենները բնակություն ստանան Պոլսում (Ժ դար).—Չամչ. Բ. 726, 817 (ըստ Կոստանդին Պերփերոժէնի, որ Թոռնիկ անունը տառադարձել է Τορνίκης)։

— 3. Թոռնիկ, հսկա հասակով մի հայ էր. երբ Ռոմանոս Լեկաբենոսի երկու որդիները՝ Կոստանդին և Ստեփան դավադրություն կազմեցին Կոստանդին Է Պերփերուժէն կայսեր դեմ, կայսրը կանխեց և այս երկուսին խնջույքի հրավիրելով, Թոռնիկ անունով երկու հսկա հայ եղբայրներին հանձնեց։ Տեսնելով նրանց, երկու կայսերորդիները առանց դիմադրության անձնատուր եղան և ձերբակալվելով վանք ուղարկվեցին (945 թ).—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 88, 468։

— 4. Թոռնիկ զորավար, վրացի (?), կայսեր հրամանով գնաց ապստամբ Վարդ Սկլերոսի դեմ կռվելու (Ժ դար)։—Ասող. Գ. ժե։

— 5. Թոռնիկ Ա Արծրունի, որդի Խեդենեկի? և հայր Աբդլմսեհի. տեր Ամիւկի. նահատակվեց Թուրքաց դեմ պատերազմում, Մոկաց Ատիճանս գյուղում, Ծննդեան տոնի օրը (ԺԱ դար).—Արծր. Դ. ժբ. Հաւաք. 36.—սեռ. Թոռնկայ՝ Արծր. Դ. ժբ. Հաւաք. 35.—բց. ի Թոռնկայ՝ Հաւաք. 37։

— 6. Թոռնիկ, պատրիկ. ապստամբվեց Հունաց Մոնոմախոս կայսեր դեմ և ջարդելով հունական բանակները, այնքան առաջ գնաց, որ մինչև անգամ հասավ մայրաքաղաքի պատերի տակ և պաշարեց Պոլիսը (1047)։ Հույները խարդախությամբ կուրացրին նրան։ Հունաց պատմության մեջ կոչվում է Լևոն Թոռնիկ (Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. էջ 287).—Ուռհ. 100, 101. Սմբ. պտմ. 65.—սեռ. Թոռնկայ՝ Ուռհ. 101, 102։

— 7. Թոռնիկ Ա Մամիկոնեան, որդի Մուշեղի. հունադավան հայ իշխան Սասնոյ. փեսայ, որ է քեռայր Գրիգոր Բ Վկայասէր կաթուղիկոսի. չարաչար հաղթեց Թուրքաց (1058 թ), Փիլառտոսին (1072 թ), բայց Ամր-Փաքր ամիրայի նենգությամբ սպանվեց «1075 թ»։ Սրա որդին է Չորտուանել Բ և թոռը Վիգեն։—Ուռհ. 130, 131, 206—9, Մագ. թղ. (ՀԴ—ՀԷ). Տարօն. Բ. § 14. Սմբ. պատմ. 72. Սամ. անեց. 111.—սեռ. Թոռնկայ՝ Ուռհ. 207—9, Տարօն. Բ. § 14.—Հայապ. 391, 393. Ալիշան, Շնորհ. 41, Ճանիկեան, Հնութ. Ակնայ 77. Թորոս աղբ. Բ. 309։

— 8. Թոռնիկ Բ. իշխան Արծրունեաց, որդի Աբդլմսեհի, թոռն Թոռնիկ Ա-ի, հայր Թադէոս մեծ իշխանի և եղբայր Դա-

ւիթ, Ստեփանոս և Գրիգոր կրոնավորների (ԺԱ դար)։—Արծր. Դ. ժբ. Հաւաք. 37 (չփոթ է)։

— 9. Թոռնիկ Բ. որդի Զորտուանելի Գ, որդւոյ Վիգեն իշխանի Սասնոյ, ի կնոջէն Վանենի, եղբայր Վասիլի և Շահնշահի. իշխան Սասնոյ (1160 ական թվերին)։—Ծանիկեան, Հնութ. Ակնայ 77 (ուր տես իր նկարի մասին), Հայապ. 391, 394, Թորոս աղբ. Բ. 312։

— 10. Թոռնիկ Գ. որդի Թադէոս մեծ իշխանի և պապ Դաւիթ Ա կաթուղիկոսի Աղթամարայ (ԺԲ դար).—Արծր. Դ. ժբ. Հաւաք. 37.—սեռ. Թոռնկայ՝ Վրդ. կզ։

Թովմա տես Թովմաս:

Թովմաջան են տես Թումաջան են։

*ԹՈՎՄԱՍ, ար. < հուն. Θωμᾶς (> լտ. գերմ. ֆրանս. Thomas, ռուս. Фома, անգլ. Thomas, Tom, Tommy) անունից. բուն նշանակում է «երկվորյակ» և ծագում է ասոր. thāmā «երկվորյակ, կրկնակ» (=արաբ. توأم tavam «երկվորյակ») բառից, ինչպես որ Թովմաս առաքյալն էլ կոչված է «հրկւորեակ»։ «Իսկ Թովմաս, մի յերկոտասանիցն, անուանեալն երկուորեակ» (Յհ. Ի. 24)։—Կեղծ են հների տված տարբեր ստուգաբանությունները. հմմտ. «Որդեակ իմ Թումաս... երկայնամիտ լեր ըստ նմանութեան հօրն երկնաւորի, զի շահել կարասցես զեղբարսդ քո և դու պսակիս ի Քրիստոսէ, որպէս յանունդ ես կոչեցեալ, նոյնպէս և ի գործդ լե՛ր» (Յայսմ. դեկտ. 10)։ «Թումասն խորութիւն և կամ անդունդք թարգմանի» (Յայսմ. յունիս 30. իմա եբր. תהום təhom «խորք կամ անդունդք ծովու»)։—Այս անունով հայտնի է Թովմաս առաքյալը (Մտթ. ժ. 3 են), նշանավոր իր անհավատությամբ (Յովհ. Ի. 24—29), գնաց Հնդկաստան քարոզելու և նահատակվեց այնտեղ Մժդեհ թագավորի ձեռքով (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 261)։ Ըստ այսմ հասկանալ Նոր վկ. 353 Աստուածատուր Խթայեցու հետևյալ տողը. «Հարեալ է մըշդեհէ, որպէս գրեալ կայ», որ անդ՝ էջ 789 համարել էի «բառ անծանօթ. թուի զէնք ինչ»։ Այս անունը դարձած է մեր մեջ՝ բացի սկզբնական Թովմաս ձևից, նաև Թովմա, Թոմաս, Թոմայ, Թումաս, Թումայ, նաև Թովմաջան, Թումաջան, որոնցից Թովմասեան, Թումայեան, Թումեան ազգանունները)։ Ով > ու ձայնափոխության համար հմմտ. Յովսէփ—Յուսէփ, Յովհան—Յունան, Մովսէս—Մուսի։ Նույն անունից չեմ համարում սակայն Թուման, որ տես առանձին (Հիւբշ. 336)։

— 1. Մար Թովմա Կանա, մեծահարուստ հայ վաճառական, որ հաստատվել է Հնդկաստանի Մադրաս քաղաքում, ուղացի կռապաշտ հնդիկներին քրիստոնյա է դարձրել և Անտիոքի եպիսկոպոսապետ Եւստաքիոսի հավանությամբ և ձեռնադրությամբ եպիսկոպոս, քահանա և ասորի գաղթականներ է բերել Հնդկաստան։ Շինել է մի քաղաք՝ Maha-deva-patam (Մեծ Աստուծու քաղաք) անունով, ուր դպրոց և եկեղեցի է հիմնել ասորի լեզվով (Դ դար)։—Սիսական 466 բ (անշուշտ ասորի է, սխալմամբ հայ համարված)։

— 2. Թովմայ, աշակերտ Թաթուլ և Վարոս ճգնավորների. ճգնում էր Մայրաձորի վանքում. հաջորդեց Թաթուլին իբրև վանահայր. մեռավ և թաղվեց նույն վանքում (Ե դար)։—Թումաս՝ Յայսմ. սեպտ. 30, դեկտ. 30, մրտ. 6. Ցից. Թաթ. 50—53, 59. Վրդ. աշխ. 504.—Թովմաս՝ Մխ. այրիվ. 62.—սեռ. Թովմասու՝ Ցից. Թաթ. 47.—Թումասու Ճշ. 664, Ցից. Թաթ. 50. Յայսմ. սեպտ. 30, մրտ. 6.—գրծ. Թումայիւ՝ Կիր. 21։

— 3. Թովմաս՝ հայր Յովհան Ρούζης զորավարի, որ մեռավ 542 թ.—տես անդ։

— 4. Թովմաս մեծ, «Հայաստանից». կոչվում է «Երանելի». Անտիոքի Եփրեմ պատրիարքի օրով (527—545), հալածանքի ժամանակ, մեծ դեր է կատարել ասորի ուղղափառ եկեղեցու մեջ, ինչպես հիշում է Յովհաննէս Եփեսացի ասորի մատենագիրը.—Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 134։—Հնմտ. № 9.

— 5. Թովմա եպիսկոպոս Կամսարական տան և Արշարունեաց. հաջորդ Թաթուլի. նստավ 501—550 թ. և նրան էլ հաջորդեց Հաւուկը։—Տաշեան, Ցուց. 656, Զամչ. Բ. 374, Այրարատ. 56։

— 6. Թովմաս եպիսկոպոս Կամսարական տան և Արշարունեաց. հաջորդեց Հաւուկին, նստավ 566—582 թ. և նրան էլ հաջորդեց Մովսէսը.—Զամչ. Բ. 374, Տաշեան՝ Ցուց. 656, Այրարատ 56։

— 7. Թովմաս, քաղկեդոնական քարոզիչ, որին Աղուանից Աբաս կաթուղիկոսը («552—596 թ.») վտարեց Աղուանքից։—Կղկնտ. Բ. ը։—Սրա հետ նույն է Թվում՝

— 8. Թումաս քահանա, վանական Պանտավանաց. Երուսաղէմի Յովհաննէս եպիսկոպոսի քաղկեդոնական թղթերը գրեց, թարգմանեց և բերեց Աղուանից Աբաս («552—596 թ») կաթուղիկոսին։—Թումաս՝ Ցհ. երուս. էջ 1.—սեռ. Թումասու՝ էջ 16։

— 9. Թովմաս ի Մեծ Հայոց. նահատակվեց Միջագետքում (Զ դար).—Տէր-Մինասեան, Հայ եկեղ. յարաբ. 532։—Տես և № 4։

— 10. Թովմաս, դուռն երեց Աղուանից Վաչագան Գ թագավորի. անդամ Աղուէնի ժողովի (Զ դար).—Թոմայ՝ Կղկնտ. Ա. իզ (հրատ. Էմինի) =Թումա (հրատ. Շահն.), Կանոն. 192. տես և Տաշեան, Ցուց. 653։

— 11. Թոմայ վարդապետ Արշարունեաց վարժարանի, որ գտնվում էր Երասխաձորում. հունագետ. անդամ Կարնոյ ժողովի («623 թ»), Եզր կաթողիկոսի ժամանակ։—Զամչ. Բ. 328, Տաշեան, Ցուց. 114։

— 12. Թոմաս, համարվում է հայ. օտարականներից կազմված հունական բանակի զորավարն էր կարգվել 813 թ. ապստամբվեց Միքայէլ Բ Թլվատ կայսեր դեմ և Անտիոքի պատրիարքից կայսր օծվելով (822), հաղթական արշավանքով հասավ Պոլիս ու պաշարեց քաղաքը։ Երեք տարի մաքառելուց հետո, Բուլգարները հասան կայսեր օգնության, ծերունին Թոմաս հաղթվեց և տանջանքներով սպանվեց (824 թ)։—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 403։ (Սա է Թովմաս Գեզուրացի, կաղոտն, որ ոմանք համարում են սլավ՝ Տէր-Սահակեան, Հայ կայսերք Ա. 22)։

— 13. Թովմա Արծրունի, պատմագիր. գրեց Արծրունեաց տոհմի պատմությունը՝ ամենահին շրջանից մինչև իր ժամանակը (Թ դար)։—Թոմայ՝ Մխ. այրիվ. 37.—Թովմա՝ Ես. կթղ. էջ ը.—Թումայ՝Կիր. 3. Հաւաք. 83 (իբր թե Գագիկ թագավորի քարտուղարն էր և գրեց իր թագավորի կենսագրությունը).—սեռ. Թումայի՝ Կիր. 44. Սիմ. ապար. 139.—Թովմայի՝ իր Պատմության մեջ՝ Ա. ա, ժա. Դ. ժբ. նաև նույն Պատմության հիշատակարանում (Ձեռ. 1303 թվից).—Թօմայի՝ Հաւաք. 2։—Զարբ. Հին դպր. 518—530։

— 14. Թովմա «քահանայ և վարդապետ» Վարագայ վանից. մատենագիր. ունի հարցումներ՝ ուղղված Տաճատ վարդապետին, որ տալիս է նույն հարցումների պատասխանը առանձին թղթով։ Նորից գրում է Թովման Անձևացեաց Ատոմ իշխանին մի թուղթ, որի մեջ տալիս է Տաճատի հարցումների պատասխանը (Ժ դար)։—Զարբ. Հին դպր. 569, Հայապ. 83. ընդարձակ տես Ձեռ. Վենետ. Բ. 288—289։ Հավանաբար նույն է այն «Թովմա քահանայ վարդապետը», որից մի կոչում է մեջ բերում Վանական վարդապետը (Դուրեան, Ուսում. Երուսաղէմ 1935, էջ 370)։

— 15. **Թովմա** գրիչ կամ փորագրիչ Յովհաննէս-Սմբատ թագավորի մի մեծ արձանագրության, Հոռոմոսի վանքում, 1036 թ.—Շիրակ 31։

— 16. **Թովմա** երեց, որդի Մովսէս քահանայի, գրիչ. օրինակեց Ավետարանը Մելիտինէի Ս. Գրիգոր վանքում, 1057 թ.—Շողակաթ 193, Ջեռ. Դաղեան, Ա. 7 բ, Rapport Arm. էջ 42—43։

— 17. **Թովմաս**, առաջնորդ Շուխրա անապատայ վանից՝ 1064 թ.—Զարբ. Թրգմ. 159. ՏաԹև 1927, 187 (գրում է Շուլխրխաճ-դուռխա վանից)։

— 18. **Թովմաս** պայլ, Լևոն Ա-ի («1129—1113 թ») աղջկա (անունն անհայտ) որդին է.—Սիսուան 45։

— 19. **Թովմաս** պայլ, աներ Թորոս Բ-ի. սրա մահից հետո եղավ խնամակալ պետության, քանի որ Թորոս Բ-ի որդին՝ Ռուբէն դեռ անչափահաս էր («1168 թ»)։ Մլեհը վտարեց նրանց Կիլիկիայից և գրավեց գահը («1169 թ»)։—**Թումաս**՝ Վահր. ոտ. 210—211. Սմբ. պատմ. 100, 101. Պատմ. կիլ. 207—8. Պատմ. ռուբ. 218. Մին. համդ. 40, 41. Հայապ. 347.—**Թոմաս**՝ Միխ. աս. բ տպ. 454 (իսկ ա տպ. չէ հիշված)։—Անշուշտ լատին էր, որովհետև Վահր. ոտ. 211 գրում է թե փախավ «յԱնտիոք, ուստի եկեալ»։ Նմանապես Պատմ. կիլ. 207. «Թումաս՝ որ էր յԱնտիոքայ»։

— 20. **Թովմա** միաբան, հայթայթեց Էջմ. №919 ճառընտրի ընագիրը՝ 1187 թվին (Միաբան, Գոր. և Ճմ. էջ 56)։

— 21. **Թոմայ** քահանայ, մի խաչքար է կանգնեցրել Հաղբատածորում, 1201 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 69, Ազգագր. հանդ. է, 417։

— 22. **Թումաս** սարկավագ, մերձավոր Վասիլ քահանայի, որ օրինակեց Ավետարանը Կիլիկիայում, 1231 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 222 բ։

— 23. **Թումա**, որդի Խոսրովի և եղբայր Գէորգ քահանայի. որ Արգելանի վանքում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1251 թ.—Ջեռ. Վասպ. 87։

— 24. **Թոմա** քահանա, իր եղբոր՝ Սերոբ քահանայի հետ միասին նվերներ են արել Մակարավանքին (Ղազախ), 1253 թ.—Արցախ 374։

— 25. **Թովմաս**, դեսպան Հեթում Ա թագավորի. սրա կողմից ընծաներ տարավ Պապի նվիրակին յԱքայիա, ընկերակցությամբ Մխիթար Սկեռացու, 1262 թ.—Սկեռ. պատ. 11.

— 26. **Թումաս** (Տէր), կանգնեցրել է մի խաչքար պարոն

Սագունի և նրա զավակների երկարակեցության, Աշտարակի գերեզմանատնում, 1268 թ։—Այրարատ 187։

— 27. Թովմա վարդապետ, համեմատեց ու սրբագրեց Եզնիկի ձեռագիրը, որ օրինակել էր Լուսեր գրիչը 1280 թ.—տես իմ Քնն. և համտ. Եզնկայ, էջ 4, 7։

— 28. Թովմա վարդապետ, գրիչ. օրինակել է Եպիփանու Կիպրացւոյ Մեկնութիւն Թագաւորութեանց, Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց ևն՝ 1280 թ.—Ձեռ. Կարին. 144։

— 29. Թաւմոյ քահանա, „որդի Գրիգորի, իր եղբոր՝ Տիրացուի հետ միասին մի խաչ են կանգնեցրել Մարցում, իրենց գերդաստանի հիշատակին, 1285 թ.—Ազգագր. հանդ. Է, 350։

— 30. Թովմաս քահանա, որդի Բասիլ քահանայի, քեռորդի Կոստանդին Բ «1286—9 թ» կաթուղիկոսի։—Ջարբ. Թրգմ. 266։

— 31. Թովմայ վարդապետ, որդի Ստեփանոսի. Սիմէոն գրչին գրել տվեց մի Ավետարան, Արճէշ 1286։—Ձեռ. Վասպ. 106։

— 32. Թումաս քահանա, օգնեց Խաչատուր գրչին օրինակելու մի Ժողովածու Յովհաննէս քահանայի համար, Փերճերի անապատում, 1292 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 347 բ։

— 33. Թումաս եպիսկոպոս Կիլիկիոյ. երբ Ստեփաննոս կաթուղիկոսը մեռավ («1293 թ.») և նոր կաթուղիկոս ընտրելու էին ձեռնարկում, Հեթում Բ. թագավորը այս Թումասին, իր եղբոր Թորոսի հետ ուղարկեց Արևելք, իբր խնդրակ. սրանք եկան նախ Թադէոս Առաքյալի վանքը, ուր Տիրացու եպիսկոպոսը լավ ընդունելություն ցույց տվեց։—Сборн. Матер. հտ. 29, էջ 11, Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 224)։

— 34. Թումայ քահանա, միանալով Վանական քահանայի հետ՝ Կիրակոս երեցին օրինակել տվեց Շնորհալու Թղթերը՝ 1294 թ.—Ձեռ. Էջմ. № 57։

— 35. Թումա, որդի Խելօքի, որ Տուրուբերանի Արգելանայ վանքում, Յակոբ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1294 թ։ Այս թվին Թուման արդեն մեռած էր մատաղ հասակում։—Ձեռ. Վասպ. 116—120։

— 36. Թովմա(ս) վարդապետ, Իտալիայի Ռիմինի քաղաքում շինել է վանատուն 1296 թ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 229, Արձ. Սիսական 454։

— 37. Թումայ կրոնավոր, Յակոբ քահանայի հետ միասին, Արճէշում, Սիմէոն քահանային գրել են տվել մի Ավետարան, 1297 թ.—Ձեռ. Վասպ. 123։

— 38. **Թովմաս** *(կամ Թումաս) քահանա Հռոմկլայեցի, Գրիգոր Վկայասէրի օրինակից արտագրել է Գիրք Թղթոցը՝ Սին 1298 թ.—տես անդ, յիշ. էջ 537—8 և Հայապ. 502։—Անշուշտ նոյն է № 41։*

— 39. **Թումայ**, *հանգուցյալ ազգական Յովհաննէս քահանայի, որ օրինակեց մի Աւետարան, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 335։*

— 40. **Թումայ** *քահանա, հայր Կարապետ վարդապետի Տոսպեցւոյ (ԺԳ դար).—տես Յ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ յիա, յիէ։*

— 41. **Թումաս** *Հռոմկլայեցի, գրիչ. երբ Հռոմկլան գրավվեց Եգիպտացիների կողմից, սրա ծնողներն ու հարազատները կոտորվեցին. ինքը փախավ Խորին անապատը (Սիս), ուր օրինակեց Շնորհալու Թղթերը՝ 1302 թ. (Մխուան 152 ա, Տաշեան՝ Ցուց. 621, Ձեռ. Սանաս. 32 ա) և մի Շարական (Ազգապ. 3433, Պէրպէրեան, Պատմ. Հայոց 75)։ Տես և № 38։*

— 42. **Թումա** *քահանա, Հայրապետ քահանայի հետ միասին՝ Զաքարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վասպ. 142։*

— 43. **Թումա** *քահանա, Շախիկ քահանայի հետ միասին՝ Տարբերունեաց Բերդակ գյուղում գրել են տվել մի Աւետարան, 1306 թ.—Ձեռ. Վասպ. 149։*

— 44. **Թոմա** *քահանա, որդի Վիրապշահի, աշակերտ Սարգիս վարդապետի. արտագրեց Սիւնիքում մի Աւետարան, 1315 թ.—Շողակաթ 210։*

— 45. **Թովմա** *վարդապետ, Խորդեանց անապատում գրել է մի մեծագիր Աւետարան, 1315 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. էջ 251։*

46.— **Թովմա** *քահանա, գրիչ. Վանում օրինակել է Նարեկը՝ ՊԻ=1321 թ.—Ձեռ. Կարին. 172 (տպ. ՊԽ, որ պետք է ուղղել ՊԻ)։*

— 47. **Թումա** *(սեռ. Թումին), հանգուցյալ հօրեղբայր Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1329 թ.—Ձեռ. Վասպ. էջ 179։*

— 48. **Թումայ** *Արճիշեցի, գրիչ. օրինակեց Աւետարանը Գողթան գավառի Կոպատոսի անապատում (Բիստ գյուղի դիմացը)՝ Շահնշահի համար, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, էջ 386—7)։*

— 49. **Թումա** գրիչ. օրինակեց Աւետարանը Սարգիս անուն անձի համար, 1336 Թ.—Ձեռ. Վասպ. 196։

— 50. **Թումա** (սեռ. Թումին), որդի Ստեփաննոսի և հորեղբայր Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց մի Աւետարան, 1338 Թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 51. **Թումայ**, որդի Ստեփանոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 Թ.—Manus. brit. mus. 8 բ։

— 52. **Թումայ** քահանա, հայր Կարապետ քահանայի, որ Կիրակոս քահանային օրինակել տվեց Ներսէս Շնորհալու գործերը՝ Աղբակի Խաշնոց գյուղում, 1352 Թ.—Ձեռ. Թաւր. 56 բ։

— 53. **Թովմաս** Ջահկեցի, իր եղբոր՝ Սամուէլի հետ պատգամավոր գնաց Իննովկենտիոս Զ պապի մոտ՝ Ունիթոռական միաբանության համար օգնություն խնդրելու։ Պապը նրան եպիսկոպոս նշանակեց (1356 Թ).—Ազգատ. 1917. Սիսական 388։

— 54. **Թումայ**, կրոնավոր Ս. Գէորգ զորավարի վանից (ո՞ր տեղի). հիշված է 1357 Թ.—Ձեռ. Վասպ. 213։

— 55. **Թովմա**, հայր Կարապետ կրոնավոր գրչի, որ նույն Ս. Գէորգի վանքում, մահտեսի Խնդուլի համար օրինակեց Աւետարանը՝ 1357 Թ.—Ձեռ. Վասպ. 213։

— 56. **Թոմաս** կրոնավոր, հոգևոր եղբայր ստացող Նորոգէսի և Անանիա գրչի, որ օրինակեց մի Ժողովածու՝ Երզնկայի Ս. Կիրակոս անապատում, 1364 Թ.—Ձեռ. Վիեն. 17 բ։

— 57. **Թովմաս** եպիսկոպոս Հայոց Իտալիայի, 1375 Թ.—Սիսական 448 բ։—Նույն է № 60։

— 58. **Թումայ**, եղբայր Ամիրլոյսի, ազգական Կարապետ կրոնավորի, որ օրինակել տվեց Հին կտակարանը, Սղկայու վանքում, 1381 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։

— 59. **Թովմաս** արեղա, տվեց Վարդանի Դանիէլի մեկնութեան ձեռագիրը Յովհաննէս գրչին՝ արտագրելու համար, Ոստանում, 1382 Թ.—Bodleian 166։

— 60. **Թովմաս** եպիսկոպոս Հայոց Իտալիոյ. մագաղաթ էր ուղարկում Կոստանդին կաթուղիկոսին։ Մեռավ ու թաղվեց Perugia 1385 Թ.—Հայ—Վենետ. 161, Հայապ. 485, Ձեռ. Հալէպի, Բ. 32 ա։—Նույն է № 57։

— 61. **Թումայ**, երկու նույնանուն քահանաներ Գաւաշ գյուղի, 1389 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 765)։

— 62. **Թումա** քահանա, գրիչ. Շրվանի երկրում, Շիրիան

կոչված վայրում օրինակեց Աւետարանը, 1394 թ.—Ձեռ. Դաշխան, Բ. 55 բ։

— 63. Թումայ, ամուսին Թամար Մոկացու, որ նահատակվեց «1396 թ».—սեռ. Թումայի՝ Ցայսմ. ապր. 24, Նոր վկ. 188։

— 64. Թումայ պարոն, որի եղբայրն է Թադէոս միայնակեց. որդիքն են Խալիֆայ և Ասլան—Մելիք. սրանք Վանում առաջավոր մարդիկ էին. Թովմա գրիչը մի ներբող է գրել այս Թադէոսի պատվին (տես վերը՝ էջ 250), Վան 1393 թ.—Նոտարք 3։

— 65. Թումայ աբեղայ, եղբայր Ատոմ միայնակեցի, որ Թումա գրչին գրել տվեց Վանում, մի Մաշտոց՝ 1393 թ.—Նոտարք 3։

— 66. Թովմա (որ և Թովմաս, Թումա) քահանա, որդի մահտեսի Մուրատի. գրիչ. Ատոմ միայնակեցի համար Վանում գրեց մի Մաշտոց, 1393 թ։ Ունի նաև երկու ոտանավոր գովեստ՝ մին Թադէոս միայնակեցի համար (որից մի կտոր տես վերը՝ էջ 250) և երկրորդը՝ հայր Ատոմի անվան։ Դնում եմ այստեղ իր մասին երգած սիրուն տողերը.—

Ինձ որ գրիչս եմ ապիկար՝
Թումայ անուն գործովքս չար,
Ցաշխարհիս տատ անմխիթար,
յորն անագին լինիմ շիւար,
Լեզու չունիմ որ տամ համար,
ոչ քանքարին փող մի վճար,
Այնց գործեցի մեղք չարաչար,
որ թողութեան չեմ ի հնար,
Ոչ ոք ունիմ ես ինձ ի ճար,
ոչ բարեխօս ինձի համար,
Բայց զքահանայքդ սրբարար,
զվարդապետունքդ հաւասար,
Զճգնաւորքդ կամարար,
զմիանձունքդ, որ ի լեառնդ էք և իյայր,
Ցերես անկեալ իմ գլխիվար
և համբուրեմ զձերդ գարշապար,
Աղաչեցէք վասն իմ յերկար
զԱստուածածին կոյս Տիրամայր,
Նա բարեխօս է անդադար
վասն իմ, որ գործս է չարաչար։
Տէրն ծնողին է կամարար,

չառնէ հետ ինձ գործոց համար.
Տէրն է գթած և բարերար,
լինի թէ տայ ինձ մխիթար։
Եւս և տացէ ձեզ հաւասար,
որ զմեզ յիշէք ձեռնակարկառ,
Եւ Քրիստոսի Փրկչին մերոյ
առաքեսցուք փառս անդադար։

(Նօտարք, էջ 3—4, Գրիգոր Խլաթեցու անհայտ Պատմությունից հատված)։

— 67. Թումա վարդապետ, առաջնորդ Ռշտունեաց գավառի Թովմաս Առաքելոյ վանից, 1399 թ.—Նօտարք 11։

— 68. Թումայ բարունի (այն է՝ վարդապետ) Կիլիկեցի. հեղինակել է Աշխարհագրութիւն Կիլիկիոյ, որ է Կիլիկիայի բուսաբանությունն ու կենդանաբանությունը, բայց ոչ իբրև առանձին գործ, այլ միացրել է իր օրինակած «Խորենացւոյ Աշխարհագրութեան», որ մասամբ կրճատել է և մասամբ ընդարձակել (ԺԴ դար)։ Սրա միակ օրինակը գտնվում է Վենետիկում։—Ձեռ. Վենետ. 632, Սիսուան 9, 13, 14, 17, 30—32, 516. Նորայր, Հայկ. բառաք. 108. Թորգոմեան REA 6, 25։

— 69. Թումաս կրոնավոր, Յովհաննէս և Կիրակոս կրոնավորների հետ գտավ Գետարգել Ս. Նշանը, որ Լենկթիմուրի երկյուղից թաղել էին հողի տակ, և բերին Ռշտունեաց գավառի Ս. Եղիշէի ուխտը, որ է Վարդպատրիկի վանքը, 1401 թ.—Նօտարք 15, Ազգագ. 1971։

— 70. Թումայ ոմն, որ Մարտիրոսի հետ (եղբայրն է) միասին մի Աւետարան է վաճառել «դիւրաւ փոքր գնով» Կարապետ քահանային, 1401 թ.—Ձեռ. Վասպ. 126։

— 71. Թումա վարդապետ, նորոգել և կազմել է այն Աւետարանը, որ Թումա և Մարտիրոս եղբայրները վաճառեցին Կարապետ քահանային, 1401 թ.—Ձեռ. Վասպ. 126։

— 72. Թումայ քահանա, որդի Յովհաննէս քահանայի, որ իր այդ վաղամեռիկ որդու հիշատակին, Խիզանում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1402 թ։—Ձեռ. Վասպ. էջ 287 և 289։

— 73. Թումայ, եղբայր Հայոցի. երկուսն էլ մերձավոր Յակոբ վարդապետի, որ Աստուածատուր գրչին գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 74. Թումայ սարկավագ, որդի Կարապետ քահանայի և

*եղբայր Դանիէլ սարկավագի, որ օրինակեց մի Մաշտոց՝ Կիրակոս քահանայի համար, 1404 թ.—Թորոս Աղբար, Բ. 277։*

— 75. Թումա, *աշակերտ Սարգիս վարդապետի, ապա Գրիգոր Տաթևացու և Յովհաննէս Մեծոփեցու, դասընկեր Թովմա Մեծոփեցու, որի հետ միասին հուղարկավոր եղան իրենց ուսուցիչ Յովհ. Մեծոփեցու թաղման՝ Հաւուցթառում, 1410 թ.—Մեծոփ. 61։*

— 76. Թումա, *որդի Գորգոյ, իր եղբայրների հետ միասին մի Աւետարան ծախեց 1407 թվին՝ իր մյուս եղբոր Դաւիթին, 1100 դրամով։ Թուման ամուսնացավ երկու տարի հետո, բայց մի տարուց մեռավ՝ անմխիթար թողնելով իր կնոջ Զարդարիկին, «որ ոչ մխիթարեցաւ և ոչ զարգըրեցաւ», 1410 թ.—Ձեռ. Վաստ. 164—6։*

— 77. Թումա *քահանա Ոստանցի, հիշատակագիր Աւետարանի, 1410 թ.—Ձեռ. Վաստ. 164, 167։*

— 78. Թումա, *եղբայր Առոմի, երկուսն էլ որդիք Աստուածատուր քահանայի, որ Մոկաց Խաչի վանքում, Անտոն և Ղազար քահանաների համար օրինակեց Աւետարանը՝ 1410 թ.—Ձեռ. Վաստ. 297։*

— 79. Թովմա *գրիչ Սիւնեցի, Ծար գավառի Գետամէջ վանքում, Յովհաննէս քահանայի խնդրանքով գրեց մի Ճաշոց, 1411 թ.—Նոտարք 40։*

— 80. Թումա *քահանայ գրիչ․ Ոստանում, Կիրակոս քահանայի համար գրեց մի Աւետարան, 1414 թ.—Ձեռ. Վաստ. 300։*

— 81. Թումա, *հորեղբայր Յովհաննէս քահանայի, որ օրինակեց մի Աւետարան՝ Մոկաց Կաղթանց գյուղում 1409 թվին և մի ուրիշ Աւետարան էլ՝ Ջերմաձորի Ակոռոյ վանքում, 1417 թ.—Ձեռ. Վաստ. 294։*

— 82. Թովմա *կոշկակար, որի խնդրանոք Ստեփաննոս քահանան գրեց մի Մաշտոց, Տշող գյուղում, 1417 թ.—Նոտարք 51։*

— 83. Թումայ, *գրիչ․ գրեց մի Աւետարան, Աղթամար 1418 թ.—Ակինեան՝ Գաւազանագիրք 81 (ըստ Լալայեանց, Ջաւախք, էջ 310)։*

— 84. Թումա, *որդի Մկրտիչ քահանայի, որ Բերկրիում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի ծաղկազարդ Աւետարան, 1418 թ.—Նոտարք 55։*

— 85. Թումա, *հայր Խաչատուրի, որ Աղթամարում, Թումա*

կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 311։

— 86. Թումա աբեղա, գրիչ. Գառնկայ վանքում, Աբրահամ կրոնավորի համար օրինակեց Ավետարանը՝ 1419 թ.—Ձեռ. Վասպ. 317։

— 87. Թումայ կրոնավոր, Աղթամարում գրեց մի Ճաշոց՝ Մկրտիչ քահանայի համար, 1419 թ.—Նոտարք 58։

— 88. Թովմայ քահանա, որդի Ամիրբէկի և եղբայր Իգիտ գրչի, որ Նարեկ գյուղում գրեց մի Ավետարան՝ Թաթարբէկ տանուտերի համար, 1420 թ։—Ձեռ. Վասպ. 327=Նոտարք 62։

— 89. Թումա, որդի Առաքելի և եղբորորդի տանուտէր Թաթարբէկի, որ Նարեկ գյուղում, Իգիտ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 326։

— 90. Թումա, որդի Յովհաննէսի և եղբայր Վարդան կրոնավորի, որ Թումայ աբեղային գրել տվեց մի Ավետարան, Աղթամար 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 91. Թումա, հորեղբորորդի նույն տանուտէր Թաթարբէկի, որ տես № 89։—Ձեռ. Վասպ. 323։

— 92. Թումայ կրոնավոր, հոգևոր որդի (արդեն հանգուցյալ) Վարդան կրոնավորի, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Ոստանի մոտիկ Գառնկի վանքին, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։

— 93. Թովմա քահանա, որդի Ծերուն քահանայի, որ Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1420 թ.—Նոտարք 63։

— 94. Թումայ, հայր Ստեփանոս քահանայի, որ Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, Վան 1420 թ.—Ձեռ. Վասպ. էջ 340։

— 95. Թովմա վարդապետ, աշակերտ Սիմէոն վարդապետի Ուշտունեաց, միաբան Գուտլիկ վանքի, ուսումնական մարդ էր. հավատքը չուրանալով նետահար նահատակվեց թաթարներից «1421 թ».—Մեծոփ. 44. Ազգապ. 2056։ Զամչ. Գ. 452. Նոր վկ. էջ 263։

— 96. Թումայ կրոնավոր, որդի Վարդանի, գրել տվեց մի Ավետարան Վարդան աբեղային՝ Ծպատի անապատում, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 329, 331—2։

— 97. Թումա, նորընծա քահանա, եղբայր Կարապետ գրչի,

որ հիւսն Յովհաննէսի համար գրեց մի Ճաշոց, Յաղէթի Ս. Յակոբայ վանքում, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111 բ։

— 98. Թումա, վարպետ նույն Կարապետ գրչի, որին օգնում էր Թուղթ կոկելով, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111 բ։

— 99. Թովմայ վարդապետ, Տաթևի վանքում օրինակեց Բարսեղ Կեսարացու քարոզները, ինչպես նաև Գր. Տաթևացու Քարոզգիրքը, 1421 թ.—Նոտարք 64, Ձեռ. Կարին. 215։

— 100. Թովմա, «նորաբողբոջ պատանի» , եղբորորդի Յոհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում, Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։

— 101. Թովմաս Կաֆայեցի, գրիչ. աշակերտ Մխիթար Տաթևացու, 1422 թ.—Սիսական 241 ա։

— 102. Թովմա քահանա, հոգևոր հայր և վարպետ նույն Յոհաննէս կրոնավորի (№ 100), 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 103. Թովմա, որդի Աստուածատուրի (№ 84) և Մարթայի՝ հոգևոր մոր նույն Յոհաննէս կրոնավորի (№ 100), 1422 թ.—Ձեռ. Վասպ. էջ 348։

— 104. Թումա կրոնավոր, որի խնդրանքով Կարապետ գրիչը օրինակեց մի Ճաշոց, Մոկաց Ծպատի վանքում, 1423 թ.—Նոտարք 72։

— 105. Թոմայ աբեղա, հոգևոր որդի Տ. Կարապետ եկեղեցպանի, որոնց մի Աւետարան նվիրեց իրենց ազգական Սահակ միայնակեցը (Աղուանից աթոռի), 1423 թ.—Նոտարք 72։

— 106. Թումա, գրիչ ոմն, որ Խիզանի Բարիձորոյ Ս. Աստուածածին վանքում օրինակել է Սաղմոսի մեկնությունը, 1425 թ.—Նոտարք 78։

— 107. Թումայ, որդի Խաթունի, որ Աղթամարում, Մինասենց Թումա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վասպ. 352։

— 108. Թումայ, որդի Պլտուխի և եղբայր Դանիէլ աբեղայի, որ գնեց Քարոզգիրքը, 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

— 109. Թովմաս Ապարանեցի, Հռոմի պապից նշանակվեց Սուլթանիայի առաջնորդ, 1425 թ.—Սիսական 370 բ։

— 110. Թումայ վրդ. Բաղիշեցի, գրել է Գրիգոր Ծերենցի վկայաբանությունը (1426 թ). հրատարակված է Նոր վկ. 264—272։ Կոչվում է նաև «Թումայ հռետոր» (Նոտարք 77 երկու ձևով էլ, Ձեռ. Հալէպի, Ա. 292 բ՝ միայն առաջին ձևով)։ Ընդունված է

որ այս Թուման՝ Թովմա վրդ. Մեծոփեցին է (տես Նոտարք 77 ծան. բայց նաև հմմտ. վերը Առաքել Բաղիշեցի №77)։ Ինչու սակայն կոչվել է Բաղիշեցի.—Նրա համար որ Թովմա հռետորը նույն վկայաբանությունը գրել է «ի Բաղէշ քաղաքի, ի վանքս Գոմաց Ս. Աստուածածնին»։

— 111. **Թումայ**, ստացող. Աբրահամի հետ (№61) միասին Մարտիրոս քահանային գրել տվեց մի Ճաշոց՝ Սխկայ գյուղում, 1427 թ.—Նոտարք 83։

— 112. **Թումայ**, որդի Սարգսի, եղբայր Ներսէս աբեղայի, որ Ուրծայ վանքում գրել տվեց Պատարագամատոյցը 1427 թ.— Ձեռ. Միմխ. 20 բ։

— 113. **Թումայ**, երեց եղբայր Դանիէլ կրոնավորի, որ Մաղարդի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1427 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 414։

— 114. **Թումայ** կրոնավոր, որդի Աբրահամի, ուսուցիչ Կարապետ աբեղայ գրչի (1428 թ).—Տաշեան, Ցուց. 583։

— 115. **Թումայ** քահանա, եղբայր Կարապետ աբեղա գրչի (1428 թ).—Տաշեան, Ցուց. 583։

— 116. **Թումայ** աբեղա, Թուղթ կոկող էր Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 584։

— 117. **Թումաս**, աշակերտ Անդրիանոս (կամ Անդրէաս) կրոնավորի, Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 118. **Թումայ** քահանա, հայր Խաչատուր քահանայի, որի խնդրանոք Մարգարէ աբեղան գրեց մի Աւետարան, Բուխտանից երկրում, 1428 թ.—Նոտարք 90։

— 119. **Թումայ** եպիսկոպոս Բուխտանից երկրի, 1428 թ.— Նոտարք 90։

— 120. **Թումայ**, հայր Ստեփաննոս կրոնավորի, որ Վարդան գրչին, Խոսրովայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1430 թ.—Նոտարք 94, Ձեռ. Վասպ. 358։

— 121. **Թումայ**, հոգևոր հայր Վարդան գրչի, որ Խոսրովայ վանքում գրեց մի Աւետարան, Ստեփանոս կրոնավորի համար, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 359, Նոտարք 94։

— 122. **Թովմաս**, հորեղբայր Մամատիկին ապաշխարողի, որ Ստեփանոս կրոնավորի հետ՝ Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան, Խոսրովայ վանքում, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 359։

— 123. **Թովմա** վրդ. Ագուլիսում օրինակեց Միխայէլ ասո-

րու Գառամուժիւնը, Կիրակոս, Վարդան են 1432 թ.—Tübingen, էջ 108։

— 124. Թովմաս կրոնավոր, Ներսէս կրոնավորի հետ ստացավ Մատթէոս քահանայի օրինակած ժողովածուն, որ միասին նորոգեցին և կազմեցին՝ 1432 թ.—Manus. bibl. nat. էջ 155։

— 125. Թումայ Մարաղացի. գրիչ. գրել և նկարազարդել է մի Աւետարան, Ղարաման գյուղում, 1432 թ.—Ձեռ. Բեռլինի, 7 ա։

— 126. Թումա միաբանակեաց, եղբայր Աղթամարի Զաքարիա նահատակ († 1393) և Դաւիթ († 1433) կաթողիկոսների.— Ակինեան՝ Գաւազանագիրք 110։

— 127. Թումա, վաղամեռիկ որդի Կարապետի, եղբոր Յովհաննէս արեղայի, որ Սոկաց Սուրբկանց գյուղում գնեց մի հին Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 204։

— 128. Թումայ, երկու համանուն քահանաներ կեցան գավառի Ուրանց գյուղում. լավ ընդունելություն էին ցույց տալիս այն փախստականներին, որոնք Փիրբէկի արշավանքի ժամանակ Աղթամարից փախչելով ապաստանել էին այս գյուղը 1433 թ։—Ձեռ. Վասպ. 366։

— 129. Թոմայ վարդապետ Կռանով, «քաջ քարտուղար», Աղթամարի Դաւիթ Գ կաթողիկոսի («1393—1433 թ») հրամանով գրեց մի Յայսմաւուրք.—Հաւաք. 40։

— 130. Թումա, հայր տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Վան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 131. Թումայ տանուտեր, որ Ստեփաննոս երեցին գրել տվեց մի Յայսմաւուրք, Բաղէշ 1436 թ։—Նօտարք 109։

— 132. Թոմաս վարդապետ. երեք ընկերներով պատգամավոր գնաց Կոստանդին կաթողիկոսի կողմից՝ Ֆլորենցիայի ժողովին, որի վճիռներն էլ ստորագրեց «1439 թ».—Ազգապ. 2080, Զամչ. Գ. 475, Տաշեան՝ Ցուց. 111, Պալճեան 87, 141։

— 133. Թումայ, որդի Ասոմ քահանայի (№ 34), հիշված է 1440 թ. երբ այս ծերունի Ասոմը գտել էր իր կորցրած ձեռագիրը (տես Յովհաննէս Յորդարանց)։—Ձեռ. Վասպ. 313։

— 134. Թումայ քահանա, հոգևոր հայր Մարգարէ գրչի, որ Սոկաց Աբբահաման գյուղում մի Աւետարան գրեց՝ Մկրտիչ եպիսկոպոսի համար, 1441 թ.—Նօտարք 124։

— 135. Թումա քահանա, որդի Խաչատուրի, գրիչ. օրինակեց մի Ճաշոց, 1441 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244—5։

— 136. Թումա քահանա, հոգևոր հայր Նախորդի.—անդ 244։

— 137. Թումայ կրոնավոր, գրեց Աղթամարում մի Յայսմաւուրք՝ 1442 Թ.—Նոտարք 128։

— 138. Թումայ որդի Նասրադինի, հորեղբայր տանուտէր Յովհաննէսի, որ Խլաթում օրինակել տվեց մի Աւետարան, 1443 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 139. Թումա միաբան Ոստանի Պոլկի վանից, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 բ։

— 140. Թումայ կրոնավոր, որդի Կարապետ քահանայի, մայրն է Դուամելէք, գրիչ. Աղթամարում, Խաչատուր անուն անձի համար օրինակեց Աւետարանը՝ 1418 Թ. (Ձեռ. Վասպ. 311)։ Սրանից 15 տարի հետո, երբ Փիրիբէկը պաշարեց ու գրավեց Աղթամարը, բոլոր միաբանների հետ փախավ նաև Թումայ կրոնավորը Կեցան գավառի Ուրանց գյուղը, ուր Ներսէս քահանայի համար, գրեց մի ուրիշ Աւետարան, 1433 Թ. (Նոտարք 102, Ձեռ. Վասպ. 365—6)։ Հիշում է նրան իր եղբայրը՝ Դանիէլ գրիչ՝ 1436 Թ. (Ձեռ. Վասպ. 375=Նոտարք 107), երբ Ուրանց գյուղից վերադարձել էին նորից Աղթամար, երկրորդ անգամ 1441 Թ. (Ձեռ. Վասպ. 383), ապա 1444 Թ. (Նոտարք 135)։

— 141. Թումայ վաճառական, մականուն Ղուզիկ, Գաւաշ գյուղից, որդի Կիրակոսի և եղբայր Ծերուն աբեղայի, որ Ս. Վարդան կամ Ապագ վանքի հայրպետն էր։ Երկուսով միասին մի Աւետարան գրել տվին Աղթամարում, Մինասենց Թումայի քրոջ որդի Հայրապետ աբեղայինս։ Նույն Աւետարանը ծաղկեց Մինասենց Թուման և գրեց նաև հիշատակարանը՝ 1444 Թ.—Ձեռ. Վասպ. 385—8, 390—393, Նոտարք 46, 133։

— 142. Թումայ աբեղա, վանահայր և հայրպետ Ս. Վարդան կամ Ապագ վանքի. սրա առաջնորդության օրով վանքի արդյունքները ավելացան, «գումբէթաձև և երկնանման տաճարը ի հիմանց նորոգեցաւ», հողեր ու այգիներ գնվեցին, շինվեց նաև Գաւաշ գյուղի վանքապատկան ձիթահանքը, 1444 Թ.—Ձեռ. Վասպ. 389—390, Նոտարք 46։

— 143. Թումայ Մանկասարենց, տանուտեր Գաւաշ գյուղի, 1444 Թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46։

— 144. Թումա Բըծոնց, Գաւաշեցի, որդի Բաղդասարի. ձմեռը բքաբեր ձիւսի պատահեց Մոկաց Կեցնայ գավառում և

մեռավ։ Եղբայրը՝ Յովհաննէս կրոնավորը նրա հիշատակին մի Մաշտոց գրել տվեց Մինասենց Թումայ գրչին և նվիրեց Ուշտունենց Ս. Յակոբ վանքին, 1445 թ.—Նոտարք 136։

— 145. Թումայ, համանուն երկու աբեղաներ, միաբան Ուշտունենց Ս. Յակոբ վանքում, 1445 թ.—Նոտարք 139։

— 146. Թումայ մահտեսի, հորեղբայր Մկրտիչ և Յովհաննէս կրոնավորների, որոնք Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվին մի Յայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 151։

— 147. Թովմայ, որդի Ստեփանի, տանուտեր Աղնայ գյուղի. իր երկու եղբայրների՝ Գրիգորի և Ղազարի հետ, Իսրայէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, Մոկաց Փառավանք գյուղում, 1447 թ.—Նոտարք 156=Ձեռ. Վասպ. 397, 400։

— 148. Թումայ քահանա, ուսուցիչ Իսրայէլ գրչի, որ Մոկաց Փառավանք գյուղում մի Աւետարան գրեց տանուտէր Թովմայի համար, 1447 թ.—Նոտարք 156, Ձեռ. Վասպ. 400։

— 149. Թումայ աբեղա, քեռի Առաքել աբեղայի, որ Ուշտունենց Բերդաձորի վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1448 թ.—Ձեռ. Վասպ. 400։

— 150. Թումայ, հայր Հայրապետ Շատվանցի աբեղայի, որ Ալթամարում, Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1448 թ.—Նոտարք 160։

— 151. Թովմա վարդապետ Մեծոփեցի, որդի Ստեփանոսի, եղբայր Գորգի մելիքի, Քաջբերունեաց գավառի Աղիովիտ գյուղից. ըստ Յովսէփեանի քննության (Արրտ. 1914, 67) ծնվել է 1376--9 թ. Լենկթիմուրի արշավանքի ժամանակ փախավ ապաստանեց Մշու Ս. Կարապետի վանքը «1387 թ»։ Նախ սովորեց Մեծոփայ վանքում, Յովհաննէս Մեծոփեցու մոտ, ապա Սուխարայ վանքում, Սարգիս Ապրակունեցի վարդապետի մոտ, որ հիմնել էր այնտեղ դպրոց «1389 թ»։ Այստեղից էլ իր 12 ընկերներով միասին գնաց Տաթեւի վանքը՝ շարունակելու իր ուսումը նշանավոր վարդապետ Գրիգոր Տաթեւացու մոտ «1406 թ»։ Ստանալով նրանից վարդապետական աստիճան՝ իբրև վանահայր և առաջնորդ Մեծոփայ վանից՝ հաջորդեց Յովհաննէս Մեծոփեցուն «1411 թ»։ Սրանից էլ ստացավ Մեծոփեցի մականունը։ Այս շրջանին է, որ նա հանել է մեծ անուն, որի համար էլ շատ տեղ ստացել է զանազան գովեստներ։ Ահա իր աշակերտներից մեկի տված գովասանքը նրա մասին. «Յառաջնորդութեան երկրիս Քաջբերունեաց և ամենայն քրիստոնէից ազգի, մեծ հռետորին և քաջ քարտուղարին Թումայ բարունապետին. քան-

զի յայսմ վերջին ժամանակիս՝ սա միայն յայտնեցաւ ճշմարիտ քարոզող ազգիս Հայոց, և պարծանք ամենայն վարդապետաց և կրօնաւորաց։ Վասն զի առնէր և ուսուցանէր ամենեցուն զսրբութիւն և զառաքինութիւն. քանզի արեգակն էր բերան սորա և լոյս փայլէր ի պրակաց բանից, որ շուրջ էին զնովաւ» (Նոտարք 111)։ Այս միջոցին է որ տեղի է ունենում թաթարական մի ասպատակություն, և Մեծոփեցին փախչելով նրանց ձեռքից՝ իր աշակերտներով, վարդապետներով և գրքերով ապաստանում է Մշոյ Առաքելոց վանքը՝ 1439 թ. (Ձեռ. Վեննտ. Ա. 128)։ Այսպիսի մի փախուստ պատմում է նաև մի ուրիշ հիշատակագիր Արճէշից դեպի Բաղէշ, բայց դնում է 1436 թ. (Նոտարք 108)։ Յովհաննէս վրդ. Հերմոնեցու հետ գլուխ կանգնեց Կաթողիկոսական աթոռը Էջմիածին փոխադրելու գործին, որ հղացել էր Տաթևացին, բայց առանց հաջողության։ Մեծոփեցին հաջողեցրեց այս գործը և գումարեց Էջմիածնի համազգային մեծ ժողովը, որի անդամներից մին էլ ինքն էր «1441 թ» (Նոտարք 122)։ Այս եղավ հայ ժողովրդի ազգահավաքման առաջին քայլը, որ հղացել էր Տաթևացին և որ գործադրեց Մեծոփեցին։ Երեք տարի մնալով Էջմիածնում, նորոգեց Էջմիածնի, Հոփսիմէի և Գայիանէի վանքերը, նույն իսկ անձամբ աշխատելով նրանց պարիսպների շինության վրա (Արրտ. 1913, էջ 747)։ Կիրակոս Վիրապեցի կաթողիկոսի անկումից հետո քաշվեց Մեծոփայ վանքը, ուր մնաց մինչև իր մահը՝ «1448 թ» (Ազգապ. 2135)։—(Դաւիթ Բաղիշեցի պատմիչը, որ ծաղկել է ԺԷ դարում, Մեծոփեցու մահվան թվականը դնում է 1446 թ. (Նոտարք 148)։ Իսկ նրա տապանագիրը ցույց է տալիս ՊՂԶ= 1447 թ. «Յաչս կանգնեցաւ ի բարեխօսութիւն Թովմաս մեծի րաբունապետի ամենայն Հայոց, որ գնաց ի նորոգումն Ս. Էջմիածնի և փոխեցաւ առ Աստուած թվ. ՊՂԶ (Նոտարք 156 ծան) կամ ՊՂԷ (անդ 191 ծան)։ Իր գրական գործերն են. 1) Պատմութիւն Լանկթամուրի, որ թեև նույն բռնակալի մանրամասն պատմությունը չէ, բայց բավական կարևոր է Հայաստանում նրա կատարած արշավանքների պատմության համար (տպ. Փարիզ 1860)։ Այս աշխատության մեջ (էջ 44) Մեծոփեցին ասում է, որ իր Պատմութիւնը գրել է սկսել ծերության ժամանակ, երբ 50 տարեկանից ավելի էր։ Սրա համար էլ ներողություն է խնդրում, որ դեպքերի հաջորդականության մեջ ժամանակագրական կարգը չի կարողացել պահել։ Պատմությունը հասնում է մինչև 1440 թ։ 2) Յիշատակարան կամ Պատմութիւն վերահաստատման աթո-

ուոյն էջմիածնի (տպ. Թիֆլիզ 1892)։ 3) Կարգ օծման հիւանդաց, 4) Մեկնութիւն Դանիէլ մարգարէի (Հայաստ. 125), 5) Ծրատ յաղագս պաշտաման եկեղեցւոյ։ Սրանցից դուրս կազմել է Ժամագրքի նոր խմբագրութիւն, մաքրելով տգետ գրիչների սխալներից և ջնջելով ավելորդ ու եկամուտ տարրերը (Յիշատակարանը տես Ձեռ. Վենետ. Ա. 353, Ձեռ. Դաշեան, Բ. 48 բ)։ Այսպես և Սաղմոսն ու Աղօթամատոյցը (Նօտարք 148)։ Ահա թե ինչ է գրում ինքը իր Աղօթամատոյցի սրբագրության համար.— Արդ ես մեղապարտս ի մանկունս ս. եկեղեցւոյ, Նուաստ վարդապետս Թումայ ի յերկրէն Բաջբերունեաց, ի յուխտէ ս. Աստուածածնին, որ այժմ վերաձայնի Մեծոփայ վանք, սրբագրեցի զԱղօթամատոյցս՝ յընտիր ընտիր օրինակաց աստուածաբան վարդապետացն և հոգիընկալ մերոյ ազգիս թարգմանչացն, հրամանաւ սուրբ և երջանիկ վարդապետացն մերոց և համշիրակ և հարազատ հոգևոր եղբարցն և բաժանեցի իններորդ յաստիճան, զաղօթս հասարակաց, զդիւրահաս և զդիւրագիւտ ամենայն իմաստուն մտաց և թողաք բարի յիշատակ զինուորեալ եկեղեցւոյս մեր Հայաստանեայց, ի փառս անմահ Թագաւորին Քրիստոսի և ի լուսաւորութիւն հոգևոր որդւոցն Աստուծոյ, գրոց աշակերտեալ անձանց և քահանայական դասուց միանձանց։ Արդ յերես անկեալ պաղատիմ աղաչանաւք և արտասուալից դիմօք, կողկողագին պաղատանաւք քրիստոսակիր մանկանց Սիոնի, որք գաղափարէք կամ ուսանել կամիք, և կամ սակս մասին սմայ պատահիք, յաւժարութեամբ առանց երկբայութեան և տարակուսի ընդաւրինակէք և զմեզ ի սուրբ յաղաւթս ձեր յիշեցէք. և բազմավէր և թարախալից հոգւոյ և մարմնոյ իմոյ ի տեառնէ Աստուծոյ թողութիւն մեղաց խնդրեցէք։ Արդ ես յետինս ի կարգաւորաց և անգեղջս ի մարդկան ազանց գրեցի զսա ձեռամբ իմով ես Թումայ վարդապետս, յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողացն և ազգականացն ամէն։ Բայց աղաչեմք զիմաստուն գաղափարողդ, զնկարագիր բանիցն մի այլափոխէք, զի բաւական է որ ինչ փոխեալ եղև ի բազում աւրինակաց» (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 38—39, որից երևում է, որ Աղօթամատոյց ասածը Ժամագիրքն է)։ Նույն հիշատակարանը կա նաև Նօտարք, էջ 188, № 222 ձեռագրում, որ հրատարակիչը՝ Փիրղալէմեան՝ գրչինն է կարծում, առանց անդրադառնալու որ Թովմա վրդ. Մեծոփեցու Ժամագրքի բնագրի հիշատակարանն է. մինչդեռ այս ձեռագիրը Նարեկի լուծմունքն է!—Մեծոփեցին օրինակել է նաև մի Աւետա-

րան 1441 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 53 ա), Գրիգոր Տաթևացու Քարոզգիրքը՝ Մեծոփայ վանքում, 1410 թ. (Նօտարք 36, Ձեռ. Կարին. 215), Տաթևացու Լուծմունք Արտաքին գրոց, Արիստոտէլի, Պորփիւրի են (Միսական 239 բ) և ուրիշ շատ գործեր։— Մեծոփեցու ամենակարևոր գրական գործն եմ համարում այն ձեռագիրը, որ նա իր աշակերտ Յովհան Արճիշեցուն արտագրել է տվել Կիրակոս Վիրապեցու ձեռքով Կաֆայից բերված մի բնագրի վրայից, 1411—48 թվերին։ Ձեռագիրը գրված էր Ժ—ԺԱ դարերին. շատ լուրջ լեզվաբանական բազմալեզվյան մի աշխատություն է, որ պատիվ է բերում թէ հեղինակին և թե արտագրողին։ Բովանդակում է քերականական և բառարանական բազմատեսակ տեղեկություններ, որոնց թվում նաև 7 լեզվի այբուբեն (հունարեն, ասորերեն, յատիներեն, վրացերեն, աղվաներեն, ղպտերեն և արաբերեն) և 7 լեզվով աղոթքի նմուշներ (հունարեն, ասորերեն, վրացերեն, պարսկերեն, արաբերեն, քրդերեն և թուրքերեն), [բոլորն էլ հայատառ։ Այս բոլորից կարևոր են 1) քրդերենը, որ այդ լեզվի ամենահին նմուշներից մեկն է և գրված լինելով հայերեն տառադարձությամբ, միակն է ամբողջ հին քրդական գրականության մեջ, որ ներկայացնում է այդ լեզվի ճիշտ հընչումը. 2) Աղվաներեն այբուբենը, որ Մեսրոպից հետո կորել անհետացել էր և շատերի կողմից կասկածի առիթ էր տվել թե որքան ճշմարտախոս է Կորիւնը և թե իրոք Մեսրոպը հնարել է երբևիցե աղվաներեն և վրացերեն այբուբեն։ Այս ձեռագիրը գտնվում է այժմ մեր Մատենադարանում և կրում է 7117 համարը։ Նրա գյուտը պարտական ենք վրացի երիտասարդ անմահանուն գիտնական Իլիա Աբուլաձէին։ (Այս մասին տես ընդարձակ մեր հոդվածը՝ Արմֆանի տեղեկ. 1941, № 3—4, էջ 3—11)։— Մեծոփեցին հասցրել է շատ աշակերտներ, որոնց թվում 7 վարդապետ, 24 ընտիր գրագիր, 160 աբեղա, որոնց համար 35 տարի դաս է խոսել։ Յակոբ Ղրիմեցին Թովմայի խնդրանոք է գրել Ճիւղագրութիւնը և Մեկնութիւն Տումարի (Նօտարք 158—9)։ Մեծոփեցու ինքնաձեռագիրը տե՛ս Շողակաթ 213։ Կոչված է նաև Թովմա Արծրունի (Ես. կԹղ. 6)։— Թովմա Մեծոփեցու արժանավոր գործերից մեկն էլ այն է, որ ՊՁԱ=1432 թվին, Մեծոփայ վանքի ուրիշ միաբանների հետ միասին (Մկրտիչ վարդապետ, Յովհաննէս եպիսկոպոս, Մարտիրոս քահանա) կանգնեցրել է Աղբերկայ որդի՝ Մեռելյարոյց Աստուածատուր վրդ. Արճիշեցու մահարձանը (Նօտարք 99—100, 101), Մեծոփ. 51, Մեծոփ. յիշ. ա. Առաք. պատմ. 322, 336.—Թով-

մէջ՝ Մեծոփ. յիշ. գ.—Թումա՝ Դրնդ. 306, 310, 315. Զքր. սարկ. Գ. 6, 31. Նշշ. լատ. 423.—Թոմայ՝ Ջուղ. 89, 90.—սեռ. Թումայի՝ Նշշ. լատ. 413.—տես և Տաշեան, Ցուց. 418 և 1092. Զարբ. Թրգմ. 266, 391. Նոր մատեն. 162—8. Աթան. յուշ. ժղ. Այրարատ 163, 357. Հայապ. 549. Ձեռ. Մխ.Նխ. 19 ա. Ձեռ. Վիեն. 15. Rapport Belgique 180.—բայց մանաւանդ՝ Գ. վ. Յովսէփեանի «Նոր նիւթեր Թովմա Մեծոփեցու կենսագրութեան», Արար. 1913, էջ 738—767 և 1151—1161, 1914, էջ 67—84։

— 152. Թումայ Մեծոփեցի, գրիչ. որդի մահտեսի Ղազարի, Մեծոփայ վանքում աշակերտեց Թովմա վրդ. Մեծոփեցուն (պատմիչ) և եղաւ գրիչ։ Գրել է մի Տօնացոյց 1441 թ. (Նօտարք 124—5), մի Աւետարան 1449 թ. (անդ 162) և թերևս ուրիշ գործեր էլ։

— 153. Թումա, գրիչ. Բաշբերունեաց Զորոյ վանքում, իր հոգևոր եղբայր Հայրապետ կրօնաւորի թախանձանքին զիջելով, հակառակ իր ծերութեան և դողդոջ մատներին, օրինակեց Աւետարանը, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 691։

— 154. Թումա, հայր Կարապետ միայնակեցի, որ Ցիպնայ դաստակ վանքում, Յովանէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Վասպ. 405։

— 155. Թումա վարդապետ, ուսուցիչ Յովհաննէս քահանայի, որ Արճէշում, Վարդան գրակալի համար գրեց մի Աւետարան, 1450 թ. երբ Թուման արդեն մեռած էր։—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 156. Թովմա աբեղա, գրիչ. օրինակել է Նարեկը՝ 1451 թ.—Ձեռ. Կարին. 175։

— 157. Թումայ քահանա, որդի Ստեփաննոսի և եղբայր մահտեսի Պօղոսի, որ Ջերմաձորի Փոքր Ակոռի վանքում, Ստեփաննոս կրօնաւորին գրել տվեց Աւետարանը, 1451 թ.—Նօտարք էջ 168։

— 158. Թումայ, որդի Վարդաղատի, գեղապետ (ռէս) Շատախ գավառի Ցինենից գյուղի, 1451 թ.—Նօտարք 168։

— 159. Թովմայ, իր Խաթուն Մելիք կնոջ հետ Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1452 թ.—Նօտարք 169։

— 160. Թումայ, հանգուցյալ որդի Սուլտան Մելէք տիկնոջ, որ Գրիգոր քահանային, Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413։

— 161. Թումա սարկավագ, որդի նույն Գրիգոր քահանայի

(տես նախորդ №), որ Աղթամարում օրինակում էր Ավետարանը. նույն միջոցին այս Թումա սարկավագն էլ թուղթ էր կոկում, 1452 թ.—Ջեռ. Վասպ. 415։

— 162. Թումա ոմն, նույն ձեռագրի համար թուղթ բերողն էր, 1452 թ.—Ջեռ. Վասպ. 414։

— 163. Թումա ոմն, ազգական նույն Սուլտան Մելէք տիկնոջ (№ 160), 1452 թ.—Ջեռ. Վասպ. 415։

— 164. Թումա միակեց, որդի Խաչիկի, մայրն է Աղիզմելէք, մորեղբայր և ուսուցիչ Մինասենց Թովմա վարդապետ նշանավոր գրչի, որ երախտագիտությամբ հաճախ հիշում է նրան։ Այսպես 1420 թ. (Ջեռ. Վասպ. 323), 1428 թ. (Նոտարք 89), 1444 թ. (Ջեռ. Վասպ. 388), և 1445 թ. (Նոտարք 146)։ Ինքն էլ գրիչ է. օրինակել է մի Ճաշոց՝ Աղթամար 1421 (Նոտարք 67)։ Վերջին անգամ հիշում է նրան իր եղբայրը Գրիգոր քահանա (№ 610) կոչելով նրան «հուչակաւոր քարտուղար» 1452 թ.—Ջեռ. Վասպ. 415։

— 165. Թովմա վարդապետ Մինասենց, Աղթամարցի, գրիչ, նկարիչ, երգիչ և պատմիչ. Աղթամարայ վանքի միաբաններից էր։ Ծաղկել է Դաւիթ Գ և Զաքարիա (մեծն) կաթուղիկոսների ժամանակ։ Իր գերդաստանը ծանոթ է մեզ ձեռագիրների հիշատակարաններից. այսպես՝ հայրն է Սիմէոն, մայրը Արղուն, քեռին՝ Թումա միակեց, հորեղբայրը՝ Վարդան (սրա որդին Մկրտիչ կրոնավոր), քույրերն են Անղալատ, Ոսկիտիկին, Էմնա խաթուն (Նոտարք 146, 159), քեռայրն է Խաչիկ կամ Խաչատուր, քրոջ որդիներն են Ներսէս աբեղա (որ ապա եղավ եպիսկոպոս՝ Նոտարք 159, 214) և Հայրապետ կրոնավոր (1428 թվին կոչում է սրան «նորաբողբոջ», որ ավելի ուշ պիտի լիներ նշանավոր գրիչ)։ Սովորել է իր քեռի՝ Թումա միակեցի մոտ, որին հիշում է հաճախ երախտագիտությամբ։ Հասցրել է աշակերտներ, որոնցից հատկապես հիշատակության արժանի են իր քրոջ էմնայի որդիքը՝ Հայրապետ աբեղան և Ներսէս եպիսկոպոսը։ Բայց մանավանդ Աղթամարի Ստեփաննոս Դ կաթուղիկոսը (1465—1489), որ իր քրոջ որդին էր։ Ստեփաննոսը նվիրեց նրան Դիւաբոյնի Ս. Յարութիւն վանքը՝ Աղթամարի մոտ (Ակինեան, Գաւազանագիրք 118)։ Թովմա Մինասենցը թողել է բազմաթիվ ձեռագիրներ, որոնցից մեզ ծանոթ են՝ 1) Աւետարան 1420 թ. (Ջեռ. Վասպ. 322), 2) Աւետարան 1425 թ. (անդ 352), 3) Աւետարան 1428 թ. (Նոտարք 87), 4) Մաշտոց 1445 թ. ուր մի ընդարձակ հիշատակարանում

տալիս է Ռշտունեաց Ս. Յակոբ վանքի շինության պատմությունը՝ Նոտարք 136—9), 5) Գանձարան 1445 թ. (անդ 146), 6) Նարեկ 1452 թ. (անդ 170)։ Այս բոլորն էլ Աղթամարում։ Բացի սրանցից իր քրոջ որդի Հայրապետ կրոնավորին կամ մի ուրիշին գրել տվել և ինքն էլ ծաղկել է 1) Ավետարան 1441 թ. (Ձեռ. Վասպ. 384), 2) Ավետարան 1444 թ. (Նոտարք 133 և Ձեռ. Վասպ. 387—8, 392—3), և թերևս 3) Ավետարան 1446 թ. (Նոտարք 152=Ձեռ. Վասպ. 396)։ Այս բոլորը նմանապես Աղթամարում։ Ամբողջության համար հիշենք նաև մի հիշատակարան 1440 թվից, ուր պատմում է Աղթամարի գրավումը և կողոպուտը՝ քուրդ ամիր Փիրիբէգի ձեռքով՝ 1431 թ. (Ձեռ. Վասպ. 312—3)։ Չեմ հավատում այն հարևանցի տեղեկության, որ տալիս է Լալայանը (Ձեռ. Վասպ. 317), իբրև թե № 144 Ավետարանը 1419 թվին ծաղկել է Մինասենց Թուման։ Հիշատակարաններում այդպիսի տեղեկություն չկա։ Այլ գրված է միայն՝ թէ ձեռագիրը գրել է Թումա աբեղան Պատրկայ վանքում, որ Մինասենց Թումայի կացարանը չէ եղած։ Այս բոլորը գնում են 1420 թվից մինչև 1452 թ. որ անում է 32 տարի։ Այս թվականից քիչ հետո էլ պետք է վախճանված լինի։ Նրա մասին վերջին հիշատակությունը 1490 թվից է, որ տալիս է իր քրոջ որդի Հայրապետ աբեղան՝ Աղթամարում արտագրած իր մի Ավետարանում։ Բայց այս հիշատակությունը (ծնողների հետ միասին!) անցած գնացած և արդեն մոռացված մի բանի ձևն ունի (Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ)։ Թովմաս Մինասենցի կարևորագույն աշխատությունն է իր Տարեգրութիւնը, որից հատվածներ մեջ է բերում Փիրղալէմեանը Նոտարքում, էջ 41, 57, 71, 74, 77, 87, 95, 102, 104, 118, 122։ Իսկ ավելի ամփոփ տեղեկություն է տալիս իր «Չորս ընկերք, որ է Ճանապարհորդութիւն Վանայ մինչև Կոստանդնուպօլիս» աշխատության մեջ (տպ. Թիֆլիս 1882), էջ 176։ Ըստ այս տեղեկության, Թովմաս Մինասենցի Տարեգրութիւնը սկսում է 1419 թվից և պատմում է 33 տարիների պատմությունը։ Նախ պատմում է մորեխի մեծ պատուհասը, ապա Շահռուխի արշավանքը, Ղարա-Յուսուփի մահը, Սքանդարի կռիվները՝ շրջակա ամիրաների հետ, Վանի առումը, Մակուայ բերդի գրավումը, Մըմրուտ լեռան հրաբուխի ժայթքումը, որ ուրիշ հայ պատմագրերի մոտ անհայտ է մնում։ Պատմությունը հասնում է մինչև 1452 թիվը (տես Ձեռ. Դաշեան, Բ. 57 բ և Հայապ. 127)։—Թէ իբրև գրիչ և թե իբրև նկարիչ կամ ծաղկող՝ գովում են նրա գործերը. բայց ահա թե ինչ է

ասում ինքը համեստությամբ. «Անարհեստ ծաղկիս և անգուն դեղիս, աղաչեմ, չլինել մեղադիր, զի կար իմ և իմաստք այսչափ էր» (Ձեռ. Վասպ. 384)։—Թովմա Մինասենցը նաև նշանավոր երաժիշտ պետք է եղած լինի. և նա է որ հիշված է 1441 թ. «գմեծ փիլիսոփայ զԹումայ՝ սուրբ տաճարիս Աղթամարի» (Ձեռ. Վասպ. 384), ինչպես ընդունում է Նոտարք 127 (համմ. նաև Ազգապ. 221?)։

— 166. Թումայ սարկավագ Աղթամարցի, Թուղթ էր կոկում և օգնում Գրիգոր քահանային՝ արտագրելու համար Ավետարանը, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։

— 167. Թումայ, որդի Մարտիրոսի և հանգուցյալ եղբայր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 582.

— 168. Թումայ, հանգուցյալ որդի տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 582։

— 169. Թովմայ, «դեռաբոյս զաւակ» Յովհաննէս քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում, Իսրայէլ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— 170. Թովմայ աբեղա, գրիչ. օրինակեց Ավետարանը Վրթանէս քահանայի համար, 1456 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 30 բ։

— 171. Թումայ, վարժապետ ժահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի, որ ստացավ մի Ցայսմաւուրք, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 բ։

— 172. Թումայ կրոնավոր, Մելքիսեդ քահանային գրել տվեց մի Գանձարան, Շատուան գյուղում, 1458 թ.—Նոտարք, էջ 189։

— 173. Թումա պարոն, հայր Յոհանէս աբեղայի, որ Աղբակի Ասփսթան գյուղում ստացավ մի Ավետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— 174. Թումայ, մերձավոր Ստեփաննոսի, որ Կեցանայ ձորի Սորավանք գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 428։

— 175. Թովմա վարդապետ, Մեծոփայ վանքից, աշակերտ Գրիգոր աբեղայի. որդի Մուրատի. մայրն է Մարգարիտ (սրանով իմացվում է որ Թովմա վրդ. Մեծոփեցին չէ)։ Ծնդրակատար վանքում օրինակել է «Լուծմունք Նարեկի», 1458 թ.—Նոտարք 188—9 (այս մասին տես վերը, էջ 331)։

— 176. Թումայ, տանուտէր Եղեգեց գյուղի, «կամակից և կարեկից» եղավ այն Աւետարանի գրութեան, որ օրինակեց Յովհաննէս քահանան Կեցանայ ձորի Սորավանք գյուղում, 1458 թ.— Ձեռ. Վասպ. 429։

— 177. Թումայ, ռայս (ռէս)՝ նույն գյուղի, որ նույնպես «կամակից և կարեկից» եղավ հիշյալ Աւետարանի գրութեան, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 429։

— 178. Թումայ, որդի Հաշտուրի (=Խաչատուր), Ներսէս արեղայի գրել տվեց Աղթամարում մի Աւետարան, որ նվիրեց Ս. Վարդանի վանքին, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433—4, Նոտարք, էջ 197։

— 179. Թումայ եպիսկոպոս, առաջնորդ նույն Ս. Վարդանի վանքի, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 434, Նոտարք 197։

— 180. Թումայ, ռէս կամ գեղապետ, որ վկայում է թե նույն Աւետարանը ընծայվել է Ս. Վարդան վանքին, 1460 թ.— Ձեռ. Վասպ. 434, Նոտարք 197։

— 181. Թումայ, որդի Առաքելի (№ 85) և եղբայր Խոջա Խաչատուրի, որ Յովհաննէս Մանկասարենց գրչին գրել տվեց մի Աւետարան, Արճէշ 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— 182. Թումայ, եղբորորդի տանուտէր Յովհաննէսի, որ գնեց մի հին Աւետարան, 1461 թ.—Ձեռ. Վասպ. 226։

— 183. Թումա րաբունի և «տիեզերալոյս վարդապետ», ուսուցիչ Յովհաննէս Մանկասարենց գրչի, որ օրինակել է երկու Աւետարան, 1456 և 1462 թ.—Ձեռ. Վասպ. 426 (կամ Թովմա Մինասենց վարդապետն է և կամ Թովմա Մեծոփեցի գրիչը № 152)։

— 184. Թումա, որդի տանուտէր Աստուածատուրի, որ Բըշտունեաց Բերդաձորի վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— 185. Թումայ, որդի Կիրակոս Սարփեցու, որ գնի միջնորդ եղավ տանուտէր Էդիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 186. Թումայ հայրապետ, իր ծնողների հիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ Վանայ ծովի Լիմ կղզում, 1463 թ.— Նոտարք 210։

— 187. Թումայ քահանայ. գրեց մի Մայր Մաշտոց Աղթամարում, տանուտէր Աւիտոնի համար, 1463 թ.—Նոտարք 216։

— 188. Թումայ, քահանա Վանի Պօղոս-Պետրոս եկեղեցու, 1465 թ.—Նոտարք 222։

— 189. Թովմայ քահանա, գրիչ. օրինակեց Մաշտոցը Խալկիճ գյուղի Ս. Աստուածածին եկեղեցում, 1465 թ.—Թորոս աղբ. Ա. 77։

— 190. Թումայ, հայր Մկրտիչ աբեղայի, որ Աղթամարում, Յովհաննէս քահանայի համար օրինակեց Գանձարանը, 1466 թ.—Նօտարք 224։

— 191. Թումայ, որդի Յոհաննէս քահանայի, որ Աղթամարում, Մկրտիչ աբեղային գրել տվեց մի Գանձարան, 1466 թ.—Նոտարք 224։

— 192. Թումա եպիսկոպոս, նվիրակ էր Իլվով քաղաքում (էջմիածնի կամ Երուսաղէմի կողմից), 1467 թ.—Պատմ. Անւոյ 110 > Նոտարք 228, Ազգապ. 2175։

— 193. Թումա, հայր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 194. Թլումա. որդի Սարգիս քահանայի և թոռն նախորդ Թումայի.—անդ։

— 195. Թումայ, հոգևոր հայր Կիրակոս երեցի, որ Բաղէշում և Աղթամարում գրեց մի Ճառընտիր, օգնությամբ նույն Թումայի, 1467 թ.—Նոտարք 230։

— 196. Թումայ, հայր Ղազար գրչի, որ Խիզանի Գամաղիէլ վանքում, Սարգսի համար գրեց մի Աւետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 452։

— 197. Թումայ, մերձավոր Սարգսի, որ Խիզանի Գամաղիէլ վանքում, Ղազար գրչին գրել տվեց մի Աւետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 452։

— 198. Թումա քահանա, հոգևոր հայր և ուսուցիչ գրչության Գրիգոր գրչի, որ օրինակեց Աղթամարում մի Աւետարան՝ Ջուլալ տիկնոջ համար, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 460։

— 199. Թումա կրոնավոր, որդի Ստեփանոսի, երկուսն էլ մերձավոր Փաշայի, որ Թովմա Առաքեալի վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 464։

— 200. Թումայ քահանա, հայր Յովհաննէս քահանայի, որ Խիզանում, Սահակ, Ատոմ և Փաշա անուն անձերի համար գրեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— 201. Թումա, հայր տանուտեր Պետրոսի, որ Վանում, Ազարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 475։

— 202. Թումայ քահնա, որդի Գրիգոր քահանայի. գրիչ. Աղթամարում օրինակեց մի Աւետարան, տանուտէր Սաղաղայի համար, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 481—2։

— 203. Թումա, որի հիշատակին մի խաչքար կա Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետ եկեղեցում. 1478 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 350։

— 204. Թումայ, որդի Սահակի և Թոռն Խոսրովի, որ Բրոնաշէն գյուղում Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 205. Թումայ քահնա Նախիջևանի. շնորհեց Յայսմաւուրքի օրինակը Գրիգոր աբեղային՝ արտագրութեան համար, 1481 թ.– Սմբատեանց՝ Երնջակ 301։

— 206. Թումա աբեղա, հորեղբայր Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 207. Թումայ Վանեցի, էր որդիքն են Բարխմշայ, Խդըրշայ և Սատոմ, երեքն էլ խոջա և տանուտէր Վանում, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 495—6։

— 208. Թումա, որդի Յովհաննէսի և եղբայր Ղարիպշահի (տես այս անունը), որ Նիկողայոս եպիսկոպոսին՝ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501—2։

— 209. Թումա, եղբայր Յովհաննէս եպիսկոպոսի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 503։

— 210. Թումա, որդի Եղգանբախշի և հանգուցյալ եղբայր խոջա Ղուրաթի, որ Արաշ գեղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 211. Թումա, որդի տանուտէր Արաբշահի, որ Աղբակի Էրընկանի գյուղում,/ Մարգարայ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 212. Թումայ, որդի Ստեփաննոսի և մորեղբայր Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 213. Թումայ «քաջարի և ընտրեալ փիլիսոփայ», ուսուցիչ Յակոբ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը՝ Խոջա Միրիջանի համար, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 214. Թովմա (կամ Թովմաս) Ա. Սոգուղլուեցի, կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց Շմաւոն Ա. կաթուղիկոսին և իրեն էլ

հաջորդեց Առաքել կաթողիկոսը։ Թվականը շատ անորոշ է։ Ըստ Ճալեթի վանքում գտնված իր տապանաքարի՝ մեռել է 1475 թ. [«Ի թվ. ՋԻԴ հանգիստ Թովմայ կաթողիկոսին»]։ Կա մի արձանագրություն էլ, որով Առաքել կաթողիկոսը գնել է Ճալէթ գյուղը ՋԿ=1511 թ. բայց մի այլ տեղեկությամբ Առաքելը (տես № 102) հաջորդել է Թովմային 1481 թ. և նստել է մինչև 1493 թ։ Ըստ մի այլ արձանագրության, որ գտնվում է Ճալեթում, «Ես տէր Առաքեալ Թղկա (խմմ կաթողիկոս) կանգնեցի սբ խաչս և նորոգեցի եկեղեցւոյս գլուխն... ՋԻԴ (=1475) թվոյ տէր Թովմասայ կաթողիկոսին Աղուանից, որ ուլոքն նստի պատրիարք շնորհօք զտան» (Բարխուտ, Աղուանից երկ. 249)։ Պակաս մնացած բառը, ինչպես և վերջին բառերի անհաջող ընթերցումը թույլ չեն տալիս որոշելու թե 1475 թիվը ում համար է։ Բարխուտ. Աղուանից երկ. 249—250, Թովման մեռած է համարում 1475 թ. իսկ Պատմ. աղվ. Բ. 18 ասում է որ Թովման հաջորդել է Շմաւոն Ա-ին 1482 թ. և մեռել է Ճալեթի վանքում 1495 թ։ Այս վերջին թվականը ձեռք բերելու համար անշուշտ հեղինակը տապանագրի ՋԻԴ=1475 թիվը կարդացել կամ ուղղել է ՋԽԴ=1495։—Տես և Ջամբռ 78, Շահխաթ. Բ. 380—81, Ջեռ. Դաղեան, Ա. 89 բ։

— 215. Թումայ կրոնավոր, աշակերտ և հոգևոր որդի Աղթամարի Ստեփաննոս կաթողիկոսի եղբոր՝ Ներսէս արքեպիսկոպոսի. գրիչ. գրել է մի Աւետարան Աղթամարում, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 446։ (Ակինեան, Գաւազանագիրք 115 ՋԽԴ=1495 թվականը ուղղում է ՋԺԴ=1465)։

— 216. Թումայ, որդի Դանիէլի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակեց Աւետարանը, 1497 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 217. Թումայ աբեղա Աղթամարցի, գրեց մի Մաշտոց՝ Բուշերիկում, 1499 թ.—Հացունի, Դաստիար. էջ 62։

— 218. Թոմաս, իշխան Աղուանից, որդի Աւան մեծ իշխանի և հայր Ջալալի (ԺԵ դար).—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 132, Արցախ 107։

— 219. Թումայ Կաֆայեցի, աշակերտ Վրթանէս վարդապետի. գրեց մի տաղ՝ նոր վկա Պարոնլոյսի վրա, որ նահատակվեց Կաֆայում, 1567 թ։ Տաղը՝ 20 տուն, հրատարակված է Նոր վկ. 409—12 (տես և Ջեռ. Կարին. էջ 2)։

— 220. Թովմաս Գաղատացի, պատրիարք Պոլսի «1581—87 թ». հաջորդեց Յովհաննէս Ա-ին.—Ազգապ. 2284։

— 221. Թումայ եպիսկոպոս Տաթեւու, միաբան Հարանց անապատի («1608 թ»), ուր և ուսուցիչ էր. ապա՝ Կիրակոս քահանայի հետ գնաց Հոչանց գյուղը, ուր միասին հիմնեցին նոր անապատ։ Դարձավ առաջնորդ և վարդապետ Շամախու։—Առաք. պատմ. 192, 198։

— 222. Թումայ վարդապետ տաղասաց. ունի թուրքերեն երգեր (ԺԶ կամ ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 892։

— 223. Թովմաս Վանանդեցի (ի Գողթնեաց), հայ տպագրության ռահվիրաներից.—Ջուղ. 122, Զամչ. Գ. 662—3, Տաշեան, Ցուց. 670, Լէօ, Հայկ. տպագր. Ա. 324 են։

— 224. Թոմաս հերձվածող. Նոր-Ջուղայում սկսեց քարոզել մի նոր հերձված. Քրիստոսին համարում էր սոսկ մարդ, մերժում էր մեռելների հարությունը և վերջին դատաստանը, չէր ընդունում ոչ խաչի նշանը, ոչ հաղորդությունը և ոչ 7 խորհուրդները, չէր ճանաչում հոգևորականություն և եկեղեցական նվիրապետություն։ Խաչատուր Կեսարացին ժողով գումարելով՝ դատապարտեց նրան և վտարեց (1642)։—Չքր. սարկ. Բ. 69 կոչում է նրան «ուսթա Թումիկ (դերձակ)». Ջուղ. 115. ընդարձակ տես Անյայտ աղանդներ, էջ 23—40։

— 225. Թովմա վրդ. Վանանդեցի. գրել է «Ոտանաւոր ներբող սրբազան տեղեաց Հայոց աշխարհի» 1655 թ.—Այրարատ 164, 177, 255, 263, 315։

— 226. Թովմաս Բերիացի, կաթողիկամիտ. կաշառքով գնեց Պոլսի պատրիարքական աթոռը, բայց չկարողանալով վճարել խոստացած կաշառքը, դուրս վտարվեց և փախավ Հռոմ (1644)։ Վերադառնալով Պոլիս՝ պատրիարքարանի տուրքը բարձրացրեց և աթոռը Եպարքոսից գնելով՝ նորից գահ բարձրացավ, հակառակ ժողովրդի կամքի (1657)։ Թովմասը բռնությամբ էր վարում իր պաշտոնը։ Ժողովուրդը զայրացած՝ ամբաստանեց նրան պետության առաջ։ Դատապարտվեց ու բանտարկվեց և բանտի մեջ թունավորվելով՝ սպանվեց ի վրեժ (1658 թ)։—Ազգապ. 2470, 2518—21։

— 227. Թովմա Ա Ուշտունի, մոր կողմից ազնվական էր, իսկ հոր կողմից Ուշտունեաց Ցիրինչայ գյուղից, որով և կոչվում է Ցիրինճցի (նաև Տողլանբէկեան)։ Հաջորդեց Յովհաննէս Թիւթիւնճիին և նստավ կաթողիկոս Աղթամարի «1681—1698 թ»։ Իր

շքախմբով գնաց Էջմիածին և Եղիազար կաթուղիկոսից ստացավ իր օծումը (1683), որով և Աղթամարի աթոռը հպատակեցրեց Էջմիածնին. Եղիազար կաթուղիկոսի մահից հետո, գժտվելով Էջմիածնի հետ, Նահապետ կաթուղիկոսը պաշտոնանկ արեց նրան և Ավետիս եպիսկոպոսին կաթուղիկոս օծելով՝ Աղթամար ուղարկեց (1697)։ Թովմա կաթուղիկոսն էլ ոչ միայն վռնդեց նրան, այլ և ի հեճուկս Վանն էլ գրավելով՝ իր թեմին միացրեց։ Ապա կաթուղիկոս օծեց Սահակ Արծկեցուն՝ նախ իբրև իրեն օգնական և հետո իբրև հաջորդ։—Հաւաք. 63, Ազգապ. 2648, 2664, 2868. Ակինեան՝ Գաւազանագիրք, էջ 142—145։

— 228. **Թովմաս** Խօշկաշինեցի, Իսավերտենց, ունիթոռական, գավառահայր Նախիջևանի։ Թուրք-պարսկական պատերազմի ժամանակ, երբ Արևելյան Հայաստանը տակնուվրա էր լինում, հավաքեց ավելի կաթոլիկ հայ դուրս հանեց երկրից և մեծ դժվարությամբ անցնելով Մեծ ու Փոքր Հայքից, բերեց բնակեցրեց Զմիւռնիա (ԺԸ դարի կեսին)։ Նորից է խմբագրել և հրատարակել լատինական Պատարագամատույցի (Միսալ) հայ թարգմանությունը (Վենետիկ 1768)։—Տաշեան, Ցուց. 30[5], Սիսական 406—408, Գաթըրճեան՝ Պարգմ. 468։

— 229. **Թովմա** Բ. Աղթամարցի, «Գագիկ թագավորի ցեղից», կաթուղիկոս Աղթամարի «1761—1783 թ». հաջորդեց Գրիգոր Զ կաթուղիկոսին. գնաց Էջմիածին և Ցակոբ կաթուղիկոսին հնազանդություն հայտնելով՝ արձակվեց նզովքից։ Իր ժամանակ, Աբրահամ վրդ. Մոկացին, քուրդ բէգ Աւդուլլահ խանի պաշտպանությամբ, հայտարարեց իրեն ինքնագլուխ կաթուղիկոս Մոկաց։ Թովման նզովեց նրան, բայց անօգուտ։ Թովման շինել է Աղթամարի դարպասը և եկեղեցու գավիթը։—Ջամբռ 97, Հաւաք. 64, Ակինեան՝ Գաւազանագիրք 152—158, Ազգապ. 3073։

— 230. **Թումա** Բ Ամկեցի, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Գրիգոր Ժ Գաւաշցու և նախորդ Ղազար Բ Մոկացու (ԺԸ դար)։—Հաւաք. 63 (կեղծիք)։

— 231. **Թովմաս** դպիր, արտագրել է Սոկրատը, ժամանակն անհայտ.—Սոկր. յաջ. էջ ժգ, ժէ, ձա։ (Ըստ Մ. վ. Տէր-Մովսէսեան, անդ՝ ձա սույն Թովման՝ Փիլոն Տիրակացու քարտուղարն է հենց, ուրեմն և 696 թվից)։

— 232. **Թումայ** ուսումնական, «որ էր յԱտրպատական նահանգէ, ի մասնէ Գողթնեայց, ի գեղջէ Վանանդայ». մի ինչ որ պատճառով գնացել էր Հալէպ քաղաքը, ուր գրել տվեց Պօղոս ա-

ռաքյալի թղթերի թարգմանությունը հայերենից արաբերեն։ Ձեռագիրը գտնվում է Աթոսի վանքում. գրավ Մառը։ Թվականն անհայտ.—տես այս մասին Բանասեր 1901, 47։

*ԹՈՏՈՐԻԿ, ար. < հուն. Θεόδωρος > Թեոդորոս անվան նոր հուն. Todori ձևից. հմմտ. Theodoricus (ֆրանս. Thêodoric) հիմնադիր Օստրոգոթների կայսրության (454—526) և մի քանի ուրիշ Վիսիգոթ թագավորներ։ Մեր մեջ անսովոր է. բայց կա մի անգամ հիշված՝

— Թատորիկ Ուռհայեցի, Արջքթոնք ցեղից, եղբայր Իշխանի. կուրացվեց Փիլառտոս իշխանի ձեռքով՝ 1083 թ.—սեռ. Թորոնկայ (այլ ձ. Թոտոռկայ) Ուռհ. 224։

*ԹՈՐԱՄԱՆ, ար. < ժղ. թրք. toraman «գիրուկ, թմբլիկ» բառից. կամ եղել է անձնանուն և կամ մականուն, որից և Թորամանեան ազգանունը։ Այս ազգանունն էր կրում ճարտարապետ և հայ ճարտարապետության պատմության հռչակավոր մասնագետ Թորոս Թորամանյանը (Շապին-Գարահիսարցի), որ մեռավ Երևանում, 1934 թ։

*ԹՈՐԱՄԻՇ, ար. < թրք. تورمك töremek «աճել, սերել, առաջ գալ» բայի անց. դերբ. töremiš «աճած, սերած» ձևից։ Իբրև անձնանուն գտնում եմ հիշված մեր մեջ 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ)։ Սրա վրիպակ գրչությունն եմ համարում Թարամիշ, որ տես առանձին։

*ԹՈՐԱՍԱՆ, < թրք. تورسن töresen «աճիս, սերիս, բազմանաս» բառից. հմմտ. նախորդը Թորամիշ։ Իբրև ար. անձնանուն գտնում եմ մեր մեջ մի անգամ գործածված 1671 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 80 բ) և մի անգամ էլ իբր իգ.՝ անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վասպ. 186 (Թուրասան խաթուն ձևով)։

*ԹՈՐԳՈՄ, ար. < եբր. תגרמה Thogarmā անունից. այս անունով հայտնի է Նոյի որդի Յաբեթի որդի Գամերի երրորդ որդին (Ծն. Ժ. 3 և Ա. Մնաց. ա. 6)։—Խորենացու մոտ (Ա. ե) դարձել է Նոյի թոռան թոռ՝ Թորգոմի հայր դնելով Թիրասը, որ ըստ Ծն. Ժ. 2 Գամերի եղբայրն է և Թորգոմի հորեղբայրը։ Այս կետը նկատում է և ինքը Խորենացին. «Նոյնպէս և զԹիրաս չորրորդ ի Նոյէ, իսկ Յաբեթայ երրորդ. թեպէտ ըստ մերում թարգմանութեան ոչ ուրեք ի բնագրի գտանի»։—Եբր. բառի ճիշտ ընթերցվածն է Thogarmā, բայց կա նաև תרגמה Thorgamā տարբերակը։ Ըստ այսմ հունարեն տառադարձված է Θοργαμά, Θεργαμά, Θοργομά, որից էլ հյ. Թորգոմա (Հիւբշ. 335)։ Ս. Գրքում

կա նաև Beith Thogarmā կոչված երկիրը հյուսիսում. հմմտ. Եւ ի տանէ Թորգոմայ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին զվաճառս քո. Եզեկ. իէ. 14. Գոմեր և ամենեքին որ շուրջ են զնովաւ. և տունն Թորգոմայ ի ծագացն հիւսիսոյ, և ամենեքին որ շուրջ զնովաւ, և ազգք բազումք ընդ քեզ. Եզեկ. լը. 6. Սրա հետ նույն են դնում ոմանք բաբե. Tilgarimmu տեղանունը Մելիտինէ-ում. Ս. Գրքի մեկնիչները «տուն Թորգոմայ» ասելով հասկացել են Հայաստանը (Gesenius 870). հմմտ. Եւս. քր. Բ. 2 Θοργαμὰ ἐξ οὗ ᾿Αρμένιοι, որ և ընդունում են հայերը (Ագաթ. Բուզ. ևն տես տակը). Հունարենում «տուն Թորգոմայ» դարձել է ἐξ οἴκου Θογαρμὰ, οἶκος τοῦ Θοργαμὰ, որոնց մեջ Θογαρμὰ անհոլով է. Հայերենում գրվելով «տուն Թորգոմայ» ենթադրվել է թե ուղղականն է Թորգոմ. մինչդեռ բուն ուղղական ձևն է Թորգոմա. ինչպես ունինք Ծն. ժ. 3, Ա Մնաց. ա. 6, իսկ Թորգոմայ նրա սեռականն է (հմմտ. ուղ. Յուդա, սեռ. Յուդայ)։ Այսպիսով ահա առաջացել է հյ.՝

— Թորգոմ, որդի Թիրասի, թոռան թոռ Նոյ նահապետի, որից սերել են հայերը.—Խոր. Ա. ե, Թ. Յհ. կթ. յոջ. ա. Ուխտ. Ա. է, ժզ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. բ, ժե. Վրդ. է. Պտմ. վր. Ա. ժզ. Մխ. այրիվ. 17. Սամ. անեց. 10, 14, 41. Մին. համզ. 2. Նհպտք. 88.—որ և կոչված է Թակլադ՝ Խոր. Ա. Թ.—սեռ. Թորգոմայ (հատկապես ազգ Թորգոմայ, տուն Թորգոմայ, որդիք Թորգոմայ, բուակն Թորգոմայ, որոնք բոլոր գործածված են «հայ ու Հայաստան» իմաստով) Ագաթ. § 16, 776, 796. Բուզ. յոջ. Դ. ա. Ե. լ. Խոր. Ա. ժ, ժբ. Յհ. կթ. յոջ. ա, ժբ, իե, իը, խե. Մ. մաշտ. 290 բ, 296 ա, 308 ա, 319 բ, 331 ա. Գիրք թղ. դ. կանոն. 52, 58, 60. Մաշտ. 690. Ժմ. 592. Շար. բ, իբ, լա, կզ—կը, ձթ, ղբ, էջ 451. Ուխտ. Ա. ժզ. Շնորհ. վիպ. 104, 107. Թէոդ. քաթ. 147. Պտմ. ներս. 9. Վրք. շնորհ. 18, 66. Պարականոն շար. 33, 36, 66, 114, 156. Օրբ. հկճռ. ա, է. Սամ. անեց. շար. 144. Ջքր. եպս. 280. Կանոնք սահ. 127. Տաթև. հարց. 544. Խոր. ճառ Հռիփ. 305, 310. Ղև. լդ, խբ. Գր. նար. մատ. 375. Կղկնտ. Գ. իբ. Վրդ. գ, ը. Վրդն. լս. 45, 56, 65, 80. Միխ. աս. ա, բ. Պտմ. վր. ա, բ. Մաղաք. աբ. 3. Պտմ. ռուբ. 220. Վահր. ոտ. 215, 228. Օրբ. ւ, լա. Արծր. Դ. ժբ. Գր. եր. 372. Շնորհ. ընդհ. 3.—Թորգոմի (ի հանգի համար)՝ Շնորհ. չփ. էջ 471. Ողբ. եդես. 77, 496. Ֆրիկ 247.—Թորգոմեայ՝ Յհ. կթ. ա. Բուզ. Գ. ա (ցանկում), Ե. ա.—Թորգոմացիք՝ Թղթ. դաշ. 14.—Թորգոմեան (ազգ ևն)՝ Յհ.

կթ. յոչ. բ, ժգ. իթ, լե, խգ, ծդ, կգ. Ուխտ. Բ. ա. Մեծոփ. յիշ. ա, բ. Մխ. անեց. ժ. Շնորհ. չփ. էջ 472. Կղկնտ. Ա. ժդ (Էմին). Սամն. 16. Օրբ. իթ, լե. Լմբ. շն. 467, 475, 491. Պատմ. վր. ա, ժգ. Մագ. թղ. ը, ժա, ժթ, լգ, կա, ձգ. Կրպտ. սարգ. յոչ. Օրբ. հկճռ. գ. Պամ. ռուբ. 213. Յհ. կթ. հյր. 275, 277. Տաթև. հարց. 558. Ներբ. յորդ. 39. Վրք. շնորհ. 16. Պարականոն շար. 116. Ջուղ. 47, 117, 270. Վրաց ազբ. Բ. 18, 19.—Թորգոմական (աշխարհ են)՝ Բուզ. Գ. ժգ. Մեծոփ. յիշ. բ. Շար. դգ. Կղկնտ. Ա. ժդ (Շահնազ.). Առաք. նար. 475։—Թորգոմածին՝ Օրբ. ողբ 27, Սիմ. ապար. 25.—Վրաց ազբ. Ա. 74 գրում է Թորգամո, էջ 143—6՝ Թորգամոս։—Թորգոմ անվան ծագման և նրա նշանակության մասին ընդարձակ խոսում է Ալիշան՝ Հայաստան յառաջ քան զհն. էջ 114—124։

*ԹՈՐԻԿ, ար. < կրճատված Թեոդորոս անվան Թեոդորիկ փաղաքշական ձևից, որի միջին աստիճանն է Թոտորիկ (տես առանձին)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1651 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 576)։ Դեռ հիշված է 1904 թ. (Ազգապ. 5369)։

*ԹՈՐԻՍ, ար. < կրճատված է Թեոդորոս անունից, իբր Թորոս ձևի մի տարբերակը։ Մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում, որ թվի գրված 1604 թվին կամ ավելի առաջ (Ձեռ. Հալէպի, Ա. 49 բ, որ պետք չէ համարել վրիպակ, որովհետև նույն ձևը կրկնված է նաև անվանացանկում)։

*ԹՈՐՈՍ, ար. կրճատված է Թեոդորոս անունից, որ տես առանձին։ Հնագույն հիշատակությունը Ժ դարից է. սովորական է դառնում հատկապես Կիլիկյան շրջանին. Եվրոպացի Խաչակիրները տառադարձել են Tafroc. Հնապես կային նաև Թորիկ և Թորիս կրճատ ձևերը (որոնք տես առանձին) և Թորոս անվան գգվականը՝ Թորոսակ (№ 4)։

— 1. Թորոս քահանա, իր ծախսով Սարգիս քահանային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց եկեղեցուն, 966 թ։ Այժմ գտնվում է Անտոնեան հարց գրատանը։—Տաշեան, Ակնարկ 183, Rapport Arm. 116։

— 2. Թորոս, մեծ իշխան Հաշտենից. զորավար Հունաց. Արաբների դեմ պատերազմում գերի ընկավ (994 թ).—Ասող. Գ. լե։—Իսկ Զամչ. Բ. 876 դնում է սպանված։

— 3. Թորոս կրոնավոր, գրիչ. օրինակեց Ավետարանը 1038 թ.—Ջարբ. Թրգմ. 159։

— 4. Թորոսակ, տեր Թլպաղայ բերդի. Հարպիկ իշխանին մատնեց հունաց Գեռոս զորավարի ձեռքը (1051 թ).—Ուռհ. 110։

— 5. Թորոս Խաղբկայ, ոսկեդեղ էր պատրաստում այն Աւետարանի համար, որ օրինակեց Յովհաննէս երեցը Սանդղկայ վանքում, 1053 թ.—Rapport Arm. 40։

— 6. Թորոս, որդի Քրիստափոր քահանայի, Արկնիում նահատակվեց Թուրքերի ձեռքով՝ 1062 թ.—Ուռհ. 139։

— 7. Թորոս կիւրապաղատ, որդին էր Հեթում անուն հայի. հավանաբար նախապես կառավարիչն էր Խարբերդի. Փիլարդոսը կարգեց նրան կիւրապաղատ Ուռհայի (Եդեսիա). Սելճուքեաններից պարտված՝ քաշվեց Մալաթիա, իր աներ Գաբրիէլ իշխանի մոտ. Դղուշ ամիրան վերահաստատեց նրան իբր կիւրապաղատ Եդեսիայ՝ 1094 թ. երբ Դղուշը սպանվեց, Թորոսը հիւրասիրեց նրա որդի Ռադուանին և օգնեց նրան նստելու Սուլթան Հալէպի. հաղթեց Թուրք ամիրաներին. օգնեց և հիւրասիրեց Խաչակրաց Բոդուէն Բուլիոն զորավարին, որ դավաճանությամբ սպանեց նրան և տիրեց Եդեսիոյ (1099).—Ալիշան, Շնորհ. 188, 312. Ազգապ. 1321. Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա. 475 (—յիշում են Ուռհ. (Եմ) Բ. 145, 154, Միխ. աս. 403. Ուռհ. 300, 316. Վրդ. կբ, կգ. Միխ. աս. խա. (կոչում են Թէոդորոս)։

— 8. Թորոս, որդի Ռուբէն Ա-ի և կրտսեր եղբայր Կոստանդին Ա իշխանի Ռուբինեանց. տեր էր Կիլիկիայի լեռնակողմի բերդերին. իր աղջիկն է Արտա՝ կին Երուսաղէմի Բալդւին Ա թագավորի, որ իշխեց 1100—1118 թ.—Սիսուան 47։

— 9. Թորոս Ա. իշխան Ռուբինեան. որդի և հաջորդ Կոստանդին Ա-ի. հաղթեց հույներին, գրավեց Անարզաբան և մինչև Կեսարիոյ՝ Կիզիստրա բերդը, ուր լուծեց Գագիկ Բ թագավորի սպանիչ Մանդալեան եղբայրներից իր վրեժը «1111 թ»։ Այնքան անվանի եղավ, որ Կիլիկիան նրա անունով կոչվեց Թորոսի երկիր։ Շինել է Դրազարկ վանքը, ուր և թաղվեց։ Իշխել է «1100—1129 թ»։ Մնում է իր շրջապատ արձանագրությունը Անարզաբայի բերդի Զօրավարաց եկեղեցու վրա. «Ի կամս ամենասուրբ Երրորդութեան ես Թէորոս... Սեբաստոս, որդի Կոստ...որդւոյ Ռուբենի շինեցի զեկեղեցիս (վասն) փրկութեան հոգւոյ իմոյ և յիշատակ ծնողաց իմոց և ի կենդանութիւն... (բարե)խաւսութեամբ... յիշեսջիք զԹէոդոս, որդի իմ զԿոստանդին ի սուրբ յարժանաւոր յաղաւթս ձեր ի Քս Յս ի Տէր մեր. ի թվին...» (տես Սիսուան 239)։—Վրդ. կե, կէ. Ուռհ. 269, 316, 318—320, 334,

337—8. Մխ. աս. խա. Հեթ. պտմ. խզ. ժմկ. Վահր. ոտ. 194. Սմբ. պտմ. 88—90, 92, 136. Սամ. անեց. 121, 128, 135—6. Մխ. այրիվ. 19, 76. Գտմ. կիլ. 204. Գտմ. ռուբ. 214. Նհպտք. 101. Գտմ. լմբ. 238. Մին. համդ. 37, 38.—սեռ. Թօրոսի՝ Ուռհ. 298, 306, 318—320, 337. Վահր. ոտ. 195—6. Սմբ. պտմ. 89. Գտմ. կիլ. 204. Գտմ. ռուբ. 214—5. Գտմ. լմբ. 238. Նհպտք. 102. Մին. համդ. 38.—Թօրոսոյ՝ Վրդ. կե, հզ.—Հայապ. 343, Սխաուան 48—50։ Դարգել 11—12։

— 10. Տէր Թօրոս, *փորագրիչ. Գրիգորի և Ղուկասի հետ միասին գծագրել ու փորագրել են Մշու Առաքելոց վանքի նկարազարդ դուռը, 1134 թ։—Սարգսեան, Տեղագր. 232, Տարօնեցի՝ Արրտ. 1909, էջ 983։*

— 11. Թօրոս աղա, *մի խաչքար է կանգնեցրել Արցախու Վարանդա գավառի Ավետարանոց գյուղում ՈԶ=1157 թ.—Բարխուտ. Արցախ 98 (անշուշտ թյուրիմացություն է.* աղա *բառը այն ժամանակ գոյություն չուներ. թվականը պետք է կարդալ ՌԶ=1557)։*

— 12. Թօրոս *Բ. իշխան Ռուբինեանց «1145 — 1168 թ»։ Լևոն Ա իշխանի որդին էր. հորը հետ գերի տարվեց Պոլիս «1141 թ»։ Հորը մահից հետո, երբ Հունաց Յովհաննէս Կոմնենոս կայսրը բանակ կազմեց Կիլիկիա արշավելու համար, ինքն էլ զինվորագրվելով այդ բանակին, եկավ նրա հետ Կիլիկիա։ Այստեղ փախավ բանակից և իր երկու եղբայրների՝ Ստեփանէի և Մլեհի հետ միացած, կազմակերպեց հայկական բանակը, հունաց զորքը դուրս քշեց և նվաճված Կիլիկիան ազատեց («1145 թ»)։ Այսպես վերականգնեց նա կործանված Ռուբինեան պետությունը։ Կայսրը զայրացած՝ իրար ետևից նրա դեմ ուղարկեց Անդրոնիկոս Կոմնենոս, Անդրոնիկոս Եւփորբէն, Կոստանդին Կալամանոս զորավարներին, ապա Իկոնիայի Մասուտ սուլթանին, ինչպես նաև Անտիոքի Ռընէ-դը-Շատիյոն իշխանին։ Թորոսը բոլորին հաղթեց և Կիլիկիայի սահմանները մեծացրեց ու ընդարձակեց։ Ունեցել է նաև գրական գործեր (ըստ Զարբ. Հին դպր. 783)։—Կիր. 62, ա. Վրդ. հզ. Դր. եր. 400, 402, 410, 413, 418—9, 423, 428. Մխ. աս. խդ (=խզ), խե (=խդ), խզ (=խե). Հեթ. ժմկ. Վահր. ոտ. 197, 201—8, 210. Սմբ. պտմ. 94—100, 136. Գտմ. կիլ. 204—7. Գտմ. ռուբ. 215—6. Գտմ. լմբ. 238. Սամ. անեց. 128—131, 133—6, շար. 142. Օրբ. ժմ. 19. Մխ. այրիվ. 19, 20. Նհպտք. 102. Մին. համդ. 38—40.—*Թէոդորոս՝ *Վրք. շնորհ. 49.*

Գր. եր. 399, 401. Շնորհ. պտճ. 86.—սեռ. Թորոսի՝ Կիր. 62. Վրդ. հգ. Գր. եր. 406, 409, 410, 413, 417–9, 421, 428. Միխ. աս. ժե—ժէ (=ժդ—ժզ). Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 199, 201, 203—4, 206, 211. Սմբ. պտմ. 95, 97—8, 100—1, 136. Պտմ. կիլ. 206—8. Պտմ. ռուբ. 216—8. Պտմ. լմբ. 238. Օրբ. ժմ. 19. 20. Մին. համդ. 39—41. Նհպտք. 103.—բց. ի Թորոսէ՝ Միխ. աս. ժե (=ժդ). Վահր. ոտ. 205.—գրծ. Թորոսիւ՝ Սամ. անեց. 130. Պտմ. ռուբ. 215—7. Նհպտք. 102. Նանայ 444 (յիշատ.)։ — Ջարբ. Թրգմ. 625, Ալիշան՝ Շնորհ. 286—327, Սիսուան 52—56, Հայապ. 345։—Գտնված է իր մի հունարեն կնիքը, որի նկարագրությունը տես Տէր Սահակեան, Հայ Կայսերք, Բ. 572—3։—Այս Թորոսի մասին մի գեղեցիկ պատմական վեպ ունի Ծերենցը՝ «Թորոս Լևոնի» վերնագրով (տպ. Պոլիս 1878. երկրորդ տպագրությունը արգելվեց Պոլսում)։ Դարդել 12—13։

— 13. Թորոս քորեպիսկոպոս, առաջնորդ Սամոսատի. իրեն դիմեցին Արևորդիք և խնդրեցին որ ընդունի նրանց քրիստոնեության ծոցը։ Թորոսը գրեց այս մասին Ն. Շնորհալուն և հրահանգ խնդրեց։ Շնորհալին («1166—1173 թ») պատասխանեց նրան առանձին գրությամբ, որի վերնագիրն է «Յաղագս Արևորդեացն դարձի».—սեռ. Թորոսի՝ Շնորհ. թղ. 223։

— 14. Թորոս կրոնավոր, գրիչ. Դրազարկի Աւագ վանքում օրինակեց Թուղթք Պօղոսի Առաքելոյ, 1173 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 50 բ, Ձեռ. Թաւր. էջ իէ (բ)։—Թերևս նույն է՝

— 15. Թորոս գրիչ. օրինակեց Աւետարանը, Դրազարկի վանքում, առաջնորդ Սամուէլի հրամանով, 1181 թ.—Manus. brit. mus. 5 բ, Սիսուան 234 բ։

— 16. Թորոս փիլիսոփա (երաժիշտ), Դրազարկի վանքում օրինակել է մի ընտիր Աւետարան (թվականն անհայտ. արդյոք նույն անձն է). սրանից արտագրել է Յովհաննէս Աշէթըցին և նվիրել Տարօնի Ղազարու վանքին. այս տեղից էլ արտագրվել է 1450 թ. (Նօտարք 165)։ Նույն աղբյուրից մի ուրիշ արտագրություն է եղել Բաղէշում, Ստեփաննոս քահանայի ձեռքով, 1454 թ.— Թորոս աղբ, Բ. 445, Սիսուան 545։

— 17. Թորոս կազմող. իր աշակերտ Գէորգի հետ միասին կազմեցին մի ընդարձակ Տօնական, որ Ստեփաննոս գրիչը օրինակել էր Նեղկուկ գյուղում, ստացող Կոստանդինի և Ղուկասի համար, 1194 թ.—Manus. bibl. nat. էջ 54։

— 18. Թորոս եպիսկոպոս Սելևկիոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սմբ. պատմ. 111։

— 19. Թորոս պարոն, տեր Թլպասոյ, ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սմբ. պատմ. 112։

— 20. Թորոս փիլիսոփա կամ երաժիշտ, առաջնորդ Ձորոյն Ս. Թորոս վանքի. անդամ Սսոյ ժողովի (ԺԲ դար)։—Զարբ. Հին դպր. 714։

— 21. Թորոս, սպասավոր Ստեփանոս միայնակեցի, երկուսն էլ միաբան Ս. Գրիգորի վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 22. Թորոս, հայր Կամխի Եղիվանքի, 1203 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 420։

— 23. Թորոս, միաբան Կամխի Եղիվանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 420։

— 24. Թուրոս կրոնավոր, երաժիշտ, Խարբերդում՝ Կոզմա գրչին գրել տվից մի Աւետարան, 1205 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. էջ 400։

— 25. Թորոս գրիչ. օրինակեց և ծաղկեց մի Աւետարան Վախտանկ Տօնկիկի համար, 1212 թ.—Շողակաթ 198։

— 26. Թորոս վարդապետ, առաջնորդ կամ վանահայր Ականց անապատի. Պետրոս գրչին գրել տվեց Ճառք Սեբերիանոսի, 1215 թ.—Շողակաթ 199, Զարբ. Հին դպր. 714, Թրգմ. 688, Սիսուան 154 ա։ (Ըստ Բանաս. 1901, 42 նույն գրչին գրել է տվել Ցաճախապատումը՝ 1215 թ)։

— 27. Թորոս վարդապետ Մելիտինեցի, մոր կողմից ասորի, աշակերտ Մխիթար Գոշի († «1213 թ»). նշանավոր ուսումնական, թաղվեց Հաղբատում.—Կիր. ժդ։

— 28. Թորոս միայնակյաց, մականուն Գորգացի. զառամած հասակում անկողին էր ընկած և իր ծերության իբրև սփոփանք՝ Դրազարկի վանքում գրել տվեց մի Աւետարան, իր մահվանից հետո իր եղբորորդի Պետրոս քահանային կտակելու համար, 1217 թ։—Ձեռ. Վիեննա. Ա. 600—601։

— 29. Թորոս քահանա, օգնել է Վարդան քահանա Կապոսցուն և Ղազար գրագրին՝ ծաղկելու և նկարազարդելու համար այն մեծ Ճառընտիրը, որ գրեց Թադէոս գրիչը՝ վանահայր Կոստանդինի համար, 1224 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 34.

— 30. Թորոս եպիսկոպոս Դերջանի, որի հիշատակին մի

խաչքար է կանգնեցրած Խաչկավանքում (Կարին), 1229 Թ.—Սարգիսեան, Տեղագր. 81։

— 31. Թորոս գրիչ, Հռոմկլայում օրինակեց մի ժողովածու, Դաւիթ եպիսկոպոսի խնդրանօք, 1231 Թ.—Manus. bibl. nat. էջ 100, Ձեռ. Վեննա. Բ. 1223։

— 32. Թորոս գրիչ, Հռոմում արտագրեց մագաղաթյա մի Աւետարան, Աւետիս քահանայի համար, 1242 Թ.—Թորոս աղբ. Բ. 441։

— 33. Թորոս վարդապետ, ուղեկից Հեթում Ա Թագավորի՝ Մանգոյ խանի մոտ գնալու ժամանակ «1254 Թ».—Կիր. Ծզ։ [Ըստ Խաչիկեան, Տեղեկ. Արմֆանի, 1941, №2, էջ 83 հավանաբար Կոստանդին կաթուղիկոսի եղբորորդին էր]։

— 34. Թորոս քահանա, Թուղթ կոկելով օգնում էր Կիրակոս գրչին, երբ սա օրինակում էր Աւետարանը՝ Յովսէփ քահանայի համար, Մաշկևոր վանքում, 1259 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 55 բ։

— 35. Թորոս արքեպիսկոպոս, Թագավորական քարտուղար Հայոց Կիլիկիոյ. սրա ձեռքով կնքեց Հեթում իր պարգևագիրը Վենետկեցիներին, 1261 Թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 32, 34։ Սիսուան 485 բ։

— 36. Թորոս որդի Գրիգորի, եղբոր Կոստանդին Ա կաթուղիկոսի, հորեղբորորդի Հռոմկլայու. Թորոս քահանայի (ստացող). հիշված է 1262 Թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 84, Թորոս աղբ. Ա. 188, Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։

— 37. Թորոս քահանա, գրիչ. օրինակել է Աւետարանը Գռներ անապատում, Յովհաննէս արքայեղբոր համար, 1263 Թ.—Սիսուան 146։

— 38. Թորոս, որդի Հեթում Ա Թագավորի, որ 1259 Թվին «ձիաւորեցոյց զորդին իւր զպարոն Թորոս»։ Հորը բացակայության ժամանակ, երբ Եգիպտացիք արշավեցին Կիլիկիա, իր եղբոր՝ Լևոնի հետ պատերազմի դուրս եկավ նրանց դեմ և քաջությամբ կռվելով՝ ընկավ Մառիի պատերազմում, «1266 Թ»։ Նրա մահը այնպես աղետալի էր, որ նույն իսկ Սուլթանը «յոյժ տրտմեցաւ, բարկացաւ սպանողացն, և սպանողքն ասացին, Թէ մեք ոչ գիտացաք Թէ որդի Թագաւորի է. զի զբազումս սպան ի մեզանէ, և զբազումս խոցեաց. ապա յետոյ մեք ջան ի վերայ եդեալ սպանաք զնա»։—Կիր. Ծզ. Մխ. աս. յաւել. և յեչ. Անսիզք Ց3. Անանուն ժմ. 24. Թորոս աղբ. Բ. 352 (կեղծիք). Մա-

գաք. աբ. 40, 43, 44. Վահր. ոտ. 219, 223. Սամ. անեց. շար. 151, 161. Գում. կիլ. 211. Գում. ռուբ. 221. Գամ. լմբ. 242. Վրգ. գԹ. ՀեԹ. ժմնկ. Ջեռ. օշ. 98 բ. Օրբ. ժմ. 26. Սմբ. պամ. 124—5, Մխ. այրիվ. 83. Մխն. համգ. 44. Դրնղ. 305.—սեռ. Թորոսի՝ Մաղաք. աբ. 39, 40, 42. Գամ. լմբ. 239. Դրնղ. 305.—գրծ. Թորոսիւ՝ Մաղաք. աբ. 20.—տես և Տաշեան, Ցուց. 333, 1041, Զարբ. Թրգմ. 567։ Հմմտ. № 131։ Դարդել 16—19։

— 39. Թորոս քահանա, որդի Գորգ քահանայի և եղբորորդի Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի, որ նրա համար Հռոմկլայում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի ընտիր մագաղաթյա Աւետարան՝ 1253 թ. (Թորոս աղբ. Բ. 359, 360)։ Նույն Թորոս քահանան Հռոմկլայում, իր ծախքով գրել և ծաղկել է տվել մի ճոխ Աւետարան՝ Թորոս Ռոսլին գրչին, 1262 թ. և ապա՝ Սիոն եպիսկոպոսի ձեռքով նվիրել է Արքակաղին վանքին՝ 1266 թ։ Դարձյալ նույն գրչին գրել է տվել մի ուրիշ գեղեցիկ Աւետարան, և ընծայել է Լևոն Գ Թագավորի որդի ՀեԹումին (Բ), երբ նա դեռ «համբակ» էր (1267 թ)։ Խնդրել է Վարդան Արևելցուց և գրել է տվել նրան «Վասն բանին մասանց» աշխատությունը (Տեղեկ. Արմֆանի 1943, №2, էջ 83, Ջեռ. Վեննետ. Բ. 866)։—(Պետք է նկատել որ Կոստանդին Ա կաթողիկոսը ունեցր երկու եղբորորդի․ մեկը իր Գրիգոր եղբորից, մյուսը Գէորգ (քահանա) եղբորից. երկուսն էլ կոչվում են Թորոս, բայց առաջինը աշխարհական է, երկրորդը քահանա, ինչպես երևում է Սիսուան 151 տրված ազգաբանական տախտակից)։—ՆաԹանեան, Տեղեկ. Սերաստ. 82, Թորոս աղբ. Ա. 185, 186, 189, 324—7. Ջեռ. Սեբ.=ՀԱ 1924, 330—2. Ջեռ. Վեննետ. Ա. 651. Ցովսէփեան, Մի էջ հայ արուեստի 18, Ջեռ. Հալէպի, Բ. 5 բ և 140 ա։

— 40. Թորոս, եղբայր Ստեփանոս գրչի, որ Վահկայի մոտիկ Ընդայ վանքում օրինակեց Աւետարանը՝ Մարտիրոս քահանայի խնդրանոք, 1269 թ.—Ջեռ. Վասպ. 96։

— 41. Թորոս քահանա, որդի Թէոդրս քահանայի և եղբայր Կոստանդին Հռիփսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան, 1269 թ.—Ջեռ. Վիեննա. Ա. 656։

— 42. Թորոս երեց Ռաբինենց, ծաղկող. ունի շատ գեղեցիկ լուսանցազարդեր մի Աստուածաշնչում, որ գրված է Կիլիկիա 1270 թ. կազմել է նաև նույն Աստուածաշնչի ցանկերը.—Տեղեկ. Արմֆանի 1943, №2, էջ 83, Ջեռ. էջմ. 149, Զարբ. Թրգմ. 123—125. Սիսուան 534 ա։

— 43. **Թորոս**, *տնտես Կիլիկիայի Խորին անապատի, 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235, Սիսուան 152։*

— 44. **Թորոս** *Ռօսլին (Ռուսլին Հռոմկլայեցի, նշանավոր գրիչ և մանրանկարիչ, որ հիշված է նախ 1255 թ. (Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 27)։ Գրել, նկարազարդել և գույնզգույն ակունքներով զարդարել է մի ճոխ Աւետարան, Հռոմկլայում, 1256 թ. Կոստանդին Ա. Բարձրբերդցի կաթողիկոսի համար (Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա), մի երկրորդը՝ դարձյալ նույն կաթողիկոսի համար 1260 թ. Հռոմկլայում (Շողակաթ 200), մի երրորդը՝ նրա եղբորորդի Թորոս քահանայի համար, 1262 թ. (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 82, Թորոս աղբ. Ա. 187. այս ձեռագրի պատկերների մանրամասն նկարագրությունը տալիս է Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 322—334), մի չորրորդը՝ նույն 1262 թ. Լևոն Գ-ի համար, երբ դեռ գահաժառանգ էր (Շողակաթ 201) և վերջապես մի հինգերորդը՝ 1268 թ. Հեթում (Բ) արքայորդու համար (Թորոս աղբ. Ա. 324—7)։ Այսպեսով, մեզ ծանոթ գործերի մեջ, նրա անունը հիշատակվում է 13 տարի, 1255—1268 թ։*

— 45. **Թորոս** *Վանկցի, հորեղբայր Թորոս սարկավագի, որ օրինակեց Նոր Կտակարանը Մեծքարի վանքում, 1274 թ.—Ձեռ. Կես. ածած. 63 բ։*

— 46. **Թորոս** *եղբորորդի Առաքելի Հնազանդենց, նշանավոր կազմարարի, որի մասին տես առանձին. 1274 թվին Թորոսը արդեն մեռած էր.—Ձեռ. Կես. ածած. 63 բ։*

— 47. **Թորոս** *ձիաւոր Սսեցի, հայր Կարապետ դպրի, որ Յակոբ գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը՝ 1274 թ.*—Manus. brit. mus. *85 ա։*

— 48. **Թորոս** *սարկավագ, գրիչ. Մեծքարի վանքում, Յակոբ արքեպիսկոպոսի և Ներսէս կրոնավորի համար օրինակեց Նոր Կտակարանը, 1274 թ.—Ձեռ. Կես. ածած. 63 բ։*

— 49. **Թորոս** *քահանա, խնամակալ Կոստանդին Նորընծա քահանայի, որին Յովհաննէս քահանան երախա ժամանակից պահել մեծացրել էր և վերջումն էլ Սկեռայ վանքում, Ստեփաննոս քահանային մի Մանրուսմունք գրել տալով, նրան էր նվիրել՝ 1275 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 244 բ։*

— 50. **Թորոս** *վարդապետ, Դրազարկի վանքում Բարսեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1282 թ.*—Manus. brit. mus. *18 ա։—Հմմտ. № 58։*

— 51. Թորոս գրիչ. Նորոգէս միայնակյացի համար Մուշում արտագրեց Նոր Կտակարանը, 1284 թ.— Ձեռ. Վեն. Ա. 810։

— 52. Թորոս երեց, գրել է մի Պատարագամատոյց՝ 1289 թ.—Դաթըրճեան, Պտրգմտ. 86։

— 53. Թորոս գրիչ Կիլիկեցի, 1289 թ.—Տաշեան, Ժղվ. առակաց Վարդանայ 45 և Սրբ. պտրգմտոյցք 85—87։

—54. Թորոս գրիչ, օրինակեց Պատարագամատոյցը՝ Կոստանդին Բ Պրօնագործ («1286—9 թ») կաթուղիկոսի քեռորդի Նիկալայոս սարկավագի համար։—Զարբ. Թրգմ. 266։

— 55. Թորոս, որդի Սիր Օշինի Պայլենց, որի հիշատակին իր ժառանգները գնեցին մի Ավետարան՝ 1292 թ.—Ձեռ. Մխիթ. էջ 8 բ։

— 56. Թորոս, օգնեց Յովհաննէս արքայեղբոր, երբ սա արտագրում էր մի Ժողովածու, 1279—1293 թվերի միջև.—Շողակաթ 204։

— 57. Թորոս, գրիչ, եղբայր Թովմաս եպիսկոպոսի. Դրազարկում օրինակեց Ավետարանը, 1291 թվին. երբ Ստեփաննոս կաթուղիկոսը մեռավ («1293 թ»), նոր կաթուղիկոսի ընտրության ձեռնարկելու համար, Հեթում Բ թագավորը Թորոսին և Թովմասին Արևելք ուղարկեց, իբր խնդրակ։ Սրանք եկան նախ Թադէոս Առաքեալի վանքը, առաջնորդ Տիրացու եպիսկոպոսի մոտ։ Сборн. Матер. 29, էջ 11, Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 223—4)։

— 58. Թորոս վարդապետ և փիլիսոփա, Դրազարկի վանքում օրինակեց Ավետարանը Յովսէփ փիլիսոփայի համար՝ 1295 թ.—Բարխուտ. Արցախ 41։—Հմմտ. № 50։

— 59. Թորոս քահանա, ուսուցիչ Յովհաննէս գրչի, Խարտիշարի Խորին անապատում, 1295 թ.—Սիսուան 151 են, Տաշեան, Ցուց. 817—8։

— 60. Թորոս, միաբան Սկևռայ վանուց. Կոստանդին փակակալի հետ կտակակատար էր կարգված Ստեփաննոս քահանա Իկոնիացու, 1296 թ.—Սիսուան 106։

—61. Թորոս ոմն, որ երիտասարդ հասակում վախճանվել է և նրա գերեզմանի վրա մի խաչքար են կանգնեցրել, հարավային Վայոց ձորի Փաշալու գյուղում, 1297 թ.—Սիսական 177։

— 62. Թորոս քահանա Կիլիկեցի, օգնեց ասորի Ֆարաճ բժշկին՝ կազմելու «Բժշկարան ձիոյ և առհասարակ գրաստնոյ»։ Այս ասորի բժիշկը երկար տարիներ Բաղդադ . մնացած լինելով՝ հմուտ էր արաբերենի և արաբական բժշկության։ Երբ Կիլիկիա

*եկավ, Սմբատ Գ թագավորը (1295—8) հրամայեց կազմել ձիաբժշկական մի գիրք։ Աստրի բժիշկը, որ երևի հայերենի մեջ հաջողակ չէր, մեծ աղաչանքով իրեն օգնության կանչեց Կիլիկեցի այս Թորոս քահանային, որ թե՛ արաբերենի տեղյակ էր և թե հայերեն գրչության մեջ հույժ հաջողակ։ Բժիշկ Ֆարաճը և Թորոս քահանան միանալով, պրպտեցին Ծընայ, Ապի-Նուսուֆի, Ռաշիտի և այլ բազմաթիվ հնդիկ ու Բաղդադցի արաբ բժիշկների գործերը և կազմեցին վերոհիշյալ գիրքը։ Այս գիրքը 182 հատվածներով տալիս է լիակատար ու մանրամասն տեղեկություններ. օրինակ ձի ճանաչելու միջոցները, նրանց գույների զանազանությունը, տեսակները, ձիերի հիվանդությունները և նրանց դարմանները, ձիերի զանազան մոլությունները ու պակասությունները և դրանք վերջացնելու միջոցները են են։ Ունի 108 նկար՝ զանազան տեսակ թամբերի, նաև նոր բառերի մի շատ մեծ պաշար, որոնց հավաքումը մեծապես պիտի նպաստի հայերեն միջնադարյան բառարանի հորինման համար։ Սույն պատվական ձեռագիրը, որ Ռուբինյան թագավորական գրադարանի զարդերից մեկն էր կազմում, հասել է մեզ և գտնվում էր Թավրիզում, ոՖՖ դերձակ Շիրմազանի մոտ։ Ավելի ուշ նա վաճառել է չնչին գնով (10 ռուբլի) †Խաչիկ աղա Սարաճեանին, որի ժառանգները իր որդիներն են։ Ձեռագրիս ավելի ընդարձակ նկարագիրը տես Ձեռ. Թաւր. էջ 137—8։ Հմմտ. Սիսուան 487։*

— 63. Թորոս, *եղբայր Սարգիս քահանայի, որ Պերճերի վանքում, Խաչատուր սարկավագին գրել տվեց մի Աւետարան, 1299 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 684։*

— *64.* Թորոս Գ. *որդի Լևոն Գ-ի և եղբայր Հեթում Բ-ի, տեր Պապեռոնի։ Ծնվել է 1270 թ. (Ձեռ. օշ. 99 բ). ամուսնացավ Կիպրոսի Հուգոն Գ թագավորի Մարգարիտ աղջկա հետ («1286 թ»)։ Երբ Հեթումը վանք քաշվեց, աթոռը հանձնեց Թորոսին «1294 թ». բայց երկու տարի հետո, Թորոսը հրաժարվեց գահից և ինքն էլ վանք քաշվեց։ Հեթումի հետ, «1296 թ» գնաց Պոլիս՝ իր քրոջը տեսության։ Վերադարձին, իր եղբայրը՝ Սմբատ Գ, որ Ռուբինեանց գահն էր բարձրացել, բռնեց նրան և խեղդեց, որպեսզի գահը իրեն ՖՖա (1298—9)։—Հեթ. ժՖնկ. Ձեռ. Օշ. 100 բ, 101 ա. Վահր. ոտ. 236. Սմբ. պտմ. 125—7. Սամ. անեց. շար. 153—4, 163—4. Պտմ. կիլ. 212. Պտմ. լմբ. 242. Անանուն ժմ. 28. Ցիշատ.* (Karst *Դատաստ. էջ ե). Մխ. համզ. 46—48.—սեռ.* Թորոսի՝ *Սմբ. պտմ. 127.* ZAPh *1, 182. Հեթ. ժմնկ.*

Ձեռ. օշ. 100 բ. Մին. համզ. 47—49. Սամ. անեց. շար. 154—5. Առաք. պատմ. 483.—գրծ. Թորոսի՝ Ցիշատ. (Զարբ. Թրգմ. 390, 740).—տես և Տաշեան, Ցուց. 906։

— 65. Թորոս քահանա Վահկացի, գրիչ. օրինակեց Գործք Առաքելոց և Թուղթք, Կոստանդին քահանայի համար (ԺԳ դար).—Manus. brit. mus. 10 բ։

— 66. Թորոս քահանա, տվեց Գործք առաքելոցի մի օրինակ՝ Յովհաննէս քահանային՝ արտագրելու համար (ԺԳ դար).— Ֆ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ յից։

— 67. Թորոս գրիչ. արտագրել է Մովսէս Երզնկացու «Շնորհեա մեզ Տէր ի գիշերի» երգի մեկնութիւնը, 1300 թ.— Սմբատեանց, Գեղարքունի 133։

— 68. Թորոս վարդապետ, փակակալ. որա ձեռքով Աւետիք Խոտաճարակը շինել տվեց Կաֆայի Ս. Երրորդութեան եկեղեցին, 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511—2 (տես և Աւետիք № 29)։ Հմմտ. № 120։

— 69. Թորոս, Ջամբուլա Ռուբինեան պետութեան, 1307 թ.—Սիսուան 485 բ։

— 70. Թորոս, քրոջ որդի Կոստանդին քահանայի, որ Մլիճի վանքում գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1307 թ. այս թվին Թորոսը արդէն վաղամեռիկ էր եղած.—Manus. brit. mus. 241 բ, 242 բ, 244 ա. Սիսուան 74 բ։

— 71. Թորոս սարկավագ, Մլիճի վանքում Կոստանդին քահանայի համար արտագրեց Պրոխորոն գիրքը, 1307 թ.—Manus. brit. mus. 245 ա. Զարբ. Թրգմ. 673—4։

— 72. Թորոս վարդապետ Մեծքարի վանուց, անդամ Սսոյ «1307 թվի» ժողովի.—Ազգապ. 1787։

— 73. Թորոս վարդապետ, փիլիսոփա, վանահայր Զորոյվանքի, անդամ Սսոյ «1307 թվի» ժողովի.—Սիսուան 156 բ, Ազգապ. 1787։

— 74. Թորոս եպիսկոպոս Մաշկևորցի, անդամ Սսոյ «1307 թ» ժողովի.—Ազգապ. 1785։

— 75. Թորոս վարդապետ Կրակեցի, անդամ Սսոյ «1307 թ» ժողովի.—Ազգապ. 1786։

— 76. Թորոս, որդի Ղազարի, եղբայր Ստեփանոս քահանայի, որ Մեծոփայ վանքում, Մխիթար վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 156։

— 77. Թորոս Ջաւիկ, Լեւոն Դ Թագաւորի Դարպասի գլխավորը, անդամ Սսոյ «1307 Թ» ժողովի.—Ազգապ. 1787։

— 78. Թորոս, փոխանորդ Գունդստապլի՝ Այասում, 1309 Թ.—Ալիշան, Հայ—Վենետ. 76։

— 79. Թորոս, որդի Կարապետ քահանա գրչի, Երզնկացի, մեռավ 1310 Թ.—Ձեռ. Վասպ. 156։

— 80. Թորոս սարկավագ, ծաղկող և նկարիչ. նկարազարդել է մի Աւետարան, որ գրեց Ծեր գրիչը, 1311 Թ.—Ձեռ. Թաւր. 70—71։

— 81. Թորոս վարդապետ, ստացող. օրինակել տվեց մի Շարական, որ սկսեց նախ Գրիգոր քահանան և ապա վերջացրեց Ներսէս գրիչը, 1312 Թ.—Manus. brit. mus. 95 ա։

— 82. Թորոս, եղբայր Ներսէս գրչի, որ օրինակեց Շարակնոցը՝ Թորոս վարդապետի համար, 1312 Թ.—Manus. brit. mus. 95 ա։

— 83. Թորոս քահանա, իր եղբայր Կարապետ կրոնավորի հետ միասին, Մխակեցեր վանքում, Ռստակէս գրչին գրել տըվեց մի Աւետարան, 1313 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 708։

— 84. Թորոս տանուտէր, գրել տվեց Արճէշում՝ Յովսէփ գրչին մի Աւետարան, 1314 Թ.—Ձեռ. Վենետ. 660։

— 85. Թորոս, երեց Անարզաբայի Ս. Աստուածածին եկեղեցու. մեռել էր արդեն 1314 Թ.—REA 2, 283, Գաթրճեան՝ Պտրգմտ. 84, Ջարբ. Թրգմ. 265։

— 86. Թորոս «նախնի» (?) Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դանեվանք գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1316 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 465։

— 87. Թորոս աբբահայր Դրազարկի. Պաղտին Նղրցու հետ դեսպան գնաց Անգլիոյ Եդուարդ Ա Թագավորին, 1317 Թ.—Բիւրքճեան, Հայկկն Կիլիկիա 26։ Տես № 122։

— 88. Թորոս, տեր Ճոֆրէկլայի (կամ Ջոֆտէրկայի), պրոքսիմոս, Այասի մաքսատան կառավարիչն էր 1307 Թ. (Սիսուան 368 ա). մասնակցեց իբրև անդամ Սսոյ «1307 Թ» և Ատանայի «1317 Թ» ժողովին.—Ազգապ. 1787, 1819, Սիսուան 258, 486։

— 89. Թորոս գրիչ. օրինակել է Աւետարանը, Կիպրոս կղզում՝ 1318 Թ.—Ձեռ. Կարին. 21։

— 90. Թորոս, հորեղբայր Պօղոս քահանայի, որ Փոսի ա-

նապատում գրել տվեց մի Ավետարան, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 91. Թորոս Հռոմկլայեցի, ավագերեց դռան արքունի Օշին թագավորի (1308—1320). հաջորդեց Կոստանդին ավագերեցին. ներկա էր Ադանայի կրոնական ժողովին «1317 թ»։ Օշին թագավորի խնդրանոք Յակոբ քահանային գրել տվեց մի Ժամագիրք, Սաղմոս, Մանրուսմունք, Շարական և Տոնացույց (բոլորը մի ափի մեջ), 1319 թ.—Աթան. յոշ. ժէ. Աբերկ. էջ թ. Ձեռ. Օշ. 101 բ, 102 ա. Ազգապ. 1819. Ձեռ. Հալէպի, Ա 12։—Հժժտ. № 109։

— 92. Թորոս վանական քահանա, գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Վարդան քահանայի համար, 1280—1320 թվերին.—Ձեռ. Թաւր. 27։

— 93. Թորոս, հայր Վարդան քահանայի. որ գրել տվեց Ավետարանը Թորոս քահանա գրչին, 1280—1320 թվերին.—Ձեռ. Թաւր. 27 բ։

— 94. Թորոս Ջաւտիկ, որդի Ծոփրի. սրա թելադրությամբ Ստեփանոս Կրակացին ստացավ Գէորգ Սկևռացու Մեկնութիւն Եսայեայ գիրքը՝ 1320 թ.—Սխուան 547 բ։

— 95. Թորոս քահանա, հայր Կոստանդին Գ Կեսարացի կաթուղիկոսի «1307—1323 թ», որ նախապես էր եպիսկոպոս Կեսարիոյ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1843։

— 96. Թորոս գրիչ. օրինակել է «Աղօթք Գրիգոր Ճգնաւորի Ցեսուացւոյ» 1322 թ.—Ձեռ. Կարին. 2։

— 97. Թորոս, որդի Վահրամ քահանայի և եղբայր Բարսեղ երէցորդու, որ Հալէպում գնեց մի հին Ավետարան, 1323 թ.—Ձեռ. Կես. ածած. 64 բ։

— 98. Թորոս, որդի Վահրամի և եղբայր Գրիգոր գրչի, որ Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1325 թ. երբ Թորոսը մեռած էր.—Ձեռ. Վեննետ. Բ. 572։

— 99. Թորոս գրիչ. օրինակել է Թովմա Աքուինացու Գիրք եօթն խորհրդոց, Գլաձորի վանքում, 1325 թ.—Ձեռ. Կարին. 30։

— 100. Թորոս, քահանա «Նաւմիկոս», հսկեց արտագրության այն Ավետարանի, որ օրինակեց Սարգիս քահանան՝ 1326 թ.—Rapport Belgique 87։

— 101. Թորոս, որդի Պետրոսի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Թանգեր տիկնոջ համար օրինակեց Ավետարանը, 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 396 բ։

— 102. Թորոս քահանա, որդի Ստեփաննոս քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ իր քեռորդի Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թ.—Manus. brit. mus. 87 ա։

— 103. Թորոս ժառանգ, միաբան Ակների վանից, 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 104. Թորոս քահանա, եղբայր Ներսէսի, որ Փոսի վանքում օրինակեց Աւետարանը, 1329 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 518)։

— 105. Թորոս, քեռորդի Հայրապետի, որ Կիլիկիայի Փոսանապատում օրինակեց «Սանդուղք աստուածային ելից» և «Յոհան աստուածաբան», 1329 թվին։ Թորոսը արտագրեց վերջին ճառը.—Ձեռ. Դադեան, Ա. 86 բ։

— 106. Թորոս միայնակյաց, միաբան Փոսի վանից, ուր թուղթ էր կոկում Ներսէս գրչի համար՝ արտագրելու Աւետարանը, 1329 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 518)։

— 107. Թորոս քահանա, գրիչ. օրինակել է Ճառընտիրը Կրակայ գյուղաքաղաքում, 1329 թ.—Ձեռ. Կարին. 76։

— 108. Թորոս, շինել է տվել Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու դուռը՝ ՉՀԹ=1330 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 349 և Кучук-Иоаннесов, Стар. арм. над. էջ 38։ (Առաջինը դնում է ՋՀԹ=1530 թիվը, երկրորդը ՉՀԹ=1330 թ։ Այս երկուսից ավելիստույգ է երկրորդը, որովհետև նույն դռան կողմնակի արձանագրությունը կրում է ՊԺԵ=1366 թվականը։ Անշուշտ նախ բուն արձանագրությունն է գրված և ապա կողմնակի մի մարդու հիշատակը)։

— 109. Թորոս Հռոմկլայեցի, գրիչ. Սարգիս քահանայի համար Դրազարկում օրինակեց մի Աւետարան, 1331 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 436։ (Երևի սրա հետ նույն են՝ Թորոս Հռոմկլայեցի գրիչ, որ հիշվում է 1331 թ. Տաշեան, Ցուց. 1028 և Թորոս փիլիսոփա, գրիչ, որ Դրազարկի վանքում օրինակեց Աւետարանը, 1331 թ. ըստ Սմբատեանց, Երնջակ 151)։—Հմմտ. նաև № 91։

— 110. Թորոս Մշեցի կամ Տարօնեցի, որդի Սարգսի. նշանավոր մանրանկարիչ. իր աշխատություններից նշանավոր է Եսայի Նչեցու Աստուածաշունչը, որ ծաղկել է 1318 թվին Գլաձորում (Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 13)։ Նրա մյուս գործերը կրում են 1314, 1321 և 1332 թվականները (տես Հայապ. 526, 548)։ Վերջին թվականով (1332) հիշվում է այն Աստ–

ուածաշունչը, որ Ներսէս վարդապետը գրել տվեց Գայլեձորում (Ձեռ. Վեննա. Ա. 127)։ Տարակոյս չկա որ նոյն է սրա հետ Թորոս Տարօնեցին, որ ծաղկեց այն Ոսկեփորիկը, որ օրինակեց Սարգիս աբեղան Գլաձորի անապատում, 1317 թ (Ձեռ. Վեննա. Բ. 857—9)։ Դարձյալ նոյն է Թորոս նկարիչը, որ նկարազարդել է մի Աւետարան, որ գրել էր Կիւրեղ սպասավոր բանի, Գլաձորի վանքում, 1321 թ. (Manus.brit. mus. 23 բ)։ Տեղի հիշատակությունը չունենալու պատճառով՝ հաստատ չեմ կարող ասել թե նոյն է արդյոք նաև այն Թորոս նկարիչը, որ ծաղկել և նկարազարդել է մի Աստուածաշունչ, որ գրեցին Կիրակոս և Յովհաննէս Երզնկացիք, 1318 թ. (Շողակաթ 211)։ Յովսէփեան, Խաղբակեանք 232 ծան. սխալմամբ կոչում է Դաւիթ Տարօնեցի և հիշում է նրա ծաղկած Աւետարանը՝ գործ Եսայի Նչեցու, 1323 թվից (ցանկում, էջ 297 ուղղված է)։ Նրա ծաղկանկարներից նմուշներ տես Սիսական 133—138։

— 111. Թորոս, որդի Վահրամի և եղբայր Գրիգոր գրչի, որ Կիլիկիայում օրինակեց մի Աւետարան, 1334 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 698։

— 112. Թորոս Նորընծա քահանա, եղբայր Յովհաննէս աբեղայի. ապրում էին Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 348։

— 113. Թորոս աբեղա, որդի Մարտիրոս քահանայի. ապրում էին Երուսաղէմում, Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 348։

— 114. Թորոս քահանա Ս. Սիոնի (Երուսաղէմ). նոր էր մեռել 1335 թվին.—Ձեռ. Վեննա. Բ. 348։

— 115. Թորոս ոմն Ջաղջող, հիշված է Երուսաղէմում, 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 349։

— 116. Թորոս քահանա, գրիչ. օրինակեց մի Շարական, Աւագ անապատում, 1336 թ.—Շողակաթ 213։

— 117. Թորոս, գործակալ Խորձեանի Խլպաղի վանքի, 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հայոց 152։

— 118. Թորոս քահանա, գրիչ. օրինակեց Նարեկը՝ 1336 թ.—Ձեռ. Կարին. 176։

— 119. Թորոս սարկավագ, Կոպիտառայ գյուղում, Առաքել գրչին գրել տվեց Մանրուսմունքը՝ 1338 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 24։

— 120. Թորոս վարդապետ, որդի Գրիգորիս քահանայի և

եղբայր Ներսէս քահանայի. աշակերտ Աւետիս խոստաճարակ րաբունու։ Հիշված է 1340 թվին, երբ Թորոսը ստացաւ վարդապետական գավազան։—Տաշեան, Ցուց. 499։ (Դժբախտաբար չէ հիշատակված տեղը. բայց հանգամանքները այնպես են, որ սույն Աւետիս խոստաճարակ րաբունին՝ Կաֆայի նշանավոր վարդապետն է (№ 29) և հետևաբար այս Թորոս գավազանակիր վարդապետն էլ վերի № 68 Թորոս փակական է։ Այսպեսով պարզվում է նաև Վիեննայի Մխիթարեանց № 183 ձեռագրի (Մանրուսմունք) գրության վայրը, որ է Կաֆա)։

— 121. Թորոս Միխայլենց, գլխավորն էր Այասի մաքսատան. հիշված է 1314 թ. (Սիսուան 368 ա)։ Նույն անձը հիշվում է նաև Թորոս Միքայէլեանց անունով, երբև պալատական Լևոն Ե-ի. դեսպան ուղարկվեց Ավինիոն՝ Պապի մոտ, օգնություն խնդրելու համար Եգիպտացոց դեմ, «1342 թ.»—Ազգապ. 1864—65, Սիսուան 559 ա։

— 122. Թորոս Թափրոնց, ավագերեց Ռուբինեան արքունիքի, դասապետ և նշանավոր երաժիշտ։ Կոստանդին Թագավորի հայր Պաղտինի հետ դեսպան էր գնացել Լևոն Դ-ի կողմից Եւրոպա (1307 թ)։ Ներկայացել է նաև Անգլիոյ Եդուարդ Բ Թագավորին, որ գրում է այս առթիվ առանձին թուղթ (1308 թ)։ Մեռել է 1342 թ։—Սիսուան 234—5, Հայապ. 545։

— 123. Թորոս, վանահայր Մովսիսավանքի, անդամ Սսոյ «1343 թվի» ժողովի.—Ազգապ. 1870։

— 124. Թորոս քահանա, գրիչ. Սուրղաթում (Խրիմ) օրինակել է Յովհան Մայրավանեցու «Խրատք վարուց» հազվագյուտ գործը, 1352 թ.—Շողակաթ 97։ Նո՞ւյն է արդյոք՝

— 125. Թորոս քահանա, Սուրխաթում Գրիգոր Սուքիասեանց գրչին օրինակել տվեց մի Աւետարան, 1354 թ.—REA 10, 41։

— 126. Թորոս աբեղա Ալվարցի (Բասեն) գրիչ. օրինակեց Իտալիայի Պիզա քաղաքում Իննովկենտիոս Գ պապի Մեկնութիւն Պատարագի 1354 թ. որ նույն թվին թարգմանել էր Թադէոս Եպս. Կաֆայի.—Այրարատ 545, Ձեռ. Վիեն. 7։

— 127. Թորոս, որդի Սիրունի՝ հորեղբոր Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 613։

— 128. Թորոս ավագ մարաջախտ Ռուբինեան պետության, Պաղտինից հետո, որ մեռել էր 1337 թ., հայր Վասիլի և Լիպա-

րիտ զորավարի, որ նահատակվեց Սսի կամուրջի վրա 1370 թ.—Սիսուան 542 ա, 548 բ։

— 129. Թորոս Մսցի, սիր, Կոստանդին Ե թագավորի սիրելիներից էր և նրա զորքերի «չաւուշը»։ Երբ Տարսոնի ամիրա Մանչակ Շահարօղլի սուլթանը խարդախությամբ հանկարծ Սսի վրա արշավեց, թագավորի հետ միասին այս Թորոսն էլ դուրս եկավ նրա դեմ, կռվեց քաջությամբ, և թեև հաղթեցին թշնամուն, բայց երևի թե այս Թորոսը սպանվեց (1368 թ)։—Սիսուան 542։

— 130. Թորոս քահանա, գրիչ. Ամիթում արտագրեց Աւետարանը Արգլմսեհ քահանայի համար՝ 1373 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 617։

— 131. Թորոս, որդի Լևոն Զ-ի Լուսինեան. մեռել է Երուսաղէմում և նրա շիրմի վրա կառուցվել է տաճար և հիշատակարան, 1386 թ.—Ցուցիկք Բ. 518։ (Սխալ տեղեկություն. այդ հիշատակարանները պատկանում են Հեթում Ա-ին, յանուն իր Թորոս որդու, որ ընկավ Եգիպտացոց դեմ պատերազմում. տես վերը № 38։

— 132. Թորոս աբեղա Սեբաստիոյ Ս. Նշան վանուց. Սեղբեստրոս աբեղայի և Ստեփանոս արքեպիսկոպոսի հետ միասին հավատքի համար նահատակվեցին Սեբաստիայում, 1387 թ.—Նոր վկ. 139 (որ և Թէոդորոս 142)։

— 133. Թորոս Սսեցի, գնացել էր Մակենցիա քաղաքը, հետը տանելով երեք օրինակ Միսալ, որոնք կարգի բերելով արտագրեց Սարգիս-Ցակոբոս բժիշկ քահանան, 1391 թ.—Գաթըրճեան, Պտրգմտ. 470։

— 134. Տէր Թորոս, նահատակվել է 1393 թ.—Առաք. պատմ. էջ 485։

— 135. Թորոս, հայր Գրիգոր քահանայի, որ գնեց մի Ցայսմաւուրք՝ Տիրատուր քահանայից, 1394 թ.—Manus. bibl. nat. էջ 100։

— 136. Թորոս, որդի Ցուստիանէ խաթունի, որ վերաբացեց Բաբերդի Խաղճեանեայ կործանված վանքը 1395 թ.—Նոտարք 7 (ընդարձակ տես Ցուստիանէ)։

— 137. Թորոս կրոնավոր, որդի Մովսէսի և եղբայր Ստեփանոսի, ստացող և նորոգիչ ձեռագրի, 1396 թ.—Տաշեան, Ցուց. էջ 416։

— 138. Թորոս մեծ, տաղասաց. իր մի տաղը տես Manus. brit. mus. 120։ Ամենաուշը ԺԴ դարից է, որովհետև ձեռա-

գիրը գրված է 1412 թ. կոչված է մեծ, զանազանելու համար հաջորդներից։

— 139. Թորոս, տեր Ըմանակլի, մարաջախտ թագավորության հայոց, Հեթումից հետո (ԺԴ դար).—Սմբ. պտմ. 137։

— 140. Թորոս եպիսկոպոս Կեսարիայի. երևի ուխտի էր գնացել Երուսաղէմ, ուր Ս. Յարութիւն տաճարի մեծ դռան մարմարէ սյունի վրա փորագրել է տվել իր հիշատակությունը՝ 1417 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Ա. 915։

— 141. Թորոս, որդի Ղազարոսի, որ գնեց մի հին Աւետարան, 1424 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 645։

— 142. Սիր Թորոս Կոստանց, ձիավոր Կիպրոսում։ Երբ Եգիպտացիք արշավեցին Կիպրոս, Լևոն եպիսկոպոսի եղբոր՝ Կոստանդին երեցի հետ դուրս եկավ նրանց դեմ կռվելու, բայց ընկավ պատերազմում, 1425 թ.—Բակուրան, Կիպրոս կղզի, 56, 118, Սիսուան 561 ա։

— 143. Թորոս գասակալ Ս. Լուսավորչի դերեզմանի Ջորեհանդիստ վանքի, 1429 թ.—Նոտարք 92։

— 144. Թորոս քահանա, որդի Կոստանդին ավագերեցի, երկուսն էլ միաբան և խնամատար վերակացու Մելիտինէի Հայոց Ս. Գրիգոր վանքի, 1438 թ.—Թորոս աղբ. Բ. 453։

— 145. Թորոս եպիսկոպոս Ս. Կարապետի վանուց, Թղթակից անդամ Էջմիածնի համազգային մեծ ժողովի «1441 թ»։—Մեծոփ. յիշ. ա։

— 146. Թորոս աբեղա, միաբան Սեպուհ լեռան վանքի. շնորհեց իր Սաղմոսի օրինակը Յովհաննէս գրչին՝ արտագրության համար, 1442 թ։ Արդեն կոչված է «ալեօք պատեալ ծերունի» 1445 թ։—Նոտարք 129, 135։

— 147. Թորոս, միաբան Ապահունեաց ուխտի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 148. Թորոս, հորեղբայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ. 1937, 580)։

— 149. Թորոս, գործակալ Խորձեան գավառի Խլպաշի վանքում, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 341=Նոտարք 218։

— 150. Թորոս աբեղա, Երուսաղէմում օրինակեց Աւետարանը՝ 1465 թ.—Նոտարք 222։

— 151. Թորոս, մերձավոր Յովհաննէս քահանայի, որ Ու-

տանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 152. Թորոս, որդի պարոն Յովհաննէսի, որ Սեբաստիայի Շեղզենի գյուղում, Մինաս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1469 թ։—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։

— 153. Թորոս, հայր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում, Հայրապետ գրչին գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 154. Թորոս ոմն, որ մի քանի ընկերներով միասին մի Ավետարան է գրել տվել Մելքիսեթ գրչին, 1477 թ։—Ձեռ. Սեբ.= ՀԱ 1925, 261։

— 155. Թորոս պարոն, հայր Էլպաշի պարոն Էմին պէկի, որ Կեսարիայում, տէր Յովանէ Նաղաշին գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։

— 156. Թորոս, հոգևոր որդի մղդսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 157. Թորոս սարկավագ, աշակերտ Յովհաննէս գրչի, որ Կեսարիայում օրինակեց Ճաշոցը՝ 1484 թ. Թորոսն էլ օգնում էր իր ուսուցչին և թուղթ էր կոկում.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 158. Թաւրոս, եղբայր Յոհաննէս քահանայի, որ Բերկրիի Առեղս գյուղում, Սարգիս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— 159. Թորոս, մերձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Ավետարան, 1488 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 492։

— 160. Թորոս Հռոմկլայեցի, որդի Սուլթանշահի. հավատքի համար նահատակվեց «1494 թ».—Զամչ. Գ. 515. Նոր վկ. 332. Ազգապ. 2216։

— 161. Թորոս, հայր Յովանէս աբեղայի, որ Կեսարիոյ Մանտխոն գյուղում գրեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 162. Թորոս վարդապետ, աշակերտ Յովհաննէս Համշէնցու (Գրիգոր Տաթևացու գավազանից) և ուսուցիչ Գրիգոր Տարոնացու (շուրջ 1500 թ).—Առաք. պատմ. 340—341, Թորոս աղբ. Բ. 484։

— 163. Թորոս, նշանավոր վարդապետ, աշակերտ Գրիգոր Մոռելյարոյցի (ԺԵ դար).—Մ. մաշտ. 336 բ։

— 164. Թորոս կրոնավոր, թարգմանեց ասորերէնից ժամանակագրական մի գրվածք (1193 թվից ուշ և 1674 թվից շատ առաջ)։—Տաշեան, Ցուց. 490—2։

— 165. Թորոս Տարօնեցի, տաղասաց. սրանից Տաշեան, Ցուց. 794 բ տալիս է երեք երգ. 1) Տէր արարիչ արարածոց, դասուց անթիւ և անմարմնոց, է եկլի կօկի հարստան... 2) Գարունն է բացուեր, վարդն ի պաղչանին, 3) Ֆիղանա պաշլտուում պուլպուլլար կիպի, վարդն է նստեր ի բարձր որպէս թագուհի։ Ձեռագիրը գնում է ԺԶ—ԺԷ դարից. երգիչն էլ հավանաբար ԺԵ դարից է։ Առաջին երգը գիտէ նաև Ձեռ. Վեննա. Բ. 960, 963 (միևնույնը երկու անգամ), դժբախտաբար ձեռագիրը ավելի նոր է (ԺԹ դար)։

— 166. Թորոս տաղասաց. նման է սրա հետ. ունի մի երգ վարդի և սոխակի վրա.

Երբ քափուր փթըթէ,
Մտիկ արա այն բլբուլին.
Ձաերեն արեր իւրն վրան,
Ջօրն կենայ վերայ վարդին.

(տես Ձեռ. Բերլինի, էջ 68 ա).—Ձեռագիրը գրված է հաւանաբար ԺԷ դարում։—Կա վերջապես մի ուրիշ Թորոս տաղասաց, որ երգել է նմանապես սոխակն ու վարդը.

Պլպուլն ի վարդն ասաց խիստ անողորմ ես,
Որ զիմ արիւնս քեզ հալալ կու գնես...
Թորոս գովէ զվարդն ու զպլպուլն,
Որ ի սիրոյ ղամ կու քաշէն,
Մեղքն թողած է Թորոսին,
Եւ լողացդ ամենին (Տաշեան, Ցուց. 851 ա)։

— 167. Թորոս եպիսկոպոս Կաֆացի, ձեռնադրված էր Սսում (ժամանակն անհայտ).—Տաշեան, Ցուց. 359։

— 168. Թորոս Եզնկացի, հավատքի համար նահատակվեց Եզնկայում, «1528 թ».—Չամչ. Գ. 516, Նոր վկ. 369, Ազգապ. էջ 2328։

— 169. Թորոս Մայսեռց, Սսեցի. Լեռնբերդի իշխաններից էր. եղավ կաթուղիկոս Սսոյ «1548—1553 թ», իբրև հաջորդ Ղազար Ուլնեցու։—Ազգապ. 2259, Ձեռ. Հալէպի, Բ. 31 ա։

— 170. Թորոս Սեբաստացի (կամ Սսեցի). կաթուղիկոս Սսոյ. հաջորդեց Ներսէս Սեբաստացուն՝ «1653 թ». փնացել էր

Պոլիս, ուր և մեռավ 1657 թ. Թաղման նկարագրությունը տալիս է Երեմ. չէլ. օրագր. 241։—Ազգապ. 2516։

— 171. Թորոս քահանա Պոլսեցի. խլեց Պոլսի պատրիարքական աթոռը Կարապետ Կեսարացու ձեռքից, բայց 40 օրից տապալվեց «1680 թ»։ Երկրորդ անգամ խլեց աթոռը և գահակալեց մի տարի «1687—8 թ».—Ազգապ. 2621, 2641։

— 172. Թորոս քահանա Վանեցի, տաղասաց. կոչում է իրեն «Օքսուզ տէրտէր». հիշված է 1695 թվից. իր տաղերից նմուշներ տես Կոստանեանց, Նոր ժող. Ա. 49 և Տէվկանց, Հայերգ 63։

— 173. Թորոս իշխան Զավնդուրի, օգնական Դաւիթ բէգի. նշանավոր ճակատամարտ ունեցավ Զավնդուրի խաների 18,000 անոց բանակի դեմ և հաղթեց (1723)։ Երկրորդ մեծ պատերազմը մղեց Ֆաթալի խանի 12,000 անոց բանակի դեմ և 4000 հոգի կոտորելով՝ դուրս վանեց իր սահմաններից։ Օրդուպատի վրա արշավելու ժամանակ, երրորդ մեծ պատերազմը մղեց Ֆաթալի խանի դեմ, ուր իրեն օգնական եկավ Ֆրանգուլ իշխանը։ Թորոսը հաղթեց թշնամուն. բայց Ֆրանգուլը դավաճանությամբ զենքը Թորոսի դեմ դարձնելով՝ Թորոսը պարտվեց և ընկավ պատերազմի դաշտում (1724 թ)։—Զամչ. Գ. 786—8։

† **ԹՈՒԹԱԿ**, իգ. < հյ. թութակ թռչունի անունից, ճիշտ ինչպես պրս. Թրք. تو tūtī, որ նշանակում է «թութակ», գործածական է Թուրքերի և Պարսիկների մոտ իբրև իգ. անձնանուն։ Այս անունն էր կրում Պարսից Ֆաթալի շահի կանանցից մեկը (տես Ուղեգրութ. Զ. էջ 45)։ Մեր մեջ Թութակ իբրև անձնանուն հիշատակված է մի անգամ 1658 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 5 բ), իսկ Թութի՝ 1749 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 450)։ Վերջինը այժմ էլ գործածական է Պարսկահայոց մեջ։

***ԹՈՒԹԱՑԷԼ**, ար. ասորական անուն է. հմմտ. Թութայէլ, որ նախապես Եգեսիայում քուրմ էր Սարբելոս անունով. դարձավ քրիստոնյա և կոչվեց Թութայէլ. նահատակվեց Բ դարի սկիզբը. լատիններէն գրվածքներում կոչվում է Թօթուէլ. (Լիակ. վրք. սրբ. Ա. 373, 383)։ Հիշատակված է մեր մեջ մի անգամ (տես տակը). բայց անշուշտ ավելի սովորական էր, որովհետև սրանից ունինք Թիւթիլեան ազգանունը (Մալաթիա)։

— Թութայէլ, գրիչ. օրինակեց Պոլսում Ավետարանը՝ Աշոտ սպարապետի համար, 909 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 28 ա, Ցուցակ 188 (հիշված է նաև ՀԱ 1934, էջ 91)։

***ԹՈՒԹԻ** տես Թութակ։

***ԹՈՒԼԱԳ**, *մր. < չաղաթ.* تولك tülag *կամ* تولك ṭüleg *«խաղաղ, համեստ, պարկեշտ»* (Будагов, *1, 403*)։ *Մեր մեջ մի անգամ իբրև անձնանուն գտնում եմ գործածված 1578 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 438)։*

**ԹՈՒԼՈՒԽ**, *ար. ծագումն ինձ անհայտ (որովհետև չեմ կարծում թե կապ ունենա ատրպտ.* تولوق tulux *«տիկ» բառի հետ)։ Մի անգամ գտնում եմ հիշված՝*

— Թուլուխ, *հայր Յովհաննէս քահանայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.— Նոտարք 69։*

† **ԹՈՒԽԱՅՐ**, *ար. < հյ.* թուխ+այր *«տղամարդ» բառերից, ինչպես ունինք* Նուրայր, Ժիրայր, Տիրայր, Զարմայր: *Սրանից է կազմված* Թուխայրեանց *ազգանունը։* Թուխայր *ձևը չէ գործածված առանձին. բայց* Թուխայրեանց *հիշված է Հոռոմոսի (Խոշավանք) անթվական մի արձանագրության մեջ, մի քանի այլ ազգանունների շարքում (Սարգիսեան, Տեղագր. 155, Շիրակ 25, Արրտ. 1870, էջ 271)։*

**ԹՈՒԽԱՆ**, *ար. ծագումն ինձ անհայտ. բայց թվի թե թուրքերեն է, որովհետև ունինք Երևանի շրջանում* Թոխանշալու *անունով մի գյուղ (Թոխան-շահ անունով անձից այսպես կոչված)։ Մեր մեջ* Թուխան *իբրև անձնանուն երկու անգամ գտնում եմ գործածված՝*

— 1. Թուխան, *ծերունի վանահայր Փերճերի վանից (Կիլիկիա). Կոստանդին քահանային գրել տվեց մի Շարակնոց, 1325 թ.—*REA *8, 30, Սիսուան 153 ար։*

— 2. Թուխան, *որդի Կիրակոսի. մեռավ մատաղ հասակում (թվականն անհայտ). «զԹուխանն, որ տղայ հասակաւ ի Քրիստոս փոխեցաւ և եթող սուգ անմխիթար ծօրն իւրոյ Աննային և ինքն վարդ անուշ և ծաղիկ անթառամ յերկինս փոխիցաւ... (հայրն և մայրն) մնացին մարում (< արաբ.* محروم maḥrūm *«զուրկ, կարոտ») յաշխարհի, մայրն կենդանի և լալոտ աչօք յերկրի. և ետ զպղինձն ի դուռն սուրբ Վարդանին՝ յիշատակ Թուխանին».— Ջեռ. Վասպ. 333։*

**ԹՈՒԽԹԱՄՈՒՐ**, *ար. ծագումն ինձ անհայտ. թվի օտար։ Կա միայն՝*

— 1. Թուխթամուր *միայնակեց, որդի Սահմադինի և եղբայր Յովհաննէս վարդապետի, որ օրինակեց Աստուածաշունչը Խլաթում՝ 1418—1422 թ.— Ջեռ. Վենետ. Ա. 114։*

— 2. Թուխթամուր հիշատակված է նաև անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 73 բ։

*ԹՈՒԽԹԱՆ, ԹՈՒԽԹԱՆԳ, ԹՈՒԽԹԵՆԻ, իգ. համարում եմ բոլորը ծագած պրս. توختنی tuxtanī «խնդրվածք, հայցվածք» բառից, որ առաջանում է توختن tuxtan «հայցել, խնդրել» բայից, ինչպես خوردنی xordanī «ուտելիք, խմելիք» ծագում է خوردن xōrdan «ուտել, խմել» բայից։ Այս անունով ունինք Թուխթանի թաթար իշխանուհին՝ Վրդ. պատմ. դէ։ Մեր մեջ գործածված է ԺԳ—ԺԶ դարերում, այնուհետև խափանված է։—Հմմտ. հյ. համագորը Խնդրած:

— 1. Թուխթանգ, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքի մոտ՝ 1253 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 17։

— 2. Թուխթանկ, դուստր Սարգսի և քույր Կիրակոս քահանայի, որ Թումա քահանային գրել տվեց մի Աւետարան, Ոստան 1414 թ։—Ձեռ. Վասպ. 299։

— 3. Թուղթենի, դուստր Հուռումի և եղբայր Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

— 4. Թուխթանկ, կին Անդրէասի և մայր Աստուածատուր տանուտիրոջ, որ Ուշտունեաց Բերդաձորի վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443—5։

— 5. Թուխթան, կին պարոն Շահամիրի, որ Սարգիս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 264։

— 6. Թուխթեն, մեծ մայր Խոնաւքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 7. Թուխթէնի ոմն, հիշված ԺԵ դարում, Ձեռ. էջմ. № 940։

— 8. Թուխթանկ, մայր տանուտէր Մկրտչի, 1505 թ.—Ձեռ. Ներս. 16 աբ։

— 9. Թուղխթանկ, կին Թուխմանուկի. մեռել է մատաղ հասակում, որի համար էլ ողբում է դժբախտ ամուսինը.

Այլ կենակցին իմ համեստի,
Թուղխթանկ անուն սրբասիրի,
Որ փոխուեցաւ ի այս ամի,
Ձիս գառնացոյց իբր զլեղի.
Անշէջ հրով սիրտ իմ խաւրշի.

Մանտրիկ որբեր մնաց յերկրի·
Նորա հոգոյն Տէրն ողորմի,
Զի ինքն քաղցր էր ու բարի։

Թվականը անհայտ է։—Ձեռ. Վասպ. 611։

*ԹՈՒԽԹԱՐ, իգ. տես Դուխթար, որի վրա ավելացրու նաև՝

— Թուխթար, կին Յովհաննէսի և մայր Զահվիլի, որ Մուղնիում, Մկրտիչ երեցին գրել տվեց մի Գանձարան, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

† ԹՈՒԽԻԿ, ար. և իգ. < հյ. թուխ բառից, ճիշտ ինչպես սև բառից ունինք Սևուկ անունը։ Ավանդված է ԺԵ—ԺԸ դարերից և այժմ էլ դեռ գործածական է իբրև իգ. անուն։

— 1. Թուխիկ, ար. մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 2. Թուխիկ հիշված է նաև 1589 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167, իգ.), 1591 թ. (Սմբատեանց, Նրնջակ 274, իգ.), 1666 (անդ 240, իգ.), 1747 թ. (Ձեռ. Ն. Բայազ. 47 ա, ար.), 1770 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 ա, իգ.)։

*ԹՈՒԽԼԻՇԱՀ, ար. և իգ. < Թրք. toxli «երկու տարեկան գառնուկ»+պրս. شاه šāh «թագավոր» բառից։ Ավանդված է մեր մեջ ԺԵ և ԺԶ դարերից, այն է՝

— 1. Թուխլիշայ Կոնիռապատցի, (սեռն անհայտ), օգնեց գնելու մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

— 2. Թուխլուշայ, կին Գրիգորի և մայր տէր Դանիէլի, որ Համկլայում, Գալուստ գրչին գրել տվեց մի Մաշտոց, 1582 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 168։

† ԹՈՒԽԾԱՄ, իգ. < հյ. թուխ+ծամ բառերից և նշանակում է «սևահեր»։ Ավանդված է ԺԵ—ԺԶ դարերից։ Այսպես՝ Թուխծամ ոմն ԺԵ դար (Ձեռ. Էջմ. № 940), 1596 թ. (Ձեռ. Վասպ. 749), նաև՝

— Թուխծամ, կին Ամիրբէկի, որդւոյ Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

† ԹՈՒԽՄԱՆՈՒԿ, ար. < հյ. թուխ+մանուկ բառերից բաղդված. (բարբառներում թուխմանուկ նշանակում է «նոր հայտնված կամ անանուն սրբի գերեզման, որի վրա մի փոքրիկ տնակ են շինում՝ իբրև ուխտատեղի»)։ Կրճատ ձևն է Թուխման։ Գործածա-

կան է եղել ԺԵ—ԺԸ դարերում։ Այժմ կա սրանից Թուխմանեան ազգանունը։

— 1. Թուխմանուկ, որդի տանուտէր Սահակի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ջեռ. Վասպ. 470։

— 2. Թուխման ձևով ունինք հիշատակված 1711 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 34 ա), 1714 թ. (Տաշեան. Ցուց. 678)։

— 3. Թուխման մանուկ Տիգրանակերտցի. նոր նահատակ. կանգնել է բռնավորների դեմ, որոնք պահանջում էին ուրանալ իր հավատը, պատասխանել է համարձակ, բիրով ծեծել են, բանտարկել, չարչարել և տեսնելով նրա աննասան կամքը՝ եկեղեցու դռան գլխատել են, «1784 թ»։ Նրա վրա ունինք միայն մի տաղ, որի ոչ հեղինակը հայտնի է և ոչ էլ նահատակի կյանքի մասին որևէ այլ լրացուցիչ տեղեկություն։ Տաղը հրատարակված է Նոր վկ. 605—6։ Տես և Ազգապ. 3619։

— Առանց թվականի են՝ Թուխմանուկ, որ հիշված է 1373 թվից հետո գրված մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 326, Ճանիկեան, Հնութ. Ակնայ 99) և մի ուրիշ Թուխմանուկ (Ջեռ. Վասպ. 610)։

ԹՈՒԽՏԻՆ, սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ հիշված է ԺԴ դարում։

— Թուխտին (սեռ. Թուխտինայ), որին տարեկան երկու պատարագ է նվիրում Գոնցա կին Վահրամի Շահունեցւոյ Տարսայինեանց՝ Հերհերի Ս. Յովհաննէս եկեղեցու մի արձանագրության մեջ, 1345 թ.—Սիսական 115։

*ԹՈՒՄԱԲԷԿ, ար. < Թովմա (Թումա) անունից+բէկ։ Գործածված է ԺԵ դարում։

— 1. Թումաբէկ, «նորաբոյս ծաղկեալ դալար» Երզնկացի տանուտեր ոսկերիչ Յովհաննէսի, որ Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.—Ջեռ. Վասպ. 368։

— 2. Թումայ պէկ, որդի Առաքել քահանայի, որ Աղթամարում, Դանիէլ գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1444 թ։—Նոտարք, էջ 135։

— 3. Թումայ բէկ, եղբօրորդի Մկրտիչ կրոնավորի, որ Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 151։

— 4. Թումաբէկ, որդի՞ Շիրազմամայի, որ մի հին Աւետարան նորոգել տվեց 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— 5. Թումաբէկ, ամուսին Խաթուն Մելէքի՝ հորաքրոջ տանուտէր Սադաղայ Ծերենցի, որ Թումայ քահանային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Աղթամարայ վանքին, 1476 թ.—Ջեռ. Վասպ. 480—1։

*ԹՈՒՄԱՆ, ար. պէտք է տարբերել Թովմա, Թովմաս ձևերից, իբրև թթր. تومان tuman, որ գործածական է նաև պարսկերենում, և նշանակում է «10,000»։ Իբրև հատուկ անուն գործածված է նաև մահմեդականների մոտ. ինչ. Կարնեցի ոմն Թուման, որի անունով էլ Թումանի վանքը (տես Իբն-ի Բատուտա Հայոց մասին, էջ 33)։ Մեր մեջ գործածված է եղել ԺԴ դարից մինչև ԺԷ դար։ Սրանից է Թումանեան ազգանունը։

— 1. Թումանբէգ, թոռ Շահնշահի, որ Գողթան գավառի Կապատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 2. Թուման, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Արցախի Փիփ գյուղի Սվրեցիքի հանգստարանում, 1351 թ.—Արցախ 299։

— 3. Թուման, որդի Մկրտիչ քահանայի, որ Բերկրի քաղաքի առաջնորդն էր 1422 թ.—Ջեռ. Վասպ. 350։

— 4. Թուման, որդի հանգուցյալ պարոն Յակոբի, ժառանգական խնդրով ներկայացել է Լեհահայոց դատաստանական խորհրդին, 1463 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 87։

— 5. Թուման բէգ, որդի Ջումա Բ-ի, եղբայր Ղալաբէկի և Ուլուսբէկի, Պռոշեանց իշխանական տոհմից. հիշված է 1475 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 232, 236։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Թուման ոմն Սերաթցի, 1504 թ. (Տաշեան, Ցուց. 55), Թուման պէյ, որդի Խօջա Գրիգորի Պապաքայ, 1520 թ. (Տաշեան, Ցուց. 276), Թուման 1541 թ. (Սիսական 44 և Սմբատեանց, Գեղարքունի 59), 1661 թ. (Ջեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 119), 1661 թ. (Ջեռ. Վասպ. 920), 1671 թ. (անդ 940), 1682 թ. (Ջամբռ 173)։ Զարմանալի է Թուման իգ! 1647 թ. (Ջեռ. Թաւր. 101 բ)։

*ԹՈՒՄԱՇԱՀ, ար. < Թումա (=Թովմա) անունից + պրս. شاه šāh «թագավոր»։

— 1. Թումաշահ, որդի Դանիէլի և եղբայր Կարապետ քա-

հանայի, որ գնաց և նորոգել տվեց մի Աւետարան, 1401 թ.— Ձեռ. Վասպ. 126։

— 2. Թումաշահ անուն մեծավոր Դանիել սարկավագի, որ Աղթամարում օրինակեց Մաշտոցը, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 277։

— 3. Թումաշահ, հովիվ, որ Ոստանի Ս. Ստեփաննոս եկեղեցուն նվերներ է արել, 1411 թ?—Ձեռ. Վասպ. 236։

— Հիշված է նաև 1592 թ. (Ձեռ. Վասպ. 734, բայց գրված է Թումանշէն, եթե վրիպակ չէ), անթվական՝ սեռ. Թումաշին (անդ 716)։

*ԹՈՒՄԱՋԱՆ, ար. < Թումա (=Թովմա) անունից+պրս. جان jān «հոգյակ»։ Ավանդված է ԺԶ—ԺԸ դարերից. գրական ձևն է համարվում Թովմաջան, որից և Թովմաճանեան ազգանունը։ Ամենահին հիշատակությունն է Թումաջան 1562 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 157), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 683, 685), 1582 թ. (անդ 696), 1585 թ. (անդ 649), դարձյալ 1585 թ. (անդ 702), Թումաճան 1587 թ. (Տաշեան, Ցուց. 319), Թումաջան 1595 թ. (Ձեռ. Վասպ. 742), Թումաճան 1605 թ. (Թորոս աղբ. Բ. 439), 1612 թ. (Manus. brit. mus. 39 ա), Թումաջան 1648 թ. (Ձեռ. Վասպ. 682), Թումաճան 1779 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 358)։

ԹՈՒՄԻԱՆ, իգ! ծագումը ինձ անհայտ. հիշված է 1490 թըվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Սեվան. 6 ա)։

ԹՈՒՇԵՐ, ար. ծագումը ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1311 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 73 ա)։

ԹՈՒՇԻԿ, իգ. ծագումը ինձ անհայտ. արդյոք հյ. թուշ «այտ» բառից է։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԶ դարում (Ձեռ. Սանաս. 7 բ)։ Կենդանի է և այժմ։

ԹՈՒՇԻՋԱՆ, իգ. ծագումը ինձ անհայտ. արդյոք Թուշիկ անվան փաղաքշականն է։ Մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 450)։

ԹՈՒՋԱՄԱՂԱ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված 1570 ական թվերին (Կարապետ եպս.՝ Դոփեանք 190, Թուճամաղա ձևով)։

*ԹՈՒՐԱԲ, ար. < արաբ. تراب turāb «հող» բառից. իբրև անձնանուն գործածական էր նաև Պարսից մեջ. հմմտ. Թօրաբ խան՝ Քէրիմ խանի հակառակորդը (Զուղ. 332)։ Իմաստի համար

հմմտ. Ադամ և Հողիկ անունները։ Մեր մեջ այս անվան առանձին գործածության պատահել եմ միայն մի անգամ. այն է Թուրապ ոմն, Գեղամայ երկրում, 1578 թ. (Ձեռ. Վասպ. 11)։ Բայց անշուշտ բավական սովորական էր, որովհետև սրանից ունինք Թուրաքեան (արևմտ. Թիւրապեան) ազգանունը։

*ԹՈՒՐԱՆ, ար. < պրս. توران Tūrān երկրի անունից, որ Իրանի հակառակորդն է եղել երկար դարեր։ Այս անունով հայտնի կերպով հիշված ունինք՝

— 1. Թուրան Խանականցի, ազգական Ներսէս վրդ. Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. 546։

— 2. Թուրան ոմն, որից մի հող է գնվել և նվիրվել Աշտարակի Ս. Մարիանէ եկեղեցուն, 1323 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 86, Այրարատ 186։

— 3. Թուրան ոմն, հիշված է 1476 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339)։

*ԹՈՒՐԱՆԳ, իգ. < նախորդ Թուրան անունից+մի կրճատ բառ. հմմտ. պրս. توران دخت Tūran-duxt «է անուն դստեր Խուսրէվ Փէրվիզի արքային Պարսից»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Թուրանգ, դուստր Մաթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

*ԹՈՒՐԱՆՄԵԼԷՔ, իգ. < պրս. توران Tūrān «Թուրանի երկիրը»+արաբ. ملك melek «հրեշտակ»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Թուրան-մելէք, դուստր Թումայի և քույր տանուտէր խոջա Խդըրշահի, որ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

*ԹՈՒՐԱՆՇԱՀ, ար. < պրս. توران Tūrān «Թուրանի երկիրը»+ شاه šāh «թագավոր»։ Գործածական էր նաև մահմեդականների մեջ. ինչ. Թուրանշահ՝ հորեղբայր Հալէպի սուլթանի, որի հրամանով գնաց պաշարեց Կիլիկիոյ Գաղրաս բերդը, բայց չկարողացավ գրավել՝ 1236 թ. (Սիսուան 426 ա)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԷ դարում։

— 1. Թուրանշայ (սեռ. սխալատիպ Թարանշին ձևով), 1613 թ.—Ձեռ. Վասպ. 845։

— Մի անգամ էլ հիշատակված է Թուրանշայ ձևով՝ 1655

թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Նոր-Բայազ. 43 ա։

*ԹՈՒՐԱՋ, իգ. < թթր. توراج tūrāǰ «մի տեսակ փոքր շահեն», թրք. turaǰ «սալամբ թռչունը» (սրանց աղբյուրը տես Արմ. Բռ. դուռեջ):

— 1. Թուրաջ, դուստր Մաղաքիա քահանայի, քույր Բղեցի Մեսրոպ երեց գրչի (1588 թ)։—Տաշեան, Ցուց. 736։

— 2. Թուրաջ, կին ոմն՝ հիշված 1654 թ.—Ջեռ. Դաշեան, Ա. 48 ա։

*ԹՈՒՐԻՆՋ, իգ. < պրս. արաբ. ترنج turunǰ, turinǰ «մի տեսակ նարինջ, թուրինջ», որ նաև Պարսից մեջ իգ. անուն էր. համեմ. Utrunǰah դուստր Ašnās-ի, կին Հասանի՝ որդւոյ Աֆշինի՝ 839 թ. (պրս. turunǰ, utruǰ համանիշ բառից, Justi 337 ա)։ Գործածական է երբեմն և այժմ։

— 1. Թօրանջ, հիշված 1613 թ. Մոկսում (Ջեռ. Վասպ. էջ 846)։

— 2. Թուրինջ, կին Սելվիարի և մայր ժամկոչ Տօնիկի, որ ստացավ մի Մաշտոց և նվիրեց Սեբաստիոյ եկեղեցուն, 1656 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 338։

— 3. Սրանից ունինք նաև՝ Թուրինջ, աշուղ նոր ժամանակներից. իր երգերից տես Գամառ-Քաթիպա, Ազգ. երգարան, 1856, էջ 140։

*ԹՈՒՐԼՈՒ, ար. < թրք. دورلو dürlü «տեսակ, կերպ, եղանակ» (ժող. türlü)։ Համեմ. հյ. Զանազան անունը։ Իբրև անձնանուն հիշատակված եմ գտնում մեր մեջ մի անգամ, 1661 թ. (Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. 159)։

*ԹՈՒՐՇԻ, ար. < թրք. تورشى turši «թթվածք, աղը կամ քացախը դրած բան, թթու» (որ ծագում է պրս. ترش turš «թթու» բառից)։ Իբրև արական անձնանուն հիշված եմ գտնում մի անգամ 1691 թ. (Ջեռ. Դաշեան, Բ. 18 բ)։

*ԹՈՒՐՎԱՆԴ կամ ԹՈՒՐՎԱՆԴԱ (որ սեռականում կորցնելով իր վերջաձայնը՝ վերածվում է առաջին ձևին), իգ. < պրս. ترفنده turfanda > թրք. طرفنده turfanda, ռմկ. թուֆանտա, թիւրվանդա «երախայրիք, առաջին նորահաս պտուղ, նուբար»։ Հնագույն հիշատակությունը 1338 թվից է. շարունակվում է ԺԵ, մանավանդ ԺԶ—ԺԷ դարերում և անցյալ դարում էլ դեռ գործածական էր Պոլսում։ Գրված է զանազան ձևերով, ինչպես երևում է հաջորդ հիշատակություններից։

— 1. Թուրուանդ, դուստր Կարապետի և քույր Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց Ավետարանը, 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 2. Թուրվանդ, կին Յովհաննէսի և մայր Մարկոս գրչի, որ Կաֆայում օրինակեց Գանձարանը, 1381 թ.—Manus. bibl. nat. էջ 37։

— 3. Թուրվանդա, դուստր պարոն Մարգարի. ստացավ մի Ավետարան. և նվիրեց Անդրէաս քահանային, 1406 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22։

— 4. Թուրվանդա խաթուն Կաֆայեցի, «որ մատաղ հասակաւ վախճանեաց զկեանս իւր առ Քրիստոս», 1437 թ. (կամ քիչ առաջ).—Ձեռ. Սեբ=ՀԱ 1926, 238։

— 5. Թուրւանդ, կին Գալոցի և մայր տանուտէր Դաւթի, որ Թացու գյուղում, Յովսէփ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379։

— 6. Թուրուանդ, դուստր Մելքիսեթի՝ եղբոր նույն տանուտէր Դաւթի, 1437 թ.—անդ 380։

— 7. Թուրուանդէ, դուստր Ստեփաննոսի և կին Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 8. Թուրվանդայ խաթուն, դուստր Թաղաղարի, կին Իսրայէլի, Յովհաննէս կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1448 թ.—Նոտարք 158, Ձեռ. Վասպ. 401—3։

— 9. Թուրուանդայ, դուստր Յովհաննէսի և կին ոսկերիչ Յովհաննէսի. Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան, որ և նվիրեց Սախապատի վանքին, 1449 թ.—Նոտարք 162, Ձեռ. Վասպ. 403։

— 10. Թուրվանդայ խաթուն, մայր Բաղիշեցի խոճայ Ֆահրատի. մի սկիհ նվիրեց Արծկէի տաճարին՝ 1459 թ?—Նոտարք, էջ 193։

— 11. Թուրմանդ, որդի (իմա դուստր?) Յակոբի, որ Երզնկայում ստացավ մի Ավետարան, 1477 թ.—Ձեռ. Վեննա. Ա. էջ 628։

— 12. Թուրանդա (կարդա Թուրվանդա), կին Մելքոնի՝ որդւոյ խոջա Յովհանէսի, հօրեղբօրորդւոյ Խոջա Յովսէփի, որ Տարօնի իշխանն էր և Մուշում, Պօղոս վարդապետին գրել տվեց մի Ավետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ=ՀԱ 1925, 263։

— 13. Թրուանդա, կին Սուլթանշահի և մայր Մկրտիչ քա-

հանայի, որ Խիզանում գրեց մի Աւետարան և վաճառեց Յոհանին, 1482 Թ.—Ձեռ. Վասպ. 492։

— 14. Թուրվանդ, մերձավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1484 Թ.—Rapport Belgique 39.

— 15. Թուրվանդ, դուստր Տաւլախի և եղբայր տանուտեր Մարտիրոսի, որ իրենց վաղամեռիկ եղբոր՝ Շարիբէգի հիշատակին մի Աւետարան գրել տվեց, 1489 Թ.—ՀԱ 1894, 52 ա։

— 16. Թուրվանդա, դուստր Յովհաննէս քահանայի, որ իր եղբայրների հետ միանալով՝ մի Աւետարան գրել տվեց Մարգարայ գրչին, Աղբակու Երնկանի գյուղում, 1490 Թ.—Ձեռ. Վասպ. էջ 511.

— 17. Թօրվանդա, կին Գրիգորի և մայր Վարդանի, որ Իսրայէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, Շատախ 1491 Թ.—Ձեռ. Վասպ. 517։

— 18. Թուրւանդայ, կին Սուքիասի՝ եղբոր Յակոբի, որ Աղթամարում, Խոջա Միրիջանի համար գրեց մի Աւետարան, 1493 Թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 19. Թուրվանդ, կին Գրիգորի և մայր Ստեփանոսի, որ Աղթամարում Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1497 Թ.—Bodleian 11։

— 20. Թուրուանդ, դուստր Դանիէլի և քոյր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 21. Թուրվանդայ, կին Բուլղանդարի, մերձավոր Ռուզտիկնոջ, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1499 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

— Այս բոլորից դուրս հիշենք նաև Թուրհանդա անսովոր ձևը, որ գտնում եմ Ձեռ. Վասպ. 835 (1609 Թ)։—Վերոհիշյալ ձևերից էլ Թուրվանդ ընդհանրապես պետք է կարդալ Թուրվանդա:

*ԹՈՒՐՔ, ար. < ترک turk ազգի անունից, որ և պարսիկ բանաստեղծների մոտ գործածվում է «գեղեցիկ» իմաստով։ Բայց Պարսից մեջ կան նաև Turkān-šāh «Թուրքերի թագավոր» ար. և Turkān-xātūn «Թուրքերի թագուհի» իգ. անունները (Justi 330)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Թ դարում։

— Թուրf, հայր Միհրանի, որ իբրև վկա հիշված է Տաթևի 844 Թվի կալվածագրում.—սեռ. Թուրfայ՝ Օրբ. լը։

*ԹՈՒՐՔԱՆ, ար. ծագումը տես Թուրf։ Մի անգամ հիշված

եմ գտնում 1630 թ. (Կամենից 180), գրված Թուքան, որ ըստ իս պետք է կարդալ Թուրքան։

*ԹՐԱՂՆ, իգ. < պրս. ترياق tiryāq «թիրյաք, ամենաբույժ դեղ» բառից, որ արդի պարսկերենում հնչվում է հենց ղ վերջաձայնով։ Համա. հյ. խոցադեղ անունը։

— Թրաղն, կին Նուրիջանի (ԺԾ դարից հետո).—սեռ. Թըրաղնի ձեռք՝ Ջեռ. Թաւր. 41 բ։

ԹՐՆԱ, թվի սեռական հոլով. սեռն անհայտ. հիշված է մի անգամ Ներքին Ագուլիսի (Դաշտ) եկեղեցու պարիսպի խաչքարի վրա, 1478 թ. Ամբողջը հետևյալն է. «Ինչս յշտկ Մախթումա, Թրնա, Սլթնշա, Սրղանա, Սաֆա, Խլաֆ յարվլա, Ջանվլա, Նորվա, Ջիէ»։—Աղգագր. հանդ. ԺԱ, 313։

ԹՐՔԱԻ, ար. ծագումն ինձ անհայտ։ Կա միայն՝

— Թրքաւ ոմն Սեբաթցի, 1504 թ. (Տաշեան, Ցուց. 55)։

ԹԻՕ, ար. թվում է թե Դաւիթ բառի կրճատն է. հիշված է Թիօ դերձակ ոմն, որ 1741 թվին նվերներ է արել եկեղեցուն (Ջեռ. Վասպ. 783)։

†ԹՓԻԿ, < հյ. թուփ բառի գգվական ձևն է. սեռն ու թըվականը անհայտ. հիշված է մի անգամ Թորոս աղբ. Բ. 367։

ԹՕԴՕՂ, ար. թվում է թե ծագում է նոր հուն. Թոդորի անունից, որ է Թէոդորոս։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԹ դարում։ Վառվառէ Կարնեցի († 1810 թ) նահատակ կույսի փոքր եղբոր անունն է։—Նոր վկ. 647։

# Ժ

ԺԱԺԱՏ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Թվականը անհայտ է. բայց 1506 թվից էլ շատ ուշ չէ. որովհետև այս թվին Տօնպէկի աղջիկը գնել է մի Աւետարան, իսկ Տօնպէկի թոռը, որ այս Ժաժատի որդին է, կազմել է տվել նույն Աւետարանը (Ջեռ. Հալէպի, Ա. 80)։

†ԺԱՄԽԱԹՈՒՆ, իգ. < հյ. ժամ «եկեղեցի»+խաթուն բառերից. իմաստն է «եկեղեցասէր կին»։ Մի անգամ հիշատակված է ԺԷ դարում։

— Ժամխաթուն, կին մահտեսի Սարգսի, որ վերջին ստացող էր մի Աւետարանի, 1621 թ? (Սրուանձտեանց, Թորոս աղբ. Ա. 59)։

†**ԺԱՄՀԱՅՐ**, ար. < ժամ+հայր բառերից. երևի ամբողջը նշանակում էր «եկեղեցասէր մարդ», որի իգականն է ժամխաթուն: Մի անգամ գտնում եմ հիշված Արցախում Հախում գյուղի մոտ՝ Շխմուրատայ վանքի մի սքանչելի գեղաքանդակ խաչքարի անթվական արձանագրության մեջ, որ հետևյալն է. «Յանուն Աստուծոյ ես Դանիէլ և Այլարայ միաբանեցաք վանքս և տուաք յայտնութեամբ ժամհերայ ողին...» (Բարխուտ. Արցախ 335)։ Անշուշտ պետք չէ հասկանալ ժամհար, որի սեռականը պիտի լիներ ժամհարի.-այ վերջավորությունը ցույց է տալիս, որ իբր հատուկ անուն է հոլովված։

*ԺԵՆԻԱ, իգ. < ռուս. Женя անունից, որ Евгения անվան գգվականն է. ծագումը տես Եւգինե։ Գործածական է միայն Արևելահայոց մեջ. սրա էլ գգվականն է Ժենիկ, Ժենիչկա։

†**ԺԻՐԱՅՐ**, ար. < ժիր+այր «մարդ» բառերից և նշանակում է «ժիր տղամարդ». նորակերտ և սովորական անուն. համմ. Նորայր, Զարմայր, Հրայր։ Նկատելի է, որ այս բառի մեջ Ի ձայնավորը սղված չէ. մինչդեռ Հրայր բառի մեջ ու սղված է։

*ԺՈՐԺ, ար. < ֆրանս. George անունից, որի վրա ընդարձակ տես Գեորգ. նորամուտ անուն է, որի փաղաքշականն էլ կա՝ Ժորժիկ։

*ԺՕՖՐԷ տես Ջօֆրի։

# Ի

*ԻԲԱՍ, ար. ասորական անուն է. համմ. Իբաս եպիսկոպոս Եդեսացւոց, որ Պարսամայ եպիսկոպոսի հետ հիմ դրավ ասորի նեստորական դավանանքին (Տարօն. Ա. § 85)։ Նույն է նաև Մար-Իբաս, որ և Մար-Աբաս ասորի պատմիչ, որ իբրև հիմք ծառայեց Խորենացու Պատմության առաջին շրջանին։

— Իբաս, քաղկեդոնական քարոզիչ, որին Աբաս Ա կաթողիկոս Աղվանից «552—596 թ» դուրս վտարեց իր երկրից։—Կղկնտ. Բ. ը։

*ԻԲՐԱՀԻՄ, ար. < արաբ. ابراهيم Ibrāhīm անունից, որի վրա ընդարձակ տես Աբրահամ։ Սրանից կա Իբրահիմբէգեանց ազգանունը (Զեռ. Թաւր. 89—90)։ Գործածական է եղել ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես են՝

— 1. Իպրահիմ ոմն, հիշված 1536 թ.—Զեռ. Հալէպի, Ա. 340 ա։

— 2. Իպրահիմ *ոմն, հիշված 1588 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 233 ա։*

— 3. Իբրահիմ, *որդի Միրաքի, Աստահանցի, 1651 Թ.—Տաշեան, Ցուց. 363։*

— 4. Իպրաճիմ, *հիշված 1659 Թ.—Երեմ. չէլ. օրագր. 331 ևն։*

Իբրիանոս *տես* Եփրիանոս.

*ԻԳԴԻՇ, *իգ. և ար. < պրս.* اكدش igdiš *«նշ. գայնպիսի ծնունդ, որ իցէ ծնեալ յայլևայլ սերմանց, որպէս այն որ իցէ ծնեալ ի հնդիկ հօրէ և ի հոռոմ մօրէ կոչի իկտիշ. և յայսմանէ առեալ նաև այն ձին, որոյ մի կողմն արէպի է և միւսն ռումի՝ ասի իկտիշ» (ԳԴ)։ Հետին ստուգաբանությամբ եղել է* իկտիշ *«խառնածին ձի», ինչպես ունի Անսիզք 63։ Իբրև անձնանուն հիշատակված է մեր մեջ ԺԴ—ԺԵ դարերում։*

— 1. Իկդիշ *(տպված է* Իկդեղ*), կին պարոն Վարդի՝ որդւոյ Գարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան, 1329 Թ.—Ձեռ. Վասպ. էջ 179։*

— 2. Իկտիշ, *մեծ մայր, հիշված 1428 Թ.—Տաշեան, Ցուց. էջ 583։*

— 3. Եգդիշ *(կարդա Իգդիշ), հայր Ուսլումէլէքի՝ կնոջ Ատոմ քահանայի, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 Թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։*

— 4. Իգդիշ, *իգ. Թվականն անհայտ.—*Bodleian *147։—Նույնպես և Ձեռ. Թաւր. 73 բ—74 ա։*

*ԻԳԻԹԱՂԱ, *ար. < Թրք. Թթր.* اكت igit, يكت yigit, جيكت ǰigit *«երիտասարդ. 2 քաջ, կտրիճ»* (Будагов *2, 359)+* آغا aġa *«աղա» բառերից։ Իբրև անձնանուն հիշված է մեր մեջ մի անգամ ԺԵ դարում՝* Իկիթաղայ *ձևով՝ Ձեռ. Էջմ. № 940։ Հմմտ. հաջորդը։*

*ԻԳԻԹԽԱՆ, *ար. < Թրք.* igit *«քաջ, կտրիճ» (տես նախորդը)+պրս.* خان xān *«իշխան» բառերից։ Անշուշտ գործածական էր անցյալ դարում, որից և* Իգիթխանեան *ազգանունը (Կոլկաս)։*

† ԻԳԻՇՈՒԿ *< հյ.* Էգ *և* իշուկ *բառերից. սեռը հայտնի չէ, բայց էգ-ից երևում է որ իգական է. մի անգամ հիշատակված է 1311 Թվից հետո գրված անԹվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Թաւր. 74 ա։*

*ԻԳՆԱՏԻՈՍ, *ար. < հուն.* Ἰγνάτιος *անունից, որ փոխառյալ է լտ.* Ignatius *անունից (> ֆրանս.* Ignace, *գերմ.* Ignatius, Ignaz, *ռուս.* Игнатий)*. Ծագում է լտ.* ignis *«կրակ, բոց, լույս» բառից և նշանակում է բուն «հրեղեն, լուսավոր»։ Հին հռովմեական անուն էր, որ ապա անցավ հունաց և ուրիշ քրիստոնյա*

ազգերի։ Այս անունով հայտնի են՝ Իգնատիոս Աստուածազգեաց, հայրապետ Անտիոքացի, նահատակ (որի թղթերը թարգմանված են Ոսկեդարում հայերենի), Իգնատիոս պատրիարք Պոլսոյ 799—878, Իգնատիոս Լոյոլա՝ ճիզվիթական կարգի հիմնադիրը (1491—1556)։ Գործածական է եղել մեր մեջ Ժ դարից և այժմ էլ կենդանի է։

— 1. **Իգնատիոս** եպիսկոպոս, առաջնորդ Զանկլի գյուղի եկեղեցու, 1030 թ.—Այրարատ 48։

— 2. **Իգնատիոս** վարդապետ Սևլեռնցի, որ և Շնորհալի. առաջին Շափիրին վանքի. ուսումնակից Գրիգոր Գ Պահլավունի կաթողիկոսի («1113—1166 թ»), որի առաջարկությամբ գրեց Մեկնություն Ղուկասու աւետարանի։ Ավարտած պիտի լինի ԺԲ դարի կեսից առաջ, որովհետև հիշված է Կունդ Սարգսի մոտ՝ 1146 թ։ Իր անունով է նաև «Ցաղագս անառակին» (Ձեռ. Վենետ. Բ. 84)։—Կիր. 63. Կրպտ. սարկ. յոչ. Մխ. այրիվ. 79. Տաթև. հարց. 697.—սեռ. **Իգնատիոսի**՝ Իգնատ. ղկ. 2.—Զարբ. Հին դպր. 642—3, Ալիշան՝ Շնորհ. էջ 114, Տաշեան, Ցուց. 751։

— 3. **Իգնատիոս** քահանա, եղբայրն է գրիչ Պետրոս քահանայի, Սկևռա 1205 թ. այս թվին Իգնատիոսը արդեն մեռած էր։—Սիսուան 101։

— 4. **Իգնատիոս** վարդապետ Հաղբատի, մին հիւսիսականներից, որոնք գրեցին Գրիգոր Դ Տղային՝ միության խնդրին հակառակ («1178 թ»)։ Մասնակցեց Զաքարե սպասալարի գումարած կրոնական ժողովին՝ Լոռի «1208 թ»։—Կիր. գ. Շնորհ. թղ. 308։—Զարբ. Թրգմ. 448, Հայապ. 383։

— 5. **Իգնատիոս**, հիշվում է Խծկոնից արձանագրության մեջ՝ իբրև պատարագ ստացող, 1213 թ։—Արձ. Այրարատ 113։

— 6. **Ինքնատիոս**, քեռայր Վարդան և Սարգիս քահանաների, որոնք Երզնկայի Կապոսի վանքում գրել տվին Տոնամակը՝ 1230 թ։—Ձեռ. Վիեննա. Բ. 1214։

— 7. **Իգնատիոս**, նշանավոր գրիչ և ծաղկող. գրեց ու գեղեցիկ նկարներով զարդարեց մի Աւետարան, Հաւուցթառի միաբան Թադէոս և Հայրապետ եղբայրների պատվերով, 1214 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 592—3)։ Նրանն են նաև Հոռոմոսի վանքում գրած շատ գեղեցիկ ոսկետառ Աւետարանը, 1225 թ. (Շիրակ 27 բ ծան.) և Բագնայրի Աւետարանը՝ 1232 թվից, ինչպես և Ջուղայի №36 Աւետարանը՝ գրված Խծկոնքում 1236 թ.—Այրարատ 356 (նմանահանությամբ). Նրա մասին մանրամասն խոսում է Ցով-

ռէֆեան, Նիւթեր և ուս. Ա. 15—40, Բ. 60—66 և 45—59 (վերջինիս մեջ խոսվում է Իգնատիոսի նորագյուտ անթվական մի գործի մասին)։ Հմմտ. նաև Թիւրաեան, Անահիտ 1939 թ. № 3, էջ 32։

— 8. Իգնատիոս, եղբայր Սարգիս քահանայի, որ իրայինների հիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ Հողբի (Ղազախ) հին հանգստարանում, 1244 թ.—Արցախ 385։

— 9. Ընքնատիոս, գրիչ. օրինակել է մի Աւետարան, 1275 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 77։

— 10. Իգնատիոս, քեռին է Դաստպետ վարդապետի և նրա եղբայր Կարապետի, որոնց օգնեց դրամով՝ շինելու համար Գոշավանքի զանգակատունը, 1291 թ։—Շահխաթ. Բ. 368, Ազգագր. հանդ. Ժ, 35, Արցախ 353։

— 11. Իգնատոս, որդի Վարդան գրչի. ծնվել է 1316 թ. երբ եղավ 15 կամ 16 տարեկան, օծվեց սարկավագ. այդ ժիջոցին հայրը գրեց մի Աւետարան նրա անունով, Պաւղասխ դաշտի Աղպինար գյուղում, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 174։

— 12. Իգնատիոս երեց, հայթայթեց ասորերեն ժամանակագրության մի օրինակ, որ Թորոս կրոնավորը թարգմանեց հայերենի (1193 թվից հետո և 1674 թվից շատ առաջ)։—Տաշեան, Ցուց. 491)։

— 13. Իգնատիոս վարդապետ, որին օրհնությամբ հիշում է Սարգիս եպիսկոպոսը իր օրինակած Ցայսմաւուրքի հիշատակարանում, որ գրեց Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում, 1427 թ։—Նոտարք 85։

— 14. Իգնատիոս աբեղա, գրիչ. Կիրակոս կրոնավորի առաջարկով գրեց Մեկնութիւն Թղթոցն կաթուղիկէի, մի մասը Լիմ անապատում և մի մասն էլ Սուխարայ կամ Խառաբաստայ վանքում, 1454 թ։—Նոտարք 174, 176։

— 15. Իգնատիոս, խարազն վանական Նորավանից, 1456 թ։—Զարբ. Թրգմ. 727։

— 16. Իգնատիոս կրոնավոր, ուսուցիչ Ղազար գրչի, որ օրինակեց Ցայսմաւուրքը Լիմ կղզում, 1457 թ. այս թվին Իգնատիոսը արդեն մեռած էր.—Ձեռ. Թաւր. 102 բ։

— 17. Իգնատիոս կրոնավոր, եղբայր Մատթէոս գրչի, որ օրինակեց Գիրք Թղթոցը, 1426—76 թ։—Կարապետ եպս.՝ Ճոփեանք, էջ 189։

— 18. Իգնատիոս գրիչ. օրինակեց Աւետարանը «Գանայ-

գեռայ ուխտում», 1496 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 46 ա։

— 19. Իգնատիոս վրդ. Տիգրանակերտցի. գրել է «Ողբ չափաբերական յաղագս աւերման արևելեան աշխարհի ի Պարսից և յՕսմանցւոց». թվականն անհայտ.—Ձեռ. Կարին. 166։

— 20. Իգնատիոս Գաղամաճեան, պատրիարք Պոլսի «1869 թ». հաջորդեց Պօղոս Թաքթաքեանին. հիվանդացավ ու մեռավ 12 օրից։—Ազգապ. 4167։

Իզաբել տես Զաբել

*ԻԶԱԴԻՆ, ար. < արաբ. عزالدين ʿIzzaddīn անունից, որ բուն նշանակում է «փառք և մեծություն կրոնի». սովորական անուն է մահմեդականների մոտ։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թվին գրված մի Ավետարանում։—Ձեռ. Թաւր. 71 ա.

*ԻԶԱԹՄԵԼԻՔ, իգ. < արաբ. عزت ʿizzet «փառք, պատիվ, մեծություն»+ مليك melik «թագավոր»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 73 ա։

*ԻԶԱՅԻ, ար. եվրոպական ձևն է Եսայի անվան, որ տես առանձին։ Այս ձևով գործածված եմ գտնում մի անգամ 1507 թ։—Ձեռ. Վասպ. 625։

*ԻԶԻԴ, ար. կեղծ անուն, որ տալիս է իրեն համեստությամբ Պսակ կրոնավորը, որ օրինակել է մի Ավետարան, Նարեկ գյուղում, 1420 թ։ «Ես արդ, ես յետինս ի կրօնաւորաց և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ՝ Իզիտ անուն, քանզի խորշեցայ ի Պսակ անուանէ, որ նախավկային միայն վայել է... գրեցաւ ձեռամբ սուտանուն կրօնաւորի Իզիտի»։ Ենթադրում եմ, որ բուն անունը Պսակ էր և ինքն էլ գիտեր որ Ստեփաննոս անունը նշանակում է «պսակ»։ Ընտրելով Իզիտ անունը, թյուրիմացությամբ հասել է պրս. ایزد Izid ձևին, որ նշանակում է «Աստուած». մինչդեռ իր նպատակը եղած պիտի լինի արաբ. یزید Yezīd Մուավիէ ամիրապետի որդին, որ Ալիի գերդաստանը բնաջինջ արեց. դրա համար էլ Իսլամների համար ատելի դարձավ և Եզիտ այժմ նշանակում է «Ցուգա, դավաճան, սատանա»։—Նօտարք 62, Ձեռ. Վասպ. 326։

[ԻԶՄՈՒԽ, ար. նահատակ հայ՝ 554 թվից, ըստ Սամուէլ Անեցու (Tables chronologiques առ Brosset, Collect. 2, 393)։ Այսպես ըստ Justi 143։ Բայց Անեցու հրատարակության մեջ, էջ

75 չկա Իզմուխ և 554 թվի նահատակն է Ցիզգբուգիտ, որի անսովոր անունը աղավաղվելով՝ այս կերպարանքն է ստացել]

*ԻԹԼԻՇԱՀ, իգ. ըստ իս < Թրք. ایلی etli «մսոտ, պարարտ, գիրուկ» բառից + պրս. šāh, որ իբրև գգվական է գործածվում։ Մի անգամ միայն գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Իքլիշահ, կին Կոստանդին քահանայի, որ Ստեփաննոս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը, Սիսում 1412 թ։—Ձեռ. Հալէպի, Ա. 153 բ։

[ԻԼԱԼ, տր. սխալ է՝ փոխանակ Չիլալ, որ է Չուլալ կամ Չիուլալ։ Ձեռագրում գրված է «և զպարոն զիլալն» (Նոտարք 164). հրատարակիչը (Փիրղալէմեան) առաջին զ նախդիրով չբավականանալով, երկրորդն էլ նախդիր է համարել և տպագրել է «զԻլալ»։ Ճիշտ այսպես է նաև Ձեռ. Արգ. յովհ. էջ 163—4 Չուլալյի, որ գերմանացի հրատարակիչը զ նախդիր կարծելով՝ գրել է զՈւլալ և անվանացանկում էլ դրել է Ուլալյ (տես վերը Զուլալ, էջ 217)։—Այս Չիլալը հիշված է իր Սուլտանշահ, Սուլէմանշահ, Յովաննէս և Շահրիար եղբայրների հետ, իբրև որդիք՝ կամ պարոն Ամիրգօլի և կամ նրա հորեղբոր՝ Ամիրալեի։ Գրվածքը անորոշ է և երկուսն էլ կարելի է հասկանալ։ Ամիրալին ուրիշ տեղ չէ հիշված. բայց հիշված են Ամիրգօլի որդիքը՝ պարոն Գորգ, Թավրէզմելիք և Գողալխաթուն (Նոտարք 178)։ Սրանով էլ իմացվում է որ Չիլալը և նրա եղբայրները Ամիրալիի զավակներն են։]

*ԻԼԱՐԻՈՆ, ար. < հուն. Ἱλαρίων անունից, որ նշանակում է բուն «ուրախ» (ծագում է ἱλαρός, ἱλαρά, ἱλαρόν «ուրախ» բառից)։ Այս անունով հայտնի է Ս. Իլարիոն՝ Ս. Անտոնի ընկերներից մեկը (291—372), ճգնավոր, որ հիմնադիրն եղավ Պաղեստինի ճգնավորության։ Անցած է նաև ուրիշ լեզուների. ինչ. լտ. ֆրանս. գերմ. անգլ. Hilarion, ռուս. Илларион (ավելի լավ Иларион, ժղվ. Ларивон), ֆրանս. նաև Hilaire ձևով։ Կա նաև սրա իգականը՝ Hilaria.

— Իլարիոն եպիսկոպոս Տայոց. Թույն խառնելով Հաղորդության մեջ՝ թունավորեց Տայոց Դավիթ կիւրապաղատին և երբ թույնը չազդեց, քնած ժամանակ խեղդեց նրան (1000 թ), որի համար էլ Վասիլ կայսրը վզին քար կապելով ծովը նետեց։—Սմբ. պատմ. 41։

ԻԼԲՈՒՍ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում

ևմ գործածված 1653 թվի մի արձանագրության մեջ (Սմբատ-յանց, Գեղարքունի 620)։

*ԻԼԼՈՍ, ար. < հուն. Ὕλλος անունից, որով հայտնի են Հերակլեսի որդին և ուրիշ անձինք։ Բուն նշանակում է ὕλλος, որ է ichneumon, մի տեսակ գիշակեր կենդանի, որ ոչնչացնում է օձերին և դրա համար էլ Եգիպտոսում պաշտվում էր։ Այս անունը շատ անսովոր է մեր մեջ. ունենք միայն՝

— Իլլոս (սեռ. Իլլեայ), հայ նախարար, որ Ղևոնդի հետ գլուխ կանգնեց հայոց ապստամբության. [Զենոն կայսրը (474—491) զսպեց այդ ապստամբությունը։—Գաթըրճեան, Տիեզ. պատմ. Բ. 518.

*ԻՄԱՆԻ, ար. <արաբ. ايمان īmān «հավատք» բառից։ Այս անունով ճանաչում ենք միայն՝

— Իմանի, որդի Միրզախանի, Բանաքեցի, գնեց մի Ցայսմաւուրք 1724 թ.—Ձեռ. Թուր. 41—42։

† ԻՄԱՍՏՈՒՀԻ, իգ. կազմված է հյ. իմաստ(ուն) բառից, ուհի մասնիկով, իբրև թարգմանություն Սոփիա անվան (տես անդ)։ Հիշված է Պոլսում՝ ԺԹ դարի կեսին (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 1218)։

*ԻՄԻՐԶԱ, ար. < պրս. امیرزا amīrzā «իշխանածին» բառից, որի մասին ընդարձակ տես Ամիրզադէ։ Օտարներից հիշենք օր. Շահռուղ Իմիրզէն (Ձեռ. Հալէպի, Ա. 65 ա)։ Մեր մեջ այս ձևով գտնում եմ գործածված մի անգամ՝

— Իմիրզա տիրացու, որ կազմել է մի Ցայսմաւուրքի ցանկը՝ 1694 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 279։

— Իմիրզա ձևով ունենք դարձյալ ավելի ուշ՝ 1701 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 32 բ)։

*ԻՄԻՐԽԱՆ, ար. համաձայն նախորդի՝ երկրորդ ձևն է Ամիրխան անվան, որ տես առանձին։ Իմիրխան ձևը գտնում եմ գործածված 1439 թվից ուշ գրված երկու անթվական հիշատակարանում (Տաշեան, Ցուց. 50 բ)։

ԻՄՄԱՐ, սեռն ու թվականը անհայտ. եթե իգական է, կարելի է համեմատել Ցիմար անվան հետ, որ տես առանձին։ Իմմար ձևը գտնում եմ մի անգամ գործածված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վաապ. 766)։

ԻՄՆԱ, ար. ծագումը ինձ անհայտ։ Այս անունով հիշում է պարոնաց պարոն Վահրամ աթաբէկը (Զաքարէ մեծ սպաս-

լարի Թոռնորդին) իր եղբայրներից մեկին, հետևյալ ձևով. «Ես սիրեցեալ եղբարցս Պիմին, Աղբուղին, Ավագ-Սարգսի, Իծնայի, Գանուսի, մեծի և փոքուս» (Արձ. Հռոոմոսի 1336 Թ. Շիրակ 28):

ԻՄՐԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ:

— 1. Իմրան, մերձավոր Յակոբի, որ ստացավ մի Աւետարան, Երզնկայում 1477 Թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 628:

— 2. Իմրան, ստացող ոմն Ժ—ԺԱ դարից (Տաշեան, Ցուց. 15 բ)

*ԻՆԱԽ, իգ. < չաղաթ. اىناق կամ ايناغ կամ ايناخ inax «խորհրդական, վստահելի անձնավորություն, նախարար, բարեկամ, խանի ամենամոտիկ անձը, գավառապետ կամ քաղաքագլուխ, Խիվայում իշխող խանի կրտսեր եղբայրը» (Будагов 1, 212): Այս բոլորը արական գաղափարներ են, բայց մեր մեջ Ինախ գործածված է իբրև իգական անձնանուն՝ սկսած ԺԶ դարից մինչև ԺԹ դարի սկիզբը (1808 Թ): Հնագույնն է 1579 Թ. (Ձեռ. Վասպ. 689, բայց հիշատակարանում Թվական չի հիշված), որից հետո գալիս են 1592 Թ. (անդ 731), 1613 Թ. (անդ 845), 1640 Թ. (անդ 898), 1642 Թ. (անդ 765), 1645? (անդ 606), 1652 Թ. (անդ 462), 1681 Թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 788), 1693 Թ. (Ձեռ. Վասպ. 977) և վերջապես 1808 Թ. (անդ 360): Այս բոլորը, ինչպես ասացինք, իգական են. բայց արական է անԹվական մի հիշատակության մեջ, որ հետևյալ ձևն ունի. «դստերցն՝ Խումարին և որդոցն՝ Սրապիոնին, Գրիգորին և Ինախ մահտասոյն» (Ձեռ. Վասպ. 214), եԹե չկա վրիպակ, որովհետև ասում է դըստերցն և մի աղջկա անուն է տալիս:

*ԻՆԱԽԽԱԹՈՒՆ, իգ. < նույն Ինախ անունից+խաթուն, իբրև որոշիչ իգականի: Մի անգամ գտնում եմ հիշված 1579 Թ. (Ձեռ. Վասպ. 578):

*ԻՆԱԽՇԱՀ, ար. < նույն Ինախ անունից+պրս. شاه šāh «Թագավոր», իբրև որոշիչ արականի: Ավանդված եմ գտնում միայն երկու անգամ. առաջինը Ինաղշա (սեռ. Ինաղշի) ձևով, 1596 Թ. (Ձեռ. Վասպ. 749), և երկրորդը Ինախշայ ձևով, 1655 Թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ):

*ԻՆԱԽՓԱՇԱ, իգ. < նույն Ինախ անունից+փաշա: Ավանդված է չորս անգամ, որոնցից առաջինը 1585 Թ. (Ձեռ. Վասպ. 698), երկրորդը 1587 Թ. (Հայաս. 604), իսկ մյուս երկուսը անԹվական (Ձեռ. Վասպ. 159 և 582):

*ԻՆԱՄ, իգ. < արաբ. انعام in'ām «շնորհք» բառից. համա-

նրա համազոր հյ. Շնորհ, Շնորհիկ անունները։ Բայց ունինք նաև Ղրիմի թթր. և չաղաթ. اينام inam «հավատ, վստահություն» (Будагов 1, 212 բ)։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1450 թվից հետո.—Ջեռ. Թուր. 67 բ։

*ԻՆԱՄՓԱՇԱ, իգ. < նույն Ինամ անունից+թրք. paša. հիշված է մի անգամ, 1450 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Թուր. 67 բ։

ԻՆԱՆԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ. (հիշում եմ արաբ. عنان ʿinān «սանձ» և թրք. اينان inan «հավատք»)։ Այս անունը ավանդված է մի անգամ՝

— Ինանիկ, հայր Դաւիթ վարդապետի, որ նորոգել տվեց Ս. Գեղարդը 1686 թ.—Տողակաթ 187, Այրարատ 269։

ԻՆԹԱՂԻՀ, իգ. ծագումն ինձ անհայտ. անշուշտ խանգարված բառ. մի անգամ հիշատակված է 1655 թ. (Արցախ 116)։

*ԻՆԹԻԶԱՐ, իգ. < արաբ. انتظار intizār «սպասում»։ Այս ձևով գտնում եմ մի անգամ գործածված 1727 թ. (տես Բյուրակն 1899, էջ 447 ա) և այժմ էլ կենդանի է (տես Խորհ. Հյաս. 1939, դեկտ. 31, վերջին էջ)։ Ավելի հին է Անթազար, բայց ար., որ հիշված է 1450 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Թուր. 67 բ)։

*ԻՆՋԻԲԷԿ, ար. < թրք. اينجى inji «մարգարիտ»+ بك beg «իշխան» բառերից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1621 թ. արևմտահայ տառադարձությամբ գրված Ինճիպակ (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1867)։

ԻՆՏԻՐ, ար. < հյ. ընտիր բառից։ Մի անգամ հիշատակված է Գէօքթէփէի (Ղրիմ) ավերակ Ս. Ստեփաննոս եկեղեցու 1401 թվի արձանագրության մեջ, որ ներկայացնում է հետևյալ շատ ազավաղ պատկերը. «Զվերջ նորոգ տճրս Ստեփնս վդպտս։ Զինտիր աբեղէս պր. ընտրկին զպարու լուքէն վասորք յիշ ի Քս. թվ. ՊԾ»։ Առաջին մասը կարդացվում է Զվերջին նորոգող տաճարիս Ստեփանոս վարդապետս, Զինտիր աբեղէս պարոն (մնացյալը անհասկանալի)։ Արձանագրողը առաջին դեմքով խոսելով՝ չէր կարող իրեն համար ասել «զընտիր աբեղէս», ուստի Ինտիր հատուկ անուն է։—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 320։

*ԻՇԱՂԲԱԹ, ար. < թրք. ايش iš «գործ»+արաբ. عاقبت ʿāqəbet «վերջ, վախճան, ելք» (արևել. թրք. արտասանվում է aġbat)։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ գործածված ան-

թվական մի հիշատակության մեջ, որ սակայն գրված է 1667 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 930)։ Տես և Իշխուքյա։

† **ԻՇԽԱՆ**, ար. < հյ. իշխան բառից. հմմտ. Թագւոր, Արքայ, արաբ. Մելիք, պրս. Խոսրով, հուն. Վասիլ համազոր անունները։ Գործածվել է մեր մեջ Թ դարից սկսած և դեռ այժմ էլ գործածական է։ Փաղաքշական ձևերն են Իշխանիկ և Իշխանակ։ Գործածված է մի անգամ իբրև իգական (տես № 8)։

— 1. Իշխանակ, որդի Գրիգոր պատրիկ Բագրատունու, քեռորդի Աշոտ իշխան Արծրունու (№ 30), որի հետ միասին՝ Նկան բերդի գրավումից հետո, Բուղայի ձեռքով գերի քշվեց Բաղդադ։ Մաղրիպցոց արշավանքի ժամանակ մեծ քաջություններ գործեց և իբր պարգև՝ գերությունից արձակվելով՝ վերադարձավ Վասպուրական, «858 Թ»։—*Սուտ-Շապհ.* 58, 59, 61։

— 2. Իշխան-Սևադայ, որդի Գրիգորի և թոռն Սահակ-Սևադայի, որ Աշոտ Բ Երկաթի («915—930») աներն էր։—*Կղկնտ.* Գ. իգ.—Սևադայ՝ *Մխ. այրիվ.* 23.—սեռ. Իշխանի՝ *Կղկնտ.* Գ. իգ։

— 3. Իշխանիկ, աղվան իշխան, Ատրներսեհ Բ Թագավորի (№ 14) որդին էր և Համամ Թագավորի թոռը (դստեր որդին)։ Գագիկ կաթուղիկոսի հետ միացած ապստամբվել էր Հայոց կաթուղիկոսի դեմ. Անանիա կաթուղիկոսը («946—968 Թ») գնաց Աղվանք և ապստամբությունը ընկճեց։ Այս մասին ընդարձակ տես *Արար.* 1897 մրտ. 129—144, որից էլ *Բարխուտ. Աղուանից պատմ.* Ա. 33, 164։ Մասնակցել է Դավիթ Զ Աղվանից կաթուղիկոսի ընտրության (962). գահակալեց իր հոր մահից հետո։—Իշխանակ՝ *Անան. ապստ.* 131 ա, 144 ա.—սեռ. Իշխանկայ՝ *Օրբ.* ծա։

— 4. Իշխանիկ, հայ Թագավոր Կախեթի (Ժ դար)։—*Լէօ, Պատմ. Հայոց*, Ա. 443։

— 5. Իշխան, կրտսեր որդի Խուլ Խաչիկ իշխանի Վասպուրականի. սպանվեց Թուրքերի դեմ պատերազմում 1041 Թ.—*Ուռհ.* 90—92.—Իշխանիկ՝ *Սմբ. պատմ.* 59, 60։

— 6. Իշխան, Արջքթունք ցեղից. ուզելով խլել Ուռհայի դքսությունը, Սմբատին մատնեց Փիլարտոսի ձեռքը, բայց ինքն էլ մահ գտավ նրա ձեռքով, 1083 Թ.—*Ուռհ.* 223.—սեռ. Իշխանի՝ *Ուռհ.* 223—4։

— 7. Իշխան, որի որդին է Հասան, թոռը Գրիգոր և սրա թոռն էլ Ամիր-Հասան։ Այս Գրիգորը մի գյուղ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1201 Թ. — *Սարգիսեան, Տեղագր.* 151, *Շիրակ* 23, *Արար.* 1870, 298։

— 8. Իշխան, տիկին! ստացող ձեռագրի, 1222 թվից հետո. —Տաշեան, Ցուց. 559։

— 9. Իշխան, որդի Քրդի. հեջուր Գրիգորի հետ միասին օրենք են գրել, որ Հոռոմոսի վանքում կաշառքով վանահայր չըգրվի. այս օրենքը արձանագրել են Հոռոմոսի վանքում 1228 թ. և նզովքներով հաստատել։ Նույն անձինքը արգելք են դրել նաև վանքում աղանձ աղալու դեմ (այս արձանագրությունը անթվական է)։—Շիրակ 23, 20։

— 10. Իշխան, որի կինն է թվում Խորիշահը։ Այս Իշխանը Թեղանոյ շամբը պարգևել էր Խեդեննեկին և այժմ Խեդեննեկը նվիրում է Հոռոմոսի վանքին, 1245 թ։—Արձ. Շիրակ 22 (թվականից երևում է, որ այս Իշխանը նույն է նախորդի հետ)։

— 11. Իշխան, հոգևոր հայր Կիւրիոնի, որ օրինակեց Շնորհալու Մեկնութիւն բարձրացուցէքի, 1311 թ.—Ակինեան, Կիւրիոն կթղ. 265—6։

— 12. Իշխան, հայր Մկրտիչ կուսակրոն քահանայի Բաբերդցւոյ, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան, 1344 թ։—Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 237։

— 13. Իշխան, իշխան աղուանից, նստում էր Ծորայ ամրոցում. սրան հաջորդեց որդին Աջամի՝ 1348 թ.—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 132, Արցախ. 67։

— 14. Իշխան, որդի Յակոբի և հօրեղբորթոռ Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

— Իշխան անունը ԺԶ դարում հիշվում է 1503 թ. (Ձեռ. Վասպ. 280), 1585 թ. (անդ 702), 1596 թ. (անդ 748)։

†ԻՇԽԱՆՈՒՀԻ, իգ. < հյ. իշխան բառի իգականից. նորակերտ անուն. տես Սովետ. Հյաստ. 1945 ապր. 3, էջ 2։

*ԻՇԽՈՒԹԼՈՒ, ար. < թթր. ایش iš «գործ»+قوتلو qutlu «բարեբախտ, երջանիկ, օրհնեալ», այսինքն «նա՝ որի գործերը բարեբախտ են»։ Թաթարական անուն է։ Այս անունն է կրել Հայաստանում ապրող կիսաքրիստոնյա մի թաթար, որ Հառիճի վանքին մի ձիթահանք է նվիրել, 1304 թ.—Շիրակ 162։ (Այս անունը կարևոր է բացատրելու համար Իշաղբաք անունը, որ տես վերը)։

ԻՊԱՑ, սեռն ու ծագումն անհայտ. հիշված է մի խաչքարի վրա, 1659 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 622։

*ԻՍԱ, ար. < արաբ. عيسى ʿīsa «Յիսուս» անունից։ Քրիս-

տոնյաների մեջ կարելի չէր որևէ մարդու անուն դնել Իսա «Յիսուս». բայց մահմեդականների մեջ կարելի էր, ինչպես ունինք ʿIsabek Թուրք իշխանը՝ ԺԴ դարում (Իբն-ի-Բատուտա Բ. 381, 395)։ Սրանից մի դար ավելի հին է Իսա բժիշկ Եդեսացի, ասորի, որ Սիս մայրաքաղաքում շինել է ասորական մի եկեղեցի՝ ԺԳ դար (Սիսուան 221 բ)։—Իսա անունը մի անգամ գտնում եմ հիշատակված մեր մեջ սեռ. Իսին ձևով՝ 1662 թ. (Ձեռ. Վեննտ. Ա. 653)։ Կենդանի է այժմ Ղարաբաղի Հայոց մեջ։

***ԻՍԱԲԱԽՇ**, ար. <արաբ. عیسی ʿIsa «Յիսուս»+պրս. بخش baxš «նվեր, պարգև» բառերից. ամբողջը նշանակում է «Յիսուսի պարգևածը». հմմտ. Ալլահբախշ, Խուդաբախշ։ Մի անգամ հիշատակված ունինք ԺԸ դարից՝

— Իսաբաշխ, քարտուղար Ղարաբաղի մելիք Աբով Գ-ի, որի հետ միասին թունավորվելով մահ գտավ վրաց իշխանների դավաճանությամբ, Տփղիսում, խնջույքի ժամանակ, 1808 թ.— Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 257։

***ԻՍԱԲԷԿ**, ար. < Իսա «Յիսուս»+բէկ «իշխան» բառերից. այս անունով ունինք عیسی بك ʿIsabek Թուրք իշխանը՝ ԺԴ դարում (Իբն-ի-Բատուտա 2, 381, 395)։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ գործածված՝ Յիսայբեգ գրչությամբ՝ 1575 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 809)։ Ավելի հաճախական է Իսիբեկ ձևը, որ տես առանձին։

***ԻՍԱԴԱՐ**, ար. < արաբ. عیسی ʿIsa «Յիսուս»+պրս. دار dār «ունող, կրող» բառերից. ամբողջը նշանակում է «նա որ ունի իր մեջ Յիսուսին, Քրիստոսակիր»։ Ճիշտ նույն կազմությունն ունի պրս. خداداد Xudādār անունը, որ է «Աստուածակիր»։ Գործածված է միայն մի անգամ Եսադար գրչությամբ (տես առանձին)։ —Եսա փխ. Իսա ձևը տես նաև Իսաջան անվան տակ։

***ԻՍԱԽԱՆ**, ար. < Իսա անունից+խան։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում. այսպես 1613 թ. (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 189), 1730 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 131) և մի անթվական հիշատակության մեջ, որ գրված է 1581 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 76 բ)։ Սրանից է Իսախանեան ազգանունը։

Իսահակ տես Սահակ։

***ԻՍԱՂՈՒԼ**, ար. < արաբ. عیسی ʿIsa «Յիսուս»+թրք. قول qul «ծառա» բառերից։ Ունի նույն կազմությունը՝ ինչ որ Ալլահղուլի։ Համազորներն են՝ ասոր. Աբդլմսեհ, արաբ. Աբդուլլահ, պրս. Խուդաբանդա, թրք. Տանգրիղուլի, հուն. Թէոդուլոս, որոնք բոլոր

նշանակում են «ծառա Աստուծոյ»։ Մեր մեջ հիշատակված է Իսադուլ ձևով 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. էջ 1 բ), Իսադուլի 1663 թ. (Սիսական 320), Իսակուլի ձևով 1697 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 261)։ Սրանից է Իսադուլեան (արևմտահայոց մեջ Իսագուլեան) ազգանունը։

*ԻՍԱՅԻ, ար. կամ է Եսայի անունից և կամ Իսա, որ տես առանձին։ Երկու անգամ գտնում եմ հիշատակված՝

— 1. Յիսայ կամ Յիսեայ, ոսկիս, Հալէպ քաղաքում շինել է Ս. Քառասուն մանկանց խորանը, նույնպես «Մարունեան» խորանը, նաև հունաց եկեղեցին, օտարական պանդուխտների համար օթևաններ «զի հանգիցեն խաղաղական, հանգիրձ գրաստիւքն իւրեանց որ կան», քահանաների համար էլ սենյաներ, 1500 թ. —Ձեռ. Հալէպի, Ա. 151 ա։—Նույն Ոսկիս «Յեսայն» հիշված է Հալէպում, նաև 1536 թ. իր կնոջ Շահլիի հետ (Ձեռ. Հալէպի, Ա. 340 բ)։ Վերջապես նույն է և Յիսայի Հռոմկլայեցի ճարտարապետը, որ ըստ Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 27՝ նորոգել է Հալէպի Հայոց եկեղեցին, 1499 թ։ Բոլոր կրկին ձևերը (Յեսայն և Յիսայի) ապացույց են այն բանի, թե Յիսայ ծագում է Եսայի ձևից և ոչ Իսա-ից։

— 2. Յեսայ անունով հիշված է նույն 1536 թվին, նաև բոլորովին ուրիշ մի անձ Հալէպում (Ձեռ. Հալէպի, Ա. 340 բ)։

*ԻՍԱՆԲԷԿ, ար. < Թթր. ایسان isan «առողջ, կորովի»+բէկ բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1581 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 ա)։

*ԻՍԱՋԱՆ, ար. < Իսա անունից+ջան. գտնում եմ հիշատակված Իսաջան ձևով 1600 թվից (Հայ—Վենետ. 470), էսաճան ձևով՝ 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310) և Եսաջան ձևով՝ 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928)։ Գործածական է այժմ Ղարաբաղում Իսաջան ձևով։ Սրանից է Իսաջանեան ազգանունը։

*ԻՍԱՎԵՐԴԻ, ար. < արաբ. عیسی ʿIsa «Յիսուս»+Թրք. ویردی verdi «տվեց». ամբողջը նշանակում է «Յիսուսի տվածը», որի համազորներն են Ալլահվերդի, Խուդավերդի, Թանգրիվերդի (նացյալը տես Աստուածատուր)։ Թեև առանձին չէ գործածված, բայց ունինք սրանից Իսավերտեանց ազգանունը (տես Թովմաս № 228), որ ցույց է տալիս թե երբևէ առանձին անձնանուն էլ գոյություն ունեցել է նախ քան 1750 թիվը։

*ԻՍԱՒՐՈՍ, ար. < հուն. Ἴσαυρος «Իսաւրացի, փոքր-Ասի-

ալի Իսաւրիա երկրից»։ Անսովոր անուն, որ մի անգամ գտնում եմ հիշատակված՝ այսպես.

— Իսաւրոս, որդի Ամիր Սարգսեանց, հիշատակագիր Բագնայրի նշանավոր Աւետարանի, 1308 թ։—Ձեռ. Կարին. 16։

ԻՍԲԱՂ, ար. ծագումը ինձ անհայտ։ Հիշված է մի անգամ Հաղբատի անթվական մի արձանագրության մեջ իր երկու եղբայրների (Սիանդար և Աւհնվար) հետ։—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 47։

*ԻՍԻԲԷԿ, ար. այլ ձև Իսաբէկ անվան, որ տես առանձին. հնագույն հիշատակությունն է՝

— Իսիբէկ, որդի Յովհաննէս քահանայի կամ սրա եղբոր՝ տանուտեր Յովհաննէսի, որոնք գրել տվին մի Աւետարան՝ Մոկաց Փառավանք գյուղում, 1455 թ. այս թվին Իսիբէկը արդեն վաղամեռիկ էր եղել։—Ձեռ. Վասպ. 422։

— Ավելի ուշ եղած հիշատակություններն են՝ 1592 թ. (Ձեռ. Վասպ. 726, 730), 1617 թ. (անդ 853), 1688 թ. (անդ 1020), 1689 թ. (անդ 970)։ Այնուհետև դադարում է։

*ԻՍԼԻՄ, իգ. < Թթր. ایسلیم islim «իմ բուրումնավետս, իմ անուշահոտս» բառից, որ կազմված է ایس is «հոտ, բուրմունք»+ li ածակ.+im առաջին դեմքի ստացական հոդով (Будагов 1, 192 բ)։ Հիշատակված է մեր մեջ 1523 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 506), 1551 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 324 բ), և երկու անթվական հիշատակության մեջ, որոնցից առաջինը (Տաշեան, Ցուց. 489) գրված է 1343 թվից ուշ, իսկ երկրորդը (Ձեռ. Սևան. 5 ա) 1490 թվից ուշ։

†ԻՍԿՈՒՀԻ, իգ. < հյ. իսկուհի բառից, որ նշանակում է «իսկական տիրուհի». Աստուածածնի 7 անուններից մեկն է (մյուսներն են Մաքրուհի, Տիրուհի, Սրբուհի, Թագուհի, Դշխոյ և Մարիամ)։ Եղած հիշատակություններն են 1666 թ. (կրճատ Իսկին ձևով՝ Ձեռ. Հալէպի, Բ. 7 բ), ավելի ուշ՝ 1744 թ. (Իսկուհի Տիւզեան, Մէնէվիշեան՝ Ազգաբ. Տիւզեանց 13), 1796 թ. (Էֆիմ. 448)։ Կա այժմ էլ Իսկուհի կամ Ուսկուհի ձևով, որից գգվական են Ուսկուկ, Ուսկուն։ Կա և Ուսկում՝ Ձեռ. Հալէպի, Ա. 158։

*ԻՍՄԱՅԷԼ, ար. < եբր. ישמעאל Išmāʿēl անունից, որ ծագում է שמע šmʿ=արաբ. سمع samʿ «լսել»+אל ēl «Աստուած» բառերից և նշանակում է «լսեց Աստուած» (հին բաբել. Yašmaḫ-el) (Gesenius 324 և 846). հմմտ. Ծն. ԺԶ. 11. «Կոչեսցես զանուն նորա Իսմայէլ, զի լուաւ Տէր տառապանաց քոց»։ Նույն-

պես Մաղաք. առ. 2՝ «Իսմայէլ որ թարգմանի լսումն Աստուծոյ»։ Այս անունով հայտնի է Ս. Գրքում Աբրահամի որդին՝ Իսմայել (Հագար աղախնից), որից առաջացել են Իսմայելացիք կամ Հագարացիք (այն է Արաբները)։ Տառադարձված է հուն. Ἰσμαήλ (որից և հայ ձևը), լտ. Ismael, Ismahel, արաբ. اسمعيل Isma'īl։ Սովորական անուն է Մահմեդականների մեջ. Քրիստոնեության մեջ ընդունված անուն չէ։ Մեր մեջ հին ժամանակ սովորական չէր. այժմ էլ անգործածական է. գիտենք միայն՝

— 1. Իսմայել, վանքերեց Գառնոյ, ուրիշ շատերի հետ ստորագրում է այն թղթին (ձեռնարկ), որ մատուցանելով Աբրահամ կաթուղիկոսին, խոստանում են հեռու մնալ հերձվածողներից, նեստորականներից և Քաղկեդոնականներից «607 թ»։—Ուխտ. Բ. լէ. Գիրք թղ. խ։

— 2. Իսմայել հայ (ὁ Ἰσμαὴλ ὁ Ἀρμένιος), ըստ Կոստանդին Պերփերուժէնի իշխեց Սիյմփողիոմի վրա, սակայն հետո Մելիտինեցիք սպանեցին նրան (Թ դար)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 370։

— 3. Իսմայել, հայր Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան, 1488 թ։—Ձեռ. Վենետ. Ա. 492։

*ԻՍՄԻԽԱՆ, իգ. < արաբ. اسم ism «անուն»+xān բառերից և նշանակում է «անունը խան». համապատասխանում է Ադիբեգ, Ադիխաթուն, Ադիմելիք, Ադիփաշա անուններին։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1701 թ. (Bodleian 207)։

*ԻՍՈՒՄ, առ. < թթր. اسم isim կամ isum «իմ բուրմունքը, իմ անուշահոտությունը» (տես վերը Իսլիմ)։ Գործածված է եղել ԺԹ դարի առաջին կեսում՝ Աշտարակ գյուղում (Պռոշեան, Հուշեր, էջ 98)։

Իսպան տես Սպահան։

*ԻՍՏԻԽԱՆ, իգ. < թթր. ایستی isti «հոտավետ, բուրումնավետ» (տես Будагов 1, 192 բ. կապ չունի տաքպտ. ایستی isti «տաք, կիզիչ»)+xan. մի անգամ գտնում եմ հիշատակված 1742 թ. (Ձեռ. Վասպ. 565)։

*ԻՍՐԱՅԷԼ, առ. < եբր. ישראל Israēl անունից, որ ծագում է שרה sārā «կռվել, մարտնչել»+אל ēl «Աստուած» բառերից և նշանակում է «Աստուածամարտ»։ Նույն են սրա հետ եգիպտ. Y-s-ir-'ā-ra և ասուր. Sir'ilai անունները (Gesenius 321 և 793)։ Հմմտ. «Իսրայէլ եղիցի անուն քո, զի ժուժկալեցեր (= եբր. մարտնչեցար) ընդ Աստուծոյ և ընդ մարդկանց» Ծն. լբ. 28։

*(Սխալ են մեկնում Փիլ. իմաստ. 48 «Իսրայէղ, որ թարգմանեալ է տեսօղ զԱստուած», Տաթև. հարց. 311 «Իսրայէլ կոչեցաւ, որ է Աստուածատես», Տաթև. ամ. 274 «Իսրայէլ, որ է Աստուածատես»)։ Այս անունով հայտնի է Ս. Գրքում Յակոբ նահապետը, որ տեսիլքում Աստուծու հետ մարտնչելուց հետո՝ ստացավ այս տիտղոսը. «Ցայսմ հետէ ոչ կոչեսցեն զանուն քո Յակոբ, այլ Իսրայէլ» (Ծն. լբ. 28)։ Սրանից էլ* Իսրայել *կամ* Իսրայելացի *կոչվեց եբրայական ժողովուրդը։ Տառադարձված է հուն.* 'Ισραήλ *(=լտ.* Israel*), որից և հայերենը։ Գործածված է մեր մեջ հնագույն ժամանակներից սկսած և այժմ էլ կա. բայց շատ սովորական չէ ո՛չ հնում և ոչ այժմ։ (Պոլսի բարբառում փոխաբերաբար* Իսրայել *նշանակում է «հին ու մին շորեր հագած՝ խեղճ մարդ», անշուշտ այսպիսի մի մարդու անունից ընդհանրացած)։*

— 1. Իսրայել, *աշակերտ Թադէոս առաքյալի. նահատակվեց նրա և Սանդուխտ կույսի հետ (48 թ. ըստ Զամչ. Ա. 296)։ Մասունքները գտավ Կիրակոսը.—Գիւտ նշ. թադ. 90.—սեռ.* Իսրայելի՝ *անդ 86.—հմմտ. Յայսմ. մայ. 30. «Կիրակոս, զայդ որ գտերդ Իլին է (այլ ձ. Իղին է), և որ ի վերև դորայ է, ես եմ Զաքարիա»։—Զարբ. Թրգմ. 17. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 37։*

— 2. Իսրայել *եպիսկոպոս, առաջնորդ Արտազի, հաջորդեց Ստեփանին՝ Դ դարու վերջին քառորդին։—Զքր. եպս. 281, Արար. 1868 դեկտ. էջ 103։*

— 3. Իսրայել, *վաներեց Պտղավանից, ուրիշ շատերի հետ ստորագրում է այն թղթին (ձեռնարկ), որ մատուցին նրանք Աբրահամ կաթուղիկոսին, նզովելով բոլոր տեսակի հերձվածողներին, ինչպես և Քաղկեդոնականներին («607 թ»)։—Գիրք թղթ.—Նույն անձը Ուխտ. Բ. լէ հիշված է* Իւղ Պտղունից *ձևով, որ առաջացած է անշուշտ պատվագրված Իղ բառը սխալ կարդալուց։*

— 4. Իսրայել *Գորազեցի (այլ ընթ. Գուսաղջեցի), նշանավոր ճարտարապետ. 7 տարվա մեջ շինեց Բագրևանդի (Իւչ-քիլիսէ) Ս. Յովհաննու վանքը, 634 թ.—Արձ. Այրարատ 529, Ցուցիկք Ա. 312, Շահխաթ. Բ. 350, Բանասէր 1903, 374,* Христ. Вост. II, *1, 105—142։*

— 5. Իսրայել *եպիսկոպոս Վանանդի, անդամ Դունայ ժողովի, «645 թ».—Զամչ. Բ. 345, Տաշեան, Ցուց. 654, Այրարատ 76, Կանոն. 130։*

— 6. Իսրայել *Ոթմսեցի, կաթուղիկոս Հայոց «667—677 թ».*

(ըստ Առաքելյան, Տեղեկ. Արմֆանի, 1941, №1, էջ 65՝ նստել է 668—678 թ)։ Տայոց եպիսկոպոսն էր, երբ ժամանակցեց Դունայ ժողովին «645 թ». ընտրվեց կաթուղիկոս՝ իբրև հաջորդ Անաստասի—Կանոն. 130. Ցհ. կթ. ի. Մխ. անեց. դ. Ասող. Բ. բ. Օրբ. հա. Կիր. 35. Վրդ. լգ. Միխ. աս. իթ (=իը). Եղն. եր. 268. Մխ. այրիվ. 21. Տաթև. հարց. 545. Տաշեան, Ցուց. 654 — Ջամչ. Բ. 345, Վրաց աղբ. Ա. 47, 79։

— 7. Իսրայէլ ճգնավոր, տեսիլքով գտավ Զղախի մասունքները, հետո Մաշտոցի խաչը Գիսում։ Դավիթ եպիսկոպոսի մահից հետո եղավ Մեծկողմանց եպիսկոպոս. եկավ Հայաստան և Զուարթնոց Ս. Գրիգորի մասունքից տարավ Գլխոյ վանքը։ Վարազ-Տրդատի հրամանով, Եղիազար (683—9) կաթուղիկոսի ժամանակ ուղարկվեց Հոնների մոտ՝ հաշտություն կնքելու։ Քարոզեց այնտեղ քրիստոնեությունը, դարձի բերավ և հիմնեց քրիստոնեական աթոռ՝ Աղվանից կաթուղիկոսության հովանավորության տակ։ Աղվանից Ներսէս քաղկեդոնիկ կաթուղիկոսը հալածեց նրան՝ 703 թ։—Կղկնտ. Բ. իթ, լա, լգ, լէ—խ, խբ, խգ, խե. Գ. գ. Վրդ. լգ. հրտր. Սամ. անեց. 286.—սեռ. Իսրայէլի՝ Կղկնտ. Բ. իթ, լ, լգ, լէ, լը, խ, խա, խգ, խե. Մխ. այրիվ. 66.—բց. յԻսրայէլէ՝ Կղկնտ. Բ. խդ.—գծ. Իսրայէլիւ՝ Կղկնտ. Բ. իթ, լա։

— 8. Իսրայէլ, հատկապես կոչված Տէր Իսրայէլ. անծանոթ անձ. համարվում է Վանական վարդապետի աշակերտը. կազմել է Ցայսմաւուրքը (Հայապ. 107), հրամանաւ Յովհաննէս Վանական վարդապետի († «1251 թ») և ի խնդրոյ Հասան-Ջալալդօլա († «1261 թ») իշխանին Խաչենոյ։—Աւգեր. Լիակ. Վրք. սրբ. ԺԱ. էջ հդ։

— 9. Իսրայէլ, քանդակագործ գրիչ Անւոյ և շրջակայից. իրանից մնում են Անիի 1262 թվի մի արձանագրություն, Բագնայրի 1266 թվի մի արձանագրություն, և Հոռոմոսի 1273 թվի մի արձանագրություն։ Անշուշտ քանդակած պիտի լինի նաև ուրիշները, որոնք կամ չի ստորագրել և կամ մեզ չեն հասել (Շիրակ 22, 62, 116)։

— 10, Իսրայէլ վարդապետ Արտազեցի, ունիթոռական. միաբան Քռնիի վանքի (1330 թ).—Ձեռ. Ներս.32 բ։

— 11. Իսրայէլ, որդի Առաքելի և ամուսին Թուրվանդա խաթունի, որ Յովհաննէս կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1448 թ։—Ձեռ. Վասպ. 402--4։

— 12. Իսրայէլ, որդի Կարապետ քահանայի և եղբայր Յով-

հաննէս գրչի, որ օրինակեց Յայսմաւուրքը՝ 1458 թ. այս թվին մահտարաժամ էր, որին զոհ գնացին գրչի մայրը, որդին, ինչպես և Իսրայէլ եղբայրը։—Նոտարք 190։

— 13. Իսրայէլ քահանա, որդի Ամիրշահի, կինն է Մարթա, որդին Ներշահ։ Աշակերտել է Թումայ քահանային, Թադէոսին և Առաքելին. իր վարպետներն եղել են տէր Մարգարայ Կո-ռեցին և մահտեսի տէր Վարդանը (մականուն Մաքի)։ Գրել է 1) Աղնեցի տանուտեր Թովմա, Գրիգոր և Ղազար եղբայրների խնդրանոք մի Աւետարան՝ 1447 թ. (Ձեռ. Վասպ. 397—400, Նոտարք 156)։—2) Տանուտեր Յովհաննէսի և նրա եղբայր Յովհաննէս քահանայի համար մի Աւետարան, 1455 թ. (Նոտարք 178, Ձեռ. Վասպ. 422. վերջինիս տված հիշատակարանը 2 տող պակաս է Նոտարքից. ձեռագրի նկարագրության մեջ էլ իբրև գրիչ է հիշված Մարտիրոս ոՌ, որ սխալ է և պիտի լինի Իսրայէլ).— 3) Առբերդի վանքի Խաչատուր քահանայի համար՝ մի Յայսմաւուրք, 1466 թ. (Նոտարք 225).—4 Աւետարան, 1466 թ. (Նոտարք 226)։ 5) Աւետարան՝ Մարգարայ, Կիրակոս, Յովհաննէս և Դաւիթ եղբայրների համար, 1473 թ. (Բարխուտ. Արցախ 146)։ Այս բոլորը Մոկաց Փառավանք գյուղում։ Այսպեսով Իսրայէլ քահանայի գրչագրական գործունեությունը լինում է 1447—1473 թ. որ է 26 տարի։

— 14. Տէր Իսրայէլ, որի տապանաքարը գտնվում է Դարբանդի Գողոս-Բուլաղի գերեզմանատան մեջ, 1471 թ։—Բարխուտ. Աղուանից երկ. 109։

— 15. Իսրայէլ, որդի Արմազայի, ամուսնու Խաթուն-Մէլէքի՝ հորաքրոջ տանուտեր Սաղաղայի, որ Թումայ քահանային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1476 թ։—Ձեռ. Վասպ. 480—1։

— 16. Իսրայէլ, ուսուցիչ Յովհաննէս աբեղայի, որ խոջա Ջաւզի համար գրեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 514։

— 17. Իսրայէլ քահանա, գրիչ. Վարդան անուն անձի համար օրինակեց Աւետարանը, Մոկաց Շատախ քաղաքում, 1491 թ.— Ձեռ. Վասպ. 518։

— 18. Իսրայէլ, մերձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

— 19. Իսրայէլ Օրի (այս անվան ծագումը ըստ ակնարույժ † Քրիստափոր Օհաննեանի բացատրության, տես Եաւրի բառի տակ, էջ 93), հայկական ազատագրական շարժման նշանավոր գործիչը։ Համարվում է Պռօշ իշխանի տոհմից։ Պատանի էր դեռ, գնաց

Վենետիկ, ուր երեք ամիս ապրելուց հետո, անցավ Ֆրանսիա։ Մնաց այստեղ 12 տարի, ծառայեց ֆրանսիական բանակում, ստացավ նախ սպայի, ապա հեծելազորի կապիտանի աստիճան։ Մասնակցեց պատերազմների, և վերջը գերի ընկավ Անգլիացոց ձեռքը։ Սրանով առիթ ստեղծվեց իրեն՝ ուսումնասիրելու նաև Անգլիան։ Երբ ազատվեց, գնաց Գերմանիա և այնտեղ ծառայության մտավ, վարելով զանազան պաշտոններ։ Մտերմանալով կայսրընտիր իշխանի հետ, համոզեց նրան ձեռնարկելու մի արշավանքի դեպի Արևելք, որի վախճանական նպատակը Հայաստանի անկախ պետության հիմնումն էր։ Օրիի մնացյալ կյանքը այս նպատակի իրագործության համար կատարված անդադար խանդի և անդուլ աշխատանքի գումարն է։ 1698 թվին Գերմանիայից ուղարկվեց Վիեննա՝ ներկայանալու համար կայսեր և հրահանգներ ներկայացնելու Կարլովիցի դաշնագրության համար։ Ստանալով նամակներ հայ և վրացի իշխանների անունով, ծպտված իբրև Եւրոպացի ասպետ, ճանապարհ ընկավ դեպի արևելք։ Նախ գնաց Պոլիս, ուր տեսակցություն ունեցավ Տաճկաց մեծ եպարքոսի հետ և այցելեց ու ման եկավ արքունիքը։ Անցնելով Փոքր-Ասիայից, եկավ Երևան (1699 թ) և ներկայացավ Նահապետ կաթողիկոսին։ Այստեղ առաջադրեց նրան իր մտադրությունը և առաջարկեց ազգովին ընդունել կաթոլիկությունը՝ իբրև միջոց Հայաստանի փրկության համար։ Կաթողիկոսը բացեիբաց մերժեց այս պայմանը։ Անգեղակոթում գումարեց տասը մելիքների ժողովը, տեղեկություններ հավաքեց տեղական ուժերի և դիրքերի մասին և ամենքին էլ պատրաստեց ապստամբության։ Իր հետ առնելով Մինաս վրդ. Տարբերդցուն, վերադարձավ Գերմանիա, որպեսզի կայսրընտիրը (Իոհան Վիլհելմ) վերցնի իր բանակը և Ռուսաստանի վրայով իջնի Կովկաս, Արցախը և Սյունիքը ոտքի հանելու համար։ Բայց սրա համար անհրաժեշտ էր Ռուսաց կայսեր թույլտվությունը. ուստի Օրին գնաց կայսեր մոտ (1701 թ)։ Մեծն Պետրոսը խոստացավ իր աջակցությունը. բայց Շվեդացոց հետ պատերազմի մեջ լինելով՝ գործը ձգձգվեց։ Մեծն Պետրոսը Օրիին մի մեծ շքախմբով ուղարկեց Պարսկաստան՝ իբր դեսպան, բայց իրապես լրտեսելու երկրի կացությունը։ Հազիվ 1709-ին դեսպանությունը հասավ Պարսկաստան։ Այստեղ արդեն գաղտնիքը իմացվել էր. ճիզվիթները Շահին տեղեկացրել էին, թե Օրին պատրաստում է հայոց ապստամբությունը։ Այս առթիվ մի ճարպիկ բառախաղ էլ էին հնարել. ա՛յն թե Օրիի անունը

(Israel Ori) *տառերի տեղափոխությամբ. լինում էր* il sera roi, *որ ֆրանսերեն նշանակում է «նա թագավոր պիտի լինի»։ Օրին շտապեց դառնալ Ռուսաստան. եկավ Աստրախան. այժմ էլ Ռուս-տաճկական պատերազմը խանգարեց գործը և Օրին մեռավ Աստրախանում, 1711 թ.—Օրիի վրա կա շատ ընդարձակ գրականություն. այստեղ հիշում եմ կարևորագույն գործերից հետևյալները. 1) Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 27—32, 2) Լէօ, Հայկ. տպագր. Ա. 420—450, Բ. 224—274, 3) Եզեան,* Сношение Петра Великаго с арм. народом, *4) Աշոտ Յովհաննէսեան, Հայ-ռուս օրիենտացիայի ծագման խնդիրը, Էջմիածին 1921, 5) Յովսէփեան, Խաղբակեանք, էջ 269--290. իբրև կարևոր փաստաթուղթ հիշում եմ նաև Մեծն Պետրոսի հանձնարարական նամակը, որ հանձնեց Իսրայէլ Օրիին, ներկայացնելու համար Պարսից Հիւսէին շահին (բնագրի ընդօրինակությունը, լատին տառադարձությամբ և հայ թարգմանությամբ միասին, տես իմ «Վաւերագրեր Հայ-Պարսկական յարաբերութեանց մասին», Երևան 1927, էջ 56 են)։*

— 20. Իսրայէլ *Գանձակեցի, կաթողիկոս Աղուանից. Երիցվանից Ներսէս Դ կաթողիկոսի քրոջ որդին էր։ Երբ Ներսէսը մեռավ, Իսրայէլը իրեն հաջորդ համարելով՝ օծվեց կաթողիկոս, առանց Էջմիածնի կաթողիկոսի համաձայնության (1763)։ Պայման էր դրված, որ Աղվանից կաթողիկոսությունը մնար Հասան-Ջալալյանց տոհմի մեջ։ Իսրայէլը դրժեց այդ պայմանը. ուստի ժողովուրդը զայրացած՝ մերժեց Իսրայէլին և ընտրեց Յովհաննէս Թ-ին, որ Եսայի կթղ. Հասան-Ջալալեանցի եղբորորդին էր։ Էջմիածնի Սիմէոն կաթողիկոսն էլ նզովեց Իսրայէլին, կարգալույծ արեց նրան և օծեց Յովհաննէսին իբրև կաթողիկոս Աղուանից (1765)։ Իսրայէլը քաշվեց Գանձակ, ուր 11 տարի ապրեց բանադրանքի տակ, իբրև հակաթոռ։ Դաւաճան, Հայոց ազգային շարժման հակառակորդ և Շուշու Իբրահիմ խանի գործիք, Իսրայէլը ամբողջ ժամանակ կռվի մեջ էր Յովհաննէսի հետ։ Վրաց Հերակլ թագավորը միջամտեց՝ հաշտեցնելու համար նրանց (1766 թ), բայց անօգուտ։ Իսրայէլի մատնությամբ Յովհաննէսը և նրա հետ նաև Ղարաբաղի 3 մելիքները բռնվեցին և բանտարկվեցին իբրև քաղաքական հանցավոր՝ Իբրահիմ խանի ձեռքով։ Յովհաննէսը թունավորմամբ սպանվեց (1784) և Գանձասարի վանքը կողոպտվեց։ Իբր վարձ իր մատնության, Իսրայէլը Իբրահիմից ստացավ Աղվանից կաթողիկոսությունը և նստավ Ամարասում։ Մի-*

նույն ժամանակ, Երեցվանից Սիմէոնը շարունակում էր իր կաթուղիկոսությունը, իսկ Գանձակում օծվել էր Սարգիսը (1794 թ)։ Մեռել է 1606 (կամ 1608) թ. Հաջորդը տես Յովհաննէս կթղ. Աղուանից։—Ազգապ. 3053, 3208, 3239, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 105—8, Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 125, 131—6, 150—151, 292, 301—2, Ջամբռ 86—91, Ձեռ. Դաղեան, Բ. 19 ար, 20 աբ. 42 աբ (կնիքը 1763 թվից է)։

Իսֆանդար տես Սֆանդար։

*ԻՐԱՆՇԱՀ, ար. < պրս. ایران Irān «Իրան, Պարսկաստան»+ شاه šāh «թագավոր» բառերից։ Գործածված է սակայն հնագույն Երան—Էրան ձևով։

— 1. Երանշահ, որդի մղտեսի Մելիքշահի և եղբայր մղդեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 2. Երանշայ, որդի Էգիլշահի և եղբայր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— Էրանշահ, հիշված է մի անթվական հիշատակարանում, որ գտնվում է 1311 թվին գրված մի Աւետարանում.—Ձեռ. Թաւր. 71 ա։

†ԻՐԱՒԱՓԱՌ, ար. < հյ. իրաւ+փառք բառերից բաղդված. Թարգմանություն է հուն. Θεμιστοκλῆς անվան, որ կազմված է θέμι «օրենք, իրավունք»+κλέος «լուր, համբավ, փառք» բառերից. հայտնի է Յայսմաւուրքից Ս. Իրաւափառ՝ հովիվ Միռացի (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 228)։ Այս անունը բնավ ավանդված չէ մեր մեջ, բայց Երևանում եղել է մի փաստաբան մի քանի տասնյակ տարի առաջ։

*ԻՐԵՆԷ, իգ. < Εἰρήνη անունից, որ նշանակում է «խաղաղություն»։ Այս անունով էր կոչվում Հունաց մոտ Խաղաղության աստվածուհին. ապա դարձավ հատուկ անուն, որից էլ լտ. գերմ. Irene, ֆրանս. Irène, ռուս. Ирина (փղքշ. Иришенька ): Հայտնի է Հունաց մեջ Իրենէ կայսրուհին (780—802 թ)։ Կա նաև նույնի արականը, որ տես Իրենոս։

— 1. Իրենէ, քույր Թէոդորա կայսրուհու (830—867), (հայազգի Մամիկոնեան ցեղից), որի կենսագրությունը տես առանձին։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 374։

— 2. Իրինէ, կին Յովհաննէս քահանայի, որ գնեց շատ հնա-

ցած մի Աւետարան և նորոգել տվեց՝ իր որդի Մարկոս դպրի գործածության համար, 1439 թ։—Ձեռ. Հալէպի, Ա. 83 ա։

— Երինե անունը հիշված է նաև 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 735), 1673 թ. (Սիսական 259), Իրինե 1700 թ. (Ձեռ. Վասպ. 1026. նույն անձը 1705 թ. սեռ. Երինեին ձևով՝ անդ 800), ինչպես և կաթոլիկ Կոմիտաս քահանայի (Ննտկ. 1707 թ) քույրը՝ Իրենե (ՀԱ 1929, 425) կամ Երինե (Նշանեան, հրտր. Երեմ. չէլ. օրագր. էջ ՂԴ)։

*ԻՒԱՆԷ, ար. (գրված նաև Իվանե կամ Իվան), հյ. Յովհաննէս անվան նոր հունարեն կամ վրացերեն ձևն է։ Գործածական է եղել Ժ—ԺԲ—ԺԴ դարերում, հատկապես վրահայ շրջանում։ Այժմ վերանորոգված է տեղ տեղ ռուս. Иван համանվան վրայից։ Ավելին տես Յովհաննէս։

— 1. Իւանէ իշխան, որ Աշոտ Գ Ողորմածի («954—977 թ») Զմշկիկ կայսեր տված օժանդակ հայ բանակի գլխավորն էր.— Սմբ. պատմ. 33 (ուր քիչ հետո կոչվում է «Իշխան Հայոց»)։ Նույն անձը «Ցիվանէ սպաթար» ձևով հիշված է Աշոտ Ողորմածի նվիրագրում, 976 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 419։

— 2. Իւանէ, որդի Լիպարիտի. Վրաց Գէորգ թագավորը՝ որդի Բագրատի, շնորհեց նրան Շամշուլդէն, բայց նա չկարողացավ տալ բերդում և քաշվեց Հայաստանի լեռները (ԺԱ դար).—Վրաց աղբ. Ա. 208։

— 3. Իւանէ, որդի Վարդանի՝ տեառն Հայենի և Օրբեթի. ինքը Գագի տերն էր. ապստամբեց Թամար թագուհու (1184—1213) դեմ, բայց հաղթվեց։—Վրաց աղբ. Բ. 13։

— 4. Իվանէ Ախալցխացի, Վրաց ծառայության մեջ էր. Թամար թագուհին (1184—1213) կոչեց նրան աթաբեկ և ամիրների ամիր. տվեց նրան Կարսը, Կարինը և մերձակա երկիրները։ Սրա եղբայրն է Շալվա։—Վրաց աղբ. Բ. 20, 21, 35, 52։ Երևի ինքն է, որ հիշատակված է Կարսի բերդերի շինության արձանագրության մեջ՝ 1234 թ. «Թվին ՈՁԳ ի թագաւորութեանն Ռուսուդանա, յաթապակութեանն Իւանէի՝ մեք Կարուց քրիստոնէքս շինեցաք զԲրջներս ի հալալ արդեանց մերոց» (Սարգիսեան, Տեղագր. 104, Այրարատ 85, հրպէ՝ Կարս քաղաք, էջ 26)։ Բայց տես և էջ 401։

— 5. Իւանէ Ա. աթաբէկ, որդի մեծն Սարգսի, եղբայր Մեծն Զաքարէ Բ ամիրսպասալարի վրաց, Բագրատունեաց տոհմից, տեր Անւոյ։ Կինն է Խոշաք։ Գործակից եղավ իր եղբոր քաջա-

գործունեություններին։ Խլաթը պաշարելու ժամանակ, երբ մի անզգուշության պատճառով Շահի Արմէնի ձեռքը գերի ընկավ։ Զաքարիան իսկույն սպառնաց նրանց. «Եթե եղբորս դուրս հանեք քաղաքից ու գերի ուղարկեք կամ սպանեք, ձեր երկրի հողն էլ տեղից կհանեմ ու Վրաստան կտանեմ, և ձեր երկիրը անմարդաբնակ կդարձնեմ»։ Վախեցավ Շահի Արմէնը և Իւանէի աղջկան հարս խնդրելով հաշտվեց (տես Զաքարիա №13)։ Թամար թագուհին շնորհեց Իւանէին մսախուրթուխուցեսի պաշտոնը և Կայենն ու Կայծոնը, Բջնիով, Վայոց ձորով, Սիւնիքով, Գեղարքունիքով և այլ քաղաքներով ու բերդերով միասին նրան պարգևեց։ Վանենի իշխանուհու Աւետարանի հիշատակարանում Իւանէի իշխանության սահմանները գծվում են «Տերութիւն Այրարատեան նահանգին և Խաչենոյ մինչ ի կողմանս Զարեքին»։ Իսկ նրա մեծ եղբոր՝ Զաքարէի իշխանությունը տարածվում էր բացի Լոռիից՝ մինչև Անի, Անբերդ և մինչև Ներքին Բասեն։ Այս երկու եղբայրների գերիշխանության տակ էին Վաչուտեանց, Օրբելեանց և Պռօշեանց մեծ իշխանութիւնները։ Ստ. Օրբելեանը ավելի մանրամասն է թվում Զաքարեանց տիրապետությունը. «Առին յԱռանայ մինչև զՆերքին Բասեն և ի Բարկուշատայ մինչև ի Մժրնկերտ։ Առին զԿարս, զՎաղարշակերտ, զԿաղզուան, զՍուրբ Մարի, զԱնի, զԱնբերդ, զԲջնի և զԳառնի, զԴուին մայրաքաղաք, զԳարդման, զԳանձակ, զԶարէք, զՇիրթ, զՇամքոր, զՇաքի, զՊարտաւ, զԶարաբերդ։ Առին զՍիւնիս, զՈրոտն, զԲորոտան, զԲղեն, զԲարկուշատ» (Օրբ. կզ)։—Երկու անհաջող պատերազմ ունեցավ Իվանէն. առաջինը Գանձակում՝ Խփչաղների դեմ, երկրորդը Խորազմների շահ Ջալալէդդինի դեմ։ Խփչաղները առաջացել էին մինչև Գանձակ, տեղացի պարսիկները հյուրընկալել և պատսպարել էին նրանց։ Իւանէն վրաց բանակով արշավեց նրանց վրա, բայց ճակատամարտում հաղթվեց, իրեններից Պապաք Պռօշեան իշխանը սպանվեց և Գրիգոր Խաղբակեանը գերի ընկավ և հավատքը չուրանալով նահատակվեց (1222 թ)։ Ցաջորդ տարին Իւանէն ավելի մեծ պատրաստությամբ եկավ նրանց վրա, շատերին կոտորեց և ոչ միայն ազատեց գերիներին, այլ և նրանցից շատերին գերի վերցրեց։ Խորազմների իշխանը՝ քաջն Ջալալէդդին նեղվելով թաթարներից, դուրս եկավ իր երկրից, արշավեց դեպի արևմուտք, գրավեց Պարսից Ատրպատականը և հիմնեց այնտեղ նոր պետություն (1222 թ)։ Երկու տարի հետո նա արշավեց Հայաստան և մինչև Այրարատ առաջացավ։ Հայ և վրացի

միացյալ բանակը Իւանէի առաջնորդությամբ դուրս եկավ նրանց դեմ։ Ճակատամարտը տեղի ունեցավ Կոտայքում, Գառնի ավանի մոտ։ Իւանէն չարաչար հաղթվեց և տասը մարդով հազիվ կարողացավ փախչել ու ապաստանել Բջնուայ բերդը։ Ջալալէդդինը շարունակեց իր արշավը դեպի Տփղիս։ Կենդանի չէր Զաքարէն, որ կասեցներ նրա արշավը։ Ջալալէդդինը գրավեց Տփղիսը, Գանձակը, Նախիջևանը, ապա հարձակվեց Խլաթի և Ռումի սուլթանության վրա։ Այստեղ, Փոքր-Ասիայում Խլաթի և Ռումի սուլթաններին օգնության հասան Եգիպտոսի սուլթանը և Կիլիկիոյ հայ իշխանները, որոնք ջարդեցին նրա զորությունը և Ջալալէդդինը ետ փախավ Մուղան ձմեռելու։ Այստեղից էլ թաթարները քշեցին նրան և նա փախավ Ամիթ, ուր և գտավ իր մահը (1231 Թ)։—Զաքարէի և Իւանէի մասին հնագույն հիշատակությունը 1181 թվից է, երբ երկու եղբայրները առանց տիտղոսի հիշվում են՝ իրենց հոր կենդանության ժամանակ. «Յամիր սպասալարութեան Սարգսի և որդւոց իւրոց Զաքարէի և Իւանէի և յամիրութեան Գրդլին» (Արձ. Սանահնի, Ազգագր. հանդ. Գ. 286)։ Վեց տարի հետո (1187 Թ) Սարգիսը մեռնում է և որդիքը կանգնեցնում են նրա մահարձանը. «Ի ՈԼԶ թուին կատարեցաւ ի Քրիստոս Մեծն Սարգիս, որդի Զաքարէի, Թոռն Աւագ-Սարգսի. որդիքս Զաքարէ և Իվանէ կանգնեցաք զխաչս. յիշեցէք» (Արձ. Սանահնի, Ազգագր. հանդ. Գ. 304, Ի. 391)։ Մի տարի հետո, երկու եղբայրները շինում են Սանահնի ժամատունը. «Զաքարէ և Իւանէ որդիք Մեծին Սարգսի շինեցաք զհանգստարանս. յիշեցէք ի Քս. ի թվին Հայոց ՈԼԸ (=1189)» (Ազգագր. հանդ. Գ. 303, Ի. 392)։—Սրանից 2 տարի հետո (1191 Թ). Զաքարէն արդեն ամիրսպասալար է, Իւանէն էլ հիշվում է նրա հետ, բայց առանց տիտղոսի. «Յամիրսպասալարութեան Զաքարայի և Իւանայի եղբաւր իւրոյ ի թուին ՈԽ» (Ազգագր. հանդ. Գ. 283)։ Հոռոմոսի 1198 թվի արձանագրության մեջ երկու եղբայրները «տէր և մեծ զօրական» են. «Ի տէրութեան քաղաքիս և բոլոր երկրիս Մեծ Հայոց Քրիստոսի մեծ զաւրականացս Զաքարէի և Իւանէի» (Շիրակ 22 ա)։ Այնուհետև բազմաթիվ արձանագրությանց մեջ Զաքարէ և Իւանէ հիշվում են շարունակ, նույն իսկ իրենց մահից հետո։ Իւանէն մեռել է ըստ Օրբելեանի՝ 1227 Թ. (Օրբ. ժմ. 24 ՈՀԶ=1229!). իսկ ըստ Ալիշանի՝ 1231 Թ. (Շիրակ 175, Հայապ. 447)։ Այս մասին խոսում է Յովսէփեան՝ Խաղբակեանք 98—100 և Իւանէի մահը տանում է մինչև 1234 Թ. վկայութեան առնելով

նաև Կարսի բերդերի արձանագրությունը՝ 1234 թվից, որ մենք գրինք Իւանէ Ախալցխացու տակ (№ 4)։—Օրբ. կբ—կե.; Կիր. բ—դ, գ, թ—ժբ, ժդ—ժզ, ի, իը. Վրդ. ձբ, ձգ. Մխ. աս. իը (=իէ) ? Օրբ. հկճռ. ժբ. Օրբ. ժմ. 17, 22—24. Մխ. այրիվ. 80, 81. Անանուն ժմ. 19. ZAPh 2, 48. Զքր. սարկ. Գ. 11. Առաք. պատմ. 481.—սեռ. Իւանէի՝ Օրբ. կբ—կե, կը. Կիր. 56, 72. բ, ժբ, ժդ—ժէ, ի, իդ, լգ. խգ, խե. Վրդ. ձբ, ձգ, ձե, ձը. Օրբ. ժմ. 19, 22, 26. Անանուն ժմ. 19. Մաղաք. աբ. 5, 21.—Իւանէ (սեռ. !)՝ Կիր. խե. Մաղաք. աբ. 6.—գրծ. Իւանէիւ՝ Վրդ. ձդ։ — Զարբ. թրգմ. 340, Շողակաթ 74. Վրաց աղբ. Բ. 11—20, 22—24, 34, 36, 43, 44, 50—52, 54, 58, 97.—կոչված է Յովհաննէս անունով՝ Երուանդաշատի 1206 թվի արձանագրության մեջ՝ Այրարատ 62, 64.—իսկ Մխ. այրիվ. 79 «Յովհաննէս, որ և Իւանէ»։

— 6. Իւանէ Օրբելեանց, որդի Մեծ Լիպարիտի († 1060 թ). սրա որդին է Սմբատ և թոռը Լիպարիտ (ԺԱ դար)։—տես Սիսական 92 (ազգաբանական ծառը)։

— 7. Իւանէ, որդի Սարգսի, եղբայր Շալուէի, Վրաց ծառայության մեջ էին և շատ տեղեր խլեցին Պարսից ձեռքից (ԺԲ դար)։—Մխ. աս. իը (=իէ).—սեռ. Իւանէի՝ Կիր. բ։—Հմմտ. № 5։

— 8. Իւանէ Օրբելեանց, որդի Սմբատի, եղբայր Լիպարիտի (1178) և Բաւթարի (1177) (ԺԲ դար).—տես Սիսական 92 (ազգաբանական ծառը)։

— 9. Իւանէ Օրբելեանց. որդի Լիպարիտի (1178), եղբայր Զենայի (1177) և Ելիկումի (ԺԲ դար).—տես Սիսական 92 (ազգաբանական ծառը)։

— 10. Իւանէ, որդի Աղբուղայի, տեառն Գագայ և Շամքորի (1240, №1), թոռնորդի Պլու Զաքարէի, եղբայր Զաքարէի և Վահրամի (ԺԳ դար)։—Հայապ. 447։

— 11. Իւանէ իշխան, հիշված է Հաղարծինի 1244 թվի արձանագրության մեջ։—Արցախ 368.

— 12. Իւանէ Օրբելեանց, որդի Լիպարիտի, իշխանի Սիսնեաց, եղբայր Սմբատի, Ելիկումի, Փախրադոլայի և Տարսայիճի. հիշվում է Նորավանքի արձանագրության մեջ 1222 թ. և Նախավկայի արձանագրության մեջ 1261 թ. մեռել է 1260 թ. գերեզմանը գտնվում է Նորավանքում՝ այս արձանագրությամբ. «Գեղեցկածաղիկն է Իվանէ». սրա որդին է Լիպարիտ և թոռն է Ջեսար. Ստեփաննոս Օրբելեան պատմագրի հորեղբայրն է.—Օրբ.

*կե.—սեռ.* Իւանէի՝ *Օրբ. կդ, կը.—Սիսական 164, 187, 189, 193։*

— 13. Իւանէ, *որի որդին Յովհաննէսը՝ Գանձասարի վանքի առաջնորդն էր 1271 թվին.—Շահխաթ. Բ. 376, Արցախ 177։*

— 14. Իւանէ *իշխան Արցախի, հիշված է 1276 թ. երկու արձանագրության մեջ, որոնցից մեկում Իւանէն հիշված է Փախրադինի որդի Սադրադինի հետ։—Արցախ 133։*

— 15. Իւանէ, *մանուկ հասակում մեռել է 1294 թ. գերեզմանը գտնվում է Օրբելեանց Նորավանքի գերեզմանատանում, հետևյալ արձանագրությամբ. «Զգեղեցկափթիթ ծաղիկն դքաջուղէշ մանուկն վաղաթառամ Իվանէ յիշեցէք. թվ. ՉԽԳ»։—Սիսական 194 (Ալիշան համարում է Ջեսարի որդին. բայց անշուշտ ակնարկում է մի ուրիշ Ջեսար. որովհետև մեզ ծանոթ Ջեսարը հիշված է 1332 թվին և նրա որդին Իւանէ, տես տակը № 23։*

— 16. Իւանէ *Բ. որդի Շահնշահի և թոռ Զաքարէ ամիրսպասալարի, եղբայր Աղբուղայի, Զաքարէի, Աւագ Սարգսի և Արտաշրի, հայր Շահնշահի, Վահրամ աթաբէկի, Արտաշիրի, Աղբուղայի (№ 2=6). կարգվեց իշխան Անիի՝ 1261 թ. (Շիրակ 101 ա). մեռել է 1284 թ. ըստ Հայապ. 447։—Կիր. կբ. Արձ. Շիրակ 28, 62, 86, Այրարատ 141, 144, 159, 162։*

— 17. Իւանէ, *որդի Վախթանկ Բ Տօնկիկի, իշխանի Խաչենոյ, եղբայր Հասան-Ջալալ Դոլայի և Զաքարէի (№ 15), քեռորդի Զաքարէի և Իւանէ աթաբէկի։ Հիշված է իր եղբոր՝ Հասան Ջալալ Դոլայի 1240 թվի մեծ արձանագրության մեջ՝ Գանձասարում (ԺԳ դար)։—Կիր. իը.—Արձ. Շահխաթ. Բ. 371—2, Արցախ էջ 173։*

— 18. Իվանե, *որդի Հասան-Ջալալի՝ իշխանի Խաչենոյ՝ որդւոյ Վախտանգի (ԺԳ դար).—յիշատ.* ИАН *1909, էջ 426։*

— 19. Իւանէ, *որի թոռը Հասան Տաւտաշ վաղամեռիկ է եղել 1304 թ. շիրիմը գտնւում է Զոլախաչ գյուղում (Նոր-Բայազիտ).—Սմբատեանց, Գեղարքունի 546։*

— 20. Իւանէ *իշխան Որոտնեցի, որդի Հասան իշխանի, եղբայր Սիւնեաց Սարգիս արքեպիսկոպոսի, հայր Յովհաննէս Որոտնեցու, որ ծնվել է «1315 թ». մյուս որդիներն են Հասան և Զաքարէ։ Իւանէն հիշված է իբրև «ամիրայ և պետ Որոտան» 1337 թ. (Սիսական 217 բ)։—Ցայտ. յնվ. 6, Տաշեան, Ցուց. 889.—սեռ.* Իվանեի՝ *Մեծոփ 15. տես հատկապես Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 230 ծան։—(Սխալմամբ հիշված է իբրև հայր Ստեփաննոս Օրբելեանի՝ փոխանակ Տարսայիճ. Հայապ. 569)։—Նույնն*

եմ կարծում նաև այն «Մեծափառ իշխան Իւանէ Որոտնեցին», որի որդին ՏէրՍտեփաննոս՝ Սսից Տաթև է բերել մի նշանավոր Յայսմաւուրք, որ ապա Մովսէս Գ կաթողիկոսը («1629—32 թ») փոխադրել է էջմիածին և շատերին օրինակել է տվել (Ձեռ. Աշուլ.=Արարատ 1911, 853)։

— 21. Իւանէ Օրբելեան, որդի Բուրթելի և եղբայր Գեշքենի ու Սամեղի. հիշված է 1322 թվին իբրև «Նորաբողբոջ զաւակ» (Արձ. Սիսական 181), 1326 թ (Սիսական 525 և Ազգագր. հանդ. Գ. 191), 1334 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 30 բ), Յովսէփեան՝ Խաղբակեանք 202, և Սմբատեան՝ Գեղարքունի 486, ուր կոչված է Իւանիկ. այսպես նաև Սիսական 47), 1337 թ. (Ձեռ. Բեռլինի 26 բ), և վերջապես 1345 թ. (Սիսական 115), տես և Սիսական 148, 202։ Այս Իւանէի որդին է Սմբատ, որի մոտ գնաց Գրիգոր Տաթևացին «1390 թ».—ստո. Իւանէի՝ Յայսմ. ապր. 27, Նոտարք 37, Մեծոփ. 33, 67, 72։

— 22. Իւանի, հոգևոր եղբայր Յովհաննէս դպրի, որ Հասմկլայի Ծակաղբիւր գյուղում օրինակեց Աւետարանը 1357 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 613։

— 23. Իւանէ Օրբելեանց, որդի Ջեսարի, եղբայր Սարգսի, Յովհաննէսի, Քուրդի և Վարդանի. մայրն է Խորիշահ։—Սիսական 92 (ազգաբանական տախտակը)։ Սիսական 164 արձանագրության մեջ 1332 թ. հիշված են Իւանէի չորս եղբայրները, իսկ Իւանէն չկա. ուստի նա ամենակրտսերն է և դեռ չէր ծնված 1332 թվին։ Մեռել է մանուկ հասակում. գերեզմանը գտնվում է Նորավանքում՝ բայց անթվական (Սիսական 201)։

— 24. Իւանէ, իբր մեծ իշխան հիշված է Գանձասարի արձանագրության մեջ՝ 1361 թ. (Արցախ 177) և Ցախաքարի արձանագրության մեջ՝ 1367 թ. (Սիսական 156)։

— 25. Իվանէ Պահլաւունի, Որոտնեցի, որի թոռն է Պետրոս, որ Մաղաքիա աւագերեցի հետ միասին շինել են Թէոդոսիոյ բերդը (ԺԴ դար)։—Հայապ. 582։

— 26. Իւանէ Օրբելեանց, որդի Սմբատի և եղբայր Տէր Ստեփաննոսի, որ մեռել է 1423 թ.—Սիսական 92 (ազգաբանական ծառը)։

— 27. Իւանէ, տէր Որոտան, սրա որդին է Ստեփաննոս եպիսկոպոս Սիւնեաց, որ մեռել է 1447 թ. և տարբեր պիտի լինի նախորդից, ըստ Սիսական 218։

*ԻՒԱՆՇԱՀ, աբ. < Իւանէ անունից+պրս. շահ «թագավոր»

(բայց թերևս ուղղելի է Իրաճշահ, որ ավելի բնական կլիներ)։ Մի անգամ հիշատակված է Մակարավանքի արձանագրության մեջ՝ 1243 թ.—Արցախ 375։

†*ԻՒՂ*, ար. < հյ. իւղ բառից (իբրև թրգմ. հուն. Եղիոն կամ Միւռոն անվան)։ Ըստ իս Ի՟ղ համառոտագրության սխալ ընթերցման արդյունքն է (տես Իսրայել № 3)։

†*ԻՒՂԱԲԵՐ*, իգ. < հյ. իւղաբեր «եղ բերող» բառից, ակնարկությամբ այն կանանց, որոնք խունկ և իւղ բերին Յիսուսի գերեզմանը (Մրկ. ժզ. 1, Ղկ. իգ. 56)։ Գործածական էր անցյալ դարում Պոլսում՝ Օղաբեր ձևով։ Այժմ Երևանում գործածական է կրճատ կամ գգվական Իւղիկ ձևով։

†*ԻՒՂԻԿ* տես նախորդը։

Իւսուֆ տես Յուսուֆ։

**ԻՓԱԿ*, ար. < թրք. ايپك ipek «մետաքս» բառից. հիշված է 1592 թ. (Այրարատ 172), 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ) և 1655 թ. (Ձեռ. Վասպ. 916)։ Սրանից է Իփէկեան ազգանունը (Պոլիս), որ տարբեր է Իփէկճեան ազգանունից (առաջինը անունից, երկրորդը արհեստից)։ Կա և Իփակ իգ. 1596 թ (Ձեռ. Թաւր. 75 բ)։

**ԻՓՐԻՄ*, ար. ըստ իս աղավաղված է Եփրեմ անունից, որ տես։ Մի անգամ հիշատակված է Իփրիմ օղլու Արթին ոմն, 1744 թ. (Գալէմքեարեան, Կենսագր. Սարգիս արքեպս. էջ 191)։—Սրանից անկախ է կիրգիզ. اى پيرم ey pirim «ով Տէր, ով Աստված» (իբրև բացագանչական զարմացական նշան)։

*ԻՔԱՄԷ*, ար. ձևն ու ծագումն անհայտ. հիշված է 1046 թ. Տաշքենդ գյուղի մի խաչքարի վրա. Սիսական 73 կարդում է Իքամէ?, իսկ Սմբատեան, Գեղարքունի 629՝ Քամի, որ և հասկանում է Քարամի։

*ԻՕԽԷ*, սեռն ու ծագումն անհայտ. հիշատակված է մի անգամ 1808 թ.—Ձեռ. Վասպ. 360։ Արդյոք թթր. يوفقه yufqa (ռմկ. yufxa) «ծալ ծալ խմորեղեն» բառն է, որ գւռ. բարբառներում նշանակում է «նուրբ, փափկասուն» (մասամբ հեգնական)։

# Լ

ԼԱԲԻԽԱՆ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1747 թ. (Սմբատեանց, Երնջակ 114)։

*ԼԱԶԱՐ, ար. < Ղազար անվան եվրոպական (կամ ռուսական) ձևից (տես Ղազար). գործածական է Լեհահայոց մեջ՝ սկսած 1572 թվից (տես Տաշեան, Ցուց. 908). ավելի ուշ Ռուսահայոց մեջ (ինչպես Լազարեանց տոհմը). այժմ էլ գործածական է Կովկասում։

* ԼԱԹԻՖ, ար. և իգ. < արաբ. لطيف laṭīf «գեղեցիկ, սիրուն, վայելուչ, շնորհալի»։ Գործածվել է ԺԵ—ԺԷ դարերում և անցյալ դարումն էլ կար Պոլսում։ Հնագույն ձևն է Լատիւ, միջին ձևը՝ Լատիֆ, Պոլսում հնչվում էր Լաթիֆ։

— 1. Լատիւ (սեռը անհայտ), մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանի Խլպաշի վանքում օրինակեց մի Աւետարան, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 341։

— 2. Լատեւ, դուստր Խասխաթուն տիկնոջ, որ Տոմարծայ գյուղում, Գրիգոր երեցին գրել տվեց մի Գանձարան, 1576 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 314։

— Լաթիֆ հիշված է նաև իբր ար. 1616 թ. (Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. 159), Լատիֆ իգ. 1636 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 355), Լաթիւ իգ. 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 14 բ), Լատիֆ ար. 1646 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 79)։

*ԼԱԹԻՖՍՈՒԼԹԱՆ, իգ. < Լաթիֆ անունից+sultān. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ՝ Լատիւսուլթան ձևով)։

*ԼԱԼ, ար. < պրս. لال lāl կամ արաբ. لعل laʿl «շատ կարմիր. 2. շատ կարմիր մի քար, սուտակ»։ Մի անգամ հիշատակված է ԺԴ դարում։

— 1. Լալ վարդապետ Արտաղեցի, ունիթոռական, միաբան Քռնիի վանուց, 1330 թ.—Ազգապ. 1845։

— Նույն անունը կա նաև 1651 թ. Ձեռ. Վեննետ. Ա. 735, ուր տպված է Լալինքապարին, որ պետք է կարդալ սեռ. Լալին, Քապարին։ Այստեղ Լալին կարող է լինել թե վերոհիշյալ Լալ անունից և թե Լալա անունից, որ տես։ Այսպես նաև սեռ. Լալին Արձ. 1671 թ. (Ցովսէփեան՝ Խաղբակեանք 254)։

*ԼԱԼԱ, ար. < պրս. لالا lālā «դաստիարակ, մանկան խնամակալ և վերակացու, և հատկապես՝ իշխանազունների դաստիարակ»,

որ Տաճիկների մոտ էլ գործածվել է իբրև արական անձնանուն։ Հայտնի է օրինակ Լալա Մուսթաֆա փաշա, որ Օսմանեան բանակով արշավեց Պարսից վրա և խլեց նրանց ձեռքից Վրաստանն ու Հայաստանը՝ 1575 թ։ Կա նաև մի ուրիշ Լալա փաշա։ Անշուշտ գործածական է եղել նաև մեր մեջ, որից Լալայեան ազգանունը։ Տես և հաջորդը։

*ԼԱԼԱԲԷԳ, ար. < նախորդ Լալա անունից+բէգ։ Իբրև անձնանուն գործածական էր նաև Պարսից մեջ. ինչ. Լալաբէկ՝ հովիվ պարսիկ, որ եղավ Շահաբասի նախարարը (Առաք. պատմ. 133)։ Մեր մեջ հիշատակված է 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 ը՝ Լալապէկ ձևով)։ Որանից նաև Լալաբէգեանց ազգանունը։

*ԼԱԼԱԳՈՒՆԱՇ, իգ. < պրս. لال lāl «սուտակ կամ շատ կարմիր»+Թրք. گونش güneš «արև, արեգակ» բառերից. ամբողջը նշանակում է «վարդակարմիր արեգակ»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1551 թ. (Матер. Арх. Какв. III, էջ 93, 94)։

*ԼԱԼԱԶԱՐ, ար. < պրս. لاله‌زار lālazār «կակաչների ծաղկանոց». իբրև անձնանուն հիշված է մի անգամ ԺԷ դարում (Զքր. ագուլ. 68)։ Որանից է Լալազարեան ազգանունը (Շուշի)։

*ԼԱԼԷ, իգ. < պրս. لاله lāla, Թրք. lāle «կակաչ ծաղիկը». գործածական է Պարսից մեջ իբրև իգ. անձնանուն։ Մեր մեջ էլ կար անցյալ դարում, օրինակ Ռաֆֆու խենթի հերոսուհին՝ Լալա։ Համմտ. նաև հաջորդը։

*ԼԱԼԷԽԱՆՈՒՄ, իգ. < նույն Լալէ անունից+խանում. Թուրքերի մեջ էլ գործածական է Լալախանում ձևով. մեր մեջ հիշված է 1698 թ. (Ձեռ. Վասպ. 986)։

Լալէփար տես Նունուֆար։

*ԼԱԼԻԽԱՆ, իգ. < արաբ. لعلی la'lī «սուտակ քարի գույնով» +xān. գործածված է ԺԷ—ԺԸ դարերում. այսպես՝ Լալիխան (ար!) 1634 թ. (Թորոս աղբ. Բ. 430), 1663 թ. (Ձեռ. Վասպ. 922), 1680 թ. (անդ 568), 1693 թ. (անդ. 334—5), նաև Լալխան 1731 թ. (անդ 1022)։

*ԼԱԼԽԱԹՈՒՆ, իգ. < պրս. لال lāl «սուտակ քարը»+xātūn. հիշատակվել է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Լալխաթուն, դուստր Խրիմշահի, մերձավոր Գրիգոր քահանայի, որ գնեց մի Աւետարան, 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277 ա։

— 2. Լալխաթուն, դուստր Մուսեխի և Դիլշատի՝ քրոջ Է-

վաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 485։

— 3. Լալխաթուն, կին Թուանգի. վճարեց 150 դրամ իբրև գրողչէք մի Յայսմաւուրքի համար, որ օրինակեց Սիմէոն կրոնավորը՝ Եկեղեաց գավառի Աւագ վանքում, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49 բ։

— 4. Լալթաթուն, կին Աստուածատուր Գառնուկ քահանայի և մայր Ներսէս աբեղայի, որի միջնորդությամբ Տիւրիկի Վաստըր գյուղում Ստեփանոս գրիչը օրինակեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։

ԼԱԼՈՒ, ար. հիշված է Զամբռ 209. բայց անծուն է թե մականուն։

*ԼԱԼՓԻՐՈՒԶ, իգ. < պրս. لال lāl + پیروزه pīrūze բառերից, որոնց երկուսն էլ թանկագին քարեր են նշանակում։ Հիշատակված է մի անգամ 1555 թ. Լալփերոզ ձևով (Матер. Арх. Какв. III, էջ 96) և մի անգամ էլ 1611 թ. Լալփերաւժ ձևով (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 222)։

*ԼԱՄԱԶՈՆ, անսովոր անուն. ձևն անհայտ. ըստ Ս. Երեմեանի < վրաց. ლამაზი լամազի «գեղեցիկ» (կոչ. լամազօ) բառից։ Ուստի վերջածայնը որոշիչ հոդ։ Գտնում եմ մի անգամ հիշատակված Լամազօն ձևով՝ 1728 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 120) և մի անգամ էլ Լամազաւն ձևով՝ 1798 թվից քիչ հետո (Սմբատեանց, Երնջակ 294),

ԼԱՅԼԻ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է խօջա Լայլին՝ անթվական մի արձանագրության մեջ (Ձեռ. Վասպ. 644)։ Հմմտ. Լեյլի։

*ԼԱՉԻՆ, ար. < թթր. لاچین lačin «բազէ» բառից, որ գործածվում է նաև իբրև անձնանուն. հմմտ. հյ. Շահեն. հնչ. Lāčīn քույր Սալահադդինի, Lāčīn beg դեսպան պարսից առ ցարն Ռուսաց՝ 1603 թ. (Justi 182 բ), Լաչին Նասըր Հուսամադին՝ սուլթան Եգիպտոսի և Բաղդադի, 1302 թ. (Զամչ. Գ. 298)։ Հիշված է մեր մեջ 1653 թ. (Երեմ. չէլ. Օրագր. 45) և 1702 թ. (Ձեռ. Կարին. 168։)

*ԼԱՏՈՐԻ, իգ. < վրաց. ლატავრა Լատավրա անունից։

— Լատորի, դուստր Ատրներսեհ Բագրատունու, կին Ջուանշեր իշխանի Վրաց (Թ դար).—Պատմ. վր. ժդ։

*ԼԱՒԱՆԴԲԷԿ, ար. < արաբ. պրս. لوند lavand բառից, որ շատ զանազան նշանակություններ ունի. Տաճկերեն բառարա-

նում մեկնվում է «1. կամավոր զինվոր. 2. ասպետ՝ սիգաճեմ մարդ». պարսկերեն բառարանում մեկնվում է «իր քմահաճույքի համեմատ ապրող մարդ. 2. պղերգ և կնամոլ մարդ. 3. անգործ մարդ. 4. անառակ կին». մեր բարբառներում այժմ նշանակում է «Տփ. շռայլ, ցոփ կյանք վարող մարդ. 2. Ննխ. ամուրի մարդ»։ Բոլորի մայրն է ֆրանս. levantin «արևելցի», որ այս զանազան իմաստները ստացել է Եվրոպացոց արևելցի զինվորների կյանքից ու բարքից։ Մեր մեջ Լաւանդբէկ իբրև անձնանուն գործածված եմ գտնում մի անգամ՝ 1570 ական թվերին (Կարապետ եպս.՝ Դոփեանք 190)։

ԼԱՒԻՆ. ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Լաւին (սեռ. Լաւինին), ազգական Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

† ԼԱՒՀԱԼ, իգ. < հյ. լաւ + արաբ. حال ḥāl «վիճակ, կացություն» բառերից։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Լաւհալ, կին Տալախի և մայր տանուտէր Մարտիրոսի, որ իր վաղամեռիկ եղբոր՝ Շարիբէգի հիշատակին գրել տվեց մի Աւետարան, 1489 թ.—ՀԱ 1894, 52 ա։

ԼԱՒՕ, ար. < կամ հյ. լաւ բառից և կամ քրդ. lavo «մի տղա» կոչականից։ Գտնում եմ գործածված երկու անգամ. առաջինը 1744 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 250, Լավօ ձևով), երկրորդը անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1626 թվից հետո (Ջեռ. Վասպ. 870 Լաւօ ձևով)։

ԼԵԼՕ, իգ. ծագումն ինձ անհայտ. վրացական անուն է. հմմտ. Տփղիսեցոց «Ծա՛փ տու, Լելօ» ծաղրական ասացվածը։ Իբրև անձնանուն գտնում եմ գործածված 1661 թ. (Սմբատեանց, Երնջակ 287 և Ջեռ. Ագուլ.=Արար. 1911, 119)։

ԼԵՀԻՆՋ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված եմ գտնում Ջամբռ 209։

*ԼԵՒՈՆ, ար. < հուն. Λέων անունից, որ բուն նշանակում է «առյուծ». այսպես նաև լտ. Leo, ֆրանս. Léon, ռուս. Лев, փղքշ. Лева.—Այս անունով հայտնի են վեց հույն կայսր. (Լևոն Ա Մեծն 457—474, Լևոն Բ՝ 474 թ., Լևոն Գ Իսաւրացի 717—741, Լևոն Դ Խազար 775—780, Լևոն Ե հայ 813—820, Լևոն Զ փիլիսոփա 886—912), տասներեք պապ Հռոմի (Լևոն Ա 440—461,

*Լևոն Բ 682—684, Լևոն Գ 795—816, Լևոն Դ 847—855, Լևոն Ե 903 թ., Լևոն Զ 928—929, Լևոն Է 936—939, Լևոն Ը 963—965, Լևոն Թ 1048—1054, Լևոն Ժ 1513—1521, Լևոն ԺԱ 1605, Լևոն ԺԲ 1823—1829, Լևոն ԺԳ 1878—1903)։ Այս անվան ամենահին գործածությունը մեր մեջ Ժ դարից է, երբ հյ. Ղ տառը կորցրած էր իր բնիկ* l *հնչումը. նախ քան այդ՝ նույն անունը տառադարձվում էր* Ղևոնդ *(տես այս բառը)։ Խոր. քեր. 172 իբրև օրինակ անձնանվան հիշվում է* Ղեւոն, *որից էլ* Ղեւոնեան: Լեւոն *անունը զարգացավ հատկապես Ռուբինեանց ժամանակ և այժմ էլ շատ սովորական է։ Հնապես գրվում էր* Լեւոն, *ինչպես ունինք Կոստանդին պայլի մեծ արձանագրության մեջ՝ Սիսուան 75։ Ձայնափոխությունը նույն է՝ ինչ որ* Գէորգ > Գեւորգ: *Գգվական ձևերն են Լևոնիկ, Լևիկ, Լևուշ և ռուսերենից փոխառությամբ՝ Լյովա։ Այս անվան համազորները տես* Առիւծ։

— 1. Լեւոն Տարօնեցի, *իշխան, գնացել էր Պոլիս. սրա աղջըկա հետ ամուսնացավ* Մեզտիս *արշակունի (հուն.* Մայիէտիս), *783 թ., որ պապն է Վասիլ Ա. արշակունի կայսեր հունաց,— Ջամչ. Բ. 690, Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. 340, 351 (ըստ Կոստանդին Պերփերուժէնի պատմության, ուր սակայն չէ ասված թե Լևոնը Տարօնեցի էր. սա Ջամչեանի ենթադրությունն է)։*

— 2. Լեւոն Ե Հայ, *կայսր Յունաց՝ 813—820 թ. պատրիկ Վարդ Արծրունու որդին էր և Արշաւիր Հայկազն պատրիկի փեսան (նրա Թէոդոսիա դստեր ամուսինը)։ Նիկեփորոս կայսրը երկուսին էլ վանքի մեջ արգելափակեց. Միքայէլ Ա հաջորդելով Նիկեփորոսին, երկուսին էլ արձակեց (811)։ Լևոնը հունաց Ասիական բանակի հրամանատարը դարձավ և իր քաջությամբ մեծ անուն և համակրություն էր վայելում։ Երբ Բուլգարները արշավելով՝ հասան Պոլսի պարիսպներին, Միքայէլը թեև զորքի գլուխն անցած դուրս եկավ նրանց դեմ, բայց կռիվը սկսած միջոցին փախավ և ապաստանեց քաղաքում, մինչդեռ զորքը շարունակում էր պատերազմը թշնամու դեմ։ Այս անարգ փախուստի վրա՝ զորքն ու ժողովուրդը զայրացած, գահընկեց արին Միքայէլին և Լևոնին կայսր հրատարակեցին։ Լևոնը հալածեց թըշնամուն, նրանց թագավորին էլ սպանեց և փրկեց պետությունը Բուլգարական վտանգից։ Այնուհետև Բուլգարները 74 տարի անշարժ մնացին։ Լևոնը Արաբներին էլ զսպեց և Սիկիլիան գրավեց։ Զինվորական անվեհերության և փայլուն ձիրքերի հետ միասին՝ ունենալով վարչական կորով և արդարադատ ոգի, կառո-*

ղացավ շուտով թե վերականգնել զորքի կարգապահությունը և թե ամենքին ճանաչել տալ օրենքի և իշխանության նշանակությունն ու հարգը։ Հալածանք հանեց պատկերապաշտների դեմ; որոնց գլխավորներից՝ Պոլսի Նիկեփորոս պատրիարքին գահազուրկ արեց, և Թէոդորոս վանականին բանտարկեց։ Իր հրամանով՝ Պոլսում գումարվեց եկեղեցական ժողով (815), որ Նիկիայի 787 թվի ժողովի վճիռները ջնջեց և Պոլսի 754 թվի ժողովի որոշումները վերահաստատեց։ Սկսեցին ջարդել սրբերի պատկերները չտեսնված եռանդով։ Վանականները՝ որոնք սուրբ պատկերներին պաշտպան կանգնեցին, իբրև ըմբոստ և խռովարար, պատիժների, բանտարկության և աքսորի ենթարկվեցին։ Այս խստությունների պատճառով՝ Լևոնի դեմ դավադրություն կազմըվեց. Ծննդյան տոնի գիշերային ժամերգության միջոցին, եկեղեցում դավադիրները հարձակվեցին Լևոնի վրա և նրան սուսերահար սպանեցին (820)։ Նիկեփորոս պատրիարքը Քաղկեդոնում (իր աքսորավայրի մեջ) լսելով Լևոնի մահը, ասաց. «Եկեղեցին ազատվեց իր մեծ թշնամուց. բայց Արևելյան կայսրությունն էլ կորցրեց մի քաջ իշխանի, որ նրա փառքն ու պարծանքն էր»։ Նրա տեղ գահ բարձրացրին Միքայէլ Բ Թլուատին, որ բանտից արձակեցին։ Լևոնը կոչվել է քամելէոն և գերաքրիստոս։— Չամչ. Բ. 432, Սեդրակեան, Հայ. եկեղ. պտկր. 43. Տէր Սահակեան. Հայ կայսերք, Ա. 155—195, 323—334, Բ. 344—346, 574 (ուր խոսում է Լևոնի կնիքի մասին)։—Մեր պատմիչներից հետաքրքրական է Մխ. համդ. 94, որ այս Լևոնի մասին պատմում է հետևյալ առասպելը. «Վասն Լևոնի ասեն ի յազգէն Հայոց լինել. և էր ասեն տեղեաւ Մծբնեցի և աղքատ շինական. և յաւուր միում, մինչ աշխատեալ էր և ննջեալ ի ներքոյ ծառի միում, եկին առ նա արք երեք Հրեայք և խթեալ զնա, ասեն. Ընդէ՞ր յանհոգս ննջես, թագաւոր աշխարհի։ Եւ նա զարթուցեալ ասէ. Զի՞ է, զի՞ ասացիք ինձ՝ շինականիս թագաւոր։ Եւ նոքա ասեն. Մեք որդիք մարգարէից եմք և Աստուած յայտնեաց մեզ վասն քո, որ թագաւոր լինելոց ես։ Արդ՝ արի և գնա ի Կոստանդնուպոլիս. բայց ուխտեա Աստուծոյ, զի յայնմ ժամուն յորում թագաւորեսցես, զոր ինչ հրաման լիցի քեզ յԱստուծոյ, ի մէնջ ուսեալ կատարեսցես, զի հաստատեսցի թագաւորութիւն քո։ Եւ սորա գնացեալ անդ և կացեալ սպասաւորութեամբ մի առ մի, ել ի կայսերութիւն։ Եւ իբրև գիտացին թէ թագաւորեաց, գնացին առ նա և ասեն. Այս է հրամանն Աստուծոյ, որ պատկերք՝

զոր ունիք յեկեղեցիս և ի տունս ձեր, խորտակել հրամայեմ. զի կուռք են և պիղծ»: Այս առասպելի վրա էլ հիմնում է Լևոնի պատկերամարտությունը:

— 3. ԼԵՈՆ Հալակոն, Հունաց Նումերեան կոչված զորագնդի հայազգի զորավարն էր, որ չարչարեց Իգնատիոս հայրապետին, 858 թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 575:

— 4. ԼԵՈՆ Զ Իմաստասէր, կայսր հունաց 886—912 թ. Վասիլ Ա Արշակունի կայսեր անդրանիկ որդին էր, ծնված 866 թ. Վասիլի երկրորդ կնոջից, որ կոչվում էր Եւդոկիա-Ինգերինա և Միքայէլ Արբշիռ կայսեր ապահարզան տված կինն էր: Կասկածվելով հոր դեմ դավադրության մեջ՝ բանտարկվեց, բայց շուտով ազատվեց (885): Հաջորդելով իր հորը՝ ցույց չտվեց ոչ քաջություն և ոչ էլ վարչական կարողություն: Մեծ սեր ուներ ուսման և հատկապես աստղաբաշխության: Հորինել է մի օրինագիրք և բազմաթիվ այլ գործեր, որոնցով Բիւզանդացոց մեջ մարգարեի համբավ հանեց: Չկարողացավ կռվել Բուլղարների Սիմէոն թագավորի դեմ, որ ջնջեց հունաց բանակը՝ սպանելով նաև նրանց զորավար Պրոկոպիոսին և Կուրտիկ հայկազնին: Լևոնը այն ժամանակ օգնության կանչեց Հունգարացիներին, որոնք այն դարի ամենավայրենի ժողովուրդն էին: Հունգարացիք անցան Դանուբը և ջնջեցին Բուլգարներին, բայց նրանց Սիմէոն թագավորը երկրորդ անգամ անցնելով Դանուբը, բոլորովին հունգարներ կոտորեց: Հայասեր էր. օգնեց Սմբատ Ա-ին Յուսուփի դեմ պատերազմում, ինչպես և հարվածեց Տայքի և Գուգարքի արաբներին: Մեռավ 912 թվին, գահը հանձնելով իր որդի Կոստանդին Պերփերուժէնին, որին խնամակալ նշանակեց՝ իր եղբոր Աղեքսանդրին:—Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. 225—246, 357—382: Մեր Ասողիկ պատմիչը այս Լևոն կայսեր համար գրում է. «Այր խաղաղարար և բարեխորհ ամենայն երկրի, առատաձեռն ի տուրս, և ի բաշխելն ոչ որպէս զհռոմ ռիշտ. զի չէ սովորութիւն Հոռոմոց առատ լինել, և ոչ յիւրեանց լեզուն ասի առատ: Այլ նա որդի հայոյ էր և առաւել քան զհայ առատատուր» (Ասող. Գ. գ): Նույնը կրկնում է Վրդ. խե:

— 5. ԼԵՈՆ Փոկաս, որդի Վարդ Փոկասի, եղբայր Կոստանդինի և Նիկեփորի: Երբ ծերունի Վարդ Փոկասը պատերազմում ծանր վիրավորվելով հրաժարվեց պաշտոնից (953 թ), այս երեք որդիները նրա տեղն անցան: Լևոնը արաբաց Աբու-Լաշայիր զորավարի դեմ գնաց, նրա բանակը ոչնչացրեց և նրան էլ գերի

բռնելով՝ Պոլիս ուղարկեց։ Սրան հակառակ մյուս երկու եղբայրները հաղթվեցին և Կոստանդինը նահատակվեց։ Պոլսից նոր բանակ եկավ, որ Վասիլի, Զմշկիկի և Լևոն Փոկասի ղեկավարությամբ ջախջախեց արաբներին։ Ռոմանոս Բ կայսրը հաջորդելով Պերփեռուժէնին, շարունակեց պատերազմը. Լևոն Փոկաս մեծ կոտորած սփռեց արաբների մեջ և գերիների չափազանց մեծ բազմությամբ վերադարձավ Պոլիս (961)։ Երբ Ռոմանոս Բ մեռավ, Զմշկիկը Նիկեփոր Փոկասին գահ բարձրացրեց (963). բայց Նիկեփորը գահ բարձրանալով ոչ միայն չվարձատրեց Զմշկիկին, այլ և նախանձելով նրա փառքին՝ աքսորեց Ցերապոլիս։ Զմշկիկը որոշեց վրեժ լուծել կայսրից և թագուհու հետ միացած՝ սպանեց նրան և ինքը գահ բարձրացավ (969 թ)։ Լևոն Փոկասը այնքան հարուստ էր, որ եթե ագահ չլիներ, կարող էր նույն օրն իսկ ժողովուրդին դրամ բաշխելով՝ իրեն կայսր հրատարակել տալ։ Բայց Լևոնը այդ քայլը չարավ, փախավ Ս. Սոփիա և մյուս օրը տաճարից դուրս հանվելով՝ աքսորվեց իր ամբողջ ընտանիքով։ Լևոնը փախավ աքսորից և Թրակիա երթալով նոր ապստամբություն կազմակերպեց Զմշկիկի դեմ՝ իր Վարդ և Նիկեփոր որդիների հետ։ Զմշկիկը նրանց դեմ ուղարկեց Վարդ Սքլերոսին և ապստամբներին բռնելով Քիոս կղզին աքսորեց (970 թ).—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 114—5, 135—9, 161, 167, 179—185։—Վարդ Փոկասի († 989) որդի Լևոն Փոկասի համար Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա. 410 պատմում է նաև հետևյալը.—Երբ հայրը՝ Վարդ կարգեց Լևոնին Անտիոքի դուքս, Անտիոքացիք չուզեցին գործակցել նրան. այն ժամանակ Լևոնը ամրացավ քաղաքի վերևում շինված անառիկ բերդի մեջ և միացած հայ ու արաբ բազմության՝ կռվեց Հունաց պետության դեմ։

— 6. Լևոն վարդապետ Իմաստասէր. պատգամավոր գնաց Աշոտ Գ Ողորմած («954—977») թագավորի կողմից՝ հունաց Յովհաննէս Զմշկիկ կայսեր մոտ, երբ սա իր բանակով մտել էր Հայաստան («973 թ»)։ Պոլսում վիճել է հույն իմաստասերների հետ և հաղթել։ Այս ժամանակ է որ ստացել է Զմշկիկ կայսրից «րաբունապետ և փիլիսոփա» տիտղոսները (Տէր Սահակեան, Հայ կայսերք Բ. 465)։ Դառնալով Հայաստան, հաստատվեց Շիրակում։ Թարգմանել է «Պատմութիւն մատին Ս. առաքելոյն Պետրոսի, որ բերաւ ի Հայս»։—Ուռհ. 18.—որ և Ղևոնդ՝ Ուռհ. 18, 28. Սմբ. պատմ. 23, 33.—Պանդալևոն՝ Ուռհ. 28.—Տես և Պանդալևոն։

— 7. ԼԵՒՈՆ Լալակոն, նահանգապետն էր Հայաստանի. հարձակվեց Արաբների վրա, որոնք Բասեան գավառի եկեղեցիները ավերել էին և նրանց դուրս քշեց Բասենից և Թէոդոպոլսից, այն է Կարինից (996 Թ)։ Ապա միացավ հունաց Կատակալոն զորավարի հետ և հարձակվելով շրջակա երկիրների վրա, ավերեց։—Muralt, Chronographie byzantine 483, ըստ Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 575։

— 8. ԼԵՒՈՆ որդի Հաբէլի, եղբայր Հարպիկի՝ տեառն Արկնոյ. գերի ընկավ և աքսորվեց Պոլիս՝ 1051 Թ.—Ուռհ. 110, 112։ Ջամչ. Բ. 952—3։

— 9. ԼԵՒՈՆ Թագավոր Կիլիկիոյ, 1123 Թ.՝ ըստ Ջեռ. Վասպ. 780.—կեղծիք, որովհետև այս թվին Լևոն Թագավոր չկա Կիլիկիայում։

— 10. ԼԵՒՈՆ որդի Թորոս Բ-ի. հորը մահվան ժամանակ անչափահաս լինելով՝ Թովմաս պայլը նրան խնամակալ կարգվեց. Մլեհի ձեռքից փախավ Շնորհալու մոտ, ուր և մեռավ քիչ ժամանակ հետո (1170 Թ.)—Գամ. կիլ. 207 (այլուստ ծանոթ է մեզ ՌՈՒԲԷՆ անունով, որ տես)։ Սիսուան 532 ա ասում է թե «հմտագոյքն ոչ Ռուբէն, այլ Լևոն կոչեն»։

— 11. ԼԵՒՈՆ Ա իշխան Ռուբինեան, որդի Կոստանդին Ա-ի և եղբայր Թորոս Ա-ի, որին հաջորդեց «1129 Թ». խլեց հույներից Մամեստիա և Տարսոն քաղաքները, հաղթեց Անտիոքի լատին իշխանին (1130 Թ), բայց խարդախությամբ բռնվելով նրանից, բանտարկվեց (1135 Թ)։ Հաշտվելով Անտիոքացոց հետ, պատերազմի դուրս եկավ հունաց Յովհաննէս Կոմնենոս կայսեր դեմ, բայց հաղթվեց և իր երկու որդիներով գերի տարվեց Պոլիս «1141 Թ»։ Մեռավ բանտում «1143 Թ»։—Վրդ. կե, կէ, հզ. Ուռհ. 269, 337, 369. Գր. եր. 369, 422, Հեթ. պատ. խզ. Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 194, 196—200. Սմբ. պատ. 92, 94, 136. Մխ. այրիվ. 19. Միխ. աս. Բ տպ. 411 (ա տպ. էջ 417 չիք). Սամ. անեց. 121, 128—130, 135—6. Գամ. կիլ. 204—5. Գամ. ռուբ. 214—6. Գամ. լմբ. 238. Նհպտք. 102 (ասում է թե այս Լևոնը իր քաջության համար կոչվել է «Նոր Աժդահակ»).—ԼԵՒՈՆԷ Հեթ. ժմնկ.—ԼԵՈՆ՝ Մին. համդ. 37, 38, 39.—սեռ. ԼԵՒՈՆԻ՝ Կիր. 62, ա. Վրդ. կէ, հզ, հը. Ուռհ. 325, 337, 342—3, 400, 428. Գամ. յյտ. ներս. 45. Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 196—8, 202. Սմբ. պատ. 93—95, 100, 136. Սամ. անեց. 128—131. Գամ. կիլ. 205—206. Գամ. լմբ. 238. Նհպտք.

*102.—Լևոնի՝ Մին համգ. 39։—Զարբ. Թրգմ. 348, 567. Հայապ. 343. Սիսուան 50—52, Դարդել 12։*

— 12. Լևոն *Բ. Ռուբինեան, որդի Ստեփանէի և եղբայր Ռուբէն Բ-ի. սրանից վախենալով փախավ Պոլիս. ապա դառնալով Կիլիկիա, ստացավ Կապան բերդը՝ 1182 Թ. (Սմբ. պատմ. 104)։ Եղբորը մահից հետո հաջորդեց նրան (1187 Թ)։ Այս թվականը ճշտվում է Անարզաբայի միջնաբերդի արձանագրությամբ, որ հետևյալն է. «Ցամի ՈԼՁ երորդի (=1187) թվականիս Հայոց խաւարեցաւ արեգակն մինչև աստեղք երևեցան և էառ Թուրքն զսուրբ քաղաքն Երուսաղէմ (=1187 հոկտ. 2). յայնմ ամի մեռաւ Ռուբէն Ստեփանէի որդին և նստաւ յաթոռ նորին բարեպաշտն Լևոն,...» (Սիսուան 239, Հայապ. 344)։ Հաղթեց Իկոնիայի, Հալէպի և Դամասկոսի սուլթաններին։ Օգնելով խաչակիրներին՝ Գերմանիոյ կայսրից ստացավ թագ և պսակվեց իբրև առաջին թագավոր Ռուբինեանց։ Այս նշանավոր դեպքի թվականը դնում են 1198, իսկ Օրմանեանը ճշտելով դնում է «1199 Թ»։ (Մի ընտիր ձեռագիր, որ գրված է ՈԽԹ=1200 թվին, ասում է «յերրորդում ամի թագաւորութեանն Հայոց Լևոնի», ուրեմն և թագադրության տարին լինում է 1198 Թ)։ Աթոռը դրավ Սիս և հրավիրելով եվրոպացիներին Կիլիկիա, տվեց իր երկրին եվրոպական կուլտուրական երկիրների բոլոր կարգերը։ Ուր որ լսում էր թե կա մի արժանավոր և հմուտ անձնավորություն, իսկույն հրավիրում էր իր մոտ և նրան մի լավ պաշտոն էր հանձնում։ Այսպեսով իր երկիրը լցվեց քաջ ասպետներով, մարաջախտներով, դատավորներով, գիտնականներով և ամեն դիրքի, արվեստի ու աստիճանի անձնավորություններով։ Անտիոքի ժառանգության հարցի առթիվ՝ 12 տարի պատերազմ մղեց Ասորիքի եվրոպական (լատին) պետության և նրանց դաշնակից Իկոնիայի և Հալէպի սուլթանների դեմ և միշտ հաղթեց։ Օգնելով Եվրոպացի խաչակիրներին, հասավ մինչև Պաղեստին և մասնակցեց Թափորի ձախող պատերազմին։ Այստեղից ետ դարձավ Հունգարաց Անդրէաս Բ թագավորի հետ, որին հյուրընկալեց Սիսում (1218 Թ)։ Ամուսնացել էր նախ Անտիոքացի իշխանուհի Զապլունի հետ (1189 Թ), որից ունեցավ մի դուստր Ռիթա անուն։ Լսելով կնոջ անհավատարմությունը, մերձիմահ ծեծեց նրան և բանտարկեց Վահկայ բերդում։ Հինգ տարի հետո մեռավ կինը և Լևոնը երկրորդ անգամ ամուսնացավ Կիպրոսի թագավոր Ամորի Լուսինեանի դուստր Սիպիլի հետ (1210)։ Սրա-*

նից ունեցավ Զապէլ անունով մի աղջիկ, որին նշանակեց ժառանգ իր թագավորության։ Մեռավ «1219 թվին»՝ 34 տարի փառավոր իշխանություն վարելուց հետո։ (Մահվան օրն է 1219 մայիս 1, չորեքշաբթի օր, ըստ մի հիշատակարանի, որ տես REA 7, 106. իսկ ըստ Ձեռ. Վենետ. Բ. 1138՝ մեռել է ՈԿԹ=1220 թ.)։— Լևոնը մեր մեծագույն թագավորներից մեկն է։ Նա մեծ է նախ նրանով, որ մի փոքր ժողովուրդ՝ ինչպես էր հայը, որ իր բուն երկրից հեռանալով, գնացել հաստատվել էր փոքրիկ Կիլիկիայի բարձունքներում՝ իբրև գաղթական, հզոր ազգ և ուժեղ պետություն դարձրեց։ Այդ պետությունը տարածվում էր «ի դրանց Սելևկիոյ մինչ ի դրունս Անտիոքայ, և ի ծովեզերաց այնր երկայնութեան՝ մինչև ի Տաւրոս և յԱնտիտաւրոս, հատանելով զաշխարհս Պամփիւլիոյ, Իսաւրիոյ, Լիկայոնիոյ, Կատաոնիոյ և Գերմանիկոյ» (Սիսուան 460)։ Այդ պետությունը, որ ինքը իր ձեռքով ու իր անձնական քաջությամբ էր կազմել, արևելքից արևմուտք 16 օրվա ճանապարհ էր ձգվում, նրա թագավորի սարսափը մի ամսվա ճանապարհ էր գնում, իսկ համբավը շատ ավելի հեռուներն էր տարածվում։ Լևոնը մեծ էր սակայն ոչ միայն մեզ համար, այլ և իր ժամանակի բոլոր վեհապետների մեջ։ Ջնջված այն մանր մունր պետությունները, որոնք ծլել էին ամեն կողմ, այդ ժամանակի մեծագույն թագավորներն էին Սալահադդինը և Ֆրեդերիկոսը։ Առաջինը, Հայաստանցի մի քուրդ. Եգիպտոսի սուլթանությունը մինչև Կիլիկիայի սահմանները հասցրեց և Եվրոպական պետությանց սարսափը դարձավ. երկրորդը՝ Գերմանացոց կայսր և Եվրոպայի մեծագույն վեհապետն էր։ Բայց առաջինը մի նոր պետություն չհիմնեց. և երկրորդը ստիպվեց խոնարհվել Իտալական զանազան հանրապետությանց առաջ. բացի սրանից իր անունը և պատիվը անգութ գործերով արատավորեց։ Իսկ Լևոնը ոչ միայն մի ուժեղ պետություն հիմնեց, ոչ միայն կարողացավ պաշտպանել այն՝ այնքան բազմաթիվ ու բազմազան այլազգի պետությունների միջև, այլ և մի ամբողջ ասիական ժողովուրդ եվրոպական բարձր կուլտուրայի հասցրեց։ Սրա համար էլ նա արժանի է, որ կոչվի «այր մեծ և գերահանճար, յամենեցուն գովեալ, ամենեցուն զարմանալի. որում՝ ոչ եթէ չածէ ինչ սուսերածս փոքրկութիւն տարածութեան երկրին իշխեցելոյ, այլ և մեծագոյն յայնմ փոքրկութեան երևի՝ քան մեծամեծքն այն ժամու ազգաց և աշխարհաց վարիչք» (Սիսուան 435, 529)։—Գր. տղ. եջմ. 298, 300. Լմբ.

207. Կիր. 62, ա, գ, է, լե. Վրդ. հը, ձ, ձբ, ձդ, Անանուն ժմ. 19. Մխ. այրիվ. 20, 80. Միխ. աս. իէ, իը (=իզ. իէ). Լմբ. ժառ. 556. Լմբ. յայտ. յիշ. Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 210, 212—3, 215 (չունի Շահն.), 219. Սմբ. պատմ. 98, 105—109, 114—8, 122, 136—7. Սամ. անեց. 133, 136, 138. շար. 141—7, 150, 165. Օրբ. ժմ. 19, 22—3. Պատմ. կիլ. 208—9. Պատմ. ռուբ. 217, 219, 220. Պատմ. լմբ. 230, 231, 237, 239, 241. Առաք. պատմ. 481—2. Հայապ. 346. Ցիշ. (տես Ֆ. Մուրատ, Ցայտ. յոլհ. էջ ճիզ). Դրնղ. 304. Նհպտք. 103. Մին. համդ. 137.—Լեոն՝ Մին. համդ. 41.—սեռ. Լևոնի՝ Վահր. երրդ. 117, 174. Կիր. 59, 69, 70, ա—գ, է, լե, խդ, ծգ. Վրդ. իե, ձբ. Պատմ. յյտ. Ներս. 45. Անանուն ժմ. 19. Միխ. աս. իը (=իէ), յաւել. Պորգ. 695 ? Հեթ. ժմնկ. Օրբ. ժմ. 20. Միխ. աս. յիշ. Սմբ. պատմ. 105--6, 108—110, 112—3, 117—8, 121. Սամ. անեց. շար. 144, 146, 148—9. Պատմ. կիլ. 209, 210. Պատմ. ռուբ. 219, 220. Պատմ. լմբ. 238. Ցհ. իմ. խոստ. յիշ. Լմբ. օր. 5. Նհպտք. 104.—Լեոնի՝ Միբ. համդ. 43.—բցռ. Լևոնէ՝ Լմբ. 93. Վրք. շնորհ. 83. Օրբ. ժմ. 21. Կիր. գ. Վրդ. ձբ. Միխ. աս. յաւել. Սմբ. պատմ. 108. ZAPh 1, 182.—Ջարբ. Թրգմ. 606, 647—8, 688, 730, 754, 763. Հայապ. 436—441. ZAPh 1, 180, 181.—Լևոնի վրա ընդարձակ մենագրություն ունի Ալիշանը՝ Սիսուան 435—529, իր գեղանկար պատկերով, ստորագրության և դրամների ճշգրիտ նմանահանությամբ ևն։—Համառոտ կենսագրությունն ունի Վ. Փափազեան՝ «Լևոն երկրորդ», տպ. Բագու 1910 թ.—Դարգել 13—15։ Հետաքրքիր են՝ Schlumberger՝ Լևոնի կտրած դրամների մասին, REA 1, 5.—Basmadjian, Une nouvelle signature de Léon I (իմա II), REAնո. IV, էջ 24—29.—Լևոն Բ-ի անունով կա մի պարգևագիր՝ տրված Վաղարշապատում 1179 թվին, գրված Ղազարոս ավագ ատենադպրի ձեռքով և հանձնված Միրմանի որդի Կիրակոսին (աղվան ազգից), որին իբր թե կարգում է սպարապետ (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 297).—կեղծիք, որովհետև 1179-ին Լևոն թագավոր չկա և Վաղարշապատում առհասարակ Լևոն անունով թագավոր չկա։ —Լևոն Բ-ի մասին հետևյալ առասպելական տեղեկությունը կա արաբ մատենագրության մեջ. «Եփրատի արևմտյան կողմը Պիրա և Սոմեյսաթ քաղաքների միջև անառիկ մի բերդ է Հռոմկլան, որ հայոց պատրիարքի պաշտոնավայրն է։ Այս պատրիարքը Մեսիայի փոխանորդն է և հայերեն լեզվով կոչվում է կաթողիկոս։ Կաթուղիկոսը հնուց ի վեր ընտրված է Դավիթ մարգարէի սերուն-

գից և այս պաշտոնի համար նշան է նկատված բազուկի երկայնությունը. այնպես որ երբ կաթուղիկոսը ոտքի վրա կանգներ, պետք էր որ ձեռները ծնկներից ցած հասնեին։—Հռոմկլան մինչև այժմ մնում է հայոց ձեռքը՝ հակառակ այն իրողության, որ ամբողջ շրջապատը իսլամներից գրավված է։ Սրա հավանական պատճառը պետք է համարել այն, որ քաղաքը աննշան եկամուտ միայն ունի, և երկրորդ այն՝ որ սովորություն է կրոնապետի պաշտոնավայրը ազատ թողնել, ինչպես որ ազատ են թողնվում իսլամական երկիրներում եղած աղոթատեղիներն ու եկեղեցիները։ —Մոտավորապես հիջրեթի 610 (=Քր. 1213/4) թվին, հայոց Լայոն (Լևոն) Բին Լայոն թագավորը, որ Սիւրիական հողամասերից Միսիսի, Թարսուսի և Ատանայի կողմերն է գտնվում, ատելի մի սովորություն էր որդեգրած։ Երբ մի գյուղ կամ մի քաղաք էր իջնում, մի հայ աղջիկ բերել տալով՝ նրա հետ գիշերում էր և ապա մեկնելու ժամանակ՝ ընտանիքին էր հանձնում։ Այս առթիվ հայերը բողոքեցին կաթուղիկոսին, որ մարդ ուղարկեց Լայոնին և հասկացրեց թե նորա վարմունքը հակառակ է քրիստոնեական օրենքին, թե եթե ինքը քրիստոնյա է, պետք է հրաժարվի այս տգեղ սովորությունից. իսկ եթե քրիստոնյա չէ, ազատ է ուզածն անելու։ Լայոնը պատասխանեց թե ինքը քրիստոնյա է և խոսք տվեց գործադրել կրոնապետի պատվերը։ Բայց քիչ հետո ավելի սաստիկ վերսկսեց իր արարքը։ Նոր բողոքների վրա կաթուղիկոսը ազդարարեց հայազգի թագավորին, թե բանադրանքի պիտի ենթարկի նրան, եթե մի անգամ էլ գործի արգելված արարքը։ Լայոնը կարևորություն չտվեց և երրորդ բողոքի վրա բանադրանքի ենթարկվեց կաթուղիկոսի կողմից։ Լայոնը չենթարկվեց և զղջում չհայտնեց։ Կրոնի պահանջի համաձայն իր զինվորներն ու հպատակները զգուշացան նրան մոտենալուց և սեղանակից լինելուց։ Նույն իսկ իր կինը լքեց նրան։ Նրանք հայտնեցին թագավորին, թե թշնամու հարձակման կամ ձախորդության ժամանակ միայն պատրաստ են նրան պաշտպանելու. իսկ սովորական կյանքում հեռու պիտի մնան նրանից և պիտի զգուշանան իր սեղանից ճաշելուց։ Լայոնը առանձին մնաց։ Հազիվ մի աննշան խմբակ հետևում էր նրան, երբ ձի էր հեծնում։ Զանձրանալով այս կյանքից՝ Լայոնը զղջում հայտնեց և խնդրեց կաթուղիկոսից, որ գա և իր հանդիսավոր զղջումը լսելուց հետո, արձակի բանադրանքից։ Կաթուղիկոսը խաբվեց, եկավ Լայոնի մոտ և հավաքված բազմության առաջ արձակեց նրան բանադրանքից։

Երբ հավաքույթը վերջացավ, Լայոնը բռնեց կաթուղիկոսի ձեռքից և տարավ բերդը գցեց։ Սա նրա վերջին երևալն էր։ Ապա իր ազգականներից մի կրոնավոր բերել տվեց (որ կարծեմ իր մորեղբորորդին էր), և Լևոնի բերդն ուղարկելով՝ կաթուղիկոս դարձրեց։ Մինչև այժմ մնում է նույն տեղում։ Այսպես վերջացավ կաթուղիկոսությունը Դաւիթի գերդաստանից։ Լսել եմ թե այժմ այդ ընտանիքից ոչ ոք չէ մնացած այդ կողմերում, կաթուղիկոսական պաշտոն ստանձնելու համար։ Այդ գերդաստանին պատկանող անհատներ կան միայն Խլաթի կողմերում»։ Այս բոլորը քաղում եմ Իպն-Խալլիքանի «Վէֆայաթ-էլ-Աաեան» (Գահիրէ 1935) գրքի ծանոթության շարքից, էջ 323—4։ Առաջին տողերը Երկաթնաբազուկների հետ շփոթելու արդյունք են, վերջին տողերը ակնարկում են Աղթամարի կաթուղիկոսությունը, մնացյալները հորինված են մի կողմից Լևոնի ամուսնական վեճի, և մյուս կողմից Յովհաննէս Մեծաբարոյ կաթուղիկոսի հետ ունեցած հակառակության առթիվ։

— 13. Լևոն, *պարոն և տեր Հարունոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111։*

— 14. Լևոն, *պարոն և տեր Բերդուսի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111.—սեռ.* Լևոնի՝ *Հեթ. ժմնկ. (հիշված իբր հայր Գրիգորի՝ տեառն Բերդուսի, որ գերի ընկավ Խլիճ-Ասլանի ձեռքը, 1208 թ)։*

— 15. Լևոն *իշխան* de Biulum, *որ Կոստանդին գունդըստապլի, Վահրամ մարաջախտի և ուրիշների հետ ստորագրում է այն պայմանագրին, որով Լևոն Բ. տալիս էր Վաներ բերդը Երուսաղէմի անվանական թագավոր Յովհաննէս Պրիենին՝ իբրև օժիտ իր Ռիթա աղջկան «1215 թ»։—Սիսուան 143 ա։*

— 16. Լևոն *տեր Բերդկանն և Մոխրոտի. սրա քույրը կինն էր Վահրամ մարաջախտի։ Վահրամը արձակեց իր կնոջը և ամուսնանալով Լևոն Բ-ի եղբոր Ռուբէնի դուստր Ալիծի (№ 1) հետ, ուզում էր նրա որդի՝ Անտիոքի բրինձ Ռուբէնին թագավոր դնել Կիլիկիոյ.—Պատմ. կիլ. 210։ Նույն է արդյոք՝*

— 17. Լևոն *տեր Կապանու, մին այն իշխաններից, որոնք Զապելի ժամանակ ապստամբելով՝ ուզում էին Կիլիկիոյ գահը բարձրացնել Անտիոքի Ռուբէն իշխանին «1220 թ».—Միխ. աս. իը(=իէ). Սմբ. պատմ. 117։ Սիսուան 191 բ։*

— 18. Լևոն, *որդի Կոստանդին պայլի և եղբայր Հեթում Ա-ի. նշանակվեց մարաջախտ կամ իշխան թագավորության Կի-*

լիկիոյ (1226 թ)։ Կրում էր Իշխանաց իշխան տիտղոսը։ Գնում էր Կիպրոս պսակվելու, «տարաժամ խամրեալ հիւանդութեամբ» մեռավ «1258 թ»։—Ջեռ. օշ. 98 բ. Միխ. աս. յաւել. և յիշ. Զարբ. Թրգմ. 567. Սիսուան 74, 75, 485։ Ջեռ. Վասպ. 109 հիշվում է դեռ 1286 թ)։

— 19. **Լևոն** Ապլհամանց, ասպասալար կամ մարաջախտ Կիլիկիոյ, 1260 թ. հաջորդեց Լևոնին՝ որ մեռել էր 1258 թ. իրեն էլ հաջորդեց Օշին որդի Կոստանդին Լամբրոնացու 1277—1295 թ.—Սիսուան 485։

— 20. **Լևոն**, քեռորդի Օշին մարաջախտի, մայրն է Շահանդուխտ՝ քույր նույն Օշինի։ հիշված է 1274 թ.—ՀԱ 1898, 246 և 248։

— 21. **Լևոն** Գ. թագավոր Կիլիկիոյ. Հեթում Ա-ի որդին էր. ծնվել է «1236 թ»։ Երբ հայրը վերադարձավ Թաթարաց Մանգոյ խանի մոտից, «ձիաւորեցոյց զանդրանիկ որդին իւր զԼևոն» (1256 թ)։ Ամուսնացավ 1262 թվին՝ Լամբրոնի տեր Հեթում Գ-ի դուստր Կեռանի հետ. և այս խնամութեամբ Լամբրոնը միացավ Հայոց թագավորությանը։ 1262 թվին Լևոնը Ավետիս գրչին գրել տվեց մի Ավետարան, որ ծաղկեց Թորոս Ռոսլինը, և ուր կա Լևոնի նկարը իր նորապսակ կնոջ հետ (Շողակաթ 201), Երբ Եգիպտոսի Ֆնդուխտար սուլթանը արշավեց Ասորիք և Կիլիկիա, Հեթումը իր բանակը հանձնեց Թորոս և Լևոն որդիներին և ինքը գնաց Թաթարներից օգնություն բերելու։ Պատերազմում Թորոսը ընկավ և Լևոնը գերի տարվեց Եգիպտոս («1266 թ»)։ 22 ամիս գերի մնալուց հետո ազատվեց և դարձավ Կիլիկիա «1268 թ»։ Որդու վերադարձը մեծ ուրախություն պատճառեց հորը, որ գահը հանձնեց Լևոնին և ինքը վանք մտավ («1270 թ»)։ Լևոնը այս ժամանակ 35 տարեկան էր։ Գահակալության հանդեսի նկարագրությունը տալիս է ժամանակակից մի հիշատակարան, որ տես Թորոս աղբ. Բ. 383։ Լևոն Գ աթոռը դրավ Տարսոնի։ Եգիպտացիք հարձակվեցին և գրավելով այրեցին Տարսոնը։ Լևոնը փախավ։ Բայց Մամլուքների երկրորդ արշավանքին՝ Լևոնը չարաչար հաղթեց թշնամուն, ուր և սուլթանը նետահար սպանվեց։ Թաթարները ուզեցին Միջագետքը Լևոնին հանձնել, բայց նա մերժեց։ Լևոնը հաղթեց նաև Իկոնիոյ սուլթանին և Թաթարների հետ միասին արշավեց Ասորիք՝ մինչև Համա։ Ստիպվելով ետ նահանջել, քաշվեց Կիլիկիա և կյանքի մնացյալ մասը հանգիստ անցկացրեց, հոգ տանելով գրական, դպրոցական և բա-

բեպաշտական հաստատութեանց։ Ըստ ժամանակակից մի յիշատակարանի, որ հրատարակված է Сборн. Матер. հտ. 29, էջ 11, այցելել է 1285 թվին՝ Թադէոս առաքյալի վանքը, Տիրացու եպիսկոպոսի առաջնորդության ժամանակ։ Կա նաև մի տեղեկություն, թե Ծալվայ անունով մի վարդապետ՝ Արևելքից գնացել է Երուսաղէմ, «արդեամբք և ընչիւք սուրբ թագաւորին Լևոնի և Տ. Յակոբ կաթուղիկոսի» և սալել է Ս. Յակոբեանց վանքի գավիթը և պարսպել Հրեշտակապետը՝ 1286 թ. (տես Սարաճեան, ՀԱ 1898, էջ 57, առնելով Աստուածատուր եպս. Յովհաննիսեանի «Պատմ. Երուսաղէմի» գրքից, էջ 189, բայց արձանագրութիւն է թե յիշատակարան)։ Լևոնը մեռավ «12$^{8}$9 թվ» (գահակալության և մահվան թվականները տալիս է Յիշատ. Karst, Դատաս. էջ Ե. իսկ Ձեռ. օշ. 99 բ և 100 բ գահակալությունը դնում է ՉԺԹ=1270 թվին և մահը ՉԼԵ=1288 թվին։ Զարմանալի է որ թագավոր է հիշված 1236 թվին գրված մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 416), երբ դեռ նոր էր ծնվել և թագավորում էր հայրը՝ Հեթում Ա)։ Լևոն Գ-ին հաջորդեց իր երեց որդին՝ Հեթում Բ։—Օրբ. կգ. Օրբ. ժմ. 26, 27, 30, 31. Կիր. լգ, ծգ. Անանուն ժմ. 24—26. Միխ. աս. յաւել. Հեթ. պատմ. լգ, լդ (լե). Հեթ. ժմնկ. Ձեռ. օշ. 98 բ, 99 աբ. Անսիզք 93. Մաղաք. աբ. 40, 41, 43, 44, 46—48, 51—53. Մխ. այրիվ. 20, 83, 84. Միխ. աս. յիշ. Վահր. ոտ. 186, 219, 223—5, 227, 232, 234, 242. Սմբ. պատմ. 124—5, 136. Սամ. անեց. շար. 151—153, 161—3. Պատմ. կիլ. 211. Պատմ. ռուբ. 220—3. Պատմ. լմբ. 239—241. Առաք. պատմ. 482. Դրնդ. 305. Նհպտք. 105.—Լեոն՝ Մին. համդ. 44, 47.—սեռ. Լեոնի՝ Սմբ. դատ. 13. Օրբ. կդ, կէ, հբ. Օրբ. ժմ. 30. Վրդ. ղթ. Մաղաք. աբ. 39, 41, 42, 44—48, 53. Պատմ. յյտ. ներս. 45. Սամ. անեց. շար. 153, 156. Ձեռ. օշ. 99 աբ. Պատմ. ռուբ. 212, 222—3. Պատմ. լմբ. 243. Յիշատ. (Զարբ. Հին դպր. 785). Վահր. ոտ. 226, 228 (գրված միշտ Լեոնի, բայց միայն հրտր. Շահն.). Նհպտք. 105. Դրնդ. 305. ZAPh 1, 182.—Լեոնի՝ Երզն. պտճռ. 84. Մին. համդ. 45, 47—49.—բց. ի Լեոնէ՝ Օրբ. կե.—գրծ. Լեոնիւ՝ Մաղաք. աբ. 20։—Զարբ. Հին դպր. 93, Թրգմ. 156, 390, 567, 728, 738. Ցուցիկք Ա. 162—182.—Լևոն Գ-ի ծննդյան թվականի մասին տես Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Բ. 20, ուր հաստատվում է 12$^{3}$6 թիվը։ Լևոնի պատանեկության պատկերը (շուրջ 15 տարեկան) գտնվում է 1249 թվին գրված մի Աւետարանի մեջ, որ Կոստանդին Ա. կաթուղիկոսը գրել տալով նվիրել էր նրան։ Այդ նկարը արտանկարեց Նոր-Նախիջևա-

նում՝ նկարիչ Արծաթպանեանը, որից և լուսանկարելով տպագրեց Յովսէփեան՝ Լումայ 1902 թ. (Տես նաև Նրա Մի էջ հայ արուեստի, էջ 24)։ Աւետիք քահանան, 1272 թվին գրել է մի ուրիշ Աւետարան, ուր կան Լևոնի, Կեռան թագուհու և նրանց զավակների նկարները (Տաղակաթ 204)։—Լևոնի գերության վրա կան ժողովրդական սիրուն տաղեր, որոնցից մեկը հրատարակված է Գամառ-Քաթիպա, Ազգ. երգարան, 1856, էջ 35. որի հետ նույն են Ցուցիկք Ա. 177 և Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 53։ Կա նաև «Գովք ի Լևոն արքայ և քաջն Թորոս» (Օրհնեալ յանուն անեղ մեծին)՝ Ջեռ. Վենետ. Բ. 918։ Այստեղ դնում ենք գերության երգը.

Աւա՜ղ զԼէոնն ասեմ,
Որ Տաճկաց ղուռն ընկել գերի.
Իմ լուս, իմ լուս ու սուրբ կոյս,
Սուրբ խաչն օգնական Լէոնիս ու ամէնուս։

Սուլթան ի մայտան ելել,
Իր ոսկի գունտըն կու խաղայ.
Իմ լուս, իմ լուս ու սուրբ կոյս,
Սուրբ խաչն օգնական Լէոնիս ու ամէնուս։

Խաղաց, ի Լէոնն երետ.
«Ա՛ռ խաղմ ու տուր տատայիդ,
Լէո՛ն, դու տաճիկ լինիս,
Ես ու իմ տատաս քե գերի»։

Լէո՜նն ի բերդին նստել,
Դաստըռակն աչիցն ու կուլայ.
«Քերվանք որ ի Սիս կերթաս,
Դո՛ւն խապար տանիս պապայիս»։

Ոնց որ պապն ալ զայն լսեց,
Շատ հեծել հանեց երամով,
Եկաւ ի սուլթանն ելաւ,
Շատ գետեր եհան, արընեց։

Ճառ զիր Լէոն որդին
Ու հասաւ սրտին մուրատին,

*Իմ լուս, իմ լուս ու սուրբ կոյս,*
*Սուրբ խաչն օգնական Լէոնին ու ամէնուս։*

Լևոնի ստորագրության նմանահանությունը կարմիր թանաքով՝ տես Սիսական 368։—Դարդել 16, 18. 19, 21—23. (պատմում է թե ինչպես իր Ալինախ եղբայրը գնաց Թաթարաց Մանգոյ խանի մոտ, ազատեց սուլթանի սիրելի ստրուկ Սունգուր Ասկարին և սրա փոխարեն Սուլթանը գաղտնի ազատեց Լևոնին բանտից՝ պարանով բերդից ցած կախելով և հանձնելով մի արաբ ուղտապանի, որ 8 օրից հասցրեց նրան Կիլիկիա)։

— 22. Լևոն (կամ Լէոն) սիր, որդի Լիկոսի՝ որդւոյ Կոստանդին պայլի, եղբորորդի Հեթում Ա թագավորի։ Յովհաննէս գրչին գրել է տվել մի ժանրատառ Աւետարան, երբ ինքը դեռ պատանի էր (1256 թ).—Ձեռ. Վենետ. Ա. 447, Սիսուան 519—520։

— 23. Լևոն սիր, տեր Մոլևոնի. ապստամբեց Լևոն Գ-ի դեմ՝ Ապլղարիպ իշխանի հետ, բայց բռնվելով՝ մատնվեց Թաթարաց Փէրվանէ զորավարին (1272 թ).—Սիսուան 142, Ձեռ. Օշ. 99 բ։

— 24. Լևոն Գունդստաբլ, որդի Սմբատ Գունդստաբլի. երբ վերջինս վիրավորվելով մեռավ Եգիպտական պատերազմում («1276 թ»), Լևոնը ստացավ սպարապետության պաշտոնը։ Սրա որդին է Սմբատ Բ. Գունդստաբլ և աղջիկն է Մարիան՝ մայր Կոստանդին Դ թագավորի։ Հիշված է նաև անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Հալէպի, Ա. 179 ա), որ գրված է Լևոն Գ († 1289) թագավորի և Յակոբ Ա (1268—86) կաթողիկոսի օրով։ Ուստի Լևոնը սպարապետ էր 1276—1286 թվերին. (իսկ Սիսուան 484 բ Լևոն որդի Սմբատի սպարապետ է դնում 1276 թ. սրանից հետո Օշին եղբայր Լևոնի 1279 թ. ապա Լևոն այլ՝ 1283 թ)։—Սմբ. պատմ. 137, Հայապ. 112, Սիսուան 73, Թորոս աղբ. Բ. 296։

— 25. Լևոն սարկավագ, եղբորորդի Ստեփաննոս քահանայի, որ Սկևռայ վանքում, նրա խնդրանոք գրեց Աւետարանը, 1295 թ.—Թորոս աղբ. Բ. 344։

— 26. Լևոն դպիր, «լաւարհեստ գրիչ», որին Երեմիա քահանան արտագրել տվեց իր ուսուցիչ Գէորգ Սկևռացու կազմած Մեկնութիւն Եսայեայ գործը՝ 1295 թ.—Սիսուան 103, Զարբ. Հին դպր. 721։

— 27. Լևոն վաճառական. իրավունք ստացավ անցնելու Վենետիկ՝ 1302 թ.—Ալիշան, Հայ—Վենետ. 154։

— 28. Լևոն Դ, որդի Թորոս Գ-ի՝ եղբոր Հեթում Բ-ի, ի կնոջէն Մարկրիտ († «1296»), որ էր դուստր Ույկ տը Լըզինեայ (Հիւկոս Լուսինեան) թագավորի Կիպրոսի (Պատմ. կիլ. 212). ծնվել է 1288 թ. (Ձեռ. Օշ. 100 բ)։ Երբ Հեթում Բ հրաժարվեց գահից, իր տեղ թագավոր դրավ Լևոնին, երբ նա դեռ 12 տարեկան մանուկ էր (1301)։ Լևոնը Սիսում եկեղեցական ժողով գումարելով՝ բանի մուծեց կաթոլիկական ծեսեր։ Ժողովուրդը զայրացավ և թաթարաց Բիլարղու զորավարի ձեռքով սպանել տվեց թե Հեթումին և թե Լևոնին «1307 թ»։—Հեթ. ժմնկ. Սմբ. պատմ. 127, 136. Սամ. անեց. շար. 153, 165—6. Մին. համդ. 49. Առաք. պատմ. 483. ZAPh 1, 182. Յիշատ. (տես Karst, Դատաս. էջ Ե).—սեռ. Լևոնի՝ Նհպտք. 106. Մին. համդ. 141 (կարծում է թէ Լևոնը Հեթումի եղբայրն է)։—Ձեռ. Միւնխ. 8 բ այս Լևոնին թագավոր գիտե 1292 թվին։—Դարդել 23—26 (սխալմամբ դնում է Հեթում Ա-ի որդի Թորոսի որդին)։

— 29. Լևոն եպիսկոպոս Ծամնդաւի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի («1307 թ»).—Ազգապ. 1785, Ջամչ. Գ. 309։

— 30. Լևոն, որդի Վահրամ քահանայի և եղբայր Բարսեղ երէցորդու, որ Հալէպում գնեց մի հին Աւետարան, 1323 թ.—Ձեռ. Կես. ածած. 64 բ։

— 31. Լևոն Գորգոնց, դաբաղ (այն է կաշեգործ), տանուտեր. իր ծախսով շինել է տվել մի Աւետարանի առաջին խորանը՝ ոսկով, 1325 թ։—Ձեռ. Վասպ. 173 (Լալայեանը «դապաղ» բառը անուն է կարծել և գլխատառով է գրել։ Այսպես նաև Ձեռ. Վասպ. 415, տող 1՝ «զԴըբաղն, որ զաւետարանի սիկն (իմա սեկն) ետուր» (պետք է հասկանալ «դաբաղը որ կաշին է տվել»)։

— 32. Լևոն Խանականցի, եղբայր Մլեհի, ազգական Ներսէս վրդ. Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. 546։

— 33. Լևոն, մերձավոր Կըակցի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 34. Լևոն Ե. թագավոր Կիլիկիոյ. որդի և հաջորդ Օշինի՝ եղբոր Լևոն Դ-ի. ծնվել է «1310 թ». տասնամյա բարձրացավ գահը «1321 թ», խնամակալությամբ Օշին պայլի։ Այս թվականը հաստատվում է մի Աւետարանի յիշատակարանի վկայությամբ. «Յամին եւթն հարիւրորդի եւթանասներորդի մեծ թուականին մերոյ, ի

հայրապետութեան Տեառն Կոստանդեայ Լամբրոնացւոյ և ի թագաւորութեան գեղաբոյս պատանեկին Լևոնի որդւոյ Աւշնի, գրեցաւ... Աւետարանս... յԵրուսաղէմ» (Թորոս աղբ. Բ. 344)։ 1330 թվին ձեռք է բերել Վահան գրչի գրած Ցայսմաւուրքը և նվիրել Ցորդանանի ձախ ափին գտնված Քարաքոյ (այժմ Քերէք) գեղի եկեղեցուն։ (Այդ ձեռագիրը այժմ գտնվում է Երուսաղէմում, Լևոնի ինքնաձեռագիր հիշատակարանով միասին (Շողակաթ 212)։ Այդ հիշատակարանը հետևյալն է. «Ես Լևոն թագաւորս ամենայն հայոց, ի թվիս ՉՀԹ, շնորհեցի զգիրքս քարաքոյ հայսՏայնուն, որ յամենայն ժամ կարդան յեկեղեցին զմարտիրոսացն զնահատակութիւն և զքնութի հաւատոյն, որ վասն անուանն Քի յանձինս իւրեանց կրեցին. զոր լսեն ծառայքն և քաջալերեալ յորդորին. ի սէրն Քի. և հաստատին ի հաւատս նորին. և համբերութեամբ տանին բաղում վշտաց և նեղութեանց, զոր կրեն վասն անուանն Քի, ակն ունելով վերանական յուսոյն, և հետևողք լինին բազմայչարչար մարտիրոսացն. և յորժամ ընթեռնուն և լսեն զչարչարանս մարտիրոսաց, նա զմեզ յիշեն յաղաւթս իւրեանց։ Ու կու աղչենք զքահանայքդ որ զկարդալն անփոյթ չայնէք վասն սիրոյն Քի. որ աւր"հեալ յաւիտեանս»։ Լևոն Ե. որդի Օշինի հիշված է նաև Ձեռ. Կարին. 14՝ ՉՉ=1311 թ. որ պետք է կարդալ ՉՁ=1331։ Նախ ամուսնացավ Օշին պայլի դուստր Ջապելի հետ, որին հետո սպանեց՝ հորը Օշինի (պայլ) և հորեղբոր Կոստանդին Գունդստապլի հետ և ամուսնացավ Սիկիլիոյ թագավորի աղջկա Էլէոնորայի հետ՝ 1332 թ. (Շողակաթ 212. համմտ. նաև Manus. brit. mus. 22 բ)։—(Այս գեղահնչյուն անունը այժմ գործածական է մեր մեջ գերմ. Eleonora, ռուս. Элеонора (ֆրանս. Eléonore, անգլ. Eleonor, Nelly, Nell) ձևից փոխառությամբ, որի կրճատ գգվական ձևն էլ ունինք՝ Նօրա): Լևոն Ե-ի գործած այս սպանությունը պատմված է նաև մի ուրիշ ձեռագրի մեջ, որի թվականն է 1429։ Այս թվականը համար չէ. ուստի, ինչպես հրատարակիչն էլ նկատում է, մայր բնագրի հիշատակարանից է կրկնված (Ձեռ. Հալէպի, Ա. 214 բ)։ Լևոն Ե-ի ժամանակ տեղի ունեցան եգիպտացոց, թաթարաց և Թուրքմէնների կատաղի արշավանքները, որոնցից ավերակ դարձավ Կիլիկիան։ Լևոնը Հռոմի պապից օգնություն ստանալու հույսով՝ ընդունեց կաթոլիկությունը, բայց միշտ հուսախաբ, հազիվ ազատվեց՝ Կիլիկիան հարկատու թագավորություն դարձնելով Եգիպտացոց։ Մեռավ «1342 թ»։—Սմբ. պատ. 128, 131—2,

137. Սամ. անեց. շար. 157—9, 166—7. Մխ. համդ. 50. Նհպտք. 107—8.—սեռ. Լևոնի՝ Մկ. ժեծոփ. 27. Սմբ. պատմ. 129—131. Սամ. անեց. շար 157, 166. Բրս. մրկ. 460. Նհպտք. 107.—Լևոնի՝ Մխ. համդ. 50, 51 և Ջեռ. Վատպ. 201՝ յիշատ. 1339 թ.—բց- Լևոնէ՝ Սամ. անեց. շար. 157։—Ջարբ. Թրգմ. 308, 553, 728. Աթան. յուշ. ժէ. Ջեռ. Օշ. 92 բ, 101 բ. Ջեռ. Միւնխ. 29 բ։—Իր պատկերը և իր պարգևագիրը՝ տրված Սիկիլիացոց (1330 թ.) տես Հայապ. 536—9 և REA 1, 241—7։ (Իսկական բնագիրը Մեսինայից անցել է Սպանիա և այժմ գտնվում է Մադրիդում, Medinaceli դուքսի արխիվում)։—Դարդել 26—32։

— 35. Լևոն, վանահայր Դերմաղբերի վանուց, անդամ Սսոյ «1343 թ» ժողովի.—Սիսուան 114, Ազգապ. 1870։

— 36. Լևոն, ավագերեց արքունի պալատի, անդամ Սսոյ ժողովի «1343 թ». մեռել է 1349 թ.—Ազգապ. 1870, Հայապ. 543։

— 37. Լևոն, որդի Նղրեանց Կոստանդին Դ թագավորի Կիլիկիոյ († 1363 թ)։ Մեռել է մանկահասակ (ըստ Ալիշան, Հայ—վենետ. 131). նախ թագավորած, ապա շուտով մեռած (ըստ Ցուցիկք, Բ. 500). կենդանի էր դեռ 1345 թվին (ըստ Ցովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի, էջ 18). ըստ Բասմաջեան, «Լևոն Լուս». էջ 27՝ գահակալել է 1363—65 թվ. բայց տեսնելով հակառակորդների դավաճանական արարքները, հրաժարվեց, աթոռը թողնելով Կոստանդին Ե-ին։ Ըստ Սիսուան 560 «ըստ ոմանց՝ Լևոն ոճի բռնաբարէ զթագն և մերժի» 1363 թ։ Այս բոլորի վրա մի նոր լույս է սփռում Ջեռ. Դաղեան Բ. 55 բ, ուր հիշատակված է Լևոն թագավոր հայոց Ռուբինեանց, 1350 թ։

— 38. Լևոն Բազունենց, պարոն, որի որդին՝ պարոն Բազու Բազունենց, էր գունդստապլ հայոց, 1368 թ.—Սիսուան 532 ա։

— 39. Լևոն Համուսցի, պարոն. երկու Սսեցի տանուտերների հետ միասին պատգամավոր գնաց Կիպրոս՝ հրավիրելու համար Ջեհանի որդի Լևոնին (=Լևոն Զ), իբրև թագավոր հայոց «1373 թ».—Բակուրան, Կիպրոս կզ. 118, Ազգապ. 1934, Դարդել 69։

— 40. Լևոն Զ. Լուսինեան, վերջին թագավոր Հայոց Կիլիկիոյ «1374—1375 թ». Ցովհաննէս (Ջիւան)—Կոստանդին Գ Լուսինեան թագավորի որդին է, մայրն է վրացուհի Սուլթան. ծնվել է «1342 թ». կոչվում էր նաև Գուիտոն. զորավարն էր Կիպրոսի Պետրոս Բ թագավորի. Կիպրոսից անցավ հայոց գահը։ Ջամչեանի պատմությամբ Լևոն Զ իմաստուն, բարեպաշտ և քա-

ջարի մի թագավոր է, որ նստել է 1365—75 թվերին և այն դառն ժամանակ քաջությամբ պաշտպանել է երկիրը Եգիպտական արշավանքների դեմ, որոնց վերջապես չդիմանալով ընկճվել է։ Իսկ ըստ նոր քննության պատկերը բոլորովին փոխվում է։ Լևոն Զ ոչ միայն լատինամոլ և հայատյաց, այլ և զինվորական տեսակետով թուլամորթ մի անձ էր։ Իր այս վատ հատկությունները ցույց տվեց հենց իր թագադրության օրից։ Ուստի հայերը դիմեցին Աշոտ Նղրցի (№ 67) հավատափոխ հայ իշխանին Եգիպտոսում և նրա միջոցով Եգիպտոսի սուլթանին, որպեսզի գա և տիրի Կիլիկիային։ Սուլթանը (Մելիք-էլ-Աշրաֆ-Զէյն-էդ-դին-Աբուլ-Մէալի-Շաբան-Իբն-Հուսէյն՝ 1363—77) ուղարկեց Աբուբեքրին 15,000 զորքով Սսի վրա։ Հայերը գրեցին նաև Հալէպի կուսակալ Մերդինցի Սէյֆ-էդդին-Ըշըկթիմուր-էն-Նասրի ամիրային, որ նույնպես 15,000 զորքով եկավ միացավ Աբուբեքրին։ Լևոնի համար անհնարին էր դիմադրել. վիրավորվեց և անձնատուր եղավ «1375 թ. ապրիլ 16»-ին, գահակալելով միայն 7 ամիս։ Լևոնին տարին Եգիպտոս ու բանտարկեցին։ Կաստիլիայի Յովհաննէս Ա թագավորի միջնորդությամբ ազատվեց բանտից «1382 թ». և մեկնեց դեպի Եվրոպա։ Եգիպտոսից անցավ Հռոդոս, Վենետիկ, ապա Ավինիոն, իր հարգանքը մատուցանելու համար պապին։ Այստեղից անցավ Սպանիա, ուր թագավորը շնորհեց նրան Մադրիդ, Վիլլարէալ և Անդուխար քաղաքները։ Ամեն տեղ պատվով ու սիրով ընդունում էին նրան, իբրև քրիստոնեության համար նահատակված թագավորի։ Բայց նա չկարողացավ հաշտ ապրել իր ստացած քաղաքների ժողովուրդի հետ։ Սպանիայից անցավ Ֆրանսիա, ուր Շարլ Զ թագավորը մեծ ընդունելություն ցույց տվեց։ Լևոնը հույս ուներ ֆրանսիացոց օգնությամբ ձեռք բերել իր երկիրը, բայց Անգլիոյ հետ պատերազմը խանգարում էր։ Լևոնը անցավ Անգլիա, իբրև միջնորդ հաշտության։ Բայց անհնարին եղավ հաշտեցնել երկու կողմերը։ Դադարած կռիվը նորից սկսվեց։ Լևոնը ապրեց Պարիզում, անձնատուր լինելով իր անձնական հաճույքներին։ Մեռավ «1393 թ. նոյ. 29 շբ.» և թաղվեց Սէն-Դընի քաղաքի Սելեստիննեանց վանքում։ Մնում է մինչև այժմ իր տապանաքարը, բայց շիրիմը դատարկ է, որովհետև ֆրանսիական հեղափոխության ժամանակ, ուրիշ թագավորների և իշխանների շիրիմների նման քանդվելով, ոսկորները ցրված են։—Մին. համ. 51 (գրված Լևոն). Նհպտք. 109. Ցիշատ. 1388 թվից! (Զարբ. Թրգմ. 267). Չամչ. Գ. 354—364.

Աղգապ. 1905, 1936. Ցուշիկք Բ. 495—531. Schlumberger REA 1, 7 (Լևոնի կտրած դրամների մասին). Լևոնին նվիրված «Վարդ ուսկեղէն» պատվանշանի մասին տես Բանասէր 1899, էջ 131—140։ Լևոն Զ-ի մասին ընդարձակ մենագրություն ունի Բասմաջեան, «Լևոն Ե Լուսինեան», Պարիս 1908։ Այս գրքի հիմնական աղբյուրն է Յովհաննէս Դարդելի Ժամանակագրությունը։ Դարդելը մի ֆրանսիացի քահանա էր, որ ուխտի էր գնում Երուսաղէմ։ 1377 թվին հանդիպում նա այցելեց Լևոնին և նրա թախանձանքով նրա խոստովանահայրը դարձավ։ Դիմեց եվրոպացի թագավորներին և վերջապես հաջողեցրեց նրա ազատությունը։ Գրեց նաև նրա կենսագրությունը հին ֆրանսերեն լեզվով։ Կարապետ Եզեանցի նախաձեռնությամբ և առաջարկությամբ Խորէն Նարպէյը և Նորայր Բիւզանդացին թարգմանեցին այդ գիրքը գրաբարի, որ և տպվեց Ս. Պետերբուրգ, 1891 թ.՝ Եզեանցի ընդարձակ ներածականով։ Այս գրքում Լևոն Զ հիշված է էջ 27, 32, 50—197։

— 41. Լևոն, չորս որդիներից մեկն է Աստուածատուրի, որ շինեց Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետաց եկեղեցին, 1408 թ.— Кучук-Иоаннесов, Стар. арм. над. էջ 37։

— 42. Լևոն, դեռաբույս որդի Կոստանդին քահանայի, որ Սիսում, Ստեփանոս Աւագերիցանց գրչին գրել տվեց մի Մանրուսմունք, 1412 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 153 բ։

— 43. Լևոն եպիսկոպոս, առաջնորդ Հայոց Կիպրոսի, հիշված է 1421—25 թվերին.—Բակուրան, Կիպրոս կղ. 118, Հայապ. էջ 559։

*ԼԵՅԼԻ, իգ. < արաբ. ليلى Leylī կամ Leyla անունից, որ նշանակում է «գիշերային. 2. սև գույնով մի տեսակ գինի 3. այդ գինու տված հաճելի թմրությունը» (Կամուս, Գ 345)։ Այս անունով հայտնի են Մուհամմէդի դուստրը (Լէյլա բինթ Ռասուլ) և պարսկական նշանավոր Լէյլա-Մէջնուն պոեմայի հերոսուհին։ Գործածված է մեր մեջ ԺԷ դարում. այսպես Լեյլի 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734), Լեիլի 1667 թ. (Ձեռ. Վաստ. 930), 1676 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 4 բ), Լեյլի 1698 թ. (Ձեռ. Վասպ. 986), Լեիլի 1710 թ. (Շահազիզ, Հին Երևանը 205)։ Տես և Լեյլիխան և Լեյլիջան։

*ԼԵՅԼԻԽԱՆ, իգ. < նախորդ Լեյլի անունից + xān. գործածված է ԺԷ դարում. այսպես Լեյլիխան 1634 թ. (Տաշեան, Ցուց. 858), Լեյլիխան ԺԷ դար (Ձեռ. Էջմ. № 613 Գև.)։

*ԼԷՅԼԻՋԱՆ, իգ. < նույն Լեյլի անունից+պրս. ǰān. մի անգամ գտնում եմ հիշատակված 1654 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 725)։

*ԼԻԱ, իգ. < եբր. לאה Leā անունից, որ բուն նշանակում է «հոգնած, վաստակեալ». (սրա համար էլ Առաք. 591 ը գրում է «Լիա թարգմանի աշխատաւոր»)։ Սակայն այժմ համարում են «մի տեսակ քարայծ. bouquetin». հմմտ. արաբ. لاى leay, ասուր. littu և եգիպտ. n'ə հոմանիշները (Gesenius 374 ը)։ Մեր բառը առաջանում է հուն. Λεία ձևից։ Այս անունով հայտնի է Ս. Գրքից՝ Լաբանի մեծ աղջիկը և քույր Ռաքելի, երկուսն էլ կին Յակոբ նահապետի (Ծն. ԻԹ. 16—35 և Լ. 1—21)։ Հին հայոց մեջ գործածված չէ. հազիվ գտնում ենք մի անգամ անթվական մի հիշատակարանում՝ սեռ. Լիոյին (ոչ Լիային) ձևով (Թորոս աղբ. Բ. 427)։ Այժմ արևմտահայ բողոքական հայոց մեջ երբեմն երևում է։

ԼԻԱՆՈՍ, ար. ծագումն ինձ անհայտ (որովհետև չեմ կարծում, որ անիծեալն Յուլիանոսի անունից լինի)։ Գործածվել է մեր մեջ ԺԳ—ԺԵ դարերում. և այժմ էլ կա Կովկասում, ռուսացած ձևով Լիանոզով ազգանունը, որ է Լիանոսեան։

— 1. Լիանոս, մեծաւոր Երզնկայի Ս. Գրիգոր վանքի, 1224 թ.—Տաթև 1927, 184։

— 2. Լիանոս իշխան, շինել է Նախիջևանի Նորս գյուղում մի վանք (Ս. Աբրահամ կամ Գիւտ խաչի անունով), որ և կալվածներով ապահովել է՝ 1251 թ։ Նորոգել է Գեամրիս գյուղի (Երևան) եկեղեցին՝ ինքը իր հորեղբայր Մէխիթ և Յուսէփ, Յովհաննէս և Խաչատուր անուն անձերի հետ (1258 թ)։ Ղարաղալա գյուղումն էլ կանգնեցրել է մի խաչքար՝ 1280 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 485, Դեղարքունիք 262 (Թերի Արձ.), 612, Սիսական 485, Յովսէփեան՝ Խաղբակեանք Ա. 58։

— 3. Լիանոս, հայր Կիրակոս կրոնավորի, որ Գրիգոր Տաթևացու մերձավորներից է. հիշված է 1419 թ. որդին էլ կոչվում է Կիրակոս Լիանոսենց.—Տաշեան, Ցուց. 978։

— 4. Լէանոս, որդի Ստեփանոսի և եղբայր Յովանէս աբեղայի, որ Մոկաց Սուրբկանց գյուղում գնեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 204։

— 5. Լիանոս ոմն, ստացող Աւետարանի, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

*ԼԻԲԵՐԻՈՍ, ար. < լտ. Liberius անունից, որ ծագում է

liber «ազատ» բառից. հայտնի է օրինակ՝ Liberius (ֆրանս. Libère) պապ Հռոմի 352—366 թ.

— Լիբերիոս, հայ, լատին եկեղեցու սրբերից մեկն է. թագավորի որդի է եղել. ծնվել է Դուին քաղաքում կամ թե Սիս մայրաքաղաքում. հայրն է Հեթում արքա և կամ մի ուրիշ ավելի հին թագավոր. ծնունդը դնում են Ե դարի սկիզբը։ Ուխտի է եկել Իտալիայի Անկոնա (Ancona) քաղաքը և իբրև պանդուխտ ապրել է Խաչակիրների մենաստանում. ապա Ս. Սեղբեստրոս եկեղեցու մոտի անապատն է առանձնացել, ճգնել ու մեռել (510 թ)։ Հայոց թագավորը լսելով նրա մահը, դեսպաններ է ուղարկել և մարմինը պահանջել՝ արքայավայել հանդեսով փոխադրելու համար Հայաստան։ Բայց իտալացի ժողովուրդը հակառակել է դեսպաններին և մարմինը չի հանձնել։ Քաղաքի Տրասոս եպիսկոպոսը՝ Հռոմի պապի վճռով թաղել է նրան մեծ պատվով։ Անկոնա քաղաքի երկրորդ պաշտպան սուրբն է, որի վրա եկեղեցի է կառուցվել ԺԱ դարում և ամեն տարի կատարվում է նրա մեծահանդես տոնը՝ մայիսի 27-ին (առասպել)։—Սիսական 452 բ, Հայապ. 130, Ուղուրլեան՝ Պատմ. գաղթ. Լիվոռնէջ 218։

*ԼԻԼԻՓԱՐ, իգ. < պրս. نیلوفر nīlūfar «նունուֆար» ծաղկի անունից. տես և Նունուֆար։ Այս Լիլիփար ձևով գտնում եմ գործածված 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), ինչպես և Լիլիֆար ձևով՝ 1603 թ. (Սմբատեանց, Երնջակ 214)։

*ԼԻԽԱԹՈՒՆ, իգ. < եբր. Լիա անունից+խաթուն (որովհետև չեմ կարծում, որ հյ. լի «լիքը, գեր» բառից առաջացած լինի)։ Տես և Լիա։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Լիխաթուն, կին Ցոլոզանանի՝ եղբոր Ներսէս քահանայի, որ մի Աւետարան գրել տվեց Թումայ կրոնավորին, Ուռանց գյուղում, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 365, 366։

*ԼԻԿ, ար. կրճատված է Լիկոս անունից, որ տես. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Լիկ (սեռ. Լիկին ձևով), որդի Մուրատի և եղբայր Վըրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 31 ա։

*ԼԻԿՈՍ, ար. < հուն. Λύκος անունից, որ բուն նշանակում է «գայլ». համմտ. Գուրգէն։ Ավելի սովորական է հույնաց մեջ Լիկուրգոս < Λυκοῦργος անունը, որ բուն նշանակում է «գայ-

լապանծ։ Նույն անունից են տառադարձված լտ. Lycus կամ Lycos և Lycurgus.

— 1. Լիկոս, եղբայր Վասակի, Վահրամի, Ապիրատի և Գրիգոր Ա արքեպիսկոպոսի Եգիպտահայոց, հորեղբայր Ներսէս Շնորհալու († 1173 թ).—սեռ. Լիկոսի՝ Վրդ. կէ։

— 2. Լիկոս, որդի Վասակի, եղբայր Ապլղարիպ իշխանի Պիրի (ԺԲ դար).—սեռ. Լիկոսի՝ Ուռհ. 337։

— 3. Լիկոս սիր, որդի Կոստանդին պայլի և ոչ-համամայր եղբայր Հեթում Ա թագավորի, կինն է Ականց (№ 1). որդին է սիր Լևոն. մեռավ Եգիպտացոց դեմ պատերազմում, Հեթում Ա-ի որդի Թորոսի հետ, 1266 թ.—Սիսուան 76, 371 ա, 485 ա, Հայապ. 543, Ձեռ. Վենետ. Ա. 447։

— 4. Լիկոս, սիր, բերդապահ Այասի ցամաքային բերդի, մինչ ծովային բերդի պահապանը կամ մինապանն էր Կալոժան, 1304 թ.—Սիսուան 367 ա, 486 բ ծան։

— 5. Լիկոս իշխան, բերդակալ Կերաշնեցի բերդի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ազգապ. 1787։ Նույնը Սիսուան 169 բ համարում է իշխան Կիզխստռա բերդի։

— 6. Լիկոս իշխան, բերդակալ Կիստռամի (որ և Խնձորովիտ), անդամ Սսոյ «1307 թ» և Ատանայի «1317 թ» եկեղեցական ժողովների.—Ազգապ. 1787, 1819, Սիսուան 123 ա, 258 բ։

ԼԻՄԱՍ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Լիմաս, կաթոլիկ աբեղայ ոմն, գրիչ. հիշված է 1617 թ. (տես Բանասէր 1899, էջ 257). թարգմանել է «ի ֆրանկ վարդապետաց» Գիրք խոստովանութեան՝ 1619 թ. (անդ, էջ 258)։

ԼԻՊԱՐԻՏ, ար. ծագումն ինձ անհայտ. բայց վրացական անուն է։ Սակայն ոչ վրացերենով կարելի է լինում մեկնել նրա ծագումը և ոչ էլ վրացիք այժմ գործածում են։ Մեր մեջ գործածվել սկսեց ԺԳ դարում և այժմ էլ կենդանի է։

— 1. Լիպարիտ, որդի Ելիկումի. Վրաց Օրբելեանց ցեղից. մոր կողմից հայ. որովհետև հայրը՝ Ելիկում, ամուսնացել էր Աբաս Ճահկեցու դստեր Խաթունի հետ։ Մի փոքր ժամանակ ընդունել էր Պարսից կրոնը. ապա դարձավ լուսավորչական և եկավ Իւանէ աթաբէկի մոտ։ Ստացավ բազմաթիվ գյուղեր Վայոց ձորում, Գեղարքունիքում, Կոտայքում ևն։ Եղավ կողմնակալ Սիւնեաց և իշխանաց իշխան. ինքն է շինել Նորավանքը՝ 1223 թ. կինն է Ասփա։ Տարսայիճ իշխանի հայրն է և Ստեփաննոս պատմիչ Օրբելեանի պապը։ — Օրբ. կգ—կե.—սեռ. Լիպարտի՝

Օրբ. կբ—կե.—Լիպարիտի՝ Օրբ. ժմ. 31.—բց. ի Լիպարտե՝ Օրբ. կգ, կդ։—Միսական 93։

— 2. Լիպարիտ Բ. որդի Իւանէի († 1260), որդւոյ Լիպարիտի (№1) Օրբելեանց. նախորդի թոռն է, Տարսայիճ իշխանի եղբորորդին և Ստեփաննոս եպս. Օրբելեանի հօրեղբորորդին։ Երբ Տարսայիճ իշխանը մեռավ (1290 թ) և նրա որդիների միջև գահակալական վեճ ծագեց, Արղուն խանը իշխան նշանակեց Տարսայիճի անդրանիկ որդի Ելիկումին։ Սակայն Ելիկումը չուզեց զրկել մյուսներին, ուստի բաժին հանեց նաև իր անհամաձայն եղբոր՝ Ջալալին և իր հօրեղբորորդի սույն Լիպարիտին։ Երեքը խաղաղությամբ կառավարում էին Սյունեաց երկիրը։ Լիպարիտը ունեցավ չորս որդի, որոնք են Ելիկում, Պածած, Սմբատ, Տէր Յովհան և մի աղջիկ, որի անունը անհայտ է։—Օրբ. կե, կը—հ. սեռ. Լիպարտի՝ Օրբ. կե։—Միսական 94 բ։

— 3. Լիզարիտ, եղբայր Մինայ խաթունի, որ էր կին Տարսայիճ († 1290) իշխանի Օրբելեանի։—Արձ. Միսական 203։

— 4. Լիպարիտ, հայր Սմբատի և պապ Բենայի, որ Փանձաթաղի տերն էր և նվերներ արավ Թանատի վանքին, 1348 թ.—Արձ. Միսական 122։

— 5. Լիպարիտ զորավար, որդի ավագ մարաջախտ Թորոսի և եղբայր Վասիլի. կինն է Մանանայ, որդին է Յովհաննէս։ Իբրև զորավար ծառայեց Կոստանդին Դ-ի և Կոստանդին Ե-ի ժամանակ։ Հաղթեց Տարսոնի Մանչակ թուրք ամիրային, որի սիրելի որդուն էլ սպանեց և ազատեց Սիսը (1368 թ)։ Երկու տարի հետո, ամիրան 60,000 զորք հավաքեց և նորից արշավեց Սսի վրա։ Այս երկրորդ արշավանքին՝ Սսի կամուրջի վրա Լիպարիտը սպանվեց (1370 թ)։ Նրա մարմինը տարին թաղեցին Սսի պարսպի ներսը, եկեղեցու մոտ։ Նրա գերեզմանը թուրքերը կոչում էին Աղճա-պապա (Սիսուան 538 բ)։ Լիպարիտի մահը նյութ է դարձել սրտառուչ երգերի, որոնցից մեկը Սարգիս անուն անծանոթ երգչին է պատկանում, մյուսը Յովհաննէս Թլկուրանցուն։

Անձամբդ քաջ Սամփսոն էիր,
Յորժամ ճօշանըդ[1]) հագնէիր,
Ուրթքն[2]) ի յահէգ դառնար մոխիր.
Ո՜վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Զանձըդ տուիր վասն օրինաց,
Մէն կանգնելով հաղրի դիմաց,
Քո սուրըդ շատ սրտեր երաց,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Սըսայ երկրիս աստղ լուսատու,
Կանգնող էիր յամեն ժամու,
Ուրթքն[2]) ի յահէդ սարսէր մահու,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Այն չար պահիկն որ քեզ հասաւ,
Քեզի օգնող չկայր ընաւ.
Անձնդ կարմիր գոյն ներկեցաւ,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Զայն չարաչար մահն որ տեսար,
Կսկիծ է մօրն որ դուն ծնար.
Աւմղ դքեզ բերան հաղար,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Սըսայ երկրին պաղչայ ու ծառ,
Գոյնք ի գունաց ծաղիկ որ կայր,
Հառաչանօք առին զիրար,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Կաթողիկոսք և վարդապետ,
Սուրբ քահանայք ամեն ի հետ,
Շատ արտասուօք սրտերն երետ,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Հիւսիսային հողմըն հիմիկ,
Սարգիս յիշող եղաւ քեզիկ,
Դուն սիւն էիր Հայոց մեղիկ,
Ո՛վ մեծ հզօր քաջ Լիպարիտ։

—

Զերթ քացխով տիկ չարեօք լցան,
Ժողովք առին ու ի Սիս եկան,
Մանչակ անուն չարեաց մառան,
Մօտ ի քաղաքն եկան հասան։

Վաթսուն հազար մարդ միաբան,
Զրեհն հագան ու ի ձին հեծան,
Զեռուին առին զլոռում ճօճան,
Թուր և ասպար ու կանգնեցան։

Յայնժամ ասէ սուրբ Թագաւորն.
«Քաջ Լիպարիտ, մեծ զօրական,
Հեծելըս քեզ համար եկան,
Մինչ յայս տեղիս ուր կանգնեցան»։

Էջ և Թամրեաց զիւր ձին վազան,
Հագաւ զրեհ 'ւ ի վերայ ճօշան[1]),
Ի գլուխն եդիր յաղթող վահան,
Ի ձեռն էառ զլոռում ճօճան։

Հառչեաց, զորդեակն համբուրեաց,
Հանց որ զհեծեյն ի յաց եհան.
Ասաց. Որդեակ իմ, Յովհաննէս,
Վասիլ, եղբայր իմ սիրական։

Փառօք տիկին դու Մանանայ,
Իշխանուհի արժանաւան,
Հայեաց պատկերս ի մանկութեան,
Որ տի մտնում ի հող տապան։

Քաջ Լիպարիտ ասաց ցարքայն.
«Հայոց Թագւոր ազնուական,
Հաստատ ու ամուր պահէ զկարմունճն,
Որ ես մտնում ի մէջն ու գամ»։

Յիշեաց զՔրիստոս անեղաձայն,
Կորեց 'ւ անցաւ առիւծնման,
Զհեծելն արար փախստական,
'Ի ի հետն երթայր ընծանման։

Լաշկար արաւ դիզան դիզան,
Հանց որ արիւն գետեր ելան,
Նա Թագաւորըն չարացաւ,
Զհեծելն առին ու ի յետ դարձան։

Օտրանց[3]) հեծելն յառաջ եկին,
Զկարմունճն առին ու կանգնեցան.
Երբ Լիպարիտն ի յետ դարձաւ,
Նա չար հեծելն ի դէմ ելան։

Ըռումբ դըլին ամէն դիհաց,
Շատ խոցեցին զյաղթող վկայն,
Հայեր ողորմ յաջ և ի ձախ,
Զոչ ոք գտաւ իւր օգնական։

Գաղտնադէմ անօրինին[4])
Սրբոյն արեան ծարաւէին.
Զիւր սուրբ մարմինն ի հոն թողին,
Զգլուխն առին ի հետ տարին։

Թէ Յովհաննէս Թլկուրանցին
Կարճ և ողորմ ասաց զայս բան,
Դուք յիշեցէք զինքն հանապազ,
Ցառակ ասէք ի մի բերան։

Թլկր. 54—58.—տես. Լիպարտի՝ Թլկր. 52, 53։—Միսուան 227 և 542, Յուշիկք, Ա. 265, Բ. 509—512 (որ Լիպարիտին համարում է զորավար Լևոն Զ-ի և սպանված է դնում Եգիպտացոց դեմ պատերազմում, 1369 Թ)։

— 6. Լիպարիտ ոմն իշխան, հայր Պանաճի, որի տապանաքարը գտնվում է Հաղբատում.—Տաշեան, Ցուց. 984 բ և Կռունկ 1862, ապր. 305—316։

— 7. Լիպարիտ Կոնիռապատցի, նվիրատու Ավետարանի, 1435 Թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

— 8. Լիպարիտ, հայր Յովհաննէս եպիսկոպոսի, որ Խարբերդում գրել տվեց մի Ճաշու գիրք, 1466 Թ.—Թորոս աղբ. Բ. էջ 479։

— 9. Լիպարիտ, մի խաչքար է կանգնեցրել Տիրատուրի հոգու փրկության համար՝ Նոր-Բայազիտի Զոլախաչ գյուղում, 1468 Թ.—Սմբատեանց, Գեղարքունի 546։

— 10. Լիպարիտ անունը հիշված է նաև 1604 Թ? պապ և Թոռ միասին.—Ձեռ. Հալէպի, Ա. 48։

---

1) զրահ. 2) յուռութքն. 3) օտարաց, օտարների. 4) իմա անօրէններին, անօրէնները.

*ԼԻՍՄԱՔՈՍ, ար. < հուն. Δυσίμαχος անունից, որ բուն նշանակում է «նա որ կռիվը դադարեցնում է» (կազմված λύω «լուծել» և μάχη «կռիվ» բառերից)։ Այս անունով հայտնի են Արիստիդէսի հայրը և Ալեքսանդր Մեծի զորավարը, որ ապա Թրակիայի թագավոր եղավ։ Մեր մեջ անսովոր է. մի անգամ գտնում եմ գործածված 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա, Լիսմաքոս ձևով)։ Նույն անունը Սմբատեանց՝ Գեղարքունի 492 ունի Լուսմաքոս ձևով՝ 1544 թ։

*ԼԻՒՍԻ կամ ԼԻՒՍԻԱ, իգ. < ֆրանս. Lucie անունից։ Հնապես տառադարձված է Լուկիա և այս անունով կա մի նահատակուհի († 304 թ.), որ շատ հարգված է լատին եկեղեցու մեջ, որից և հայ կաթոլիկները՝ Լիւսի, Լուցիա ձևերով։ Կովկասում գործածվում է Լիւսիա ձևով և շփոթվում է հյ. Լուսիկ անվան հետ, որ ոչ մի կապ չունի նախորդի հետ։ Լուկիա ձևն էլ գործածված է մեր մեջ մի անգամ ԺԶ դարում (Զքր. սարկ. Ա. 55) և մի անգամ էլ ավելի ուշ՝ 1796 թ. (Էֆիմ. 448)։

†ԼՈՅՍ, ար. < հյ. լոյս բառից. այս անունն էր տալիս Շնորհալին, որևէ մեկի հետ խոսելիս. «Ոչ ումեք ի մանկանց զանկատար ձայնեաց զանուն, զոր ամենայն ազգք մարդկան սովորաբար ունին, և ոչ ումեք մականուն ասաց. այլ... Լոյս վերաձայնէր ամենեցուն անուն մեծի և փոքու... Նա և ոչ սըրտնէր կամ ցուցանէր բարկութիւն ինչ. այլ հեզ և քաղցրագոյն բանիւ ասէր. Լոյս, եթէ ոչ յիս խնայէի, բարկանայի քեզ» (Վրք. շնորհ. 43—44)։

— 1. Լոյս, իր կնոջ Շաքար խաթունի հետ միասին մի խաչքար են կանգնեցրել Աւանում, 1297 թ. իսկ 1313 թվին էլ նվերներ են արել Աւանի Ս. Յովհաննէս եկեղեցուն՝ Լոյսի հայր Շնահվորի, մայր Աղուտի և մերձաւորներ՝ Ասատի և Պարոնշահի հիշատակին։—Սմբատեանց, Գեղարքունի 255։

— 2. Լոյս, որդի պարոն Ասլանի, ինքն էլ պարոն, Սեբաստացի (1350 թ).—Տաշեան, Ցուց. 107։ (Ցանկում դրված է Լուսին. բայց սխալ է, որովհետև բնագրում բոլոր անունները սեռական են։ Բնագրում հիշված է պարոն Լուսին. բայց սրանով պետք չէ հասկանալ Պարոնլոյս=Լոյսպարոն, որովհետև նույն անձի հայրն էլ է կոչվում Ասլան կամ պարոն Ասլան, պապը՝ պարոն Տեր. Լոյսը լինելով անդրանիկը, ժառանգաբար ստացել է պարոն տիտղոսը. իսկ մյուս եղբայրները՝ Տեր և Ասարբէկ՝ չունին այդ տիտղոսը)։

— 3. Լոյս (*սեռ. Լուսին*), *հիշված է 1419 թվի մի արձանագրության մեջ, որ այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքում։—Շահազիզ, Ազգագր. հանդ. Ե, էջ 72 և Ն. Նխջ. Ս. Խաչ վանքը, էջ 12։*

†**ԼՈՅՍԽԱԹՈՒՆ**, *իգ. < հյ.* Լոյս+խաթուն *բառերից։ Ավանդված է ԺԶ—ԺԸ. դարերից։ Գրվում է* Լոյսխաթուն, *բայց մանավանդ* Լուսխաթուն։ *Հնագույն հիշատակությունն է 1511 թ. (Ձեռ. Վասպ. 645), ապա գալիս են 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646), 1629 թ. (Կամենից 182, ՀԱ 1890, 20 ա), 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 13), 1673 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 345), 1677 թ. (Թորոս աղբ. Բ. 454), 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 48, Ձեռ. Հալէպի, Ա. 329 բ), 1748 թ. (Ձեռ. Սեբ=ՀԱ 1927, 316). անթվական են Տաշեան, Ցուց. 489 (երկու տարբեր անձինք)։*

†**ԼՈՅՍՊԱՐՈՆ**, *ար. < հյ.* լոյս+պարոն *բառերից. սովորական է այժմ Խրիմում և Նոր-Նախիջևանում։ Սրանից է* Լուսպարոնեան *ազգանունը (Կարին)։ Կա նաև հակադիր շարքով* Պարոնլոյս, *ինչպես և կես արաբական ձևով* Ամիր-Լոյս, *որոնք տես առանձին։*

— 1. Լոյսպարոն *կամ* Պարոնլոյս, *Կաֆացի (Թէոդոսիա), որդի Աստուածատուրի. 18 ամյա գեղեցիկ երիտասարդ էր. Թաթարները ուզեցին մահմեդական դարձնել նրան, ուստի երկու սուտ վկա բերին, թե «Դու Կեզլեվէ քաղաքում տաճկացել ես, այժմ Կաֆա ես եկել, նորից քրիստոնյա ես դարձել»։ Տարին դատավորին, իսկ նա հասկանալով, որ վկաները սուտ են խոսում, ուզեց արձակել։ Քրիստոնյաները երաշխավոր եղան և խեղճ պատանուն ազատելով՝ ծնողներին հանձնեցին։ Միջամտեց մուֆթին և պահանջեց դատավորից դարձնել կամ գլխատել։ Երբ ամբոխը շրջապատեց Լոյսպարոնի տունը, ծնողները ուզում էին թաքցնել, իսկ նա համարձակ հանձնվեց ամբոխին։ Մուֆթին խոստացավ որդեգրել նրան և մեծամեծ բարիքներ անել, բայց Լոյսպարոնը բոլորի առաջ էլ մի պատասխան միայն ուներ. «Ես քրիստոնեայ եմ և քրիստոնեայ ծնողաց զաւակ. զձեր օրէնքըն չուզեմ»։ Բանտ ու չարչարանք ոչ մի օգուտ չտվեց։ Հունվար ամսի հնգից մինչև մայիսի 15 նստեց բանտը. աչքին տեսիլքներ երևեցան, իբր թե Լուսավորիչը, հրեշտակներ, նույն իսկ Քրիստոս ներկայացան իրեն և քաջալերեցին նրան։ Ծնողները աղաչանքով ու կաշառքով ուզեցին ազատել նրան. նույն իսկ Պոլիս գնացին և թագավորից հրամանագիր բերին։ Բայց ի զուր.*

Գլխատեցին նրան։ Հայերը վերցրին մարմինը և թաղեցին Ցովակիմ-Աննայի վանքում, 1567 թ։ Վրթանէս վարդապետը գրեց նրա նահատակության պատմությունը, որի վերջին տողերը այսպես են. «Եւ ես անպիտան Վրթանէս՝ տրուպս ի վարդապետաց և յետինս ի քարոզողաց, ականատես եղէ այսու ամենայնի և անմաքուր բազկաւ խմով գրկեցի և եդի ի տապանի. և ըստ կարի աղկացեալ մտաց իմոց գրեցի զպատմութիւնս զայս»։ Նույն Վրթանէսը գրել է նաև երկու տաղ և մի տաղ էլ գրել է ավելի եր աշակերտ Թումայըն (№ 219)։ Այս երեքը հրատարակված է Նոր վկ. 386—412։ Նորագույն մի տաղ էլ (Խորէն արքեպս. Նարպէյից) տես անդ՝ 729—734.—Սամ. անեց. շար. 175. Առաք. պատմ. 486. Ձեռ. Վենետ. Բ. 977։

— Լոյապարոն անունը հիշված է նաև 1623 թ. (Ձեռ. Սեբ.= ՀԱ 1926, 46) և մի անթվական հիշատակության մեջ (անդ ՀԱ 1925, 133)։

ԼՈՌԻՍ, ար. < հյ. Լոռի գավառի վրաց. սեռ. Լոռիս ձևից. հռչակավոր զորավար Լոռիս-Մելիքովի անունից, որ և «Լոռու Մելիքեան». Նորահնար անուն. լսել եմ Երևանում։

*ԼՈՐԵՏԱ, իգ. < ֆրանս. lorette «նուրբ երիտասարդ կին» բառից, որ ծագում է Պարիզի Notre-Dame de Lorette թաղի անունից. իսկ սա էլ Իտալիոյ Loretta քաղաքի անունից, ուր կա նշանավոր մի եկեղեցի, որ ուխտավայր է։ Անսովոր նորակերտ անուն։ Լսած եմ Թաւրիզում։

† ԼՈՐԻԿ, իգ. < հյ. լոր թռչունի անունից, ինչպես ունինք Աղաւնի, Արծուիկ, Սիրամարգ։ Գործածված է ԺԳ դարում։ Կենդանի է նաև այժմ։

— 1. Լօրիկ, կին Գրիգորի. երկուսով մի խաչքար են կանգնեցրել Լոր գյուղում, 1271 թ.—Ազգագր. հանդ. Գ. էջ 162։

— 2. Լաւրիկ, անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1343 թվից ուշ.—Տաշեան, Ցուց. 489 բ։

*ԼՈՒԴՈՎԻԿՈՍ կամ ԼՈՒԴՎԻԿ, ար. < հֆրանս. Hlotavigus անունից, որ նշանակում է «նշանավոր մարտիկ». սրանից են առաջանում ռուս. Лудовик կամ Людовик, գերմ. Ludwig, ֆրանս. Louis, անգլ. Lewis. մեր մեջ գործածված չէ. ԺԷ դարից կա այս անունով կաթոլիկ մի հայ (տես տակը), իսկ վերջերս տեղ տեղ լսվում էր Լուդվիկ անունը։

— Լուդովիկոս Ալեքսիանոս, եպիսկոպոս Բաբելոնի. գրել է Ժամանակագրութիւն (ընդհանուր), 28 էջ, սկսելով Փոքր Թէո-

գոսից, և հասնելով մինչև 1712 թ. երբ շարադրել է ինքը Համադանում։ Հեղինակը կաթոլիկ հայ է (Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 219)։

*ԼՈՒԹԵՐ, ար. < գերմ. Luther անունից, որ կրում էր բողոքականության հիմնադիր Մարտին Լութեր († 1546 թ)։ Այժմ գործածական է բողոքական հայոց մեջ, բայց զարմանալի է որ հիշատակված է նաև 1621 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1866)։

*ԼՈՒԹՖԻ, ար. < արաբ. لطفی Lutfī անունից, որ բուն նշանակում է «բարություն, քաղցրություն, շնորհ»։ Հիշված է մի անգամ 1517 թ.՝ Ձեռ. Վեննետ. Բ. 482 (Լուքվի ձևով) և մի անգամ էլ 1600 թ.՝ Հայ-Վեննետ. 357 (Լուքֆի ձևով)։

Լուլափար տես Նունուֆար։

*ԼՈՒԼՈՒ, իգ? < արաբ. لولو lūlū «մարգարիտ» բառից. մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1311 թվից հետո (Ձեռ. Թավր. 72 բ)։

*ԼՈՒԿԻԱ տես Լիւսի։

† ԼՈՒՍԱԲԵՐ, ար. < հյ. լուսաբեր «լույս բերող» բառից, ակնարկությամբ Արուսեակի։ Այժմ իգական անուն է։

— 1. Լուսաբեր քահանա, հոգևոր հայր Բարսեղ դպրի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1336 թ.— Ձեռ. Վասպ. 191։

— 2. Լուսաբեր երեց, հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1275 թվից հետո.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 77, 78։

† ԼՈՒՍԱՆՈՅՇ, իգ. < հյ. լոյս+անոյշ բառերից. Նորակերտ անուն, որ ԺԹ դարի վերջերից գոյություն ունի Կեսարիայում։

† ԼՈՒՍԲԻՔԱ, իգ. < հյ. լոյս+թթր. بکه bika «տիկին» բառերից, իբրև համապատասխան զուտ թթր. Նիւրպիքէ անվան, որ կազմված է արաբ. نور nūr «լույս»+թթր. bika բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1695 թ. (Ձեռ. Վասպ. 982՝ Լուսպիքէ ձևով)։ Կենդանի է դեռ Նոր-Նախիջևանում, բայց քիչ գործածական։

† ԼՈՒՍԴԻՀԻ, ար. < հյ. լոյս բառից+? գործածված է Հունգարահայոց մեջ՝ ԺԸ դարում (Գովրիկեան, Հայք յՈւղխար. էջ 403—4)։

† ԼՈՒՍԵՂԷՆ, ար. < հյ. լուսեղէն «լույսից շինված» բառից. համապատասխանում է հուն. Φωτεινα անվան, որ նշանակում է

«լուսաւոր». հմմտ. «Վկայաբանութիւն սրբուհւոյն Փոտինայ, որ թարգմանի Լուսեղէն». Ցայսմ. ըստ Ձեռ. Հալէպի, Ա. 295 բ։ Լուսեղէն անունը հիշատակված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 435) և մի ուրիշ անթվական հիշատակարանում, որ գտնվում է 1311 թ. գրված մի Ավետարանում (Ձեռ. Թաւր. 72 բ)։ Հաճախ գործածական է այժմ էլ Խրիմում և Նոր-Նախիջևանում։

†ԼՈՒՍԵՐ, ար. < հյ. լոյս բառի յգ. լուսեր ձևից թե Լուսերես ձևից կրճատված. հմմտ. Վարդեր և Վարդերես, Խաչեր և Խաչերես։

— 1. Լուսեր, գրիչ. օրինակել է Եզնիկը՝ Ներսէս վարդապետի և նրա աշակերտ Եսայիի համար, 1280 թ.—տես իմ Գնն. և հմմտ. Եզնկայ, էջ 4, 7։—Երախտավոր անձ, որին շնորհապարտ ենք այս գործի համար, որովհետև ուրիշ ոչ մի գրիչ չի ավանդել մեզ Եզնիկի սքանչելի գործը։

— 2. Լուսեր Խանակահցի, ներկարար. ազգական Ներսէս վրդ. Սասնեցու, նվիրատու ձեռագրի, 1332 թ.—Հայապ. 546։

— 3. Լուսեր, մերձավոր Յակոբ վարդապետի, որ Աստուածատուր գրչին գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 4. Լուսեր, որդի Յուսիկի և եղբայր Յակոբ աբեղայի, որ Բերկրիի Եղավանք ուխտում օրինակեց Ավետարանը՝ Յոհաննէս կրոնավորի համար, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349։

†ԼՈՒՍԵՐԷՑ, ար. < հյ. լոյս+երէց բառերից։ Հիշատակված է մի անգամ ԺԴ դարում։

— Լուսերէց, հայր թե այլ ազգական Վարդան քահանայի, որ Երզնկայում գնեց մի հին Ավետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.= ՀԱ 1926, 46։

†ԼՈՒՍԻԿ, ար. և իգ. < հյ. լոյս բառի գգվական լուսիկ ձևից։ Հնապես արական էր, ինչպես է և Պարոնլոյս կամ Լոյսպարոն։ Ավելի ուշ դարձավ իգական, ինչպես է այժմ։

— 1. Լուսիկ, աշակերտ Բարթուղիմէոս առաքյալի. վախճանվեց Վանանդ գյուղում, ուր և թաղվեց. Նրա վրա կառուցվեց Լուսկայ վանքի մատուռը (Ա դար).—Օրբ. Ե. Սիսական 299 ա, 300 ա, 312 ա։

— 2. Լուսիկ վարդապետ, աղանդավոր. ուսուցիչ Սմբատ Թոնդրակեցու.—Հայապ. 551։

— 3. Լուսիկ, դուստր Յովհաննէս քահանայի և քույր Յով-

հաննէս քահանայի, որ Սուլմարի քաղաքում Ծերուն գրչին գրել տվեց մի Ավետարան, 1296 թ.—Ձեռ. Վասպ. 121—2։

— 4. Լուսիկ, հորաքեռորդի Մխիթար գրչի, 1314 թ.—Հացունի, Դաստիար. 44։

— 5. Լուսիկ, որդի տանուտեր Կիւրեղի, որ Ախքիրմանում, Նիկողայոս եպիսկոպոսին օրինակել տվեց Ճաշոցը՝ 1460 թ.— REA 10, 64։

— 6. Լուսիկ, զավակ Խուդադարի, որ Որձոկ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1497 թ.—Տաշեան, Ցուց. 285։

— 7. Լուսիկ սարկավագ, օրինակել է Սաղմոսը՝ հայերեն և թաթարերեն, 1580 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 362, Ձեռ. Վիեն. 21 ա։

— Լուսիկ անունը հիշատակված է նաև 1581 թ. (Թորոս աղբ. Բ. 430), 1627 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 544), 1631 թ. (մղցի, այն է մղդսի Լուսիկ՝ Ձեռ. Հալէպի, Ա. 74), 1635 թ. (Դրնդ. 528)։ Այս բոլորը արական են։

† ԼՈՒՍԻՆ, իգ. < հյ. լուսին բառից. հնագույն հիշատակությունը ԺԵ դարից է (տես տակը). ավելի շատ հիշված կա ԺԷ դարից. այսպես 1606 թ. (Սիւրմէեան, La Vie et la cult. էջ 31 և Ձեռ. Հալէպի, Բ. 7, 58), 1619 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 122 բ), 1622 թ. (անդ 292 ա), 1629 թ. (անդ 110 բ), 1636 թ. (անդ 238 ա), աղավաղ գրչությամբ՝ զԼուսին 1691 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 64 ա) և վերջին անգամ 1742 թ. (Ձեռ. Ճալէպի, Բ. 42 բ)։ Այժմ էլ գործածական է Հալէպում (տես Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 52 ա)։

— Լուսին, կին Ստեփանոսի և մայր Աւագ քահանայի, որ Վրթանէս կրոնավորին օրինակել տվեց մի Գանձարան, Երուսաղէմ 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

† ԼՈՒՍԻՆԱՅ, իգ. < հյ. լուսին բառի սեռականից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԴ դարում։

— Լուսնայ, կին Յակոբի՝ հօրեղբօրորդւոյ Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում ստացավ մի Ավետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

† ԼՈՒՍԻՆԹԱԳ, իգ. < հյ. լուսնթագ մոլորակի անունից, ինչպես ունինք նաև Արուսեակ, Զոհրայ։ Նորակերտ անուն։ Փաղաքշական ձևն է Լուսօ:

† ԼՈՒՍՈՅՏ, ար. < հյ. լոյս բառից-ոտ մասնիկով, իբր լուսոտ «լուսավոր»։ Գործածված է երկուսանթվական, բայց հին արձանագրությանց մեջ խանգարված գրչությամբ։ Այսպես 1) Անիի

մի արձանագրության մեջ Լուսորա կամ Լուսոտ ձևով (Սարգիսեան, Տեղագր. 112, Շիրակ 43)։ 2) Արջոյառիճի մի արձանագրության մեջ՝ Լոյսոտ և Լիսոտ ձևերով (Սարգիսեան, Տեղագր. 191 և Շիրակ 123)։

*ԼՈՒՑԻՔԱ տես Լիւսի:

†ԼՍՈՒՏԱՐ, ար. անշուշտ հյ. լոյս բառից. բերև «լուս (լուսոյ) տէր»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647)։

ԼՔՆԱՏ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ դարը (Ձեռ. Սանաս. 7 բ)։

ԼՕԼՕ, ար. փաղաքշական անուն. բայց որ անվան կրճատումն է. գտնում եմ մի անգամ հիշատակված 1756 թ. (Ձեռ. Վասպ. 313)։

*ԼՕՐԷՆ, ար. < ֆրանս. Laurent անունից, որ ծագում է լտ. Laurentius անունից. այս էլ առաջանում է Laurentum քաղաքի անունից. ասվում է նաև Laurens և լայնաբար նշանակում է «հռովմայեցի»։ Հնից հայտնի է այս անունով մի նահատակ, որին խարույկի վրա այրելով նահատակել են 258 թ։ Մեր մեջ ավանդված չէ. գործածում են այժմ կաթոլիկ հայերը. հիշված է 1780 թ. (Պէրպ. էջ 2)։

# Խ

*ԽԱԲԱՐ, ար. < արաբ. خبر xabar «լուր» բառից. և որովհետև դժվար է ընդունել այսպիսի ցամաք իմաստով մի բառ՝ իբրև անուն, ուստի ենթադրում եմ որ կրճատված է Խօշխաբար «բարի լուր» անունից, ինչ որ Աւետիք անվան համազորն է։ Գործածված է ԺԶ դարում։ Այսպես ունինք Խաբար ոմն 1579 թ. (Ձեռ. Վասպ. 690) և այլ ոմն, 1601 թ. (անդ 795)։ Սրա փաղաքշականն է՝

*ԽԱԲԱՐԻԿ, ար. < նախորդ Խաբար անունից՝ իկ մասնիկով։ Գործածված է Վասպուրականի շրջանում, անթվական մի հիշատակարանի մեջ, որ սակայն գրված է 1507 թվից ուշ։ Այս Խաբարիկ անուն անձը ունեցել է մի թոռ ևս, որ իր անունով կոչվել է նույնպես Խաբարիկ (Ձեռ. Վասպ. 628—9, ուր թէ պապը և թէ թոռը մերթ գրված է Խաբարիկ, մերթ էլ Հաբարիկ կամ Հաբար)։

*ԽԱԲԻԲ, *ար.* < *ասոր.* حبيبا ḥabībā *«սիրելի, սիրեցեալ» բառից* (Brockelmann *101 ա)։ Անսովոր անուն. ունինք միայն՝*

— 1. Խաբիբ *եպիսկոպոս Արծրունեաց, ժամանակակից Բաբկէն կաթուղիկոսի («490—516 թ»)։ Ստորագրում է այն թղթին, որ Բաբկէն կաթուղիկոսը գրեց Պարսկաստանի ուղղափառ քրիստոնյաներին։—Ուղղական ձևը ավանդված չէ, այլ կա միայն բցռ.* ի Խաբբայ՝ *Գիրք թղ. ը։*

— 2. *Այս անունը կրում է նաև ըստ արաբ. Ագաթանգեղոսի (էջ 72) Սպերի եպիսկոպոսը, որ քրմի որդի էր և Լուսավորիչը նրան ձեռնադրեց։ Հայերենում նա կոչվում է* Ագապէս *(տես այս անունը, որ նշանակում է հուն. «սէր». արաբերեն էլ* حب ḥubb *նշանակում է «սէր», որից* حبيب ḥabīb *«սիրելի, բարեկամ»)։*

† ԽԱԴ, *ար.* < *հյ.* խադ *«թուր, սուր» բառից, ինչպես որ ունինք նաև* Սուր *անձնանունը։* (Justi *169 բ կցում է լազական* Χάδος *անվան, բայց որևէ ստուգաբանություն չի տալիս)։*

— 1. Խադ, *առաջնորդ Սիւնեաց, Քրիստոնեության առաջին դարերում.—Ազգապ. 42, ըստ Շահխաթ. Ստորագր. Ա. 163։ Սրա անունով է կոչվել* Խադբայ *վանքը։ Երուսաղէմում էլ եղել է «Խադայ երանելւոյ վանքը», ըստ Անաստասի (Հայապ. 227), որ կարող է լինել վերի անունից, բայց ըստ իս ավելի հավանական է դնել հաջորդից։*

— 2. Խադ *Կարնեցի, Մարգ կամ Մարագ գյուղից. սարկավագն էր Մեծն Ներսէսի («353—373 թ»), որ նշանակեց նրան բարեգործական հաստատությանց ընդհանուր վարիչ։ Երբ Ներսէսը Հունաստան գնաց, ձեռնադրեց նրան Բագրևանդայ և Արշարունեաց եպիսկոպոս և իրեն փոխարեն տեղակալ նշանակեց։—Բուզ. Դ. ժբ, ժգ, ժե. Ե. իբ. Խոր. Գ. լա, լբ. Ասող. Բ. ա. Վրդ. իգ. Յայսմ. նոյ. 19.—սեռ.* Խադայ՝ *Բուզ. Դ. ժբ, ժգ. Ագաթ. 398. Ժմ. 946. Ճշ. 505. Յայսմ. նոյ. 19. Ցկ. կր. 10 (ասում է թե Խադի գերեզմանը գտնվում է Քղիում և այժմ կոչվում է Հանգստուն).* — Խադդայ՝ *Խոր. Գ. ի, լա (ցանկում Խադայ), լբ.*—Խաբայ՝ *Պտրգ. 690 (այլ ձձ. Խադայ)։—Ալիշեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 375—411։*

— 3. Խադ, *գրիչ. օրինակել է Մաշտոց ձեռնադրութեան 1560 թ.—«յերկրին Արարատեան, ի ձորն Քեղոյ, ի վանքն Վանստան».—Ջեռ. Կարին. 142, Ցովսէփեան՝ Խաղբակեանք Ա. 249։*

*ԽԱԴԱՄ, *ար.* < *արաբ.* قدم qadam *«ոտք», թրք. դարձել է* qadem *«բարի հաջողություն բերող ոտք». օր.* խատէմլի *«բարե-*

հաջող», խատէմոիզ «անբարեհաջող»։ Թվի թե իբրև անձնանուն գործածվել է մեր մեջ, որից խատամեան ազգանունը։

ԽԱԴԷ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594)։

ԽԱԶԱԼ, ար. ծագումն անստույգ. մի անգամ հիշատակված է 1661 թ. (Թորգոմեան, Սամսոնյան պատմ. էջ 159)։

[ԽԱԶԻՐ, ար. անստույգ անուն. մի անգամ հիշատակված է 1665 թ. (Ձեռ. Վասպ. 48). ըստ իս սխալ ընթերցման արդյունք է և պետք է կարդալ Խաչեր։]

*ԽԱԶՆԱԴԱՐ, ար. < պրս. خزینه‌دار xazīnadār (ժղվ. xaznadar) «գանձապահ կամ գանձերի տեր»։ Գործածված եմ գտնում 1552 թ. (Ձեռ. Վասպ. 653—5՝ երեք անգամ) և 1579 թ. (անդ՝ 689—690՝ նույնպես երեք անգամ)։

*ԽԱԹԱՅԻ, իգ. < պրս. ختائی xaṭāyī «չինացի, Չինաստանցի» բառից. քանիցս անգամ գործածված է ԺԷ դարում. այսպես՝ 1621 թ. (Manus. brit. mus. 23 ա), 1652 թ? (Ձեռ. Վենետ. Ա. 762՝ Խաթէի ձևով), 1658 թ. (Բարխուտ. Արցախ 74՝ Խաթայի ձևով), անհայտ թվականով՝ Bodleian 147 (Խաթայ ձևով)։ Այժմ էլ գործածական է Ղարաբաղում։ Այս անունով հայտնի է՝

— Խաթայի, հերոսուհի Շուշեցի. «Երբ Աղասի-Միրզայի զորքերը պաշարում են Շուշի բերդը (1826 թ), մի աղքատ կին իր ամուսնի հետ տարել էին մի պարկ ցորեան ջրաղացը աղալու համար։ Շուշի բերդի ջրաղացները գտնվում են Գարգար գետի ձորի մեջ, Ցիւնոտ անունով գիւղի մօտ։ Ով որ տեսել է այդ անդնդախոր ձորը, ով որ տեսել է այն նեղ ճանապարհը, որ քարափների կուրծքի վրայով, սարսափելի գահավէժներից բարձրանում է դէպի բերդը, կարող է երևակայել, թէ որքան քաջութիւն, որքան սրտի ամրութիւն պէտք էր մի կնոջ, որ նա կարողացաւ այդ ճանապարհով գնալու ժամանակ՝ ոչ միայն իր անձը ազատել պարսիկ սարվազների ձեռքից, այլ կոտորեց նրանցից շատերին։ Աղքատ կնոջ ամուսինը ալիւրի պարկը շալակած, երկուսը միասին բարձրանում էին քարափներից, յանկարծ վրա են հասնում մի խումբ սարվազներ։ Ամուսին այրը պարկը ցած է գցում և սկսում է փախչել։ Իսկ կինը մնում է, սկսում է քարերով կռվել սարվազների հետ։ Նրան յաջողվում է մէկին ցած գլորել և խլել նրանից հրացանը ու սուրը։ Այնուհետև, մի կողմից պատերազմելով սարվազների հետ, միւս կողմից ալիւրի պարկը իր ետևից քարշ տալով, նա բարձրանում

է դէպի բերդը։ Բերդի միջից հեռուից տեսնում են նրա կռիւը և աղաղակներով քաջալերում են։ Նա ազատում է իր զաւակների ապրուստի պաշարը և մինչև բերդը մտնելը սպանում է մի քանի սարվազներ։ Մինչև այսօր ամեն մի շուշեցի չէ մոռացել այդ կնոջ անունը. նրան կոչում էին Խաթայի։ Պոլկովնիկ Ռէուտի առաջարկութեամբ Ռուսաց կառավարութիւնը նշանակեց այդ կնոջ համար ցմահ պենսիա»։—Րաֆֆի, Խամսայի Մելիքութ. Թիֆլիս 1882, էջ 333—4։

Խաթմելէք տես Խաթունմելէք։

***ԽԱԹՈՒՆ**, ար. < Թրք. Թթր. خاتون xatun «ազնվական տիկին» բառից. իբրև անձնանուն գործածված է մեր մեջ սկսած ԺԲ դարից և այժմ էլ դեռ գործածական է։ Գրված կա նաև Հաթուն, ինչպես Ձեռ. Վասպ. 757 (1599 թ.)։

— 1. Խաթուն, դուստր Աբաս Զահկեցու և քրոջ աղջիկ Ստեփանոս Գ եպիսկոպոսի Սիւնեաց։ Ամուսնացավ Օրբելեանց Ելիկում իշխանի հետ, որից ունեցավ մի որդի Լիպարիտ անունով (տես Ելիկում № 1, ուր Ջենա և Իւանէ սխալմամբ դրված են իբր որդիք Ելիկումի, փոխանակ ասելու եղբայր)։ Ելիկումը երեց որդին էր Լիպարիտի, որ Վրաստանից փախավ Պարսկաստան, ուր և մեռավ (1178 թվից հետո)։ Լիպարիտի մահից հետո, նրա երկու որդիքը՝ Ելիկում և Իւանէ ետ դարձան։ Ելիկումի և Խաթունի որդի Լիպարիտից (№ 1) սկսվում է հայ Օրբելեանց տոհմը (Սիսական 93)։ Ելիկումը Ջահուկում, թուլության մի րոպեում, զիջելով Աթաբէկի աղաչանքին, ընդունել էր մահմեդական կրոնը. բայց ապա զղջալով քրիստոնյա դարձել և Աթաբէկի որդու հետ պատերազմի գնալով Գանձակ, մեռել էր։ Թուրքերը նրա կնոջ՝ Խաթունին, իր որդի մանուկ Լիպարիտի հետ փախցրին Նախիջևան և պատանդ էին պահում։ «Եւ տաճիկ մի բռնաբարեալ զԽաթունն՝ ածէ ի տուն իւր և առնու զնա կին»։ Տասը տարի հետո, Զաքարէ և Իւանէ եղբայրները հետամուտ լինելով Օրբելեան տոհմին, դիմում են Սիւնեաց Ստեփանոս եպիսկոպոսին և խնդրում են փախցնել Խաթունին և Լիպարիտին։ Ստեփաննոսը Թուրք բարեկամների միջոցով «բազում հնարիւք եւ գողանալ զմանուկն Լիպարիտ և զմայրն իւր, զորս ի գիշերի կախաղանօք իջուցին ընդ պարիսպն և առեալ տարաւ ի Վայոց ձոր»։ Այնուհետև Իւանէն պատվում է Լիպարիտին և նշանակում է նրան իշխան Սիւնեաց։—Օրբ. կե. Սիսական 93 ա. Զամչ. Գ. 148։

— 2. Խաթուն, *կին՝ Հասանի որդի Գրիգորի (№ 224), որ իր գանձագին Երգս գյուղը նրա հիշատակի համար նվիրեց Հոռոմոսի վանքին, 1201 թ.—Արձ. Սարգիսեան, Տեղագր. 151, Շիրակ 23, Արար. 1870, էջ 298։*

— 3. Խաթուն, *կին իշխանաց իշխան Խաւռասի (որ տես վարը), 1212—1223 թ. (Շողակաթ 199)։ Նույն է նաև Խաթուն կին Խաւառժ կամ Խաւռաս իշխանի, որ իր վաղամեռիկ որդի Սահնայի համար մի գյուղ նվիրեց Բագնայրին՝ 1229 թ.—Սարգիսեան, Տեղագր. 179, Շիրակ 116։*

— 4. Խաթուն *Անեցի, դուստր Անեցի մեծ հեջուբ Վահրամի, կին Վասակի՝ իշխանի Նոր-Բերդի. զավակ չունենալով՝ իբր հիշատակ նորոգեց իր ծախսով Հոռոմոսի եկեղեցին։ Արձանագրության մեջ հիշված է 1231—35 թվերին.—Շահխաթ. Բ. 269, Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 172, Շիրակ 22, 162, Սարգիսեան, Տեղագր. 160։*

— 5. Խաթուն, *կին Հայրումի. սրանց որդիքը մի խաչքար են կանգնեցրել Նոր-Բայազետի Գեօլ գյուղում, 1284 թ.—Շահխաթ. Բ. 248, Սիսական 54, Սմբատեանց՝ Գեղարքունի 518։*

— 6. Խաթուն, *կին Տիրատուրի. այս երկուսի անունով մի խաչքար կա կանգնեցրած Նորավանքում, 1291 թ.—Սիսական, էջ 199։*

— 7. Խաթուն, *կին Բերդակի. իրենց ունեցվածքը ամբողջովին նվիրել են Հերհերի եկեղեցուն, 1321 թ.—Արձ. Սիսական, էջ 113։*

— 8. Խաթուն, *կին Խութլուբէկի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 463)։*

— 9. Խաթուն, *դուստր պարոն Զաքարայի. նրա անունով մի խաչ է կանգնեցրած Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքում, 1329 թ.—Շահազիզ, Ն. Նախ. Ս. Խաչ վանքը, էջ 7։*

— 10. Խաթուն *«պառաւիկ», Թերևս և մայր, որ շատ է աշխատել և սնուցել Յովանէս գրչին, որ Մարկոս հայրապետի համար մի Աւետարան է գրել Խիզանում, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 194։*

— 11. Խաթուն, *կին Կարապետի և մայր Թաւաքալ Հալէպցու (որ տես № 3), 1400 թ։*

— 12. Խաթուն, *կին Սատաթի և մայր Աստուածատուրի, որ*

*իր ծախսով շինեց Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետ եկեղեցին, 1408 թ.*—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. *էջ 37։*

— 13. **Խաթուն**, *դուստր Յակոբի. գրել տվեց մի Աւետարան՝ Թումայ գրչին, Աղթամար 1425 թ.—Ձեռ. Վասպ. 351—2։*

— 14. **Խաթուն**, *քույր Տալիթայի և մորաքույր Վարդան գրակալի, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան՝ 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։*

— 15. **Խաթուն**, *կին Յետկար աղայի, որ Վայոց ձորի Հերմոնի վանքում, Եսայի գրչին գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Արցախ 139։*

— 16. **Խաթուն**, *կին տանուտեր Սահակի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 469—470։*

— 17. **Խաթուն**, *դուստր Ատոմի, եղբոր նույն՝ տանուտեր Սահակի, որ տես նախորդ № 16.*

— 18. **Խաթուն**, *դուստր Եղիազարի և քույր Գրիգոր կրոնավորի, որ Արծկէում, Ղազար քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1475 թ. երբ Խաթունը արդէն մեռած էր.—Ձեռ. Մաղն. էջ 36։*

— 19. **Խաթուն**, *հիշված է մի խաչքարի արձանագրության մեջ, Ծղնա 1477.—Ազգագր. հանդ. ԺԱ. 321—2։*

— 20. **Խաղուն**, *դուստր մղդեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։*

— 21. **Խաթուն**, *դուստր Մեհրանի, հիշված 1492 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։*

— 22. **Խաթուն**, *կին Յարապի, որ Երուսաղէմում գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Խանձառ գյուղին, 1499 թ.—Ձեռ. Կես. ածած. 48 ա։*

— 23. **Խաթուն**, *դուստր Խաչատուր քահանա գրչի (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 18։*

— 24. **Խաթուն**, *կին Յակոբի և մայր պարոն Բաղդասարի (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 724։*

— 25. **Խաթուն**, *դուստր պարոն Յովհաննէսի, եղբոր ստացող պարոն Բաղդասարի (ԺԵ դար).—Տաշեան Ցուց. 724։*

— **Խաթուն** *անունը շարունակվում է հաջորդ դարերում էլ. վերջին հիշատակությունն է 1694 թ (Ձեռ. Վասպ. 997). բայց մինչև այժմ էլ գործածական է։*

*ԽԱԹՈՒՆԱՂԱ, իգ. < Թրք. xatun+aġa բառերից, իբր թե «աղա խաթուն, այսինքն ազնվական տիկին»։ Գործածված է հաճախ ԺԶ, ԺԷ և ԺԸ դարերում. ամենահին հիշատակությունն է 1549 թ. (Ձեռ. Վաստ. 652). չեմ հիշում սրան հաջորդող հիշատակությունները մի առ մի. ամենավերջին հիշատակություններն են՝ 1712 թ. (Ձեռ. Վաստ. 1036), 1808 թ. (անդ 360), 1810 թ. (անդ 310)։ Գրված է նաև Հաթունաղա:

*ԽԱԹՈՒՆԱՆԱՍԻ, իգ. ինձ թվում է թե պետք է հասկանալ խաթունանասի < Թրք. خاتون آناسی xatun-anasi «մայրը խաթուն կամ խաթունների մայրը»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԷ դարում։

— խաթունասի, մայր Ներսէս Սեբաստացի կաթողիկոսի Սսոյ. հիշված է 1636 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1922, 468)։

— Բայց կա նաև խաթունանաս, որ հիշված է 1696 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 544)։

*ԽԱԹՈՒՆԲԵԿԻ, իգ. < Թրք. خاتون بکی xatun-begi «խաթունների բեկը, տիկինների իշխանուհին»։ Գործածված է ԺԶ—ԺԷ դարերում. ամենահին հիշատակությունն է 1511 թ. (Ձեռ. Վաստ. 646), ամենավերջինը՝ 1690 թ. (անդ 976)։

*ԽԱԹՈՒՆԲՈՒԼԱ, իգ. < Թրք. خاتون xatun «տիկին»+بولا bula «քեռակին» (Будагов 1, 288 ա)։ Հիշատակված է մի անգամ 1665 թ. (Տաշեան, Ցուց. 634. գրված է խաթունպուլա՝ կին Պաղտասարի)։

*ԽԱԹՈՒՆԶԱԴԷ, իգ. < Թրք. خاتون xatun «ազնվական տիկին»+պրս. زاده zāde «ծնեալ» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշված 1560 թ. (Տաշեան, Ցուց. 453 սեռ. խաթունզադին ձևով)։

† ԽԱԹՈՒՆԻԿ, իգ. < խաթուն բառից հայաձև գգվականն է. մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վաստ. 352։

† ԽԱԹՈՒՆՄԱՄ, իգ. հայաձև բարդություն, որ կազմված է խաթուն և մամ «տատ, մեծ մայր, հանիկ» բառերից։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարից։

— խաթունմամ, դուստր խոջա Ղուրաթի, որ Արաշ գեղաքաղաքում գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Սմբատեանց, Երնջակ 257։

*ԽԱԹՈՒՆՄԵԼԷՔ, իգ. }
*ԽԱԹՈՒՆՄԵԼԻՔ, իգ. } այս անուններից առաջինը ծագում է

Թրք. خاتون xatun «ազնվական տիկին»+արաբ. ملك melek

«հրեշտակ» բառից, երկրորդը՝ արաբ. ملك melik «թագավոր» բառից: Բայց երկուսը շարունակ շփոթվում են իրար հետ: Դնում ենք բոլոր հիշատակությունները՝ հնագույնից սկսած մինչև ԺԸ դարի վերջը: Գրված է նաև Հաթունմէլիք:

— 1. Խաթունմելիք, կին Խունդմելիքի, որդու Արղուլմսեհի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 461):

— 2. Խաթուն մելիք, դուստր Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277:

— 3. Խաթունմէլիք, կին Գրիգոր քահանայի և մայր Ստեփաննոս գրչի, որ Տշող գյուղում օրինակեց մի Տոնական և ապա մի Ճառընտիր՝ 1404 թ.—Նոտարք 22:

— 4. Խաթունմելիք, դուստր Սարգսի և քույր Կիրակոս քահանայի, որ Ոստանում, Թումա քահանային գրել տվեց մի Ավետարան, 1414 թ.—Ձեռ. Վասպ. 299:

— 5. Խաթունմելիք, կին Անդրէասի և մայր խոջա Ատոմի, որ միջնորդ եղավ մի Ավետարանի գրչության, 1418 թ. (տես Ատոմ № 34, 35):—Ձեռ. Վասպ. 312:

— 6. Խաթունմէլիք, մերձավոր Ստեփաննոս կրոնավորի, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Ավետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 341:

— 7. Խաթունմելիք, կին խոջա Աստվածատուրի, որ ազատեց Նարեկը թուրքմանի գերությունից և նվիրեց Վարագա վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաղեան Ա. 55 ա:

— 8. Խաթունմելիք, մայր Հալվախաթունի, որ իր ամուսին տանուտեր Յովհաննէսի հետ՝ Խլաթում գրել տվեց մի Ավետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 բ:

— 9. Խաթունմէլիք, կին Ստեփաննոսի և մայր Աղթամարի Զաքարիա Գ կաթողիկոսի, որ նրա հոգուն մի խաչքար է կանգնեցրել Աղթամարում, 1444 թ.—Ազգագր. հանդ. Ի, էջ 211, Ակինեան՝ Գաւազանագիրք 86, 108:

— 10. Խաթունմէլիք, կին Կիրակոսի և մայր Ղուլէկ Թումայ Գավաշեցու, որ Աղթամարում, Հայրապետ աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 385:

— 11. Խաթունմելիք, կին Կիրակոսի և ազգական Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Ցայսմավուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306:

— 12. Խաթունմելիք, կին Թովմայի, որ Վարդան գրչին

օրինակել տվեց մի Ավետարան, Վասպուրականում, 1452 թ.— Նոտարք 169։

— 13. Խաթունմելիք, կին Աստվածատուրի, և մայր մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Ճաշոցի մասունք, 1457 թ.—Ձեռ. Թավր. 102—105։

— 14. Խաթումէլիք, կին Ներսէս քահանայի և մայր Ցակոբ Նետրարենց գրչի (ապա եպիսկոպոս), որ Արծկէում, Գուլշատ խաթունի համար օրինակեց մի Ավետարան՝ 1464 թ.—Նոտարք, էջ 219։

— 15. Խաթունմելիք, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 16. Խաթունմէլիք, կին Մելքիսեթ քահանայի և մայր Ցովանէս գրչի, որ Ս. Թովմայի վանքում, Փաշա տիկնոջ համար օրինակեց Ավետարանը, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 464։

— 17. Խաթունմէլէք, դուստր տանուտեր Սահակի կամ նրա եղբոր՝ Առոմի, որոնք Խիզանում գրել տվին մի Ավետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— 18. Խաթունմէլէք (կամ Խաթունմէլիք), հորաքույր տանուտեր Սատաղայ Ծերենցի, որ Աղթամարում, Թումա քահանային գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480—481։

— 19. Խաթումէլիք, կին Կարապետի՝ եղբոր Վարդան կրոնավորի, որ Կտուց անապատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։

— 20. Խաթունմելիք, մերձավոր Բաղիշեցի Հավջոշենց Կիրակոս երեցի, որ մի Ավետարան նվիրեց Կապուտ գեղի եկեղեցուն, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 116։

— 21. Խաթունմէլիք, կին տանուտեր Տողանի, որ Արճէշի Սոսկոն գյուղում, Ցովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1489 թ.—Թորոս աղբ. Բ. 437։

— 22. Խաթունմէլիք, քույր Գինեվարդի և եղբորդուստր Մատթէոս վարդապետի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239։

— 23. Խաթունմելէք, (նոյնը կրճատ՝ Խունմելէք), կին Շաքարի և մայր Դովլաթ խաթունի, որ օրինակել տվեց Ավետարանը Աղթամարում, Հայրապետ աբեղային, 1490 թ. նկարը կա ձեռագրում.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 բ, 12։

*ԽԱԹՈՒՆ-ՆԱԶԷ, իգ. < բարդված խաթուն և նազ բառե-

րից. մի անգամ գտնում եմ գործածված Ձեռ. Վասպ. 344, անթվական մի հիշատակարանում։

Խաթունհաս տես Խաթունասի:

*ԽԱԹՈՒՆՇԱՀ, իգ. < Թրք. خاتون xatun «խաթուն»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից բարդված։ Սկսել է գործածվել մեր մեջ ԺԴ դարում, ապա ԺԵ, ԺԶ, ԺԷ դարերում. վերջին հիշատակությունը 1701 թվից է (Ձեռ. Վասպ. 1027)։ Գրված է նաև Հաթունշայ, Հաթուշ, Հոթունշայ (Ձեռ. Վասպ. 237)։

— 1. Հաթունշայ, դուստր Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 2. Խաթունշայ, դուստր Սարգսի և քույր Կիրակոս քահանայի, որ Թումա քահանային գրել տվեց մի Աւետարան, Ոստանում 1414 թ.—Ձեռ. Վասպ. 300։

— 3. Խաթունշայ, դուստր տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 4. Խաթունշայ, կին Շատլուսի և մայր Յովանէս վարդապետի, որ Լիմ անապատում գրեց մի Աւետարան, բայց դեռ չվերջացրած՝ մեռավ 1439 թ.—Ձեռ. Վասպ. 380։

— 5. Խաթունշայ, մորաքույր խոջա Խզրշահի, որ Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան՝ Վանում, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 497։

— 6. Հաթուշ(սեռ. Հաթուշին), դուստր Յովհաննէսի և կին խոջա Ջաւզի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 514—5։

— 7. Խաթունշայ, ազգական տանուտեր Պետրոսի, որ ստացավ մի Աւետարան՝ գրված Զաքարիա գրչի ձեռքով, Վանում, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։

*ԽԱԹՈՒՆՋԱՆ, իգ. < Թրք. خاتون xatun «ազնվական տիկին»+պրս. جان ǰān «հոգի, հոգյակ» բառերից։ Հիշատակվում է սկսած ԺԴ դարից. ապա ԺԵ դարում, և ավելի շատ ԺԶ—ԺԷ դարերում։ Չեմ գտնում այստեղ միայն այս վերջինները։

— 1. Խաթունջան, դուստր Խոջա Մուրատբախշի. 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 2. Խաթունջան, դուստր Էվատշայի՝ եղբոր Ատոմ քահանայի, որ Ամիր Փիրիբէգի ժամանակ կորցրել էր իր Աւետարանը և երկու աչքով կույր լինելով հանդերձ, ամեն կողմ ման գալով, վերջապես գտել էր՝ 1440 թ.—Ձեռ. Վասպ. 313։

— 3. Խաթունջան, կին Էդիլշահի, որ ստացավ մի Ավետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 473։

— 4. Խաթունջան, հիշված է շատ աղավաղ մի արձանագրության մեջ, որ գտնվում է Ագուլիսի Ամենափրկիչ մատուռի դռան վրա, 1490 թվից և որ Լալայեանց, Ազգագր. հանդ. ԺԱ, էջ 302 կարդում է հետևյալ ձևով. «Խչս յիշէ Ջանասենյ Ղսանյ Խաթնչնյ փերյ ավնրիկյ Աղիկ. ՋԼԹ»։ Շեղատառ գրված բառը պետք է կարդալ «Խաթունջանայ»։

*ԽԱԹՈՒՆՓԱՇԱ, իգ. < Թրք. خاتون xatun «տիկին»+ پاشا paša «փաշա» բառերից։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Խաթունփաշա, մերձավոր Փաշա տիկնոջ, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Ավետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 2. Խաթունփաշա, թոռ Սիրամարգի.՝ մեռել է 1469 թ. գերեզմանը մնում է Ամասիայի Ս. Նիկողայոս եկեղեցում. տապանագիրը հաղորդեց ինձ Կարապետ Գազազեան, 12 ապր. 1912 թ։

— 3. Խաթուն փաշա, դուստր Մանուկի և կին Խդրշահի, որ Կեսարիայում Ցովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 4. Խաթունփաշա, եղբորդուստր Ազարիա արեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— 5. Սրա կրճատ ձևն է Խաթփաշա, դուստր մահտեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։—Նույն, Խաթփաշա կրճատ ձևը գտնում ենք նաև 1590 թ. (Ձեռ. Վասպ. 711)։

†ԽԱԺԻԿ, իգ. < հյ. խաժ բառից (աչքերի գույնից առնված)։ Երկու անգամ միայն գտնում եմ գործածված ԺԴ դարում։ Այժմ Լենինականում կա Խաժակեան ազգանունը։

— 1. Խաժիկ, հորաքույր Բաբերդցի Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Ավետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— 2. Խաժիկ խաթուն, կին պարոն Աստուածատուրի և մայր Բաբերդի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ մեռավ 1395 թ.—Նոտարք 7։

*ԽԱԼԱ, իգ.< արաբ. خاله xāla «մորաքույր» բառից, որ թուրքերենում ստացել է «հորաքույր» նշանակությունը։ Իբրև անձ-

նանուն գտնում եմ գործածված մեր մեջ. հմմտ. Սովետ. Հայաս. 1944, դեկտ. 26, էջ գ, խալա Աթոյեան, բազմազավակ մայր, որ 36,000 ռուբլի նպաստ է ստացել պետությունից։

*ԽԱԼԱԹ, ար. < արաբ. خلعت xalʿat «պատվի հագուստ, որ թագավորի կողմից պարգև է տրվում». գործածական է նաև խղլաթ, խլղաթ ձևով, որ տես։ Որանից է խալաթեան ազգանունը։

— 1. խալաթ Քանաքեռցի, որդի Սմբատի, շինեց Հաղարծնի վանքի մի եկեղեցին 1194 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 182) և մի հող նվիրեց վանքին՝ 1206 թ. (անդ 183, Շահխաթ. Բ. 370, Արցախ 361)։

— 2. խալաթ (բայց գրված է խալք), որդի Հարբայ, շինել է Հաղարծնի Ս. Ստեփաննոս եկեղեցին, 1244 թ.—Արցախ 368։

*ԽԱԼԱՇԱՀ (որ և գրված խալայշահ), ար. < արաբ. قلعة qalʿa «բերդ»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից? գիտենք միայն՝

— 1. խալաշահ ոմն, որի թոռը (անունը ...բեկ) կալվածներ է նվիրել Թանատի վանքին, 1251 թ? (Սիսական 120)։ Այնուհետև այս անունը հիշվում է Թանատի վանքի երկու արձանագրության մեջ (Սիսական 122, 123) և Նորավանքի մի արձանագրության մեջ (Սիսական 198), բոլորն էլ անթվական։

*ԽԱԼԱՍ, իգ. < արաբ. خلاص xalāṣ «փրկություն, ազատություն» բառից։ Հիշված եմ գտնում երկու անգամ, երկուսն էլ անթվական հիշատակարաններում, առաջինը պարզապես խալաս ձևով (Թորոս աղբ. Բ. 335), երկրորդը՝ խալաս խաթուն ձևով (Bodleian 148)։

*ԽԱԼԱՔ-ԽԱԹՈՒՆ, իգ. չի կարող ծագած լինել արաբ. خلاق xallaq «արարիչ Աստուած» բառից. ուստի ըստ իս պետք է կարդալ Խալաֆ-խաթուն, որ տես խալաֆ։ Այս անունով ունինք միայն՝

— խալաֆ-խաթուն, քույր խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

*ԽԱԼԱՖ, < արաբ. خلاف xilāf (կամ xalāf) բառից, որ է «անուշահոտ ուռենի»։ Իբրև ար. անձնանուն գործածական էր նաև Պարսից մեջ. ինչ. խալաֆ բեկ՝ իշխան Պարսից՝ Բաղդադում, 1638 թ. (Առաք. պատմ. 443)։ Մեր մեջ գործածված է թե իբրև արական և թե իբրև իգական։ Իբրև արական գտնում ենք 1745 թ. (Ջամբռ 279) և 1821 թվից հետո գրված անթվական

մի հիշատակարանում (Ջեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 565)։ Իսկ իբրև իգական գտնում ենք մի անգամ ԺԸ դարում (Bodleian 167), և երկու ուրիշ անթվական հիշատակության մեջ՝ Ջեռ. Վենետ. Բ. 1013 և Ջեռ. Թեհր.=ՀԱ 1935, 399 (գրված 1686 թվից ուշ)։ Սրանից է Խալաֆեան ազգանունը։ Տես նաև Խալաֆշահ։

*ԽԱԼԱՖՇԱ, ար? < նախորդ Խալաֆ անունից+պրս. šāh «թագավոր»։ Մի անգամ գտնում եմ գործածված՝ անթվական մի հիշատակության մեջ (Ջեռ. Վասպ. 766)։

ԽԱԼԴԱՂ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված Ծումա Խալդաղ ոմն, իբր նվիրատու վանքի, անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Վասպ. 636)։

ԽԱԼԴԱՐ, ար. արդյոք պրս. خالدار *xāl-dār «խալ ունեցող» ձևով մի բառից է. մի անգամ գտնում եմ հիշատակված Ջամբռ 219, Եղիազար կաթողիկոսի ժամանակ (1682—1691 թ)։ Սրանից է Խալդարեան ազգանունը։

† ԽԱԼԵՐԵՍ, մր. կարելի էր կարծել հյ. խալ+երես բառերից, իբր թե «նա որ երեսին խալ ունի». հմմտ. Վարդերես։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 375)։ Բայց հավանաբար տպագրական վրիպակ է՝ փխ. Խաչերես։

*ԽԱԼԻԼ, ար. < արաբ. خليل xalīl «բարեկամ» բառից, որ Հայր Աբրահամի տիտղոսն է (ابراهيم خليل الله Ibrāhīm xalīl-ullah Աբրահամ բարեկամ Աստուծոյ)։ Գործածական է մահմեդականների մեջ՝ իբրև ար. անձնանուն։ Մեր մեջ հիշատակված է միայն մի անգամ՝ ԺԳ դարում։

— 1. Խալիլ (սեռ. Խալըլին), հայր Տէրունի, որ մի խաչքար է կանգնեցրել Դսեղում, իր եղբոր Գրիգորի հիշատակին, «որ զուր և դառն մահուամբ ի Քրիստոս փոխեցաւ», 1281 թ.— Ազգագր. հանդ. Է, էջ 349, Ցարութիւնեանց՝ Ներս. դպր. սաների Ա. ճանապ. 58—59։

— 2. Խալիլ, Թուրք մոլլա էր, Պարսկաստանի հյուսիսարևմտյան մասերից կամ Տիգրանակերտի շրջանից. ընդունեց քրիստոնեությունը և չարչարվելով՝ մահմեդականների ձեռքով նահատակվեց։ Թվականը հայտնի չէ, բայց 1524 թվից առաջ է։ Ավելի մանրամասն տես Նոր վկ. 720։

— 3. Խալիլ փաշա, Կեսարացի հայ, հավանաբար մանկության ժամանակ բռնի թրքացրած, ապա տարված Պոլիս, ուր

հասավ շատ բարձր պաշտոնների։ 1609 ին Մելիտացոց դեմ նավամարտի դուրս եկավ, հաղթեց նրանց 10 նավերին, որոնցից վեցը գերի վերցրեց։ Գերած նավերից մեկն էր Գարա Ճէհէննէմ, որ ուներ 90 թնդանոթ, 500 նավազ, 160 հրազեն և 2000 հրացան։ Խալիլը այս մեծ նավով հաղթական մուտք գործեց Պոլիս և Սուլթան Ահմէդից ստացավ վեզիր տիտղոսը։ Ամուսնացավ սուլթանի աղջկա հետ և դարձավ մեծ վեզիր։ Վանեց խաղախների արշավանքը Սինոպից, նորոգեց Ավստրիայի և Լեհաստանի հետ խաղաղության դաշինքը։ Ինքը հակառակորդ էր կաթոլիկներին, ուստի հալածեց ճիզվիթներին և պապի նվիրակին ծովը նետեց։ Վեզիրության պաշտոնը վարեց նաև Սուլթան Մուսթաֆա Ա, Օսման Բ և Մուրադ Դ թագավորների ժամանակ։ 1619-ին գնաց Պարսից դեմ պատերազմի և Շահ-Աբասին ստիպեց հաշտվել։ Ջարդեց Սև ծովի ծովահէններին և 1621-ին մասնակցեց Լեհաց պատերազմին։ (Այվազովսքի, Ա. և Բ հտ. Զամչ. Գ. 588, Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. 1919)։

*ԽԱԼԻՆԱՐ, իգ. < պրս. خال xāl «խալ»+արաբ. نار nār «կրակ, հուր» բառերից? Գործածված է ԺԵ—ԺԸ դարերում, բայց քիչ անգամ։

— 1. խալինար, դուստր տանուտէր Էդիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Ավետարան, 1463 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 620։

— 2. խալինար հիշատակված է նաև 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), 1609 թ. (Bodleian 110), 1626 թ. (Ձեռ. Վասպ. 869), 1632 թ. (անդ 40), 1671 թ, (Bodleian 161), 1774 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 250)։

ԽԱԼԻՆԳՈՒՍ, իգ. ծագումն անհայտ. հիշված է 1603 թ. (Матер. Арх. Кавк. III 99.—վերծանողը կարդում է Халинговат). ուստի ենթադրում է Խալինգովատ. այս երկուսից որն է ստույգ։

*ԽԱԼԻՖԱՑ, ար. < արաբ. خليفة xalīfa բառն է, որ իմաստի զանազան փոփոխություններ է կրած։ Առաջին և նախնական նշանակությունն է «հաջորդ», ապա անցնելով «Մուհամմէդի հաջորդ» իմաստից, դարձել է «ամիրապետ, արաբների թագավորը» (որ միևնույն ժամանակ կրոնապետ էր). ապա դառնում է «քարտուղար, ուսուցիչ, վարպետ, ճարտարապետ» և քրիստոնյաների համար էլ «վարդապետ, թեմական առաջնորդ»։ Մեր մեջ իբրև անձնանուն է գործածվել սկսած ԺԴ դարից. շարունակվում է ԺԵ դարում, ապա ԺԶ—ԺԷ դարերում (որոնք չեմ նշանակում)։ Վեր-

չին հիշատակութիւնն է 1687 թվից (Ձեռ. Վաստ. 970)։ Գրված է նաև խալիփ (ուղ!)՝ Թվականն անհայտ (Ձեռ. Վենետ. Ա. 692), խալիփա 1683 թ. (Ձեռ. Վաստ. 50), Հալիփայ՝ 1505 թ. (Ձեռ. Ներս. 16 բ), սեռ. Հալիփին (Ձեռ. Վաստ. 252 և 747)։

— 1. Խալիփայ, որդի Արղուլմսեխի † 1327.—Ձեռ. Ազուլ= Արբտ. 1911, 460։

— 2. Խալիփայ, «ծաղկեցեալ զաւակ» պարոն Թումայ Վանեցու (որ տես № 64), 1393 թ.—Նոտարք 3։

— 3. Խալիփայ, որդի Էվաուշայի՝ եղբոր Աստմ քահանայի, որ փրկանքով ազատեց իր գերի ընկած Աւետարանը, Վան 1440 թ.—Ձեռ. Վաստ. 313։

— 4. Խալիփայ քահանա, գրիչ. Արճէշում, Աբրահամ կրոնավորի համար օրինակեց մի Յայսմաւուրք. 1446 թ.—Նոտարք 153։

— 5. Խալիփայ, վաղամեռիկ որդի Սուլթանմելէք տիկնոջ, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1452 թ.—Ձեռ. Վաստ. 413։

— 6. Խալիփայ, որդի Հոփփսիմէի կամ Շնորհաւորի՝ քրոջ Հաբիբ խաթունի, որ Աղբակի Երնկանի գյուղում, Մարգարայ գրչին գրել տվեց մի Աւետարան. 1498 թ։—Ձեռ. Վաստ. 526 և 528։

*ԽԱԼԽ, իգ. < արաբ. خلق xalq (ժղ. xalx) «ժողովուրդ» բառից,—բայց եթե չկա վրիպակ. իրոք որ զարմանալի անուն է, մանավանդ կնոջ համար։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վաստ. 394։

ԽԱԼՈՒՂ (եթե չէ վրիպակ). հիշատակված է մի գերեզմանաքարի վրա՝ 1716 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 550։

ԽԱԽՐԱՆ, որդի Բակ իշխանի և հայր Խաղբակի Բ. (ԺԲ դար).—այսպէս է ավանդում Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 144. բայց Յովսէփեան՝ Խաղբակեանք 27—28 չի ընդունում սրանց ստուգութիւնը և չի էլ հիշում իր Տոհմագրութեան մեջ։—Կեղծիք։
Խակյան տես Խաքան

†ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, ար. < հյ. նույն բառից, որ համարում եմ թարգմանութիւն հուն. Ἡσύχιος > Սուքիաս անվան, որ բուն նշանակում է «խաղաղ» (իսկ ἡσυχία «խաղաղութիւն, հանդարտութիւն»)։ Անսովոր անուն, որ իր երկարության համար էլ շատ անհարմար է։ Հմմտ. Արքայութիւն, Հանուքիւն և Ցարութիւն։ Հիշատակված է միայն երկու անգամ ԺԾ դարում։

— 1. Խաղաղութիւն (*սեռ. Խաղաղութեայ*), *հայր Գրիգոր երեցի, որ էր քահանա Երզնկայի Խայիք գյուղի եկեղեցու, 1404 թ.—Թորոս աղբ. Ա. 66։*

— 2. Խաղաղութիւն (*սեռ. Խաղաղութենին*), *կարապետ անուն անձի հետ միասին մի խաչքար են կանգնեցրել Լիմ կղզում՝ Մեռելյարոյց Յովհաննէս եպիսկոպոսի հիշատակին, 1421 թ.—Արձ. Նոտարք 64։*

***ԽԱՂԱՑ***, *իգ. ավանդված է միայն հոլով* Խաղէն *ձևով և մի անգամ հիշված 1619 թ. Ձեռ. Վասպ. 860։ Արդյոք ընթերցվածը ստույգ է։*

***ԽԱՂԲԱԿ***, *ար. ծագումն ինձ անհայտ. գրված է նաև Հաղբակ. գործածվել է՝ սկսած ԺԱ դարից, այնուհետև մնացել է Խաղբակեանց տոհմանվան մեջ։ Այս իշխանական նշանավոր տոհմի մասին երեք հատոր ընդարձակ մենագրություն ունի Յովսէփեան Գարեգին արքեպս. (այժմ կաթուղիկոս Տանն Կիլիկիոյ)։ Մենագրության խորագիրն է Խաղբակեանք կամ Պռօշեանք հայոց պատմութեան մէջ», Ա. Վաղարշապատ 1928, Բ. և Գ?*

— 1. Խաղբակ Ա. *ապրում էր ԺԱ դարի սկզբում. նրա որդին է Դլեն, որ մի քանի գյուղ ծախելով՝ նվիրեց Տաթևի վանքին՝ Սիւնեաց Յովհաննէս Է և Գրիգոր Դ եպիսկոպոսների ժամանակ, 1046 թ.—սեռ.* Խաղբակայ՝ *Օրբ. ծգ, ծէ, ծթ.*—Տուն *կամ* ազգ Հաղբակայ՝ *Այրիվ. 18 բ, 23 ա։—Յովսէփեան՝ Խաղբակեանք 29, Այրարատ 269։*

— 2. Խաղբակ Բ. *իշխան Խաչենի. ճիշտ թվականը հայտնի չէ. Դլենից (1046 թ) հետո է. որդիներն են Հասան (1184 թ), Ջաջուռ Բ (1224 թ), Վասակ († 1224/5 թ), Գրիգոր (նահատակված 1222 թ) և Աբուս կամ Աբուսէթ։ Թոռն է նշանավոր Պռօշ իշխանը։ Սրանք հիշատակված են զանազան հիշատակարաններում և արձանագրությանց մեջ՝ Խաղբակի անվան հետ միասին. համտ. Շահխաթ. Բ. 196, Այրարատ 263, Արաքս 1892 ա, էջ 28. Արցախ 182—3։—Ինքը հիշատակված է սեռ.* Խաղբակայ *ձևով՝ Վրդ. ձզ.*—Հաղբակայ՝ *Կիր. ժ, ծը. Մխ. այրիվ. 80. Միխ. աս. իը (=իէ).—Այրարատ 263, 268—9, 339։*

*****ԽԱՄԱՐԴԱՒԼԱ***, *ար. < արաբ.* قمر دوله qamari-dovla *«լուսին պետութեան» (փխ.* قمرالدوله qamar-ud-dovla) *ձևից. համտ.* Գամառ-Քաթիպա *ծանոթ անունը, որ ինչպես հայտնի է, կազմված է երեք անունների և ազգանունների նախատառերից. այն է Գէորգ Քանանեան, Մնացական Թիմուրեան և Ռափայէլ Պատկան-*

ճան. բայց ամբողջը այնպես է հարմարեցրած, որ ստացվել է արաբ. قمر كاتب qamar-kātib «լուսնային քարտուղար» (մեծ բանաստեղծներին տրված տիտղոս)։

— Խամարտաւլա, հայր Մանկտաւագ Մշեցու, որ հարյուր դահեկան նվեր է տվել Բագնայրի եկեղեցուն, 1242 թ.—Սարգսյան, Տեղագր. 186, Շիրակ 122։

*ԽԱՄՈՒՇ, իգ. < պրս. خاموش xāmūš «լուռ» բառից։ Գործածվել է ԺԵ—ԺԶ դարերում։ Գրված է նաև Խամօշ, Համօշ։

— 1. Խամօշխաթուն, դուստր Բուքի և քույր Աղթամարցի Բուքենց Մկրտիչ կրոնավորի, որ Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 151։

— 2. Համօշ, դուստր Ստեփաննոսի և քույր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 338։

— 3. Խամուշ, դուստր Սուղաթմիշի և քույր Նուրիճանի, որ Ագուլիսում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1481 թ.—Ամրատեանց, Երնջակ 299։

— Հաջորդ դարի հիշատակություններն են Համաւշ՝ 1508 թ. (Ձեռ. Վասպ. 633), Խամուշ՝ 1554 թ. (անդ 98), Խամաւշ՝ 1557 թ. (անդ 659), Համաւշ խաթուն՝ 1562 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 157 ա), և անհայտ թվականով Խամուշ՝ 1484-ից ուշ գրված (Manus. brit. mus. 25 բ), Համօշ (Ձեռ. Վասպ. 237)։

*ԽԱՅԱԹ, ար. և իգ. < արաբ. خياط xayyāṭ «դերձակ» բառից։ Հիշատակված ունինք ընդամենը երկու անգամ՝ ԺԴ դարից։

— 1. Խայաթ, որդի Հազարշահ Շիկբակեցու 1313 թ. (յիշատ. ИАН 1911, էջ 1300)։

— 2. Խայաթ, կին Կիրակոս ավագ սարկավագի, որ օրինակեց Աւետարանը՝ Ղրիմի Սուրխաթ քաղաքում, 1346 թ.—Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց մետրապոլիսը, էջ 331=ՀԱ 1895, 304 բ։

ԽԱՅՈՄԹԵՆՇԱՅ, ար. աղավաղ ընթերցված. հիշատակված է 1271 թվի մի արձանագրության մեջ՝ Արցախ 307։

ԽԱՅՏԵՐ, ար. ծագումը ինձ անհայտ. ավանդված է միայն երկու անգամ՝ ԺԲ դարից. Macler, Rapport Arm. 56 հանում է արաբ. حيدر Haïdar «առյուծ» անունից, բայց չէ իրավացի, որովհետև ոչ ح ḥ տալիս է խ, ոչ د d տալիս է տ և ոչ էլ a դառնում է ե)։

— 1. Խայտեր, ազնվական և բարեգործ մարդ, պարոն կամ

*պատրոն տիտղոսով, ստացավ մի Ավետարան, որ գրված էր 1072 թվին և ապա նորոգվեց 1220 թվին (ըստ այսմ Խայտեր պատրոնը լինում է ԺԲ դարից).*—Rapport Arm. *51, 52; 55—56։*

— 2. խայտեր, *բարեկամ Աստուածատուր Բաբերդցու, որ մի Ճառընտիր գրել տվեց 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 470։*

**ԽԱՅՐԻ, իգ. < արաբ.* خيری xayrī *«բարի, բարեգործական» բառից։ Մահմեդականների մեջ ևս գործածական է իբրև անձնանուն, բայց միայն արական է։ Իգականը լինում է* خيريه xayriye, *որ սակայն կարող էր կրճատվել ու դառնալ* խայրի: *Հիշված է միայն մի անգամ 1646 թ.—Ձեռ. Վասպ. 904։*

**ԽԱՆԱՂԱ, իգ. ծագումը տես Խանումաղա։ Իմ ունեցած ամենահին վկայությունը 1549 թվից է (Ձեռ. Վասպ. 652). շարունակվում է ԺԶ և ամբողջ ԺԷ դարի ընթացքում. վերջին հիշատակությունը 1756 թվից է (անդ 313)։ Գրված կա նաև* Հանաղա, *ինչպես օր. 1575 թ. (անդ 210)։ Սրանից է* խանաղեան *ազգանունը (Կովկաս)։ Բոլորի մեջ հիշելու արժանի է՝*

— խանաղա *Քանաքեռցի, կին Մկրտչի, որ Կոտայքի մելիք Դավիթ Քանաքեռցու նոտարն էր. Զաքարիա սարկավագ պատմիչի մայրն է (ԺԷ դար)։ Տես Ձեռ. Էջմ. № 936 Ճառընտ. 1687 թ. և Զքր. սարկ. Ա. 18, Գ. 45։*

**ԽԱՆԱՄԻՐ, ար. < պրս.* خان xān+*արաբ.* امیر amīr *կրկնակ պատվանուններից բարդված։ Սրանից է* խանամիրեան *ազգանունը (Կովկաս)։ Այս անվան հնագույն հիշատակությունը Խանամիր ձևով ունի Սմբատեանց՝ Երնջակ 301 (բայց թվականն անհայտ է)։ Ամենաուշ հիշատակությունն է 1720 թ. (Ձեռ. Վասպ. էջ 1002)։*

*†ԽԱՆԱՊԵՏ, ար. բարդված է պրս.* xān *«խան»+հյ.* պետ *բառերից, իբր «խաների պետը». հմմտ. Հայրապետ։ Հիշված եմ գտնում մի անգամ՝ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1473 թվից ուշ (Թորոս աղբ. Բ. 329)։*

*†ԽԱՆԱՏՈՒՐ, ար. բարդված է հայկական ձևով՝ պրս.* xān *«խան»+հյ.* տուր *բառերից, իբր «խանի տվածը կամ պարգևը». հմմտ. Խաչատուր, Տիրատուր ևն։ Մի անգամ գտնում եմ գործածված Ձեռ. Վենետ. Ա. 609 անթվական մի հիշատակարանում։*

**ԽԱՆԱՐԱՆԳ, ար. Ջամչեանը համարում է հյ.* նախարար *բառից աղավաղված։ Այս բացատրությունը սխալ է. սա պրս.* کنارنگ kanārang *բառն է, որ ԳԴ մեկնում է «կուսակալ, մարզպան». բայց ավելի լավ է մեկնել «սահմանապահ գնդերի հրա-*

մանատար»։ Հունարէն տառադարձված է Χαναράγγης և ինչպես տիտղոսները հաճախ իբրև անձնանուն են գործածվում, նույնպես և այս։ Justi, էջ 155, թվում է մի քանիսին, որոնց մեջ կա նաև՝

— 1. Χαναράγγης, պարսկահայ ոմն, որ աքսորական Արշակի հետ միացած՝ դավադրություն կազմեց Յուստինիանոս կայսեր դեմ (Պրոկոպիոս 2, 410)։ Երևի նույն է սրա հետ՝

— 2. Խանարանգ, զորավար գնդի հայոց, Յուստինիանոս կայսեր ժամանակ։ Ներսէս պատրիկը ուղարկեց նրան Գերմանացոց դեմ. հրդեհելով գրավեց նրանց բերդը՝ 555 թ.—Զամչ. Բ. 277։

*ԽԱՆԲԱԲ, ար. < պրս. خانباب xānbāb «թագավորահայր» բառից, որ Մեծ Մողոլների ժամանակ նշանավոր մարդկանց տրված տիտղոս էր։ Հայտնի է օրինակ՝ Հինդուստանի Մեծ Մողոլ Աքբար թագավորի խնամակալ Beram՝ «խանբաբ» տիտղոսով (ԺԶ դար)։ Իբրև անձնանուն հիշված եմ գտնում մեր մեջ 1680 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 24 ա), որից և Խանբաբեան ազգանունը։

*ԽԱՆԲԱՋԻ, իգ. < թրք. خانم xanum «տիկին»+باجی bāǰə «քույր» բառերից. արտասանվում է xanbaǰi. Մի անգամ գտնում եմ հիշատակված 1658 թ. Խանպաճի ձևով՝ Արցախ 74։

*ԽԱՆԲԷԿԻ, իգ. < թրք. خانم xanum «տիկին»+بك beg «բէկ» բառերից (իբր տիկինների բէկը)։ Նախորդի նման՝ արտասանությամբ հասել է այս ձևին. բայց ստանում է նաև տարբեր ձևեր. հմմտ. տակը։ Հնագույն վկայությունը 1437 թվից է (տես տակը). ԺԵ դարից ուրիշ օրինակ չկա. գործածված է նաև ԺԶ, ԺԷ դարերում. վերջին վկայությունը 1751 թվից է։—Թուրքերի մոտ կա Xanbeg, որ արական է և հետևաբար կազմված է xan+beg բառերից. հմմտ. Խանպէկ՝ Թուրք իշխան ոմն Դրնդ. 152։

— 1. Համբէկի, դուստր տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում, Յովսէփ գրչին մի Աւետարան է գրել տվել 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379։

— Սրան հետևում են՝ Խանբէկի 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), 1597 թ. (Ձեռ. Սևան. 11 ա), Խանիբէկ 1606 թ. (Թորոս աղբ. Բ. 344), Խանբէկի 1608 թ. (Manus. brit. mus. 43 բ), Խանպէկի 1621 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 376), 1628 թ. (Տաշեան, Ցուց. 708), Խանբէկի 1644 թ. (Ձեռ. Վասպ. 276), Խամբէկի 1666 թ. (անդ 925), 1668 թ. (անդ 392), Խանպէկի 1675 թ. (Ձեռ. Թաւր. 81 բ), Խամպէկ 1701 թ. (Bodleian 207), Խանբէկի

*1731 թ. (Ձեռ. Վասպ. 1022), Հանբէկի 1733 թ. (անդ 1010), Խանբէկի 1751 թ. (անդ 548), որ վերջին հիշատակությունն է։ Անթվական են Խանբակի (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472), Խանպակի (անդ 133), Խանբէկ (Ձեռ. Վասպ. 767)։*

— խամբէկ *(սեռ. Խամբկի ձևով) հիշում է նաև Բարխուտ. Արցախ, էջ 300՝ ՌՀԳ=1024 թվից! որ անշուշտ սխալ ընթերցման արդյունք է։*

***ԽԱՆԳԵԼԴԻ**, *ար.* < *պրս.* xān *«խան»+թրք.* كلدى geldi *«եկավ» բառերից. հմմտ.* Շահգելդի։ *Մի անգամ գտնում եմ հիշատակված 1819 թ. (Պէրպէրեան, Պատմ. Հայոց, էջ 755)։*

***ԽԱՆԴԱՄԻՐ**, *ար.* < *պրս.* خراند xānd *(տես Խուանդ)+*امیر amīr *«իշխան» բառերից* (Justi *172 բ). գործածական անուն էր Պարսից մեջ. հմմտ.* Xōndemīr *որդի խոջա Համամ-էդ-դին Մուհամմէդի, պատմիչ՝ ԺԶ դար* (Justi *անդ)։ Կա նաև սրա հակադիրը՝* Amīrxuānd *կամ* Mīrxōnd. *մեր մեջ ունինք հիշված* խունդամիր *ձևով (Ձեռ. Դադեան, Բ. 31 ա) և* խանդամիր՝ *1517 թ. (Թորոս աղբ. Բ. 275) և 1633 թ. (Ձեռ. Վասպ. 882). բայց անշուշտ կար նաև* խանդամիր *ձևը, որովհետև ունինք սրանից* խանդամիրեան *ազգանունը, որ հիշատակված է 1750 թ. (Ջամչ. Գ. 844)։ Հայտնի էր Շուշում* խանդամիրեան *թատրոնը։*

***ԽԱՆԴԱՆ**, *ար.* < *պրս.* خندان xandān' *«ուրախ, ժպտերես, խնդացող» բառից. երևի գործածական անուն էր մի ժամանակ, որից և առաջացել է* խանտանեան *ազգանունը (Պոլիս)։*

**ԽԱՆԴԵՐ**, *իգ. ծագումն ինձ անհայտ։ Հիշատակված եմ գտնում մի քանի անգամ ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Խանտէր 1602 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 81), Խանդեր 1607 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 58 բ), Խանտեր 1622 և 1629 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 292 և 110. երկուսը նույն անձն են), Խանդեր 1636 թ. (անդ 238 ա, սեռն անհայտ), Խանտէր 1659 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 546)։ Կա նաև Խանտէր ար. ըստ Ձեռ. Հալէպի, Ա. 292 ծանոթ.)։*

***ԽԱՆԴՎԷԼԻ**, *ար.* < *պրս.* خواند xānd *«իշխան» (տես վարը* խուանդ*)+արաբ.* ولى veli *«տեր, սուրբ, պաշտպան» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1656 թ. (Ձեռ. Թաւր. 7 բ)։*

***ԽԱՆԵԱԶԻ**, *իգ.* < *պրս.* خان xān *«իշխան»+թրք.* يازى yazə *«գիր» բառերից. իբր թե «իշխանի համար գրված՝ ճակատագրված»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1557 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 8 ա)։*

*ԽԱՆՋԱԴԱ, իգ. < պրս. خان xān «իշխան»+زاده zāda «ծնունդ», որով խանզադա նշանակում է «իշխանածին»։ Գրված է նաև Խանզատա, Հանզադա և Հանզատա։ Գործածական էր նաև Պարսից մեջ. հմմտ. 1) խանզադէ Բեգում՝ քույր Բաբէր սուլթանի, 2) Միր Խանզադէ՝ բաղէակիր Հինդկայոյն կայսեր Մողոլաց՝ 1530—1556 թ. (Justi 170 ա)։ Թեև Justi էս մեկնում է «Fürstenkind», որով հանում է xān+zāde բառերից, բայց ավելի ուշ հասկացվել է xāna «տուն, գերդաստան»+zāde «ծնեալ», որով և բառը դարձրել են խանթզադ (այսպես Զքր. ագուլ. 93՝ ԺԷ դար)։ Սրանից էլ առաջացել են Խանզադեան և Խանազադեան ազգանունները։ Սկսել է գործածվել մեր մեջ ԺԴ դարում, անընդհատ շարունակվել է մինչև 1708 և 1742 թվերը (Ջեռ. Վասպ. 564—5)։ Վերջին հիշատակությունը 1808 թվին է (Ջեռ. Վասպ. էջ 360)։

— 1. խանզադա, մայր թե կին Աստմի, որ Յովհաննէս քահանային մի Ավետարան գրել տվեց Ապահունեաց Արսէ գյուղում, 1321 թ.—Ջեռ. Վասպ. 168 (ըստ իս կասկածելի է. երկու տարբեր հիշատակարաններ իրար են խառնված Լալայեանի մոտ. հմմտ. Աստմ № 19)։

— 2. խանզատա, դուստր Խոջա Յովհաննէսի, որ ստացավ մի հին Ավետարան, 1488 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

*ԽԱՆԹՈՒՇ, իգ. < պրս. خان xān «խան, իշխան»+توش tūš «ուժ, զորություն, կարողություն». (այսինքն «նա, որ խանին ուժ և զորություն է տալիս»)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1704 թ. (Ջեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395)։

*ԽԱՆԻ, իգ. < պրս. خانی xānī «խանական, իշխանական» բառից. գտնում եմ գործածված 1619 թ. (Սիսական 282) և 1653 թ. (Ջեռ. Թաւր. 45 բ)։

*ԽԱՆԻՋԱՆ, իգ. < նախորդ խանի անունից+ջան փաղաքշականով. մի անգամ գտնում եմ հիշատակված 1557 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 529։

*ԽԱՆԼԱՐ, ար. < Թրք. خانلر xanlar բառից, որ «խան» բառի հոգնակին է, ինչպես ունինք Բեգլար, Աղալար (բոլորն էլ հոգնակի)։ Գործածական է այժմ նաև Թուրքերի մոտ։ Մեր մեջ ավանդված չէ. բայց անշուշտ գործածական էր, որովհետև սրանից ունինք խանլարեան ազգանունը (Շուշի)։—Թերևս այս խանլար անվան վրիպակ գրչությունններն են՝ խանէլար, իգ. որ հիշված է 1621 թ.՝ իբրև հանգուցյալ (Manus. brit. mus. 23 ա) և խան-

յիլաք (սեռն անհայտ), որ հիշված եմ գտնում 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 բ)։

***ԽԱՆԽԱՆՂԸՁ**, իգ. (այս վայրենի անունը իգական է՜) < Թրք. خان قنزى xan-xanqəzi, այն է «ինքը խան և խանի էլ աղջիկ». մի անգամ գտնում եմ գործածված 1597 թ. (Ձեռ. Սևան, 11 ա)։

***ԽԱՆՂՈՒԼԻ**, ար. < Թրք. خان قولى xan-qulə «խանի ծառա». այս սարկական անունով հիշված եմ գտնում մի անգամ Ջուղայեցի ոմն 1598 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 25 ա)։

***ԽԱՆՄԵԼԻՔ**, իգ. Թեև կարելի էր դնել Թրք. خانم xanum «տիկին»+արաբ. ملك melik «թագավոր» բառերից կրճատված (արագաբանությամբ), բայց որովհետև բավական հին անուն է, ուստի ավելի հարմար եմ համարում դնել պրս. خان xān+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից (իբրև խանի հրեշտակը, արժանավայել իգական անուն)։ Գտնում եմ մի անգամ գործածված ԺԵ դարում և երկու անգամ էլ անհայտ թվականով։

— խանմելիք, հարսն է Աւետիք քահանայի (սրա Սիմէոն եղբոր կինն է), որ գնել է մի Աւետարան՝ Բարսեղ գրչից 1480 թ?—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ (թվականը յիշված չէ հիշատակարանում. հրատարակիչը չգիտեմ ինչ հիմամբ դնում է 1480 թ? սակայն հայտնի է հիշատակարանից, որ 1500 թվականից քիչ առաջ է)։

— Առանց թվականի են խանմելիք՝ Ձեռ. Մեք.=ՀԱ 1927, 313 և Ձեռ. Թաւր. 73 ա (1311 թվից ուշ գրված)։

***ԽԱՆՆԱՆԷ**, իգ. < Թրք. خانم xanum «տիկին»+ننه nane «մայր» բառերից կրճատված (արագաբանությամբ). մի անգամ գտնում եմ հիշատակված 1687 թ. (Ձեռ. Թաւր. 24 բ)։

**ԽԱՆՈՏ**, իգ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1581 թ. Ձեռ. Վասպ. 694. «և քըւերոցն իմ՝ Խանոտին են». թվում է թե վրիպակ է և պետք է կարդալ «Խանումին»։ Բայց կա նաև մի ուրիշ խանոտ, որ ինչպես երևում է, քահանայի անուն է. հմմտ. «Այս է հանգիստ Ամիր Սարգսի՝ խանոտ երիցու որդւոյն» (Արձ. Հաղբատում, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 38, Ալիշան՝ հանդ. Է, 403. անթվական)։

***ԽԱՆՈՒՄ**, իգ. < Թրք. خانم xanum «տիկին, ազնվական կին» բառից. Թաթարների մեջ էլ գործածական անուն էր. ինչ. խանում խաթուն՝ Լէնկթիմուրի կինը (Զամչ. Գ. 419)։ Մեր մեջ

երևում է առաջին անգամ ԺԱ դարում. գործածական էր մանավանդ ԺԶ—ԺԷ դարերում. վերջին հիշատակությունը գտնում եմ 1731 թվից (Ձեռ. Վասպ. 1021), բայց դեռ այժմ էլ գործածական է։ Գրված է նաև Հանում ձևով։

— 1. **Խանում**, քույր Փառիսոսի Սենեքերիմ և Գրիգոր (№ 126) թագավորների († 1003). ամուսինն էր Հասան, որ Խաչենի Գեսուեան Առանշահիկ տոհմից էր։ Հասանը հաստատվեց Փառիսոսում. իր որդին է Գրիգոր իշխան (ԺԲ դար).—Բարխուդ. Պատմ. Աղուանից 176։

— 2. **Խանում**, դուստր խոջա Ցովհաննէսի՝ հօրեղբօրորդւոյ խոջա Ցովսէփի, որ Մուշում, Պօղոս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— 3. **Խանում**, քեռաղջիկ Խարիբ տիկնոջ կամ նրա ամուսին Առումի, որոնք միասին մի Աւետարան գրել տվին Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527—8։

— 4. **Խանում** կույս նահատակուհի Ալաշկերտցի. մայրը մահմեդականություն ընդունած լինելով, ինքը նվիրվեց ճգնության։ Մայրը շեյխերի միջոցով աշխատեց դարձնել նրան ևս. Խանումը իրեն գցեց Արածանի գետը, որ կիսախեղդ մարմինը Մանազկերտի ափերը գցեց։ Նրան գտան և ստիպեցին մահմեդական դառնալ. մերժեց ու չարաչար տանջանքներով նահատակվեց «1755 թ»։ Գերեզմանը մինչև այժմ ցույց են տալիս (Հայկունի, Բագրևանդ, Վղրշպտ. 1894, էջ 58—61)։ Նրա վրա ունինք մի տաղ Պօղոս երեցից, մի ուրիշ շատ գեղեցիկ տաղ անհայտ հեղինակի, և այլ ևս մի երրորդ տաղ՝ Կարապետ Հնձացւոյ։ Առաջին երկուսը հրատարակված են Նոր վկայք, էջ 562—7. երրորդը տես Ազգ. մատ. հտ. ՀԸ, էջ 153։ Տես նաև Ազգապ. 2870, 3000։ Դնում եմ այստեղ երկրորդ գեղեցիկ տաղը։

*Իմ սիրտս էլ վառեցիր սիրովդ, սուրբ Խանում,*
*Հեռուվանից մայլեցայ հոտովդ անպատում,*
*Փարատեց ցաւերս, սիրտս լցվաւ խնտում,*
*Ցաւոց դարման տրվար մարդկանց, սուրբ Խանում։*

*Վարդ բուսար փշոց մէջ, գոյնդ աննման,*
*Գեղեցիկ պատկերիդ աշխարհք զարմացան,*
*Փայլուն և նախշունիկ աչքերուդ վերան՝*
*Սև ունքերդ սիրտ կու տաղէր, լոյս Խանում։*

*Զերդ տատրակ ողջախոհ ճչէիր ի խղիդ,*
*Երգիդ մրմունջք լողք մայլեցան ձէյնիդ,*
*Քեզ ձէյնէկից դասքն խումբք հրեշտէկիդ,*
*Խայտան ցնծան բերկրին ձէյնովդ, կո՛յս Խանում։*

*Ռահան, նարկիզ, քրքում, ծաղիկ նունուֆար,*
*Թոփրաք խալայ պա՛րտէզ դու մէջ ծաղկեցար,*
*Հեռացար մարդկանցմէ, տան մէջ փակվեցար,*
*Բայց սրբութեան հոտդ յայտնեց քեզ, Խա՛նում։*

*Թագաւորին երկնից քեզ նուիրեցիր,*
*Գլխուդ զարդարանքնին արիր ցանեցիր,*
*Թողեր վարդ մանուշակ, շուշան քաղեցիր,*
*Ծոմ պաք աղօթք քո զարդք, ճգնող սուրբ Խանում։*

*Վերջապէս արիւնովդ հոգիդ գնեցիր,*
*Կուսան և մարտիրոս անուն թողուցիր,*
*Հայրենիքդ քեզմով պայծառացուցիր,*
*Գերեզմանդ ցաւոց բժիշկ, սո՛ւրբ Խանում։*

***ԽԱՆՈՒՄԱՂԱ**, *իգ.* < *Թրք.* خانم xanum+آغا aġa *կրկնակ պատվանուններից, իբրև «իշխանուհի»։ (Պարսկաստանում* աղա *պատվանունը միայն տղամարդկանց չի տրվում, այլ նաև կանանց)։ Գործածվել է սկսած ԺԵ դարից (վկայություններ այս դարից ունի Տաշեան, Ցուց. 724, սակայն առանց ճիշտ թվականի)։ Ճիշտ թվականով վկայություններն են 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688), 1578 թ. (Սիսական 72, Սմբատեանց, Գեղարքունի 610), 1602 թ. (Ձեռ. Վասպ. 188 և 802), 1609 թ.* (Bodleian *109), 1615 թ. (Ձեռ. Վասպ. 795), 1621 թ. (անդ 867)։ Սրանից է կրճատված* Խանաղա *(տես այս անունը), որի հնագույն հիշատակությունը 1549 թվից է։*

***ԽԱՆՈՒՄ-ԽԱԹՈՒՆ**, *իգ. նախորդ անունից+*Խաթուն*։ Ավանդված է այս ձևով արդեն ԺԵ դարից։*

— Խանում-Խաթուն, *քույր Սմբատ Թագավորի, որ օծվեց Աղթամարում, 1466 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 419 (տես Բէկխաթուն № 1, ուր սխալմամբ նույնացրել եմ Խանում-խաթունը Բէկխաթունի հետ)։*

— Խանում-Խաթուն, հիշված է նաև 1611 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 222։

*ԽԱՆՋԻՋԻ, իգ. < Թրք. خانم xanum «տիկին»+جيجه ǰiǰa «քույրիկ» բառերից (արագաբանությամբ կրճատված)։ Գտնում եմ հիշատակված միայն 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594) և 1652 թ? (անդ 762)։

*ԽԱՆՍԱՆԱՄ, իգ. < Թրք. خانم xanum «տիկին»+արաբ. صنم ṣanam «կուռք» (իբրև պատկեր կամ տիպար գեղեցկության) բառերից (արագաբանությամբ կրճատված)։ Անշուշտ գործածական էր իբրև անձնանուն կամ մականուն, որից Խանսանամեան ազգանունը (Նոր-Բայազիտ)։

*ԽԱՆՍԱԻԴԻ, ար. < պրս. خان xān «խան, իշխան»+Թրք. سودي sevdi «սիրեց» բառերից (իբրև իշխանի սիրած անձը)։ Մի անգամ գտնում եմ գործածված Թվականն անհայտ մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Բ. 794)։

*ԽԱՆՍՈՒԼԹԱՆ, իգ. (բայց նաև ար.) < պրս. خان xān «իշխան»+արաբ. سلطان sulṭān բառերից։ Գործածված է ԺԶ դարից և գնում է մինչև ԺԸ դար։ Հնագույն հիշատակությունն է 1596 թ. (Ձեռ. Վասպ. 748), ապա գալիս են 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594), 1638 թ. (Ձեռ. Վասպ. 894, գրված Հանսուլթան), 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310), 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3 բ), 1710 թ. ար! (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 48), գրված է Խասուլթան (անթվական, Ձեռ. Վասպ. 144)։

†ԽԱՆՏԱՏԻԿ, իգ. < Թրք. خانم xanum «տիկին»+հյ. տատիկ բառերից։ Հիշատակված եմ գտնում 1635 թ. (Rapport Belgique 135) և մի անգամ էլ ԺԷ դարից (Ձեռ. Սանաս. 17 բ)։

*ԽԱՆՏՄԱՑՐԻ տես Խուանդ։

*ԽԱՆՏՈՒՏ, իգ. < պրս. خان xān «իշխան»+دوده dūde «մեծ ցեղ կամ վաղնջական տոհմություն» (ԳԴ) բառերից, որով Խանդուտ լինում է «իշխանատոհմ, իշխանական տոհմից»։ Գրված է զանազան ձևերով, որոնցից ճշտագույնն եմ համարում, ըստ իմ վերոհիշյալ ստուգաբանության, Խանդուդ։ Հնագույն վկայությունը ԺԵ դարից է։

— 1. Խանդուտ, հորեղբորդուստր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 2. Խանդուտ, դուստր Թելօքի՝ դստեր տանուտեր Առա-

քելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 3. խանքուք (կամ Հանթութ), կին Վարդաշահի և դուստր Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485—6։

—Ավելի ուշ ժամանակի հիշատակություններն են՝ Հանդուտ 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634), Խանտուտ 1540 թ. (Ձեռ. Մաղն. 29), 1548 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378), 1552 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1853), 1560 թ. (Տաշեան, Ցուց. 314), Խանդուտ 1566 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 249), Խանտուտ 1585 թ. (Ձեռ. Վասպ. 698), Խանդուդ 1604 թ. (Ձեռ. Վասպ. 813), Խանդուտ 1666 թ. (անդ 925)։ Անթվական են Խանտու! (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), Խանդուդ (Թորոս աղբ. Բ. 338) և խանտուտիկ (բայց 1351 թվից ուշ)՝ Ձեռ. Վենետ. Ա. 410։

**ԽԱՆՓԱԼ**, սեռն անհայտ. հիշված է 1475 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Մաղն. 35)։

**ԽԱՆՓԱՆ**, իգ. ծագումն ինձ անհայտ. կա մի անգամ՝

— խանփան, կին Պողոյնի, 1655 թ.—Justi 170 ա (Արձ. Հաղբատի)։

***ԽԱՆՓԱՇԱ**, իգ. < թրք. خانم xanum «տիկին»+پاشا paša «փաշա» բառերից կրճատված արտաբերությամբ։ Ավանդված է 1578 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472), Խանիփաշա 1596 թ. (Ձեռ. Վասպ. 749), 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734), Խանիփաշա 1655 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 549)։ Անթվական են Խանփաշա՝ Ձեռ. Վասպ. 342 և Խանիփաշա ար! (Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ)։

***ԽԱՆՓԱՐԻ**, իգ. < պրս. خان xān «իշխան»+پری parī «պարիկ, փերի» բառերից (իբր թե խանի պարիկը, գեղեցկուհին)։ Պարսից մեջ սովորական իգական անուն է այժմ (ըստ Justi 170 ա)։ Հիշատակված է 1620 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 259), 1674 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 բ), 1683 թ. (Manus. brit. mus. 36 ա), 1687 թ. (Ձեռ. Թաւր. 24)։

***ԽԱՆՓԱՐՎԱՐ**, իգ. < պրս. خان xān «իշխան» + پرور parvar «սնուցանել» բառերից (իբր թե խանին սնուցանող)։ Ավանդված եմ գտնում 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 բ) և անհայտ թվականով (բայց 1526 թվից ուշ)՝ Ձեռ. Մաղն. 15։

***ԽԱՆՓԷՐՎԱ**, իգ. < պրս. خان xān «իշխան»+پروا pervā «հանգիստ, դադար» բառերից (իբր իշխանի հանգիստը)։ Գտնում եմ մի անգամ հիշատակված խանփէրվոհ ձևով՝ 1703 թվին գրված մի կոնդակում (Manus. brit. mus. 265 բ)։

*ԽԱՇՈՒՏ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում ենք հիշատակված՝*

— Խաշուտ, տանուտեր Շիրակավանի. *Մխիթարիչ տանուտերի հետ միասին փնացել են Շիրակավանի մոտակա Ս. Աստվածածին եկեղեցին, որ վաղուց իվեր խափանված էր, նորոգել են, միաբանություն հաստատել և նրանց էլ հարկից ազատ կացրել (ԺԳ դար)։—Արձ. Շիրակ 10։*

† *ԽԱՉԱԲԱԲԱ, ար. < հյ.* խաչ+*թրք.* بابا baba *«հայր» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1581 թ.* Խաչպապա *ձևով (Սիսական 423 բ)։*

† *ԽԱՉԱԶԻԶ, ար. < հյ.* խաչ *բառից + արաբ.* عزيز ʿazīz *«սուրբ»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։*

— Խաչազիզ *եղբորթոռ Լիանոսի, որ սպացավ մի Ասեստաբան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա 120։*

† *ԽԱՉԱՆԷՍ, ար. կազմված է* խաչ *բառից, բայց ազդված* Յովհանէս, Վրթանէս *անուններից։ Հազվագյուտ գործածություն ունի հների մոտ և այժմ էլ անգործածական է։ Իբրև ազգանուն հիշված* Խաչենիսենֆ *ձևով՝ 1245 թ. մի արձանագրության մեջ (Արցախ. 379)։*

-- Խաչանէս, *հիշված 1561 թ. Ձեռ. Դաշեան, Ա. 46 բ.— (հենց հիշված է* Ցովանէս *անվան կողքին. «եղբարց իմոց Ցովանիսին, Խաչանիսին...»։—Մի ուրիշ անթվական հիշատակարանում (անդ՝ Բ. 31 ա)։*

† *ԽԱՉԱՆՈՒՆ, ար. < հյ.* խաչ+անուն *բառերից։*

— 1. Խաչանուն, *գրիչ Ժ—ԺԱ դարից (Տաշեան, Ցուց 15)։*

— 2. Խաչանուն *հիշված է նաև 1609 թ. (Ձեռ. Սեբ=ՀԱ 1925, 474)։*

— *Նույն անվան կրճատ ձևն է* Խաչան *կամ* Խէչան, *որ հիշված է 1793 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 206)։ Կենդանի է նաև այժմ. և սրանից է կազմված* Խաչանեան *ազգանունը։*

† *ԽԱՉԱՏՈՒՐ, ար. <հյ.* խաչ+տուր *բառերից, իբրև «խաչի տվածը». ինչպես ունինք Աստուածատուր, Տիրատուր, Վիրապատուր, Գրիգորատուր, Քրիստոսատուր. հմմտ. հուն.* Σταυρός *անձնանունը, որ բուն նշանակում է «խաչ»։ Գործածական է ԺԱ դարից մինչև այժմ։ Փաղաքշական ձևերն են Խաչիկ, Խաչուկ (այս երկուսը տես առանձին), Խաչօ (արդեն հիշված 1654 թ. Ձեռ. Վասպ. 290), Խէչօ, Խաչխ։ Ծաղրաբար Դրնդ. 60 գրում է Խաչածուրը։*

— 1. **Խաչատուր** դպրապետ, ուղեկիցներից մեկն էր Պետրոս Գետադարձ կաթողիկոսի, երբ սա գնում էր Պոլիս՝ կայսեր ներկայանալու «1047 Թ».—Ուռհ. 105։

— 2. **Խաչատուր** Շիրակունի, վեստ. փառքի համար դարձավ հունադավան և նշանակվեց կայսեր կողմից իշխան Անտիոքի՝ ծովեզերաց Իսաւրիոյ։ Իր զորքով օգնական հասավ Եդեսիոյ և երկու անգամ ազատեց քաղաքը Սելճուքների հարձակումից (1060)։ Հույները նախանձեցին և չարախոսելով նրան կայսեր մոտ, պաշտոնանկ անել տվին։ Երբ Դիոգէն Ռոմանոս Դ կայսրը հաղթվելով Ալփասլանից՝ վտարվեց հույների ձեռքով, Խաչատուրը իր զորքով գնաց ազատեց նրան և տարավ Ատանա նստեցրեց (1071)։ Իսկ ինքը դուրս եկավ բռնակալ կայսեր դեմ, սակայն հաղթվեց ու գերի տարվեց Անդրոնիկոս կայսերորդի զորավարի մոտ։ Սա էլ պատիժներ տվեց նրան ու արձակեց։ Որովհետև հունադավանության մեջ հավատարիմ չէր, ուստի իր խոստովանահայր հույն աբեղան դավաճանորեն խեղդեց նրան Անդրիոն բերդում (1076 Թ)։—Չամչ. Բ. 972, 992, 1001. Սիսուան 46—47. Դուրեան, Ազգ. պատմ. 403—4։—Նույն անձը կոչվում է նաև Բեխդ, որ տես առանձին։

— 3. **Խաչատուր** ոմն, որ իր անունը արձանագրել է Խոշունի (Հոռոմոսի մոտ) աշտարակի հյուսիսային պատի վրա, 1102 Թ.—Շիրակ 18։

— 4. **Խաչատուր** Անեցի, աշակերտ Սարգիս վարդապետի Փառիսոսոյ, որ է Յովհաննէս Սարկաւագ վարդապետ («† 1129 Թ.»). դասընկերն է Երեմիա Անձրևիկի.—Սամ. անեց. 128. Յուշիկք Բ. 305. Զարբ. Հին դպր. 615։

— 5. **Խաչատուր**, առաջնորդ Հոռոմոսի վանաց, հիշված է 1174 Թ. և 1181 Թ.—Սարգիսեան, Տեղագր. 148, Շիրակ 21, 27, 28. Արրտ. 1870, 299, Զարբ. Թրգմ. 159, Ձեռ. Վեննետ. Ա. 395, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 15։

— 6. **Խաչատուր** վրդ. Տարոնեցի, առաջնորդ Հաղարծնի վանուց, որով և կոչվում է նաև Հաղարծնեցի։ Ընկերակցությամբ Սուքիասի նորոգեց Հաղարծնի Ս. Գրիգոր եկեղեցին, «հրամանաւ Թագաւորին և իւր մեծ իշխանին Սարգսի ամիր սպասալարի», 1155 Թ. (Արձ. Արցախ 367. իսկ Սմբատեանց՝ Գեղարքունի 184 դնում է 1184 Թ)։ Մին է այն «հիւսիսայիններից», որոնք գրեցին Գրիգոր Դ Տղային և հակառակ կանգնեցին միության խնդրին («1178 Թ») (Շնորհ. Թղ. 308)։ Կանոնավորել է հայկական

ձայնագրությունը, հորինել է բազմաթիվ գանձեր։ Իրն է հատկապես «Խորհուրդ խորին» շարականը, որի ծայրանունը Խաչատուր է։ Այսպես նաև շատ գանձերի։ Շարակնոցի սկզբում հիշվում է իբրև հեղինակ։—Կիր. ժբ. Պարգ. 621=Ժմ. 904.—իր գործերի ցանկը տես Զարբ. Հին դպր. 698—700, Տաշեան, Ցուց. 1097 ա. նաև Ջեռ. Ներս. 12—15.—իրենն է անշուշտ նաև «Գանձ Ս. Գէորգայ», հրատ. Վկ. գէ. էջ 70—74, Խաչատուր ծայրանունով։

— 7. Խաչատուր եպիսկոպոս Կարուց, հաջորդելով Աբրահամ եպիսկոպոսին (№ 19), որ իր ազգականն էր, գնաց Շնորհալու մոտ և նրանից եպիսկոպոս ձեռնադրվեց «1166 թ». ժամանակցեց Հռոմկլայի ժողովին «1179 թ».—Շնորհ. պտճ. 199. Շնորհ. Թղ. 219. Տաշեան, Ցուց. 335 և 350.—Ըստ Ալիշան՝ Այրարատ 76 Կարուց առաջնորդական աթոռը նստել է 1168—73 թ. որ ըստ վերի ցուցումների պետք է փոխել 1166—1179 թ։

— 8. Խաչատուր քահանա, ծաղկող. ծաղկել է մի Աւետարան, որ օրինակեց Թորոս գրիչը՝ Դրազարկի վանքում, առաջնորդ Սամուէլի հրամանով, 1181 թ.—Manus. brit. mus. 5 բ։

— 9. Խաչատուր, հայր Վարդ քահանայի և պապ Պապեր գրչի, որ Սեբաստիայում օրինակեց Աւետարանը, 1193 թ.—Ջեռ. Վաստ. 80։

— 10. Խաչատուր աբեղա, աշակերտ Դաւիթ վարդապետ Քոբայրեցու. Հաղբատի վանքում օրինակեց Եփրեմի Մեկնութիւն Աւետարանի Համաբարբառ, 1195 թ.—Զարբ. Թրգմ. 448, Հայապ. 383, Ակինեան՝ Մատեն. հետազ. Ա. 46։

— 11. Խաչատուր, վանական Սկևռայ վանուց, աշակերտ Ներսէս Լամբրոնացու, հավաքող մատենից։ Գէորգ վարդապետին (№ 62) կազմել տվեց Հարանց վարքը՝ զանազան օրինակներից ի մի հավաքելով և մասամբ էլ ինքը հորինելով, վերահսկողությամբ իր ուսուցիչ Ն. Լամբրոնացու՝ 1192 թ. (տես յիշատ. Վրք. հց. Վենետ. 1855, յոյ.=Զարբ. Թրգմ. 551 և Սիսուան 98)։ Իր ուսուցչի մահվան վրա («1198 թ») գրեց սքանչելի մի Ողբ՝ աշխարհիկ լեզվով, որ տպված է Բազմ. 1874, էջ 242—3. համտ. անդ՝ 1886, էջ 101—2, Ջեռ. Վենետ. Բ. 1215, Հայապ. 433—5, Սիսուան 94—95, մի մասն էլ ՀԱ 1895, էջ 308.—Զարբ. Հին դպր. 662, 709։ Իբրև չքնաղ նմուշ միջնադարյան հայ գրականության տալիս եմ այդ Ողբը ամբողջությամբ.

Ա՛մ, զահ թողում, զամօթ մոռանամ,
Զիմ լուսեղէն տէրն մեծարեմ,

Զիր մննդեան պարտքն վճարեմ,
Անեմ զուշովս ու դառնամ ի միտ։
Երբ զիմ ճարակ տէրն յիշեցի,
Լոյս գնաց, ուժս պակասեաց,
Խելքս ու հոգիս իմ զումարեցաւ[1])։

Ցիշեմ զիմ տէրն ի շիքիրոնին[2]),
Ցիշեմ զիմ տէրն ի Նարեկացին,
Ցիշեմ զիմ տէրն առջև կանթեղին,
Ցիշեմ զիմ տէրն ի յեկեղեցին,
Ցիշեմ զիմ տէրն ի տունն ի զգեստին,
Ցիշեմ զիմ տէրն ի բազմախաչին[3]),
Ցիշեմ զիմ տէրն առջև խորանին,
Ցիշեմ զիմ տէրն ի պատարագին։

Առ ձեզ խօսիմ, Հին Կտակարանք,
Եկէք որ լանք, զի անպիտացոյ.
Ե՛կ Սողոմոն, զի անպիտացար,
Ե՛կ Դանիէլ, զի խոպանեցար,
Ե՛կ Արարածք[4]), լաց որ փակեցար,
Ար՛եկ Դաւիթ, որ անպարտեցար։
Առնում լալով վայիս ձայնակից
Զցովհաննէս Որդին Որոտման.
Ե՛կ, ժողովէ զՏեսիլն[5]) ու պահէ,
Զի այլ չկայ տէրն որ մեկնէ։
Բայց լաց ու վայ տուր ինձ գերելոյս,
Զի քո նման՝ տէր եմ կորուսել։
Դառն տեսար դու զՏէրն ի խաչին,
Ես դառն տեսայ զիմ տէրն ի տախտին[6]).
Դառն լուար դու զծարաւին,
Եւ դառն լուայ ես զօրն աղմկին։

Լացողք Թղթոց կաթողիկէից,
Եկէ՛ք ու լե՛ք[7]) վայիս ձայնակից.
Զունինք այլ տէր՝ որ հառկըցնէ,
Ու ոչ այլ գրող որ նոր նորոգէ։
Ե՛կ Առաքեալդ Տարսոնեցի
Ու մռ ամփոփէ զբանքս որ լսեցի։
Ե՛կ Աթանաս, լալոյս ձայնակից,
Բաներն քո են Պատարագի.

Բայց իմ հսկող տէրն չերևի.
Ոչ մեկնուի ու ոչ բացայայտի.
Ոչ այլ պայծառ Քարոզն ասուի,
Ոչ այլ նման քեզ տէր գտանի։
Ոչ ի քո բանք այլ ոք տոչորի,
Ոչ այլ հսկող Թևք քո տարածի,
Ոչ այն անքուն ակն բոլորի,
Ոչ այլ հեղեղ արցունքն իջանի,
Անտանելի հեծն այլ չլսուի։

Զայնեմ վանիցն, որ հովիւ չունի,
Կարօտ եղև արթուն հովըւի.
Ու Աստուած, ու զայս բանս այլ գրեցի,
Որ ով լինի՝ զերթ զինք չլինի[8])։

Իմ տէրն արթուն էր յամեն տեղի,
Կիրթ էր ու վարժ ամեն իմաստի,
Կենօքն սուրբ էր ու ոչ քմպիտի[9]),
Վարուքն ամբիծ նման Մովսէսի,
Սրտիւն ողորմ նման Պօղոսի,
Աղքատասէր նման Յիսուսի։
Ներսէս պսակ էր յեկեղեցի,
Զարթուցանէր զամենն ի բարի.
Ներսէս ոչ առ ծուլիցն ի տեղի,
Հեզ և հանդարտ արթնոցն ի բարի։
Ներսէս արթուն էր դէմ գիշերի,
Հանէր ի գլուխ զցայգն ի կարգի,
Հետ սահմանէր զկարգն ի տեղի,
Հետ խոկալով՝ գրէր գրուի[10])։
Երբ առաւօտ լինէր ցորեկի,
Սկիզբն դնէր նա պատարագի։

Ներսէս ցասումն էր ընդդէմ ախտից,
Զար խորհրդոց չունէր նա տեղի.
Բայց զուարթուն էր ի պատարագի,
Հեշտ և կամակ եղբարցն ամենի։
Ներսէս աղբիւր անցամաքելի
Ունէր ի գլուխն ի յիւր գովելի,
Հետ տոչորէր յաղագս ամենի,
Հետ արտասուէր ի պատարագի։

Ներսէս վստահ էր ի սէրն Յիսուսի,
Մեղաւորաց տայր զհկեղեցի,
Ցիշէր զբանն մեծ տէրունի,
Թէ «Ես եկի վանց[11]) մեղաւորի»։
Ներսէս այրեաց էր խնամածու,
Որբոցն հետ տեղի խօսելու,
Ունևորացն օրինակ բարւոյ,
Զունևորացն տուն կենալոյ։
Աւա՜ղ մտացն որ դադարեցաւ,
Աւա՜ղ գրչին որ խոպանացաւ,
Աւա՜ղ բանին որ պակասեցաւ,
Աւա՜ղ տեսիցն որ թառամեցաւ,
Աւա՜ղ բառին որ աւաղեցաւ,
Աւա՜ղ գերեացս որ որբ մնացաք։
Դու, տէ՛ր, գտար որում ցանկացար,
Դու, տէ՛ր, հասար ում կարօտացար,
Դու, տէ՛ր, առեր որ վաստակեցեր,
Դու, տէ՛ր, տեսար որում ջանացար,
Դու, տէ՛ր, տուար ում անուանեցար,
Դու, տէ՛ր, հանգեար, զի աշխատեցար։
Ես աղաչեմ զիմ տէրդ բարի,
Ձեռամնունդ ծառայս քո գերի,
Որ զայս լալոյ բանս գրեցի,
Գիտեմ որ մերձ կաս այժմ Յիսուսի,
Ծունր կրկնեա վասն իմ ցանկալի,
Տուր աղաչանս ինձ աղերսալի,
Դառնալ ի հող. իՑՃ կՒաԾՖ չպԼտի՞:

— 12. Խաչատուր Սիւնեցի, օգնեց Պօղոս քահանա Սեբաստացուն՝ օրինակելու Յայսմաւուրքը՝ 30 ձեռագրերների համեմատությամբ (ԺԲ դար).—Manus. bibl. nat. էջ 99։

---

1) ջնջված, շփոթված տող. 2) նստարան. 3) եպիսկոպոսական շուրջառ. 4) Մովսէսի Ծննդոց գիրքն է. այս բոլորը նույն հեղինակների գրքերն են, որ Լամբրոնացին կարդում էր, իսկ այժմ անտէր մնացին, որովհետև նրանք կարդացող ու մեկնող Լամբրոնացին չկա. 5) Յովհաննու Յայտնութեան գիրքն է ակնարկում. 6) մեռելի մահիճն է ակնարկում. 7) եղեք . 8) ով էլ որ լինի, նրա նմանը չի լինել. նա աննման էր. 9) կապիտ բառի թաթարական ձեն է. 10) գրվի «գրքեր». 11) վասն, համար.

— 13. Խաչատուր *վարդապետ, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1024, 247)։*

— 14. Խաչատուր *գրիչ, որ օրինակել է մի հին Աւետարան, որից էլ արտագրել է Առաքել գրիչը՝ Կամխի Եղիվանք անապատում, 1203 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 420։*

— 15. Խաչատուր, *մերձավոր նույն Առաքել գրչի, 1203 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 420։*

— 16. Խաչատուր, *երաժիշտ Ղազարու վանից, նվիրատու ձեռագրի, 1204 թ.—Հայապ. 450. Ձեռ. Վիեննա. Բ. 473։*

— 17. Խաչատուր *ոմն, Տարօնում նվիրատու եղավ ձեռագրի, 1204 թ.—Հայապ. 450։*

— 18. Խաչատուր, *եպիսկոպոս Տարօնի, 1204—5 թ.—Տոմաշէկ, Սասուն 47։*

— 19. Խաչատուր, *հորեղբայր Պետրոս գրիչ քահանայի, որին օգնում էր Սկևռայ վանքում՝ արտագրութեան ժամանակ, թուղթ կոկելով և ներկ պատրաստելով, 1205 թ.—Միսուան 101։*

— 20. Խաչատուր *վարդապետ Սանահնի, մերձավոր կամ օգնական Յովհաննէս գրչի, որ օրինակեց Նոննոսը՝ 1208 թ.—Զարբ. Թրգմ. 636։*

— 21. Խաչատուր, *գրիչ կամ փորագրիչ, փորագրել է Խրծկոնքի մի արձանագրությունը՝ 1230 թ.—Սարգիսեան, Տեղագր. 210, Շիրակ 128։*

— 22. Խաչատուր *վարդապետ, ուսուցիչ Գրիգոր գրչի, որ Կարինում օրինակեց Աւետարանը՝ 1230 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 573։*

— 23. Խաչատուր *քահանա, «յոյժ հմուտ և հռետոր այսմ արհեստի» (գրչութեան), հայր նույն Գրիգոր գրչի, որ Կարինում արտագրեց Աւետարանը՝ 1230 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 572։*

— 24. Խաչատուր *քահանա, հայր Վասիլ քահանայի, որ Կիլիկիոյ Ս. Թորոս վանքում օրինակեց Աւետարանը 1231 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 222 բ։*

— 25. Խաչատուր *քահանա, Հռոմի Հայոց հոգետան մեջ. հիշված է 1242 թ.—Թորոս աղբ. Բ. 441։*

— 26. Խաչատուր *վարդապետ, առաջնորդ Հաղարծնի վանքի. հիշված է 1244 թ.—Արցախ 368։ (Եթե թվականը ճիշտ է, չի կարող նույն լինել № 6 Խաչատուր Տարօնեցու հետ, որովհետև այս վերջինը 1155 կամ 1178 թվին արդեն առաջնորդ էր այնտեղ, և այլ ևս 66 և ավելի տարի ապրել չէր կարող)։*

— 27. Խաչատուր, *եղբայր Յովհաննէս Ցխիկի, որ նվիրատ-*

*վություններ է արել Հոռոմոսի վանքին, 1251 թ.—Շիրակ 25։*

— 28. **Խաչատուր**, *գրիչ. Կիրակոս կրոնավորի համար գրեց մի Աւետարան, 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379։*

— 29. **Խաչատուր** *վարդապետ, վանահայր Նոր-Գետիկի, հաջորդեց Յովհաննէս Արմանեցուն. իր եղբոր՝ Բարսեղի հետ շինեց Ս. Գէորգի տաճարը Նոր-Գետիկում, 1254 թ.—Կիր. ժե.—Արձ. Արցախ 351, 354, Ազգագր. հանդ. ժ, 36։*

— 30. **Խաչատուր** *կրոնավոր, օրինակեց Նարեկը Դրազարկում, 1257 թ.—Մ. Մկրեան, Գր. Նարեկացի (դոկտ. դիսերտ. անտիպ Ձեռ. էջ 169)։*

— 31. **Խաչատուր** *տես Լիտանոս № 2, 1258 թ։*

— 32. **Խաչատուր**, *վանահայր Կամեաց վանքի, 1260 թ?—Քօսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 22։*

— 33. **Խաչտուր** (ա *սղված*), *մի հող է նվիրել Բագնայրին՝ Աբրահամ վանահոր ժամանակ.—Արձ. Շիրակ 122 (թվական չունի. բայց որովհետև Աբրահամ վանահայրը հիշված է 1262 թվին, ուստի Խաչատուրն էլ 1260 ական թվերից պիտի լինի)։*

— 34. **Խաչատուր** *վարդապետ ոմն, մեռել է 1261 թ. տապանաքարը գտնվում է Դարբանդում, Մոլլա-Խալիլի մոտ, Գողոս-Բուլաղի հին հայ գերեզմանատնում.—Սմբատեանց, Նկարագիր Ս. Ստեփ. վանաց Սաղիանի, էջ 178։*

— 35. **Խաչատուր** *շինական, Դուլուսի փեսան, որին Խաւռազ իշխանը իբր ճորտ նվիրեց Բագնայրի վանքին՝ 1262 թ.—Սարգիսեան, Տեղագր. 188—9, Շիրակ 116։*

— 36. **Խաչատուր**, *շինեց Արցախի Ջրաբերդ գավառում Եղիշէ առաքեալի ժամատունը, հայր Սիմէոնի առաջնորդության ժամանակ, 1264 թ.—Շահխաթ. Բ. 379, Արցախ 235։*

— 37. **Խաչատուր** *կազմարար, կազմել է մի Շարակնոց, 1269 թ?—Տաշեան, Ցուց. 446։*

— 38. **Խաչատուր**, *մայրենի հայր (պապ) Կոստանդին Հռիփսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան, 1269 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 656։*

— 39. **Խաչատուր** *սարկավագ, որդի Հեպայի, միաբան Խորին անապատի (Կիլիկիա), 1270 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 235, Սիսուան 152։*

— 40. **Խաչատուր**, *եղբայր Մանուէլ քահանայի, որ նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Թանատի վանքի մոտ՝*

Արգաղ տանող ճամբի վրա, 1277 թ.—Սիսական 124, Բաջբերունի՝ Արրտ. 1889, էջ 107, Յովսէփեան՝ Խաղբակեանք Ա. 42։

— 41. **Խաչատուր** վարդապետ, միաբան Սաղմոսավանից, ուսուցիչ Մկրտիչ քահանայի, որ օրինակեց Կարբիում՝ Խոսրով Անձևացու Մեկնութիւն ժամակարգութեան, Պատարագամատոյց, Մեսրոպ երեց, Ջենոբ Գլակ և Յովհան Մամիկոնեան, 1278 թ.—Պատմ. Տարօնոյ, Երևան 1941, էջ XIII։

— 42. **Խաչատուր** եպիսկոպոս Բաջբերունեաց. ձեռնադրեց Մխիթար Սասնեցուն՝ շուրջ 1280 թ.—Մկ. մեծոփ. 28։ Նույնը հիշում է նաև Թովմա Մեծոփեցին։

— 43. **Խաչատուր** քահանա, փեսա (իմա՛ քեռայր) Թովմայ քահանայի, որ նրա և իրայնոց հոգուն մի խաչ կանգնեցրեց Մարցի հին հանգստարանում, 1285 թ.—Ազգագր. հանդ. Է, 350։

— 44. **Խաչատուր** դպիր, աշակերտ Գէորգ վարդապետ Սկևռացու. գրել է Աստուածաշունչը՝ 1285 թ.—Ջարբ. Թրգմ. 156, Հայապ. 496—7։—Սրա հետ նույն է երևում՝

— 45. **Խաչատուր** պատանի ի Սկեռայ, որի համար Ստեփաննոս Գոյներիցանց արտագրել է Աստուածաշունչը՝ 1285 թ.—Սիսուան 106։

— 46. **Խաչատուր** քահանա, գրիչ. Աբրահամ քահանայի խնդրանոք օրինակեց Աւետարանը՝ Կիպրոս կղզում 1287 թ.—ՀԱ 1937, 380։

— 47. **Խաչատուր**, մի խաչքար է կանգնեցրել Երուանդակերտի գերեզմանատանում, իր և իր եղբայրների հիշատակին, 1292 թ.—Այրարատ 63։

— 48. **Խաչատուր** գրիչ, Յովհաննէս քահանայի համար, Փերճերի վանքում օրինակեց մի ժողովածու, 1292 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 347։—Հմմտ. № 52։

— 49. **Խաչատուր** ոմն, վերջին ստացող Աւետարանի, 1295 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 515։

— 50. **Խաչատուր**, առաջնորդ Խառաբաստի Ջարի վանքի, 1297 թ.—Տաթև 1927, 187։

— 51. **Խաչատուր** վարդապետ Յովհաննավանից, յԱրմէնի լերինս. ընկեր Գորգ միայնակեցի. հիշված է 1298 թ.—Տաշեան, Ցուց. 730, Սիսուան 96 ա։

— 52. **Խաչատուր** սարկավագ, գրիչ. օրինակից Աւետարանը Սարգիս քահանայի համար, Պերճերի վանքում, 1299 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 684, Սիսուան 152։—Հմմտ. № 48։

— 53. Խաչատուր վանահայր Կամրջաձորի, հաջորդեց Սարգիս վանահոր (ԺԳ դար).—Այրարատ 549։

— 54. Խաչոյ, հայր Մարտիրոսի, մեծ պապ Շահրիման Թըլկուրանցու (ԺԳ դար).—Հայապ. 574։

— 55. Խաչատուր ոմն, մի այգի է նվիրել Հայրավանքին (ԺԳ դար).—Սիսական 41, Սմբատեանց՝ Գեղարքունի 435։

— 56. Խաչատուր Ա. Տիգրանակերտցի, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Ստեփան Բ Ընձևացու և նախորդ Ստեփաննոս Գ-ի (ԺԳ դար).—Հաւաք. 59 (կեղծիք)։

— 57. Խաչատուր աբեղա, գրիչ. Հիմ կղզում օրինակեց Աւետարանը Աստուածատուր քահանայի համար, 1301 Թ.—Ձեռ. Վասպ. 139—140։

— 58. Խաչատուր վանահայր (ճր վանքի), որի եղբայրն էլ կոչվում է Վարդապետ. հիշված են 1303 Թ.—Ձեռ. Վասպ. 64։

— 59. Խաչատուր Երզնկացի, օրինակեց Մեկնութիւն ժողովողի, Տարսայիճ իշխանի որդի Ստեփանոս արքեպիսկոպոսի համար (Օրբելեանն է) Արատեսի մենաստանում, 1303 Թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 47 բ։

— 60. Խաչատուր սարկավագ որդի Տնկիկի, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Մարտիրոսի համար, Տփղիսում 1304 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։

— 61. Խաչատուր կրոնավոր, որդի Վարդան քահանայի և եղբայր Կիւրիոնի, որ օրինակեց Շնորհալու Մեկնութիւն Բարձրացուցէքի, 1311 Թ.—Ակինեան, Կիւրիոն կթղ. 265—6։

— 62. Խաչատուր կրոնավոր, որդի Սարգսի. գրիչ, օրինակել է մի Շարակնոց, 1312 Թ.—Տաշեան, Ցուց. 524։

— 63. Խաչատուր գրիչ. օրինակել է հարուստ մի Շարակնոց, 1312 Թ.—Ամատունի, Պարականոն շար. 81։

— 64. Խաչատուր գրիչ. օրինակել է Լուծմունք Դիոնեսիոսի գրոց, ճառք Յովհաննու Ծործորեցւոյ են, ի «Ճանճի խազ», 1314 Թ.—Ձեռ. Կարին, 40։

— 65. Խաչատուր վարդապետ Կեչառուեցի, Պռօշեան տոհմից (սխալմամբ կարծված է աշակերտ Եսայի Նչեցու). նախապես քահանա էր. իր որդին է Մկրտիչ վարդապետ։ Խաչատուրը ապրել է ԺԳ դարի վերջը և ԺԴ դարի սկիզբը։ Իր խնդրանքով է որ Օրբելեանը գրել է իր Ողբը (1299 Թ. Ձեռ. Սևան. 41 բ) և «Պատճառ ժողովոյն՝ Քաղկեդոնի» (1302 Թ)։ Եղեգիսում, խնդրանոք Սահակ քահանայի արտագրել է մի Աւետարան, 1315

թ. (Բարխուտ. Աղուանից երկ. 246)։ Իր գերեզմանը գտնվում է Ծառաքարի վիմափոր վանքում (տես Ջեռ. Դադեան, Ա. 77 ա), իսկ ըստ Ցկ. կր. 20 Ներքին Բասենի բերդում։ Խաչատուրը նըշանավոր տաղասաց է. ունի Ճառ վասն գալստեան Աստուծոյ առ մարդիկ (3 մոգերի գալստյան պատմությունն է), խմբագրութիւն Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի, Կաֆայք և Բարառնութիւնք (սխալ է կարծել թե գրել է Հռովմում՝ պապի մոտ, ինչպես ենթադրում է Սիսական 134 ա)։ Տաղերից նշանավոր են՝ Այս կեանքս է յերազ նման, Թէ մարդ ես և միտք ունիս, Ես եմ կորուսեալ ոչխար, Տաղ վասն կանանց, Վասն գալըստեան Աստուծոյ առ մարդիկ, Ողբ իշխանացն Հայոց, Ողբ վասն աւերման տանս Արևելեան (Հայապ. 527), Համառօտ Պատմութիւն հին և նոր Կտակարանաց են։—Տաշեանը գտնում է, որ Խաչատուրի խմբագրությունը Ստոյն-Կալիսթենեայ շատ թեթև բան է. նա չէ փոփոխած բնագիրը այնպես, ինչպես կարծել է տալիս «խմբագրութիւն» բառը. այլ միայն փոքր հապավումներով արտագրել է։ Կաֆաները իրենն են և խղճուկ լեզվով են. իսկ Բարառնութիւնները, որոնք ուռուցիկ և մութ լեզվով են գրված, իրենը չեն։ Մի ճաշակ տալու համար իր լեզվից դնում ենք այստեղ մի կտոր Կալիսթենէսից.

Ձայն արար, ձայն արար,
Փող քնարին ձայն արար։
Հաներ զթուրդ քո ճոհար,
՚ւ երիվարդ քո հեծար.
Զամբոխդ ի հանդէս տարար,
Զօրօք զօրավիգ եղար.
Ի Դարեհի հանդէպ հասար,
Ճակատն բոլոր անցար.
Փոթորակի պէս խառնեցար,
Արծըւաբար դու բարձրացար։...
Ճակատ առ ճակատ եղեն,
Խառնեցան յանդուգն ու ահագին,
Դիակօք զվայրն լցին.
Խաւարաւ արեն ի յերկին։
Խառնամբոխ մեծ հանդիսին
Աղեքսանդրու և Դարեհիս,
Ուսերամերկ կարաւանիս
Անձապարեալք ռատ ի գնդիս.

Դիաթաւալ արեան ծովիս,
Ճախր և ճակատ ի մէջ դաշտիս.
Կէսք վա՛յ ասեն յասպարիսիս,
Կէսք վա՛յ ասեն յաջողակիս։
Դարեհ, դարձաւ ալամդ ի չար,
Բախտդ նենգեց քեզ չարաչար.
Դարձիր ի հետ ՚ւ արա քեզ ճար.
Հա՛ն արտասուս անձրևաշար.
Բանդ ի վերուստ է անհնար,
Խափանեցաւ խորհուրդդ անկար։

(Սիսուան 399)

Մի փոքրիկ հատված էլ տաղերից.

Այս կեանքս է ի ծով նման,
Ու մարդիկ ի ներս կու լողան.
Մարմինս է ի նաւ նման,
Հոգիս գանձ է անմահական.
Միտքս է նաւավար ճարտար,
Որ հանէ ցամաքն յերևան.
Աւաղ թէ կոտրի այս նաւս,
Մեք ի վայր մնամք փոշիման։

Օրբ. ողբ 51 և հկճռ. ժա. Ցկ. կր. 20.—Վրդն. աշխ. 504.—սեռ. խաչատրոյ՝ հեչառ. 189. Օրբ. ողբ. 54.—ընդարձակ աշխատութիւն ունի Տաշեան, Ուսումն. Ստոյն-Կալիսթենեայ, հատկապես էջ 85—128. տես նաև իր Ցուց. 1096 գ. Հայապ. 118, Կոստանեան՝ Նոր ժող. Գ. 28—32, Այրարատ 267—8, Manus. brit. mus. 112—9։

— 66. Խաչատուր քահանա, որդի Յակոբ քահանայի. գրիչ. Պօղոս արքեպիսկոպոսի համար արտագրեց Աւետարանը՝ Սարայ մայրաքաղաքում, 1319 թ։ Գրիչը գանգատվում է որ «բնական կայանք չունէի. (հ)ապա ի տեղւոջէ ի տեղի կու դեգերէ(ի). և այլ զի սիրտս վշտացեալ էր։ Եւ այս աշխարհիս ձմեռն խիստ է ու հաւայն չէ գրագրու լայէխ։ Բայց գրեցաւ սա ի մայրաքաղաքիս Սարայ, որ է ի հիւսիսոյ կողմ մերձ առ ծովուն Կասպիականի, ընդ որում շուրջ պատէ զնովաւ մեծ և հզօր գետն Էթիլ (Վոլգա)»։—Տաշեան, Ցուց. 885։

— 67. Խաչատուր կրօնավոր. իր և իր եղբօրորդի Բարթուղիմէոսի համար գրել տվեց մի Մաշտոց՝ Ապահունեաց Թոնրակ գյուղում, 1331 թ.—Manus. bibl. nat. 27։

— 68. Խաչատուր *եպիսկոպոս, գրիչ. Լիմ անապատում օրինակեց Աւետարանը Անարոն միայնակեցի համար, 1333 թ.— Ակինեան, Գաւազանագիրք 57։*

— 69. Խաչատուր *սարկավագ, որդի Ծերուն քահանայի. մայրն է Խելօք. 16 տող ոտանաւորով հայտնում է թե կազմել է Աւետարանը, բայց թիվը չէ նշանակած։ Աւետարանը գրել է Սարգիս քահանան, Սսում, կոչ գեղացի Անդրէաս քահանայի համար, 1336 թ։ Լալայեանը (Ձեռ. Վասպ. 183 կազմող է կոչում Յովսէփին. բայց այս Յովսէփը շատ ուշ է կազմել գիրքը. այն է 1602 թ. (տես անդ՝ էջ 189)։ Ուստի թերևս Խաչատուր սարկավագը առաջին կազմողն է 1336 թ։ Որքան վատ է ճիշտ չնկարագրել հիշատակարանները։*

— 70. Խաչատուր, *«ասպնջական» Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի 4 ա։*

— 71. Խաչատուր *քահանա, գրիչ. օրինակեց Շնորհալու Յիսուս որդին, 1357 թ.—Ձեռ. Կարին. 170, Սմբատեանց՝ Երընջակ 201։*

— 72. Խաչատուր, *որդի Աբրահամ քահանայի. ծնվել է 1358 թ. Հոռմկլայի Ծակաղբիւր գյուղում կամ Ուռհայում.— Ձեռ. Վեննա. Ա. 614։*

— 73. Խաչատուր, *որդի Ոսկեհերի և եղբայր Գէորգ կրոնավորի, որ ստացավ Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու., 1363 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 228։*

— 74. Խաչատուր *վարդապետ, ուսուցիչ՝ Վարդան վարդապետի Բաղիշեցոյ, որ Պօղոս երեցին օրինակել տվեց Նւագրի գիրքը, 1384 թ.—Սարգիսեան, Նւագր. Ներած. ՃՀԹ։*

— 75. Խաչատուր *երեց, իբր վկայութեամբ հաստատում է մի պայմանագիր, 1387 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45։*

— 76. Խաչատուր, *եպիսկոպոս Արճէշի. մեռած և թաղված էր Սուխարայ վանքում նախ քան 1401 թ.—Մեծոփ. 37, Աղգապ. 2000։*

— 77. Խաչատուր, *որդի Աստուածատուրի, որ շինեց Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետ եկեղեցին, 1408 թ.* --Кучук—Иоаннесов, Стар. арм. над. *37։*

— 78. Խաչատուր *կրոնավոր, օրինակեց Հարանց վարքը Յովհաննէս սարկավագի համար, Աւագ վանքում, 1418 թ.—Աթան. յոջ. ժը։*

— 79. Խաչատուր, որդի Թումայի, մայրն է Թամար, հօրեղբայրն է Եղիա. Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Ատոմ քահանային, 1418 թ.—Ջեռ. Վասպ. 310—312։

— 80. Խաչատուր սարկավագ, ազգական Յակոբ ճգնավորի, որ Պաւլու Ագրակում Աստուածատուր դպրին գրել տվեց մի Տաղարան, 1421 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1927, 313։

— 81. Խաչատուր, հայր Կարապետ աբեղա գրչի, որ տանուտեր Մկրտիչի համար, Կողուց վանքում օրինակեց Ճառընտիր-Տօնականը՝ 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 82. Խաչատուր քահանա, որդի Թումայ քահանայի. Մարգարէ աբեղային գրել տվեց մի Աւետարան, Բուխտանից երկրում (Մարտաստան), 1428 թ.—Նոտարք 90։

— 83. Խաչատուր, պարոն, Տրապիզոնի Զարխափան եկեղեցու շինողներից մեկն է, 1431 թ.—Արձ. Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 81։

— 84. Խաչատուր, որդի պարոն Շամշադինի, որ Կաֆայում, Քրիստոսատուր կրոնավորին գրել տվեց Շնորհալու ստանավորները, 1432 թ.—Տաշեան, Ցուց. 1016 բ։

— 85. Խաչատուր, ազգական Յովհաննէս կրոնավորի, որ Մոգոց երկրի Սուրբկանց գյուղում գնեց մի հին Աւետարան, 1433 թ.—Ջեռ. Վասպ. 204։

— 86. Խաչատուր քահանա, որդի Քուրդամիրի, որ ամուսինն էր Շնոֆորի՝ քրոջ Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում, Դաւիթ աբեղային գրել տվեց մի Ճաշոց, 1438 թ.—Ջեռ. Սեբ.= ՀԱ 1926, 243։

— 87. Խաչատուր պարոն Դարանաղեցի (Եկեղեաց գավառ), հիշված 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49 բ։

— 88. Խաչատուր, հայր Թումայ քահանայի, որ օրինակեց մի Ճաշոց, 1441 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244։

— 89. Խաչատուր, որդի Կարապետ քահանայի, երեց եղբայր Աստուածատուր քահանայի, որ Խլաթում օրինակեց Աւետարանը, 1443 թ. (այս թվին Խաչատուրը մեռած էր երիտասարդ հասակում).—Ջեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 90. Խաչատուր կրոնավոր, ուսուցիչ Սարգիս գրչի, որ Երզնկայի մի վանքում, իր ուսուցչի հետ միասին օրինակեց Գր. Տաթևացու «Քաղուածոյ մեկնութիւն Մատթէոսի Աւետարանին», 1443 թ.—Ջեռ. Հալէպի, Բ. էջ 53 բ։

— 91. Խաչատուր աբեղա, աշակերտ Աւետիքի, որին կոչում է «քաջ հռետոր». գրիչ. օրինակեց Գր. Տաթևացու Կիւրղի «Պարապմանց գիրքը», 1444 թ.—Տաշեան, Ցուց. 455 բ։

— 92. Խաչատուր վարդապետ, իբրև գրիչ մասնակցեց այն Ցայսմաւուրքի գրութեան, որի վրա շատերն են աշխատել. ինքը Խաչատուր վարդապետը գրեց ութը թերթ (տետր). թերևս և ինքը տվեց արտագրութեան համար օրինակը, Երզնկա 1446 թ.—Նոտարք 149։

— 93. Խաչատուր երեց, գրիչ. օրինակեց Գանձարանը Տէր Աստուածատուրի պատվերով, Վան 1448 թ.—Նոտարք 158։

— 94. Խաչատուր, հայրն է Առաքել աբեղայի, որ Ուշտունեաց Բերդաձոր վանքում օրինակել է տվել Աւետարանը Մարգարէ գրչին, ՊՂԷ=1448 թ.—Ձեռ. Վասպ. 400 (Լալայեանը ձեռագրի նկարագրութեան մեջ ասում է թե գրիչն է Մարգարէ. նոյնպես թե ձեռագիրը կազմվել է 1596 թվին՝ Ղազարի ձեռքով։ Բայց այսպիսի տեղեկութիւններ ամենևին չկան հիշատակութեանց մեջ։ Միևնոյն ժամանակ Նոտարք 154—5 խոսում է մի Աւետարանի մասին, որ Առաքելը Բերդաձորում գրել է տվել Մարգարէ գրչին ՊՂԵ=1446 թ. (տես վերը Առաքել № 71)։ Երկուսը միևնոյն են՝ միայն Ե=Է տառերի շփոթութեամբ։ Նոտարքը չունի Ղազարի հիշատակութիւնը, ուստի կրճատել է ըստ իր սովորութեան։ Սակայն չէ՞ որ Լալայեանի մոտ հիշատակութիւնները ամբողջական պիտի լինեին...)։

— 95. Խաչատուր, հայր Ցովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ մի Աստուածաշունչ 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 115։

— 96. Խաչատուր, որդի ոսկերիչ Ցովհաննէսի, որի մահվան վրա, իր կինը Թուրվանդա՝ գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1449 թ.—Ձեռ. Վասպ. 404։

— 97. Խաչատուր տանուտէր, որդի Կիրակոսի. Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. էջ 419։

— 98. Խաչատուր քահանա, որդի Ցովհաննէսի և Թոռն խոջա Մուսեհի. իր որդի Դաւիթ նորընծա քահանայի հետ միասին Արճէշում, 1455 թ. սկսեց գրել մի Աւետարան. որդին մեռավ և հայրը նույն Աւետարանը նվիրեց Բաղէշի Ս. Կիրակոս եկեղեցուն։—Նոտարք 177։

— 99. Խաչատուր գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Կտուց անապատում, 1456 թ.—Manus. bibl. nat. էջ 8։

— 100. Խաչատուր, այրի քահանա, որ իր «հարազատ» Յովհաննէս քահանային, գրել տվեց մի ծաղկանկար Ճաշոց, 1459 թ.—Նոտարք 192.

— 101. Հաշտուր, հայր Թումայի, որ Ներսէս արեղային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

— 102. Խաչատուր խօջա, որդի Առաքելի. Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 437—9։

— 103. Խաչատուր, վոյթ (դատավոր) Լեհահայոց (Իլվովի), 1463—4 թ.—Բժշկեան, Ճանապ. Լեհ. 87, 110 > Նոտարք 210 և 218։

— 104. Խաչատուր, միաբան Յովհաննավանից, 1464 թ.—Այրարատ 172։

— 105. Խաչատուր, քահանա Վանի Պօղոս-Պետրոս եկեղեցու, 1465 թ.—Նոտարք 222։

— 106. Խաչատուր, գրել տվեց մի Աւետարան՝ Մոկաց Փառավանք գյուղում, Իսրայէլ գրչին, 1466 թ.—Նոտարք 225։

— 107. Խաչատուր, ամուսին Գուլբարի (=Գուլբահար) և փեսա (իմա քեռայր) Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 338։

— 108. Խաչատուր, որդի Սահակ երեցի, որ Կիւրղի վանքում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 257)։

— 109. Խաչատուր քահանա Անբերդի, հիշված 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 110. Խաչատուր, որդի Թորոսի և եղբայր Կիրակոս կրօնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 111. Խաչատուր քահանա Ուրծեցի, որդի Յորդանանի. ուսուցիչ Ուրծայ վանից Վրթանէս գրչի. գրիչ. օրինակել է [1]) Յայսմաւուրքը՝ Երերան վանքի համար, 1460 թ. [2]) Աւետարանը 1461 թ. [3]) Մայր Մաշտոցը՝ Արարատեան գավառի Ուրձ գյուղում, 1473 թ.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. հտ. Ա. էջ. հթ. Սեղրակեան, Հայ եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 106. Այրարատ 443, Այրիվ. 16։

— 112. Խաչատուր սարկավագ, որդի Յովհաննէս քահա-

նայի, Ուռիկ գյուղից, որ Երզնկայում, Մանուէլ երեցին գրել տվեց Աւետարանը, 1473 Թ։—Թորոս աղբ. Բ. 420։

— 113. **Խաչատուր** աբեղա, Գոնդուլլէի և նրա որդի խոջա Էգլշահի համար օրինակեց մի Աւետարան, Կտուց անապատում, 1475 Թ.—Ձեռ. Վասպ. 471—3։

— 114. **Խաչատուր** եպիսկոպոս, գրիչ. Ագուլեաց վանքում օրինակեց մի Ճաշոց տարեգիր, 1477 Թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակը, էջ 6)։

— 115. **Խաչատուր**, հանգուցեալ որդի Յովան գրչի, որ Ծովքի Ս. Նշան վանքում օրինակեց Գանձարանը՝ 1478 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1847։

— 116. **Խաչատուր**, որդի Թումայ քահանայի, որ Աղթամարում, տանուտեր Ծերենց Սատաղայի համար օրինակեց Աւետարանը՝ 1476 Թ. սրանից առաջ՝ Խաչատուրը պատանի հասակում «փոխեցաւ առ Քրիստոս, և եթող ինձ սուգ անմխիթար մինչև ի մահ, վէրք անողջանալի և խոց անբժշկելի»։—Ձեռ. Վասպ. 482։

— 117. **Խաչատուր** աբեղա, որդի Յովհաննէսի, գրիչ. Կտուց անապատում, Վարդան աբեղայի համար օրինակեց Աւետարանը, 1481 Թ.—Ձեռ. Վասպ. 487—9։

— 118. **Խաչատուր**, որդի Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1481 Թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 119. **Խաչատուր** աբեղա, փակակալ Հաւուցթառի վանից, հիշված 1482 Թ.—Այրարատ 357։

— 120. **Խաչատուր**, որդի Վարդանի և եղբայր Յովհանի, որ գրեց մի Աւետարան, որ գրել էր Մկրտիչ քահանան, Խիզանում, 1482 Թ.—Ձեռ. Վասպ. 492։

— 121. **Խաչատուր**, իր եղբայր Զաքարէի հետ մի խաչքար է կանգնեցրել իրենց հոր և եղբայրների հիշատակին, Ծարում, 1484 Թ.—Արցախ 406։

— 122. **Խաչատուր** վրդ. Իլովացի. «համշիրակ» եղբայր Երուսաղէմի Մկրտիչ պատրիարքի. Նրա հետ միասին ապրում էր Երուսաղէմում, 1484 Թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 52 ա։ — Նոյն է արդյոք սրա հետ՝

— 123. **Խաչատուր** վրդ. միաբան Երուսաղէմի, 1484 Թ.—Manus. brit. mus. 25 բ։

— 124. **Խաչատուր** աբեղա, միաբան Սեբաստիայի Ս. Աստ-

*ուածածին վանքի, 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։—Սրանից տարբեր է՝*

— 125. Խաչատուր *աբեղա, հայրապետ Սեբաստիայի Ս. Աստուածածին վանքի, 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։ Սրա հետ նույն կարող է լինել № 136։*

— 126. Խաչատուր, *հայր Ասիլ մելիք տիկնոջ, որ Ներսէս գրչից գնեց մի Աւետարան և նվիրեց Սարգիս երեցին, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 241։*

— 127. Խաչատուր *երեց, կանգնեցրել է մի խաչքար Կէօքարս գյուղում, պարոն Սմբատի հիշատակին, 1489 թ.—Սիսական 111։*

— 128. Խաչատուր, *քեռայր Թովմա վրդ. Մինասենցի և հայր Հայրապետ աբեղայի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։—Նույնը* Խաչիկ *անունով՝ Ձեռ. Վասպ. 393։*

— 129. Խաչատուր *սարկավագ, որդի Ցորդանանի՝ եղբոր Գալուստ աբեղայի, որ Կեչառուսում օրինակեց Աւետարանը՝ 1491 թ.—Ձեռ. Սևան. 10 բ։*

— 130. Խաչատուր, *որդի Մովսէս երեցի, որ Աւագ վանքում Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1494 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 576)։*

— 131. Խաչատուր *աբեղա, գրիչ. Երզնկայի Կապոսի անապատում գրեց Ոսկեփորիկը՝ Գրիգոր կրոնավորի համար, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 622։*

— 132. Խաչատուր *մալազ. միաբան Պալախորի վանքի, 1495 թ.—Ձեռ. Սանաս. 24 ա։*

— 133. Խաչատուր *աբեղա. գրիչ. օրինակել է Նարեկը՝ ՋԽԵ=1496 թ.—Ձեռ. Կարին. 176։*

— 134. Խաչատուր, *որդի Մարտիրոսի և եղբայր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 135. Խաչատուր *(այս Խաչատրիկ), աբեղա, գրիչ. Սեբաստիայում օրինակեց Ճաշոցը, 1499 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 316։*

— 136. Խաչատուր, *առաջնորդ Սեբաստիոյ Ս. Աստուածածին վանքի, հիշված է 1499 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 316։ Հմմտ. վերը № 125։*

— 137. Խաչատուր *Քասաղեցի, առաջնորդ Յովհաննավանքի (ԺՆ դարի վերջում).—Այրարատ 174։*

— 138. Խաչատուր, *որդի Աբրահամի. Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Կարապետ քահանային, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։*

— 139. Խաչատուր *եպիսկոպոս, օծումն ստացավ Արիստակէս կաթուղիկոսից և կարգվեց առաջնորդ Իլվովի Հայոց «1467 թ» (Ազգապ. 2175, Բժշկեան, Պատմ. Լեհաստանի Հայոց, 110)։ Ըստ Ալիշան, Կամենից՝ էջ ե, նստել է 1463 թ. և մեռել 1502 թ. իսկ ըստ այլ ժամանակագրերի՝ նստել է 1461 թ. (Կամենից 134, 135, 226)։ Լեհական աղբյուրներում կոչված է* Christyn *1478 թ.* (REA *7, 21) կամ* Christophorus *1451—1478* † (REA *7, 40)։*

— 140. Խաչատուր *Կողբեցի, նոր նահատակ. ընտանյոք գնացել էր Տիգրանակերտ. մի օր՝ շուկա էր գնացել հաց առնելու. երկու զինվոր պատահեցին նրան և հարցրին. «Հայ ես թե տաճիկ»։ Պատասխանեց. «Հայ եմ»։ Զինվորները սկսեցին աղաղակել թե «այս հայը տաճկացավ»։ Սուտ վկաներ դուրս եկան և տարին նրան փաշայի ու դատավորի մոտ։ Ո՛չ աղաչանքները լսեց և ոչ էլ սպառնալիքները. չուրացավ իր հավատը։ Վճիռ հանեցին թե կրակով պետք է այրել։ Ոտներն ու ձեռները շղթայակապ խարույկի մեջ գցեցին. նա կրակի միջից «Աստուած» էր կանչում։ Մի զինվոր քաշեց իր թուրը և գլխատեց նրան։ Այսպես նահատակվեց խեղճ մարդը՝ «1517 թ»։—Նոր վկ. 350—352 > Ազգապ. 2222։*

— 141. Խաչատուր *Դաւրիժեցի. բնակվում էր Վենետիկում. պարսկերենից իտալերենի թարգմանեց «Ուղևորութիւն երեք որդւոց արքային Սերենդիպպոյ» վիպասանությունը (որ թերևս իր հեղինակությունն է)։ Տպված է նախ 1557 թ. և ապա մի քանի անգամ թարգմանված ֆրանսերեն, անգլերեն, գերմաներեն, հոլլանդերեն և դանիերեն։—Ալիշան, Հայ-Վենետ. 222—7։*

— 142. Խաչատուր *Ա. Ջուղեցի, կաթուղիկոս Սսոյ, հաջորդ Թորոս Սսեցու (1548—1553). գահակալեց «1553—1560 թ» (Ազգապ. 2259)։ Իսկ Դարանաղցին (էջ 316) Խաչատուր Ջուղեցին դնում է 1578 թ։ Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1854 մեջ բերված հիշատակարանում Սսոյ կաթուղիկոս է 1555 թ. Խաչատուրը։ Վերջապես ըստ Ձեռ. Հալէպի, Բ. 31 բ Խաչատուր Ա գահակալել է 1551 թ. ինչպես ունի նաև Սիսուան 218 բ։*

— 143. Խաչատուր *Բ. (կամ Խաչիկ) Ուլնեցի, կաթուղիկոս*

Սոյ՝ «1560—1584 Թ»․ հաջորդեց Խաչատուր Ա Զորիկին․ կոչվում է երաժիշտ։ Կիլիկիայի համար օգնություն ստանալու նըպատակով՝ հարաբերություններ մշակեց պապի հետ «1575 Թ»․— Թորոս աղբ․ Բ. 299, Ազգապ․ 2278։ Ձեռ․ Հալէպի, Բ. էջ 31 բ․ Պապին ուղարկած իր գրությունները տես Ձեռ. Վատիկ․ (ՀԱ 1892, 245 բ), Ձեռ. Վենետ. Բ. 1207․ Դրնդ․ 318։

— 144. Խաչատուր վրդ․ Տարօնացի, տաղասաց ԺԶ դարու.—Զամչ. Գ․ 96։

— 145․ Խաչատուր վրդ․ Խարբերդցի, տաղասաց, ԺԶ դարի՞ց (նախ քան 1617 Թիվը)․ իր տաղերից նմուշներ տես Կոստանեան, Նոր Ժողովածու, Գ. էջ 18—20 և Դ. էջ 5—8։

— 146. Խաչատուր քահանա Խիզանցի, օրինակել է մի Աւետարան, որի կեսը գրել է Խիզանում և կէսը Սպահանում, 1607 Թ. ունի ընդարձակ հիշատակարան, ուր պատմում է Շահաբասի գործերը և հայոց կրոնական ազատությունը Սպահանում.—Սըմբատեանց՝ Երնջակ 181—184։

— 147. Խաչատուր վարդապետ Կեսարացի․ ծնվել է Փոքր-Ասիայի Կեսարիա քաղաքում, 1590 Թ. ենթադրվում է որ հոգևոր կոչում է ստացել Կիպրոս կղզու Ս. Մակար վանքում, ապա անցել է Պոլիս, ուր աշակերտել է Դարանաղցի Գրիգոր վարդապետին (Երեմեան, Նոր-Ջուղայի ԺԷ-րդ դարու որմանկարչական յուշարձ. Նիւ Եորք 1942, էջ 7)։ Ըստ Առաքել պատմագրի նա Մովսէս կաթուղիկոսի «մեծ աշակերտն էր», նվիրակ ուղարկվեց Էջմիածնի կողմից Լեհաստան՝ հատկապես չարաբաստիկ Նիկոլի հարցով։ Ծանոթանալով այնտեղ արտաքին ուսմանց, վերադարձին ուսումնասիրեց ու խորացավ այդ գիտության մեջ և տարածեց մեր մէջ․ Նա կարգվեց առաջնորդ Նոր Ջուղայի (1620—46), ուր բաց արեց մեծ դպրոց։ Առաքել պատմիչը այս առթիվ կոչում է նրան «հայր հասարակաց և պատճառ կրկին լուսաւորութեան ազգիս Արամեան և նախասկիզբ հեղինակ»։ Դպրոցի կողքին նա բաց է անում Նոր-Ջուղայի վանքի տպարանը 1639 Թ., որ առաջինն էր Արևելքում։ Ուշագրավն այն է, որ Խաչատուրը այս տպարանը բանալու համար ոչ մի Եվրոպացի վարպետի օգնությունը չստացավ, այլ ամեն ինչ ինքն արավ՝ իր միաբանների հետ։ Մամուլը ինք շինեց, տառերը ինք փորագրեց, մինչև անգամ Թուղթը ինք պատրաստեց տնային միջոցներով։ Առաջին անգամ տպագրեց Հարանց վարք «1641 Թ»։ Մեռել է 1646 Թ. և Թաղվել Ամենափրկիչ վանքում, ուր

մնում է իր դամբանը (Երեմեան, Նոր-Ջուղայի ժէ դ. յուշարձ. էջ 8 ը, Ձեռ. Վենետ. Ա. 40).—Ջուղ. 114—122, 140—148, Զքր. սարկ. Բ. 60, 64. Առաք. պտմ. 286—291, 307, 310—1, Լէօ, Հայկ. տպագր. Ա. 112—6, Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 2022։

— 148. Խաչատուր Տիգրանակերտցի, նոր նահատակ. քսան տարեկան գեղեցիկ երիտասարդ էր. Թեև փականագործի հասարակ աշակերտ, բայց եկեղեցում շարունակ լսելով նահատակների պատմությունը, ինքն էլ ցանկանում էր նահատակության պսակին արժանանալ։ «Ես ոչ կամիմ, ասում էր նա, իմով բնական մահուամբ մեռանիլ, այլ կամիմ նահատակիլ և ի վերայ իմոյ ճշմարիտ հաւատոյս մեռանիլ»։ Այս մտքով տարված՝ գնաց մի օր մզկիթի բակը և սկսեց լվացվել աղբյուրից։ Մի սէյիդ եկավ և հայհոյելով վռնդեց նրան։ Խաչատուրն էլ նրան և նրա գլխի կանաչը հայհոյեց։ Մահմեդականները հավաքվեցին և նրան դատավորին տարին։ Դատավորը համոզեց, մեծամեծ պատիվներ խոստացավ, եթե մահմեդական դառնա։ Խաչատուրը մերժեց ասելով թե «Ձեր օրէնքը սուտ է, մեր օրէնքն է ճշմարիտ»։ Մուֆթին ֆէթվա տվեց՝ կաշին քերթելով սպանել նրան։ Թիկունքից և լանջից քերթեցին կաշին մինչև կես մեջքը և կախ գցեցին։ Այսպես ման ածեցին նրան փողոցներում։ Իսկ նա կրոնական երգեր երգելով՝ ուրախ գնում էր։ Հրապարակի մեջտեղում նրա ոտները և ձեռները խորտակեցին և նրա մարմնի կոճղը մնաց գետնի վրա արնաշաղախ։ Կես գիշերից ուշ հոգին ավանդեց («1652 Թ»)։— Առաք. պտմ. ԽԵ > Նոր վկ. 455—466։

— 149. Խաչատուր վրդ. Բաղիշեցի, ապրում էր Տիգրանակերտում։ Երբ Խաչատուր Տիգրանակերտցուն (տես նախորդը) տարին հրապարակը և ոտներն ու ձեռքերը խորտակելով թողեցին, այս Խաչատուր վարդապետը՝ Սամուէլ Բալուեցի աբեղայի հետ ուշ երեկոյին նրան այցելության եկան և գլուխն համբուրելով՝ ախողորմ լաց էին լինում։ Նահատակն ասաց վարդապետին. «Գիտես որ ձեռք չունիմ, որպեսզի աջդ բռնեմ համբուրեմ. ուստի խնդրում եմ աջդ շրթունքներիս դիր որ համբուրեմ»։ Խաչատուր վարդապետը կատարեց խնդիրքը։ Այնուհետև սուրբը խնդրեց, որ աղոթի նրա վրա։ Վարդապետը պատասխանեց. «Որդեակ, թէև մենք կրոնական աստիճան ունինք, բայց մեղավոր մարդ ենք. իսկ դու քո նահատակությամբ արքայության ճանա-

*պարհը բացիր. այժմ մենք ենք քո աղոթքին կարօտ»։—Նոր վկ. 461—2։*

— 150. Խաչատուր *երեց Եթովպացի, ճանապարհորդել է Իտալիա, Մարսէյլ, Սպանիա, Կորֆու. գրել է Վենետիկի վրա նկարագրական մի տաղ ռամիկ լեզվով. իբր 280 տող, 1656 թ։ Այս տաղը, որ հրատարակված է Բազմ. հտ. Ե, 172—7, ըստ Ձեռ. Վենետ. Բ. 943 մի «չքնաղ նկարագիր է, ազգագրական, տեղագրական, պատմական և գեղարուեստական տեսակէտերով յոյժ շահագրգիռ»։ Առաջին տողերն են՝*

Նկարագիր դօժերու քաղաքին

*Ցարևմտից կողմ աշխարհի*
*Գեղեցկատես կղզի մի կայ.*
*Իմանալի մտաց մարդկան՝*
*Որ Վանատիկ ասեն նմայ.*
*Մալին խաղնին հասպ չկայ,*
*Գեղեցկաշէն նման չկայ...*

*Սարգիսեանը կարծում է թե «Եթովպացին» պետք է կարդալ Եւդոկիացի, և հեղինակին համարել Խաչատուր Տէրզնցին, որդի և գործակից Յովհաննէս Տէրզնցու՝ ի Թարգմանութեան վէպին Փարիզու և Վիեննայի։—Ալիշան, Հայ-Վենետ. 227—233, Ձեռ. Վենետ. Բ. 943։*

— 151. Խաչատուր *երեց Կաֆայեցի, ծնված է 1592 թ. աշխարհական անունն էր Խաչգուզ. ձեռնադրվել է քահանա 1624 թ. ճանապարհորդել է Պոլիս. գրել է Տարեգրութիւն, որ սկսել է 1620 թվին և հասցնում է մինչև 1658 թ. պատմում է Խրիմի քաղաքական պատմությունը՝ սկսած 1616 թվից, Ռուսաց, Տաճկաց և Լեհաց արշավանքները, Խրիմի խաների ներքին կռիվները, վերջապես Խրիմի ամբողջ պատմությունը վեց խաների ժամանակ. այն է՝ Ջանիբէգ-Գիրէյ Բ 1610—1623 թ, և 1627—1635 թ, Մուհամմէդ-Գիրէյ Գ 1623—1627 թ., Ինայէթ-Գիրէյ Ա 1635—1637 թ., Սէլէմէթ-Գիրէյ Ա 1635—1641 թ., Մուհամմէդ-Գիրէյ Դ 1641—1644 թ. և Իսլամ-Գիրէյ Գ 1644—1654 թ։ Այս բոլորի հետ միանում է նաև հայոց ազգային կյանքի նկարագիրը։ Խաչատուր Կաֆայեցու Տարեգրութեան բնագիրը (հեղինակի ինքնաձեռագրով) գտնվում է այժմ մեր Մատենադարանում։ Աշոտ Աբրահամեանը պատրաստում է նույնը հրատարակության տալ։*

*Այս առթիվ ունի ընդարձակ մի հոդված «Էջմիածին» հանդեսում, 1944 թ. № 1, էջ 39—51, որից և քաղում եմ այս բոլոր տեղեկությունները։*

— 152. Խաչատուր *Գ. Սեբաստացի, կոչված «մինտերճի». Կղեմէս Գալանոսի աշակերտներից էր. եղավ պատրիարք Պոլսի «1642 թ», բայց մի քանի ամսից տապալվեց Դավիթ Արևելցու ձեռքով, որ հայադավանության ջերմ պաշտպան էր։ Երբ Սսոյ կաթուղիկոս Թորոս Սեբաստացին մեռավ Պոլսում «1657 թ», Խաչատուրը ձեռք ձգեց աթոռը և եղավ կաթուղիկոս Սսոյ «1657—1679 թ»։ Ուխտի գնաց Երուսաղէմ «1663 թվին». վերադարձին՝ Հալէպում ասորի Անդրէաս Հալէպցուն Ասորոց կաթուղիկոս օծեց։ Սրա վրա Դավիթ վրդ. Բերիացին կամ Կարկառեցին զայրանալով՝ հիմնեց Հալէպի հակաթոռ կաթուղիկոսությունը «1663 թ».—Ազգապ. 2517, 2589, Տաշեան, Ցուց. 112։ Ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 19 այս Խաչատուրը Կրետէում 1668 թվին Իտալացոց է նվիրել Ս. Մամասի մասունքը։ Ինքնագիր հիշատակարանը տես Բանասէր 1900, 146։*

— 153. Խաչատուր *քահանա Ճլեցի, պատրիարք Պոլսի «1688 թ». խլեց աթոռը Թորոս Պոլսեցու ձեռքից, բայց ինքն էլ 7 ամսից ընկնելով՝ աթոռը անցավ Կարապետ Կեսարացուն։— Ազգապ. 2641։*

— 154. Խաչատուր *Բաղիշեցի կամ Ջուղայեցի, տաղասաց ԺԷ դարու.—Ցուցիկք, Բ. 125։*

— 155. Խաչատուր *վրդ. Առաքելեան, մականունը Կարնեցի կամ Արզրումցի. ծնվել է Կարինում 1666 թ. սովորել է Էջմիածնում և ապա Հռոմում։ Աշակերտ պրոպագանդայի և կաթոլիկական քարոզիչ։ Հալածանքի ենթարկվելով՝ Պոլսից փախավ Վենետիկ, ուր և մեռավ 1740 թ։ Մատենագիր է. գրել է Մեկնութիւն Երգոց երգոյն, Քերականութիւն, Աստուածաբանութիւն, Քարոզգիրք, հրատարակեց Միաբանողաց Միսալը 1728 թ։—Իր մասին ընդարձակ տես Լէօ, Հայկ. տպագր. Ա. 304 և Բ. էջ 173—189, Մատենագիտութ. էջ 255—61, Տաշեան՝ Ցուց. 1096 բ, ՀԱ 1929, 429։*

— 156. Խաչատուր *Արևելցի, բժիշկ Հալէպում, 1751 թ.— Թորգոմեան, Ներբ. 27։*

— 157. Խաչատուր *աբեղա Ջուղայեցի, որդի Սահակի. ծնվել է Նոր-Ջուղայում, սովորել է նույն տեղի Ամենափրկիչ վանքում, գրել է Պատմութիւն Պարսից՝ սկզբից մինչև 1779 թ։*

*Աշխատության երկրորդ մասը չի կարողացել գրել, որովհետև նվիրակ ուղարկվելով Բասրա, այնտեղ էլ մեռել է։ Պատմությունը տպված է նախ Մադրասի Ազդարար թերթում, 1795 թվին, ապա առանձին՝ էջմիածին 1905 թ.—Ջուղ. էջ 3։*

— 158. Խաչատուր *Ա. Վանեցի, կաթողիկոս Աղթամարի «1803—1814 թ». հաջորդել է Կարապետ Շատախցուն. կոչվել է «հրաշագործ». թնում է իր տապանաքարը՝ 1814 թվից.—Հաւաք. 64. Ակինեան՝ Գաւազանագիրք 167, Ազգակ. 3405։*

— 159. Խաչատուր *երէց. տաղասաց. ծաղկել է ԺԹ դարի առաջին կեսում. իր տաղերի մասին տես Ջեռ. Դաղեան, Բ. 37 բ։*

— 160. Խաչատուր *Բ. Մոկացի, կաթողիկոս Աղթամարի «1844—1851 թ». հաջորդեց Յովհաննէս Շատախցուն, 1844 թ., պաշտպանությամբ Վասպուրականի բանակալ քուրդ խան Մահմուդի։ Ինքնագլուխ կերպով գահ բարձրացած լինելու պատճառով՝ Պոլսի ազգային իշխանության միջոցով աքսորվեց Շապին—Գարահիսար։ Երեք տարուց վերադառնում է Աղթամար, բայց արգելվում է վարել իր պաշտոնը։ Յովհաննէս վարդապետի ձեռքով փայտատի մի հարված ստանալով՝ մեռնում է 1851 թ.—Հաւաք. 65, Ակինեան՝ Գաւազանագիրք 172—175, Ազգապատում 3959։*

— 161. Խաչատուր *Գ. Շիրոյեան, կաթողիկոս Աղթամարի «1864—1895 թ». Գաւաշի (Ռշտունիք) Բողոնիս գյուղից՝ Շէրօ անունով մի նեստորական ասորու որդին էր։ Ճարպիկությամբ հաջողել էր մտնել Աղթամար և եպիսկոպոս ձեռնադրվել. դարձել էր Պետրոս Պիւլպիւլ կաթողիկոսի գանձապահն ու գործակալը։ Դավաճանությամբ նրան սպանել տվեց և ապօրինի կերպով խլեց գահը՝ առանց Պոլսի ազգային իշխանության համաձայնության։ Սրա վրա կանչվեց Պոլիս, բայց դատարանը ապացույց չունենալով՝ չկարողացավ դատապարտել և հիմնվելով միայն հանցավորի կեղծ խոստովանության վրա, ազատ արձակեց («1876 թ»)։ Դարձավ իր աթոռը, շահագիտությամբ և ժողովուրդը կեղեքելով ապրեց ու մեռավ «1895 թ»։ Շինել կամ նորոգել է զանազան եկեղեցիներ. բայց հիշատակության արժանի են ծովեզերյա զվարճալի Վեհարանը Աղթամարում, մոտին մի դպրոց և մի Թանգարան, ուր հավաքեց հնությունները ու ձեռագիրները։—Հաւաք. 65, Ակինեան՝ Գավազանագիրք 185—192, Արաքս 1897, Բ. էջ 51—61, Ազգապ. 4114, 4327, 5048։*

† **ԽԱՁԱԻ**, *ար. պետք է կարդալ* Խաչօ, *որով լինում է* Խա-

չատուր կամ Խաչիկ անվան սովորական կրճատումը։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1681 թ. Ձեռ. Վենետ. Ա. 788։

† ԽԱՉՓՈՒՆԴ, ար. < հյ. խաչ+փունդ բառերից. այն է խաչվառի կամ խաչալամի վրայի գունդը։ Հիշված ԺԳ դարում։

— Խաչփունդ քահանա, կանգնեցրել է մի խաչքար՝ 1216 թ.—Տեղեկ. Արմֆանի, 1941, № 9, էջ 65 ծան։

† ԽԱՉՓՈՒՌՉ տես Խասբէգ № 3։

† ԽԱՉԵԱՆ, ար. < հյ. խաչ բառից եան մասնիկով. սրա նոր ձևն է թվում Խեչան։

— Խաչեան Առաւեղեան, մին այն երեք իշխաններից, որոնք Արաբացոց առաջին արշավանքի գործը Դուին հասցրին «640 թ»։—Սեբ. խ։

† ԽԱՉԵԼԻՍ, ար. < հյ. խաչ բառից, բայց մնացյալը անհայտ է։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1595 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379)։

† ԽԱՉԵՂԲԱՅՐ, ար. < հյ. խաչ+եղբայր բառերից. (հայերենում խաչեղբայրը կնքահոր օգնականն է՝ պսակի արարողության ժամանակ)։ Երկու անգամ հիշատակված է ԺԲ—ԺԳ դարում և երկու անգամ անթվական։

— 1. Խաչեղբայր, իր Աւետիս որդու հետ միասին մի հող են նվիրել Հոռոմոսի վանքին, 1201 թ.—Սարգիսեան, Տեղագր. 151, Շիրակ 22, Արրտ. 1870, 298։

— 2. Խաչաղբայր որդի Դարանաղցի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. =ՀԱ 1924,248։

— Անթվական են Հոռոմոսի մի արձանագրության մեջ (Շիրակ 25) և Բագնայրի մի արձանագրության մեջ (Շիրակ 112)։

† ԽԱՉԵՆԻԿ, ար. < հյ. խաչ բառից՝ ճիշտ այն ձևով, ինչպես Սաթենիկ, Վարսենիկ, Արփենիկ, Նազենիկ անունները։ Մի անգամ հիշատակված է անթվական մի արձանագրության մեջ՝ Խաչենիկ վարդապետ (Վարանդայի Հացի գյուղում, Արցախ 125—6 և Ազգագր. հանդ. Բ. 47—48)։

† ԽԱՉԵՐ, ար. < հյ. խաչ բառի հոգնակին է կամ Խաչերես անվան կրճատումը, ճիշտ ինչպես ունինք Վարդեր և Վարդերես։ Գործածվել է ԺԳ—ԺԷ դարերում։ Սրանից է Խաչերեան ազգանունը՝ 1839 թ. (Ազգապ. 3836)։

— 1. Խաչեր կրոնավոր, ինամակալ էր Կարապետի, որ կազ-

մեց մի Աստուածաշունչ, Կեսարիայում, 1274 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1844։

— 2. Խաչեր նկարիչ, որ ծաղկել է մի Աւետարան՝ Տուրուբերանում, Խելօքի որդի Պօղի համար, 1294 թ.—Ձեռ. Վասպ. էջ 120։

— 3. Խաչեր քահանա, օրինակեց Բերկրիում մի Աւետարան՝ պարոն Նէքնէքի համար, 1307 թ։—Ձեռ. Վասպ. 151։

— 4. Խաչեր, հայր Պօղոս քահանայի, որ Փոսի անապատում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 5. Խաչեր, նշանավոր ճարտարապետ. շինել է Պոլսի Գալաթ թաղի Ս. Հրեշտակապետ եկեղեցին, 1628 թ.—Գ. Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 72.

— Շատ ավելի ուշ ժամանակից են Խաչեր 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 228 բ) և 1640 թ. (անդ 75 բ), 1770 թ. (Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 298)։

— Խաչեր իբրև իգական անուն հիշված է 1845 թ. (Ձեռ. Սանաս. 32 բ)։

† ԽԱՉԵՐԵՍ, ար. < հյ. խաչ + երես բառերից, ճիշտ ինչպես ունինք՝ Վարդերես։ Հիշատակված է ԺԲ—ԺԵ դարերից և մինչև այժմ էլ գործածական է։

— 1. Խաչերես, մերձավոր Ցովհաննէս քահանայի, որ նվերներ է արել Արջոյառիճի վանքին, 1213 թ. և Բագնայրի վանքին, 1215 թ.—Շիրակ 122 և 121։

— 2. Խաչերես Լոռեցի, որդի՝ Աբրահամի, մի քանի տուն ու խանութ է նվիրել Բագնայրի վանքին, 1209 թ. (Արձ. Շիրակ 117 > Այրարատ 61 ա)։ Սրա կինն է Շանուշ, որ իր ամուսին Խաչերեսի կտակով շինել է Անիի մի բուրջը՝ 1218 թ. (Շիրակ 43) և դուստրն է Մամխաթուն, որ զավակ չունենալու պատճառով՝ նույնպես մի բուրջ է շինել Անիում, 1219 թ.—Շիրակ 43։

— 3. Խաչերես, ազգական Թաւուն միայնակեցի, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

— 4. Խաչերես, որդի Սիմէոնի և եղբայր գրիչ Ցակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան, 1358 թվից քիչ ուշ։—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 5. Խաչերես, հայր Կարապետ քահանայի, որի միջնորդութեամբ Ստեփանոս երեցը Ջուրեն գյուղում (Երուսաղէմ) վաճառեց իր գրած մի Ճաշոցը՝ 1371 թ.—REA 10, 57։

— 6. Խաչերես, *մեծ հայր (պապ) Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան՝ 1392 Թ. և հաջորդ տարին էլ մի ուրիշ Ավետարան, Զաքրիա կրոնավորին, դարձյալ Աղթամարում, 1393 Թ.—Ձեռ. Վասպ. 226, 228։*

— 7. Խաչերես, *հայր Էվաչայի, որ գնեց մի հին Ավետարան, Տրապիզոնում, 1425 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 485։*

— 8. Խաչերես, *եղբայր Օղբէկի և Խասբէկի, որդիք Սէվդին, ազատեցին 1298 Թվին գրված մի Ավետարան «ի ձեռաց անաւրինաց». Թվականն անհայտ.—Թորոս աղբ. Բ. 335—7։*

† *ԽԱՉԷՎԱՐԴ,ար. < հյ.* խաչ+վարդ *բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԲ դարում։*

— Խաչէվարդ, *հայր Յովհաննէս և Սամուէլ հիլեկեցի գրիչների (ԺԲ դար).—Գ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ ԺԱ։*

† *ԽԱՉԻԿ, ար. < հյ.* խաչ *բառի նվազականն է, որ գործածվում է իբրև* Խաչատուր *անվան փաղաքշականը. սակայն դարձել է նաև առանձին և անկախ անուն։ Գործածական է Ը դարից սկսած և այժմ էլ կենդանի ու սովորական անուն է։ Սրանից է* Խաչիկեան *ազգանունը։*

— 1. Խաչիկ *վարդապետ, աշակերտ Ս. Սահակի և Մեսրոպի. Ակոռիում եղած ժամանակ մի տեսիլ տեսավ մեռելների հոգեհանգստի մասին, որ և անցել է Ցայսմաւուրքի մեջ։—*Խաչիկ՝ *Ցայսմ. յնվ. 7.—*Խաչատուր՝ *Ցայսմ. յնվ. 7.—Չամչ. Ա. 536. Այրարատ 472. Ձեռ. Վենետ. Բ. 1183։*

— 2. Խաչիկ, *նշանավոր գիտնական վարդապետ, 775 Թ.—Կիր. 40. Սամ. անեց. 89. Մխ. այրիվ. 67։*

— 3. Խաչիկ, *Թագավոր Արծրունեաց. տես Գագիկ-Խաչիկ։*

— 4. Խաչիկ *Ա. Արշարունի, կաթուղիկոս հայոց «973—992 Թ». (Սիմէոն Սանահնեցին նստած է դնում 972 Թվին. տես Մովսէսեան, Լոռիի Կեր. Թգ. 23)։ Անանիա կաթուղիկոսի քեռորդին էր. նախապես եպիսկոպոս Արշարունեաց. ժամանակցեց Անւոյ ժողովին, ուր գահընկեց արին Վահան կաթուղիկոսին («969 Թ»)։ Ընտրվելով իբրև հաջորդ Ստեփաննոսի («† 972 Թ»), Խաչիկ Ահոգ տարավ եկեղեցու բարեկարգութեան, Տրդատ ճարտարապետի ձեռքով շինեց մի մեծ եկեղեցի, նորոգեց Արգինայի կաթուղիկոսարանը, հիմնեց այնտեղ մատենադարան, հաստատեց հայոց առաջնորդական վիճակներ Ասորոց Անտիոք, Տարսոն և Սոլունքաղաքներում, գրեց ընդարձակ մի Թուղթ՝ Սեբաստիոյ մետրա-*

պոլիտին, և մի ուրիշ Թուղթ էլ գրել տվեց Սամուէլ Կամրջաձորեցուն առ Թէոդորոս մետրապոլիտ Մելիտինոյ, երբ սրանք սկսեցին հալածել հայերին՝ կրոնի համար։ Իր մի կոնդակը (անշուշտ կեղծ)՝ Բարկէն եպիսկոպոսին Նախավկայի վանքին առաջնորդ նշանակելու համար՝ տպված է Արրտ. 1868, էջ 31—34։—Ասող. Գ. ը, թ, ի, իա. Ուռհ. 38—40. Մխ. այրիվ. 21. Օրբ. ժմ. 11, 12. Միխ. աս. իթ (=իը). Ցայսմ. մայ. 27. Սմբ. պտմ. 41, 42. Սամ. անեց. 101. Քհնպ. 272. Ուխտ. Ա. ա. Օրբ. ծբ, հա. կիր. 50. Վրդ. խը. Մխ. անեց. դ. Մին. համդ. 33.—սեռ. խաչկայ՝ Գիրք թղ. ձգ. Ասող. Գ. թ, ժթ, իա, լա, լբ. Լմբ. մատ. 535. Սամ. անեց. 103. Օրբ. ժմ. 11.—Զարբ. Հին դպր. 549—50. Թրգմ. 338. Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերյրգ. 123—7։

— 5. Խաչիկ, որդի Եղիա քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան, 986 Թ.—Ձեռ. Սանաս. 1 բ։

— 6. Խաչիկ, Թագավոր Արծրունեաց, տես Գուրգէն Խաչիկ № 21։

— 7. Խաչիկ Խուլ, Արծրունի, իշխան Վասպուրականի Թոռնաւան գավառի, հայր Իշխանի, Հասանի և Ճնճղուկի, պապ Կիլիկիոյ Ապլղարիպ իշխանի։ Թոռնաւանը գտնվելով հունաց իշխանության տակ, Խուլ Խաչիկն էլ հունաց կայսեր վասալներից էր։ Թուրքերը արշավեցին Թոռնաւանի վրա. այդ միջոցին Հասանը և Ճնճղուկը զորքով Պոլիս էին գնացել, Խաչիկն էլ Թոռնաւանում չէր, այլ իր որդի 15 ամյա Իշխանիկի հետ ուրիշ տեղ էր գտնվում։ Լսելով Թուրքերի արշավանքը՝ Խուլ Խաչիկը շատ շըփոթվեց, որովհետև որդիքը Պոլսում էին, ինքը ծեր, զորք էլ չուներ։ Այնու ամենայնիվ 70 հոգի վերցրեց, որդուն տանը փակեց և արշավեց թշնամու դեմ։ Իր փոքրիկ խմբով՝ այնպիսի քաջագործություններ գործեց նա երիտասարդի նման, որ սարսափ ազդեց բոլորին։ Այդ միջոցին, հոր արժանավոր որդին, 15 ամյա պատանի Իշխանիկը, երկու ծառա վերցրած՝ շտապեց պատերազմի դաշտը։ Այդ երբ տեսավ հայրը, շվարեց մնաց, որովհետև որդին դեռ պատերազմ չէր տեսած։ Սակայն Իշխանիկը՝ փորձառու զինվորականի նման, հարձակվեց թշնամիների վրա։ Թուրքերը տեսնելով անփորձ պատանուն, շրջապատեցին նրան և սպանեցին։ Հայրը տեսնելով սիրելի որդու մահը, Թուրը ձեռքից ընկավ, ուշաթափվեց, թշնամիները հասան, սպանեցին, գավառը կողոպտեցին ու գնացին (1041 Թ)։—Ուռհ. 90—92, Սմբ. պատմ. 59, 60.—սեռ. խաչկայ՝ Վրդ. կ. Ուռհ.

219.—խաչիկայ՝ Ունհ. 91.—Զամչ. Բ. 923—4. Ցուցիկք Բ. 433—56.—«Խուլ Խաչիկի» անունով մի գեղեցիկ պատմվածք ունի Ս. Բամալեանը Թիֆլիս 1894, 1905։

— 8. Խաչիկ (Տէր), ուղեկից եղավ Պետրոս Գետադարձին՝ երբ նա գնում էր Պոլիս՝ 1047 Թ.—Ունհ. 105։

— 9. Խաչիկ Բ. Անեցի, կաթուղիկոս հայոց «1058—1065 Թ»։ Պետրոս Գետադարձ կաթուղիկոսի քեռորդին էր։ Նրա հետ միասին՝ կաթուղիկոս տիտղոսով հիշված է Գագիկ Բ-ի արձանագրության մեջ՝ Մրենում, 1041 Թ. (Շիրակ 139)։ Երբ հույները Պետրոսին բանտարկեցին Խաղտոյառիճում, սրան էլ բանտարկեցին Սեքար բերդում («1047 Թ»)։ Եվ երբ Պետրոսը բանտից Պոլիս ուղարկվեց, Խաչիկին իր փոխարեն կաթուղիկոս ձեռնադրեց «1047 Թ»։ Հիշատակված է որ ՇԶ=1057! թվին նստում էր Թաւբլուրի վանքում (Ջեռ. Դաղեան, Ա. 7 բ և Շողակաթ 193)։ Պետրոսի կենդանության ժամանակ իբր փոխանորդ կամ աթոռակից էր. իսկ նրա մահվամբ («1058 Թ»), դարձավ գերիշխան։ Սեբաստիա էր գտնվում, երբ կանչվեց Պոլիս, ուր երեք տարի աքսոր մնաց («1059—62 Թ»)։ Ազատվեց փրկանքով, վերադարձավ ու նստավ իբրև արգելական՝ Փոքր-Հայքի Թաւբլուր (Տարէնտէ) ավանը, ուր մեռավ թշվառության մեջ «1065 Թ»։—Մխ. անեց. դ. Լաստ. ժ, ժդ. Մխ. այրիվ. 21. Օրբ. հա. Կիր. 54. Վրդ. ծե. Ունհ. 104, 127, 137—8, 153—4. Սամ. անեց. 111—2. Միխ. աս. իթ (=իը). Լմբ. մատ. 535. Ցայսմ. յուլ. 30. Սմբ. պտմ. 71, 75, 78. Մխն. համդ. 119. Առաք. պտմ. 480—481.—խաչատուր՝ Ցայսմ. յուլ. 30.—սեռ. խաչկայ՝ Լաստ. ժ. Ունհ. 155. Սամ անեց. 113։

— 10. Խաչիկ վարդապետ, նշանավոր երաժիշտ. թաղվել է Կամրջաձորում (նախ քան 1093 Թ).—սեռ. խաչկայ՝ Ունհ. 244։

— 11. Խաչիկ, առաջնորդ Ցովհաննավանքի, 1171 Թ.—Ջբր. սարկ. Գ. 30, Այրարատ 166, 175։

— 12. Խաչիկ եպիսկոպոս Նախճաւանի, անդամ Հռոմկլայի կրոնական ժողովի «1179 Թ»։—Շնորհ. պտճ. 199։

— 13. Խաչիկ ոմն, որ իր և իր ծնողների հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Մշոյ Առաքելոց վանքի պարսպից դուրս, 1182 Թ.—Սարգիսեան, Տեղագր. 233։

— 14. Խաչիկ կրոնավոր Դանջացի (Խլաթ), նվիրատու ձեռագրի, 1204 Թ.—Հայապ. 450։

— 15. Խաչիկ ոմն, որ մի արտ է նվիրել Բագարանի Մայր

եկեղեցուն, 1224 թ.—Արձ. Այրարատ 67, Սարգիսեան, Տեղագր. էջ 203։

— 16. Խաչիկ Արճիշեցի, բարեգործ մարդ էր. իր որդի Կոստանդինի հետ՝ Արճէշի երկրաշարժի ժամանակ փլատակների տակ մնաց ու մեռավ, 1275 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 427, Հայապ. էջ 477։

— 17. Խաչիկ կրոնավոր, իր ծնողների հիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ Վայոց ձորի Խաչիկ գյուղում, 1281 թ.—Սիսական 172։

— 18. Խաչիկ, քեռայր Տէր Աբրահամի, որ Բաջբերունեաց գավառի տեսուչն էր և Արճէշում մի քանի եկեղեցիներ շինեց, ինչպես արձանագրում է ինքը 1291 թ.—Սարգիսեան, Տեղագր. 268։

— 19. Խաչիկ ոմն, որ մի այգի է նվիրել Արճէշի մի եկեղեցուն, ինչպես հիշվում է նույն արձանագրության մեջ 1291 թ.—Սարգիսեան, Տեղագր. 268։

— 20. Խաչիկ քահանայ, «որ զոսկին երետ, որ զքարտէզն գնեց» Մխիթար քահանան, ընդօրինակելու համար Աւետարանը՝ Որոտանի Աղիտու վանքում, 1296 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 201։

— 21. Խաչիկ քահանա, ուսուցիչ Յովհաննէս քահանայի, որ օրինակեց մի Աւետարան՝ Ս. Գէորգ եկեղեցու համար, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 335։

— 22. Խաչիկ, կանգնեցրել է մի խաչքար՝ ի հիշատակ իր հորեղբոր Պետրոսի, որ Վարագայ վանքի առաջնորդն էր, 1303 թ.—Ազգագր. հանդ. ԻԱ, 62։

— 23. Խաչիկ վարդապետ, վաճառեց 1304 թվին Վժանում գրված մի Աւետարան՝ Մխիթար քահանային, 1318 թ.—Ձեռ. Սևան. 8 բ։

— 24. Խաչիկ, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Կարապետ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1389 թվին.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 25. Խաչիկ, որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Զաքարիա կրոնավորի, որ օրինակեց Աւետարանը Դանիէլ տանուտիրոջ համար՝ Աղթամար, 1399 թ.—Ձեռ. Վասպ. 235։

— 26. Խաչիկ, որդի Շամոյի և եղբայր տանուտեր Ղազարի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 307, Նոտարք 57։

— 27. Խաչիկ, հայր Թումայ կրոնավոր գրչի, որ Աղթա-

մարում օրինակեց Ճաշոցը Յովհաննէս կրօնաւորի համար, որ և նվիրեց Վարագայ վանքին, 1421 թ.—Նօտարք 67։

— 28. Խաչիկ, որդի Ամիր Սարգիսի և եղբայր Ռստանցի Էվատշայի, որ Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, և նվիրեց Վանիշատ գյուղի Եղիշէ վարդապետ վանքին, 1428 թ.—Ձեռ. Վասպ. 355։

— 29. Խաչիկ, միաբան Աղթամարայ վանքի, հիշված է 1441 թ.—Նօտարք 127, Ձեռ, Վասպ. 384։

— 30. Խաչիկ, հայր Հայրապետ աբեղա գրչի, որ Մինասենց Թումայի քրոջ որդին էր և Գաւաշեցի Ղուգիկ Թումայի համար գրեց Աղթամարում մի Աւետարան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. էջ 388։

— 31. Խաչիկ, որի անունով կա մի խաչքար 1462 թվից և այժմ գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Թորոս եկեղեցու բակում.—Աղգագր. հանդ. Է. 58։

— 32. Խայչիկ, հայր Մխիթար կրօնավորի, որ Զաքարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 506։

— 33. Խաչիկ, որդի Շիրինի՝ հօրեղբոր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտախոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 34. Խաչիկ Կաֆացի, տաղասաց ԺԶ դարու.—Յուշիկք Բ. 125։

— Գրված է Խեչիկ 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928)։

† ԽԱՉԻԿԱՅ, ար. < հյ. խաչ բառից, ինչպես ունինք աչիկայ, լուսնկայ, պարզկայ: Անսովոր անուն է, Այս անունով ունինք միայն՝

— Խաչիկայ տաղասաց ԺԸ դարու. գրել է «Ոտանաւոր ի վերայ էջմիածնայ նուիրակ Մովսէս արքեպիսկոպոսին, որ ուրացաւ ի մեծն Պօլիս»,—Տաշեան, Ցուց. 462։

† ԽԱՉԻՊԱՊ, ար. < հյ. խաչ և պապ բառերից. հմմտ. Խաչեղբայր։ Հիշվում է Երևանի մելիք Խաչիպապ ոմն 1747 թ. (Աղգապ. 2961, Զամչ. Գ. 837) և Խեչիբաբ ձևով էլ՝ 1714 թ. (Ջամբռ 287)

† ԽԱՉԽԱԹՈՒՆ իգ. < հյ. խաչ+խաթուն բառերից։ Հիշատակվում է Խաչխաթուն ոմն դուստր վարպետ Սուլէյմանի 1654 թ. (Ձեռ. Հալէպի 127), որ ապա օծվելով դարձավ Տէր Սողոմոն քահանա 1661 թ. (անդ 75)։ Երկու տեղումն էլ հիշված է նույն

Խաչխաթունը։ Ուրիշ տեղ չկա այս անունը, բայց այժմ գործածական է Նոր-Ջուղայում։

† **ԽԱՉՄԱՆ**, *ար. կրճատված է* խաչմանուկ *ձևից, ինչպես ունինք* Թուխմանուկ *և սրանից կրճատված* Թուխման։ *Մի անգամ գտնում եմ* խաչման *ձևը՝ 1693 թ. (Ձեռ. Վասպ. 980)։*

† **ԽԱՉՄԵԼԻՔ**, *իգ. < հյ.* խաչ+*արաբ.* ملك melīk *«թագավոր» կամ* ملك melek *«հրեշտակ» բառերից։ Անսովոր անուն։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակության մեջ, որ գտնվում է Թէոդոսիայի թանգարանում պահվող մի քարի վրա* (Кучук-Иоаннесов, Стар. арм. над. *39)։*

† **ԽԱՉՈՏ**, *ար. < հյ.* խաչ *բառից. բայց հայտնի չէ թե ինչ է* -ոտ *վերջավորությունը։ Կարող է լինել* -ոտ *մասնիկը (ըստ որում կա նաև* խաչուտ *ձևը), բայց իմաստի կողմից անհարմար է թվում (իբր «խաչավէտ, խաչով լիքը»?)։ Կարելի է բացատրել նաև* -ոտ, -ոտն *բառից, իբրև թե «խաչի ոտքը»։ Ավանդված է միայն ԺԳ դարից։*

— 1. Խաչոտ *Շեխեանց, իր կնոջ՝ Աւագ տիկնոջ հետ միասին՝ Անի մայրաքաղաքում, Տիգրանանց դրան մոտ ունեցած իրենց տունն ու խանութը նվիրել են Խծկօնից Ս. Սարգիս եկեղեցուն, 1221 թ։—Արձ. Շիրակ 128։*

— 2. Խաչուտ, *քահանա Դսեղի. մեռել է 1245 թ. ննում է իր տապանաքարը Դսեղում, հետևյալ արձանագրությամբ. «Խաչուտի քահանայի ՈՂԴ»։—Յարութիւնեան, Ներս. դպր. սաների Ա ճնպրհ. 17։*

— 3. Խաչոտ, *հայր Սարգսի, որ Բագնայրին նվիրել է «ձիթահնաց աղցաւղի քար» և տարեկան 5 լիտր ձեթ, 1260 ական թվերին։—Արձ. Շիրակ 122 (թեև թվական չէ գրված, բայց որովհետև նվերը եղել է Աբրահամ վանահոր ժամանակ, որ հիշվում է 1262 թվին, ուստի մենք էլ դրինք 1260 ական թվերին)։*

— *Անթվական են* Խաչոտ՝ *Արջոյառիճի արձանագրության մեջ (Շիրակ 123) և Բագնայրի արձանագրության մեջ (Շիրակ, էջ 120)։*

† **ԽԱՉՈՒԿ**, *ար.< հյ.* խաչ *բառից՝ այլ ձևով փաղաքշական, իբրև* Խաչիկ։ *Հիշված է 1560 թ. (Տաշեան, Ցուց. 314), 1578 թ. (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 188* Խաչուք *ձևով. իսկ նույնը Ձեռ. Վասպ. 11* Խաչոք*), 1608 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 696)։ Այժմ գործածական է Համշէնցոց մեջ* Խաչօկ *ձևով։ Սրանից է* Խաչուկեան *ազգանունը, որ հիշում է Երեմ. չէլ. օրագր. էջ 224 (1657 թվից)։*

Անթվական են խաչուկ (Manus. brit. mus. 58 բ) և ուրիշ մի քանի տեղ։

† **ԽԱՉՈՒՄ**, ար. < հյ. խաչում «խաչելութիւն» բառից. ձևի համար հմմտ. Համբարձում, Երևում։ Հիշատակված է 1506 թ. (Տաշեան. Ցուց. 55), 1507 թ. (Կամենից 161), 1551 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 531), և անթվական մի արձանագրության մեջ, որ գտնվում է Հերհերի եկեղեցու արևմտյան դռան ճակատին (Սիսական 111)։ Սրա հետ նույն է նաև Խեչում, որ հիշված է 1657 թ. (Bodleian 15) և 1735 թ. (Ջամբռ 172), որից և Խեչումեան ազգանունը (Կովկաս)։—Այս ձևերը չուզեցի կցել Շահում, Թաջում, Մելքում անունների հետ և դնել Թրք. um «իմ» ստացական մասնիկով կազմված, որովհետև սրանք ամբողջապես օտար բառեր են, իսկ խաչ բնիկ հայ բառ լինելով՝ չէր կարող ստանալ Թուրքերեն մասնիկ։

† **ԽԱՉՊԱՊ**, ար. < հյ. խաչ+պապ բառերից. հիշված է 1819 թ. (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 90). կա նաև Խաչպապա ոմն՝ Բիւր. 1898, 625 բ (Թվականն անհայտ)։

† **ԽԱՉՔՕ**, ար.< հյ. խաչիկ անունից, լեհական -ko փաղաքշական մասնիկով։ Գործածական էր Լեհահայոց մեջ։ Հնագույն վկայությունն է՝

— 1. Խաչգօ եկեղեցպան, Եաշի (Ռումինիա) հայոց եկեղեցու հիմնադիրներից մին, 1395 թ.—Տաս, Արևել. Հայք, էջ 7։

— 2. Խաչքօ ձևով հիշված է 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55)։ Հմմտ. նաև՝

— 3. Cristko, դատավոր Հայոց Լեհաստանի, 1445—1465 թ.—REA 7, 71։

**ԽԱՌԻԿ**, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 580)։—Արդյոք վրիպակ չէ՞ փխ. Խասիկ։

***ԽԱՍԱԳԻԼ**, իգ. < արաբ. خاص xāṣṣ > Թրք. xas «ընտիր, ազնիվ տեսակի»+պրս. گل gul «վարդ» բառերից։ Գործածական է այժմ Ղարաբաղում (որի կրճատ ձևն է Խա՛սա) և Զանգեզուրում (Խասիճկա ձևով)։

***ԽԱՍԱՆՆԱ**, իգ. < Թրք. خاص xas «ընտիր, ազնիվ»+ ئ anne «մայրիկ» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԸ դարում։

— Խասաննա, դուստր Աստուածատուրի և քույր Խդրշահի,

որ կեսարիայում, Ցովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

*ԽԱՍԲԷԳ, ար. < Թրք. خاص xas «ընտիր, ազնիվ»+بك beg «իշխան» բառերից. հետին տառադարձությամբ գրված է Խասպէկ, բայց կա նաև Խասպակ։

— 1. Խասպէկ, քեռի գրիչ Յակոբ սարկավագի, որ օրինակել է Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը. մեռած էր 1358-ից քիչ առաջ։—Ջեռ. Թաւր. 28 բ։

— 2. Խասպակ սարկավագ, որդի մղտեսի Մելիքշահի և եղբայր մղտեսի Մանուկի, որ կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1849։

— Խասպէկ հիշված է նաև 1576 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 470) և անթվական մի հիշատակարանում՝ Թորոս աղբ. Բ. 335—7 (Խասբէկ ձևով)։

— 3. Խասպէկ երեց, տաղասաց. 1610—1686 (թ. գործել է իբրև ուսուցիչ, գրիչ, ծաղկող և կազմող, ժամանակակիցներից կոչվել է «փիլիսոփայ ներհուն» «բնածին միտք» ևն (Պետրոսյան, Հմռ. Բիբլիոգր. էջ 195). ունի երգեր 1662—71 թվերից, որոնք տես Կոստանեան, Նոր ժող. Գ. 15. իր տաղերից նշանավոր են՝ Արի որ պաղչան մտնունք, Գլուխ հանուրց ազգին կանանց, Ե՛կ սիրելիս, ուրախասցուք, Տաճար լուսեղէն են (Էջմիածին, 1944, № 1, էջ 40 ա)։ Բուն անունն է Խաչատուր Կաֆայեցի, քահանա, ուստի Խասպէկ կամ մականունն է և կամ աշխարհական անունը։ Իր մասին բավական ընդարձակ խոսում են Գտտուրեան, Դիցաւան, Գուքբէշ 1923, Ա. էջ 138—142 և Ակինեան ՀԱ 1935, 336—344։ Պետք չէ շփոթել տարեգիր Խաչատուր Կաֆայեցու հետ, որ նույնպես քահանա է՝ ԺԷ դարից, և որի աշխարհական անունն էր Խաչգռուզ։ Այս անունը կրել է նա մինչև 1624 թ։ (ԽԱՉԳՌՈՒԶ անունը ծագում է բնականաբար հյ. խաչ+գռուզ «գանգուր» բառերից. բայց անհասկանալի է թե ինչ կապ ունի գռուզը խաչի հետ։ Խաչգռուզ անունը որ գործածական է եղել Երիմում, պահվում է այժմ էլ Նոր-Նախիջևանում, բայց միայն Խաչգռուզեան ազգանվան մեջ)։

*ԽԱՍԻԿ, իգ. և ար. < Թրք. خاص xas «ընտիր, ազնիվ» բառի գգվական ձևն է։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Խասիկ (սեռ. Խասկանն), կին Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան՝ 1488 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 492։

— 2. Խասիկ, կին պարոն Վարդի՝ եղբոր Սիրատանի, որ

Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— խասիկ՝ իբրև ար. հիշված է նաև 1563 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 49 բ) և իբրև իգ. անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա)։

**ԽԱՍԻՆՋՈՒ**, այս բառը Անիի արձանագրությանց մեջ, ըստ Մառ REA 1, 406 հատուկ անուն չէ, այլ արաբ. خاص xāṣṣ+մոնղոլ. inǰu, enǰu «ինքնագլուխ»։

**ԽԱՍԼԱՐԻՆԴ**, իգ. անսովոր անուն. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ մի խաչքարի վրա 1653 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 622։

***ԽԱՍԽԱԹՈՒՆ**, իգ. < արաբ. خاص xāṣṣ > Թրք. xas «ընտիր, ազնիվ»+xatun բառերից։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում. հնագույնն է 1497 թ.՝ Ներքին-Ագուլիսի (Դաշտ) մի խաչքարի վրա (Ազգագր. հանդ. ԺԱ. 313), ապա 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 314, գրված խասխաթունն և խասղաթունն ձևերով), 1623 թ. (Արցախ 123), 1630 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 776), ԺԷ դար (Ալիշան՝ Կամենից 19) և անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 43 բ)։

***ԽԱՍՄԱՄԱ**, իգ, < արաբ. خاص xāṣṣ > Թրք. xas «ազնիվ, ընտիր»+մամա «մայր» բառերից։ Հիշված է մի անգամ 1588 թ. (Նշխ. մատ. 46)։

***ԽԱՍՄԵԼԻՔ**, իգ. < արաբ. خاص xāṣṣ > Թրք. xas «ընտիր, ազնիվ»+արաբ. مليك melīk «թագավոր» բառերից։ Հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. խասմելիք, քույր Խասպէկի և մորաքույր Ցակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 2. խասմելիք ոմն, հիշված 1365 թ.—Bodleian 123։

— խասմելիք հիշված է նաև 1506 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 79), 1593 թ. (անդ 194), 1621 թ. (Ակինեան, Հինգ պանդուխտ տաղաս. 122)։

***ԽԱՍՍԱ**, ար. < արաբ. خاصّة xāṣṣa «հատուկ, մաքուր, արքունական, ավագանի են»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— խասսա, որդի Ապտէի, ստացավ մի հին Աւետարան, 1441 թ.—Manus. brit. mus. 3 բ։

**ԽԱՏԱԳ**, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Խատապ, *որդի Եղիդի և եղբորորդի Վեստ Սարգիսի, իր եղբոր՝ Ապլհասանի հետ միասին մի այգի նվիրեց Տեկորի վանքին, 1033 թ.—Արձ. Շիրակ 127, Շողակաթ 180։*

— 2. Խատապ *հայ իշխան, զորավար՝ հունաց Դիոգինէս կայսեր բանակում. քաջությամբ կռվեց և սպանվեց Պարսից դեմ պատերազմում, 1071 թ.—Ուռհ. 201 (Զամչ. Բ. 992 գրում է* խապատ):

***ԽԱՏԵԹՈՒԹ**, *իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է ԺԳ դարում։*

— Խատեթուք, *հոգևոր մայր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղիտու վանքում օրինակեց Աւետարանը՝ 1296 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 201։*

**ԽԱՏԻ**, *մր. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1728 թ. (Ջեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 120)։*

***ԽԱՏՐԻՄԵԼԷՔ**, *իգ. < արաբ.* قدر qadr *«արժեք, արժանիք»+* ملك melek *«հրեշտակ» բառերից. ամբողջը նշանակում է «նա որ հրեշտակի արժանիքն ունի»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։*

— Խատրիմելէք, *կին Ղազարի և մայր Սարգիս կրոնավոր գրչի՝ 1435 թ.—Տաշեան, Ցուց. 760 (ցանկում գրված է* Խատրամելէք):

**ԽԱՐԱ**. *ար. (արգյոք Թրք.* قره qara *«սև» բառից է)։ Հիշատակված է ԺԸ դարում (Տաշեան, Ցուց. 469, 965)։*

***ԽԱՐԲ**, *ար. Թաթարական անուն է. օր. Ապուսայիդ որդի Խարպի, հաջորդ Խարբանդայի՝ 1316 թ. ըստ Սամ. անեց. շար. 166։—Տես և* Ղարիբ:

— 1. Խարբ, *որդի Սակոբ. իր եղբայրների հետ՝ Շոռոթ գյուղը նվիրեց Տաթևի վանքին, 1026 թ.—տես.* Խարբի՝ *Օրբ. ծե։*

— 2. Խարբ, *որդի Գագիկ Բ-ի. երկու անգամ հիշում է Մաշ. Թղ. հգ. տես.* Խարբի *ձեռվ.—Կոստանեան, անդ՝ էջ 337 ը կարծում է հասուկ անուն և ուղ. գնում է* Խարիբ։ *Ըստ իս հասարակ անուն է և նշանակում է «անառակ» (տես Արմ. բառ)։— Գագիկի մեծ որդին կոչվում էր Յովհաննէս. մյուսները անհայտ են։*

***ԽԱՐԻՍԻՄՈՍ**, *ար. < հուն.* χαρισμός *«շնորհ» բառից։ Հիշատակված է մեր մեջ 1694 թ. (Այրարատ 236) և ավելի ուշ՝ Աբր. կրետ. 35, 81, 83, 86, Սիսական 501։*

***ԽԱՐԿՐՏԵԼ**, *ար. < վրաց.* մխար-գրձելի *«երկայնաբազուկ»*

բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակության մեջ՝ Ջեռ. Թաւր. 73 բ։

*ԽԱՐՄԱՆԳՈՒԼ, իգ. < պրս. خرمن xirman (> թրք. خرمان xarman) «կալ»+گل gul «վարդ» բառերից. ամբողջը նշանակում է «կալի վարդ»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1544 թ. (Ջեռ. Վասպ. 286)։

ԽԱՐՈՆ, մր. < արդյոք Ահարոն անունից։ Մի անգամ հիշված է մի խաչքարի արձանագրության մեջ՝ 1740 թ.—Սիսական 179 ա։

ԽԱՐՈՒՄ, ար. ծագումը անհայտ։ Մի անգամ հիշվում է 1742 թ. պարոն Խարում Աղամալեանց իշխանը, որ Պարսից Թահմազ շահի հրամանով սպանվեց (Ջամչ. Գ. 816)։

† ԽԱՐՏԵԱՇ, ար. և իգ. < հյ. խարտեաշ բառն է, որ դարձել է անձնանուն, ինչպես Սեաւիկ, Կռճոչ։ Հիշատակված է երկու անգամ, բայց երկուսն էլ անթվական։ Առաջինը՝ Ջեռ. Վասպ. 118 ար. սեռ. «փեսային՝ Խարտշին», երկրորդը՝ անդ 774 իգ. «զկողակից՝ զԽարտիշն» ձևով։

ԽԱՒԼՊԷԿ, ար. վերջին մասն է թրք. beg «բէգ». բայց առաջին մասի ձևն ու ծագումը անստույգ։ Մի անգամ հիշատակված է 1507 թ. (Կամենից 161)։ Թերևս թրք. قول qol «վաշտ»։

ԽԱՒՈՒԹ, իգ. ծագումը ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ անսովոր և անհասկանալի ձևով՝ Բորչալուի Կուրթան գյուղի անթվական մի արձանագրության մեջ. «ես Խաւութի կնոջ իմ որ կոչի Տիրամայր». այս ձևով նաև հորը համար ասում է «հաւր իմոյ Մխիթարայ, որ Պապ կոչի»։

*ԽԱՒՌԱԶ, որ և Խաւռաս և Խաւառծ, ար. < պրս. خروس xurūs «աքաղաղ, աքլոր» բառից, որ թաթարերենում ձևափոխվելով՝ այս վիճակում հասել է մեզ։ Թրք. արտասանվում է այժմ xoroz, կիրգիզերեն դարձել է قوراز quraz (տես Будагов, II. 74) և նույն իսկ մեր մեջ գրված կա Խոռաս (այսպես՝ Հաղբատի մեծ տաճարի ժամատան գերեզմանների շարքում Խոռաս-Հասան, անթվական. տես Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր. հանդ. Է, 400—401)։

— 1. Խաւռաս Ա. իշխանաց իշխան, որդի Ամիր-Սարգսի, մորեղբորորդի Զաքարէ և Իւանէ սպասալարների, դաստիարակ եղավ Շահնշահ մեծի և ապա նրա որդի Զաքարիայի։ Իգնատիոս գրչին գրել տվեց Բագնայրի նշանավոր Աւետարանը 1212—23 թվերին։—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 16, Ծողակաթ 199, Խաղ-

քակեանք 14։ Կոչվում է Մեծ Խաւռազ՝ զանազանելու համար հաջորդից, որդին է Սասնայ, թոռն է Խաւռազ (№ 2), թոռնորդին Սասնայ, ինչպես հիշված է Բագնայրի 1262 թվի արձանագրության մեջ՝ Շիրակ 116։

— 2. Խաւռազ Բ. որդի Սասնայի, թոռն նախորդի. գրված է նաև Խաւռաս, Խաւառժ. կինն է Խաթուն, որդին Սասնայ, որ կես տարեկան վախճանվեց։ Նրա հիշատակին՝ այս Խաւռասը իր պապի թողած հողերը և երկու ճորտ նվեր տվեց Բագնայրին, ինչպես հիշատակում է ինքը 1229, 1262 և 1266 թվերի արձանագրությանց մեջ՝ Շիրակ 116։—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 18, Խաղբակեանք 14։

*ԽԱՓԼԱՆ, ար. < Թրք. قپلان qaplan (ժղ. խափլան) «վագր» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1693 թ. (Թորոս աղբ. Բ. 365)։

*ԽԱՔԱՆ, ար. < արաբ. خاقان xāqān «կայսր Չինաց», որ մոնղոլական ծագում ունի։ Մեր մեջ իբրև հասարակ անուն հիշված է Է դարից (տես Սեբ. էջ 33, 67, 69)։

— 1. Խաքան (կամ Խական) Գնթունի, հայր Հասանի և թերևս մեծ հայր (պապ) Աշոտ և Վասակ Գնթունի եղբայրների։ Հասան Գնթունին Օղուզլու գյուղում կանգնեցրել է մի նշանավոր եկեղեցի։ Արձանագրությունը անթվական է, բայց համարվում է Թ դարից։—Շիրակ 15, Այրարատ 248 բ, Սարգիսեան, Տեղագր. 174, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 81։

— Խաքան, իբրև իգ. անուն հիշված է 1716 թ. (Bodleian, էջ 15)։

*ԽԴԸՐ, ար. < արաբ. خضر Xəδər որ մի մարգարեի անունն է։ Մեր մեջ հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում. հաճախ Խդըշահ անվան կրճատումն է։ Հնագույն վկայությունն է Խտըր 1576 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 358), ապա գալիս են 1595 թ. (Manus. brit. mus. 271 ա), Խտր 1602 թ. (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 85), Խտըր 1622 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 292 ա), 1636 թ. (անդ 355 բ), Խըտըր 1658 (Տաշեան, Ցուց. 923), սեռ. Խըտըրին 1699 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 238), սեռ. Խտրի 1703 թ. կամ ավելի ուշ (Ձեռ. Հալէպի, Ա. 108)։ Ժողովրդական ձևով է սեռ. Խդրաւին (կարդա Խդրօին), անթվական ռամկալեզու մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 532)։ Սրանից է՞ Խտրեան ազգանունը։

*ԽԴՐԲԱԼԻ, ար. < Խդըր և Բալի անուններից, որոնք տես առանձին։ Հմմտ. նաև Խդըշահ։ Հիշված է այս գրչությամբ 1598

թ. (Հայ-Վենետ. 405). իսկ արեւմտեան տառադարձութեամբ ունինք՝

— 1. Խըտըրպալի Կեսարացի, գրել տվեց մի Աւետարան, Գրիգոր քահանա Տումարծացուն, և նվիրեց Ս. Գրիգոր Նիւսացու վանքին, 1206 թ.—Ձեռ. Կես. սարգ. էջ 9 բ։ (Թվականը այսքան շուտ անկարելի է. ուստի պետք է ենթադրել, թե ՈԾԵ=1206) կարդալու է ՌԾԵ=1606)։

*ԽԴՐԼԷՍ, ար. < արաբ. خضر الياس xəδər-ul-yās (ռմկ. խըտըրէլէզ) «Ս. Գէորգի տօնը» բառից։ Իբրև անձնանուն գործածված եմ գտնում 1624 թ. (Տաշեան, Ցուց. 916)։

*ԽԴՐՇԱՀ, ար. < վերի Խդըր մարգարեի անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Սրա կրճատ ձևն է Խդրիշ։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Խտրշայ, հոգեորդի Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 486։

— 2. Խտրըշայ, որդի նույն Էվաչայի.—անդ։

— 3. Խտրըշայ, որդի Խաչերեսի և հանգուցյալ եղբայր նույն Էվաչայի, 1425 թ.—անդ։

— 4. Խտըրշահ, որդի Պլտուխի և եղբայր Դանիէլ աբեղայի, որ գնեց Քարոզգիրքը՝ 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։ Թվում է թե սրա հետ նույն է՝

— 5. Խտըրշա, որդի Պտուղի, հարազատ եղբայր Դանիէլ կրոնավորի, որ Մաղարդի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1427 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 414։

— 6. Խդրշայ, որդի Աստուածատրի և եղբայր մահտեսի Ստեփանոսի, որ ստացավ մի Ցայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 102—5։

— 7. Խդրշայ, որդի Վարդանի և եղբայր Էդլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472—3։

— 8. Խտըրշա, որդի Աստուածատրի. Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 9. Խիդիրշահ, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Ցղնայում, 1477 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 321—2։

— 10. Խդրշայ Վանեցի, խոջա և տանուտեր, որդի Թումայի և եղբայր Աստմի, Քարիմշայի և Միրիջանի, որոնցից առաջին երկուսի հետ միասին, Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան՝ 1484 թ։ Այս Խդրշահը ամուսնացած էր

երեք անգամ. առաջին կինն էր Աղութ, երկրորդը Անլիփաշա և այս երկուսի մահից հետո Բէկխաթուն։ Որդիքն են Սմբատ, Միրաք, Սուլթանղուլի։—Ձեռ. Վասպ. 495—8։

— 11. Խգրշայ, հիշված է Ներքին Ագուլիսի մի խաչքարի վրա, 1497 Թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 313։

— 12. Խտմրշայ, փեսա Ղարիպ խաթունի, որ Գողթան Բուստայ անապատում գրել տվեց Աւետարանը 1484 Թ.—Սմբատեանց՝ Երնջակ 276։

— 13. Խտրշայ, փեսա Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց Ճաշոցը՝ 1494 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 14. Խըտըրշայ, ժանուկ, նոր նահատակ. պատանի էր. հեռու տեղից նոր էր դեռ պանդխտել Մարսուան, տաճիկները զրպարտեցին թե «հայհոյել է»։ Շատ տղաչեց Խտրշահը,

Թէ «Թողէ՛ք գլխս պահ մի ձեռաց,
Խիստ ճամփուհերիր եմ դադրած,
Դեռ եմ եկեր հեռու տեղաց»։

Մեծ կաշառք խոստանալով՝ բռնադատեցին մահմեդական դառնալ և երբ մերժեց՝

Բերին ձգեցին զուրբըն կրակին,
Երկու ձեռկունք յետին կապած,
Զինչ որ պիւլպիւլն ի վրայ վարդին,
Կու շրջմրջէր կամաց կամաց։
Անանց լուսուն նա տիրացաւ,
Ի մէջ կրակին որ նա դիմացաւ,
Միթէ հօրէ նա չէ՞ր եղել,
Կամ ի մօրէ նա չէ՞ր ծներ։

Այսպես, խարույկի վրա այրվելով նահատակվեց Խտրշահը՝ «1541 Թ»։ Իր նահատակության պատմությունը մի ոտանավորով գրեց Մեծպարոն անուն տաղասացը, որից էլ առինք վերի տները։ Ամբողջը տես Նոր վկ. 376—382. հմմտ. Ջամչեան, Գ. 516, Ձեռ. Վենետ. Բ. 977։

— 15. Ստացել է Խճդիրշայ ձևը և կա այս անունով մի վարդապետ Կիպրոսում 1578 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 560,

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Խդրշա

*1591 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 197), 1613 թ. (Ձեռ. Վասպ. 845), սեռ.* խտրշին *1658 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 63 բ), կրճատ ձևով՝* խդրիշ *1696 թ. (Տաշեան, Ցուց. 591)։ Վերջինս ցույց է տալիս որ նույն անունից է* խտշեան *ազգանունը (Տրապիզոն)։*

**ԽԴՐՋԱՆ, ար.<վերի* խդըր *անունից+*ջան *փաղաքշականով. գտնում եմ մի անգամ հիշատակված 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1924, 517)։*

***ԽԵԴԵՆԵԿ**, ար. ծագումն ինձ անհայտ. վկայված է նախ ԺԱ դարում և գնում է մինչև ԺԷ դար։*

— 1. խեդենեկ *Ա. մեծ իշխան, ազգական Սենեքերիմ Արծրունու։ Երբ այս Սենեքերիմը Վասպուրականը թողնելով գաղթեց Սեբաստիա (1021 թ.), Խեդենեկը գրավեց Ամիւկ բերդը և իր աթոռը այնտեղ հաստատեց.—Արծր. Դ. ժբ.—*խեդենեկ՝ *Հաւաք. 36 (ուր այս Խեդենեկի որդիքն են համարվում Թոռնիկ իշխանը, Դաւիթ եպիսկոպոսը և Ստեփաննոս եպիսկոպոսը)։*

— 2. խետենեկ, *տէր Ամիւկ բերդի, որ Շահի Արմէնը գրավեց 1132 թվին.—բց.* խետենեկայ՝ *Վրդ. հբ (հրտր. Էմինի՝ ի Հետենկայ).—նույնը Մխ. այրիվ. 79 բց. ի Խալտենկայ, որին դնում է Ամուկի տէր և գրավողն էլ է Էլտկուզ աթապակ 1151 թ.*

— 3. խետենեկ, *կոչված Արքայուն, որդի Ստեփաննոս Ալուղի, իշխան Ամիւկ բերդի.—Արծր. Դ. ժբ.—սեռ.* խեդենեկին՝ *Արծր. Դ. ժբ։—Ըստ Ալիշան՝ Շնորհ. էջ 107 հիշված է 1199 թ.—Արու որդի չունենալով իր դուստրը՝ Մարիամ ամուսնացրեց Սեֆեդին Արքայունի հետ, որին տվեց ամբողջ Աղթամարը (Արծր. յաւել.—սեռ.* խեդենեկին՝ *անդ.—Ակինեան, Գաւառ. 38—9)։—Իր կնոջ՝ Մարջանի հետ՝ Թեգանոյ շամբ կոչված կալվածը նվիրել է Հոռոմոսի վանքին՝ ՈՂԴ=1245 թ. (ըստ Արձ. Շիրակ 22, 26.—գրըված է* խետենեկ)*։—Բայց ինչպես կարող է 1199 թվին իշխողը դեռ 1245 թվին կենդանի լինել. ուստի կամ երկուսը տարբեր անձեր են և կամ ՈՂԴ=1245 պետք է կարդալ ՈԼԴ=1185։*

— 4. խեդենեկ, *տէր և իշխան Ամիւկ բերդի, հիշված ըստ Ալիշան՝ Շնորհ. 107՝ 1199 թվից «հարիւր տարի ալ վերջը», ուրեմն 1299 թվին։*

-- խեդենեկ *անունը ավելի ուշ հիշված է կրճատ ձևով՝* խեդեն *1544 թ. (Ձեռ. Վասպ. 108),* խետեն *1602 թ. (անդ 188 և Ակինեան, Գաւառն. 128)։ Անթվական է* խետեն՝ *Ձեռ. Թաւր. 74 ա։*

*† **ԽԵԼՈՔ**, <* հյ. խելօք *«իմաստուն» բառից. հմմտ. իր համազորը՝ Սոֆիա։*

— 1. Խեյաւք, *իր կնոջ Փոխան տիկնոջ հետ միասին՝ Տուրուբերանի Արգծլանայ վանքում, Ցակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1294 թ. այդ միջոցին մեռավ Խեյօքը և Աւետարանը ժառանգեց որդին Պօշը։—Ձեռ. Վասպ. 116—120։*

— 2. Խեյաւք, *կին Ծերուն քահանայի և մայր Խաչատուր սարկավագի, որ կազմեց Սարգիս քահանայի Սսում գրած Աւետարանը, 1336? թվին։—Ձեռ. Վասպ. 185։*

— 3. Խեյօք, *կին Կիրակոսի և մայր Խաչատուրի, որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. էջ 419։*

— 4. Խեյաւք, *դուստր տանուտեր Առաքելի, որ Գամաղիելի վանքում (Խիզան), Ցովհաննես վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453, 455։*

— 5. Խեյօք, *կին Ամոնի՝ որդւոյ Խոսրովի, որ Բռնաշէնում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 486։*

— 6. Խեյօք, *դուստր Հռիփսիմէի, դստեր նույն Խոսրովի.—անդ 485։*

— 7. Խեյօք, *կին Հայրապետի՝ թոռան նույն Խոսրովի,—անդ 485։*

— Խեյօք *իբր իգ. հիշված է նաև ԺԶ դարը (Ձեռ. Հալէպի, Բ. 135 ա) և անթվական* (Bodleian *27)։*

Խեմշին *տես* Խրիմշահ։

Խեշա *տես* Հեշայ։

***ԽԵՍԱՐ**, ար. ծագումը անհայտ։ Հիշված է մի անգամ՝ 1560 թ. (Խէսար ձևով), Ցովսէփեան, Խաղբակեանք 250։*

***ԽԵԹՄԱՆ**, ար. ծագումը անհայտ. մի անգամ հիշված է անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Թաւր. 74 ա։*

*† **ԽԷՐ**, իգ. ինձ թվում է թե* Խերխաթուն *անվան կրճատ ձևն է. հիշատակված է մի անգամ 1656 թ. (Ձեռ. Թաւր. 7 բ) և մի անգամ էլ անհայտ թվականով* Խեր *(Ձեռ. Թաւր. 242—3 երկիցս, բայց նույն անձը)։*

**ԽԷՐԱԴԻՆ**, *ար. < արաբ.* خير الدين Xayr-ad-dīn *անունից, որ բուն նշանակում է «բարիք կրոնից»։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում (տես տակը)։ Բայց անշուշտ ավելի սովորական էր, որովհետև ունինք սրանից* Խերատինեան *ազգանունը (Տփղիս), հիշված Ազգագ. 3848։*

— 1. Խերադին, *ամուսին Աղիզ տիկնոջ (№ 10), որ Եղի-*

վարդայ վանքում, Մատթէոս գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Նորագեղի Ս. Գրիգոր եկեղեցուն, 1465 թ.—Այրարատ 320 բ, Նոտարք 221։

*ԽԷՐԱՆ,ար. < արաբ. حيران ḩayrān «հիացած, զարմացած» բառից, որ իմաստով շատ ավելի հարմար է հաջորդ երկու անուններին։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1666 թ. (Տաշեան, Ցուց. 260) և մի անգամ էլ անթվական մի հիշատակութեան մեջ՝ Ձեռ. Վասպ. 627։

*ԽԷՐԱՆՇԱՀ,ար. < արաբ. حيران ḩayrān «հիացած»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից. ընդհանուր իմաստն է «նա որից թագավորն է հիացել»։ Հիշված է մի անգամ 1600 ական թվերին, Տաշեան, Ցուց. 583 (գրված հոգով, խերանշեն)։

*ԽԷՐԱՆՍՈՒԼԹԱՆ, իգ. <արաբ. حيران ḩayrān «հիացած»+ سلطان sulṭān «սուլթան» բառերից. ընդհանուր իմաստն է «նա որից սուլթանն է հիացած մնացել»։ Գտնում եմ մի անգամ 1494 թ. Դարաբաս գյուղում մի խաչքարի արձանագրութեան մեջ, որ հետևյալն է. «Ես Թագվոր Խէրան Սոլթան կանգնեցի խաչս փրկութիւն հոգւուն մերում. Թվին. ՋԽԳ» (Ազգագր. հանդ. Գ. 165)։—Ենթադրում եմ որ Թագվորը ամուսինն է և Խէրան-Սուլթանը նրա կինը։

† ԽԷՐԲԷԳ, ար. < հյ. հայր > ժղ. խեր+թրք. بك beg «իշխան» բառերից. ընդհանուր իմաստն է «որի հայրը բէգ է, բէգի որդի»։ Անշուշտ արական անուն էր, որ թեև չէ ավանդված, բայց նրանից ունինք խերբեգեան ազգանունը։ Նույն անունից է նաև Տաշեան, Ցուց. 841 բ հիշված խերպեկ խանը, որ սակայն ոչ թե պետք է հասկանալ «խան, իշխան», այլ «խան, իջևան» (Հալէպում, ուր իջևանել են ճամբորդները)։

*ԽԷՐԻ, ար. < արաբ. خيرى Xayrī անունից, որ բուն նշանակում է «բարեգործական»։ Մի անգամ հիշատակված է խոջայ խերի ձեռով, 1065 թ. (Manus. brit. mus. 297 բ)։

*ԽԷՐԻԿ, ար. նախորդի փաղաքշականն է. մի անգամ հիշատակված է՝

— 1. խերիկ աշխարհող, սպասավոր Արքայից վանքում, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

† ԽԷՐԽԱԹՈՒՆ, իգ. < հյ. հայր > ժղ. խեր+խաթուն բառերից. ամբողջը նշանակում է «հոր տիկինը, որ լինում է զավակի մայրը». ըստ այսմ գրված է նաև Հերխաթուն: Վկայված է ԺԴ դարից սկսած և հասնում է մինչև ԺԶ դարը։

— 1. Խէրխաթուն, *կին Մանուէլի, 1311 թ?—Ձեռ. Թաւր. 73 ա։*

— 2. Խէրխաթուն, *դուստր Հազարշահի Շիկրակեցւոյ, 1313 թ.—յիշատ.* ИАН *1911, էջ 1300։*

— 3. Խէրխաթուն, *կին Ապրէլուսի, որ ստացաւ մի Աւետարան, 1347 թ. — Ձեռ. Ագուլ. = Արար. 1911, 462-5։*

— 4 Խէրխաթուն, *կին ոսկերիչ Յակոբի և կնքամայր գրիչ Յակոբ սարկաւագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը՝ շուրջ 1358 թ. — Ձեռ. Թաւր. 28 բ։*

— 5. Խէրխաթուն, *դուստր Մկրտիչ քահանայի և հանգուցյալ քույր Զաքարիա գրչի, որ օրինակեց Աւետարանը Աղթամարում, 1393 թ. և մի ուրիշ Աւետարան էլ 1399 թ.- Ձեռ. Վասպ. 230, 235։*

— 6. Խէրխաթուն, *կին Խաչերեսի և խորթ մայր Էլաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 485։*

— 7. Հէրխաթուն, *կին Կարապետի և մայր Առում քահանայի, որ Վանում ստացաւ Խաչատուրից մի Աւետարան, 1418 թ. ապա կորցնելով՝ նորէն փրկանքով ազատեց 1431 թ.—Ձեռ. Վասպ. 313։*

— 8. Հէրխաթուն, *կին աղքատ Յովսէփի, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. էջ 478։*

— 9. Խէրխաթուն, *կին Թումայի և մայր տանուտէր Պետրոսի, որ Վանում, Ազարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1475 թ. (Ձեռ. Վասպ. 475—6) և մի Աւետարան էլ Զաքարիա գրչին, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։*

— *Ավելի ուշ ժամանակից ունինք* Խէրխաթուն *1557 թ. (Ձեռ. Վասպ. 658, 660), 1575 թ. (անդ. 683 և 685)։ Այնուհետև դադարում է։*

**ԽԷՐԽԱԻԹԱՑ**, *ծագումն անհայտ. այսպես է կոչվում Գրիգոր Խլաթեցին մի Յայսմաւուրքի մէջ (տես Նոտարք 75)։*

**ԽԷՐԽԱՆ**, *մր. կարելի՞ է դնել հյ.* Խէր *«հայր»+*խան *բառերից, այսինքն «նա որի հայրը խան է, խանի որդի», ինչպես կա* Խէրբէգ *«բէգի որդի»։*

— 1. Խէրխան, *որ Մարծպանի և Մամիկոնի հետ նորոգել է գերեզմանատունը՝ 1265 թ.—Արձ. Խաչենի Բոլատակ գյուղում, տես Արցախ 168։*

— 2. Խերխան իշխան, որդի Հասանի և թոռն Բաղաց թագավորի, մեռել է 1286 թ.—Արձ. Յովսէփեան, Խաղբակեանք 80։

— 3. Խերխան, որի հիշատակին պատարագ է նշանակվել Հերհերի Ս. Յովհաննէս եկեղեցում, 1291 թ.—Արձ. Սիսական 114։

— 4. Խերխան, թոռն Ջաջուռ Բ իշխանի Խաղբակեան (ԺԳ դար).—Բարխուտ. Պատմ. Աղուանից 144 (չունի Յովսէփեան՝ Խաղբակեանք իր տոհմագրութեան մէջ)։

† ԽԵՐԽԵՐ, ար. < հյ. ժղ. խեր բառից կրկնված, իբրև «հոր հայրը, պապ». հայրը գրել է այս անունը որդու վրա, իբրև հիշատակ իր հոր։ Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վասպ. 570)։ Սակայն նույն եմ համարում նաև Խեխեր, որ հիշված է 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578) և որ կամ կրճատ ձև է և կամ վրիպակ։

† ԽԵՐՄԵԼԷՔ, իգ. < հյ. ժղ. խեր «հայր»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառից (իբրև թե հոր հրեշտակը). բայց ապա դարձել է Խերմելիք, իբր թե «նա որի հայրը մելիք է»։ Հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Խերմելէք, կին Ազարիա գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում գրեց մի Ավետարան, 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 2. Խերմելիք, դուստր Խաթունի, որ Աղթամարում, Թումայ աբեղային գրել տվեց մի Ավետարան՝ 1425 թ.—Ձեռ. Վասպ. էջ 352։

— 3. Խերմելիք, դուստր տանուտեր Աստվածատուրի, որ Մարգարէ գրչին գրել տվեց մի Ավետարան՝ Ոշտունեաց Բերդաձոր վանքում, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— Խերմէլէք ձևով հիշատակված է նաև անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 318։

Խերում տես Հայրում։

† ԽԵՐՊԱՐՈՆ, ար. < հյ. ժղ. խեր «հայր»+պարոն բառերից, այսինքն «նա որի հայրը պարոն է». հմմտ. Խերբեգ, Խերմելիք ևն։ Հիշատակված է միայն ԺԵ դարում։

— 1. Խերպարոն, մերձավոր Աստվածատուրի, որ գնեց մի հին Ավետարան, 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

— 2. Խերպարոն, որդի Ստեփաննոսի՝ եղբոր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։

*ԽԹԱՅՄԵԼԻՔ, իգ. < խթայ «Չինաստան»+արաբ. ملك melik «թագավոր» (իմա ملكه melike «թագուհի»)։ Մի անգամ գրտ-

նում եմ հիշատակված՝ 1677 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1877)։ Տես հաջորդը։

*ԽԹԱՅՓԱՇԱ, իգ. < խթայ «Չինաստան»+թրք. پاشا paša բառերից, իբրև թե «Չինաստանի փաշա». տես և նախորդը։

— 1. Խթայ փաշա, կին մահտեսի Մանուկի և զոքանչ Խդրշահի, որ Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Ավետարան, Կեսարիայում, 1476 թ.—Rapport Belgique 34։ Ավելի ուշ նույնը գրված է՝

— 2. Խթափաշա, որ դարձյալ Կեսարիայում գրել է տվել մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849.

*ԽԻԱԹԽԱԹՈՒՆ, իգ. < արաբ. غياث ġiyāθ «օգնական» բառից (որ կարելի է կարդալ ըստ զանազան բարբառների ղիյաս, ղիյաթ)+խաթուն. համտ. արաբ. غياث الدين ġiyās-ad-dīn Իկոնիայի սուլթանը (1226 թ). գրված է Ղայասէդդին, Խիաթատին (Տաշեան, Ցուց. 906 ա)։

— 1. Խիաթխաթուն, քույր Ավրամի՝ մեծ հոր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի «Կոչումն ընծայութեան» գիրքը շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

*ԽԻԱԼ, իգ. < արաբ. خيال xayāl, xeyāl, xiyāl «երևակայություն, երազանք, պատկեր»։ Վկայված է միայն ԺԶ/ԺԷ դարից, երկու անգամ. այն է 1610 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 9 բ) և 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86 բ)։

† ԽԻԶԱՆ, իգ. < հյ. խիզան «կին, աղջիկ» բառից, որի ծագումը տես Արմ. բռ։ Գործածված է մի անգամ՝ 1488 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. էջ 492)։

† ԽԻԼԱՅ, իգ. < հյ. խիլայ «նվեր» բառից, որի վրա ավելի ընդարձակ տես խլղաթ։ Իբրև անձնանուն մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1490 թվից ուշ։—Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ։

† ԽԻԿԱՐ, իգ. < նշանավոր Խիկար իմաստունի անունից, որ մեր մեջ նաև հասարակ անուն է դարձել «իմաստուն, իմաստակ» նշանակությամբ։ Խիկար իմաստունի վրա մանրամասն ուսումնասիրություն ունի Տաշեան, Մատեն. մանր ուս. հտ. Բ, էջ 1—152։ Խիկարի վրա կա համառոտ վեպ, որ բխում է Ասորեստանի շրջանից։ Ազդել է նույն իսկ Ս. Գրքի վրա և Տովբիթը նրանից փոխառություններ ունի։ Հայոց մեջ այնքան է տարածված, որ մինչև անգամ կարծիք է առաջացել թե Խիկարը

*հայ է՝ ժամանակակից Սեննեքերիմ Արծրունի թագավորին (տես Տաշեան, անդ, էջ 4)։ Իբրև իգական անձնանուն գործածված է մեր մեջ ԺԴ դարից, բայց այժմ արական է և շատ հազվադեպ։*

— 1. Խիկար, *կին Ստեփանոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.*—Manus. brit. mus. *8 բ։*

— 2. Խիկար, *կին Առաքելի և մայր Վարդան քահանայի, որ Պառուագրակ անապատում, Սարգիս գրչին գրել տվեց մի Մաշտոց՝ 1455 թ.—Տաշեան, Ցուց. 425 բ։*

— 3. Խիկար, *անորոշ ձևով հիշված է Ծարի մի արձանագրության մեջ՝ 1549 թ. «Նշանս բարեխաւս Դաւլաթին Աստուծով եւ Դաւլաթս ամուսին իմ մեծ իշխան Միրզաջան Խիկար, որդիքս իմ Տաւիտ բէկ Մէլիք պէկի...» (Արցախ 406)։*

— 4. Խիկար *հիշված է նաև 1627 թ. (Ձեռ. Ներս. 40) և անթվական մի տապանագրում, որ գտնվում է Հաղբատում. «Այս է հանգիստ Խիկարին Գրիգոր աւագ երիցու որդւոյն».—Երզընկեանց, Հնախ. տեղագր. 38, Ազգագր. հանդ. Է, 403։*

Խիմշա *տես* Խրիմշահ:

*ԽԻՐԻԿ, իգ. < հյ.* հիրիկ *ծաղկի անունից է. գտնվում է անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1321 թվից ուշ.—Ձեռ. Թաւր. 33 բ։*

*ԽԼԱԶԱՓԱՇԱ, ար. (ընթերցումը կասկածելի է. անշուշտ մի որևէ տեղի փաշա է. արդյոք Խլաթ?)։ Այս անունով կա՝*

— 1. Խլազափաշա, *հայր Ղարիպ խաթունի, որ Բուստի անապատում գրել տվեց մի Աւետարան, 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։*

**ԽԼՂԱԹ, ար. < արաբ.* خلعت xilʿat *«իշխանավորից իբրև պարգև տրված թանկագին և ազնիվ շոր». սրա հին հայ ձևն է* խլայ *կամ* խիլայ *«ընծայ, պարգև»։ Հետաքրքրական է արաբ.* خ *տառի տառադարձությունը Ղ կոկորդականով։ Հնագույն գործածությունը* Ղլաթ *ձևով է. այսպես ունինք՝*

— 1. Ղլաթ, *դուրս եկավ կաթոլիկացած Կոստանդին Գ Կեսարացի («1307—1323 թ») կաթուղիկոսի դեմ և դրա համար էլ աքսորվեց իր ընկերների հետ Կիպրոս կղզին։—Հայապ. 552։*

— 2. Խլաթ, *որդի Եղիազարի և հորեղբայր Գրիգոր կրոնավորի, որ Արծկէում, Ղազար քահանային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1475 թ.—Ձեռ. Մաղն. 36։*

— Խլղար *ձևով երևում է առաջին անգամ 1397 թ. (տես Տաշեան, Ցուց. 285), որից և* Խլղարեան *ազգանունը (Վան)։*

— *Այս* Խլղար *ձևով շարունակվում և հաճախ գործածվում է ամբողջ ԺԶ և ԺԷ դարերի ընթացքում, որոնք չեմ հիշատակում։ Վերջին հիշատակությունն է 1712 թ. (Ձեռ. Վասպ. 1036)։ Այս անվան տարբերակներն են՝* Ղլղար, *որ գործածված է անթվական մի հիշատակարանում* Խլղար *ձևի հետ միասին (Ձեռ. Վասպ. 12[5]),* Խղլար՝ *1565 թ. (անդ 663),* Հլղար՝ *1682 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 47 բ),* Խլխար՝ *1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 91 ա),* Խղար*1688 թ. (Ձեռ. Սեբ.= ՀԱ 1925, 578—9),* Խլար *1544 թ. (Ձեռ. Վասպ. 286), 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 259 և 260՝ Խլխաթ ձևի հետ), և այս վերջինից կրճատված՝* Խըլօ *1730 թ. (Ձեռ. Վասպ. 630) կամ* Խլը *1794 թ. (անդ 207)։ Հիշելու արժանի է նաև* Խղլար, *որ գործածված է Վենետկի № 986 Ոսկեփորիկում և թեև անթվական, բայց հին է երևում ըստ Աթան. յոյ. ԺԹ։—Այս բոլորը արական են, բայց կա նաև իգական՝*

— Ղլարխարբուն, *անհայտ թվականով* (Bodleian *148)։*

† **ԽՆԴԱԿ**, *ար. ըստ երևույթին հյ.* խնդալ *բառից է և նշանակում է «ուրախ» . հմմտ.* Խնդուն։ *Բայց նույնը ավանդված է նաև* Կնդակ *ձևով և հայտնի չէ թե որ ձևն է ստույգ։*

— Խնդակ, *առաջին եպիսկոպոս Կամսարական տան, նստավ 472—518 թ.—Ջամչ. Բ. 374, Այրարատ 56 (որ և Կնդակ), Տաշեան, Ցուց. 656 (գրում է Կնդակ, ցանկում Կոնդակ), Ձեռ. Հալէպի, Բ. 132 ա։*

† **ԽՆԴԻՐ**, *ար. < հյ.* խնդիր *«խնդիրք, աղաչանք» բառից. հիշված եմ գտնում 1832 թ. (Պէրպ. Պատմ. Հայոց 251). գործածական էր Պոլսում՝ անցյալ դարում, թեև շատ հազվագյուտ։*

† **ԽՆԴՈՒՆ**, *ար. < հյ.* խնդուն *«ուրախ» բառից. իր համազորներն են* Ուրախ, Զուարթ *և հուն.* Իլարիոն։ *Հիշված է մի անգամ ԺԴ դարում։*

— Խնդուն, *ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։*

† **ԽՆԴՈՒՇ**, *իգ. < հյ.* խնդալ *«ուրախանալ» բայից. գործածական է այժմ, բայց քիչ անգամ. հմմտ. Սովետ. Հյստ. 1945 մրտ. 7, առաջին էջ, վերջին սյուն։*

† **ԽՆԴՐԱԾ**, *ար.* < *հյ.* խնդրած «ուխտիւք խնդրված» բառից։ Ավանդված է երկու անգամ ԺԵ դարից։

— 1. խնդրած (*վրիպակով տպված է Խնդատած*), «միայնակեաց Զորեհանգիստ կոչեցեալ վանից, որ է Լուսաւորչի գերեզմանն», և «որ է միամիտ սպասաւոր մեզ», 1429 *թ.*—Նոտարք 92։

— 2. խնդրած, *որդի Աղբէկի, ազգական Շիրազմամայի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան*, 1470 *թ.*—Թորոս աղբ. Բ. 356։

† **ԽՆԿԵՆԻ**, *իգ.* < *հյ.* խնկենի «խնկի ծառ. 2. անուշահոտ» բառից. հիշատակված եմ գտնում 1796 *թ.* (Էֆիմ. 448)։

† **ԽՆԿԻԿ**, < *հյ.* խունկ բառի փաղաքշականից։ Հիշատակված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. խնկիկ, *որի հիշատակի համար Արևիկ ոմն կանգնեցրել է մի խաչքար՝ Շահապոնենց Նորս գյուղում*, 1274 *թ.*—Սիսական 485։

— 2. խնկիկ (*սեռ. Խնկկայ*), *հայր Թադէոս փիլիսոփայի, որ Աղթամարում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան* 1392 *թ.* և *մի ուրիշ Աւետարան էլ Զաքարայ գրչին*՝ 1393 *թ.*—Ձեռ. Վասպ. 225—8, Նոտարք 1։

— 3. խնկիկ *անհայտ թվականով է Բջնիի մի արձանագրության մեջ, որ բավական հին պետք է լինի.*—Այրարատ 256, Շահխաթ. Բ. 175։

† **ԽՆՁՈՐ**, *իգ.* < *հյ.* խնձոր *բառից. հմմտ. իր համազորը՝ Թրք.* Ալմա, *որ գործածված է մեր մեջ։ Կան նաև սրա փաղաքշական ձևերը՝* խնձորիկ և խնձորշահ, *որոնք տես առանձին։ Այս բոլորը վկայված է ԺԲ--ԺԴ դարերի շրջանում։*

— 1. խնձոր, *քույր Պատրիկի (ԺԴ դար. նախ քան 1420 թիվը)*.—Տաշեան, Ցուց. 666։

— 2. խնձոր, *դուստր Գաղանի և քույր Մխիթարի (ԺԴ դար. նախ քան 1420 թիվը)*.—Տաշեան, Ցուց. 666։

† **ԽՆՁՈՐԻԿ**, *իգ. նախորդ անվան փաղաքշականն է և ավանդված է ԺԳ դարի սկզբից.*

— խնծորիկ *ոմն, մի այգի է նվիրել Տեղերի եկեղեցուն, ինչպես հիշատակում է ինքը իր մի արձանագրության մեջ*՝ 1213 *թ.*— ZAPh 2, 45, Բանասէր 1903, 30։

† **ԽՆՁՈՐՇԱՀ**, *ար.* < *նախորդ* խնձոր *անունից + պրս.* šāh «թագավոր» *բառով, որ այստեղ ծառայում է իբրև փաղաքշական*

ժամնիկ։ Հիշատակված եմ գտնում մի անգամ՝ անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Վենետ. Ա. 166։

***ԽՆՉԻԿ***, *իգ. ծագումն անհայտ։*

— խնչիկ, *դուստր Վաչագան Գ թագավորի Աղուանից (Զ դար). Նրա անունով Վաչագանը շինեց մի դաստակերտ, ուր դրին Ս. Գրիգորիսի մասանց մի կտոր և տոն հաստատեցին։— Կղկնտ. Ա. իգ։*

***ԽՈԴՄԵԼԻՔ**, *իգ. < պրս.* خود xōd *«ինքը»+արաբ.* مليك melīk *«թագավոր» (ավելի ճիշտ պիտի լիներ* مليكه melīke *«թագուհի» կամ* ملك melek *«հրեշտակ»)։*

— խոտմելիք, *կին Ատոմի և մայր Աւետիք աբեղայի, որ Բալու քաղաքում օրինակեց Աւետարանը, 1437 թ.*—Manus. brit. mus. *30 բ։*

†***ԽՈՃԿՈՐԻԿ***, *ար. < հյ.* խոճկոր *«խոզի ձագ» բառի փաղաքշականն է. հմմտ.* Վարազ։

— խոճկորիկ, *նախարար աղուան. Եսուաղէն թագավորի հարճորդին էր. եղավ Ցռի քաղաքի կառավարիչը և Ցակոբ վանահոր հետ գտավ Ցռիում Ս. Գրիգորիսի բերած մասունքները՝ Զաքարիայի և Պանտալէոնի (Վաչագան բարեպաշտի օրով, Զ դար).—Կղկնտ. Ա. ժթ, իգ.—սեռ.* խոճկորիկայ՝ *Կղկնտ. Ա. ժթ, իգ.*—խոճկորիկոյ՝ *Կղկնտ. Ա. իգ։*

***ԽՈՅԱՆԴ**, *իգ. ծագումը տես* Խուանդ։ *Գործածված է ԺԴ—ԺԵ դարերում։*

— 1. խոյանդ *խաթուն, դուստր Գրիգորի և արդեն հանգուցյալ քույր Սարգիս քահանայի, որ Սիս մայրաքաղաքում օրինակեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։*

— 2. խոյանդ, *դուստր Մուսեխի և Դիլշատի՝ քրոջ Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 485։*

— 3. խոյանդ, *կին Մէհրանիք, հիշված 1492 թ. — Ձեռ. Թաւր. 31 բ։*

— 4. խոյանդ *ոմն, հիշված 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Թաւր. 74 ա։*

***ԽՈՅԴԱՆ***, *ար. ծագումն ինձ անհայտ։*

— խոյդան *Խաչեննեցի, որդի Հասանի և եղբայր Վախթանկ Խաչեննեցու. օգնեց Մխիթար Գոշին՝ Նոր-Գետիկը շինելու, 1191 թ.—սեռ.* խոյդանայ՝ *Կիր. ժբ։—Արձ. Սմբատեանց, Գեղարքունիք, էջ 173։*

— 1. խոյդան (կամ Խոյտան), որդի Վասակ պարոնիկի, թոռն Հասան Հաթերքցու. Կիւրիկեան թագաւորական ցեղից։ Իր եղբոր՝ Խոչախի հետ միասին մի խաչքար կանգնեցրին իրենց նահատակ հոր հիշատակին՝ Խաթրավանքում, 1201 թ.—Շահխաթ. Բ. 363, Արցախ 196 > Նոր վկ. 688։

— 2. խոյդան, հայր Մխիթարի և Արևիկի, որոնք Ախտայում (կամ Քեօմուր գյուղում) եկեղեցի են շինել և խաչ են կանգնեցրել 1263 թ.—Սիսական 174 և 175, Ցովսէփեան, Խաղբակեանք Ա. 130—131։

— 3. խոյդան (կամ Խոյտան), հայր Խութլուբէկի, որ նվերներ է արել Մեծարանց վանքին, 1293 թ.—Արցախ 170, Բանասէր 1901, էջ 137։

— խոյդան հիշված է նաև երեք ուրիշ անթվական արձանագրությանց մեջ Սիսական 175, Բանասէր 1901, 137, Արցախ 386։ Այսպես նաև «տիկնոջ! Խոտանայ», Սիսական 119։

† ԽՈՆԱՐՀ, իգ. < հյ. խոնարհ բառից, ինչպես կա և Համեստ անունը։ Գտնում եմ հիշված 1796 թ. (Էֆիմ. 448)։ Բայց սրանից կազմված է նաև՝

† ԽՈՆԱՐՀ-ՄԵԼԷՔ, իգ. < հյ. խոնարհ+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից. բարբառային ձևով դարձել է՝

— 1. խունարմելէք, կին Ծերի և մեծ մայր (տատ) տանուտեր Սատաղայի, որ Աղթամարում, Թումայ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Ջեռ. Վասպ. 480, 481,

— 2. խունարմելէք հիշված է նաև 1701 թ. (Ջեռ. Վասպ. էջ 1026)։

*ԽՈՆԴ, իգ. ծագումը տես խունդ:

— 1. խոնդ, կին Անդրիանոսի և մայր տանուտեր Յովհաննէսի, որ ստացավ մի Մաշտոց, Վան 1418 թ.—Տաշեան, Ցուց. էջ 383 բ։

— 2. խոնդ, ազգական տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ջեռ. Վասպ. 370 (կարծեմ երկու տարբեր կանայք)։

— 3. խոնդ, դուստր Շատարեի և քույր տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ջեռ. Վասպ. 454։

— 4. խոնտ, կին Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 7 բ։

*ԽՈՆԴԱԼԻ, ար. < վերի խոնդ ձևից+արաբ. علی ʿali անունից։ Մի անգամ գտնում ենք հիշատակված՝

— Խոնդալի (գրված է տր. Խոնդալին), որդի Խաչումի. մայրն է Մարպատ, աղջիկն է Ղազամշայ. այս բոլորի հիշատակին կա անթվական մի արձանագրություն՝ Հերհերում։—Սիսական 111։

*ԽՈՆԴԱՂԱ, իգ. < նախորդ խոնդ ձևից+աղա, հմմտ. Խանաղա։ Հիշատակված է 1563 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 49 բ) և 1581 թ. (Ձեռ. Թաւր. 75)։

Խոնդամիր տես Խանդամիր։

*ԽՈՆԴԲԷԿԻ, իգ. < նույն խոնդ ձևից+թրք. بك beg. հայտնի թվականով ունինք միայն Խոնտբեկի 1512 թ. (Արցախ 67), իսկ անհայտ թվականով՝ Խոնդբէկի իգ. (Ձեռ. Նոր-Բայազ. 43 բ) և Խունդէկի, ար! (Ձեռ. Վասպ. 641)։

*ԽՈՆԴԻԿ, ար. և իգ. < նույն խոնդ անվան փաղաքշականն է. ունինք մի մի անգամ հիշված ԺԲ և ԺԵ դարերից։

— 1. Խոնդիկ, հայր Պետրոս ճգնաւորի, որ նշանավոր էր Աղուանքում (ԺԲ դար).—սեռ. Խոնդկայ՝ Մխ. այրիվ. 78, Խոնթկայ՝ Վրդ. հ։

— 2. Խոնդիկ, կին Խոցադեղի և մայր Մարտիրոս աբեղայի, որ Հաղբատում օրինակեց մի Շարակնոց, 1437 թ.—Manus. brit. mus. 97 ա։

*ԽՈՆԴԽԱԹՈՒՆ, իգ. < նույն խոնդ բառից+խաթուն, հիշատակված է քանիցս ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Խուտխաթուն? (ընթերցումը կասկածելի), կին պարոն Քուրդի, որ Արագածոտն գավառի իշխանն էր. հիշված է Ուշի գյուղի մի արձանագրության մեջ՝ 1329 թ.—Շահխաթ. Բ. 119 և Այրարատ 181։—Այլուստ գիտենք որ այս Քուրդի կինը կոչվում է Խոյան կամ Խուանդ խաթուն։

— 2. Խոնդխաթուն, կին Ամենաւագի և մայր Ասատ միայնակեացի, որ Գամաղիէլի վանքում, Ներսէս գրչին գրել տվեց մի Ճառընտիր, 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1284—5։

— 3. Խոնդխաթուն, դուստր Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277։

— 4. Խոնդխաթուն, կին Կարապետ քահանայի, որ Վանում, Փաշայ տիկնոջ համար օրինակեց Աւետարանը, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 5. Խուանդ խաթուն, *դուստր Բեհնամի և քույր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Ավետարան, 1454 Թ.—Թորոս աղբ. Ա. 330։*

— 6. Խոնդխաթուն, *կին Մանուկի՝ հորեղբոր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Ավետարանը, 1486 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։*

— 7. Խոնթ խաթուն, *կին Յովհաննէսի և մայր Համանգուլ կույսի, որ Այրի վանքում Ստեփան աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1493 Թ.—Թորոս աղբ. Բ. 304։*

— 8. Խոնթլխաթուն, *եղբորդուստր Ազարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Ավետարան, 1495 Թ.—Ձեռ. Վեննա. Ա. 586։*

— *Անհայտ թվականով են* Խոնդ/թխաթուն՝ *Ձեռ. Թավր. 71 ա, և* Խունդխաթուն՝ *Ձեռ. Վասպ. 545։*

**ԽՈՆԴՄԵԼԷՔ, իգ. < նույն* խոնդ *բառից+արաբ.* ملك melek *«հրեշտակ»։ Հիշատակված է ԺԵ դարում։*

— 1. Հոնդմէլեք *(նախաձայնը դարձած Հ), կին Կիրակոսի և մայր Մկրտիչ եպիսկոպոսի, որ Մոկաց Աբրահամանց գյուղում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1441 Թ.—Նոտարք 124։*

— 2. Խոնդմէլէք, *կին Ամիրմուլքի և մայր ոսկերիչ Յովհաննէսի, որի ժամհվան վրա իր կինը՝ Թուրվանդա, Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան, Աղթամար 1449 Թ.—Ձեռ. Վասպ. 404։*

— 3. Խոնդմէլ/իք, *կին Թումայ քահանայի և մայր Յովհաննէս քահանայի, որ Խիզանում օրինակեց Ավետարանը, 1474 Թ.—Ձեռ. Վասպ. 470։*

**ԽՈՆԴՇԱՀ, իգ. < նույն* խոնդ *բառից +պրս.* شاه šāh *«թագավոր»։ Հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում,*

— 1. Խոնդշայ, *դուստր Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ օրինակել տվեց Հին կտակարանը՝ Սղկայուվանքում, 1331 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։*

— 2. Խոնդշի *(այսպես սեռականը իբրև ուղղական գործածված), կին Զումիի, որ Նաչիի որդին և Ամիր-Հասանի թոռն էր, մեծ իշխան Պռօշի ցեղից (ԺԴ դար).—Արձ. Սիսական 122 > Այրարատ 269։*

— 3. Խոնդշայ *ոմն, որի գերեզմանը գտնվում է Շամախիի*

Գեօքչայ գավառի Վանքաշէն գյուղում, 1409 թ.—Բարխուտարեանց, Աղուանից երկ. 205։

— 4. Խոնդշի (նույնպես սեռ. փոխանակ ուղղականի) ԺԵ դար.—Ձեռ. Թաւր. 22 ա։

*ԽՈՆԴՓԱՇԱ, իգ. < նույն Խոնդ բառից+թրք. پاشا paša «փաշա». հիշված է 1490 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սևան. 5 ա)։

*ԽՈՆԴՔԱՐ, իգ. շատ ձևափոխություններ կրած բառ է. սկզբնական ձևն է պրս. خداوندگار xudāvendigār, որ և հնչվում է xudāvendikār. կազմված է պրս. خداوند xudāvend «տեր» բառից և թարգմանվում է «տէր գործոյ»։ Առաջին իմաստն է «Աստված». ապա «թագավոր» և հատկապես տաճկաց սուլթանների տիտղոսն է։ Այս վերջին իմաստի համար՝ բառը անցնելով خندكار xundkār ձևից, կրճատվել դարձել է خنكار xunkyar, որ և ռմկ. hünkyar: Նշանավոր է Պոլսում hünkyar suyu կոչված քաղցրահամ աղբյուրը և Hünkyar iskelesi պատմական վայրը։ Սրանից է նաև թրք. hünkyarbeyendi «խորոված պատինջանով պատրաստված կերակուրը» և Հիւնքեարպէյէնտեան ազգանունը (նշանավոր Ստ[ուգ]աբանական բառարանի հեղինակը)։ Հայոց մեջ պահված է միջին xundkār ձևը, որ ուրիշ լեզուների մեջ հազիվ է հիշված։ Հնապես մեր մեջ իգական անուն էր, հետո դարձավ արական, որից էլ Խոնդկարեան ազգանունը։ Այսպեսով այն բառը՝ որ նշանակում էր «տեր, Աստված», իմաստի զարգացմամբ դարձավ մի տեղ կերակրի անուն և մի ուրիշ տեղ հասարակ կնոջ անուն։ (Սխալ է ստուգաբանում Будагов 1,543, որ xondkār= xunkār բառը դնում է պրս. خون xūn «արյուն» բառից և նույն իսկ خنكار xunkār բառը վրիպակով գրում է خونكار xūnkār!)

— 1. Խոնթքար պարոն, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Վայոց ձորում Սպիտակավոր Աստուածածին վանքում, 1433 թ.—Սիսական 138, Յովսէփեան՝ Խաղբակեանք 231 (գրում է Խոնդքար և թիվը դնում է ՊԾԲ կամ ՊՁԲ)։

— 2. Խոնդքար, կին կամ եղբորկին Յովհաննէս քահանայի, որ մատաղ հասակում մեռավ Սորավանքի Կեցան գյուղում, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 429։

— 3. Խոնդքար, դուստր Ասիլ մէլիք տիկնոջ, որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Սարգիս երեցին, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 241։

— 4. Խոնտքար, դուստր Էտիլշահի և կին Ղարիպշայի. Խո-

րոտկայ վանքում, Ալեքսիանոս աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 5. Խոնթքար, եղբորդուստր Ազարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 586։

— Ավելի ուշ հիշատակված են Խոնթքար իգ. 1512 թ. (Ձեռ. Վասպ. 86), Խոնդքար իգ. 1547 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 860), Խոնդքար ար. 1575 թ. (Թորոս աղբ. Բ. 410), Խոնդքար իգ. 1608 թ. (Manus. brit. mus. 44 ա), 1649 թ. (ՀԱ 1889, 269 բ), Խոնդկար 1654 թ. (Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 385), և անհայտ թվականով՝ Խոնդքար՝ Ձեռ. Վասպ. 440, և ար. անդ 627)։

Խոնթիկ տես Խոնդիկ։

*ԽՈՆՁԱ, իգ. արտաքին երևույթով այս շատ հայակերպ բառը ծագում է պարսկերենից։ Մայր ձևն է պրս. xond (ընդարձակ տես Խուանդ), որի վրա ավելանալով زاده zāde «ծնեալ» բառը՝ դարձել է خوندزاده xond-zāde «իշխանածին»։ Կրճատվելով դարձել է xondzā, ինչպես ունենք պրս. امیرزاده amīrzāde > amīrzā և վերջապես میرزا mīrzā։ Հայերենի մեջ d և z բաղաձայնների ձուլմամբ առաջացել է ձ, որով և Խոնձա։ Միջին ձևը գտնում է դեռ Խուանդզէ, որ և դրականապես հաստատում է մեր ենթադրությունը։ Ատամնականների հետ ձուլմամբ առացված կիսապայթական ուրիշ բաղաձայնների օրինակներ են հետևյալները.— արտասուք < արտսուք > արցունք, կրտսեր > կրցեր, թշուառ > չուառ, պատասխան > պացխուն, Գեթսեմանի > Կէցաման (այսպես էր կոչվում Երևանում, Օպերայի ետևի այգիներում գտնված ինչ որ փոքրիկ սրճավայր), մղձսի > մղցի (Ձեռ. Հալէպի, Ա. էջ 74 բ), Էվաղշահ > Էվաչա, Էաչի (տես վերը, էջ 235 և 222)։ Նկատելի է որ դզ ձևը հիշվում է ԺԴ դարում, իսկ ձ ձևը ԺԵ դարում։

— 1. Խուանդզա (որոշիչ հոլով՝ Խուանդզէս, սեռ. Խուանդզին), դուստր Շամշադին Սահիբ-Դիւանի և կին Շահնշահ Բ ամիրսպասալարի († 1320)։ Այս թվին, երբ ամուսինը մեռավ, Խուանդզան Անիում թողեց մի մեծ արձանագրություն, ուր նախ ասում է թե ամուսինը «յայսմ ամի ել յաշխարհէ և տրտմութիւն մեծ եղև մեզ և աշխարհիս արևելից» և ապա վերացնում է Անիի կովի և էշի հարկը, ինչպես նաև մեծի և փոքրի «դռնագիր» կոչված հարկը (Շիրակ 62)։ Հիշված է նաև 1310 թվի մի ուրիշ արձանագրության մեջ (Շիրակ 79)։

— 2. խոնդզէ, կին Ջումայի Ա., որ Պռօշ իշխանի Թոռնորդին էր. միասին Աւագակնայ Չրաղացը նվիրել են Ս. Ստեփաննոսի գերեզմանին.—անթվական Արձ. (շուրջ 1334 թ).—Յովսէփեան՝ Խաղբակեանք 203։

— 3. խոնձա, կին Հասանի՝ որդւոյ Դօփի՝ իշխանի Տարայ. մեռել է նախ քան 1411 թ. երբ հիշատակված է մի ճաշոցի հիշատակարանում.—Նոտարք 39 (տես նաև Կրպտ. եպս.՝ Դօփեանք, էջ 185)։

— 4. խոնծայ, կին Մելիքսեթ երեցի, որ Աւան գյուղում օրինակեց Գանձարանը, 1453 թ.—Bodleian 135։

— 5. խօնձայ, վաղամեռիկ դուստր Ստեփանոսի՝ եղբորորդւոյ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 582։

— 6. խոնձայ, դուստր Ստեփանոսի և կին տանուտեր Էդիլշահի, որ Արծկէում Յովհաննէս գրչին մի Աւետարան գրել տվեց 1463 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 620։

— 7. խոնծայ խաթուն, հարսն Յովհաննէս կրոնավորի, որ գնեց մի հին Շարակնոց և նորոգել տվեց 1465 թ.—Rapport Belgique 145։

— 8. խոնձա, դուստր կամ եղբորդուստր Սահակ տանուտիրոջ, որ իր Ատոմ եղբոր հետ միասին մի Աւետարան տվեց գրել Խիզանում, 1474 թ.—Ջեռ. Վասպ. 470։

— 9. խոնցա-խաթուն, կին Մարտիրոսի՝ որդւոյ Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ. «յայսմ ամի Խոնցա-հաթունն փոխեցաւ առ Քրիստոս և սուգ մեծ եթող սիրելեացն իւրոց և շատ որբեր Ճնացին» (5 զավակ ունէր)։—Ջեռ. Վասպ. 485։

— 10. խոնծա (սեռ. Խոնծին), հիշված է իբրև ամուսին Գուզալի. մի Աւետարան են գրել տվել Կուքի գյուղում, 1496 թ.—Թորոս աղբ. Բ. 423 (ըստ երևույթին Խոնծան արական! է և Գոզալը (№ 3) իգական. բայց գուցէ և հակառակն է)։

— 11. խոնձա, քրոջ դուստր Ատոմի, որ անզավակ լինելով՝ իր կնոջ՝ Հաբիբի հետ, Աղբակի Երնկանի գյուղում մի Աւետարան գրել տվեց 1498 թ.—Ջեռ. Վասպ. 527—8։

— Ավելի ուշ հիշատակված է՝ Խաւնձա 1507 թ. (Ջեռ. Վասպ. 623), Հոնձա 1508 թ. (անդ 635), Խոնձա 1549 թ. (անդ 652), 1580 թ. (անդ 691), 1587 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), 1591 թ. (Ջեռ. Թաւր. 75), շուրջ 1591 թ. (Տաշեան, Ցուց. 285), 1596 թ.

*(Ձեռ. Թաւր. 75 բ), 1633 թ. (Ձեռ. Վասպ. 882), 1645 թ. (անդ, էջ 606), Խունծի, իգ. 1649 թ. (Հնոց և Նորոց 127)։*

***ԽՈՆՁԱՂԱ**, իգ. < նույն* խոնձա *անունից*+աղա, *որ Պարսկաստանում նաև կանանց տրված պատվանուն է։ Հիշված է մի անգամ ԺԶ դարում։*

— խոնձաղ[ա], *դուստր Գալուստի և քույր Ջանդուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 135։*

***ԽՈՆԾ**, իգ. մի անգամ հիշատակված եմ գտնում Եղուարդի մի խաչքարի արձանագրության մեջ, որ թեև անթվական է, բայց երևի գրված է 1471 թվից ուշ (Բանաս. 1903, էջ 30)։— Թվի թե պետք է կարդալ կամ իմանալ* խոնձա:

Խոնչա *տես* Ղոնչա:

***ԽՈՇ**, իգ. < պրս.* خوش xōš *«քաղցր, անուշ» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԴ դարում։*

— խաւշ, *դուստր Վահրամի Դոփենց, որդւոյ Գրիգոր Բ Բարի իշխանի Խաչենոյ, մեռել է 1333 թ. և թաղվել Վայոց ձորի Ցախացքար վանքում։—Արձ. Սիսական 148, Գրպտ. եպս.՝ Դոփեանք 78։*

***ԽՈՇԱՔ**, իգ. < պրս.* خوشك xōšak *«քաղցրիկ» ձևից, որ* خوش xōš *բառի փաղաքշականն է։ Գործածական էր նաև Վրաց մեջ. օրինակ՝ Լաշա Թագավորի որդի Դավիթի աղջիկը կոչվում էր* խոշաք՝ *ըստ Կիր. կա։*

— 1. խոշաք, *կին Իվանե աթաբեկի, մայր Ավագի. հիշված է 1214—58 թվերի արձանագրությանց մեջ. կոչում է իրեն Վրաց և Հայոց թագուհի. 1250 թվին միջնորդ հանդիսացավ իր որդի Ավագի և թաթարների միջև։ Մեռած էր նախ քան 1270 թ.— Կիր. խե. (գրված* խօշաք), *Վրդ. ձգ. Անանուն ժմ. 19. Զքր. պտմ. Գ. 18. Շողակաթ Ա. 23, Սիսական 120, Այրարատ 263, 273, Հովիտ 1910, էջ 122, Բանաս. 1900, 274, Ցուշարձան 360, Շիրակ 10 (երկու. Արձ. գրված Խոշակ).—Իսկ Այրարատ, էջ 170, 1258 թվի արձանագրության մեջ, Զաքարե ամիրսպասալարի որդի Շահնշահը այնպես է հիշում Խոշաքին, որ ընթերցողը կարող է կարծել թե իր կինն է, մինչդեռ իր հորեղբոր կինն է։*

— 2. խոշաք, *դուստր աթաբեկ Ավագի՝ որդւոյ Իվանե աթաբեկի. մայրն է Գոնցա. նախորդի թոռն է. իր հոր մահից հետո ժառանգեց նրա իշխանությունը, որովհետև եղբայր չուներ. տեր էր Բջնիի, Գառնիի, ևն. արձանագրությանց մեջ հիշված է.*

1257—97 թվերին. ամուսնացավ Թաթար մեծ իշխան և Հուլաղու խանի դիվանադպիր՝ Սահիբ դիւանի Խոջա Շամշադինի հետ 1269 թվին. կոչվում է նաև խորիշահ (Շիրակ 175 և Հայապ. 447)։ Իր ամուսնու դրդմամբ սպանել է իր մոր Գոնցային, այն է աթաբէգ Աւագի կնոջ։—Օրբ. կե. Վրաց. ազբ. Բ. 58 (կոչում է խվաշազ), 59, 60, 63. Օրբ. ժմ. 26, 27, Շողակաթ Ա. 23—25, 41, 45, Այրարատ 273 բ. Սմբատեանց՝ Գեղարք. 310 (Արձ. 1288 թ).—Իսկ 1270 թ. հիշված է իբրև «պարոն Արարատեան նահանգի»՝ Պռոշ, Սադուն և Սմբատ իշխանների հետ (Կանոն. 180, 186, Շողակաթ Ա. 23)։

— 3. խոշաք, քույր Մելքիսեթ երեցի, որ Աւան գյուղում օրինակեց Գանձարանը՝ 1453 թ.—Bodleian 134։

*ԽՈՇԵԱՐ, ար. < պրս. خوش xōš «քաղցր, լաւ»+یار yār «բարեկամ, սիրելի» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված խոշիար ձևով՝ 1655 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 474։

*ԽՈՇԻԿ, իգ. < պրս. خوش xōš «քաղցր» բառի հյ. փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ հիշատակված 1552 թ. (Ալպօյաճեան, Պատմ հայ. Կես. Բ. 1853)։

*ԽՈՇԽԱԲԱՐ, ար. < պրս. خوش xōš «լավ, բարի, քաղցր»+արաբ. خبر xabar «լուր» բառերից, որով ամբողջը լինում է «բարի լուր». հմմտ. հյ. Աւետիք։ Հիշատակված է 1555 թ. (REA 10, 47), 1628 թ. (Տաշեան, Ցուց. 708=Կամենից 180 Խօշխապար ձևով), 1659 թ. (Ձեռ. Վասպ. 27), ԺԷ դար (Ձեռ. Էջմ. 611 Գև.) և առանց թվականի՝ Ձեռ. Վասպ. 430 (Հոշհաբար ձևով)։

*ԽՈՇԽԱԹՈՒՆ, իգ. < պրս. خوش xōš «քաղցր, լավ»+թթր. خاتون xatun «տիկին» բառերից, Գործածված է ԺԶ դարում. այն է Խօշխաթուն 1569 թ. (Ձեռ. Վասպ. 671), և առանց թվականի՝ Խոշխաթուն (Ձեռ. Մաղն. 35՝ գրված 1475 թվից ուշ), Խօշխաթուն (Ձեռ. Վասպ. 96)։

*ԽՈՇՂԱԴԱՄ, ար. < պրս. خوش xōš «լավ»+արաբ. قدم qadam «ոտք» բառերից. և նշանակում է «նա որի գալուստը բարեհաջող է, ուղուրլու»։ Գործածված է նաև իրանցոց մոտ՝ 1469 թ. (Justi 181 ա)։ Սրանց վրա ավելացրու Խօշքատէմ սուլտան Եգիպտոսի, որ Սսի եկեղեցիներից մեկը մզկիթի է վերածել 1472 թ. (Սիսուան 561 ա)։ Մեր մեջ էլ հիշատակված է մի անգամ գրեթե նույն ժամանակ։

— խօշղատամ, եղբօրորդի Խոնտքար տիկնոջ, որ Խորոտկայ

վանքում գրել տվեց Ավետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

*ԽՈՇՆԱԴԱՐ, պր. < պրս. خوش xōš «քաղցր»+արաբ. نظر nazar «նայվածք» բառերից։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. խօշնաղար, որդի Սուլթանի՝ եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

— 2. խօշնադար, որդի Յովհաննէսի և եղբայր Ստեփաննոս կրոնավորի, որ Ոշտունեաց Աղունայ գյուղում, Մկրտիչ աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1552 թ.—Ձեռ. Վասպ. 653—5 (սխալմամբ տպված շարունակ Խոլնադար)։

— Ավելի ուշ ունենք Խոշնատար 1707 թ. (Ձեռ. Թավր. 112 բ)։

*ԽՈՇՆԱՄ, պր. < պրս. خوشنام xōšnām «քաղցրանուն, նա որ լավ անուն ունի». գործածական էր նաև մահմեդականների մեջ. Justi 181 տալիս է 7 վկայություն՝ Ը—ԺԳ դարերից։ Մեր մեջ հիշված է մի անգամ ԺԵ դարից։

— 1. խօշնամ, որդի Աղնաւուրի. մայրն է Մելիք խաթուն, որ Վարդան քահանային գրել տվեց մի Ավետարան 1453 թ.—Նոտարք 171։

— Կա նաև անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1311 թվից ուշ (Ձեռ. Թավր. 73 ա)։

*ԽՈՉ, պր. < Թրք. قوچ qoč «խոյ» բառից. իբրև անձնանուն գտնում եմ մի անգամ գործածված՝ անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 96։

*ԽՈՉԱԽ, պր. < Թրք. قوچاق qočaq «քաջ, ճարպիկ» բառից. հիշատակված եմ գտնում երկու անգամ. առաջինը ԺԳ դարից, երկրորդը անթվական։

1. խաւչախ, որդի Վասակ պատրոնիկի, Կիւրիկեան Թագավորական ցեղից. իր եղբոր՝ Խոյտանի հետ մի խաչ կանգնեցին ի հիշատակ իր հոր, որ նահատակվեց Գոլաշտեանի պատերազմում, 1201 թ.—Շահխաթ. Բ. 363, Արցախ 196 > Նոր վկ. էջ 688։

— խուչախ, որդի Շղելի, որ Կոշիկ անապատին մի հող է նվիրել իր որդու և իր կնոջ հիշատակին (թիվն անհայտ).—Արցախ 169։

ԽՈՉՈՏ, պր. ծագումն ինձ անհայտ. հիշված կա մի անգամ ԺԴ դարից.

— խոջոտ Լարեցի, հայր Բեկէկի, որ իբրև վկա հիշված է 1387 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

*ԽՈՋԱ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր» բառից, որ նաև «ուսուցիչ, հարուստ» իմաստներն է ստացած։ (Թուրքիզում նշանակում է «ներքինի, որձատ»)։ Իբրև անձնանուն գործածվել է նաև Պարսից մեջ. ինչ. Xwāǰū բանաստեղծ Քիրմանցի † 1342, որ Justi 181 բ դնում է նույն բառից, իբրև փաղաքշական։ Մեր մեջ գործածվել է ԺԳ դարից սկսած։

— 1. Խոճա (անձնական հոդով՝ Խոճէս), իշխանավոր մարդ, որ Շիրին խաթունի, Բահալու խաթունի և ուրիշների հետ ընծել է Հոփփոխմէի վանքի բամբակի հարկը, 1296 թ.—Արձ. Արարատ 1898, 442։

— 2. Խաւջա, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Գանձակի Սուլուկ գյուղում, 1447 թ.—Արցախ 270։

— 3. Խաւճա, որդի Սաւղաթմիշի և եղբայր Նուրիճանի, որ Ագուլիսում գրել տվեց մի Ցայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

— 4. Խաւջայ, դեռաբույս զավակ տանուտեր խոջա Քարիմշահի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— Ավելի ուշ հիշատակություններ են՝ սեռ. Խոճին 1557 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 8 ա), Խոճա 1585 թ. (Rapport Belgique 94), Խոջայ ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 2 ա), Խօջա 1609 թ. (Bodleian 110), Խօջօ 1710 թ. (Ձեռ. Վասպ. 1032) և անթվական հիշատակությամբ՝ անդ 440, 450։

*ԽՈՋԱԲԷԳ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+թրք. بك beg բառերից։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում։

— 1. Խոջաբէկ, վաղամեռիկ որդի Էլէքսանի, որի կինը Սուլթանմէլէք՝ Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413։

— Ավելի ուշ հիշատակություններ են Խօջաբէգ 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, 93, 94), Խօճապէկ 1664 թ. (Ձեռ. Կես. ածած. 57 ա), Խոջաբէգ 1714 թ. (Ուղուրլեան, Պատմ. դաղթ. Լիվոռն. 103)։

ԽՈՋԱԳԻՆ, ար. ծագումն անստույգ. կազմված է պրս. խոջա «տեր»+հյ. գին «գնած» բառերից։ Հիշված եմ գտնում մի անգամ՝ անթվական մի հիշատակարանում (Manus. brit. mus. 55 բ՝ գրված խաւճագին ձևով)։

*ԽՈՋԱԶԱԴԷ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+زاده zāde «ծնված» բառերից, իբրև «տիրածնունդ, տիրոջ ծնունդը»։ Գործածված է ԺԴ—ԺԵ դարերում. այնուհետև չի հիշատակվում։

— 1. խօջայզադայ, որդի Խոջա Մուրատբախշի, որդւոյ Արղուլմսեհի, 1327 թ.—Ձեռ. Ազգագր.=Արրտ. 1911, 461։

— 2. խօջազատէ, որդի Աւետիսի և եղբայր խոջա Միրիջանի, որ Աղթամարում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

*ԽՈՋԱՂԱՆ, ար. < պրս. خواجه xɔǰa «տեր»+թթր. قان qan «խան» բառերից։ Մի անգամ հիշված է ԺՋ դարում.—Ձեռ. Դադեան, Ա. 12 բ (հոգով խօջաղանն):

*ԽՈՋԱՄ, եզ. < պրս. خواجه xoǰa «տեր» բառից+թրք. م-m ստացական հոդով, որով նշանակում է «տերս, տեր իմ»։ Հիշված է մի անգամ ԺՋ դարից (Ձեռ. Թաւր. 42 ա)։

*ԽՈՋԱՄԱԼԻ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+արաբ. مال māl «ապրանք» բառերից. բարդված է թուրքական ձևով և նշանակում է «տիրոջ ապրանքը». հմմտ. Աղամալի։ Միայն հիշված է ԺԸ դարում (Ազգագ. 2820 և Գուշակեան, Հնդկահայք 56)։ Նաև Խօջամալ ձևով՝ 1706 թ. (Bodleian 170)։

*ԽՈՋԱՄԻՐ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+արաբ. امير emīr (կրճատ mīr) «իշխան» բառերից. ամբողջը նման հյ. Պարոնտէր անվան։ Հիշատակված է ԺԶ դարից։ Այսպես՝ Խաւջայ-Ամիր 1565 թ. (Ձեռ. Վասպ. 663 և 665), Խոճամիր 1530 թ. (Այրարատ 120), և առանց թվականի՝ Խոջամիր (Ձեռ. Վասպ. 440)։ Սրանից է Խոջամիրեան ազգանունը (Կովկաս)։

*ԽՈՋԱՊԱՊ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+հյ. պապ բառերից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1709 թ. (Ձեռ Սեբ.=ՀԱ 1928, 493)։

*ԽՈՋԱՋԱՆ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+جان ǰān «հոգեակ» բառերից։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում։ Սրանից է Խոջաջանեան ազգանունը՝ հիշված 1771 թ. (Այրարատ 226)։

— 1, խուշաշան ոմն, որդի Նուրիջանի (1438 թվից ուշ).—Ձեռ. Թաւր. 41 բ։

— 2. խօջաջան, որդի խոջա Միրիջանի, որ Աղթամարում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— Ավելի ուշ հիշատակություններ են Խոճաճան 1561 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 194), Խոջաջան 1573 թ. (Սխսական 422),

1608 թ. (Manus. brit. mus. 43 ա), Խոճաճան 1629 թ. (Ձեռ. Վասպ. 38), Խոջաջան 1743 թ. (Ազգապ. 3099)։

*ԽՈՋԱՍԱՐ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+ سر sar «գլուխ» բառերից և նշանակում է «խոջաների գլուխը, խոջայապետ»։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերից։ Սրանից է Խոճասարեան ազգանունը (Պոլիս)։

— 1. Խոճասար պէկ, մի արտ է նվիրել Երզնկայի Ս. Աստուածածին եկեղեցուն, 1431 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 664։

— Աւելի ուշ հիշատակություններ են 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 474), 1707 թ. (Ձեռ. Բեռլինի 14 ա), 1712 թ. (Ձեռ. Կարին. 42)։

*ԽՈՋԻԽԱՆ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր»+ خان xān «խան», այն է «խոջաների խանը՝ իշխանը»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Բ. էջ 974։

*ԽՈՋԻԿ, ար. < պրս. خواجه xoǰa «տեր» բառի հայաձև փաղաքշականն է։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Խօճիկ, եղբայր Գալուստ աբեղայի, որ կեչառուսում օրինակեց Աւետարանը՝ 1491 թ.—Ձեռ. Սևան. 10 բ։

— Ավելի ուշ հիշատակություններ են՝ Խոճիկ 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646), մելիք Խոջիկ 1638 թ. (Ձեռ. Վասպ. 895—6), անթվական է՝ պարոն Խոճիճ, թոռն Ամիրի, շինել է Տրապիզոնի Ամենափրկիչ վանքի աղբյուրը և ժամատան գլուխն էլ պատել է կղմինտրով (Բժշկեան, Պատմ. Պոնտոսի, էջ 84) և վերջապես Խօջիկ ոմն 1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 50 բ)։

*ԽՈՋՈԽՄ, ար. հիշված է 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 ա՝ Խոճում ձևով, որ թերևս վրիպակ է՝ փոխանակ Խոճամ)։

ԽՈՌ, ար. ծագումը անհայտ։

— Խոռ հայկազն, որդի Հայկ նահապետի. սրանից է առաջացել Խոռխոռունեաց տոհմը.—Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժգ. Մին. համդ. 3. Սամ. անեց. 42.—սեռ. Խոռայ հայկազնոյ՝ Խոր. Բ. է. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 42, 48.—բցռ. ի Խոռայ (շինող Խոռխոռունեաց, ի Գուգարս) Վրդ. խը։

*ԽՈՌԱՄՇԱՀ, իգ. < պրս. خرمشاه Xurram-šāh անունից, որ կազմված է xurram «ուրախ»+šāh «թագավոր» բառերից։ Իբրև անձնանուն գործածված է նաև Իրանեանների մոտ, բայց արական է։ Justi 178 ա հիշում է երկու անձ այս անունով. մեկը մի բանաստեղծ, մյուսը Ալաէդդին Խուռամշահ իշխան Մուսուլցի,

1190 թվից։ Սրանց կարելի է ավելացնել Խուռամշա՝ վերակացուտան Ամիրադդին ամիրային Ֆրդաց՝ Թամար Մոկացու նահատակության ժամանակ՝ 1398 թ. (Նոր վկ. 192)։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ 1611 թ. Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 222, ուր տպված է Խաւրամզին (սեռական հոլով). պետք է կարդալ Խորամշին, ուղ. Խոռամշահ։

ԽՈՍԳԵԱՆ կամ ԽՈՍԿԷՆ, ար. ծագումը անհայտ։

— Խոսգեան, ազգապետ աղվան, ժամանակակից Վաչագան Գ-ի (Զ դար).—Կանոն. 197. Կղկնտ. Ա. իգ. (Էմին դնում է Խոսգեան, Շահն. Խոսկէն, Տաշեան, Ցուց. 654 Խոսկեան.—Շահն. համարում է Փիւրոզի նահապետ, առնելով այս բառը՝ իբրև տեղանուն. մինչդեռ Էմինը դնում է Փիրոզ նահապետ. այսպես նաև Տաշեան)։

† ԽՈՍՏԻԿ, ար. < հյ. խոստում բառից, իբրև ուխտական զավակ. երևի գործածական էր իբրև անձնանուն, որից և Խոստիկեան ազգանունը (Վան)։

*ԽՈՍՐԱՆ, ար. < ասոր. Xesrōn անունից, որի ծագումը տես Խոսրով. հմմտ. Խոսրոն ասորի, իշխան Աբգար թագավորի Եդեսիոյ (Ղաբուբ. էջ 19), ինչպես նաև Մակաբայեցի եղբայրներից չորրորդը (ըստ լուսանցագրության Բ. մակ, Է. 13)։

— Խոսրան Արծրունի, որին Աբգար թագավորը մի գնդով ուղարկեց Պարթևաց Արետ թագավորի օգնության՝ կռվելու համար Հերովդեսի դեմ.—սեռ. Խոսրանայ (ձեռագիրներն ունին Խոսրոնայ, Խոսրովայ) Խոր. Բ. իթ.—Խոսրենայ՝ Խոր. Բ. լգ.—Խոսրոնեայ՝ Մխ. անեց. ի.—ըստ Ալիշան, Ղաբուբ. էջ 19, ծան. 1 նույն ասորի Խոսրանն է, որ Խորենացին կեղծիքով հայացրել է։—Կեղծիքը ավելի է խորացնում Արծր., որի պատմածով՝ Խուրանը (փխ. Խոսրան) մկրտվել է Թադէոս առաքյալից, Սանատրուկի օրով գնացել է Տիբերիոս կայսեր մոտ, պատերազմել է Սպանացոց դեմ, քաջության պսակ է ստացել, ապա եկել Երուսաղէմ՝ Հեղինէ թագուհու մոտ, նրա դրամով Եգիպտոսում ցորեն է գնել սովյալներին բաշխելու համար և մեռել Երուսաղէմում.—ուղ. Խուրան՝ Արծր. Ա. գ. է.—Խուրէն՝ Արծր. Ա. գ.—սեռ. Խուրանայ՝ Արծր. Ա. գ.—Խուրէնայ՝ Արծր. Ա. գ, է, ը.—Խուրենի (իմա Խուրէնի) Արծր. Ա. է։

*ԽՈՍՐՈՎ, ար. < պհլ. xusrav (գրված է husrūb, xusrūb), պազենդ. xusrav, զնդ. husravah, haosravah, հպրս. * (h)usravah, սանս. suçrávas, որոնք բոլոր նշանակում են «բարեհամբավ»,

հռչակավոր, անվանի» (հակառակն է հյ. ქარჭაჲანუნნ դարով): Կազմված են hu=su «լավ, բարի»+sru=çru «լսել, լուր» բառերից։ Իրանյաններին մեջ դարձել էր հատուկ անուն. ինչ. զնդ. Kava Husrava «Քէյխոսրով», պրս. خسرو Xusrav, որից տառադարձված են հուն. Χοσρόης, ասոր.Xesrōn, Xosrau, արաբ. Kisrā, Kesrā (Հիւբշ. 44)։ Պարսից թագավորներից հայտնի են Խոսրով Ա. Մեծ (կոչված Նուշիրվան) 531—579 թ, Խոսրով Բ 590—628 թ։—Ավելի ուշ նոր պրս. xusravստացավ «թագավոր» նշանակությունը և սրա ակնարկությամբ է որ Մխ. Գօշը գրում է. ԶԽոստրով անեմք մանուկ և հանդիսաւոր նահատակ, ქარჭაჲანუნნ և զկրողն կոչմանն. Նոր վկ. էջ 33։—Այս անունը գործածվել է մեր մեջ Ա? դարից սկսած և գործածական է նաև այժմ։ Գավառական ձև է ხოსტროვ, որի առաջին վկայությունը համնում է ԺԴ դար։ Այսպես Հերհերի 1345 թվի արձանագրության մեջ կարդում ենք Խոստրովիկայ (Սիսական 115)։ Շատ ավելի ուշ վկայություններ են Խոսդրով 1601 թ. (Ձեռ. Վասպ. 793), Խոստրով (ԺԷ դարից, Զքր. ագուլ. 92), Խոստրով 1718 թ. (Ձեռ. Վասպ. 1038)։ Այս հավելվածի համար հմմտ. արդի ժղ. ձևերից Սալմաստ (հինը Սաղամաս), Ռուստ, սուստ, էսպէստ, կալբաստ, սիֆիլիստ, մատրաստ։—Ղրբ. կա Քօ՛սի ձևը։—Իբրև անձնանուն հիշված է Թր. քեր. 9, Անան. քեր. 134, Խոր. քեր. 170, Մագ. քեր. 239, Համամ. քեր. 257. իբրև ազգանվան օրինակ էլ կա ხოსროვეანნ՝ Խոր. քեր. 170, Սիւն. քեր. 206։—Կա նաև ხოსროვ իգ. (ինչ. Զքր. ագուլ. 92, Զքր. սարկ. Ա. 18 և այժմ էլ գործածական է. նույնը Խոստրով ձևով իգ! հիշված է 1581 թ. Ձեռ. Դադեան, Բ. 32 ա). բայց դա կրճատումն է Խոսրովիդուխտ (Խոսրովանույշ, Խոսրովուհի) ձևի։

— 1. ხოსროვ, որդի Գողթան գավառի Շաթ իշխանի (Ա. դար).—Օրբ. ե։—Սիսական 310 բ։

— 2. ხოსროვ Ա. Մեծն, որդի և հաջորդ Վաղարշի, թագավոր Հայոց. արշավեց Կովկաս՝ իր հոր մահվան վրեժը լուծելու համար լեռնականներից «213 թ»։ Եղավ բարեկամ Հռովմայեցոց։ Իր օրով տեղի ունեցավ Պարսկաստանում պետական հեղաշրջություն. Արտաշիր Սասանեան իշխանը սպանեց Արտավանը թագավորին և Արշակունեաց տոհմը տապալելով՝ տիրեց գահին «226 թ»։ Խոսրովը արշավեց նրա վրա և մինչև Հնդկաստան փախցրեց։ Խոսրովի ձեռքից ազատվելու համար՝ Արտաշիրը դավաճանությամբ Հայաստան ուղարկեց արշակունի Անակ (=պհլ. [illegible] a-

nāk «չար») իշխանին, որ խարդախությամբ սպանեց Խոսրովին «240 թ»։ Արտաշիրը արշավեց Հայաստան և ամբողջ երկրին տիրեց։—Ագաթ. § 18, 19, 121—2. Խոր. Բ. կե, կէ, հա—հդ. Գ. ծա. Սեբ. բ, գ. Յհ. կթ. է, ը. Ուխտ. Ա. խդ, խէ, խթ, ծ, ծդ—ծե, ծէ, կ, կբ. Մխ. անեց. գ, թ, ժ. Ասող. Ա. ե. Շնորհ. վիպ. 363, 388. Ձեն. 20, 21, 23. Արծր. Ա. ը, թ. Անանուն ժմ. 11. Վրդ. ժէ. Վրդն. լա. 46, 48. Վկ. սուք. 34. Ոսկ. ներբ. լա. 833. Մխ. այրիվ. 18. Պտմ. վր. է. Մագ. թղ. ժթ, հգ. Յայսմ. նոյ. 18. Ագաթ. 397 բ. Տաթև. ձմ. ղգ. Վրդ. աշխ. 510. Սամ. անեց. 60, 61. Մխն. համդ. 21, 22. Նհպտք. 90. Ջուղ. 41. Ջքր. սարկ. Ա. 2, 3.—սեռ. Խոսրովու՝ Ագաթ. § 13, 20, 21, 28, 36. Խոր. Բ. ծը, կզ, հա—հդ, հե, հզ, հը. Փարպ. բ. Բուզ. Գ. բ, գ. Սեբ. ը. Ուխտ. Ա. խէ, խը, ծ—ծբ, ծդ—ծէ, կ, կգ. Մխ. անեց. ժ. Ասող. Ա. ե. Պտմ. ներս. 22. Շնորհ. վիպ. 429. Կղկնտ. Ա. ը (Էմինի հրատ). Ձեն. 20. Արծր. Ա. ը, թ. Կիր. խգ. Վրդ. ժէ, ժը, խե. Վրդն. լա. 45, 47. Ագաթ. 397 բ. Պտմ. վր. է. Յայսմ. նոյ. 18, 29. Պարականոն շար. 21. Սամ. անեց. 63. Ջքր. եպս. 282. Մխն. համդ. 22. Ջքր. սարկ. Ա. 3. Նհպտք. 90.—Խոսրովայ, ի Խոսրովայ՝ Խոր. Բ. կէ, հբ, հդ. Սեբ. բ, գ, ը. Յհ. կթ. ը. Ուխտ. Ա. ծէ. Ասող. Ա. ե. Կղկնտ. Ա. ը. (հրտր. Շահն), ժդ. Ձեն. 18, 20, 21. Յայսմ. նոյ. 18. Սամ. անեց. 62.—ի Խոսրովու՝ Խոր. Բ. հե (իբրև բցռ!) —Խոսրովի՝ Խոր. Բ. հէ. Սիմ. ապար. 76.—Վրաց պղբ. Ա. 75 (կոչում է Խվասրով կամ Խուասրօ), 162—164 (Կասրօ).—Արրտ. 1868, 105։

—3. Խոսրով Բ. Կոտակ, թագավոր հայոց, որդի և հաջորդ Տրդատի. գահակալեց «330—339 թ». կոչված է գրամիկ՝ Տաշեան, Ցուց. 573։ Իր ժամանակ տեղի ունեցավ Մազքթաց Սանեսան Արշակունի թագավորի արշավանքը։ Նա հավաքեց բոլոր հյուսիսային մանր մունր ազգերը (Հոն, Ալան, Փոխ, Թավասպար, Հեճմատակ, Իժմախ, Գաթ, Գղուար, Գուգար, Շիչբ, Ճիղբ, Բաղասիճ, Եգերսուան են), անցավ Կուր գետը և հասավ մի կողմից Գանձակ Ատրպատականի և մյուս կողմից Սատաղ, որ Հայաստանի արևմտյան սահմանն էր։ Խոսրովը փախավ Վրթանէս կաթողիկոսի հետ միասին. Վաչէ մամիկոնեան զորավարը գնացել էր Հունաց երկիրը. Սանեսանը անտեր գտնելով երկիրը, ամեն կողմ ավերեց և ահագին ավար ժողոված, նստավ Այրարատ՝ ամբողջ մի տարի։ Վրա հասավ Վաչէն, ջարդեց նախ նրանց բանակը Ցլու գլուխ լեռան վրա, ապա հասավ Վաղարշապատ, ուր էր

Սանեսանը իր մեծ բանակով։ Օշականի առապարում տեղի ունեցավ ճակատամարտը, ուր Վաչէն ջնջեց նրանց, սպանեց Սանեսանին և թշնամիներին քշեց մինչև Բաղասիճների երկիրը։ Վաչէն Սանեսանի գլուխը բերավ Խոսրովի ոտքը գցեց։ Լաց եղավ Խոսրովը՝ ասելով. «Եղբայր իմ էր ազգաւ արշակունի»։ Խոսրովը մի մեծ անտառ տնկեց, որ սկսում էր Գառնի բերդից և հասնում մինչև Դուին. այս ահագին տարածությունը լցրեց երեներով և վայրի կենդանիներով, իբրև որսի տեղի արշակունի թագավորների համար։ Այդ տեղերը կոչվեցին Տաճար մայրի և Խոսրովակերտ։ Այդ միջոցին Պարսիկները արշավեցին Հայաստան. Խոսրովը ուղարկեց Դատաբէնին նրանց առաջ. բայց նա փոխանակ դիմադրելու, ինքն էլ դավաճանորեն միացավ նրանց և արշավեց Խոսրովի վրա։ Հասավ Վաչէն իր զորքով. Վանայ ծովի ափում, Առեստ ավանի մոտ տեղի ունեցավ ճակատամարտը. Վաչէն ջարդեց Պարսիկներին և Դատաբէին էլ գերի բռնեց և իր ցեղով կոտորեց։ Վերջին անգամ արշավեցին Պարսիկները Հայաստան, Վաչէն դուրս եկավ նրանց դեմ և թէև կոտորեց նրանց, բայց ինքն էլ ընկավ կռվի դաշտում։ Այնուհետև Խոսրովը խաղաղությամբ կառավարեց երկիրը, մինչև իր մահը «339 թ».—Խոր. Բ. ձգ. Գ. դ—գ, ը. Բուզ. Գ. գ, դ, է, ը, ժա. Սեբ. բ, գ. Ցհ. կթ. ժա. Ուխտ. Ա. կէ. Մխ. այրիվ. 18, 61. Մխ. անեց. գ, իբ, իդ. Ասող. Բ. ա. Շնորհ. վիպ. 736. Արծր. Ա. ժ. հիր. 9. Վրդ. իբ. Թղթ. դաշ. 17. Պտմ. վր. ժբ. Մագ. թղ. ժթ. Ցայսմ. դեկտ. 1, 15. մրտ. 6. Սամ. անեց. 65. Եզն. երէց 266. Այրիվ. 17 ա. Նհպտք. 90. Մին.՝ համդ. 23. Զքր. սարկ. Ա. 3. ZAPh 1, 190.—սեռ. խոսրովու՝ Խոր. Գ. է, ը, ժ. Բուզ. յոջ. Գ. գ, ե, է, ը, ժա, ժբ. Շնորհ. վիպ. 757. սրգ. 19. Կղկնտ. Ա. ժբ. (հրտր. Շահն.), Արծր. Ա. ժ. հիր. 10. Վրդ. ի, իբ. Ցայսմ. նոյ. 29. Եզն. եր. 266. Վրք. և վկ. Բ. 284. Մին. համդ. 23. Նհպտք. 90.—խոսրովայ՝ Խոր. Գ. է, թ—ժա. Սեբ. բ, գ. Ցհ. կթ. ժա. Մխ. անեց. իբ. Մեսր. եր. 32? 120. Ասող. Բ. ա. Կղկնտ. Ա. ժբ. հիր. 10. Պտմ. վր. ժբ։—Վրաց աղբ. Ա. 75, Բ. 95։

— 4. խոսրով եպիսկոպոս, հիշվում է իբրև հակառակորդ Արիոսական հերձվածի՝ Ներսէս և Ցուսիկ եպիսկոպոսների հետ, Ս. Բարսեղի մի թղթում, որ գրված է 372 թ.—հմյ է.—Ալպոյաճեան, Պատմ. հայ հիս. Ա. 280։

— 5. խոսրով Գ. Արշակունի. թագավոր նստավ Պարսից Հայաստանում, «384 թ». մինչդեռ նույն ժամանակ Հունաց Հա-

յաստանում գահակալում էր Արշակ Գ։ Պատերազմի դուրս եկավ սրա դեմ և Երևելի ճակատամարտում հաղթեց նրան «385 թ»։ Արշակի մահից հետո, խոստանալով հարկ տալ նաև Հունաց, Հունահայաստանն էլ իր պետության միացրեց։ Ապստամբեց Պարսից դեմ, բայց գերի բռնվեց և դրվեց Անհուշ բերդը, հինգ տարի թագավորելուց հետո («389 թ»)։ Վռամշապուհի մահից հետո՝ երկրորդ անգամ գահ բարձրացավ «414 թ» և մի տարի հետո մեռավ «415 թ»։—Խոր. Գ. խբ-խդ, խը—ծա, ծե. Փարպ. զ, թ, ժբ. Բուզ. Զ. ա. Սեբ. գ. Ցհ. կթ. ժգ, ժդ. Մխ. անեց. գ, իգ. Ասող. Բ. ա. Շնորհ. վիպ. 944. Արծր. Ա. ժա. Կիր. 14. 18. Վրդ. իդ, իգ. Մխ. այրիվ. 18. Սամ. անեց. 68, 70. Եղն. եր. 267. Պտմ. սահ. 29. Մրն. համդ. 26, 27. Սիմ. ապար. 34. Ջքր. սարկ. Ա. 3. Զուղ. 43.—սեռ. Խոսրովայ՝ Խոր. Գ. խդ—խզ, խը—ծա, ծե, կէ. Փարպ. ժ. Ցհ. կթ. ժգ. Արծր. Ա. ժա. Կիր. 14. Պտմ. սահ. 29.—Խոսրովու՝ Խոր. Գ. խը. Բուզ. Զ. ա, բ, դ, ե, է. Փարպ. թ, ժ. Օրբ. թ. Արծր. Ա. ժա. Վրդ. իդ, իգ. Միխ. աս. իթ (= իը). Մրն. համդ. 26. Նհպտք. 91. Զուղ. 44.—բց. ի Խոսրովայ՝ Խոր. Գ. խդ, խզ.—Վրաց. աղբ. Ա. 75 (գրում է Խուասրո).—Պրոկոպիոս կոչում է սրան Տիգրան (տես Գիւտերբոք, Հռովմէական Հյստ. Ազգ. սատ. ՀԵ. էջ 27)։

— 6. Խոսրով Գարդմանացի, խնջույքի ժամանակ, ներկայությամբ հայոց Շապուհ թագավորի, որ Պարսից Յազկերտ թագավորի որդին էր, հարբեց և սկսեց լրբանալ քնարահար մի կնոջ հետ։ Շապուհը հրամայեց բռնել նրան և դահլիճում բանտարկել։ Խոսրովը ձեռքը վաղակավորին տարավ և մեկնեց դահլիճից տուն։ Ոչ ոք չհամարձակվեց դիպչել նրան, որովհետև ծանոթ էին նրա քաջության (421 թ)։—Խոր. Գ. ծե. Կղկնտ. Բ. գ։

— 7. Խոսրով, աշակերտ Ս. Սահակի, որի հրամանով գնաց Երուսաղէմ և բերավ Ս. Բարսղի Ջրօրհնեաց կանոնը։ Գրել է նաև «Պատմութիւն Ս. Սահակայ» (Ալիշան, Յուշիկք, Ա. 349)։—Կիր. 16. Վրդ. իե. Ցայսմ. սեպտ. 17. Տաթև. հարց. 658.—Զարբ. Հին դպր. 283, 295. Աթան. յոչ. էջ ե. Տաշեան, Ցուց. 60, 76.—Հմմտ. Խոսրովիկ №1.— Ձեռագիրների մեջ կա նաև «Բանք երանելւոյն Խոսրովայ» (Թորոս աղբ. Բ. 395)։

— 8. Խոսրով Գաբեղեան, մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ.)—Եղիշ. 77. Ցայսմ. օգ. 7։

— 9. Խոսրով Սրուանձտեան, իշխան. մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ).—Ցայսմ. օգ. 7։

— 10. **Խոսրով** պատմագիր, հիշվում է Կորյունի և Ղևոնդ երեցի միջև.—Կիր. 3։—Իսկ ըստ Մխ. այրիվ. 37 Կորյունի և Թովմայ վարդապետի միջև.—համարելի է Փոքր Կորեան խմբագրիչը. հմմտ. Նորայր, Կորիւն վրդ. էջ 10։—Տաշեան, Ցուց. 408=1097 նույն է դնում Ս. Սահակի աշակերտ Խոսրովի հետ № 7։—Հայապ. էջ 50։

— 11. **Խոսրով** եպիսկոպոս Ամատունեաց, ժամանակակից Ներսէս Բ «548—557 Թ» կաթուղիկոսի։ Ուրիշ 7 եպիսկոպոսների հետ միասին ստորագրում է այն թղթին, որ ուղարկեց Ներսէսը 9 այլ եպիսկոպոսների՝ կրկին կոչելով նրանց Դուինի եկեղեցական ժողովին, որից բացակայել էին.—բց. ի Խոսրովայ՝ Գիրք Թղ. ժղ։

— 12. **Խոսրով** վանէրեց Օշականու, ուրիշների հետ ստորագրում է այն ձեռնարկին, որ մատուցին Աբրահամ կաթուղիկոսին «607—615 Թ», խոստանալով այլ ևս հեռու մնալ հերձվածողներից և Քաղկեդոնի ժողովից («607 Թ»).—Գիրք Թղ. խ. Ուխտ. Բ. լէ։

— 13. **Խոսրով** Վահևունեաց տէր, Պարսից Խոսրով Բ Թագավորից (590—628) պալատ հրավիրվեց և մեծ պաշտոն ստացավ։—Սեբ. ԺԹ, ԻԱ։

— 14. **Խոսրով** Հայկազն, անծանոթ ոմն, որ այցելել է Եգիպտոս և հունարեն լեզվով արձանագրել է իր հիշատակը «ի վերայ հնաշուք շիրմաց փարաւոնեան փարազանց» հետևյալ ձևով. ΧΟΣΡΟΗΣ 'ΑΡΜΕΝΙΟΣ 'ΙΔΩΝ 'ΕΘΑΥΜΑΣΑ «Խոսրով հայ տեսեալ սքանչացայ» (Հայապ. 188)։—Թվականը անհայտ է. բայց ըստ որում հունարեն է, պետք է դնել արաբական տիրապետությունից առաջ։ Ավելի ընդարձակ տես Տաշեան, Ագաթ. էջ 108 (համարում է Խոսրով Մեծն՝ հայր Տրդատի)։

— 15. **Խոսրով**, տէր Գողթան, [հայր] Վահան Գողթնացու, որ նահատակվեց «737 Թ».—Ասող. Բ. դ.—սեռ. Խոսրովայ՝ Վկ. գողթ. 20. Արծր. Գ. ԻԹ.—Խոսրովու՝ Ցայսմ. մրտ. 28. Վկ. գողթ. 10, 65.—Խոսրովի՝ Վկ. գողթ. 61։

— 16. **Խոսրով** տէր Շաղատի, Գաղան իշխանի ցեղից էր. շինել տվեց Շաղատի եկեղեցին (Ը դարի կեսին).—Օրբ. ժա.—սեռ. Խոսրովայ՝ Օրբ. ժա.—Սիսական 211 բ։

— 17. **Խոսրով** Ակէացի, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 Թ».—Արծր. Բ. գ։

— 18. Խոսրով Վահևունի, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. գ։

— 19. Խոսրով Սիւնի, ազատ. որդի Շապուհի. իբրև վկա հիշված է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լբ։

— 20. Խոսրով Գաբեղեան. հարձակվեց Բուղայի բանակի վրա, որպեսզի ազատի գերիներին. բայց բռնվեց ու նահատակվեց «852 թ».—Արծր. Գ. դ. Յայսմ. մրտ. 3, ապր. 21.—սեռ. Խոսրովու՝ Յայսմ. ապր. 21 (գրում է Խոսրով «հաբեղայ» փոխանակ Գաբեղեան!)։

— 21. Խոսրով գիտնական, մին այն նշանավոր վարդապետներից, որոնք Անանիա Մոկացի կաթողիկոսի հետ («946—968 թ») գրեցին Աղուանից Սահակ կաթողիկոսին՝ յետ դարձնելու համար նրան քաղկեդոնական դավանանքից.—Անան. ապստ. 131 ա։

— 22. Խոսրով Անձևացի. եպիսկոպոս Անձևացեաց. հայր Գրիգոր Նարեկացու. մատենագիր. գրել է Մեկնութիւն աղօթից ժամագրոց և Մեկնութիւն աղօթից Պատարագի (950 թ)։ Աշխարհական ժամանակ կինը վախճանվեց, ինչպես հասկացվում է Գրիգոր Նարեկացու խոսքերից. «Առ մայրն իմ որ երկնեաց, եթէ կասեցան գթութիւնքն ընդ նահանջել կենդանութեան» (Նարեկ ԾԱ)։ Այրի մնալով նա ստացավ կրոնավորական աստիճան և ձեռնադրվեց եպիսկոպոս (ըստ Թորգոմ եպս. Նարեկ աշխ. Երուսաղէմ 1931, էջ 14)։ Ապստամբել է Անանիա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսի դեմ և հնարել է ինչ ինչ մոլորություններ, որի համար և նզովվել է Անանիայից։ Այս մասին խոսում են Օրբ. ծա (Խոսրով եպս. Անձևացեաց) և Կիր. 48 (Խոսրով եպս. Սիւնեաց) շփոթ կերպով։Շփոթությունը պարզվեց Անանիա Մոկացու թղթերի հրատարակությամբ՝ Միաբանի ձեռքով։ Մեռել է «972 թ»։—Ցհ. արձիշ. էջ 7. Մխ. այրիվ. 71. Վրդ. աշխ. 514.—սեռ. Խոսրովայ՝ Գր. Նար. մատ. 367. Պտրգ. 272. Խոսր. պտրգ. 67.—Խոսրովու՝ Պտրգ. 515, 693. Խոսր. պտրգ. 1, 67. Յայսմ. փետր. 27. Ցհ. արձիշ. 68. Սամ. անեց. 103, 105. Խոսր. էջ ե, գ, 1, 63, 78, 121, 125—6, 128, 147—8, 157, 167, 170, 179, 183, 193, 207—8, 216, 218, 237.—Տաշեան, ծուց. 1097, Զարբ. Հին դպր. 535—7, 785. Գալֆայեան՝ Եղիշէ, տպ. Թէոդոսիա, 1861, էջ Գ—Է, Ակինեան՝ Եղիշէ, Ա. 109, Հայապ. 290։

— 23. Խոսրով, իշխան Գողթնեաց, հիշված է Աշոտ Ողոր-

մածի դուստր՝ Հռիփսիմէ կույսի կեղծ կտակագրում, 981 թ.— Սիսական 311 ա, Սմբատեանց՝ Երնջակ 424, 419։

— 24. **Խոսրով** (կամ Խոսրովիկ), նեստորական ասորի, որ Միջագետքից գաղթել է Զորագետ, ընդունել է հայոց դավանանքը և դարձել է նախահայր Երկայնաբազուկների տոհմին՝ ԺԱ դարի կեսին (շուրջ 1050 թ)։ Հիշված է Հաղբատի մի արձանագրության մեջ (Շողակաթ 74)։—Հայապ. 447։

— 25. **Խոսրով** Գանձակեցի, նոր նահատակ. գեղեցիկ պատանի էր. հարևան Թուրքի որդին իր քրոջ հետ շնալով՝ յղիացրել էր։ Աղջիկը, որ վաղուց աչք ուներ Խոսրովի վրա, հանցանքը գցեց սրա վրա, որպեսզի ստիպեն նրան բռնի ամուսնանալ Թուրք աղջկա հետ։ Թուրքերը առաջարկեցին Խոսրովին ուրանալ իր հավատքը և երբ մերժեց, երկար ժամանակ բանտարկելուց հետո, քարկոծելով սպանեցին «1167 թ»։ Նրա վրա գրված է մի ընդարձակ վկայաբանություն, մի ներբողեան (որի հեղինակն է Մխիթար Գոշը) և մի համառոտ վկայաբանություն, որ մտել է Յայսմաւուրքի մեջ յուլ. 3։ Բոլորը միասին հրատարակված է Նոր վկ. 23—45։ (Շատ սխալ է Նոտարք 10, որ նահատակության թվականը դնում է ՊԽԸ=1399)։

— 26. **Խոսրով** իշխան Սևանի, 1221 թ. իր օրով տեղի է ունեցել հետևյալ վիպական դեպքը։—Ալի և Մահմատ անունով երկու ավազակապետ, իրենց 80 ընկերներով, բոլորը լեզկի կամ ալան, ուզում են կողոպտել Սևանի վանքը և այնտեղ ապաստանած փախստական հայոց բազմությունը։ Որովհետև անհնարին էր նավերով արշավել կղզու վրա, ուստի դիմում են խորամանկ միջոցի։ Հայտնում են կղզու վերակացու Խոսրով իշխանին թե իրենք վաճառական են, 40 արկղ ապրանք ունին, որ ուզում են պահ տալ Սևանայ վանքին։ Խոսրովը համաձայնվում է և ավազակները կղզին են փոխադրում 40 արկղը, որոնց մեջ 2—2 նստած էին իրենց սպառազեն ավազակ ընկերները։ Երկու ավազակապետներն էլ իբրև պահակ գալիս են վանք։ Նրանք որոշել էին գիշերը արկղները բանալ, ավազակներին դուրս հանել և բոլորին կողոպտել ու սպանել։ Վարժապետը դաս չսովորած իր մի աշակերտին ծեծում է և դուրս անում։ Աշակերտը գնում է արկղների մոտ և փականքով խաղում։ Միջից լսում է մի ձայն. «Ալի վախտ իսէ՝ չըքմալի» (Ալի, եթե ժամանակ է, դուրս գանք)։ Իսկույն հայտնում է վարժապետին, ժողովուրդը թափվում է, արկղները տանում են բլրի գլուխը և «Շնորհեա մեզ

Տէր...» երգելով ու «Զի Աստուած ընդ մեզ է» ասելով մի առ մի արկղները ծովն են գցում։ Ալիին ու Մահմետին էլ սպանելով թաղում են բլրի գագաթին, կամ նրանց էլ Խոսրով իշխանը՝ վզներին քար կապելով ծովն է գցում։ Այդ ժամանակ Սևանի վանահայրն է եղել Սարգիս. երգի մեկնությունը գրել է Մովսէս վրդ. Երզնկացին 1275 թ. նրանից արտագրել է Թորոս գրիչը 1300 թ. այս բոլորի մասին տես Մանուէլ վրդ. Գիւմիւշխանցի, Պատմ. Սևանայ վանից, էջ 32, Սմբատեանց՝ Գեղարքունի, էջ 133 և 151—5։

— 27. Խոսրով, որդի Վահրամ Լոռեցու. իր կնոջ Շուշիկի հետ մի կալված է նվիրել Հոռոմոսի վանքին։ Նրան հետևել է նաև իր կինը՝ Շուշիկը, որ նվիրել է իր տունը.—Արձ. Սարգիսեան, Տեղագր. 147, Շիրակ 21, Արրտ. 1870, 298։

— 28. Խոսրով, հայր Գէորգ քահանայի, որ Արգելանի անապատում մի Աւետարան օրինակել տվեց Յակոբ կրոնավորին, 1251 թ.—Ձեռ. Վասպ. 87։

— 29. Խոսրով, հայր Վարդան քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան և վաճառեց Երզնկայում մի ուրիշ Վարդան քահանայի (որդի Լուսերէցի), 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45։

— 30. Խոսրով մոնթ, որ սպասավորում էր Բերկրիի Եղավանքի ուխտի տնտեսության մէջ՝ 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349։

— 31. Խոսրով, որդի Մամատիկին ապաշխարողի, որ Ստեփանոս կրոնավորի հետ միասին Վարդան գրչին մի Աւետարան գրել տվեց Խոսրովայ վանքում, 1430 թ.—Ձեռ. Վասպ. 359։

— 32. Խոսրով աբեղա, միաբան Ամրդոլայ վանից. ուրիշների հետ միասին վկայում է, որ Ամիր Թաճդինը մի ջաղացք է գնել և նվիրել Ամրդոլայ վանքին, 1437 թ.—Նօտարք 112։ Նույն անձն է և կամ մի ուրիշ միաբան է Տէր Խոսրով, որ իբրև վկա հիշատակվում է դարձյալ՝ 13 տարի հետո, 1450 թ.—անդ 164։

— 33. Խոսրով, որդի Կարապետի, գրել տվեց Մխիթար քահանային մի Աւետարան, Բռնաշէն գյուղում, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 484—6։

— Ավելի ուշ հիշատակություններ են 1557 թ. (Ձեռ. Վասպ. 659), 1594 թ. (անդ 736—7), 1596 թ. (անդ 748), Խոսդրով 1601 թ. (անդ 793), Խոստրով 1718 թ. (անդ 1038)։

— 34. Խոսրով փաշա, մեծ վեզիր Օսմանցոց Սուլթան Մուրադ Դ-ի (1611—1640), ծագումով հայ.—Սիւրմէեան, La vie et cult. 44։

— 35. Խոսրով արքայ, հայտնի չէ թե ով է հիշատակված մի քարի արձանագրության մեջ, որ գտնված է Անիի մոտ գտնվող հունական Հաջի Վէլի գյուղում.—Բանասէր 1907, էջ 93—94։

*ԽՈՍՐՈՎԱՆՈՅՇ, իգ. < Խոսրով և անոյշ բառերից, երկուսն էլ իրանականից փոխառյալ։

— 1. Խոսրովանոյշ, կին Ջուանշիր մեծ իշխանի Աղուանից (է դար).—սեռ. Խոսրովանուշի՝ Կղկնտ. Բ. իե։

— 2. Խոսրովանոյշ, թագուհի հայոց, կին Աշոտ Գ Ողորմածի «954—977 թ»։ Շինեց Սանահնի վանքը «957 թ» և Հաղբատի վանքը «967 թ»։ (Սիմէոն գրիչը Սանահնի շինությունը դնում է 966 թ. տես Մովսէսեան, Լոռիի հիւր. թգ. 23)։ Ունի երկու արձանագրություն, որոնցից մեկը Տեկորում և մյուսը Թալինում։ Առաջինով (Շիրակ 133) որոշում է Տեկորի հարկը՝ ՆԻ=971 թ. (գրում է իր անունը՝ «Խաւսրեանուշ հայոց թագուհի»։ Երկրորդով (Այրարատ 141) «Ես Խոսրո(վանոյշ) Հայոց թագուհի, որ կարգեցի...»․ Մնացյալը պակասում է և հայտնի չէ թե ինչ է կարգել։ Այս արձանագրության թվականն է ՆԼ=981 «ի հայրապետութեան Անանէի և ի թագաւորութեան Աշոտոյ որդոյ...»։ Սակայն այս թվին ոչ Անանիա կաթուղիկոս կա և ոչ էլ Աշոտ թագավոր։ Մանավանդ որ Խոսրովանոյշը մեռած է դրվում «980 թ»։ Ըստ իս պետք է կարդալ ՆԸ=959, երբ կաթուղիկոսն է Անանիա Մոկացի «946—968 թ» և թագավորն է Աշոտ Գ Ողորմած «954—977 թ» և որի կինն է իրոք Խոսրովանոյշը։—Մխ. անեց. գ· Վրդ. խը. Վրդ. աշխ. 511. Սամ. անեց. 100. Մխ. այրիվ. 71. Օրբ. ժմ. 11. Զարբ. Թրգմ. 338։

— 3. Խոսրովանոյշ, դուստր «պարոն Յուսիբայ», մերձավոր Խաչատուրի, որ գրեց մի Աւետարան 1252 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378։

— 4. Խոսրովանուշ, դուստր Վահրամ քահանայի և քույր Բարսեղ երէցորդու, որ Հալէպում գնեց մի հին Աւետարան, 1323 թ.—Ջեռ. Կես. ածած. 64 բ։

— 5. Խոսրովանոյշ, դուստր ձիավոր Պր. Բարթողիմէոսի և կին Գրիգոր քահանայի, որ Սարգիս Պիծակին գրել տվեց մի գեղեցիկ Աւետարան և նվիրեց Սսի Ս. Սարգիս եկեղեցուն, 1332 թ.—Շողակաթ 212։

*ԽՈՍՐՈՎԻԴՈՒԽՏ, իգ. < Խոսրով և դուխտ «աղջիկ» բա-

ուրից, երկուսն էլ իրանական փոխառություն։ Իբր անձնանուն հիշված է Մագ. քեր. 239։

— 1. Խոսրովիդուխտ, դուստր Մեծն Խոսրովի «213—240 թ» և քույր Տրդատի «287—330 թ»։ Երբ Արտաշիր Սասանեանը հրամայեց Խոսրովի ցեղը բնաջինջ անել, Օտա Ամատունին փախցրեց Խոսրովիդուխտին և փրկեց մահվանից։ Երբ Լուսավորիչը բանտարկված էր Խոր վիրապում, Խոսրովիդուխտը իր պաշտպան Օտա Ամատունու միջոցով հանել տվեց նրան վիրապից։—Ագաթ § 214, 216, 765—6, 800, 817, 820, 832. (արաբ. Ագաթ. Կուսարոդուկ-տա ձևով՝ էջ 26—28, 46, 59, 64, 67). Խոր. Բ. ձբ. Ուխտ. Ա. հա. Շնորհ. վիպ. 606. Կղկնտ. Ա. ժդ. Վրդ. ժբ. Թղթ. դաշ. 17. Ոսկ. ներբ. լ. 836. Պարականոն շար. 21. Յայսմ. հոկտ. 6, նոյ. 18, 29. Տաթև. ձմ. ղզ, ղէ. Ցկ. կր. 12. Դրնղ. 510.—սեռ. Խոսրովիդխտոյ՝ Խոր. Բ. հէ, ձդ, ղ. Ուխտ. Ա. կե. Ասող. Գ. գ. Թղթ. դաշ. 20. Ճշ. 521. Անան. պատ. 136 ա. Յայսմ. հոկտ. 6, նոյ. 18, 29. Վրդն. աշխ. 514, 519.—գրծ. Խոսրովիդխտով՝ Ագաթ. § 766, 791։—Վրաց աղբ. Բ. 90. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 460—80։

— 2. Խոսրովիդուխտ, քույր Նահատակ Վահան Գողթնացու († «737 թ»), որի վրա գրեց «Զարմանալի է ինձ» շարականը։ Անունը դնում է Ալիշան, Յուշիկք Բ. 194, բայց Ազգաբ. 862 չգիտէ այդպիսի անուն։ Չգիտէ նաև Աւետիքեան, Բացատրութիւն Շարականաց, Վենետիկ 1814, 592. ուստի ենթադրում եմ որ այդ անունը հնարել է Ալիշանը, ըստ որում Վահան Գողթնացու հոր անունը Խոսրով էր։ Սորա դնում եմ այդ շարականը՝ իբրև երկրորդ հայ կին հեղինակի ստեղծագործությունը (առաջինն է Սահակադուխտ)։ Թե ով է առաջին անգամ հայտնել թե այդ շարականի հեղինակը Վահանի քույրն է՝ չգիտեմ։ Աւետիքեան, անդ՝ ասում է «ասի անգիր աւանդութեամբ, թէ քոյր երանեալ նահատակին երգեալ իցէ զայս»։ Իսկ երգը, թեև շատ ծանր ստեղի եղանակով է, բայց բովանդակությամբ ոչ միայն քրոջ շեշտ չունի, այլ և առհասարակ ոչ մի կնոջական փափուկ զգացմունք չունի։

Շարական Ս. Վահանայ Գողթնացւոյ

Զարմանալի է ինձ քան զերգս
Երաժշտականաց ձայնս,
Ողբոց քոց հնչմունք,
Ո՜վ երանելի տէ՜ր Վահան, ընտրեալ յԱստուծոյ։

Առաւել յորդորէ այս զհոգւոյս մասունս,
Յօրինել քեզ երգս ոչ զղջականս,
Այլ հոգևորս և ուրախարարս,
Յորդորականս և ներբողեանս.
Ո՜վ երանելի տէր Վահան, ծառայ Քրիստոսի։

Զարհուրեցուցանէ քո ճգնութիւնդ
Զմարմնոյս բնութիւնս,
Իսկ դու առաւել զտար,
Ո՜վ երանելի տէր Վահան, սիրող Քրիստոսի։

Արտաքնոցն զգաստքն, ստեղծիչ բանք
Մնոտեացն ի պատրութիւն,
Իսկ քոյդ սիրայնոյ՝ աստուածարեալ և ոգեշահ,
Ո՜վ երանելի պէր Վահան, ընտրեալ յազատաց։

Որպէս զքաջ նահատակ պատրաստեալ ի պատերազմ,
Կատարեցեր զընթացս քո
Արիաբար յազգացն հարաւայնոց,
Դասաւորեալ ընդ անմարմնականսն,
Ո՜վ երանելի տէր Վահան, Գողթնեացն իշխեցող։

— 3. Խոսրովիդուխտ, կին Աշոտ Ա Թագավորի Բագրատունեաց († «890 թ»).—տես Մարքվարտ, Բագր. ծագումը, էջ ԺԵ։

— 4. Խոսրովիդուխտ, ստացել է Ժ դարում գրված մի Աւետարան, նորոգել և նվիրել Սուքիաս վանաց երեցին, 1183 թ.—Շողակաթ 191։

— 5. Խոսրովիդուխտ, կին Ստեփանոս քահանայի, որդւոյ Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Գած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. էջ 18։

— Համառոտվելով դառնում է Խոսրով, ինչպես ունինք հիշված 1603 թ. Խաւսրոֆ ձևով, իբրև իգ. անուն։ 50 տարի առաջ լսել եմ Պոլսում։ Հաղբատում, զանգակատան դռան առաջ, մի տապանաքարի վրա, ուր նկարված է իշխանուհու փառավոր մի պատկեր, կարդում ենք այս անթվական տապանագիրը. «ԽՈՍՐՈՎԻ... ՏԱՊԱՆ»։—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 54, Ազգագր. հանդ. Է, 409։

*ԽՈՍՐՈՎԻԿ, ար. < խոսրով անվան փաղաքշականն է. գործածվում է իբրև անկախ անուն և իբրև օրինակ հիշված է. Մխ. քեր. 206։

— 1. խոսրովիկ Թարգմանիչ. Սահակի և Մեսրոպի աշակերտներից. գնաց Հունաստան սովորելու. Հայաստան վերադառնալու ժամանակ մեռավ ճանապարհին (Ե դար).—Փարպ. Թղ. 202. Զարբ. Հին դպր. 295. ZAPh 1, 207.—գրված է խոսրով՝ Օրհն. 246. Առաք. լծ. սահմ. 170։ Հմմտ. Խոսրով № 7 և 10։

— 2. խոսրովիկ Թարգմանիչ, կոչված նաև Խոսրով հռետորանդամ Մանազկերտի «726 Թվի» ժողովի (Ազգապ. 839). մատենագիր Ը դարու։ Կրոնական հերձվածների առթիվ ժողովներ է ունեցել Ասորիքում՝ Անտիոքի Աթանաս պատրիարքի, Ասորոց Սարգիս եպիսկոպոսի և ուրիշների հետ, և այս առթիվ գրել է նրանց իր Թղթերը, որոնք են. Թուղթ հաւատոյ, Առ այնոսիկ որ ասեն բնութեամբ անձն։ Իրն են նաև Հարցմունք հայրապետին Անտիոքայ յաղագս զծնունդն առնելոյ (տես Ձեռ. Վեննա. Բ. 157.—լատիներենի Թարգմանեց Կոնիբիր Zeitschrift für d. neutestamentliche Wissenschaft 1904, էջ 327—334), Բան վարդապետութեան յաղագս քառասնորդացն (հրատ. ՀԱ 1904, 310—316)։ Բոլոր գործերը միասին՝ ընդարձակ առաջաբանով հրատարակեց Գ. Վ. Յովսէփեան, Վղրշպտ. 1899.—սեռ. խոսրովկայ՝ Խսրվկ. էջ 1, 3.—կոչված է խոսրով՝ անդ 149, 187.—սեռ? խոսրովի՝ էջ 100. խոսրովու՝ 149, խոսրովայ՝ Խսրվկ. քառաս. էջ 310 բ։—Զարբ. Հին դպր. 295, 784. Ազգապ. 846. Տաշեան, Մատ. մանր ուսումն. Ա. էջ 49—68, իսկ էջ 69—75 Առ այնոսիկ, և Ցուցակ 1097. Հացունի, Ճաշեր 489.—Խոսրովիկի գործունեության և գաղափարների մասին տես և Տէր-Մինասեան, Հայոց եկեղ. յարաբ. 210—226։

— 3. խոսրովիկ Բղենի (Բաղաց գավառ). գերի ընկավ Թուրքերի ձեռքը՝ 1105 Թ.=Օրբ. կ։

— 4. խոսրովիկ, Համտունեան ցեղից, ազատ Բաղաց Թագավորության. մանուկ հասակում մեռավ Նախիջևանում ու Թաղվեց ի Ճահուկ (ԺԲ դար).—Օրբ. կ. Սիսական 479 ա։

— 5. խոստրովիկ Տարսայիճեանց, հայր Գոնցայի, որ էր կին Վահրամի և նվերներ է արել Հերհերի վանքին, 1345 Թ.—Արձ. Սիսական 116։

— 6. խոսրովիկ, վանահայր Հռիփսիմէի վանից. ունի ան–

թվական մի արձանագրություն, որ 1653 թվին օրինակել է Առաքել Դուրիժեցին։

*ԽՈՍՐՈՎՇԱՀ, ար. < պրս. خسرو Xusrav + شاه šāh «թագավոր» բառերից։ Այս անունով էր կոչվում Ղըյասէդդին Քէյքաւուս ամիրան Իկոնիայի, ժամանակակից Լևոն Բ-ի (Սիսուան 441 բ)։

— Խոսրովշահ Բաբերդցի, որդի Ումիկի. հետին ստացող մի հին Աւետարանի, որ նորոգել տվեց 1346 թվին.—ՀԱ 1926, էջ 344։

*ԽՈՍՐՈՎՈՒՀԻ, իգ. < Խոսրով անունից՝ ուհի մասնիկով. իբրև անվան օրինակ հիշված է Մագ. քեր. 239։ Անցյալ դարում գործածական էր Արևմտահայոց մեջ։

— Խոսրովուհի, քույր Անակ պարթևի և հորաքույր Լուսավորչի. համարվում է Մծբնայ Յակոբ հայրապետի մայրը.— սեռ. Խոսրովուհեայ՝ Յայսմ. (տես Տաշեան, Ցուց. 47 բ), Վրդն. լս. 47, Վրդ. ժէ։

*ԽՈՏԱՆ, իգ. անշուշտ հյ. խոտան «անարժեք, անպետք» բառից չէ, և պետք է կցել Խոյդան անվան, որ սակայն արական է։ Սեռ. Խոտանայ ձևով գործածված է մի անգամ անթվական մի արձանագրության մեջ, որ հետևյալն է. «Ես ամենավեհ իշխանի Պռոշոյ և մանկան Էաչոյ և մեծահաւատ տիկնոջ Խոտանայ, յորժամ տէր էր տեղւոյս...» (Սիսական 119)։ Այս արձանագրությունից երևում է որ Պռօշի կինն է Խոտան։ Բայց որովհետև այլուստ գիտենք որ Պռօշի կինը կոչվում էր Խութլու խաթուն (որ մեռած էր 1268 թվից առաջ) և ոչ մի հիմք էլ չունինք ենթադրելու թե Պռօշը ծերության հասակում երկրորդ անգամ ամուսնացել էր և այդ ամուսնությունից էլ ունեցել էր Էաչոյ անունով մի որդի, ուստի պետք է ենթադրել թե «Խոտանը Պռօշի ստորագրեալ ազատներից մեկի կինն էր»։ Այսպես է պատճառաբանում Յովսէփեան՝ Խաղբակեանք 182—3։ Մենք էլ կարծում ենք թե՝ որովհետև Խոյդան արական անուն է, ուստի Խոտանը հենց այդ ազատն է, որի կնոջ անունը չէ հիշատակված և ասված է պարզապես «մեծահաւատ տիկնոջ [իշխանին] Խոտանայ, յորժամ տէր էր տեղւոյս»։

*ԽՈՐ, ար. < պրս. خور xōr «արեգակ» բառից. հիշված է 1629 թ. (Կամենից 183)։

ԽՈՐԱՍՈՒ, իգ. ծագումն ինձ անհայտ։

— 1. Խորասու, թագավորազն կին Կիւրիկեան տոհմից.

կրոնավորուհի էր Բոբայրում. մեռել ու թաղվել է Սանահինում, 1101 թ։—Վրդ. հ. Մխ. այբիվ. 78։—Մովսէսեան, Լօռիի հիւր. էջ 64։

— 2. Խորասու անունը հիշված է նաև Հաղբատի անթվական մի արձանագրության մեջ, որ տես Երզնկեանց, Հնախ. տեղագր. 30։

**ԽՈՐԲ**, ար. անսովոր անուն. ծագումը անհայտ. հմմտ. Խարբ։ Մի անգամ հիշատակված է ԺԳ դարում, թերևս վրիպակ գրչության։

— Խորբ, տեր, շինել է Ծարում Ս. Գրիգոր մատուռը՝ ի հիշատակ իր կնոջ և իր որդի Մարգարէի, 1274 թ.—Արձ. Արցախ 407։

**ԽՈՐԴԻՆ**, ծագումը անհայտ. տեղանունն է թե անձնանուն։ Հիշված է 1234 թ. հետևյալ ձևով. «Ես սուտանուն Յովասափ որդի արժանաւոր քահանային Խորդինոյ կանգնեցի զխաչս».— Սմբատեանց՝ Գեղարքունի 511, Սիսական 52 (գրված Խորտինոյ?)։

***ԽՈՐԷՆ**, ար. կազմված է իրան.-ēn փաղաքշական մասնիկով (Հիւբշ. 90). ըստ իս արմատն է պրս. خور xōr «արեգակ», որով Խորէն նշանակում է «արևիկ». հմմտ. Χοριάνης զորավար Խոսրով Ա-ի. ընկավ Կողքիսի ճակատամարտում (Justi 95 ա, որ համարում է նույն ընդ فرّخ Farrūx=Փառուխ. հմմտ. Farruxhormiz, հայոց մեջ կոչված Խոռոխ Որմիզդ), Xōrān քաջ ոմն՝ Բէյ Խոսրովի ժամանակ (Justi 172 բ)։ Հիշված է իբրև Մակաբայեցի եղբայրներից երրորդը՝ ըստ լուսանցագրության Բ. մակ. է. 12. նաև երեք մոգերի 12 հազարապետներից մեկը (Խորենայ). Անկ. գիրք նոր կտ. 278, 285, 296։

— 1. Խորէն երեց ի Մրենոյ. ներկա եղավ Արտաշատի ժողովին «449 թ», պատասխանելու համար Միհրներսեհի նամակին։ Երբ Վարդան Մամիկոնեանը իրեններից դառնացած՝ մեկնեց Հունաստան, Խորէն երեցն էր, որ ուղարկվեց նրա ետևից և համոզելով ետ դարձրեց «450 թ»։—Փարպ. իդ, լ։

— 2. Խորէն մախազ Խորխոռունի. ընկերացավ Վարդան Մամիկոնեանին՝ Աղուանից պատերազմում. մասնակցեց Վարդանանց պատերազմին, ուր նահատակվեց իր 19 ընկերներով (451 թ)։—Եղիշ. 77, 93, 117. Փարպ. լդ, լթ. Ճառ. ղբ. Յայսմ. օգոստ. 7.—սեռ. Խորենայ՝ Եղիշ. 90. Փարպ. լե. Յայսմ. օգոստ. 7։

— 3. Խորէն խոստովանող, Այրարատի Որկովի գյուղից,

աշակերտ Ղևոնդեանց, երեց. Աբրահամի հետ միասին քշվեց Պարսկաստան, չարչարվեց Նիւշապուհ քաղաքում, ապա աքսորվեց Ասորեստան, ուր և մեռավ (Ե դար)։—Եղիշ. 142—144, 146. Փարպ. ծգ, ծը. Արծր. Գ. ժե. Յայսմ. դեկտ. 20, յուլ. 31. Սիմ. ապար. 48.—սեռ. Խորենայ՝ Փարպ. ծգ, ծը. Կիր. 3. Ճշ. 620, 747. Յայսմ. դեկտ. 20.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ժ. 210—221։

— 4. Խորէն Սահառունի. գրել է «Ժամանակագրութիւն վարդապետացն հայոց» (Է դարից հետո). անհայտ հեղինակ. այժմ իր երկը կորած է։—Զամչ. Ա. 19. Բ. 328, 537—8, Տաշեան, Ցուց. 114։

— 5. Խորէն, եղբայր Ստեփանոս գրչի, որ Վահկայի մոտիկ Ընդայ վանքում օրինակեց Աւետարանը՝ Մարտիրոս քահանայի խնդրանոք, 1269 թ.—Ջեռ. Վասպ. 95։

— 6. Խորէն, հայր Հայրապետի, որ իր եղբոր հետ մի խաչքար է կանգնեցրել նրա հիշատակին, Փառիսոսում, 1271 թ.—Արցախ 307։

— 7. Խորէն, Թվլի եղբայր Վարդառիւծի և Աշակլի. երեքով միասին՝ իրենց մի կալվածը, որ կոչվում էր «Վարդենաց նորք», նվիրել են Բագնայրին, Սիմէոն վանահոր ժամանակ (թվականն անհայտ).—Արձ. Շիրակ 120։

— 8. Խորէն Աշըգեան, պատրիարք Պոլսի, հաջորդեց Յարութիւն Վեհապետեանին և գահակալեց 1888—1894 թ. ապարդյուն կյանք ունեցավ և հրաժարվեց գահից. մեռավ 1899 թ.—Ազգապ. 4616, 5009։

— 9. Խորէն Ա. կաթողիկոս ամենայն Հայոց. հաջորդեց Գէորգ Ե Սուրէնեանին, գահակալեց 1932—1938 թ. սրա հաջորդն է Գէորգ Զ Չէօրէքչեան, Նոր-Նախիջևանցի. կաթողիկոս ընտրվեց և օծվեց այս տարի (1945 թ.) Սսոյ կաթողիկոս Գարեգին Ա-ի ձեռքով՝ Էջմիածնում։

*ԽՈՐԻՇԱՀ, իգ. < պրս. خورشاه xūršāh անունից, որ բուն նշանակում է «արև արքայ». այս անունով հայտնի են Rokn-ed-dīn Xūršāh որդի Ալաէդդին Մուհամմէդի (վերջին իշխան Հաշիշին, որին նվաճեց Հուլաղու 1256 թ), Xuršāh որդի Բորադի՝ պատմիչ †1505 թ. (Justi 179 բ)։—Պատահական նմանություն ունի վրաց. խվարեշանի, խվաիշանի, խոիշանի «օգնություն, նպաստ»։—Նկատելի է որ իրանական անունը արական է, իսկ հայերենը իգական է։ Պարսկերենում Xūršāh նշանակում է «արև արքայ», որ ի հարկե հարմար է արականի. իսկ հայերե-

նում խորիշաճ (xōr-i šāh) նշանակում է «թագավորի արևը», որ համար է իգականին։ Զարմանալի է որ մեր մեջ էլ թեև ընդհանրապես խորիշաճ ձևն ունի և միշտ իգական է, մի անգամ էլ խորշաճ ձևն ունի (տես տակը № 13), որ արական է։ Այս զանազանությունը արդյոք պատահակա՞ն է։

— 1. խորիշահ, կին Բրդի․ սրանց որդին է Սմբատ, որ մի ջաղացք էր տվել իր կնոջ Զմրուխտ խաթունին, իսկ սա էլ՝ իր ամուսնու մահից հետո նվիրեց Հոռոմոսի վանքին, 1234 թ.— Արձ. Շիրակ 24, Արրտ․ 1870, 298։

— 2. խորիշահ, դուստր մեծ սպարապետ Սարգսի, քույր Զաքարե սպասալարի, կին Վախթանկ Տոնկիկի՝ տեառն Խաչենոյ։ Հասան Ջալալ Դոլայի մայրն է։ Վերաշինեց Մեծարանց վանքը 1212 թ։—Ուխտի գնաց Երուսաղէմ և վերադարձավ։ Ամուսնու մահից հետո, երբ որդին Հասան Ջալալդոլայ սկսել էր շինել Գանձասարի վանքը (1216 թ) և արդեն արևելյան լուսամուտն էին փակում, «կրօնաւորեալ չոգաւ յԵրուսաղէմ երկրորդ անգամ և անդէն ի դրան Յարութեան խարազնազգեաց ճգնութեամբ, բազմամեայ ժուժկալութեամբ հանգեաւ ի Քրիստոս լուսոյ վկայութեամբ և անդէն պահեցաւ» (Նախ քան 1240 թ)։—Ցիշատ․ ИАН 1909, 409.—գրծ. խորիշահի՝ Վրդ․ ձգ.—Շողակաթ 198, Բանասէր 1901, 142, Արցախ 171, 173, 185։

— 3. խորիշաճ, կի՞ն Իշխանի, որդւոյ Բրդի, որ հիշված է 1228 և 1245 թվերին․ տես վերը Իշխան № 9 և 10.—Շիրակ 22։

— 4. խորիշաճ Մամիկոնեան, դուստր Մարզպան Մամիկոնեանի, քույր Ասլանբէգի և Գրիգորի, կին Բուրդ իշխանի Արագածոտան, որի մոտ իջևանեց Հեթում Ա թագավորը՝ Թաթարաց Մանգու խանին այցելության գնալու ժամանակ «1254 թ»։ Մայրն է Վաչէի և Մամախաթունի։ Ամուսնու հետ միասին շինել են Սաղմոսավանքի գրատունը և մատուռը՝ ի հիշատակ իրենց վաղամեռիկ դստեր՝ Մամախաթունի (1235 թ), նաև Յովհաննավանքը (1250 թ)։—Կիր. ծգ.—Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի 18, Այրարատ 162, 163, 168, 170, 255, Ազգագր. հանդ. Գ. 282 և Է, էջ 383։

— 5. խորիշահ տես Տաշուրակ 1288 թ.—

— 6. խորիշաճ, մայր Սարգսի, որի դուստրը՝ Թայիկ կանգնեցրել է մի խաչքար՝ Վայոց ձորի Քարագլուխ գյուղում, 1290 թ.—Արձ. Սիսական 162։

— 7. խորիշահ, կին Բրդի, որի դուստրն է Մամքան, որ

մեռել ու թաղվել է Խաթրավանքում, 1298 թ.—Արցախ, էջ 206 և 405։

— 8. Խորիշաճ, դուստր Շահանշահի, թոռն Զաքարէ Բ սպասալարի (ԺԳ դար).—Հայապ. 447։

— 9. Խորիշաճ, կին Քոչաքշերի. նվերներ արեն Բջնիի Ս. Աստուածածին եկեղեցուն, 1306 թ.—Արձ. Այրարատ 273 բ։

— 10. Խորիշաճ, դուստր Վարդան իշխանի և կին Զեսարի, որդւոյ իշխանաց իշխանին Սմբատայ Օրբելեանց. ամուսնու հետ միասին շինել են Վայոց ձորի հոգետունը (այժմ Սելիմի կարավանատուն), 1332 թ.—Արձ. Սիսական 165։

— 11. Խորիշահ, դուստր Ճարի. իր եղբոր Արղութի հետ հիշվում է իբր իշխան Գետիկի՝ 1291 թ. և 1345 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 10, Արցախ 353, Ազգագր. հանդ. Ժ, 33, 35 (կրճատ Խորիշ ձևով)։

— 12. Խորիշահ, կին պարոն Փաշայի, որին դարանակալ այլազգիները սպանեցին Զորակերտում, 1451 թ.—Այրարատ 120, 123։

— 13. Խորշաճ պարոն, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Հորս գյուղում.—Արձ. (թվականն անհայտ). Սիսական 161։

— 14. Խորիշահ, դուստր Վասակի, կին Զաքարիայի՝ եղբոր Ջալալի և որդւոյ Վախթանգի՝ իշխանին Հաթերքի. նվիրատու Յովհաննավանքի.—Արձ. Այրարատ 171 բ (անթվական)։

— 15. Խորիշահ, կին Սաթաւի, որդւոյ Համազասպի և թոռան Սմբատի. նվիրատու եղավ Հաղբատի վանքին, Համազասպ վանահոր ժամանակ.—Արձ.(առանց թվականի). Երզընկեանց, Հնախ. տեղագր. 29։

— 16. Խորիշահ, կին Պատեղի, նվիրատու Հաղբատի վանքին, Յովհաննէս վանահոր ժամանակ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 30 (Արձ. անթվական)։

ԽՈՐՃԷՍ, ար. ծագումն անհայտ։

— Խորճես իշխան Հաշտենից. դավաճանությամբ անցավ Արձան քրմապետի կողմը և սկսեց կոտորել հայոց զորքը։ Սիւնեաց իշխանը հարձակվեց նրա վրա, մուրճով զարկավ նրա սաղավարտին և ձիուց ցած տապալելով՝ դանակով կտրեց նրա գլուխը։—Անունը չի տալիս Զենոբ պատմիչը (հմմտ. հրատ. Երևան 1941, էջ 90) և գիտէ միայն Սիսական 9 բ, անշուշտ Վենետկի ձեռագրերներից մեկից հանելով։

*ԽՈՐՏԻԿԻՆ, իգ. < պրս. خور xōr «արեգակ»+հյ. տիկին բառերից. գտնում եմ մի անգամ հիշատակված ԺԶ/ԺԷ դարերից (Ձեռ. Թաւր. 42)։

† ԽՈՑ, իգ. < հյ. խոց «վերք» բառից. և որովհետև ոչ մի ծնող չի կարող իր աղջկա վրա այսպիսի նախատական անուն դնել, ուստի և կրճատված է Խոցադեղ անունից։ Գտնում եմ մի անգամ հիշատակված ԺԵ դարում։ Սրա էլ փաղաքշականն է Խոցիկ, որ տես։

— 1. Խոց, մայր Յովհաննէս եպիսկոպոսի, որ Ծիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.— Ձեռ. Վասպ. 503։

† ԽՈՑԱԴԵՂ, ար. < հյ. խոց+դեղ բառերից. առանձին առանձին էլ ունինք Խոց և Դեղ անունները, որոնց փաղաքշականներն են Խոցիկ և Դեղիկ։ Բոլորն էլ արական են. միայն Խոց իգական է։ Խոցադեղ անունը գործածված է ԺԲ—ԺԶ դարերում։ Հնագույն ձևն է Խոցադեղ, հետո միջին ա կորչելով դառնում է Խոցդեղ (հնագույն վկայությունը 1386 թ.), ապա ց հաջորդ բաղաձայնի մոտ վերածվելով ս՝ ստացվում է Խոսդեղ (հնագույն վկայությունը 1478 թ.)։

-- 1. Խոցադեղ Ծլաթեցի, նվիրատու ձեռագրի (1204 թ).— Հայապ. 450։

— 2. Խոցադեղ, մերձավոր արեանառու Հոռմեանց Յովհաննէս քահանայի, որ մի կալված է նվիրել Արջոյառիճի վանքին, 1213 թ.—Արձ. Շիրակ 122։

— 3. Խոցադեղ, փորագրիչ կամ քանդակագործ. ինքն է փորագրել Հոռոմոսի վանքի մի ընդարձակ արձանագրությունը՝ 1228 թվից և մի ուրիշ արձանագրություն էլ Շիրակաւանում, նույն թվից.—Շիրակ 23, 10, Արար. 1870, 297։

— 4. Խոցադեղ, ազգական Աբրահամ երեցի, որ երկու տուն և մի խանութ է նվիրել Ծծկոնքի վանքին, 1233 թ.— Արձ. Շիրակ 128։

— 5. Խոցադեղ, հայր Գրիգոր քահանայի, որ միանալով Մկրտիչ աբեղային, Արուճում և Փարպիում հնձաններ են շինել և նվիրել Հոռոմոսի վանքին, 1258 թ.—Արձ. Շիրակ 26, Արար. 1870, 270 (վերջինս գրում է Խոցատ):

— 6. Խոցադեղ, համարում եմ հայր Մխիթարի և պապ Աւետիսի, որ Եղեգիսում թողել է մի արձանագրություն 1283 թ.—Սիսական 152 (կիսատ)։

— 7. Խոցադեղ, *որդի Աւատարիկի և եղբայր Հասանի. իրենց հանգուցյալ եղբայր Մխիթարի հիշատակին մի հող են նվիրել Վայոց ձորի Ս. Ստեփանոս եկեղեցուն, 1292 թ.—Արձ. Սիսական 167։*

— 8. Խոցադեղ, *հորեղբայր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղիտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.—Սմբատեանց, Երնջակ 201։*

— 9. Խոցադեղ, *հոգևոր հայր Յակոբի, որ օրինակեց Աւետարանը՝ Կարսի Կողխս գյուղում, 1297 թ.—Ջեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 463)։*

— 10. Խոցադեղ, *իբրև վկա հիշվում է Բանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Բանաս. 1903, 32, Այրարատ 298։*

— 11. Խոցադեղ, *ազգական Սարգսի, որ Թումա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1336 թ.—Ջեռ. Վասպ. 196։*

— 12. Խոցադեղ, *որդի Շահինշահի, իր քրոջ Գոհարի հիշատակին մի Աւետարան է գրել տվել Յովհաննէս գրչին, 1378 թ.—Տաշեան, Ցուց. 692։*

— 13. Խուցդեղ, *որդի Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։*

— 14. Խոցադեղ, *որդի Առաքելի և եղբայր Յունանի, որ Մեծոփայ վանքում օրինակեց Տաթևացու Քարոզգիրքը՝ 1414 թ.*—Rapport Belgique *181։*

— 15. Խոցդեղ, *մեծ հայր Ստեփաննոս կրոնավորի, ոլ Խորրովայ վանքում, Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան, 1430 թ.—Նոտարք 94 (սխալմամբ գրում է Ցայսմաւուրք), Ջեռ. Վասպ. 358։*

— 16. Խոցադեղ, *հայր Մարտիրոս աբեղայի, որ Հաղբատում օրինակեց մի Շարակնոց, 1437 թ.*—Manus. brit. mus. *96 բ, Նոտարք 113։ (Այս միևնույն հիշատակարանը՝ 13 տող ամբողջ նույնությամբ կրկնում է Նոտարք, էջ 52, թվականը դնելով սխալմամբ ՊԿԶ=1417, փոխանակ ՊԶԶ=1437։ Սխալ է նաև Խոցադեղ անունը՝ Վանայ բարբառի համաձայն դ-ի տեղ գրելով տ, և այսպես էջ 52, 94, 113։ Ուրիշ անգամ չի պատահում այս անունը Նոտարքում)։*

— 17. Խոցդեղ, *վախճանվել է ժանուկ հասակում և նրա հիշատակին հայրը կանգնեցրել է մի խաչքար, Վայոց Ձորի Զիրախլու գյուղում, 1463 թ.—Սիսական 108։*

— 18. Խոստեղ, որդի Խանթութի՝ դստեր Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— Աւելի ուշ եղած հիշատակությունններն են՝ Խոցդեղ 1575 թ. (Թորոս աղբ. Բ. 410), Խուստեղ 1585 թ (Ձեռ. Վասպ. 704), Խացադեղ (այսպես գրված կամ տպված) 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), Խուստեղ 1626 թ. (Ձեռ. Վասպ. 868), Խուսդեղ 1648 թ. (անդ 436)։

† ԽՈՑԻԿ, ար. կրճատ և փաղաքշական ձևն է Խոցադեղ անվան. մի անգամ գտնում եմ հիշատակված 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 702)։

*ԽՈՒԱՆԴ, իգ. < պրս. خواند Xvānd, Xund, որ և خوانده Xondah անունից > արաբ. xavand «տեր»։ Համառոտված է պրս. خداوند xudāvand «տեր» բառից, որ և ասվում է xāvand (Horn § 471)։ Այս անունով հիշված են Xondah կին Կահիրէի սուլթան Մալիք-էն-Նասրի 1326 թ., Bibi Xondah դուստր Դելհիի սուլթան Ալաէդդինի 1478 թ., Xondah Humāyūn կին Հուսէին Նիզամշահի 1564 թ. (Justi 181 բ)։ Մեր մեջ ստացել է զանազան ձևեր. այսպես Խուանդ, Խոնդ, Խանդ, Խոյանդ, Խունդի, և սրանցից կազմված զանազան բարդ ձևեր, ինչ. Խանդամիր=Խոնդամիր, Խանդվէլի, Խոնդալի, Խոնդաղա, Խոնդբէկի, Խոնդիկ, Խոնդխաթուն, Խոնդմելէք, Խոնդշահ, Խոնդփաշա, և հատկապես Խոնձա, որից և Խոնձաղա։ Կա նաև Խանտմայրի, որ իբրև իգ. անձնանուն գործածված եմ գտնում անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Վասպ. 112 (իբր պրս. xwand+հյ. մայր, մայրիկ բառերից)։ Հնագույն հիշատակությունը ԺԳ դարից է։ Բայց գործածված է նաև իբրև հասարակ անուն՝ «իշխանուհի» իմաստով. այսպես Օրբ. տպ. Թիֆլիս, 1910, էջ 421 Լաշայի որդի Վրաց Դաւիթ Թագավորի համար ասում է թե «առնոյր իւր կին զխաւանդն Նախջաւանու զՃսուգանն»։

— 1. Խովանդ Ամիր՝ Սուլտան, մի մարդ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1217 թ.—Արձ. Շիրակ 23 ա։

— 2. Խուանդ խաթուն (որ և Խոյան), դուստր Ամիրպէկի և թոռն Աթաբակ Աւագի, կին Քուրդ Գ. Անբերդցի իշխանաց իշխանի, մայր Թէոդոս Զրքինի և Թայիկի. ամուսինը հիշված է 1317, 1338 և 1329 թվերի արձանագրության մեջ։ Խուանդ խաթունն էլ հիշված է Յովհաննավանքի մի մեծ արձանագրության մեջ (Այրարատ 171 ա), որ թվական չունի. և ըստ Ալիշանի

*ԺԴ դարու առաջին կեսից է։—Այրարատ 253—4, Հայապ. 527,* ZAPh *2, 48։*

— 3. Խուանդ *խաթուն, կին Մուրատի, որ Աղթամարում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1355 թ.—Ձեռ. Վասպ. էջ 203։*

— 4. Խուանդ, *կին Մկրտչի և մայր Ստեփանոս միաբանակեցի, որ Աղթամարում գրել տվեց մի Ճառընտիր, 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 759—765)։*

— 5. Խուանդ *խաթուն, կին տանուտեր Դանիէլի, որ Աղթամարում, Զաքարայ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234։*

— 6. Խուանդ, *ազգական Սարգիս եպիսկոպոսի, որ Կոթի Փորոյ վանքում օրինակեց Յայսմաւուրքը, 1427 թ.—Նոտարք, էջ 84։*

— 7. Խուանդ խաթուն, *կին Աղբուղայի և մայր Գողթան Ստեփաննոս արքեպիսկոպոսի, որ Ագուլիսում, Մաթէոս քահանային գրել տվեց մի Տօնական, 1447 թ.—Ձեռ. Թաւր. 121 բ, 123 ա։*

— 8. Խովանդ *կամ Խուանդ, հանգուցյալ դուստր էլպաշի էմին պէկի, որ Կեսարիայում գրել տվեց՝ մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1848։*

— 9. Խուանդ *երեցկին, ամուսին Գրիգոր նկարիչ քահանայի, որ Սեբաստիայում Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Ավետարան, 1485 թ.—Խուանդը մեռել էր 1484 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։*

— 10. Խուանդ *անունը՝ աղավաղված* Խունանդ *ձևով (թգ.) հիշված կա նաև 1565 թ.—Ձեռ. Մաղն. 26։*

**ԽՈՒԱՆԴԱՂԱ*, թգ. < նույն պրս.* Խուանդ *անունից+*aġa, *որ նաև թգական պատվանուն է։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1528 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 532)։*

**ԽՈՒԱՆԴՁԷ, տես Խոնձա։*

**ԽՈՒԲ, ար. < պրս.* خوب xūb *«լավ, գեղեցիկ» բառից. երևի գործածական էր իբրև անձնանուն, որից և* Խուբեան *ազգանունը։ Սրա կոչականը կարող է լինել* Խպօ *(տես), որից էլ* Խպէեան *ազգանունը։ Հմմտ. նաև Խուբան, Խուբեար, Խուբիկ, Խուբլար, Խուբասար, Խուբիջան։*

**ԽՈՒԲԱՆ, ար. և թգ. < պրս.* خوبان xūbān *«գեղեցիկներ» ձևից. երևի հաջորդ մի ուրիշ բառի կրճատմամբ. հիշված է մի*

անգամ 1566 թ. (Ձեռ. Թաւր. 132 բ) և մի անգամ էլ 1685 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրա. 1911, էջ 1011). հմմտ. խուբլար, որ նույն բառի թուրքական յոգնակին է։

***ԽՈՒԲԱՍԱՐ**, ար. < պրս. خوب xūb] «գեղեցիկ»+سر sar «գլուխ» բառերից. ամբողջը նշանակում է «գեղեցիկների գլխավորը»։ Թաթարական անուն էր և Օրբելիանը հիշում է «խրփչախ ոմն Խուպասար անուն» (հրտր. Թիֆլիս 1911, էջ 384)։ Ասվում է նաև Խուբէսէր (արևմտյան տառադարձությամբ Խուպէսէր)։ Սրանից է Խուպասարենց ազգանունը, որ հիշված է Հառիճի մի հին արձանագրության մեջ (Շիրակ 163), թվականն անհայտ։ Ճիշտ այս ձևով հիշված է 1677 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 29 ա)։ Կենդանի է այժմ Խուպէսէրեան ձևով (Պոլիս)։ Հիշատակված է ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Խուպասար, հանգուցյալ հայր Սանասարի և Բաղդասարի, որոնք իրենց և իրենց ծնողների հիշատակին մի այգի են նվիրել Հառիճի վանքին, 1235 թ.—Շիրակ 163։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ Խուպասար 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339), 1609 թվից քիչ ուշ (անդ 474), 1652 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 738), Ղուբասար 1697 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 266), նույն այս ձևով առանց թվականի՝ Նոտարք 180։

***ԽՈՒԲՅԱՐ**, ար. և իգ. < պրս. خوب xūb «լավ, գեղեցիկ»+یار yār «սիրելի, բարեկամ» բառերից։ Գործածվել է ԺԵ—ԺԷ դարերում։ Սրանից է Խուբեարեան ազգանունը, որ հիշված է 1700 ական թվերին (Ազգագ. 2907)։

— 1. Խուպիար, թոռն Լիանոսի՝ որ սպանվեց մի Աւետարան, 1491 թ.—Թորոս աղբար. Ա. 120։

— 2. Խուպիար, հիշված է 1521 թ.—Manus. brit, mus. 139 բ։

— 3. Խուբեար (գրված Խուպիար), կին Յովասափ դրչի, 1542 թ.—Տաշեան, Ցուց. 488։

— Ավելի ուշ են՝ Խուփիար 1604 (Ձեռ. Վասպ. 813), Խուպեար 1622 թ. (Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 82), Խոփեար 1666 թ. (Ձեռ. Վասպ. 925), երեքն էլ արական։ Անթվական են Խուփի այր (այսպես սխալ տպված) Ձեռ. Թաւր. 132 բ, Խուպիար (Ձեռ. Վենետ. Բ. 682), Խուբար (Ձեռ. Վենետ. Ա. 609)։

***ԽՈՒԲԻԿ**, իգ. < պրս. خوب xūb «լավ, գեղեցիկ» բառից՝ հյ. փաղաքշական մասնիկով։ Տես վերը խուբ։ Հիշված է Խուպիկ ձևով՝ 1624 թ. (Տաշեան, Ցուց. 780)։

*ԽՈՒԲԻՋԱՆ, ար. < պրս. خوب xūb «լավ, գեղեցիկ»+جان jān «հոգի» բառերից (այն է հոգու համար գեղեցիկը)։ Վկայված է մի անգամ 1624 թ. (Խուպիճան ձևով՝ Տաշեան, Ցուց. 780) և մի անգամ էլ անթվական մի արձանագրության մեջ (նույն ձևով՝ Բարխուտ. Աղուանից երկ. 282, Արազ գյուղում)։

*ԽՈՒԲԼԱՐ, ար. < պրս. خوب xūb «գեղեցիկ» բառի թրք. հոգնակի ձևից. հմմտ. Աղալար, Բէգլար, Խանլար։ Երևի գործածական էր իբրև անձնանուն, որից և ձևացել է Խուբլարեան ազգանունը (Շուշի).—հմմտ. Խուբան։

*ԽՈՒԲՆԻԳԱՐ, իգ. < պրս. خوب xūb «գեղեցիկ» և نگار nigār «նկար, պատկեր» բառերից և նշանակում է «գեղանկար, գեղեցկապատկեր»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1683 թ.— Սիսական 359 ա (վրիպակով տպված Խուպծիկար. այսպես նաև ցանկում)։

*ԽՈՒԴԱԲԱՇԽ, ար. < պրս. خدابخش Xudābaxš անունից, որ կազմված է պրս. خدا xudā «Աստված»+بخش baxš «պարգև, նվեր» բառերից և նշանակում է «աստվածապարգև, աստվածանվեր»։ Հմմտ. Xudābaxš հետևորդ Լութֆալի խանի 1795 թ., Xudābaxš որդի Փարսի, Xudābaxš գրականագետ որդի (Justi 176 բ)։ Մեր մեջ գործածված է ԺԳ դարից մինչև ԺԵ դար։ Սրա կրճատ ձևն է Խուդաբաշ, որից և Խուդաբաշեան ազգանունը։

— 1. Խոտբաշխ, հիշված է Տաքի գավառի Ամուր-Աւան գյուղում մի տապանաքարի վրա, 1291 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 215։

— 2. Խուդաբախշ, որդի Աբդուլմսեխի, † 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 3. Խուդաբաղշ, որդի տանուտեր Կարապետ Մանկարոնի՝ փեսայի Փաշա տիկնոջ, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 4. Խուդաբաղշ, սարկավագ, որդի Աստուածատուրի և եղբայր մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Ցայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103, 105։

— 5. Խուտաբաղշ, որդի Նիգարփաշայի, որ նույն Ստեփաննոս Ղարիպշահի մորաքույրն էր.—Ձեռ. Թաւր. 103 բ (տես նախորդը)։

— 6. Խուտաբախշ, ազգական Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 7. Խուտաքաշխ, տանուտերներից մեկն է Մաշկագդակ գյուղի և իր ընկերների հետ նորոգել է տվել մի հին Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 573։

— 8· Խուդաքախս, որդի Խաչատուրի, որ գրել տվեց մի Ավետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ Խուրդաքաշխ 1557 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 529), Խուդաբաղշ 1590 թ. (Ձեռ. Վասպ. 715), Խուդաբախշ 1632 թ. (Ձեռ. Դագեան, Բ. 33 ա), Խուտապաղշ 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363)։ Կրճատ Խուտապաշ 1602 թ. (Հայ-Վենետ. 378), Խուդայպաշ՝ ԺԸ դարից (Տաշեան, Ցուց. 511)։ Առանց թվականի են Խուդաբաշխ՝ Ձեռ. Վասպ. 441 և Խուդաբաշ՝ անդ 273։

— *ԽՈՒԴԱԴԱԴ, ար. < պրս. Xudādād անունից, որ կազմված է պրս. خدا xudā «Աստված»+ داد dād «տվեց» բառերից և նշանակում է «Աստուածատուր» (տես այս անունը)։ Այս անունով հայտնի են Պարսից մեջ՝ Խուդադադ՝ սպանող Աղա Մէհէմմէդ խանի 1794 թ., Խուդադադ աֆղան՝ նահանգապետ Լարի 1730 թ, Խուդադադ՝ պապ Շիրազի դատավոր Մաջդ-էդ-դին Իսմայիլի 1327 թ. եւն (Justi 177 ա)։ Գործածված է մեր մեջ ԺԵ դարում և ավելի ուշ ԺԹ դարում։

— 1. Խուդիտատ, որդի Ասիլմելիք տատի, որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 241։

— 2. Խուտադատ, որդի Էդիլշահի. երկուսով նվիրեցին մի Յայսմաւուրք Սակռաբերդի Ս. Ստեփաննոս եկեղեցուն, 1491 թ.—Այրարատ 443։

— 3. Խուդադ կամ Խուդաթ (արտագրանությամբ կրճատված ձև), որ գտնում եմ՝ առաջինը 1389 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ. = Արրտ. 1911, 759), երկրորդը՝ 1833 թ.—այն է՝ Մելիք Խուդաթ՝ իշխող Վարանդայի, † 1833 (Արցախ 98 և Պատմ. Աղվանից 45)։ Սրանից է Խուդադեան ազգանունը։

*ԽՈՒԴԱԴԱՆ, ար. < պրս. خدادان xudādān «աստվածագետ, աստվածածան, աստվածաճանաչ» բառից, որ կազմված է خدا xudā «Աստված» և دان dān «գիտենալ, ճանաչել» բառերից։ Անշուշտ Պարսից մեջ գործածական էր իբրև անձնանուն, բայց չէ հիշատակված Justi-ի մոտ։ Մեր մեջ էլ չէ ավանդված, բայց անշուշտ գործածական էր և նրա արտագրանությամբ կրճատված ձևն է Խուդան, որ հիշատակված եմ գտնում 1678 թ. (Սմբատ-

եանց՝ Գեղարքունի 630)։ Սրանից է Խուդանեան ազգանունը։

*ԽՈՒԴԱԴԱՐ, ար. < պրս. خدادار xudādār բառից, որ կազմված է خدا xudā «Աստուած»+دار dār «կրել, ունենալ» բառերից և նշանակում է «աստուածակիր»։ Կազմության կողմից համաիսադար։ Թեև Իրանյաններն մեջ չի հիշատակված իբրև անձնանուն (չի հիշում Justi), բայց մեր մեջ գործածված է՝ սկսած ԺԱ դարից մինչև ԺԶ դար.

— 1. Խուդադար (Վեստ Խաչատուր), իշխան հայ և Բիւզանդական դուքս Անտիոք քաղաքի. սպանվեց 1076 թ.—ընդարձակ տես Բեխդ։

— 2. Հուդատար (ի Նախատառով), որդի տեր Աւետիսի, որ էր քահանա Ոստան քաղաքի, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 3. Խուդադար, որդի Դաւթի, Խիզանի Որճոկ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284 բ։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Խուտատար 1507 թ. (Ձեռ. Վասպ. 626) և Խուդադար 1575 թ. (անդ, էջ 688)։

*ԽՈՒԴԱՎԵՐԴԻ, ար. < պրս. خدا xudā «Աստված»+թրք. وردى verdi «տվեց» բառերից և նշանակում է Աստուածատուր (տես այս անունը)։ Մեր մեջ գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։ Սրանից է Խուդավերդեան ազգանունը։

— 1. Խուտավերտի, որդի Վալդի՝ եղբոր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1495 թ.—Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— Ավելի ուշ ժամանակից ունինք Խոտավերտի 1601 թ. (Manus. brit. mus. 252 ա), Խոտավէրդի 1649 թ. (Երեմ. չէլ. օրագր. 7), անթվական են՝ Խոտոյվերտի (Ձեռ. Հալէպի, Ա. 397), Խոտավէրտի՝ Տաշեան Ցուց. 736։

ԽՈՒԴԱՓ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Խուդափ, որդի Յովհաննէսի. հիշվում է իբրև վկա Տաթեվի 844 թվի կալվածագրում.—սեռ. Խուդափայ՝ Օրբ. լը։

*ԽՈՒԴԻ, ար. անշուշտ կրճատված է Խուդիդադ ձևից, որ տես Խուդադադ։ Այս անունով ունինք մի անգամ՝

— Խուտի աղա, ազգական Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

ԽՈՒԶԵՆԼԹԱՅ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է ԺԳ դարում։

— Խուզելթայ (սեռ. Խուզելթի), կին Լուսիկի և մայր Յովհաննէս քահանայի, որ Սուրբ Մարի (=Սուրմալու) քաղաքում, Ծերուն գրչին գրել տվեց մի Աւետարան, 1296 թ.—Ձեռ. Վասպ. 121—2։

ԽՈՒԹԱՑ, կամ ԽՈՒԹԱՍ, ար. երևի Խութ երկրանունից, որ է Սասուն։ Այս անունով ծանոթ է Սասնոյ մի իշխան, որ Մորիկ կայսեր հրամանով՝ Սմբատ, Մուշեղ և Ներսէս իշխանների հետ գնաց օգնական Պարսից վտարյալ Խոսրով թագավորին (591 թ)։—Զամչ. Բ. 297։

*ԽՈՒԹԱՆ, իգ. < թթր. قوتان կամ قوطان qotan բառից, որ նշանակում է «արագիլ կամ հավալուսն» (Будагов 2, 70 և 85)։ Այս անունով հայտնի են՝

— 1. Խութան, կին Աստուածատուրի և մայր Խըդրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 2. Խութանփաշա, իգական անուն, որ հիշատակված է 1477 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 628)։

ԽՈՒԹԼԱՓ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված է՝

— Խութլափ, հայր Սիրաւքի, որ Հաղրութի Վանք գյուղում կանգնեցրել է մի խաչքար, 1333 թ.—Արցախ 66։

*ԽՈՒԹԼՈՒ, իգ. < չաղաթ. قوتلو qutlu «երջանիկ, օրհնեալ» բառից։ Իբրև անձնանուն գործածվում էր հին թուրքերի մոտ՝ զանազան բարդությամբ. ինչ. قطلودمور Qutludamūr թուրք իշխան ԺԴ դարում (Իբն-ի Բատուտա, Բ. 362). նույն անունով մի ուրիշը՝ իշխան Խարեզմի (Իբն-ի Բատուտա, Գ. էջ 9, որ ասում է թե «նշանակությունն է «օրհնեալ երկաթ», որովհետև Խութլու նշանակում է օրհնեալ»), قطلوخان Qutlūxān մեծ էմիր ոմն (Իբն-ի Բատուտա, Գ. 45), Qutlubeg կամ Qutlušāh, թուրք իշխան ԺԵ դարում (Այրարատ 322), Qutluq-nigār xanum՝ մայր Բաբեր թագավորի Հնդկաց՝ †1505 (Justi 169 ա), Խութլուշահ՝ քեռայր և մեծ զորավար Ղազան խանի, «մեծ և բարեբարոյն Խութլուշահն, որ թարգմանի շնորհաւոր թագաւոր» (Օրբել. տպ. Թիֆլիս, 1911, էջ 471)։ Մեր մեջ հիշված է պարզ և բարդ ձևերով, որոնցից ամենահինը ԺԲ դարից։

— 1. Խութլու, ար! հայազգի ոմն, Սասունցոց տոհմից, որ Խլաթի Բեդր-էդ-դին Աք-Սունկոր Հազարդինարի Շահի-Արմենի

ժամից հետո հաջորդեց նրան. բայց 7 օր անցած՝ ժողովուրդը գահազուրկ արեց նրան և Բեքր-Թիմուրի որդի Մուհամմէդ-էլ-Մանչուրին իշխան հրատարակեց (1197 թ).—Տոմաշէկ, Սասուն 47, ըստ Աբուլ-Ֆեդա, Դ. էջ 168,

— 2. Խողլու, կին Իշխութլուի, կիսաքրիստոնյա թաթար, մի ձիթահանք են նվիրել Հառիճի վանքին, 1304 թ.—Արձ. Շիրակ 162։

— 3. Խութլու, իր ամուսնու և իր նորածին որդի Ամիր Սարգսի հետ միասին միաբան է գրվել մի Աւետարանի, խոստանալով տարեկան մի լիտր ձեթ տալ եկեղեցուն, 1324 թ.—Ձեռ. Թաւր. 73 բ։

— 4. Խոնթլու (այսպես գրված), ազգական կամ մերձավոր Մարտիրոսի, որ ետ գնեց իր ծախած Աւետարանը՝ 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 5. Խութլու, ազգական տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 6. Խութլու, կին Ստեփանոսի և մայր Խոնձայի՝ կնոջ տանուտեր Էդիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 7. Խութլու, կին Սալպէկի, որ ստացավ մի Աւետարան, որ գրել էր Մարգարէ քահանան, Բալուի Նեխրի գյուղում, 1475 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 624։

— 8. Խութլու, կին Ամիրի՝ որդւոյ պարոն Ցովհաննիսի, որ ստացավ Ժ դարում գրված մի Աւետարան՝ ԺԳ դարում?—Ձեռ. Սանաս. 9 բ։

— Առանց թվականի են Խուլթու (Ձեռ. Վասպ. 394), Խութլու (Ձեռ. Սեբ=ՀԱ 1925, 375 և Թորոս աղբ. Բ. 360), Ղութլու՝ Ձեռ. Թաւր. 43 բ։

*ԽՈՒԹԼՈՒԲԷԿ, ար. < թթր. قتلو qutlu «երջանիկ»+ بگ beg «իշխան» բառերից։ Ավելին տես վերը Խութլու:

— 1. Խութլուբէկ, որդի Խայտանի, նվիրատու Մեծարանց վանից 1293 թ.—Բանասէր 1901, 137, Արցախ 170։

— 2. Խութլուբէկ, որդի Մխիթարի. իր եղբոր Թիրքիշի հետ միասին գրել տվեց մի Աւետարան՝ Ցակոբ աբեղային, Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 463—4։

— 3. Խութլուբէկ, որդի Մխիթարի և թոռ Խալայշահի.

Գոօշ իշխանի ազատներից է. հողեր է նվիրել Թանատի վանքին (ԺԳ դար).—Յովսէփեան, Խաղբակեանք 142, 182, 187։

— 4. Ղութլուբէկ, որդի Աբգարի. պապի հայրն է Նշանավոր Վրթանէս եպս. Օծոպեցու, որ Լուսաւորչի աջը հնարքով փախցրեց Աղթամարից և բերավ էջմիածին. մեռավ 1493 թ. և թաղվեց Օծոպի վանքում. Մնում է տապանաքարը, որի կիսատ արձանագրությունից երևում է նրա ճյուղագրությունը.—Աբգար-Ղութլուբէկ-Արուտահլ-Ամբրոսիոս-Վրթանէս։ Ըստ հաշվի Ղութլուբէկը ծնված է լինում 1330 ական թվերին։—Յովսէփեան՝ Խաղբակեանք, Ա. 248։

— 5. Խութլուբէկ, հայր Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 6. Խութլուբէկ, տանուտեր Այլիմելիքի՝ մորաքրոջ Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը՝ շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 7. Խութլուպէյ, հայր Սինանի, որ շինեց Կամենիցի Ս. Նիկողայոս եկեղեցին՝ 1398 թ.—Կամենից, էջ 134, 160, Труды Вост. Комм. ИМАО, հտ. II, 3, էջ 43։

— 8. Խութլուպէկ, գնեց մի հին Աւետարան՝ Սիմէոն աբեղայից, 1422 թ.—REA 7, 106—7, Կամենից 161։

— 9. Խութլուպէ, որդի Սամուէլի, հիշված է Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու մի արձանագրության մեջ, 1451 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 36։

— 10. Խութլու բէկ, կին! Ստեփանոս քահանայի և մայր Ներսէս եպիսկոպոսի, որ Տիւրիկում, Զաքարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 51։

— 11. Խութլիբէկ, հայր Աղազարի, որ Երնջակի Շոռոթ գյուղում մի խաչքար է կանգնեցրել 1493 թ.—Արձ. Սիսական 356, Սեդրակեան՝ Հնութ. Երնջակու 124։

— 12. Խութլուբէկ, անհայտ թվականով է Թանատի վանքի մի արձանագրության մեջ (Սիսական 121)։

*ԽՈՒԹԼՈՒԲՈՒՂԱ, ար. < թթր. قتلو qutlu «երջանիկ»+بوغا buġa «ցուլ» բառերից։ Մնացյալը տես վերը Խութլու։

— 1. Խութլուփուղա, աթաբագ ամիրսպասալար, 1245 թ. (հմյ է).—Արձ. Ղազախի Կունէն գյուղում.—Արցախ 379։

— 2. Խութլուբուղա, քաջ զորավար, ծառայում էր Թաթարների բանակում. դավաճանաբար սպանվեց 1308 թ.—Հայապ. 529 (համարում է նույն ընդ Խութլուշահ)։

— 3. Խութլուբուղա, որդի Սադուն աթաբեկի. իր նկարը կա Հաղբատի հարավային պատի վրա. լուսատիպ հրատարակեց Մառ Христ. Вост. 1912 թ. հտ. 1, տախտակ XXI.

*ԽՈՒԹԼՈՒԽԱԹՈՒՆ, իգ. < թթր. قوتلو qutlu «երջանիկ»+ خاتون xatun «տիկին» բառերից: Գրվում է խաթուն բառը՝ տարբերելու համար արականից: Ավելին տես Խութլու:

— 1. Խութլուխաթուն, դուստր Ռուզուքանի, շինեց Հոռոմոսի երեք եկեղեցիները և մեծ տապանատունը. վանքին նվիրեց նաև Շուլթա գյուղը (ԺԳ դարի սկիզբը).—Արձ. Շիրակ 21:

— 2. Խութլուխաթուն, ազգով պարսիկ էր. ընդունեց քրիստոնեությունը և ամուսնացավ Խաւռաս իշխանի հետ, որ Զաքարէ և Իւանէ սպասալարների մորեղբորորդին էր. իր հիշատակին է գրված Բագնայրի նշանավոր Աւետարանը՝ 1232 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 16:

— 3. Խութլուխաթուն, կին Պռոշի (Հասան) իշխանի Խաչենի. հիշատակված է Ս. Գեղարդի պահարանի վրա՝ 1268 թ., ինչպես նաև Գեղարդայ վանքի արձանագրության մեջ: Իր նկարը մնում է իր ամուսնու և զավակների հետ՝ Ս. Աստուածածնի որմանկարների մեջ, բայց շատ եղծված (Խաղբակեանք 103 ծան): Մահը պատահած պիտի լինի 1258—68 թվերի միջև.—Այրարատ 269, 339, 340, 341, 344. Յովսէփեան՝ Խաղբակեանք 103—5 և 183:

— 4. Խութլու խաթուն, մայր Զուրջին, երկուսով նվերներ են արել Նորավանքին՝ 1273—90 թվերին.—Արձ. Սիսական 197:

— 5. Խութլուխաթուն, կին Օղբէկի և մայր Մկրտիչ քահանայի, որ Բերկրիում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Նոտարք 55:

— 6. Խութլու խաթուն, դուստր Սարգսի, մերձավոր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ:

— 7. Խութլուխաթուն, կին մահտեսի Յովհաննէսի, որ մի Աւետարան ազատեց «անօրէնների» ձեռքից, 1466 թ. — Ձեռ. Վասպ. 384 (քիչ առաջ կոչվել էր Խութլումէլիք):

— 8. Ղութլու խաթուն, (Նախաձայնը Ղ), հիշված է 1603 թ.—Ձեռ. Լվով.=ՀԱ 1936, 506:

*ԽՈՒԹԼՈՒՄԵԼԻՔ, իգ. < թթր. قوتلو qutlu «երջանիկ»+ արաբ. ملك melīk «թագավոր» բառերից: Ավելին տես վերը Խութլու:

— 1. խութլումելիք, քեռեկին և հարսն Յակոբ սարկավագ դրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն Ընծայութեան գիրքը՝ շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 2. խութլումելիք, կին Գրիգոր քահանայի և մայր Ստեփաննոս քահանայի, որ Տշող գյուղում, կոչկակար Թովմայի պատվերով գրեց մի Մաշտոց, 1417 թ. (Նոտարք 50) և մի Ճառընտիր 1419 թ. (անդ 59)։

— 3. խութլումելիք, կին Աւետիսի և մայր հիւսն Յովհաննէսի, որ ստացավ մի Ճաշոց 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111 ա։

— 4. Ղութլու մելիք, կին Պատուականի, մայրենի տատ մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 5. խութլումելիք 1466 թ. տես Խութլուխաթուն № 7։

— 6. խութլումելիք, կին Խլազափաշայի (!) և մայր Ղարիպխաթունի, որ Բուստի անապատում գրել տվեց մի Աւետարան, 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— 7. խութլումելիք, կին Ներսէսի, մայր տաղասաց Առաքել Բաղիշեցու (ԺԵ դար)։—Ձեռ. Դաղեան, Ա. 42 ա, որ և Ղութլումելիք՝ Տաշեան, Ցուց. 795, Հայապ. 126, Ձեռ. Հալէպի, Ա. 104։

— Առանց թվականի են՝] Խութլումելիք՝ Ձեռ. Թաւր. 29, Հութլումելիք (նախատառը h)՝ Ձեռ. Վասպ. 187։

*ԽՈՒԹԼՈՒՇԱՀ, ար. < Թթր. قوتلو qutlu «երջանիկ»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Ավելին տես Խութլու։

— 1. խութլուշահ, որդի ըմբիշ Սագունի, ծառայեց երկար ժամանակ Թաթարների բանակում իբր զորավար և մեծ հաղթություններ տարավ (ԺԳ/ԺԴ դար)։—Հայապ. 529 (համարում է նույն ընդ Խութլուբուղայի)։

— 2. խութուլշախ, որդի Շահնշահի, որ գրել տվեց Աւետարանը Թովմայ Արճիշեցուն՝ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 387)։

— 3. խութլուշայ, որդի Խութլուբէկի, գրել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 4. խութլուշայ, «նախնին» տանուտէր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տվեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 5. խութլուշա (սեռ. Խութլուշի), հայր Տէր Գրիգորի, որ

*Յովհաննէս գրչին գրել տուեց մի Յայսմաւուրք, 1458 թ.—Նոտարք 190։*

— 6. խութլուշայ, *որդի Լիպանոսի, որ ստացաւ մի Աւետարան՝ 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։*

— 7. խութլուշան, *որ իր կնոջ Մարիամ խաթունի հետ հիշված է Թէոդոսիայի թանգարանում պահվող մի քարի վրա, 1536 թ.*—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. *39։*

— *Կրճատ ձևով գտնում է* խութլուշ *և հատկապես սեռական հոլովում. այսպես 1609 թ. Դրնդ. 150։*

***ԽՈՒԹԼՈՒՓԱՇԱ,** *իգ. < թթր.* قتلو qutlu *«երջանիկ»+թրք.* پاشا paša *բառերից։ Մի անգամ գտնում եմ գործածված 1618 թ. Ձեռ. Վենետ. Ա. 594։*

**ԽՈՒԹԿԷՆ,** *իգ? ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝*

— խութկէն, *դուստր Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։*

**ԽՈՒԹՈՒԽ,** *ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում,*

— խութուխ, *հայր Մելքիսեթի, որ Սանահինում ստացավ, ծաղկեց ու կազմեց Մանրուսմունքը, 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873 բ։*

***ԽՈՒԺԷՆ,** *ար. իրան.*-en՝ *մասնիկով կազմված փաղաքշական անուն (Հիւբշ. 90). հմմտ.* Xūzān *թագավոր Խուժաստանի՝ Քէյխոսրովի օրով* (Justi *181 ա) և* խուժիկ *(Եղիշէ)։*

— խուժէն, *նահապետ Ծոփաց. մին այն նախարարներից, որոնք ուղեկցեցին Ներսէս կաթուղիկոսին († «373 թ») Վաղէս կայսեր մոտ դեսպան գնալու ժամանակ.—Մեսր. եր. 53 (այլ ձ. Խաբուժան)։*

***ԽՈՒԼԱՍԱ,** *իգ. < արաբ.* خلاصه xulāṣa *«քամելով և զտելով ծնացած մաքուր մասը»,* *Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։*

— խուլասա խաթուն, *վաղամեռիկ դուստր Երզնկացի ոսկերիչ Յովհաննէսի, որ Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 367։*

**ԽՈՒԼԽՈՒ,** *իգ. ծագումն անհայտ, անսովոր և անստույգ անուն. մի անգամ գործածված է անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Վասպ. 136, սեռ.* խուլխուօյն *ձևով։*

**† ԽՈՒՄԱՐ,** *իգ. < հյ. գւռ.* խումար *«գինարբ աչքերով» բառից, որ արաբ.* خمار xumār *«հարբած» բառից է փոխառյալ։*

Գործածված է իբրև անձնանուն ԺԵ դարից սկսած և դեռ այժմ էլ գործածական է։ Կա նաև Թուրքերի մեջ՝ իբրև իգական անուն։

— 1. Խումար, դուստր Ղարիպշայի, որ Արծկէում, Նիկողայոս եպիսկոպոսին գրել տվեց մի Ավետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— 2. Խումար, դուստր Ցակոբի՝ եղբոր տանուտեր Արապշայի, Աղբակի Էրնկանի գյուղում, Մարգարայ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 259), 1590 թ. (Ձեռ. Վասպ. 716), 1593 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 194), ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 բ), Խումար ար! 1602 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331), 1610 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 9 բ), 1615 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41), 1640 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 75), 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 173), 1731 թ. (Ձեռ. Վասպ. 1022), Խոմար 1785—6 թ. (անդ 262—4)։

*ԽՈՒՄԱՐԶԱ, սեռն անհայտ. < խումար + պրս. zā(de) «ծնունդ» բառերից. մի անգամ հիշատակված է Հին-Ջուղայի գերեզմանատան մի անթվական խաչքարի արձանագրության մեջ (Սիսական 424)։

*ԽՈՒՄՆԱԴԱՐ, ար. < պրս. خوب xūb «գեղեցիկ»+արաբ. نظر nazar «հայացք, նայվածք» բառերից, որով xūbnazar նշանակում է «գեղահայեաց». հայոց մեջ b շրթնայինը հաջորդ ռնգականի մոտ վերածվել է մ։ Այս անունը մեր մեջ մի անգամ գտնում եմ հիշատակված 1596 թ. (Ձեռ. Վասպ. 749)։

*ԽՈՒՆԴԻ, իգ. ծագումը տես Խուանդ։

— 1. Խունդի, կին Ասլանի և մայր մահտեսի Սարգսի, որ մի վերջին ստացող էր Ավետարանի, 1621 թվին?—Թորոս աղբ. Ա. 57, 59)։

— 2. Խունտի փաշա, դուստր Աստուածատուրի, քույր Խդրշահի, որ Ցովհաննէս Երզնկացուն գրել տվեց Կեսարիայում մի Ավետարան, 1476 թ.—Rapport Belgique 34.

— 3. Խունդ մելիք, որդի Արղուլմսեհի, 1327 թ.—Ձեռ. Ադուլ. (Արար. 1911, 461)։

*ԽՈՒՆԴՎԵԼԻ, ար. < պրս. خوند xvand, xond+արաբ. ولی veli բառերից, որոնց երկուսն էլ նշանակում են «տեր»։ Իբրև արական անուն գործածված է մեր մեջ ԺԷ դարում (Ջքր. ադուլ. 97)։

*ԽՈՒՆԻ, *ար. < պրս.* خونی xūnī *«արյունային կամ արյունոտ» բառն է, որով կոչվել է Համադանցի մի բանաստեղծ* (Justi *177 բ, որ մեկնում է* xūn *իբրև սիրոյ վշտից առաջացած արյուն-արցունքը)։ Անսովոր անուն է. մի անգամ գտնում եմ հիշատակված Գետաշէնի հին հանգստարանի մի խաչքարի վրա, հետևյալ ձևով. «Խաչս յիշատակ հաւրն իմոյ Խունին և մաւրն իմոյ Գուլին. թվ. ՃՂԱ» (Արցախ 267)։ Համարելով Ռ կտրած կամ չգրված՝ թվականը լինում է 1742 թ.*

† *ԽՈՒՆԿ, ար. < հյ.* խուճկ *«կնդրուկ» բառից (բայց տես նաև Ղունկիանոս). հիշատակված է ԺԶ—ԺԶ դարում։*

— 1. խուճկ *(սեռ.* խճկայ *ձևով), հայր Թադէոս քահանայի, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1412 թ.—Ձեռ. Դազեան, Բ. 30 բ։*

— 2. խուճկ *քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը 1483 թ.—Բարխուտ. Ազուանից երկ. 208։*

— 3. խուճկ *անունը 1483 թ. կա նաև Սմբատեանց՝ Սագիան 243։*

— խուճկ *հիշված է նաև 1505 թ. սեռ.* խճկայ *ձևով՝ Ձեռ. Ներս. 16 ա (հրատարակիչը Սա. Կանայեան ցանկում հանում է* խճիկ *ուղղականից. բայց սխալ է. պետք է դնել ուղ. Խունկ)։*

*ԽՈՒՇՈՒՇ, իգ. ծագումը ինձ անհայտ։ Հիշատակված է Ժ—ԺԳ դարերում։*

— 1. խուշուշ *խաթուն, դուստր Գագիկ Ա Բագրատունու և կին Սենեքերիմ Արծրունի (1003—1025 թ) թագավորի Վասպուրականի (ապա Սեբաստիոյ)։ Վարագայ Ս. Նշան վանքի Ս. Սոփիա եկեղեցու արևմտյան պատի վրա թողել է մի արձանագրություն 981 թվից.—Սարգիսեան, Տեղագր. 257, Ազգագր. հանդ. ԻԱ, 66։ (Իր գերեզմանը՝ ամուսնու հետ միասին՝ ցույց են տալիս Վարագայ վանքում, ըստ Սրուանձտեանց, Հնոց և նորոց 14)։*

— 2. խուշուշ, *կին Տրդատ քահանայի. երկուսով միասին իրենց ծախսով նորոգեցին Անիի Ս. Փրկիչ եկեղեցին, 1173 թ.—Արձ. Սարգիսեան՝ Տեղագր. 123—4, Շիրակ 85։*

— 3. խուշուշ *Առըճացի, մի այգի է նվիրել Բագարանի Մայր եկեղեցուն, շուրջ 1211 թ.—Այրարատ 67։*

— 4. խուշուշ *հիշատակված է նաև Հառիճի անթվական մի արձանագրության մեջ՝ Շիրակ 162։*

*ԽՈՒՐԱՄՇԱՀ, ար. պրս.* خرم xurram *«ուրախ»*+شاه šāh

«թագավոր» բառերից։ Հիշված է ԺԷ դարից (Տաշեան, Ցուց. 531)։—Տես և Խուրամ։

*ԽՈՒՐԱՄ, իգ. < պրս. خرم xurram «ուրախ» բառից, որ ավելի պատշաճօրեն պիտի տար Խուռ(ռ)ամ, ինչպես որ ունինք էլ Խուռամշահ (տես այս անունը)։ Խուրամ անունը մի անգամ գտնում եմ գործածված 1619 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 722)։

*ԽՈՒՐՄԱ, իգ. < պրս. خرما xurmā «արմավ» բառից։ Հիշված է ԺԷ դարից։ Հնագույնն է 1615 թ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41 (սեռ. Հուրմիե ձևով), ապա Խուրմախաթուն 1618 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 594 և 762), Խուրմա 1666 թ. (Ձեռ. Սանաս. 5 բ և Սմբատեանց, Երնջակ 282)։

*ԽՈՒՐՇԻԴ. տր. < պրս. خورشید xūršīd «արեգակ» բառից, որի հին ձևն է զնդ. hvarə-xšaēta «փայլուն արեգակ» կամ պարզապես «արեգակ»։ Իբրև անձնանուն գործածական է նաև Պարսից մեջ. ինչ. Xūršid սուրհանդակ Խոսրով Փարվիզ արքայի (Շահն. հտ. 7, էջ 97), Xūršīd ոսկի մոգպետ, Xūršid xān հրամանատար Մուհամմեդ շահի պալատական պահազորքի, 1446 թ. ևն (Justi 180 ունի ընդամենը 23 անուն)։ Սովորական անուն է այժմ էլ Տաճիկների մեջ. հիշենք օրինակ Սուլթան Բայազիդ Բ-ի որդին՝ Խուրշիդը, որ Ամասիայի կուսակալն էր՝ ԺԶ դարի սկզբները (Սխտուեան 304 ա)։ Մեր մեջ այս անունը հիշատակված է երկու. անգամ՝ ԺԳ և ԺԵ դարում։ Այժմ գործածական է Ղարաբաղի հայոց մեջ Խուրշուդ ձևով, ուր երկրորդ վանկի ու առաջացել է առաջին վանկի նմանությամբ։

— 1. Խուրշիթ, որդի Միրանշահի. մի հող է նվիրել Վայոց ձորի Բարագլուխ գյուղի Ս. Մամաս վանքին, 1291 թ.—Արձ. Սիսական 163։

— 2. Խուրշէթ, ազգական տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

ԽՈՒՐՍ, տր. ծագումն անհայտ. (պրս. خرس xirs «արջ» համար չէ ձայնավորի պատճառով)։

— 1. Խուրս Գարդմանացի, իշխան. գործակից եղավ Ս. Մեսրոպին՝ Գարդման գավառի լուսավորության գործում (Ե դար).—Կոր. 20. Խոր. Գ. կ. Հղկնտ. Բ. գ։

— 2. Խուրս Սրուանձտեանց, ժամանակցեց Վարդանանց պատերազմին (451 թ).—Եղիշ. 77։

— 3. Խուրս, Արշամունեաց Շիրմաց գյուղից. դայեկորդի

Ներսեհ Կամսարականի. Վահան Մամիկոնեանի գործակիցներից մէկն. Արծաթի գյուղում դիմադրեց Պարսիկներին «483 թ».—Փարպ. ձա.—սեռ. Խուրսայ՝ Փարպ. ձա։

— 4. Խուրս ազգապետ, Աղուանից Վաչագան Գ թագավորի օրով.—Կանոն. 197. Կղկնտ. Ա. իգ. (Շահն. հաջորդ բառը իբրև տեղանուն առնելով՝ գրում է. «Խուրս՝ Բերմուսան (նահապետ)», իսկ Էմինի մոտ՝ Գերմանոսան նահապետ է)։

*ԽՈՒՐՏ կամ ԽՈՒՐԹ, ար. < Թրք. Թթր. قورت Qurt կամ قورد Qurd անունից, որ բուն նշանակում է «գայլ». հմմտ. Գուրգէն: Այս անունով հայտնի է Ղող Թուրքերի ամիրայ Խուրթը, որ առավ Դուինը և պատերազմում սպանեց Անիի տեր Փադլուն Գ-ին՝ 1131 թ. (Շիրակ 99 բ)։ Մեր մեջ հիշված է միայն ԺԳ դարի սկիզբը։ Տես և Ղուրտ։

— 1. Խուրտ, որդի Հասանի և եղբայր Պարսիմոյի, որ Օշական գյուղի ռայիսն էր և հողեր նվիրեց Արճոյառիճին 1207 թ. և Բագնայրին 1210 թ. թե իր, թե եղբոր՝ Խուրտի և թե քրոջը՝ Սեդայի հիշատակին։—Արձ. Շիրակ 117 և 121 (երկու անգամ Խուրտ և մի անգամ Խուրթ ձևով)։

*ԽՊՕ, ար. ըստ իս կրճատված է Խուբաասար անունից, որ տես առանձին։ Սրա քիչ կրճատված ձևն է Խուպե, որ հիշված է 1657 թ. (Նշանեան, հրտր. Երեմ. չէլ. օրագր. էջ ՀԳ). ավելի կրճատ ձևն է Խպօ 1730 թ. (մեք Բարսեղս, Խըպօս, Ասվատուրս, Խըլօս, որ եմք փոքրիկ լաճեր, որ թէ Աստուած պախէ՝ ջոջ-նամք...) Ջեռ. Վասպ. 630։

ԽՍՏԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ. հայ բոշայի անուն է՝ հիշատակված 1597 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1859։

ԽՐԻԿՄԱՑՐ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված սեռ. Խրիկմաւր ձևով, 1513 թ.՝ Ջեռ. Վասպ. էջ 135։

*ԽՐԻՄ, իգ. < Խրիմ=Ղրիմ թերակղզու անունից. բուն ձևն է Խրիմխաթուն, որ տես տակը։

— 1. Ղրիմ, դուստր Պօղոսի, քույր Վարդան կրոնավորի. հիշված է ԺԶ—ԺԷ դարում.—Տաշեան, Ցուց. 530։

*ԽՐԻՄԽԱԹՈՒՆ, իգ. < Խրիմ=Ղրիմ թերակղզու անունից+խաթուն, իբր «Խրիմի իշխանուհի»։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։ Սրա կրճատ ձևն է Խրիմ, որ տես։

— 1. Ղրիմխաթուն, կին Ապտլայի. Կիրակոս գրչին գրել

ավեց մի Ցայսմաւուրք և նվիրեց Բաղէշի եկեղեցուն, 1438 թ.— Նոտարք 118։

— 2. Ղրիմխաթուն, կին պարոն Սէֆէդնի և մայր Գրիգորիս փոքր Աղթամարցի կաթուղիկոսի. հիշված է 1544 թ.—Ձեռ. Վասպ. 107։

— 3. Ղրիմխաթուն, հիշատակված է նաև 1602 թ.—Ակինեան՝ Գուղնգիրք 128։

***ԽՐԻՄՇԱՀ**, ար. < Խրիմ թերակղզու անունից + պրս. شاه šāh «թագավոր». իբրև «Խրիմի թագավոր»։ Հիշատակված է ԺԴ դարից և սրա կրճատ ձևն է Խիմշէ։

— 1. Խրիմշա (գրված որոշիչ հոդով՝ Խրիմշան), հիշված է 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277 ա։

— 2. Խիմշա (անձնական հոդով՝ Խիմշէս), որդի Աթաբակի և եղբայր Այտինի, երկուսով մի հող են նվիրել Գանձասարի վանքին՝ 1467 թ.—Շահխաթ. Բ. 375, Նոտարք 228, Արցախ. էջ 177։

— Խմշին ձևով (սեռական է) հիշված է 1517 թ.—Թորոս աղբ. Բ. 275։

— Խիմշի հիշված է ԺԷ դար.—Ձեռ. Թաւր. 134 բ։

***ԽՐՄԸԶ**, իգ. < արաբ. قرمز qərməz «որդան կարմիր»= թրք. قرمزی qərməzə «կարմիր» բառից։ Հիշատակված է ԺԷ դարից։

— 1. Խըրմըզ, կին Մեսրոպ քահանայի, մայր Յովհաննէս երեցի (գրիչ), Բալուի Աւխվա գյուղում, 1692 թ.—Տաշեան, Ցուց. 662.

— 2. Խրմզ, կին Թումասի և մայր Ոսկիկի՝ Չմշկածագի Հաղթուկ գյուղում. թվականն անհայտ.—Թորոս աղբ. Բ. 361։

— Ղրմզ մր. հիշված է 1781 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 10 բ։

***ԽՐՄՊԷ**, ար. < Խրիմ թերակղզու անունից + թրք. بی bey «բէկ» և պետք է հասկանալ «Խրիմի բէկ»։ Մի անգամ հիշված է՝

— 1. Խրմպէ, հայր Սիմոն տաղասացի (ԺԷ դար).—տես անդ։

# Ծ

ԾԱԼՄԷԼԻՔ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578)։

ԾԱԼՎԱՑ, ար. ծագումն ինձ անհայտ. անսովոր անուն. հիշված է մի անգամ ԺԳ դարում։

— Ծալվայ վարդապետ, Արևելքից գնացել է Երուսաղէմ և Լևոն Բ թագավորի ու Յակոբ կաթուղիկոսի ծախսով սալել է Ս. Յակոբեանց վանքի գավիթը և պարսպել Հրեշտակապետը՝ 1286 թ. (ավելին տես այս հատորում, էջ 420)։

† ԾԱԾՈՒՐ, ար. < հյ. Աստուածատուր անվան կրճատումն է, որ ձևացել է անցնելով Ծստուր ձևից։ Ծատուր ձևը հիշատակված է առաջին անգամ 1343 թ. բայց Տատուր ձևը 1335 թվից է։ Շատ անսովոր է Ծածուր ձևը, որ գտնում եմ հիշատակված միայն երկու անգամ։

— 1. Ծածուր, կրոնավոր, մերձավոր Ստեփաննոսի, որ ստացավ մի ժողովածու, 1360 թ.—Քօսեան. Հայք ի Զմիւռնիա, Բ. 83։

— 2. Ծածուր անունը երկրորդ անգամ հիշատակված է Թորոս աղբ. Բ. 335՝ սեռ. Ծածրոյ ձևով (առանց թվականի)։

† ԾԱՂԻԿ, ար. և իգ. < հյ. ծաղիկ բառից, ինչպես կան թրք. Չիչաք և լտ. փլորա հոմանիշները, երկուսն էլ իգական անուններ։

— 1. Ծաղիկ, որդի Ջուանշիր իշխանի Սիւնեաց և հայր Ջուանշիրի, Վահանի, Վասակի, Փարաջի (906 և 925 թվերին հիշված).—Justi 328 բ։

— Ավելի ուշ դառնում է իգական. այսպես 1587 թ. (Տաշեան, Ցուց. 319), 1609 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 98 բ), 1627 թ. (Ձեռ. Վասպ. 874)։ Գործածական է նաև այժմ։ Հնից ունինք փաղաքշական Ծաղկօ (կոչական ձևը), որ հիշատակված է 1809 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 46 բ)։

† ԾԱՂԿԱՆՑ, սեռն անհայտ. < հյ. ծաղիկ բառի յգ. սեռականից։ Հիշատակված է երկու անգամ. այն է՝

— 1. Ծաղկանց (սեռական հոլովը դրված է Ծաղկանցի), մերձավոր Վարդէ քահանայի, թերևս կինն է Աւետիքի և հիշված է Սեբաստիայում, 1193 թ.—Ձեռ. Վասպ. 80։

— 2. Ծաղկանց, թվի իգական, հիշված է 1224 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Բ. 36)։

† ԾԱՂԿԻՆԷ, իգ. նորակերտ անուն, որ գործածական էր Պոլսում. կազմված է հյ. ծաղիկ բառից, ավելացնելով նրա վրա -ինէ վերջավորությունը, որ հանել են Վերգինէ, Եւգինէ, Արմինէ, Ատրինէ, Քրիստինէ ևն անուններից։

† ԾԱՄ, իգ. < հյ. ծամ «մազ» բառից. անշուշտ կրճատված է Ծամեր կամ Ծամոսկի անուններից։ Հիշված է մի անգամ ԺԵ դարում։ Սրա էլ փաղաքշականն է Ծամիկ։

— Ծամ, դուստր Երկիլի և քույր Զաքարայ աբեղայի, որ Երզնկայում Յակոբ քահանայից գնեց Շարակնոցը, 1487 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

*ԾԱՄԱԼ, ար. վրաց. ծամալի «դեղ». անսովոր անուն. հիշված է մի անգամ 1611 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 222։

ԾԱՄԱԿ, ար. ծագումն անծանոթ. (Justi 328 բ համեմատում է Ζαμνάξης անվան հետ, որ է Լազ իշխան Ծաթի հոր անունը)։

— Ծամակ, նահապետ Հաշտենից. մին այն նախարարներից, որոնք ուղեկից եղան Ներսէս կաթողիկոսին («353—373 թ») Վաղէս կայսեր մոտ դեսպանության ժամանակ։—Մեսր. եր. էջ 53։

ԾԱՄԱՄ, իգ. ծագումն անհայտ։

— Ծամամ, տիրակին Մեղրիի Գրիգոր ավագերեցի, որ կանամբի լինելով հանդերձ ձեռնադրվեց Սիւնեաց եպիսկոպոս և նստավ «1148—1168 թ».—Օրբ. կբ։

† ԾԱՄԵՐ, իգ. < հյ. ծամ «մազ» բառի հոգնակիից. համառ. Վարսենիկ։ Մի անգամ հիշված է 1653 թ. (Ձեռ. Թավր. 45 բ)։

ԾԱՄԻԴԷՍ, ար. ծագումն անհայտ և անսովոր անուն։ Մի անգամ հիշատակված է ԺԲ դարում։

— Ծամիդէս Սեբաստացի, նոր նահատակ. եղբորը՝ Գոհարինէի հետ, հավատքը ուրանալով նահատակվեց «1155 թ» (տես Գոհարինէ)։—Յայսմ. յուլ. 28=Նոր վկ. 11—22.--սեռ. Ծամիդեսի՝ ճշ. 609։—Տես նաև Յաւել. Բարսեղ անվան տակ։

† ԾԱՄԻԿ, ար. և իգ. < հյ. Ծամ անվան փաղաքշականն է (տես վերը)։

— 1. Ծամիկ, տանուտեր Տարոնում. նվիրատու ձեռագրի, 1204 թ.—Հայապ. 450։

— 2. Ծամիկ, իգ. հիշված է 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 բ)։

† ԾԱՄՈՍԿԻ, իգ. < հյ. ծամ և ոսկի բառերից, այսինքն

«նա որի մազերը ոսկեգույն են, ոսկեհեր»։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես 1579 թ. (Ձեռ. Վենետ. Ա 390), 1627 թ. (Ձեռ. Վասպ. 874), 1686 թ. (անդ 967), նաև անթվական մի հիշատակարանում (Bodleian 148)։

† **ԾԱՌ**, սեռն անհայտ, բայց պետք է համարել ար. < հյ. ծառ բառից։ Գտնում եմ հիշատակված մի անգամ 1593 թ.՝ Ձեռ. Հալէպի, Ա. 194։ Սրա փաղաքշականներն են Ծառիկ և Ծառուկ։

† **ԾԱՌԱՑԻԿ**, ար. < հյ. ծառայ բառի փաղաքշականն է. հիշված է մի անգամ Տեկորի 1042 թ. մի արձանագրության տակ, իբրև փորագրիչի անունը։ Բայց հայտնի չէ թե իրապես անձնանուն է, թե «նուաստս» իմաստով խոնարհական մի ձև։—Շիրակ 135։

† **ԾԱՌԻԿ**, ար. < հյ. ծառ բառից և Ծառ անվան փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ հիշատակված 1638 թ. (Ձեռ. Վասպ. 892)։

† **ԾԱՌՈՒԿ**, ար. < հյ. ծառ բառից և Ծառ անվան փաղաքշականն է նման նախորդին, բայց ավելի շատ գործածական։ Հիշատակված է 1630 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 776), 1638 թ. (Ձեռ. Կես. սարգ. 13), 1653 թ. (Երեմ. չել. օրագր. 37), ԺԷ դար (Հայվենետ. 501, Կամենից 145, Գովրիկեան, Հայք յեղիսաբեթուպոլիս, էջ 100)։ Կենդանի է այժմ էլ Նոր-Նախիջևանում։ Սրանից է Ծառուկեան ազգանունը (Պոլիս), տես Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 242։

† **ԾԱՌՊԱՊԱ**, ար. < հյ. ծառ + պապա «հայր» բառերից։ Հիշատակված է մի անգամ առանց թվականի (տես Բիւրակն 1898, 625 բ)։

† **ԾԱՏՈՒՐ**, ար. համառոտված Աստուածատուր անունից. տես վերը, ուր դրված հնագույն հիշատակությունը 1343 թվից է։ Այստեղ կարող ենք ավելացնել նաև՝

— 1. Ծատուր, նահատակ, որի անունով կա մի խաչքար Թէոդոսիայի Ս. Գէորգ եկեղեցում, 1351 թվից։ Մեզ հայտնի չեն սրա նահատակության հանգամանքները։ — Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 37։

— 2. Ծատուր ոմն, որի հիշատակին կա մի խաչքար՝ Ղալաթիայի Ս. Լուսաւորիչ եկեղեցում, 1437 թվից.—Կիւլէսէրեան, ՀԱ. 1903, էջ 341։

† **ԾԵՐ**, ար. < հյ. ծեր «ծերունի» բառից, ակնարկությամբ Սիմէոն Ծերունու (Ղկ. Բ. 25—35)։ Սրանից է Ծերենց ազգա-

նունը, որ Գրիգոր Խլաթեցու հայրանունից է՝ 1350—1426 թ. (№ 568)։ Սրա համազորն է Հալևորակ: Հիշատակված է ԺԴ—ԺԵ. դարերում։

— 1. Ծեր, պարոն ոմն, որ հիշված է Փաշախաթունի և ուրիշների հետ՝ Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու մի խաչքարի արձանագրության մեջ, 1211 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 35։

— 2. Ծեր քահանա, գրիչ. օրինակել է Աւետարանը 1311 թ.—Ձեռ. Թաւր. 70—72։

— 3. Ծեր, հայր Ասլանի, որ Ներսէս կրոնավորին գրել տվեց Ժողովածու Ճառից Եպիփանի, Սեբաստիա 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107։

— 4. Ծեր Սեբաստացի, որդի Ասլանի, նախորդի թոռն է, որ հիշված է 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107։

— 5. Ծեր Խլաթեցի, հայրն է Գրիգոր Խլաթեցու, որ կոչվում է նաև Ծերենց և է նահատակ մատենագիր, նահատակված «1426 թ»։ Հաճախ ածական են կարծում և գրում են մանրատառ (ծեր).—տես. Ծերի՝ Մեծոփ. 41, 85.—Տաշեան, Ցուց. 543, Հայապ. 562, Նոտարք 76, Նոր վկ. 273, 275, 279, 281։

— 6. Ծեր, պապ կամ մեծ հայր տանուտեր Սատաղայի, որ Աղթամարում, Թումայ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480—481 (սխալ է գրում Պապկէն ծերին, զՊապիկն զծերն, որով պապիկ հասարակ անունը (մեծ հայր) դառնում է անձնանուն, իսկ Ծեր անձնանունը դառնում է հասարակ անուն (ածական)։ Պետք է դնել ճիշտ հակառակը, ինչպես ցույց է տալիս էջ 481՝ «տանուտէրն զԾերենց Սադաղէն» կոչումը)։

— 7. Ծեր նահատակ, հիշված է Արցախ 158 > Նոր վկ. 692. Թվականը հայտնի չէ։

ԾԵՐԹԱ, ար. ձեն անստույգ և ծագումն անհայտ։ Հիշատակված կա միայն՝

— Ծերթա?, միաբան Աստուածընկալ ուխտի, 1207 թ.— Այրարատ 255, Շահխաթ. Բ. 171, Բանաս. 1903, 31։

† ԾԵՐԻԿ, ար. < հյ. ծեր բառից և Ծեր անվան փաղաքշականն է։ Մի անգամ ունինք՝

— Ծերիկ, երեսփոխան Սուչավայի 1628 թ. — Տաշեան, Ցուց. 708=Կամենից 181, ՀԱ 1890, 20 ա։

†**ԾԵՐՈՒԿ**, *ար. < հյ.* ծեր *բառի և հատկապէս* Ծեր *անվան փաղաքշականն է։*

— 1. Ծերուկ, *գրիչ. օրինակել է մի Ժողովածու՝ Կտուց անապատում* 1316 *թ.—Ձեռ. Կարին.* 37 *(նույնը Նոտարք* 47 *դնում է* 1415 *թ)։*

— 2. Ծերուկ, *Սեբաստիայի Խաւիկոն գյուղում, որդի Նորպարոնի,* 1564 *թ.—Տաշեան, Ցուց.* 848։

— 3. Ծերուկ *հիշված է նաև* 1630 *թ. (Ձեռ. Վիեննա. Ա. էջ* 777).

†**ԾԵՐՈՒՆ**, *ար. < հյ.* ծերունի *բառից, ակնարկությամբ Սիմէոն ծերունու (տես վերը Ծեր)։ Հիշատակվում է ԺԳ դարից սկսած։*

— 1. Ծերուն *կրոնավոր, Թվի միաբան Մաշկևոր վանուց, Գրիգոր կրոնավորին գրել տվեց մի Աւետարան,* 1269 *թ.—Ձեռ. Վիեննա. Ա.* 495։

— 2. Ծերուն *քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը, Յովհաննէս քահանայի համար, Սուրբ Մարի (=Սուրմալու) քաղաքում,* 1296 *թ.—Ձեռ. Վասպ.* 122։

— 3. Ծերուն, *ծաղկեց մի Աւետարան,* 1308 *թ.—Ձեռ. Դաղեան, Բ.* 36 *ա (ուր կա նաև իր գեղեցիկ նկարը) և* 46 *բ։*

— 4. Ծերուն, *որդի Յովհան քահանայի և եղբայր Ստեփանոս քահանայի, որ իր որդի Մխիթար սարկավագին սկսեց օրինակել տալ Աւետարանը։ Մխիթարի մահից հետո, նույնը շարունակեց Գրիգոր երեցը և վերջացրեց Սարգիս քահանան* 1326 *թ.*—Rapport Belgique 85։

— 5. Ծերուն *քահանա, հայր Խաչատուր սարկավագի, որ կազմեց այն Աւետարանը, որ օրինակել էր Սարգիս քահանան, Սիս* 1336 *թ.—Ձեռ. Վասպ.* 185։

— 6. Ծերուն *վարդապետ, միաբան Հերմոնի վանից. իր մոտ գտնվեց Կիւրղի Պարապմանց գիրքը, որ օրինակեց Յովհաննէս վարդապետը,* 1391 *թ.*—Bodleian 160։

— 7. Ծերուն *քահանա, գրիչ. օրինակել է մի Ճառընտիր, Ոստան քաղաքում,* 1401 *թ.—Նոտարք* 13։

— 8. Ծերուն *քահանա, գրել տվեց մի Աւետարան Ստեփաննոս քահանային,* 1420 *թ.—Նոտարք* 62—63։

— 9. Ծերուն, *որդի պարոն Դամուրի, որ էր տանուտեր Արծկէի* 1428 *թ.—Տաշեան, Ցուց.* 583։

— 10. Ծերուն, *քեռորդի Թովմա Մեծոփեցի պատմագրի։ Երբ Աղուբ բէգի առաջ քննվում էր Կիրակոս Վիրապեցու և նրա հակառակորդ Գրիգոր Մակուեցու դատը, նույն տեղում ներկա էին նաև Թովմա Մեծոփեցին և այս Ծերունը։ Այս վերջինը երիտասարդական տաքությամբ չկարողանալով համբերել հակառակորդների զրպարտության, բարձր ձայնով ասաց. «Սոքա ամենեքեան անհաւատ գոլով և սուտխօս քրիստոնեայք, ոչ են ճըշմարիտ, այլ խաբեբայք»։ Հակառակորդների տված կաշառքը վճռեց գործը և Վիրապեցին ընկավ (1443 թ)։—Մեծոփ. յիշ. գ. Արրտ. 1914, 77։*

— 11. Ծերուն *կրոնավոր կամ աբեղա, որդի Կիրակոսի և հերպետ Ս. Վարդան զորավար մենաստանի, եղբայր Ղուզեկ Թովմա Գաւաշեցի վաճառականի։ Մինասենց Թումայի քեռորդի Հայրապետ աբեղային գրել տվին Աղթամարում մի Աւետարան, որ նվիրեցին Գաւաշ գյուղի Ամենափրկիչ և Ս. Կիրակոս եկեղեցուն, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 386—394, Նոտարք 45—46 և 133։*

— 12. Ծերուն, *հայր Սուլթան մելէքի, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Ոստանի եկեղեցուն, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413։*

— 13. Ծերուն, *հօրեղբօրորդի Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։*

— 14. Ծերուն *աբեղա, միաբան Տրապիզոնի Վերի Ս. Աստուածածին վանքի, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 190։*

— 15. Ծերուն *կրոնավոր, հիշված է իր միաբանակիցների հետ, բայց տեղն անհայտ, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։*

— 16. Ծերուն, *հայր Յովհաննէս կրոնավորի, որ գնեց մի հին Շարակնոց և նորոգել տվեց 1465 թ.*—Rapport Belgique, *էջ 145։*

— 17. Ծերուն *աղա, մեծ հայր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբար, Ա. 232, Բ. 337։*

— *Ավելի ուշ հիշատակություններ են* Ծերուն *1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 233 ա), 1604 թ. (անդ 225—6), անթվական՝ Ծերունի քահանա (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 520), Ծերուն (Ձեռ. Թաւր. 74 ա և Ձեռ. Վասպ. 96, 328)։ Իսկ Նոտարք 85 հիշված հին վարդապետ Ծերունը անշուշտ Գրիգոր Ծերենցն է։*

†**ԾԵՐՕՆ**, *ար.* < *հյ.* ծեր *բառից և վերի* Ծերուն *անվան*

տարբերակն է. ըստ այսմ գրված է Ծերոն, բայց այժմ համարվելով կազմված -օն մասնիկով՝ գործածում են Ծերօն ձևով։ Կենդանի է դեռ Պոլսում և Նոր-Նախիջևանում։

1. Ծերոն սարկավագ, ազգական Յովհաննէս քահանայի, որ Թովմա Մեծոփեցի պատմագրի եղբորորդին էր և Արճէշում, ծերունի Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1445 թ.—Նոտարք 147։

— 2. Ծերոն ոմն, հիշված է Բիւրականում 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 3. Ծերոն տիրացու, որդի Տէր Գրիգորի, ստացող 1720 թ.—Տաշեան, Ցուց. 688։

† ԾԻԱԾԱՆ, իգ. < հյ. ծիածան բառից նորակերտ անսովոր անուն. գտնում եմ հիշված Սովետ. Հայաստ. 1945 թ. մարտի 8, էջ 2։

ԾԻԹՎԱՍԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Ծիթվասան, որդի Արաս արքայի. իր կնոջ Ռուսուդանի հետ միասին գնեց բազմաթիվ կալվածներ և նվիրեց Հաղբատի Ս. Նշանին, 996 թ։—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. էջ 23։

— 2. Ծիթվասան, որդի Գարբանիէլի, եղբայր Վաչէի և եղբորորդի Հաղբատի Յովհաննէս եպիսկոպոսի, նվերներ է արել Հաղբատի վանքին 1278 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. էջ 31։

— 3. Ծիթվասան, որդի Հասանի Արմանեանց, եղբայր Վաչէի, նվերներ է արել Հաղբատի վանքին՝ Յովհաննէս եպիսկոպոսի ժամանակ։ Թվականն անհայտ։ (Թեև սա էլ եղբայր է Վաչէի, բայց նույն չէ նախորդի հետ, որովհետև տարբեր անձանց որդիք են)։—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 39։

— 4. Ծիթվասան, որի տապանաքարը գտնվում է Հաղբատի մեծ տաճարի ժամատնում։ Թվականը նշանակված չլինելով՝ հայտնի չէ թէ ով է այս Ծիթվասանը։ Ըստ երևույթին Արաս արքայի որդի Ծիթվասանի դամբանն է (№ 1)։

ԾԻԼԻՊ, ար. ծագումն անհայտ։

— Ծիլիպ սուրբ, աշակերտ Քահալցիցիկի, աղուան ազգից. նահատակվել է 100 թվին. իր անունով կա ուխտատեղի Շամախու Նորշէն գյուղի մոտ.—Սմբատեանց՝ Սաղիան 29, 188։

† ԾԻԾԱՌՆԻԿ, ար. < հյ. ծիծառն բառից։

— Ծիծառնիկ Տարօնեցի. շինել է Տարօնում Ծիծառն ա-

վանը. ապա Գլակայ վանքից Խաչի մասունքը գողանալով՝ տարավ Շատախ, ուր հիմնեց Ծիծառնավանքը՝ «659 թ».—Մամիկ. 54, 55։

**ԾՂՈՒԿ**, ար. Թվի թե սարքված է Ծղուկ գավառի անունից՝

— Ծղուկ, գավառապետ ոմն, որի անունով կոչվեց Սիւնեաց Ծղուկ գավառը.—բց. ի Ծղկայ՝ Օրբ. բ։

† **ԾՈՎ**, սեռն անհայտ. բայց անշուշտ իգ. կրճատված է Ծովակ կամ Ծովիկ անունից, որ տես։ Հիշված է մի անգամ 1718 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 28 բ։ Համտ. Ծովխաթուն։

† **ԾՈՎԱԿ**, իգ. < հյ. ծով բառի փաղաքշականից. համաշորներից համտ. զնդ. Zrayanha և լտ. Marinus անձնանունները, որոնք նշանակում են բուն «ծովային». նաև արաբ. بحر bahr «ծով», բայց և անձնանուն (Կամուս, Թրք. Թրգմ. Ա. 757), տես և Բահրի, Բահրխաթուն, Բահրիխան, Բահրիկ, Բահրիէ, Բահրիսուլթան. նաև Թրք. تكيز خان Tengiz xan ցեղապետ Սելճուքեանց, Հուլաղուի պապը (Իբն-ի Բատուտա, Գ. 22 և 105), որ բուն նշանակում է «ծով»։ Տես և հաջորդը։

— Ծովակ տիկին, «աստուածասէր և բարեպաշտ», Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Կղաւտոյ գավառում, Տալշայ վանքում, 1018 թ.—Ձեռ. Վասպ. 76։

† **ԾՈՎԻԿ**, իգ. < հյ. ծով բառից. համտ. Ծովակ: Կենդանի է այժմ և կոչականն է Ծովի՛ Ղրբ։

— Ծովիկ, «հիւրընկալ և աղքատասէր» ամուսին պարոն Յովհաննէսի, որ ստացավ 1316 թվին գրված մի Աւետարան՝ 1410 թվին?—Ձեռ. Վասպ. 164։

† **ԾՈՎԻՆԱՐ**, իգ. ∧ հյ. գւռ. ծովինար «փայլակ» բառից, որ թերևս կազմված է հյ. ծով+արաբ. نار nār «հուր. կրակ» բառերից։ Գործածված է ժԶ—ժԷ դարերում և այժմ էլ կենդանի է. կրճատ ձևն է Ծովօ (տես Սովետ. Հյստ. 1945 թ. մարտի 31, էջ բ)։ Հնագույն հիշատակությունները են 1509 թ. (Ձեռ. Վասպ. 640), 1582 թ. (Ձեռ. Վասպ. 698), 1587 թ. (Տաշեան, Ցուց. 319), 1602 թ. (Ձեռ. Վասպ. 808), 1647 թ. (անդ 601), 1651 թ. (անդ 200), 1664 թ. (Ձեռ. Սեբ=ՀԱ 1926, 551), 1698 թ. (Ձեռ. Վասպ. էջ 987)։

† **ԾՈՎԽԱԹՈՒՆ**, իգ. < հյ. Ծով անունից+խաթուն «տիկին»։ Հիշատակված է մի անգամ Ձեռ. Հալէպի, Ա, 358 բ, անհայտ թվականով։

†ԾՈՑԻԿ, ար. < հյ. ծոց բառի փաղաքշականից. հիշված եմ գտնում մի անգամ 1638 թ. Manus. bibl. nat. 35։ Սրանից է Ծոցիկեան ազգանունը, որ կա այժմ։

ԾՈՒՊՈՒԼ, ար. ծագումն անհայտ. բայց անունն է թե մականուն. մեկ անգամ հիշված է անհարմար ձևով՝

— «Սիմէաւն Ծուպուլիս որդիս», որ մի այգի է նվիրել Հմբատայ վանքին։ Թվականն անհայտ։—Շիրակ 164 ա։

# Կ

*ԿԱԴՄՈՍ, ար. < ասորական ծագումից. հմմտ. Κάδμος Փյունիկեցին, որ համարվում է Թեբէի հիմնադիրը. փյունիկեան այբուբենը մտցրեց Հունաստան. նաև արաբ. قدموس qudmūs «վազեմի և մեծանուն թագավոր» (հասարակ անուն, ըստ Կամուս, Թրք. Թրգմ. Բ. 274)։ Ունինք միայն մի անգամ հիշատակված՝

— Կադմոս Հայկազն, որդի Արմենակի և թոռն Հայկի, որ նշանակեց նրան իր առաջին կալվածների վրա իշխան։—Խոր. Ա. ժա. Սեբ. ա. Շնորհ. վիպ. 119.—սեռ. Կադմեայ՝ Խոր. Ա. ժ—ժբ. Սեբ. ա. Սամ. անեց. 41, 48.—Կադմեայ տուն՝ Խոր. Ա. ժգ. Ասող. Ա. ե.—Կադմեայ ցեղ՝ Խոր. Բ. ը.—Կադմեան՝ Օրբ. գ. Մագ. Թղ. ձգ.—Կադմեանք՝ Խոր. Բ. գ. Մեսր. եր. 33.—տր. Կադմայ՝ Ուխտ. Ա. ժե (երկիցս)։

ԿԱԶԵՐ, ար. ծագումն ինձ անհայտ. հմմտ. հաջորդը՝

— 1. Կազեր, որդի Սուկաւի, իր մոր՝ Մամիկի հետ երկուսուն նվիրեց Հոռոմոսի վանքին, 1231 թ.—Շիրակ 21 ա։

— 2. Կազեր, որդի Մեւոնի, մի խաչքար է կանգնեցրել իր ծնողների և իր նահատակ եղբոր՝ Սարգսի հիշատակին, Անիի մոտիկ Անի գյուղում (Թվականն անհայտ, ԺԴ դար)։—Արձ. Շիրակ 34, Նոր վկ. 135, Ազգագ. 1920։

ԿԱԶՈՒՐ, ար. ծագումն ինձ անհայտ. հմմտ. նախորդը։

— Կազուր մանկատաւագ, օգնեց Գրիգոր գրչին՝ արտագրելու համար Տօնականը, Կաֆա քաղաքում, 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511.

ԿԱԼԱԶ, ար. ծագումն ինձ անհայտ. ունինք միայն՝

— Կեալեազ, պարոն Փիլիպպոպոլսեցի (Ռումելի). Խաչատուր տիրացուին օրինակել տվեց Քարոզգիրքը, 1676 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 47 բ։

*ԿԱԼԻ, իգ. < ն.հուն. καλή «գեղեցիկ (իգական)» ձևից. տես և Կալի-Մարիա։

— Կալի *թագուհի Հայոց, պահակալեց Արմենագոսից հետո (Է դար)․ շինեց իր անունով Կալի Կալա (Կալիի բերդ) քաղաքը, որ է Կարին։—Իբն-Խալլիքան 69 (առասպել)։*

*ԿԱԼԻ-ՄԱՐԻԱ, իգ. < ն. հուն. καλή «գեղեցիկ» (իգական) +Μαρία «Մարիամ» անունից։

— 1. Կալի-Մարիա, *Մամիկոնեան ցեղից, թոռն նշանավոր զորավար Մանուէլ Մամիկոնեանի, դուստր Մարինոսի, քույր Վարդ Մամիկոնեանի և Թէոդորա նշանավոր կայսրուհու (†867) Հունաց, որի կյանքը տես Թէոդորա № 1։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 374։*

— 2. Կալամառի, *գոնդէս Ճաֆուն և Ռամլոյ, այսինքն կոմսուհի Յոպպէի և Ռամլայի։ Կոստանդին Թագավորահոր աղջիկն էր և քույր Հեթում Ա թագավորի և Սմբատ գունդստաբլի։ Ամուսնացավ Յոպպէի կոմս Յովհաննէս Իպլինեանի հետ։ Բուն անունն էր Մարիամ և այս ամուսնությունից հետո կոչվեց Կեռա-Մարի կամ Կալա-Մարի* (Marie countesse de Jaffe): *Այցելության եկավ Լամբրոն, ուր և մեռավ «1263 թ» և թաղվեց Սկևռայ վանքում, թողնելով երկու տղա և երեք աղջիկ։ Տղաները (Օշին և Հեթում) թվի թե մտան Հայոց պալատը, այնպես որ Հեթումի որդին Ռեմունդ եղավ սենեսկալ Հայոց։—Սիսուան 74, 85, 102, 371. Ազգապ. 1656, 1659։ Հիշատակված է նաև Ջեռ. Վասպ. 110 (Կալամառի ձևով)։*

— 3. Կառամառի, *դուստր Վահրամ քահանայի և քույր Բարսեղ երեցորդու, որ Հալէպում գնեց մի հին Աւետարան, 1323 թ.—Ջեռ. Կեռ. ածած. 64 բ։*

*ԿԱԼԻՄԱՔՈՍ, ար. < հուն. Καλλίμαχος անունից, որ բուն նշանակում է «քաջամարտիկ» (կազմված է καλλι-«լավ, քաջ»+μάχομαι «կռվել» բառերից)։ Այս անունով հայտնի են Աթենացի մի զորավար Մարաթոնի ճակատամարտում, մի նշանավոր բանաստեղծ և ուրիշներ։

— Կալիմաքոս *զորավար Տիգրան Մեծի, հրամանատար Մծբինի․ հաղթվեց և անձնատուր եղավ Լուկուլլոսին (Ն. Ք. 68).—Թվի հույն.—Գրգշ. Քնն. պատմ. հայոց Բ. 150։*

*ԿԱԼԻՆԻԿԷ, իգ. < հուն. καλλίνικος «բարեհաղթ, գեղեցիկ հաղթության տանող» բառի իգականն է։ Հունարենում գործածված է նաև իբրև անձնանուն. օր. Կալինիկոս վկայ Յայս-

*մաւուրքում։ Անցյալ դարում գործածվում էր Պոլսում՝ Գալենիկ ձևով, երբև իգական անուն։ Կա նաև մի վեպ՝ «Մուշեղ և Գալենիկէ, կամ Պսակ մը յԱնջրդի» անունով, գործ Յ. Մաթևոսյանի, Մաշկերտ գյուղի կյանքից, տպ. Պոլիս 1875։*

*ԿԱԼԻՊՍԷ, *իգ. < հուն.* Καλυφώ *անունից, որ ծագում է* καλύπτω *«ծածկել, թաքցնել» բայից։ Այս անունով հայտնի է կղզերնակ մի նիմֆա, որ նավաբեկյալ Ուլիսին հյուրընկալեց իր մոտ։ Ֆենելոնի «Տելեմաք» վեպի միջոցով մտել է հայոց մեջ (Պոլիս, Վան)։ Հայերենի -է վերջավորությունը իգականի համար է։*

*ԿԱԼՈԺԱՆ, *ար. < միջ. հուն. ձև, որ նշանակում է «բարի կամ գեղեցիկն Յովհաննէս»։ Այս անունով ունինք միայն մի անձ, որ Այասի ծովային բերդի պահապանն էր (միՆապան), 1304 թ. կոչված նաև* Կալաֆան.—*Միսուան 367, 486։*

ԿԱԽԱԲԵՐ, *ար. ծագումն ինձ անհայտ։ (Կա* Կախայ *և* Կախայ *անունով մի անձ, Վերին աշխարհեցի (այն է Հյուսիսային Հայաստանից). բուն անունն է Կոստանդ-Կախ. հավատքը չուրանալով նահատակվեց Բուղայի ձեռքով, 853 թ. ըստ Արծր. Գ. Ժ։ Բայց այս անձը վրացի է և իր մասին տես Վրաց աղբ. Ա. 24—26)։*

— Կախայբեր, *հայր Քուրդի, որ կրոնավոր դարձավ և մտավ Կեչառուի վանքը՝ Յովհաննէս անունով, 1244 թ.—Արձ. Այրարատ 261։*

ԿԱԽԻԿ, *ար. Յովհաննէս Օրոտնեցու երկրորդ անունն է. տես անդ։*

ԿԱԿԱԼՕ, *ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1728 թ. Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 120)։*

ԿԱԿՈՆԻԿ, *ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է Ձեռ. Վասպ. 767 (Թվականն անհայտ. հրատարակիչը դնում է ԺԶ դար)։*

*ԿԱԿՈՍ, *ար. < կրճատված է* Կիրակոս *անունից. հնագույն վկայությունը 1321 թվից է (ըստ այսմ կասկածելի), մյուսները ԺԵ—ԺԷ դարերից։*

— 1. Կակոս, *որդի Ասոմի, որ գրել է տվել մի Ավետարան Յովհաննէս քահանային, 1321 թ. (Ձեռ. Վասպ. 168. ըստ իս այս հիշատակարանը ընդմիջարկություն է հնի մեջ և չի պատկանում 1321 թվին)։*

— *Մնացյալ հիշատակությունները են՝ Կակոս 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634), 1588 թ. (անդ 706), 1591 թ. (անդ 719),*

1648 թ. (անդ 909)։ Անթվական են Կակոս (անդ 550) և Կոկո (անդ 780)։

**ԿԱՄԱՐԱՑ**, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Կամարայ, ազնվական կին Թոնդրակեցի, քույր Ախնիի, քարոզչուհի նույն աղանդի (ԺԱ դար).—Լաստ. իգ։

**ԿԱՄԱՐՍԱՆ**, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գըտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Կամարսան, Սուչավացի հայ, որ կնոջ՝ Սգանայի հետ մի տուն կտակեց Մոլտովիցա վանքին, 1448 թ.—Տաշ, Արեել-հայք 14։

**ԿԱՄՈՎԷՂ**, ար. ծագումն անհայտ։ (Գաթրճեան առաջարկել է կարդալ Սամուէլ՝ ՀԱ 1937, 520)։ Մի անգամ ունենք՝

— Կամովէղ, վանքերեց Հոփփսիմէի. սրա օրով եղավ վանքի նորոգությունը՝ Կոմիտաս կաթողիկոսի ձեռքով (618 թ).—սեռ. Կամովէղի՝ Եզն. եր. 268։

*__ԿԱՄՍԱՐ__, ար. < ըստ Խոր. Բ. ձէ ծագում է պրս. کم kam «պակաս»+سر sar «գլուխ» բառերից. «Պակաս գոլով բոլորութիւնն գագաթանն, անուանեցաւ Կամսար այնր աղագաւ»։ Ըստ Justi 155 ա ավելի լավ է դնել իրան. *kāmasara «ըստ կամի իշխող» բառից. հմմտ. Camisares Կարիացի, կուսակալ Կապադովկիոյ (Justi 154 բ)։

— Կամսար, որդի Պերոզամատի, պարսիկ իշխան, Տրդատի օրով գաղթեց Հայաստան (321 թ.), մկրտվեց 325 թ. և ստացավ Դրասխանակերտն ու Շիրակը։ Մկրտությունից 7 օր հետո մեռավ։ Իրանով սկսվեց Կամսարականների տոհմը։—Խոր. Բ. հզ, ձէ.—Քամսար՝ Ցհ. կթ. գ.—սեռ. Կամսարայ՝ Խոր. Բ. ձէ, գ.—Կամսարու՝ Խոր. Գ. իթ.—Զամչ. Ա. 416, Կոգեան՝ Կմսրկնները, էջ 73։

— Կամսար անունը ուրիշ անգամ գործածված չէ. այժմ վերանորոգվել է. և զարմանալի է, որ հիշված է նաև 1715 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 35 ա)։

*__ԿԱՅԻԴԽԱՆ__, իգ. < արաբ. قائد qāid «առաջնորդ, հեծյալ հրամանատար» (որոնք ավելի հարմար են արական անվան) կամ قيد qayd «կապ, հոգս»+պրս. خان xān բառերից։ Մի անգամ հիշված եմ գտնում 1659 թ. (Ձեռ. Սեաճ. 7 բ)։

† **ԿԱՅԾԱԿ**, ար. < հյ. կայծակ բառից, ինչպես կա նաև Փայլակ անունը։ Ունենք Կայծակ Գալուստ վարդապետ տաղա-

սաց (ԺԸ դար), բայց այստեղ Կայծակ անուն չէ, այլ վերադիր։ Այսպես պետք է կարծել նաև Կայծակ Տէր Ոսկի, որ հիշված է ԺԹ դարում (տես Կարապետյան, Յիշատ. Սամաթ. էջ 307)։ Իբրև անձնանուն նոր է միայն սկսել գործածվել (տես Խորհրդ. Հայաս. 1930 նոյ. 26, վերջին էջ)։ Ձևով անստույգ է Կայծուկ, ար. որ հիշված է ԺԶ դար, Ձեռ. Սանաս. 3 ա։

ԿԱՅՊԱԿ, ար. ծագումն անհայտ. (Մագ. Թղ. ԺԹ ստուգաբանում է «քըրու կապտող գըրագումս»)։ Խորենացու հնարած անուններից է։

— Կայպակ, նահապետ հայկազն, հաջորդ Յուսակի (ըստ Զամչ. Ա 92 հաջորդեց Ամբակ Բ-ին, Ն. Ք. 883 թ)։—Խոր. Ա. ԺԹ. ՅՀ. կԹ. բ. Մխ. անեց. գ. Կզկնտ. Ա. Ժե. Վրդ. է. (հրատ. Էմինի՝ Կապակ ձևով), Մագ. Թղ. ԺԹ. Սամ. անեց. 45. Մին. համզ. 10. Մխ. այրիվ. 18, 53. Շիր. քրոն. 32 (գրում է Կապակ).—Վարդան համարում է առաջին թագավոր Հայկազանց՝ շփոթելով Պարույրի հետ։

ԿԱՆԱՆ, սեռն ու ծագումն անհայտ. մի անգամ հիշված է Զովդարի կամ Հարց-հանգիստի (Գանձակ) մի խաչքարի արձանագրության մեջ՝ 1155 թ. (արձանագրողն է Մարգարիտ դուստր Ուխտիկի, ի հիշատակ Զարդմբերի, Զարտագունի, Մխիթարի և Կանանի)։—Արցախ 292, Ազգագր. հանդ. Ե. 310։

† ԿԱՆԱՆՑ, իգ. < հյ. կանանց ձևից, որ կին բառի յգ. սեռ. հոլովն է։ Ամբողջական ձևն է Կանանցտիկին, որ մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակության մեջ, որ սակայն 1311 թվից ուշ է (Ձեռ. Թաւր. 73 ա)։ Սրանից կըրճատված է՝

— Կանանց, դուստր Սոսթենէսի, կին Թէոդոսի, քույր Սարգիս և Վարդան քահանաների, որոնք Կապոսի վանքում (Երզնկա) գրել տվին Տօնականը՝ 1230 թ.—Ձեռ. Վենետ. 1214։

† ԿԱՆԱՉ, ար. < հյ. կանաչ բառից, իբրև նշան թարմության և կենդանության։ Գործածված եմ գտնում երկու անգամ, առաջինը ԺԳ դարում, երկրորդը ԺԷ դարում։ Երրորդը անթվական է։ Կենդանի է այժմ Կիպրոսում։

— 1. Կանանչ, որդի..... (հոր անունը հիշված է շատ աղավաղ ձևով՝ «Գորնդ ըխաբ մէրաէքս»), որ շինել է Լոռիի Օձուն գյուղի ագբյուրն ու ջրանցքը, ջուր է բերել, ինչպես և շինել մի հոգետուն՝ ի հիշատակ իր որդի Կանանչի, և Շահնշահ սպասա-

լարի, 1228 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 82 > Տաշեան, Ցուց. 984 բ։

— 2. Կաճաճչ, նշանավոր բժիշկ, որ ապրում էր Հալէպում և մեռել է 1648 թ. այնպես նշանավոր էր, որ հեռու տեղերից գալիս էին իր մոտ բժշկություն գտնելու համար։ Իր գովասանքը գտնում ենք հետևյալ համառոտ հիշատակության մեջ. «Թվին ՌՂԷ (=1648), ես անարժան Յովհան երեցս եկի ի Հալապ վասն ոտիցս տկարութեան համար ի վարպետ Կաճաճչին մօտն և այսմ ամի առ Աստուած փոխեցաւ. Քրիստոս իւր հոգուն ողորմի ասացէք. խիստ լօ (լաւ) վարպետ մարդ էր և ես շուար մնացի և չի գտայ նմին նման (տպ. նմայ). և եմ բնական Սեբաստացի և եմ Սիմէոն կաթողիկոսին եղբօր որդին և ինքն է սնուցեր զիս»։ (Այս Սիմէոնը անշուշտ էջմիածնի Սիմէոն կաթուղիկոս Երևանցին չէ, որ գահակալեց 1763—1780 թ. ոչ էլ Սսոյ Սիմէոն Ա. Ուռնեցի կաթուղիկոսը, որ նստել է 1539—1545 թ. այլ Սիմէոն Բ. Սեբաստացի, որ Սսոյ կաթուղիկոս էր 1633—1648 թ)։—Ձեռ. Հալէպի, Ա. 77, նույնը կրկնված էջ 91։

— 3. Կաճաճչ հիշված է նաև Եղուարդի Ս. Նշան եկեղեցու դռան մի կողմը՝ առանց թվականի և մյուս կողմն էլ գրված է Յուսամին է։—Բանաս. 1903, 30։

Կաչաղակ տես Կեչեղակ։

† **ԿԱՊՈՅՏ**, ար. < հյ. կապոյտ բառից. հմմտ. Դեղին, Կաճաչ, Կարմիր և Սևուկ անունները, որոնք բոլոր ներկայացնում են զանազան գույներ։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։

— Կապոյտ, որդի Անդրէասի և եղբայր Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Ավետարան, 1431 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 663։

**ԿԱՊՈՅՏԻՐՈՑ**, ար. հայտնի է հյ. Տիրոց անունը. բայց ի՞նչ է Կապոյ—թերևս ամբողջը հունական աղավաղ մի բառ լինի։

— Կապոյտիրոց, կոմս և իշխան Հայոց, նշանակվեց Յուստինիանոս Բ-ի կողմից 689 թ.—Ասող. Բ. բ։

**ԿԱՊՈՍ**, ար. < ըստ Հայապ. 334 համառոտված է Պողիկարպոս անունից (իսկ ըստ Ջամչ. Բ. 998 Կարապետ անունից)։

— Կապոս, թիկնապահ Թոռնիկ իշխանի Սասնոյ՝ Փիլառտոսի դեմ մղած պատերազմում, 1072 թ.—Ուռհ. 205։

† **ԿԱՊՈՒՏԻԿ**, ար. < հյ. կապույտ բառից, որ նաև անձնանուն է։ Հմմտ. պրս. کبوده Kabūda, Թուրանցի մի քաջի անունը (Շահն. 2, 518)։ Սրանից է Կապուտիկեան ազգանունը։

— Կաղուտիկ վարդապետ, ունի «Դրուատումն իմաստութեան» համառոտ գրվածքը. ժամանակն անհայտ է.—Զարբ. Հին դպր. 784։

*ԿԱՏԱ, իգ. < կրճատումն է Կատարինէ անվան (ըստ Զամչ. Գ. 46 և Հայապ. 394)։ Հիշատակված է ԺԱ—ԺԳ դարերում։

— 1. Կատա, թագուհի հայոց. կին Գագիկ Ա թագավորի Բագրատունեաց. այս ձևով հիշված է Մարիամ Ափխազաց և Հայոց թագուհու (որ նույն Կատայի թոռն էր) Մարմաշէնում թողած անթվական մի արձանագրության մեջ, որով Տարուս գյուղը նվիրում է վանքին։—Շիրակ 149։

— 2. Կատայ, դուստր Աղուանից Սևադայ թագավորի և քույր Շահանդուխտ թագուհու, որի հետ միասին շինել են Ս. Աստուածածինը (Վահանայ վանք, Զորք գավառում, Կապանի մոտ), 1086 թ։ Սիւնեաց Սենեքերիմ Ա թագավորի քույրն է.—Արձ. Սիսական 296.—սեռ. Կատայի՝ Օրբ. ծթ.—բց. ի Կայտայէ՝ Օրբ. խդ.

— 3. Կատայ, մեծ մայր (տատ) Փատլուն Բ ամիրայի Անւոյ, Բագրատունի ցեղից (ԺԱ դար).—Վրդ. հա։

— 4. Կատա Բագրատունի, կին նույն Փատլուն ամիրայի Անւոյ?—Շիրակ 98 ա։

— 5. Կատա, դուստր Սիւնեաց Սենեքերիմ թագավորի, քույր Գրիգորի, Սմբատի և Սևադայի, որոնցից առաջին երկուսը մեռան 1166 թ.—Սիսական 16 բ։

— 6. Կատա, դուստր Վիգէնի իշխանին Սասնոյ և քույր Զօրտուանէլի Գ. ամուսնացավ հռչակյալ Կատակալոս զորավարի թոռ Շահինշահի հետ և հարս գնաց Դեգեաց գավառի Սաղուկ ամրոցը՝ Վաղամեռիկ եղավ 1166 թ։ Իր հիշատակին մայրը Մելքսեթի, որ Մոկաց Հմայեակ իշխանի դուստրն էր, Արիստակէս գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1169 թ։ Ննջեցեալի նկարը իր նորածին երկվորյակի հետ՝ գտնվում է նույն ձեռագրի վերջին էջում.—Թորոս աղբ. Բ. 309—318. Ճանիկեան՝ Հնութ. Ակնայ 77, Հայապ. 394—5։

— 7. Կատայ, դուստր Գրիգոր Բ (†1166) թագավորի Բաղաց, կին Հասան իշխանի Սակռեանց Խաչենեցւոյ։ Գրիգորը արու զավակ չունենալով՝ Բաղաց իշխանությունը թողեց Հասանին։ Երբ թուրքերը արշավեցին Բաղաբերդի վրա, նախ քան բերդի գրավումը Հասանը իր կնոջ Կատայի հետ փախավ Խաչեն (1170

թ).—Օրբ. կ, Սիսական 16 բ, 295 ր, Յովսէփեան՝ Խաղբակեանք, էջ 80։

— 8. Կատա, կին Ռոմանոսի, մայր Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշէնի նշանավոր Աւետարանը. 1211 թ.— Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 42։

— 9. Կատա, հիշված է Հայրավանքի մի արձանագրության մեջ, իբրև պատարագ ստացող 1211 թ.—Սիսական 40։

— 10. Կատա, ազգական Յովհաննէս քահանայի՝ որդւոյ կատանգի Հոռմեանց. հիշված է Արջոյ առիճի 1213 թվի և Բագնայրի 1215 թվի արձանագրությանց մեջ, իբրև պատարագ ստացող։—Շիրակ 122 և 121 (մի անգամ հիշված է Կատայ ձևով և մի անգամ Կատար)։

— 11. Կատա, կին Սարգսի և մայր Վաչէի, որ իր կնոջ՝ Մամախաթունի հետ նվերներ է արել Հաղբատին և պատարագ ստացել իր գերդաստանի համար, 1220 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 26։

— 12. Կատա, կին Սմբատի, որ Խաչենի Քարագլուխ գյուղում մի խաչքար է կանգնեցրել իրենց հիշատակին, 1253 թ.— Արցախ. 166։

— Կատա անունը հիշված է նաև Բագնայրի (Շիրակ 122) և Գոշավանքի (Արցախ 352, Ազգագր. հանդ. Ժ. 32) երկու արձանագրությանց մեջ, առանց թվականի։

† ԿԱՏԱՐԵԱԼ, իգ. իբր թարգմ. Թամամ անվան. տես Թամամ Շաղկերտցի (№ 9)։

* ԿԱՏԱՐԻՆԷ, իգ. եվրոպական անուն է. հմմտ. ֆրանս. Catherine, գերմ. Katharina, Kätchen, անգլ. Catharine, Kate, ռուս. Екатерина, փղքր. Катя, Катенька են. բոլորի արմատն է հուն. καθαρός, καθαρά «մաքուր», որից էլ թարգմանաբար ունենք հյ. Մաքրուհի: Այժմ գործածական է մեր մեջ Կատարինէ, Կատար, ռուսաձև Կատիա, Կատուշ ձևերով։ Հնագույն վկայությունը ԺԳ դարից։

— Կատարինէ, թվի կին Սիմէոնի. այս երկուսի անունով մի խաչքար կա Թէոդոսիայի Ս. Գէորգ եկեղեցում, 1301 թվից.— Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 37։

— Ավելի ուշ է Կատարինէ 1603 թ. (Տաշեան, Ցուց. 901 և Կամենից 167)։ Անհայտ թվականով է Կատարինա (Ջեռ. Վասպ. էջ 870)։

ԿԱՏԷՆ, *վր. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ Թ դարում։*

— კატენ *Գաբեղեան, հայր Վասակ Գաբեղեանի, որ միջնորդ եղավ Գագիկ Ապումրվան Արծրունու և Մեջագետքի Համլիթ ոստիկանի դաւադրական բանակցութեան ընդդեմ Սմբատ Ա թագավորի Բագրատունեաց՝ «895 թ».—սեռ.* კატენი՝ *Սում. —Շապհ. 73։*

† ԿԱՏԻԿ, *եգ. անշուշտ կրճատ անուն է. բայց ծագումն անորոշ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1841 թ. (Ձեռ. Վասպ. 758). տես Նաւակատիք։*

ԿԱՏՐԱՄԻԴԷ, *եգ. ծագումն ինձ անհայտ. սրա կրճատ ձևն է* კატა, *որ տես առանձին։ Հիշատակված է Ժ/ԺԱ դարում։*

— კატრამიდე *Թագուհի Հայոց, դուստր Վասակ Ա Թագավորի Սիւնեաց և կին Գագիկ Ա Թագավորի Բագրատունեաց։ Շինեց և վերջացրեց Սմբատ Բ-ի հիմնարկած կաթուղիկէ եկեղեցին Անիի՝ 1011 թ.—Ասող. Գ. լ. Օրբ. ծգ, ծե.—*კატრამიდე՝ *Կիր. 50. Անանուն Ժմ. 15. Մխ. այրիվ. 72. Վրդ. խր. Առաքպոմ. 479.—*კატრამიდეს՝ *Ուռհ. 9.—*კატრამინდეს՝ *Մին. համդ. 116.—*კატარამინდე՝ *Մին. համդ. 33.—*კატრანიდე՝ *Արձ. 1001 և 1012 թ. (Շիրակ 67—70), Արձ. 1005 թ. (Ազգագր, հանդ. Ա. 43) և Արձ, 1008 թ. (Շիրակ 133).—*კატრამიდუხტ՝ *Ուռհ. 9 (մի ձեռ.)—սեռ.* კატრამიდეაჲ՝ *Սամ. անեց. 105. Օրբ. Ժմ. 12 (ըստ Վարդանի՝ դուստր Սահակ Թագավորի Սիւնեաց. բայց այսպիսի Թագավոր չկա. գուցե Վասակի երկրորդ անունն է.—ըստ Ուռհ. դուստր Վրաց Գէորգի Թագավորի. իսկ ըստ Վրաց աղբ. Բ. 38 (կոչում է* კატრანიტე*) հունաց կայսեր աղջիկն է)։*

ԿԱՐ *տես Վստասկար:*

† ԿԱՐԱՊԵՏ, *վր. < հյ.* კარაპეტ *բառից, որ նշանակում է «առաջնորդ» Թագավորի առաջից գնալով ճանապարհ բաց անող» (ակնարկութեամբ Յովհաննէս Մկրտչի, որ և կոչվում է Յովհաննէս Կարապետ։ Միայն Կարապետ տիտղոսը գործածված Յովհաննէս Մկրտչի համար՝ Ձեն. 10, 13, Կղկնտ. Բ. ձ. Շար. դբ. Լաստ. իա. Մագ. Թղ. լզ։—Ս. Կարապետի տաճարը Երուսաղէմում՝ Գիրք Թղ. ղէ (ԺԳ դար)։—Հայերենին նման է նաև հուն.* Πρόδρομος *«առաջնորդ», որ Յովհաննէս Մկրտչի վերադիրն էր և արդեն ԺԲ դարում գործածվում էր իբրև անձնանուն։ Հայտնի է օրինակ՝* თეოდორ პროდრომოს՝ *աշխարհաբար հունարենի առաջին հեղինակը (ԺԲ դար)։ Մեր մեջ Կարապետ անունը երևում*

է ԺԱ դարից և շատ գործածական է մինչև այժմ էլ։ Կրճատ ձևերն են Կարպիս, Կրպէ, Կրպօ, Կարօ, Ղրբ. կոչական Կաքի.— իբր օրինակ անձնանվան հիշված է Առաք. պատմ. 334.—հայերենից է փոխառյալ չերքեզ. Karbet՛ արական անունը։

— 1. Կարապետ արքեպիսկոպոս, առաջնորդ Վարագայ վանքի, 1111 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 8 բ։

— 2. Կարապետ, հայր Գէորգի և Կարճիկի, պապ Ստեփաննոս կաթուղիկոսի Աղուանից († 1131) և Գագիկ-Գրիգորի, որ կաթուղիկոս օծվեց Աղուանից՝ «1139 թ».—սեռ. Կարապետի՝ Կիր. ը. Հայապ. 388, Շնորհ. և պրգյ. 161։

— 3. Կարապետ, Միջագետքի գեղջուկ քահանա. Յուսիկ և Գէորգ վանեցիների հետ միասին՝ իրենց վատ վարքի համար վռնդվելով Շնորհալուց («1166—1173 թ»), երեքով Ուռհա գնացին և հայ-հոռոմ դարձան, դարձնելով իրենց հետ նաև 400 տուն հայ։—Միխ. աս. իէ (=իզ). Շնորհ. և պրգյ. 473։

— 4. Կարապետ, հոգևոր տեսուչ Հոռոմոսի վանքի, 1181 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 395, Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 15, Շիրակ 27 ա ծան։

— 5. Կարապետ եպիսկոպոս, քեռորդի Պօղոս վարդապետի. Ապրում էր Գրիգոր կաթուղիկոսի մոտ, որից և ձեռնադրվեց։ Գրել տվեց մի Աւետարան, Կիլիկիոյ Պօղոսական անապատում, 1193 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 130։

— 6. Կարապետ եպիսկոպոս Սամնեցի, փոքր մատենագիր. գրել է «Ներբողեան յաղագս վարուց և մահուան Ս. Մեսրոպայ» ճառական գրվածքը, որ տպված է Էջմիածին 1897 թ։ Հեղինակի թվականը հայտնի չէ. բայց Կարապետ անունից դատելով և ձեռագրի թվականից հետևցնելով դնում են ԺԲ դար.—սեռ. Կարապետի՝ Սամն. 13։ Ըստ Զարբ. Հին դպր. 784 իր հիշատակութիւնը և իր աշխատութիւնը գտնում ենք նշանակված Էջմիածնի № 1330 ձեռագրում, ՇԻԵ=1076 թ. ըստ հրատարակիչ Մ. վրդ. Տէր Մովսէսեանի՝ ձեռագիրը 1265—72 թվից է։

— 7. Կարապետ վարդապետ, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 8. Կարապետ, հոգևոր եղբայր Առաքել գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ Կամխի Եղիվանքում, 1203 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 420։

— 9. Կարապետ քահանա, տվեց իր Աւետարանը Առաքել

գրչին՝ օրինակելու համար Կամխի Եղիվանքում, 1203 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 420։

— 10. Կարապետ, եղբայր Գրիգոր եպիսկոպոսի, որ Յովհաննէս սարկավագ Հռոմկլայեցուն գրել տվեց մի Աւետարան, 1214 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 121։

— 11. Կարապետ, որդի Գէշի և եղբայր Յովհաննէս ավագերեցի, որ գնեց մի Ժողովածու, 1225 թ.—Շողակաթ 189։

— 12. Կարապետ, հայր Տուրուբերանի Խարձի անապատի. լավ գրիչ. հիշված է 1229 թ.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 92—3։

— 13. Կարապետ քահանա, թաթարների արշավանքի պատճառով Միջագետքից ընտանիքով գաղթեց Կիլիկիա և Լամբրոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, իր եղբորորդի Ասոռ պատանու համար, 1233 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 404, Հայաստ. 457, Սիսուան 85 ա, 96 բ։

— 14. Տէր Կարապետ, առանձնապես հիշված է Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի գրել տված Աւետարանի հիշատակարանում՝ կաթուղիկոսի գերդաստանի անդամներից հետո և Յովհաննէս գրչից առաջ, 1253 թ։—Թորոս աղբ. Բ. 359։

— 15. Կարապետ Ա. Երուսաղէմացի, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Յովհաննէսին՝ 1238—1254 թ. (ըստ Աղաւնունու)։ Արաբների խստությունը մեղմելու համար չորս անգամ Եգիպտոս գնաց և սուլթանական ֆէրմանով նորոգություններ արեց Երուսաղէմում։

— 16. Կարապետ, դրան երեց Հեթում Ա թագավորի. ուղեկից եղավ նրան «1254 թվին», Թաթարիստան՝ Մանգոյ ղանի մոտ ուղևորության ժամանակ։—Կիր. ծզ։—Սա է Կարապետ ավագերեց՝ Հայաստ. 545։

— 17. Կարապետ քահանա, որ երևի թե Յովհաննէս երեցին գրել և կազմել է տվել մի Աւետարան՝ 1261 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 18. Կարապետ քահանա, եղբայր նշանավոր կազմարար Առաքել Հնձազանդենցի, Հռոմկլայեցի. արդեն մեռած էր 1268 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 40։ Հիշված է 1274 թ՝ Ջեռ. Կես. ածած. 63 բ։

— 19. Կարապետ քահանա Սսեցի, գրիչ. օրինակել է մի Շարակնոց Սիմէոն քահանայի համար, Սսում 1269 թ.—Տաշեան, Ցուց. 446—7։

— 20. Կարապետ գրիչ. օրինակեց Աւետարանը 1272 թ.— Ձեռ. Կարին. 17։

— 21. Կարապետ, հայր Հասանի, որ էր Տարսայիճ իշխանի ազատներից մեկը և իբր վկա հիշվում է Տաթևի 1274 թվի արձանագրության մեջ.—տես. Կարապետի՝ Օրբ. կե. Manus. brit. mus. 295 ա, Սիսական 232։

— 22. Կարապետ, կազմել է մի Աստուածաշունչ 1274 թ. Կեսարիայում.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1843։

— 23. Կարապետ դպիր, որդի Թորոս ձիավորի. Սուրմ գրել տվեց Մանրուսմունքը Յակոբ գրչին, 1274 թ.—Manus. brit. mus. 85 ա։

— 24. Կարապետ քահանա, հայր Բարսեղ և Ստեփաննոս քահանաների, որոնք Մամիստայի քաղաքում, Աստուածատուր գրչին գրել տվին մի Աւետարան, 1275 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 37։

— 25. Կարապետ գրիչ. օրինակել է Ոսկեբերանի Մեկնութիւն Գործոց Առաքելոց, 1288 թ.—Ձեռ. Կարին. 160։

— 26. Կարապետ, եղբայր Դասապետ վարդապետի. միասին շինեցին Գետկայ վանից պարիսպն ու զանգակատունը՝ 1291 թ.—Արձ. (Սմբատեանց, Գեղարք. 175), Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 10, Արցախ 353, Ազգագր. հանդ. Ժ. 35։

— 27. Կարապետ քահանա, հոգևոր որդի պարոն Միխայլի, որ նրա համար Սուրմ օրինակել տվեց մի Աւետարան՝ Յովհաննէս քահանային, 1293 թ.—Թորոս աղբ. Բ. 303։

— 28. Կարապետ գրիչ, օրինակեց մի Աւետարան՝ նախ քան 1295 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1924, 515)։

— 29. Կարապետ, գրիչ. ծեր էր և աչքերի լույսը պակասած, երբ Վերին Տիւրիկի մի անապատում օրինակեց Աւետարանը 1299 թ.—Թորոս աղբ. Բ. 423։

— 30. Կարապետ քահանա Կիլիկեցի. ունեք մի օրինակ Նարեկացու Մեկնութիւն Ո՞վ է դայի և Իսիքէոսի Մեկնութիւն Յոբայ, որ տվեց ընդօրինակելու, 1299 թ.—Իսէք. յոբ. 283 յիշ. և Տաշեան, Ցուց. 548, Զարբ. Հին դպր. 548, Սիսուան 149։

— 31. Կարապետ վարդապետ, գրեց Սարգիս Շնորհալու Կաթուղիկեայց Մեկնութեան (1150 թ) յառաջաբանը, ամփոփումը, յիշատակարանը և կենսագրությունը. Թվում է թե իրենն են «Երատք պիտանի... Ամենայնի սկիզբն եմ ես» ոտանավորը (տպված է Հարանց վարքում, նաև Նոր ժող. Դ. էջ 44—54, հան-

*ված 1381 թվի մի ձեռագրից) և ուրիշ ոտանավորներ Հարանց վարուց մեջ։ ՆՀԲ (հտ. Ա, էջ 13 բ) համարում է ԺԴ—ԺԵ դարու հեղինակ. բայց պետք է դնել 1381 թվից առաջ և լավագույնը՝ ԺԲ դար։—Կրպտ. սարգ. յոջ. և Նխղր. Տաշեան, Ցուց. 1100 ա, Զամչ. Գ. 57, Զարբ. Հին դպր. 647, Հայապ. 377։*

— 32. Կարապետ *կրոնավոր, Տիրաշէնի անապատում, Ղուկաս քահանայի պատվերով օրինակեց մի Աւետարան, 1302 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։*

— 33. Կարապետ *աղեղբար (աղեղ շինող արհեստավոր), որա խանութը կից էր Սիր Սիմոնի խանութին, որ նվիրել էր Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքին, 1303 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 36։*

— 34. Կարապետ *աղա, հայր Ստեփաննոս պատանու, որ վերանորոգել է Արատէսի վանքը ՉԾԲ=1303 թ։ Սրա հետ հմմտ. մի այլ Արձ. որի համեմատ Ստեփաննոս պատանին շինեց Արատէսի վանքը՝ ՋՁԲ=1533 թ. երկուսն էլ ունի Սիսական 144 և համարում է կասկածելի։ Իրոք որ* տղա *պատանունը չի թույլ տալիս այսքան հնություն։*

— 35. Կարապետ *քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը Կիլիկիայում, 1304 թ.*—Bodleian *3։*

— 36. Կարապետ, *իբրև վկա հիշվում է Քանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Բանաս. 1903, 32, Այրարատ 298։*

— 37. Կարապետ *եպիսկոպոս Մեծկերտի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի՝ 1307 թ.—Ազգապ. 1785։*

— 38. Կարապետ *վարդապետ Մովսիսոնցի վանից, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի՝ 1307 թ.—Ազգապ. 1787։*

— 39. Կարապետ, *որդի Ամիրխանի. մայրն է Հայխաթուն. Վան քաղաքի ռէսն էր. ազատեց Աղթամարի վանքին նվիրված մի Աւետարան «անօրէնների» ձեռքից և նորից նվիրեց վանքին, 1308 թ։—Ձեռ. Վասպ. 152։*

— 40. Կարապետ *քահանա, որդի Գրիգորի (№ 403). Երզնկա քաղաքում օրինակեց մի Աւետարան 1310 թ.—Ձեռ. Վասպ. էջ 156.*

— 41. Կարապետ *գրիչ. օրինակել է Բարսեղ Կեսարացւոյ Քարոզք եկեղեցականք, 1310 թ.—Ձեռ. Կարին. 215։*

— 42. Կարապետ, *կրոնավոր, իր եղբայր Թորոս քահանայի հետ միասին, Միակնցեր վանքում, Ռստակէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1313 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 708։*

— 43. Կարապետ սարկաւագ, Մովսէս գրչի հետ միասին Եկեղեաց գաւառում. օրինակեցին Թուղթք Շնորհալւոյ և այլոց, 1313 թ.—Tübingen, էջ 73։

— 44. Կարապետ կրօնաւոր, գրիչ. Գողթնում օրինակել է ժամագիրքը ՉԿԴ=1315! (անհարիր) թվին.—Սմբատեանց՝ Երընջակ 121։

— 45. Կարապետ վարդապետ, հիշված է Դարանու դաշտի Խոռինանց գյուղում, 1317 թ.—Թորոս աղբ. Ա. 218։

— 46. Կարապետ, միաբան Փոսի վանից. Թուղթ էր կոկում Ստեփաննոս գրչի համար, որ արտագրում էր Աւետարանը, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 517)։

— 47. Կարապետ ճիշող, գրիչ. Երզնկայում օրինակել է Տիրացու քահանայի ծախսով մի Շարական, 1320 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. էջ 146—7։

— 48. Կարապետ, որդի Ներսէս քահանայի, որ Ապահունեաց Արճէ գեղակում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1321 թ.—Ձեռ. Վասպ. 167։

— 49. Կարապետ, որդի Ատոմի, որ երեւի մերձաւորն էր նախորդ Ներսէս քահանայի։—Ձեռ. Վասպ. 168։

— 50. Կարապետ քահանա, որդի Ղարաճայի. Նախիջեւանում, Յովսէփ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1324 թ.—Ձեռ. Վասպ. 170։

— 51. Կարապետ, որդի Եզդանբախշի, † 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 461)։

— 52. Կարապետ, որդի Յովհաննէսի և եղբայր Աստուածատուր երէցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 460)։

— 53. Կարապետ, որդի տանուտէր (Զ)ատար Մկրտիչի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 460)։

— 54. Կարապետ քահանա, միացած Հայրապետ քահանայի հետ՝ խնդրեցին Աստուածատուր երեցից՝ օրինակել Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 460)։

— 55. Կարապետ քահանա, «որ գծայրս ճառիցն ծաղկազարդեաց», երբ Գրիգոր գրիչը օրինակում էր Ակների վանքում Ոսկեբերանի Մեկնութիւն Մատթէի, 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 56. Կարապետ քահանա, որդի Յովաննէս քահանայի և եղբայր Հայրապետ գրչի, որ Փոսի անապատում (Կիլիկիա) օրի-

նակեց Սանդուղք աստուածային ելից, 1329 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 86 բ։

— 57. Կարապետ քահանա (մականուն վայրի), Անդրէասանց անապատում, Յովհաննէս քահանայի համար գրել է Մանրուսմունքը՝ 1331 թ.—Միսուան 150 ա։

— 58. Կարապետ կրօնավոր, գրիչ. օրինակել է Աստուածաշունչը ՉՁ=1331 թ. (տպված է ՉՁ=1331, որ պիտք է ուղղել այսպես).—Ձեռ. Կարին. 14։ Նույնը արդարև հիշված է Տաթև տարեց. 1925, 291 Կարապետ վարդապետ, գրել է Աստուածաշունչը 1331 թ. Երուսաղէմի Ս. Յակոբայ վանքում։

— 59. Կարապետ Աղթամարցի, գրիչ. Մխիթար և Սիմէոն եղբայրների համար օրինակեց Աւետարանը՝ 1332 թ.—Ձեռ. Վասպ. 182։

— 60. Կարապետ երեց. գրիչ. Երուսաղէմում, Ասլեր տիկնոջ համար գրեց մի Ճաշոց, 1333 թ.—REA 10, 56—57։

— 61. Կարապետ, հայր Պօղոս քահանայի, որ Կիլիկիայում Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1334 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 698։

— 62. Կարապետ գրիչ, համառոտել է Ամէնաւագ Դերջանցու († 1335) նահատակութեան պատմությունը, որ գրել էր Յովհաննէս վարդապետը Դերջանում, և մտցրել է Յայսմաւուրքի մեջ՝ 1335 թ. կամ ավելի ուշ։—Նոր վկ. 132—3։

— 63. Կարապետ փիլիսոփա Խարտբերդցի. ապրում էր Երուսաղէմում, 1335 թ. իրեն պատահած միջադեպի մասին տես Ներսէս Կրակացի.—Ձեռ. Վենետ. Բ. 350։

— 64. Կարապետ, հայր Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 65. Կարապետ, որդի նույն Առաքել գրչի. նախորդի թոռն է.—Ձեռ. Վասպ. 198։

— 66. Կարապետ սարկավագ, հորեղբայր նույն Առաքել գրչի.—անդ։

— 67. Կարապետ գրիչ. Սուլտանիայ քաղաքում, Գրիգոր քահանայի համար գրեց մի Աստուածաշունչ, 1341 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 94։

— 68. Կարապետ վարդապետ, օրինակեց Ժամագիրքը՝ Երուսաղէմ, 1341 թ.– Տաթև տարեց. 1925, 292։

— 69. Կարապետ վանահայր Մեծքարի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի՝ «1343 թ».—Ազգապ. 1870։

— 70. Կարապետ, առաջնորդ Cirorin (՝Ջրհորին?) վանից Կիլիկիոյ. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Միսուան 66։

— 71. Կարապետ կրօնաւոր, գրիչ. պարոն Յովանէսի առաջարկութեամբ գրեց նկարազարդ մի Աւետարան, 1344 թ.—Թորոս աղբ. Բ. 355։

— 72. Կարապետ քահանա, հայր Կիրակոս սարկավագի, որ օրինակեց Աւետարանը, Խրիմի Սուրխաթ քաղաքում, 1346 թ.—Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց մետրապոլիսը, էջ 331; ՀԱ. 1895, 304 բ։

— 73. Կարապետ, աթոռակից Երուսաղէմի Բարսեղ (№ 68) պատրիարքի. հիշված է 1349 թ. (Աղաւնունի)։

— 74. Կարապետ քահանա, որդի Թովմա քահանայի. Աղբակի Խաշնոց գյուղում, Կիրակոս քահանային օրինակել տվեց Շնորհալու գործերը 1352 թ.—Ձեռ. Թաւր. 55—56։

— 75. Կարապետ, հայր Քրիստոսատուր կրօնավորի, որ Սուրխաթում Ստեփանոս քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ։—Ցեռ. Վասպ. 7։

— 76. Կարապետ քահանա, որդի Աստուածատուրի. գրել տվեց Շնորհալու Գովեստ հրեշտակապետաց և նվիրեց Մինաս կուսակրօն քահանային, 1355 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1118։

— 77. Կարապետ, արքունի դիվանապետ (տիվան պաշի), Օշինից մինչև Կոստանդին Թագավորի ժամանակ։ Բաջբերունեաց երկրից էր. ջերմեռանդ և աղոթասէր մարդ։ Ուխտի գնաց Իտալիայի Պերուճիա քաղաքը, ուր գրել է տվել գեղեցիկ ոսկեկող մի Աւետարան, և վերադառնալով Սիս՝ նվիրել Երեքխորան Աստուածածին եկեղեցուն, 1314 թ։ Մեռել է 1356 թվին և թաղվել Սսում։—Միսուան 486, 520, 540, 548, Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի 18։

— 78. Կարապետ քահանա, Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց քերականական մի ժողովածու, 1357 թ.—Գիտական նյութերի ժղ. № 1, էջ 46 բ։

— 79. Կարապետ կրօնավոր, որդի Թովմայի. գրիչ. մահտեսի Խնդուի պատվերով գրեց մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 213։

— 80. Կարապետ, որդի Գանձիի (№ 2), և եղբայր Գրիգոր կրօնավորի, որ Երուսաղէմում Տէր Աւագ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118։

— 81. Կարապետ կրոնավոր, գրիչ. օրինակեց Աւետարանը Թանկխաթունի համար, 1358 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 563)։

— 82. Կարապետ քահանա, իր որդի Դաւիթ քահանայի հետ միասին օգնեց Երեմիա կրոնավորին՝ գրել տալու համար Զաքարիա արհորային Պատարագի Մեկնութիւնը, Անապատիկ գյուղում։ 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։

— 83. Կարապետ քահանա, որդի Սեբերի. գրել տվեց Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու՝ Նախավկայի վանքում, 1357 թ. որ ապա նվիրեց Գէորգ կրոնավորին՝ 1363 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 227, 228։

— 84. Կարապետ վարդապետ Տոսպեցի, որդի Թոմաս քահանայի. աշակերտ էր Յովհաննէս վարդապետ Արճիշեցուն. հաստատված էր Գլաձորում՝ Եսայի վարդապետի մոտ։ Գնաց առաջնորդ Երուսաղէմ և տեսնելով Ս. Փրկիչ վանքի թշվառ վիճակը, երեք անգամ գնաց Եգիպտոս և արտոնություն ձեռք բերելով Սուլթանից, նորոգեց։ Շինեց նաև ուրիշ շենքեր Երուսաղէմում։ Մեռել է նախ քան 1363 թ. (Յ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ ՅԺԹ և շար.)։

— 85. Կարապետ քահանա, եղբայր կամ մերձավոր Երուսաղէմի Ս. Փրկիչ վանքի առաջնորդ Ներսէսի, որ գրել տվեց մի Աստուածաշունչ՝ 1363 թ.—Ձեռ. Վասպ. 18։

— 86. Կարապետ աբեղա, Ոււհայում կազմեց Աբրահամ քահանայի Աւետարանը՝ 1365 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 614։

— 87. Կարապետ, ազգական Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսի, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 88. Կարապետ քահանա, որդի Խաչերեսի. Ջուրեն գյուղում (Երուսաղէ՞մ) միջնորդեց վաճառելու Ստեփաննոս երեցի գրած Ճաշոցը՝ Անպէտի որդի Սարգսին, 1371 թ.—REA 10, 57։

— 89. Կարապետ կրոնավոր, միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքի, 1371 թ.—Ակինեան, Գաղնգիրք 66։

— 90, Կարապետ կրոնավոր, որի համար Գէորգ գրիչը օրինակեց Մանրուսմունքը 1373 թ.—Ձեռ. Սանաս. 10 բ։

— 91. Կարապետ աբեղա, գրիչ. Մասարաթ գյուղում օրինակեց Գրիգոր Նարեկացու ճառերը, 1374 թ.—Manus. bibl. nat. էջ 72։

— 92. Կարապետ, որդի Մխիթար քահանայի, 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277 ա։

— 93. Կարապետ գրիչ. օրինակել է Աստուածաշունչը 1379 թ.—Ձեռ. Կարին. 14։

— 94. Կարապետ կրոնավոր, որդի Զաքարիայի, Սղկայու վանքում, Ստեփանոս կրոնավորին օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 848—851)։

— 95. Կարապետ կրոնավոր, գրիչ. օրինակել է Ժամագիրքը՝ Գողթնեաց երկրում, 1385 թ.—Ձեռ. Կարին. 36։

— 96. Կարապետ կրոնավոր Մեծոփեցի. ականատեսներից լսել էր և պատմեց Թովմա Մեծոփեցուն Լէնկթիմուրի զորքերի ընդհարումը Փիր-Հասան Թուրքմանի հետ՝ Մուշի մոտ, ուր Փիր-Հասանը իր սակավաթիվ մարդկանցով անագին ջարդ էր տվել թաթարներին «1387 թ».—Մեծոփ. 24, Ազգապ. 1974։

— 97. Կարապետ աբեղա Զուզայեցի. Երուսաղէմ ուխտի էր գնացել և նոր էր վերադարձել. Արծկէում գերի բռնվեց Լէնկթիմուրի արշավանքի ժամանակ «1387 թ», Մխիթարում էր իր գերեկից ընկերներին։ Երբ հասավ Սուլթանին, ասորիները ձեռնադրեցին նրան եպիսկոպոս Սմրղանդ գերի տարվող քրիստոնյաներին. բայց մեռավ ճանապարհին։—Մեծոփ. 28, Չմչ. Գ. 424, Ազգապ. էջ 1974։

— 98. Կարապետ կրոնավոր, եղբայր Մկրտիչ քահանայի և հորեղբայր Կարապետ գրչի, որ Աղթամարում օրինակեց Ճառընտիրը, 1389 թ. Կարապետ կրոնավորը եղել էր Կարապետ գրչի ուսուցիչը.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 99. Կարապետ որդի Մկրտիչ քահանայի. գրիչ. օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, Ստեփանոս միայնակեացի համար, 1389 թ. ձեռագրի վերջում ունի մի գեղեցիկ հիշատակարան, ուր պատմում է Լանկթամուրի արշավանքը Հայաստան.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 759--765)։

— 100. Կարապետ քահանա, եղբայր (բայց թերևս հոգևոր եղբայր կամ միաբանակից) Գէորգ երեցի (№ 101), որդւոյ Առաքել քահանայի, որ գրեց մի Ճաշոց Երզնկայում և նվիրեց Ս. Նշան եկեղեցուն։ Կարապետը այդ ժամանակ սպասավորում էր Ս. Նշանում և օգնեց ձեռագրի գրչության, 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 242։

— 101. Կարապետ քահանա, գրիչ. որդի Մկրտիչ քահանայի և եղբայր Զաքարիա կրոնավորի (№ 49), որ նմանապես նշանավոր գրիչ էր։ Աղթամարում օրինակեց Աւետարանը Թադէոս փիլիսոփայի համար, 1392 թ։—Ձեռ. Վասպ. 226—7, 230, 235։

— 102. Կարապետ կրոնավոր, ուսուցիչ վերոհիշյալ Զաքարիա կրոնավորի (№ 49) և անշուշտ նաև նրա եղբայր՝ սույն Կարապետ քահանայի, որովհետև Զաքարիան ասում է «զուսուցիչն մեր»: Արդեն մեռած էր 1393 թ.—Ձեռ. Վասպ. 229, 235։

— 103. Կարապետ կրոնավոր, գրիչ՝ օրինակեց մի Ավետարան՝ տանուտեր Մարտիրոսի և նրա եղբայր Ստեփանոսի համար, Ծպատի վանքում, 1395 թ.—Ձեռ. Վասպ. 231—2։

— 104. Կարապետ, փեսա վերոհիշյալ տանուտեր Մարտիրոսի (նրա Ղիմաթ անունով աղջկա ամուսինը պիտի լինի), 1395 թ.—Ձեռ. Վասպ. 232։

— 105. Կարապետ գրիչ. օրինակեց Կաֆայում մի ժողովածու, որ ապա կազմեց Յակոբ կրոնավորը 1396 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 136)։

— 106. Կարապետ, որդի Գիշակի (№ 4) և եղբայր Հատեի՝ կնոջ Վարդան քահանայի, որ գնեց մի Ավետարան, Երզնկայում 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 107. Կարապետ, հայրապետ Գուգարաց վանքի, հիշված 1397 թ.—Նոտարք 10։

— 108. Կարապետ Յովհաննավանեցի, յազգէ Գնձկանն, ունիթոռական. Քռնայ վանքում գրեց Գիրք առաքինութեան (ԺԴ դար).—Այրարատ 177, Սիսական 375. բ։

— 109. Կարապետ, աշակերտակից Մխիթարի. միասին սովորեցին Յովհաննէսի և Գրիգորի մոտ. իբրև նշանավոր հայր անցել է Պատարագի հիշատակության մեջ (ԺԴ դար).—սեռ. Կարապետի՝ Պորգ. 695։

— 110 . Կարապետ, հայր Թաւաքալ Հալէպցու, որ գնեց գերի ընկած մի Ավետարան, 1400 թ.—Ձեռ. Վենետ. Ա 402։

— 111. Կարապետ քահանա, որդի Դանիէլի. փոքր գնով գնեց մի Ավետարան Մարտիրոս և Թումա անուն անձերից և Թումա վարդապետին նորից կազմել տվեց, 1401 թ.—Ձեռ. Վասպ. 126։

— 112. Կարապետ վրդ. Ճագալակեր, աշակերտում էր Սիւնիքում Սարգիս († 1401 թ) վարդապետին. այնուհետև մոլորվելով դարձավ ունիթոռական. Թերևս և հաջորդեց Սամուէլին՝ իբրև գավառահայր Ջահկեցոց. ունեցավ շատ աշակերտներ (ԺԴ դարի վերջը և ԺԵ-ի սկիզբը).—Մեծոփ. 37. Չամչ. Գ. 445. Աղ-գատ. 1956։

— 113. Կարապետ քահանա, որի խնդրանոք Գրիգոր Ծլա-

թեցին օրինակեց Աւետարանը՝ Խլաթի Մատնեվանք կոչված վանքում, 1402 թ.—Բանասէր 1900 թ. էջ 100։

— 114. Կարապետ Վանեցի, նոր նահատակ. գրպարտվելով մեռած մի Թուրք աղջկա գերեզմանապղծության մեջ, չարչարանքի ենթարկվեց և հավատքը չուրանալով նահատակվեց Ոստան քաղաքում, «1403 թ»։—Յայսմ. յուլ. 10.—սեռ. Կարապետի՝ անդ.—ընդարձակ վկայաբանությունը տես Նոր վկ. 198—204. հիշված է Նոտարք 22։ Չամչ. Գ. 436։

— 115. Կարապետ Ա. Կեղեցի, կաթողիկոս Հայոց, հաջորդեց Թէոդորոսին և գահակալեց «1392—1404 թ». կոչված է բոկիկ, սպանվել է թունավորմամբ։—Սամ. անեց. շար. 172. Աղամ. 230, 271. Առաք. պատ. 336. Չամչ. Գ. 428. Սիսուան 542 բ. Տաշեան, Ցուց. 833։

— 116. Կարապետ, թոռն Կոստանդին Թագավորի Կիլիկիոյ. գլուխ կանգնեց Սսոյ առաջին գաղթականության դեպի Կիպրոս կամ Իտալիա, 1404 թ.—Ազգապ. 2006, Սիսուան 542 բ։

— 117. Կարապետ աբեղա, գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Հարցմանց գիրքը Երուսաղէմում, 1407 թ.—Ձեռ. Կարին. 50, Նոտարք 26։

— 118. Կարապետ, եղբայր Մատթէոս պալթևի, նահատակակից Գրիգոր Տաթևացու. մեռավ 1410 թվին, որի մահվան վրա Մատթէոս վարդապետը մի ողբ գրեց «ի հրաշագեղ Կարապետ եղբայրն իւր», բնաբան ունենալով «Ո՜ տայր զմահ իմ փոխանակ մահու քոյ և զգերեզման իմ փոխանակ գերեզմանի քոյ»։—Մտթ. Ներբ. 148. Թորոս աղբ. Բ. 483։

— 119. Կարապետ կաթողիկոս Աղվանից, հաջորդեց Պետրոս Բ-ին 1406 թ. աթոռը փոխադրեց Գանձասարից Ճալեթ գյուղը, ուր և շինեց Ճալեթի վանքի եկեղեցին 1411 թ. երևի նույն թվին էլ վախճանվեց։ Նրան հաջորդեց Մատթէոս Բ.—Ջամբռ 77, Նոտարք 25, 39. Բարխուտ. Աղուանից երկ. 249, 250, Պատմ. Աղուանից 210։ Շահխաթ. Բ. 379։

— 120. Կարապէտ, աշակերտ Սարգսի և ապա Գրիգոր Տաթևացու.—Յայսմ. ապր. 27, Մեծոփ. 51 (ընկերները տես Սարգիս րաբունապետ)։

— 121. Կարապետ, այլ աշակերտ Սարգսի և ապա Գրիգոր Տաթևացու.—հիշված է նախորդի հետ։

— 122. Կարապետ, որդի Խաչպան Յովհաննէս երեցի. որ գնեց մի Աւետարան 1411 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 232։

— 123. Կարապետ աբեղա, թուղթ էր կոկում Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում, ուր Վարդանէս աբեղան օրինակեց Գանձարանը, 1412 թ.—Manus. brit. mus. 121 ա։

— 124. Կարապետ կրոնավոր, գրիչ. Մոկաց Ծպատայ վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Թադէոս քահանայի և նրա որդի Յովհաննէս քահանայի համար, 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա 270 ա։

— 125. Կարապետ կրոնավոր, միաբան և ուսուցիչ Տէր Յուսկան որդու վանքում, 1414 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 62 ա։

— 126. Կարապետ Բ կաթուղիկոս հայոց 1403-1418 թ. այսպես է դնում Առաջ. պատմ. 336, իբրև հաջորդ Դաւթի և նախորդ Գրիգոր Ը Խանձողատի։ Մեր եկեղեցական պատմությունը այդ թվերին կաթուղիկոս գիտէ Յակոբ Գ Սսեցի «1404—1411 թ» և Գրիգոր Ը Խանձողատ «1411—1418 թ»։ Առաջնի շփոթության բացատրությունը տես Դաւիթ Գ (№ 183)։—Շահխաթ. Ա. 210 Կարապետ Բ դնում է մեռած 1409 թ. որին հաջորդել է Գրիգոր Խանձողատ։ Նույնը նաև Նօտարք 39։ Իսկ Նօտարք 39 մի հիշատակարանում, 1411 թվին հայոց կաթուղիկոս գիտե Կարապետին։—Զամչ. Գ. 428։

— 127. Կարապետ քահանա, գրիչ, որ Վանում օրինակեց Մաշտոցը՝ Յովհաննէս տանուտերի պատվերով, 1418 թ.—Տաշեան, Ցուց. 384։

— 128. Կարապետ, որդի Թումայ կրոնավոր գրչի (№ 140) կամ սրա եղբոր Դանիէլի (№ 30). հիշված է 1418 թ.—Ձեռ. Վասպ. 311։

— 129. Կարապետ աբեղա, գրիչ. Մոկաց Ս. Գէորգ անապատում, Մարգարէ քահանայի համար արտագրեց Մաշտոցը, 1418 թ.—Նօտարք 54։

— 130. Կարապետ եպիսկոպոս. կազմեց այն Աւետարանը, որ օրինակեց Եղբայրիկ գրիչը՝ Մամթութ անուն տիկնոջ համար (տեղն անհայտ), 1420 թ.—Ձեռ. Վասպ. 320—1։

— 131. Կարապետ (որդի Վարդկայ կամ Սարգսի), հորեղբորորդի Վարդան կրոնավորի, որ Թումայ աբեղային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 132. Կարապետ գրիչ. Տաթևում օրինակել է Գր. Տաթևացու Քարոզգիրքը 1420 թ.—Ձեռ. Կարին. 217։ (Նույնը Նօտարք 54 դնում է 1418 թ)։

— 133. Կարապետ, եղբայր Վարդ սարկավագի, հիշված 1420 թ.—Տաշեան, Ցուց. 665։

— 134. Կարապետ *ոմն, հիշված 1420 թ.—Տաշեան, Ցուց. էջ 666։*

— 135. Կարապետ, *որ Խաղաղութիւն անուն անձի հետ միասին մի խաչքար է կանգնեցրել Լիմ անապատի վանահայր Մեռելյարոյց Յովհաննէս եպիսկոպոսի հիշատակին, 1421 թ.—Նոտարք 64։*

— 136. Կարապետ *քահանա, միաբան Վարագայ վանքի, գրիչ. օրինակեց մի Աւետարան, 1421 թ.—Նոտարք 65։*

— 137. Կարապետ *երեց, գրիչ, Ստեփաննոս կրոնավորի խնդրանոք օրինակել է մի Աւետարան, Վան 1421 թ.—Նոտարք 66 (դնում է նույն ընդ նախորդը, բայց որովհետև հայրանուն-ները չկան, ուստի անստույգ է։ Կարող էր միևնույն մարդը մի տարում երկու Աւետարան արտագրել)։*

— 138. Կարապետ *քահանա, եղբայր Զաքարիա գրագրի և Յովհաննէսի, հորեղբայր Թումայ կրոնավոր գրչի, որ օրինակեց Ճաշոցը Աղթամարում, Յոհաննէս կրոնավորի և Վարագայ վանքի համար, 1421 թ. (այս թվին Կարապետ քահանան իր երկու եղբայրների հետ մեռած էր արդեն)։—Նոտարք 67։*

— 139. Կարապետ, *որդի Ստեփաննոսի, եղբայր Գրիգոր սարկավագի և Միրանի, եղբորորդի Թումայ կրոնավորի, որ Վարդան տերեղայրին գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 331։*

— 140. Կարապետ, *մերձավոր Ստեփանոս կրոնավորի, որ Վանում Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 341։*

— 141. Կարապետ *երեց Դերջանցի, որդի Մկրտիչ քահանայի, օրինակեց Քարոզգիրքը՝ Հերմոնի վանքում, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82)։*

— 142. Կարապետ *աբեղա, Յաղէթի Ս. Յակոբայ վանքում, հիւսն Յովհաննէսի համար օրինակեց Ճաշոցը, որի վերջում ունի ընդարձակ հիշատակարան, ուր պատմում է Շահռուխի արշավանքը, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111—113։*

— 143. Կարապետ *աբեղա Հերմոնի վանից. օգնեց Կարապետ Դերջանցուն՝ արտագրելու համար Քարոզգիրքը. հօրինեց նրա ցանկը և գիրքը կազմեց, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 88 ա)։*

— 144. Կարապետ *որդի Աստուածատուրի, եղբորորդի Յա-*

կոբ աբեղայէ Հերմոնի վանից, 1421 Թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 145. Կարապետ, որդի Յովհաննէսի, գրիչ. Խլաթում, Յովհաննէս վարդապետի համար արտագրեց Աստուածաշունչը՝ 1418—1422 Թ. (չորս տարվա ընթացքում).—Ձեռ. Վեննա. Ց. 114, Անկ. գիրք հին կտ. յոչ. էջ Թ (այս գիրքը ապա անցավ Մկրտիչ Նաղաշին)։

— 146. Կարապետ, «սպասավոր բանի», միաբան հոցի Ս. Խաչ վանքի, 1422 Թ.—Նոտարք 68։

— 147. Կարապետ կրոնավոր, այլ միաբան նույն հոցի Ս. Խաչ վանքի, 1422 Թ.—Նոտարք 68։

— 148. Կարապետ գրիչ. Գրիգոր աբեղայի և Մկրտիչ երեցի հետ միասին օրինակեցին Յայսմաւուրքը՝ Ատոմ աբեղայի համար, Վան 1422 Թ.—Նոտարք 68։

— 149. Կարապետ քահանա, գրիչ. օրինակեց Վանում Աւետարանը՝ Յովհաննէս քահանայի համար, 1422 Թ.—Նոտարք 69 (համարում է նույն ընդ № 136 և 137, ըստ իս կասկածելի)։

— 150. Կարապետ, որդի Ստեփաննոսի և եղբայր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիում, Յակոբ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1422 Թ.—Ձեռ. Վասպ. 347։ (Նույն չէ № 172, որովհետև մայրանունները տարբեր են)։

— 151. Կարապետ, «Նորաբողբոջ պատանեակ» եղբորորդի նույն Յովհաննէս կրոնավորի, 1422 Թ.—Ձեռ. Վասպ. 347։

— 152. Կարապետ երեց, գրիչ. օրինակել է Մատթէոս վարդապետի «Յաղագս ութ խորհրդոց Եւագրի» (Ձեռ. Վեննա. № 340, ըստ Սարգիսեան, Եւագր. ներած. էջ ձԽէ), 1423 Թ։

— 153. Կարապետ գրիչ, Մոկաց Ծպատի վանքում, Թումա կրոնավորի համար օրինակեց Ճաշոցը 1423 Թ.—Նոտարք 72։

— 154. Կարապետ (տէր) եկեղեցպան, ազգական Սահակ միանձնակեցի, որ ստացավ մի Աւետարան և նվիրեց նույն տէր Կարապետին և նրա հոգեորդի Թումայ աբեղային, 1423 Թ.—Նոտարք 72։

— 155. Կարապետ, եպիսկոպոս Աղուանից կաթուղիկոսության, 1423 Թ.—Նոտարք 72։

— 156. Կարապետ կաթուղիկոս Աղուանից, 1406—1424 Թ. հաջորդել է Պետրոս կաթուղիկոսին, իրեն էլ հաջորդել է Մատթէոսը.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ, Նոտարք 72։

— 157. Կարապետ անուն երկու անձինք խնդրել են Թու-

մայ հռետորից գրել Գրիգոր Ծերենցի կյանքը (Նոր վկ. 272)։— Ըստ Նոտարք 77 այս Թումայ հռետորը Թովմա վրդ. Մեծոփեցին է. երկու Կարապետներից մեկը Սուխարայ վանքի վանահայր Կարապետն է, եղբորորդի և հաջորդ նույն վանքի վանահայր Զաքէոս եպիսկոպոսի. իսկ մյուսը թերևս Սիփանայ սարի մոտիկ Ցիպնայ Ս. Ստեփաննոս վանքի վանահայրն է։

— 158. Կարապետ, որդի խոջա Աստուածատուրի, որ ազատեց Նարեկը Թուրքմանի գերությունից և նվիրեց Վարագի վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 55 ա։

— 159. Կարապետ, քահանա, գրիչ. Վանում օրինակել սկսեց Աւետարանը. այդ միջոցին Իսքանդար ամիրան բռնեց Վանի ամիրա Սուլթան Ահմադին, շատ զորքով արշավեց Վանի վրա, 50 օր պաշարեց քաղաքը, բայց չկարողացավ գրավել և գնաց Թաւրիզ։ Գարնան նորից զորք ուղարկեց, գերեց ու ավերեց Ռշտունեաց երկիրը, Կարապետ գրիչն էլ ժողովրդի հետ փախավ Խիզան, ուր և վերջացրեց Աւետարանը։ Սարգիս անուն անձը գնեց նույն Աւետարանը և նվիրեց Ալանայ Ս. Նշանին՝ ձեռամբ Թադէոս կրոնավորի, 1425 թ։—Նոտարք 78։

— 160. Կարապետ կրոնավոր, Մկրտիչ քահանայի հետ եղավ վերջին ստացող մի Աւետարանի, Արգելանի վանքում 1425 թ.—Նոտարք 78 (ստուգել)։

— 161. Կարապետ կրոնավոր, որդի Յովաննէս քահանայի. ուներ մի օրինակ Յայսմաւուրք, որ տվեց Սարգիս եպիսկոպոսին՝ արտագրելու համար, Գուգարքի Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում, 1427 թ.—Նոտարք 84։

— 162. Կարապետ, անորոշաբար հիշված երկու հին հանգուցյալ հայրապետներ, որոնց հիշատակում է Նախորդ Սարգիս եպիսկոպոսը, 1427 թ.—Նոտարք 84։

— 163. Կարապետ աբեղա, որդի Խաչատուրի և աշակերտ Թումայ կրոնավորի. Կողուց վանքում տանուտէր Մկրտիչի համար գրեց մի Տօնական Ճառընտիր, որ ավարտեց Արծկէում, ուր փախել ապաստանել էին Քրդերի արշավանքի պատճառով, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583—4։

— 164. Կարապետ, քեռի նույն Մկրտիչ տանուտիրոջ, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 584 բ։

— 165. Կարապետ գրիչ, որին Էվատշահ Ոստանցին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Վառնիշատ գյուղի Եղիշէ վարդապետ եկեղեցուն, 1428 թ.—Ձեռ. Վասպ. 356։

— 166. Կարապետ վարդապետ, միաբան Ոստանի Գառրկի վանքում. հիշված է նախ 1420 թ. (Ձեռ. Վասպ. 324) և ապա 1428 թ.՝ Նոտարք 88։

— 167. Կարապետ եպիսկոպոս, նվիրակ էր ուղարկված Թրիժ (Սուրխաթ), 1430 թ.—Նոտարք 95։

— 168. Կարապետ, որդի Անդրէասի և եղբայր Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Ձեռ. Վիննա. Ա. 663։

— 169. Կարապետ քահանա, գրիչ. Արճէշում, Մկրտիչ վարդապետի համար օրինակեց Մաշտոցը՝ 1432 թ.—Նոտարք 101։ Հմմտ. № 171։

— 170. Կարապետ, «խաչընդրուս կրօնաւոր», հոգևոր հայր Մկրտիչ վարդապետի, որ Տէր Յուսկան որդի վանքի վանահայրն էր և օրինակել է մի Աւետարան, Բերկրի 1420 թ. (Նոտարք 61) և մի Մաշտոց էլ օրինակել է տվել նախորդ Կարապետ քահանային՝ Արճէշ 1432 թ.—Նոտարք 101։

— 171. Կարապետ գրիչ, աշակերտ Թումայ րաբունապետի, Արճէշում գրեց մի Աւետարան՝ Երզնկացի տանուտէր ոսկերիչ Յովաննէսի համար, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 367—8, Նոտարք 102։ Նոյն է № 169։

— 172. Կարապետ, որդի Ստեփաննոսի և եղբայր Յովհաննէս աբեղայի, որ Մոկաց Սուրբկանց գյուղում գնեց մի հին Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 204։ (Նույն չէ № 150, որովհետև մայրանունները տարբեր են)։

— 173. Կարապետ քահանա, մորեղբայր Երզնկացի ոսկերիչ Յովհաննէսի, որ Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Արճէշ 1433 թ.—Ձեռ. Վասպ. 368։

— 174. Կարապետ, ազգական բրուտ Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան՝ 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 175. Կարապետ, որդի Յովսէփի, մայրն է Ռուս խաթուն, քույրն է Փեչի խաթուն, հիշված է 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 176. Կարապետ վարդապետ, առաջնորդ Տիւրիկի 1435 թ.—Տաշեան, Ցուց. 760։

— 177. Կարապետ, որդի Հայրապետի և եղբայր Արիստակէս երէցու, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

— 178. Կարապետ վարդապետ, գրիչ. Սաղմոսավանքում օրինակել է Մաշտոցը՝ 1436 թ.—Այրարատ 163։

— 179. Կարապետ *արքեպիսկոպոս Կաֆայի, հիշված է 1437 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 238 (տպ. ՊՁՁ, ուղղեցի ՊՁԶ=1437)։*

— 180. Կարապետ, *որդի Ամիր-Հասանի և եղբայր Թաջդինի (տես № 2). հիշված է 1437 Թ.—Նոտարք 112։*

— 181. Կարապետ *կրոնավոր մահտեսի, որդի Իսաւի, եղբայր Ներսէս քահանայի և հօրեղբայր Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ Բարթուղիմէոս առաքելոյ վանուց առաջնորդն էր և ստացավ մի օրինակ Յայսմաւուրք, 1438 Թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։*

— 182. Կարապետ *վրդ. գրիչ. օրինակից Մաշտոցը, ի Մուխրենէս, 1438 Թ.—Ձեռ. Կարին. 140։*

— 183. Կարապետ, *հայր Ատոմ քահանայի, որի մասին տես Յաւել. 1440 Թ.—Ձեռ. Վասպ. 313։*

— 184. Կարապետ *եպիսկոպոս Յովհաննավանքի, անդամ Էջմիածնի մեծ ժողովի, 1441 Թ.—Մեծոփ. յիշ. ա. Չքր. սարկ. Գ. 30. Այրարատ 172. Նոտարք 123։*

— 185. Կարապետ *վարդապետ Հիզնայ, Թղթակից անդամ Էջմիածնի ժողովի, 1441 Թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 186. Կարապետ *վարդապետ, եղբայր Թովմա Մեծոփեցու, անդամ Էջմիածնի ժողովի, 1441 Թ.—Մեծոփ. յիշ. բ. Դրնզ. 310. Նոտարք 122. Տաշեան, Ցուց. 418, Ազգապ. 2106։*

— 187. Կարապետ, *որդի նշանավոր Դանիէլ (№ 30) գրչի, Թոռն Կարապետ քահանայի, վաղամեռիկ էր եղած արդեն 1441 Թ.—Ձեռ. Վասպ. 383։*

— 188. Կարապետ, *մորեղբայր Մկրտիչ քահանայի Արճիշեցւոյ, որ գրել տվեց մի Ճաշոց, 1441 Թ.—Թորոս աղբ. Ա. 223։*

— 189. Կարապետ *երեց, գրիչ. օրինակեց Վանում Յայսմաւուրքը՝ մահտեսի Մխիթարի համար, 1442 Թ.—Առաք. պատմ. էջ 322։*

— 190. Կարապետ *կրոնավոր, աշակերտ Թովմա Մեծոփեցու, հիշված 1443 Թ.—Մեծոփ. յիշ. գ. Դրնզ. 315։ Հմմտ. № 171։*

— 191. Կարապետ *քահանա, հայր Աստուածատուր քահանայի, որ Խլաթում գրեց Աւետարանը, 1443 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։*

— 192. Կարապետ, *հորեղբայր տանուտէր Ատոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան, 1444 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։*

— 193. Կարապետ *քահանա, որդի Ստեփանոսի և Թոռն Յովանէս քահանայի. Ոստանում օրինակեց Գանձարանը՝ տա-*

նուտէր Աստմի առաջարկությամբ, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 40։

— 194. Կարապետ քահանա, եղբայր Թադէոս քահանայի, երկուսն էլ սպասավորում էին Գուաշի Ամենափրկիչ և Ս. Կիրակոս եկեղեցիներում, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 388։

— 195. Կարապետ աբեղա, միաբան Մշու Ս. Յովհաննու վանից, բազմաթիվ միաբանակիցների հետ եկավ Էջմիածին և Գրիգոր Ժ Մակուեցի կաթողիկոսից օծվեց եպիսկոպոս Տարօնի, 1445 թ. այս առթիվ ընդարձակ կաթողիկոսական կոնդակը Մշոյ թեմերի մանրամասն ցուցակով տես Նոտարք 139—145։ (Կենդանի է 1453 թ. ըստ Նոտարք 172)։

— 196. Կարապետ երեց, գրիչ. խնդրանոք Մկրտիչ կրոնավորի օրինակեց Յայսմաւուրքը 1445 թ.—Նոտարք 146։

— 197. Կարապետ, որդի Բուքի, եղբայր Մկրտիչ կրոնավորի, որ Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1446 թ.—Նոտարք 151։

— 198. Կարապետ քահանա. իբրև գրիչ հիշում է Ձեռ. Վասպ. 397՝ 1447 թ. բայց տարօրինակ կերպով սխալ է. ամեն տեղ էլ կոչված է Իսրայել (№ 13). Նույնը Նոտարք 156։

— 199. Կարապետ քահանա, կանգնեցրել է մի խաչքար Սևանում, 1448 թ.—Սիսական 79, Շողակաթ 139։

— 200. Կարապետ վարդապետ, որդի Մկրտիչ քահանայի. ուսուցանում էր Ապահունեաց վանքում. իր աշակերտներն են՝ Յովանէս, Յակոբ, Սիմէոն, Մարտիրոս, Սիմէոն հայրապետ. 1449 թվին ձեռք բերեց մի Աստուածաշունչ, որ գրել էր տվել Սմբատ (Բ) գունդստաբլը.—Թորոս աղբ. Բ. 296։

— 201. Կարապետ քահանա, հայր Յովհաննէս քահանայի, որ Խլաթում, պարոն Ամիրդօլի համար գրեց մի Ճաշոց, 1450 թ.—Նոտարք 164։

— 202. Կարապետ երեց, որդի Ստեփաննոս քահանայի, մայրն է Մինայ, եղբայրները՝ Յովհաննէս քահանա (ապա աբեղա) և Մելքիսեթ սարկավագ, կինն է Թանսու (հիշված 1421 թ), որի մահից հետո՝ Խոնդխաթուն (հիշված 1451 թ.), հորեղբայրն է Մովսէս միայնակեաց, որդիներն են Մեսրոպ, Աբդլմսեհ և Մելքոն, որոնք ոբբացել էին 1435 թվին. (ուրեմն առաջին կինը՝ Թանսուն մեռել էր այդ թվից քիչ առաջ, իսկ Աբդլմսեհը մեռավ 1451 թ)։ Աշակերտել է Ստեփաննոս և Մկրտիչ քահանաներին։ Արտագրել է Վանում մի քանի անգամ Աւետարանը.

առաջինը 1418 թվին, երկրորդը 1421 թ, երրորդը 1435 թ, չորրորդը 1437 թ, հինգերորդը 1451 թ.—Ձեռ. Վասպ. 308—9, 340, 369, 375—6, 411—2, Նոտարք 57, 106, 113։

— 203. Կարապետ միայնակյաց, որդի Թումայի, մայրն է Մարիամ. Յովհաննէս կրոնավորին գրել տվեց մի Աւետարան՝ Ցիպնայ Դասստակ վանքում, 1450 թ.—Նոտարք 166, Ձեռ. Վասպ. էջ 405։

— 204. Կարապետ Մանկարօն, որդի Ստեփաննոսի, մայրն է Ջալալ խաթուն. տանուտէր (Վանում), փեսայ Փաշայ տիկնոջ, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. էջ 412։

— 205. Կարապետ քահանա, որդի Յովհաննէս քահանայի, մայրն է Զմրութ, եղբայրներն են Մկրտիչ, Մելքիսեթ և Վարդան քահանաները։ Աշակերտել է Թովմա Մեծոփեցուն, որի համար էլ աղոթում է (Նոտարք 111) և նրա միջնորդությամբ գրել է Արճէշում մի Յայսմաւուրք՝ Խոջա Թաջդինի համար, 1437 թ։ Եղել է ուսուցիչ իր եղբոր Վարդանի, որ իր հիշատակարանում (1452 թվից) հայտնում է թե այս Կարապետ քահանան հավատքի համար նահատակվել է Արճէշ քաղաքում։ Ճիշտ թիվը հայտնի չէ, բայց գտնվում է 1437 և 1452 թվերի միջև։—Նոտարք 111, 169, 172։ Հմմտ. № 264։

— 206. Կարապետ, երկու համանուն որդիք (մեկն կամ երկուսն էլ վախճանված) մահտեսի Շահփաշայի, որ Վարդան քահանայի ձեռքով վերանորոգեց գողացված մի Աւետարան, Վան 1453 թ.—Ձեռ. Վասպ. 136։

— 207. Կարապետ վարդապետ, եղբորորդի Արճէշի Խառաբաստի (Արծուաբեր) վանքի առաջնորդ Զաքէոս եպիսկոպոսի (№ 4), որին և հաջորդեց և նրա հիշատակին կանգնեցրեց մի խաչքար (1404 թ)։ Ստացավ վանքի համար մեծամեծ կալվածներ (1409 թ), որոնց մանրամասն թվումը տես Նոտարք 31։ Շատ էր ցանկանում ուխտի գնալ Երուսաղէմ, բայց Ղարա Եուսուֆ խանի հարկապահանջությունը այնպես բուռն էր, որ ճանապարհորդությունը անհնարին էր դարձել։ Վերջապես հասնում է իր նպատակին. գնում է Երուսաղէմ, մնում է մի տարի, որից հետո «գութ մարմնական ծնողաց նեղեաց զմեզ և բնական աշխարհի սովորութիւն» (այսինքն երկիրը և ընտանիքը կարոտեց) և վերադարձավ հայրենիք։ Իր հետ իբրև հիշատակ բերելու համար գնեց այնտեղ մի Աւետարան, որ գրել էր Քրիստոսի

գերեզմանի փակակալ և Գողգոթայի ջահավառ, Յոհաննէս կրօնաւորը նոյն իսկ Ս. Յարութեան մէջ։ Երբ հասավ Ծառաքաստայ վանքը, տեսավ որ իր եղբայրը՝ Յովհաննէս աբեղան մեռել էր։ «Այրեցեալ սրտիւ» նվիրեց այդ Աւետարանը Ս. Աստուածածնի տաճարին (1416 թ)։ Սրանից քսան տարի հետո, քրդերի արշավանքի ժամանակ Թովմա վրդ. Մեծոփեցու և նրա աշակերտների հետ՝ Կարապետ վարդապետն էլ ուրիշ 7 վարդապետների հետ Արճէշից փախաւ Բաղէշ (1436 թ), ուր մնացին մի ժամանակ։ Մասնակցեց Էջմիածնի մեծ ժողովին՝ 1441 թ. հիշվում է դեռ 1446 թ. (Նոտարք 153). կանգնեցրել է մի խաչքար՝ իր եղբոր Յովհաննէս հերպետի հիշատակին՝ 1449 թ. (Նոտարք 160)։ Կենդանի է դեռ 1454 թ. և կոչվում է «երջանիկ և հեզահոգի վարդապետ, ամենագով և հանճարեղ, իմաստուն և արդիւնաւոր րաբունապետ» (Նոտարք 174—5)։—Մեծոփ. յիշ. ա. Նոտարք 20, 31, 49, 50, 108, 122. տես և № 157։

— 208. Կարապետ, երեք նույնանուն միաբաններ Վարագայ վանից, հիշված 1454 թ.—Նոտարք 176։

— 209. Կարապետ, երեց, գրիչ. օրինակեց Մայր Մաշտոցը՝ Վանում, 1454 թ.—Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերյարդ. էջ 105։

— 210. Կարապետ, գրիչ. Ասպաւերուկ գյուղում օրինակեց մի Աւետարան՝ Դշխուն տիկնոջ համար, 1455 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132), Նոտարք 181։

— 211. Կարապետ եպիսկոպոս, որդի Սիմէոնի, առաջնորդ և վանահայր Գառուագրակ անապատի կամ Հալւորի վանից (հիշված 1455 թ). օրինակել է մի Աւետարան՝ նույն վանքում, 1454 թ.—Տաշեան, Ցուց. 425, Rapport Belgique 97, Թորոսադր. Բ. 376, Նոտարք 176։

— 212. Կարապետ, պարոն, որդի Ամիր Հասանի, եղբայր Ամիրդօլի և Թաջդինի. հիշված է 1450 և 1455 թ.—Նոտարք 164, 178 (տես Թաջդին № 2)։

— 213. Կարապետ կրոնավոր, միաբան Գամաղիէլի վանից, 1455 թ.—Նոտարք 181։

— 214. Կարապետ, երեք համանուն միաբաններ մի վանքի, որի անունը չէ հիշատակված և որի հայրապետն էր Վարդան կրոնավոր (որդի Ղազարի, եղբայր Աբգլմսեհի և Առաքելի)։ Այս Վարդանը Յովհաննէս Մանկասարենց գրչին գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

215. Կարապետ *վարդապետ, միաբան Երուսաղէմի Ս. Յակոբայ վանից, 1457 թ։ Սրա համար գրիչը հետևյալ գովեստն է կարդում. «Այլ և զերիցս երանելւոյ զճգնազգեաց զերջանիկ բաբունապետս մեր զԿարապետ զհոգևոր հայրս մեր, որ զտիւ և զգիշեր ի խորս աստուածային տաւից դեգերելով վասն մեր, հայրական գթով խրատելով և ուսուցանելով զմեզ, որոյ ոչ գոյ տրիտուր փոխարէնի ի մէնջ. այլ որ կարողն է ամենայնի և զօրաւոր տէր մեր Յս. Քս. հատուսցէ կրկին կենօք և երկու աշխարհօք».—Ձեռ. Հալէպի, Ա. 166 ա։*

— 216. Կարապետ *սարկավագ, միաբան Լիմ անապատի. Թուղթ կոկելով օգնում էր Ղազար գրչին, երբ սա օրինակում էր Յայսմաւուրքը՝ մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի համար, 1452—7 թվերին։—Ձեռ. Թաւր. 102—4։*

— 217. Կարապետ, *որդի Թաւաքալի և եղբայր Յովհաննէս քահանա գրչի, որ մի դժբախտ արկածով մահացավ, Սորավանք գյուղում, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 429։*

— 218. Կարապետ *երեց, միաբան Վարագայ վանքի, Մելքիսեդ կրոնավորի խնդրանոք գրեց մի Մայր Մաշտոց, 1458 թ.—Նոտարք 188, Թորոս աղբ. Բ. 479։*

— 219. Կարապետ *քահանա, հայր Յովհաննէս գրչի, որ Տէր Գրիգորի խնդրանոք գրեց մի Յայսմաւուրք, 1458 թ.—Նոտարք 190։*

— 220. Կարապետ, *որդի Թումայի, որ Աղթամարում, Ներսէս արեղային գրել տվեց մի Աւետարան և ընծայեց Ս. Վարդան եկեղեցուն, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։*

— 221. Կարապետ *վարդապետ, Ստեփաննոս եպիսկոպոսի և ուրիշների հետ հաջողացրեց նույն Աւետարանի ընծայումը Ս. Վարդան եկեղեցուն, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 434։*

— 222. Կարապետ *«գրչավոր» (իմա գրիչ), օրինակել է Աւետարանը՝ Գալախորի վանքում (Բաբերդ), 1461 թ.—Նոտարք, էջ 206։*

— 223. Կարապետ *քահանա, հայր Դանիէլ վարդապետ Սեվանեցու, որ գնեց մի Քարոզգիրք Առաքել արեղայից, 1461 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 աբ)։*

— 224. Կարապետ *խոճայ, իբրև վկա ստորագրում է մի կտակագրի, 1461 թ.—*Manus. brit. mus. *31 ա։ Նույնն է արդյոք նաև խոջայ* Կարապետ, *որ իբրև վկա ստորագրում է Պօղոս վարդապետի մի պայմանագրին, 1461 թ.—Նոտարք 199։*

— 225. Կարապետ «հիւսն», քեռի խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս գրչին գրել տուեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վաաղ. 439։

— 226. Կարապետ, որդի Մկրտիչի և Թոռ տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տուեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 227. Կարապետ, որդի Սուլտանշահի, եղբոր Խոնձայի՝ կնոջ տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տուեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 228. Կարապետ, երիտասարդ միաբան («նորաբողբոջ հասակին») Խորձեան գաւառի Խլպաշի վանքի, 1464 թ.—Նոտարք 218, Թորոս աղբ. Բ. 341։

— 229. Կարապետ, երկու համանուն միաբաններ Յովհաննավանից, 1464 թ.—Այրարատ 172։

— 230. Կարապետ, որդի Ծերունի և եղբայր Յովհաննէս կրոնաւորի, որ գնեց մի հին Շարակնոց և նորոգել տուեց 1465 թ.—Rapport Belgique 145։

— 231. Կարապետ, երկու համանուն քահանաներ Վանայ Պօղոս-Պետրոս եկեղեցու, 1465 թ.—Նոտարք 222։

— 232. Կարապետ քահանա Առբերդոյ վանից (Մոկաց երկրում), 1466 թ.—Նոտարք 225։

— 233. Կարապետ վարդապետ, միաբան Կիւրղի վանից, 1467 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 257) և Ձեռ. Վաաղ. 448։

— 234. Կարապետ քահանա, գեղեցկագիր գրիչ, որ Ոստան քաղաքում, «ծովահայեաց Քարի Ս. Աստուածածին վանքում» գրել է չորս ձեռագիր։ Առաջինն է մի Ճաշոց՝ տանուտեր Յովհաննէսի համար, որ և նվիրեց Նահդենց գյուղի Ս. Գէորգ եկեղեցուն, 1439 թ. (Նոտարք 119.—Ակինեան, Գաւազանագիրք ՊՁԸ=1439 թվականը ուղղում է ՊԺԸ=1369!)։ Երկրորդն է մի Գանձարան՝ գրված խնդրանոք Նարեկցի բարեպաշտ հիւսն Պետրոսի, որ և նվիրեց Թովմա առաքելոյ վանից, 1440 թ. (Նոտարք 121)։ Երրորդն է մի Աւետարան, որ գրել է Գոհար տիկնոջ համար, 1461 թ. (Նոտարք 205)։ Չորրորդն է մի Աւետարան, որ գրեց Յովհաննէս քահանայի և նրա որդի Սարգիս քահանայի խնդրանոք՝ 1467 թ. (Նոտարք 230 և Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258)։ Նույն գրչից է նաև այն հիշատակարանը, որ գրված է Ոստանում ազատված մի Ճաշոցում և ուր գրիչը պատմում է Մակուի և Վանի արշավանքների մասին, 1459 թ. (Նոտարք 195)։ Այսպեսով Կա-

րապետ Ոստանցի քահանայի գրչագրական գործունեությունը գնում է 1439—1467 թ. այն է 28 տարի։ Գրչի ազգականների անունները ընդհանրապես չեն հիշատակված. միայն առաջին ձեռագրում գրված է թե հայրն է Ստեփաննոս քահանա, մայրը՝ Փաշայ։ Եթե իրոք այս չորս ձեռագրերը պատկանում են նույն անձին և գնում են մինչև 1467 թ. ապա իրոք զուր է Ակինեանի սրբագրությունը ՊԺԸ փխ. ՊՁԸ (տես էջ 194), որով 100 տարի ետ է գնում։

— 235. Կարապետ գրիչ, գրեց մի Գանձարան, որ սկսեց Վարագայ վանքում և վերջացրեց Վանում, 1467 թ.—Նոտարք էջ 231։

— 236. Կարապետ, հայր Սարգսի, որ Ղազար կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, Գամաղիէլի վանքում, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 451, 454։

— 237. Կարապետ, միաբան Գամաղիէլի վանուց, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 452։

— 238. Կարապետ աբեղա, հիշված Բիւրականում 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 239. Կարապետ, եպիսկոպոս Բիւրականի և Անբերդի, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114, Այրարատ 158։

— 240. Կարապետ, որդի Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

— 241. Կարապետ մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 242. Կարապետ ոմն, որ հիշված է մի տաղի մեջ՝ Նղշ. 32 (Նաղաշը մեռել է 1470 ական թվերին)։

— 243. Կարապետ, որդի Ջուլալի, որ իր հանգուցյալ ամուսին Արթուխշայի հիշատակին մի Աւետարան գրել տվեց Աղթամար, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459—460։

— 244. Կարապետ, որդի Մելքիսեթ քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Թումա առաքյալի վանքում օրինակեց մի Աւետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 464։

— 245. Կարապետ քահանա, աշակերտ Պետրոսի և տէր Մինասի, գրիչ. Բերկրիում, ռէս Մարտիրոսի խնդրանոք գրել, ծաղկել և ոսկով զարդարել է մի Աւետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467—8։

— 246. Կարապետ, որդի կամ եղբորորդի տանուտեր Մար-

տիրոսի, որ Բերկրիում Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1473 Թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 247. Կարապետ, որդի Էգլշահի, որ ստացավ մի Ավետարան, 1475 Թ.—Ձեռ. Վասպ. 473։

— 248. Կարապետ երեց, գրիչ. Վանում, աղքատ Յովսէփի խնդրանոք գրեց մի Ավետարան, 1475 Թ.—Ձեռ. Վասպ. 478։

— 249. Կարապետ քահանա, քրոջ որդի նույն աղքատ Յովսէփի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1475 Թ.—Ձեռ. Վասպ. 478։

— 250. Կարապետ արեղա, հայրապետ Բաղենց անապատի, 1475 Թ.—Ձեռ. Վասպ. 480։

— 251. Կարապետ, վանահայր Ս. Կարապետի վանից 1476 Թ.—Ձեռ. Սեբ=ՀԱ 1926, 339։

— 252. Կարապետ, մերձավոր Յակոբի, որ Երզնկայում ստացավ մի Ավետարան, 1477 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 253. Կարապետ քահանա, ուսուցիչ Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Ավետարանը 1477 Թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 220)։

— 254. Կարապետ երեց Եւդոկիացի, կաթուղիկոս Կիլիկիոյ «1446—1477 Թ». գնաց Եգիպտոս՝ Սուլթանից հաստատութիւն ստանալու համար և այս առթիվ այցելեց Երուսաղէմը։ Հիշված է 1447 Թ. (Նոտարք 157) և 1464 Թ. (Թորոս աղբ. Բ. 463).— Մեծոփ. յիշ. գ. Հայապ. 575։ (Չամչ. Գ. 491 դնում է 1447—9 Թ)։ Սիսուան 218, 223 (ուր տալիս է նրա տոհմագրությունը), 228, 539։

— 255. Կարապետ, հայր Խոսրովի, որ Բռնաշէնում, Մխիթար քահանային գրել տվեց մի Ավետարան, 1478 Թ.—Ձեռ. Վասպ. 485—6։

— 256. Կարապետ, որդի Մարտիրոսի՝ որդւոյ Խոսրովի, որ Բռնաշէնում Մխիթար քահանային գրել տվեց մի Ավետարան, 1478 Թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 257. Կարապետ, որդի մահտեսի Աստուածատուրի և եղբայր պարոն Ֆարաճի, որ Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Ավետարան, Հալէպ 1478 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

— 258. Կարապետ Բերկրեցի, նկարիչ. նկարազարդել է նույն Ավետարանը, Հալէպ 1478 Թ.— անդ 97 ա։

— 259. Կարապետ, ազգական Մխիթար քահանայի, որ

Բունաշէնում Խոսրովի համար գրեց մի Աւետարան, 1478 թ.— Ձեռ. Վասպ. 486։

— 260. Կարապետ քահանա, որդի Սողոմոնի. Ղազար անուն անձից նվեր ստացավ մի Աւետարան, որ գրել էր տվել Սարգիս արեղային՝ 1479 թ.—Ձեռ. Կես. ածած. 47 բ։

— 261. Կարապետ վրդ. առաջնորդ Տիւրիկի՝ 1480 թ.— Թորոս աղբ. Ա. 231։

— 262. Կարապետ, եղբայր Վարդան կրոնավորի, որ Կտուց անապատում, Խաչատուր արեղային գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։

— 263. Կարապետ գրիչ, օրինակել է Աւետարանը 1482 թ.—Սմբատեանց, Երնջակ 314։

— 264. Կարապետ քահանա, կինն է Սաղգաթ. հայր և ուսուցիչ Ազարիա երեցի, որ Վանում օրինակեց Աւետարանը՝ Խոջա Խդրշահի համար, 1484 թ. այս թվից առաջ Կարապետ քահանան նահատակվել էր Արճէշ քաղաքում.—Ձեռ. Վասպ. 497։ (Կարծում եմ նույն է № 205 Կարապետ քահանայի հետ, որի նահատակության տեղը [Արճէշ] և թվականը [1437 և 1452 թվերի միջև] նույնանում է սրա հետ։ Մեզ հայտնի չէ միայն ոչ այն Կարապետ քահանայի կնոջ անունը և ոչ էլ թե նա ունէր նաև Ազարիա անունով մի որդի։ Կարապետ նահատակ քահանայի հիշատակութիւնը անում է նույնպես իր Զաքարիա անուն աշակերտը, որ գրել է մի Աւետարան Վանում, 1495 թ.՝ Թորոս աղբ. Բ. 276)։

— 265. Կարապետ, որդի Սմբատի՝ որդւոյ Խոջա Խդրշահի, որ Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ, 496։

— 266. Կարապետ քահանա Ոստանի, հիշված 1486 թ.— Ձեռ. Վասպ. 502։

— 267. Կարապետ քահանա, հայր Գրիգորիսի, որ էր րաբունապետ Սևանի, 1486 թ.—Արձ. Սմբատեանց, Գեղարքունի, էջ 120։

— 268. Կարապետ, եղբօրորդի Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ. երբ Կարապետը արդէն մեռած էր.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 269. Կարապետ քահանա, կինն է Համաւար. հիշված են Սևանի Առաքելոց վանքի դրան արձանագրության մէջ՝ 1486 թ.

Սարգիս աթոռակալի կամ կաթողիկոսի ծնողների անունն է։— Սիսական 84, Անահիտ 1932, էջ 25։

— 270. Կարապետ, գրիչ. Բերկրիում օրինակեց Շարականը՝ 1488 թվին.—Ձեռ. Դաշեան, Բ. 50 ա։

— 271. Կարապետ քահանա, որդի Յոհաննէսի, և եղբորորդի Հայրապետ աբեղայի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը, 1490 թ. Կարապետ քահանան էլ ծաղկեց նույն Աւետարանը.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։

— 272. Կարապետ քահանա, գրիչ. օրինակեց Մայր Մաշտոցը՝ Աղթամարում, 1490 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. էջ 55 ա։

— 273. Կարապետ երեց Համշէնցի, գրիչ. օրինակել է «Ողբ Եդեսիոյ» Պոլսի մեր հայաբնակ նշանավոր Սամաթիա թաղում, 1493 թ.—Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 41, Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. 211։

— 274. Կարապետ եպիսկոպոս Կաֆայեցի, նվիրեց Պոլսի Սամաթիա թաղի Ս. Գէորգ եկեղեցուն մի հին Աւետարան, որ ինքը նորոգեց և կազմեց՝ 1495 թ.—Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 41, Տաշեան, Ուս. Ստ. Կալիսթ. 182, Թորգոմեան՝ Ստամպօլոյ պատմ. 212։

— 275. Կարապետ, որդի Թորոսի և հանգուցյալ եղբայր Յովհաննէս աբեղայի, որ Կեսարիայի Մանտիսուն գյուղում գրեց Յայսմաւուրքը 1495 թ.—Ալպոյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 276. Կարապետ աբեղա Բաղիշեցի, ընտիր գրիչ, միջակ մանրանկարիչ և կրոնական բանաստեղծ. գրել է էջմիածնի Մատենադարանի № 222 Գանձարանը, ծաղկել և իր կողմից կաֆաներ ու գանձեր ավելացրել (1483 թ). պատկերազարդել է մի Աւետարան, որ նվիրել է Մշու վանքին՝ 1496 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 43, 45։

— 277. Կարապետ, մահտեսի, հանգուցյալ եղբայր Վրթանէս Արևելցի կրոնավորի, որ Երուսաղէմում գրեց մի Գանձարան, 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— 278. Կարապետ, ազգական տանուտեր Յովհանի, որ Երուսաղէմի Բանծառ գյուղում գնեց մի Աւետարան, 1498 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 432։

— 279. Կարապետ քահանա, որդի Մկրտիչի, մերձավոր Յովհաննէս գրչի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

— 280. Կարապետ Ա Խիզանցի, կաթողիկոս Աղթամարի-

հաջորդ Սարգիս Ե-ի և նախորդ Ստեփաննոս Ը-ի (ԺԵ դար).— Հուսաք. 62 (կեղծիք)։

— 281. Կարապետ քահանա. գրիչ. օրինակել է Շիրակացու գործերը (ԺԵ դար).—Շիր. տեղ. XV։

— 282. Կարապետ երեց, գրիչ Թաչիկ անապատում, 1500 թ.—Տաշեան, Ցուց. 486։

— 283. Կարապետ քահանա, նվեր տացավ մի Աւետարան, որ Խաչատուր և նրա կինը Սալչուկ՝ գրել տվին Մելքիսեթ գրչին, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— 284. Կարապետ Ա. պատրիարք Կոստանդնուպոլսի «1489—1509 թ». հաջորդեց Նիկողայոսին.—Ազգապ. 2225։

— 285. Կարապետ Բաղիշեցի, ծնվել է Բաղեշ քաղաքում, շուրջ 1475 թ. հայրն է Ստեփան, մայրը Ալամշահ. գնաց Մշո Առաքելոց վանքը, ուր նախ աբեղա և ապա վարդապետ ձեռնադրվեց։ Վանքի առաջնորդ Թադեոս արքեպիսկոպոսը որդեգրել է նրան և դեռ իր կենդանության ժամանակ նրան արքեպիսկոպոս և վանքի առաջնորդ է ձեռնադրել տվել։ Կազմարար, գրիչ և մանրանկարիչ է. արտագրել է Սաղմոսը, Մաշտոցը և Ցայսմաւուրքը, բայց ավելի նշանավոր է իբրև տաղասաց։ Մեռել է 1550 թ? իր կենսագրությունը և իր տաղերի հավաքածոն կազմեց Ակինեան, ՀԱ 1937, էջ 318—343։ Արանցից նշանավոր են 1) Տաղ տարաբածոց, որ է 85 երկտող ոտանավոր՝ Նոյի երեք որդիների, ազգերի և աշխարհների մասին. գրված է 1540 թ. սկսում է այսպես. «Եկայք, Ադամայ որդիք, արարածք ամէն միաբան». Եվրոպայի և Հայաստանի աշխարհագրության վրա հետաքրքիր տեղեկություններ է տալիս (Bodleian 249). տպված է նախ Բազմ. 1880, էջ 97—100, այժմ էլ ՀԱ 1937, 328—338. 2) Ողբ ի վերայ արշաւանաց Շահ Իսմայէլի, որ Մշու Եղրդուտ վանքում 1513 թվին օրինակած Սաղմոսի հիշատակարանն է. տպված է նախ REA 1 (1920), էջ 94—101 և այժմ ՀԱ 1937, 338—343։ Սակայն հատկապես գեղեցիկ է՝

3) Տաղ վասն վարդին

Պուլպուլն է հագեր ի յոտըն կօշիկ,
Զվարդն կու փնտռէ սիրով անուշիկ.
Զայն է արձակեր, կու կանչէ վարդ, վարդ,
Վարդ, վարդ դու զուարթ,
Ես պուլպուլ, դու վարդ։

— 286. Կարապետ դպիր, տաղասաց (ԺԶ—ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 857։—Կարապետ անունով կան զանազան տաղասացներ, որոնց ժամանակը և նույնությունը դժվար է որոշել։ Այսպես՝ 1) Կարապետ դպիր, տաղասաց. իր երգն է «Պուլպուլն է հագեր ի յոտքն կօշիկ» (Գամառ-Քաթիպա, Ազգ. երգ. 1856, 154. տես նախորդը). 2) Կարապետ տաղասաց (1695 թվից առաջ), որի տաղերից տես Նոր ժող. Բ. 15.—տես և հաջորդները։

— 287. Կարապետ վրդ. Վարագցի, աշակերտ Սիմէոն Ապարանցու. ունի մանր գրվածքներ (ԺԷ դար)—Ազգապ. 2261։

— 288. Կարապետ վրդ. Ջամալ, աշակերտ Մարգար Պարոնտէրի ի Վարագ. ունի երգեր և գանձեր (ԺԷ դար).—Ազգապ. 2261։

— 289. Կարապետ Մոկացի. տաղասաց. գրել է Ոտանաւոր հին Հունաց և Ս. գրքի նշանավոր անձանց մասին. «Արդ Հոմերոս է առաջին, Լիկոյարգէս զկնի նորին...» (Tübingen, էջ 151)։

— 290. Կարապետ որդի Յակոբի, տաղասաց (ԺԷ—ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 1100 բ։

— 291. Կարապետ Ջահաստանեան, համբակ, տաղասաց. ԺԷ դար.—Տաշեան, Ցուց. 1100 բ։

— 292. Կարապետ վրդ. Բաղիշեցի, ի Փարխնդոյ. տաղասաց (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 1100 բ։

— 293. Կարապետ վարդապետ Անկիւրացի, տաղասաց. ԺԸ դար.—Տաշեան, Ցուց. 1100 բ։

— 294. Կարապետ Մելիտինեցի, Մելիտինէ կամ Մալաթիա քաղաքի եկեղեցու լուսարարը կամ փականյն էր. հավաքը չուրանալով նահատակվեց հրով՝ «1524 թ».—Զամչ. Գ. 516, Նոր վկ. 359, Ազգապ. 2228։ Նույնը չէ՞ № 300։

— 295. Կարապետ եպիսկոպոս Էջմիածնեցի. մեռաքան Հարանց անապատի՝ 1610 թ. գնաց Սեան, ուր հաստատեց Նոր անապատ.—Առաք. պատմ. 192, Սիսական 88 ա։

— 296. Կարապետ Բ Բոնած, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Բաղդասար Բ-ի և նախորդ Մարտիրոս Գուրջիի (ԺԷ դար)։—Հաւաք. 63։ (Ըստ Ալիշանի, Գաւազանագիրք 138 կա հիշված Կարապետ կաթուղիկոս Աղթամարի «1677 թ». թերևս նույնը լինի)։

— 297. Կարապետ Բ. Կեսարացի, ռամկօրեն կոչվում է Տէր Կրպօ. տգետ ու անպիտան քահանա, որ խարդախությամբ ու չարաշահությամբ հինգ անգամ դարձավ պատրիարք Պոլսի՝

«1676—9, 1680, 1681—84, 1686—7 և 1688 թ»։ Սրանից հետո Պոլսի պատրիարքական աթոռը աշխարհական տեղակալների ձեռքը մնաց։

— 298. Կարապետ պատանի, նոր վկա. հավատքը չուրանալով նահատակվեց Տրապիզոնում, 1698 թ. իր նշխարները ամփոփվեցին Ամենափրկիչ վանքում՝ առաջնորդ Յակոբ վարդապետի և Պոլսի նախկին պատրիարք Յովհաննէս եպս. Թիւթիւնջիի ձեռքով.—Ակինեան, Գուղնգիրք 141։

— 299. Կարապետ քահանա Համշէն գավառի Թորոսլի գյուղի, բարեպաշտ, քաջ և ազդեցիկ մարդ էր, որի ազդեցությունը տարածված էր ամբողջ Սև Գետի (Գարա-Տէրէ) հայ գյուղերի վրա։ ԺԸ դարու սկիզբը՝ Սիւրմէնէցի Ղուռուֆ օղլի Մէհմէդ մոլեռանդ մոլլան որոշել էր ամբողջ Սև Գետացի 16,000 հայերին մահմեդական դարձնել։ Տասնյակ տարի ամեն կողմ քարոզելուց հետո, հազարավոր մոլլաների և ենիչէրիների գլուխն անցած՝ արշավեց Սև Գետ, իր նպատակը զենքի ուժով գործադրելու համար։ Որովհետև Կարապետ քահանան այդ շրջանի ամենից ազդեցիկ անձն էր, իր ամբողջ բանակով դիմեց նախ Թորոսլի գյուղը, Ավագ շաբաթ օրը, երբ Կարապետ քահանան ժամերգություն էր կատարում։ Խուժանը նահատակեց նախ Կարապետ քահանային, հետո ընկավ ամբողջ ժողովրդի վրա։ Սարսափելի եղավ կոտորածը։ Դիմադրողներն ընկան, շատեր փախան դեպի Տրապիզոնի գյուղերը, մնացյալ ահագին բազմությունը իսլամական կրոնն ընդունեց։ Սրանք մնում են մինչև այժմ և կոչվում են մահմեդական հայեր։ Ընդարձակ տես Հայկունի «Կորած ու մոռացված հայեր, Սև Գետացիք» (Արար. 1895, 239—243 և 293—7), որից կրճատված է Նոր վկ. 702—9 (1708—10 թվերին)։

— 300. Կարապետ Մալաթիացի. նոր վկա. նահատակվել է 1724 թ. իր վկայաբանությունը մնել է մի Յայսմաւուրքի մեջ, որ այժմ գտնվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում (տես Manus. brit. mus. 182 ա)։ Հմմտ. № 294։

— 301. Կարապետ Բ Ուլնեցի, կաթողիկոս Հայոց «1726—1729 թ». Գաղատիոյ առաջնորդ էր, ընտրվեց և օծվեց Պոլսում՝ առանց Էջմիածնի հավանության։ Կանոնները դրավ Երուսաղէմի պատրիարքի ընտրության համար, աշխատեց միություն հաստատել հայ և կաթոլիկ համայնքների միջև, որի համար էլ Բենեդիկտոս ԺԳ պապին գրեց, բայց ի զուր։ Մեռավ «1729 հոկտ. 2» և թաղվեց Հռիփսիմէի վանքում։ (Տպագրված մի գրքի հիշատա-

*կարանում դրված է 1730 թ. Կարապետ կթղ.* REA *6, 123, իսկ ընտրությունից երկու տարի առաջ ՌՃՀԳ=1724 թ. հիշվում է իբրև կաթուղիկոս Էջմիածնի)։—Ջամբռ 28, Տաշեան, Ցուց. 1100 ա. իր ինքնակենսագրությունը՝ անդ, էջ 341։ Ջամչ. Գ. 801—5։*

— 302. Կարապետ *Աստուածատրեան, իշխան Աստապատի. գնաց Թաւրիզ և հավատքը ուրանալով Հէյդար խանի սիրելին ու գործակիցը դարձավ։ Չմնաց չարիք, որ չհասցներ Աստապատցոց։ Երբ Բեհնամ ուրացյալ վրացի խանը նստում էր Նախիջևանում, ամբողջ ժողովուրդը գանգատի գնաց նրա մոտ։ Խանը հանձնեց նրան ժողովրդի դատաստանին։ Ամեն անարգանքի մատնելուց հետո սպանեցին, 1751 թ.—Ջամչ. Գ. 837—852։*

— 303. Կարապետ *Բ. Գանձակեցի կամ Արևելցի. պատրիարք Երուսաղէմի «1762—1768 թ». աշակերտ էր Թէոդորոս Խորենացուն, որին և հաջորդեց։—Ջամչ. Գ. 866—7։*

— 304. Կարապետ *վարդապետ Մելիքեան, Հնձացի (մերձ ի Կարին), որ և Կարնեցի, 1736—1790 թ. տաղասաց. կյանքն ու տաղերը տես Ազգ. մատ. ՀԸ, 148—182 և Տաշեան՝ Ցուց. 1100 բ։*

— 305. Կարապետ *Ղըրմֆասմենց (Ակինեան գրում է Ղըրիմքէսըմենց), կաթուղիկոս Աղթամարի «1783—1787 թ». հաջորդել է Թովմա կաթուղիկոսին՝ 1783 թ. ժողովուրդը դժգոհ է լինում և 1788 թվին երևան է գալիս Մարկոս հակաթոռ կաթուղիկոսը։ «1802 թվին» Կարապետը ներկա է լինում Իւչ քիլիսէի ժողովին, ուր օծում է Դանիէլ կաթուղիկոսին։ Վախճանվում է 1804 թ. Լիմի մոտ և Աղթամար տարվելով՝ թաղվում նախապես պատրաստած շիրմում, որի թվականն է 1799։—Հաւաք. 64, Ակինեան, Գաւազանագիրք 158—163, Ազգապ. 3175։*

— 306. Կարապետ *Գ Շատախցի, կաթուղիկոս Աղթամարի. հաջորդեց Միքայէլ Վանեցուն, որ նստել էր 1796 թ. գահակալեց մինչև 1803 թ. այս թվին հրաժարվեց աթոռից և գահը թողեց Խաչատուր Վանեցուն, որի մահից հետո նորից գահակալեց «1814—1816 թ», երբ մեռավ.—Ազգապ. 3175, 3614, Հաւաք. 68, 56, 64, Ակինեան, Գաւազանագիրք 167։*

— 307. Կարապետ *Դ. կաթուղիկոս Աղթամարի († 1823?). ենթադրվում է հաջորդ Խաչատուրի, որ նստել էր 1814—1816 թ. ուրիշներ նույնացնում են Կարապետ Գ-ի հետ. Հաւաքարանը չգիտէ սրան.—Ակինեան, Գաւազանագիրք 168։*

— 308. Կարապետ *Գ. Պալաթցի, պատրիարք Կոստանդնու-*

պոլսի «1823—1831 թ». հաջորդեց Պօղոս պատրիարքին. իր օրով եղավ կաթոլիկ հայոց հալածանքը Տաճկաց պետության կողմից, որի արդյունքն եղավ եվրոպական միջամտությամբ կաթոլիկ հայոց պատրիարքության հաստատությունը «1830 թ»։

— 309. Կարապետ քահանա Տէր-Գրիգորեան, Պարտիզակցի. ներկա եղավ Ցովհաննէս Փերէնեանի նահատակության, որի պատմությունը գրեց 1838 թ.—Ազգապ. 3717։

— 310. Կարապետ վրդ. համարվում է «Այսօր զուարճացեալ» շարականի հեղինակը. ժամանակն անհայտ.—Տաշեան, Ցուց. 1100 բ։

† ԿԱՐԱՊԵՏԻԿ, ար. նախորդ անվան փաղաքշականն է, որով ունինք՝

— Կարապետիկ, գրիչ. 1685 թ.—Tübingen 59։

ԿԱՐԱՊԻՆ, ար. ծագումն անհայտ. հիշատակված է մի անգամ ԺԱ դարում։

— Կարապին, հայր Աշոտի, որ Սիւնեաց Սենեքերիմ Ա թագավորի իշխաններից էր և մի գյուղ նվիրեց Տաթևի վանքին, 1089 թ.—սեռ. Կարապինայ՝ Օրբ. ծթ (ուղղականն է թերևս Կարապեն)։

ԿԱՐԴՈՍ, ար. թվում է սովորական անուն, որ Խորենացին ձևափոխել է այսպես. հմմտ. Կարդոն եպիսկոպոս Անտիոքի (Եւս. պատմ. Դ. ա)։

— Կարդոս, նահապետ հայկազն. Արա գեղեցկի որդին էր. Շամիրամ թագուհին վերակոչեց նրան Արա և կարգեց Հայաստանի վերակացու. Շամիրամի հետ միասին պատերազմեց Ասորեստանցոց թագավոր Նինուասի դեմ և մեռավ պատերազմում (ըստ Զամչ. Ն. Բ. 1725 թ).—Խոր. Ա. ժե, (ժթ). Ցհ. կթղ. բ. Ուխտ. Ա. ժը. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 44. Մին. համդ. 8.—սեռ. Կարդոսի՝ Ցհ. կթղ. բ. Մին. համդ. 8։

* ԿԱՐԷՆ, ար. < իրան. Kārēn անունից, որի զանազան տառադարձություններն են լտ. Carenes, հուն. Καρινᾶς, արաբ.-պրս. قارن Qāran. հմմտ. Qāren-al-falhawī (Վշտասպի նշանակած 7 իշխաններից մին), Carenes զորավար Մեհերդատի 50 թ., Καρίνας նահապետ, դեսպան Արտաշիր Ա-ի առ Արտաւան թագավոր Արշակունի, Qāren որդի Գուշտասպի՝ Յազկերտ Ա-ի ժամանակ (Justi 156—7), Կարեն զորավար Պարսից Շապուհ թագավորի (Բուզ. Դ. ծե), Կարենի պահլու՝ պահլավական ազնվական ցեղ (Խոր. Բ. իը)=լտ. Carenes (Տակիտոս), արաբ. Qāran (Տա-

*բարի),* Qāran *որդի Կաւայի, զօրավար Նոդար արքայի (Շահնամէ 1, 128) են (Հիւբշ. էջ 45)։*

— 1. Կարէն *կաթուղիկոս Աղուանից. այսպես է կոչում Մխիթար Գօշը (Հայապ. 384) Աղուանից Մովսէս Ա կաթուղիկոսին (Կղկնտ. Գ. իդ)։ Բացի սրանից Մխիթար Գօշը Աղուանից Շուփհաղիշոյ, Մատթէոս, Սահակ, Կարէն, Պանտ և Ղազար կաթուղիկոսներին դնում է Եղիշէ առաքեալից մինչև Լուսաւորիչ, իսկ Կղկնտ. և Կիր. դնում են Դ դար։*

— 2. Կարէն *իշխան Ամատունի. մին այն չորս նախարարներից, որ Տիրան Բ ուղարկեց հրավիրելու համար Դանիէլ քորեպիսկոպոսին կաթուղիկոսական աթոռը «347 թ»։—Բուզ. Գ. ժդ։*

— 3. Կարէն *Սահառունի, մասնակցեց Վարդանանց պատերազմին (441 թ).—Եղիշ. 77. Ցայսմ. օգոստ. 7։*

*ԿԱՐԻՆԷ, *իգ. < կազմված է* Գայիանէ *անունից՝ հնչման ձևափոխությամբ. հմմտ.* Գարեան *կին (Ջեռ. Թաւր. 4 բ, ուր նրա հետ հիշատակված են Մարգիրոս, Կրիգոր, Եղիսաբետ են սխալագիր անունները)։ Վերջին ժամանակներս ընդունվեց իբրև անկախ անուն՝ ազդվելով անշուշտ* Կարին *քաղաքի անվան պատմական նմանությունից,*

† ԿԱՐՃԻԿ, *ար. < հյ.* կարճ *բառի փաղաքշականն է. սրանից ունինք* Կարճիկեան *ազգանունը (Կովկաս), բայց սա երևի* կարճիկ *մականունից է։ Իբրև անձնանուն գտնում եմ մի անգամ ԺԲ դարում։*

— Կարճիկ, *որդի Կարապետի (№ 2), հայր Ստեփաննոս († 1131) կաթուղիկոսի Աղուանից և հորեղբայր Գրիգորիսի (№ 169), որ Աղուանից կաթուղիկոս օծվեց պատանի հասակում «1139 թ».—Հայապ. 386, Շնորհ. և պրգյ. էջ 161։*

† ԿԱՐՄԻՐ, *ար. < հյ.* կարմիր *բառից. հմմտ. Դեղին, Կանաչ, Կապուտիկ, Սևուկ, Թրք. Սարի անունները. իր համազորն է պրս.* ⟵ Surxa, *որդի Թուրանի Աֆրասիաբ թագավորի (Շահն. 2, 355)։*

— Կարմիր, *վանահայր և ճգնավոր, բնակվում էր Ծոփաց Գաղին բերդի մոտ՝ ավերակ մի եկեղեցում. հրաշքով մի վիշապ է սատկեցրել (Ժ դար)։—Ասող. Գ. է։*

*ԿԱՐՄՐԱԿԷԼ, *ար. ծագումը տես* Գամրեկել:

— Կարմրակել *զօրավար Դաւիթ կիւրապաղատի Տայոցժամանակցեց Մամլանի պատերազմին և հաղթեց (Ժ դար)։—Ուռհ. 36, 37. Սմբ. պատմ. 40։*

*ԿԱՐՊԻԱՍ, ար. < կամ կրճատված է Պողիկարպոս < հուն. Πολύκαρπος անունից և կամ Եւսեբիոս Կարպիանոս ձևից է (որի կանոնները դրված են Աւետարանի սկզբում)։ Այս անունը չի գործածված մեր մէջ. բայց կա մի անգամ հիշատակված ԺԴ դարում (տես տակը)․ իսկ ժղ. Կարպիս անունը, որ գործածական է Պոլսում իբրև փաղաքշական Կարապետ անվան, կապ չունի սրա հետ։

— Կարպիաս, որդի Դանձիի և եղբայր Գրիգոր կրոնավորի, որ Երուսաղէմում, Տէր Աւագ երեցին գրել տվեց մի Աւետարան ու Ճաշոց՝ 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։

† ԿԱՔԱՒ, ար. և իգ. < հյ. կաքաւ թռչունի անունից. իր համազորն է պրս. مشکانک Muškanak (բուն նշ. «կաքաւ»), որ իգական անձնանուն է։ Այս անունով հայտնի է օր. Մուշկանակ՝ դուստր գեղջուկ ջաղացպանի, ապա դարձավ կին Բահրամ-Գուրի (Շահն. 5, 474)։ Կաքաւ անունը մեր մէջ նախ արական էր. այսպես ունինք՝

— 1. Կաքաւ, եղբօրորդի մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի, որ գրել տվեց մի Յայսմաւուրք Լիմ կղզում, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 բ։

— 2. Կաքաւ դարձավ ավելի ուշ իգական, ինչպես գտնում եմ 1798 թ. (Ձեռ. Վասպ. 223) և այժմ էլ կենդանի է։

* ԿԵԿԵԼ, իգ. < վրացական անուն է, որ ծագում է վրաց. კეკელა կեկելա «գեղեցկուհի» բառից։ Գործածական է միայն Վրահայոց մէջ։ (Ըստ այսմ կապ չունի Կեկիլիա անունը=Չեչիլիա, ֆր. Cécile կույս, որ մեծ հարգ ունի կաթոլիկ եկեղեցում)։

ԿԵՆԱ, ար. այսպես է գրում Յովսէփեան՝ Խաղբակեանք 41 այն անունը, որ Սիսական 122 գրում է Կենա ձևով (տես վերը, հտ. Ա. էջ 406)։

ԿԵՆԱՆ, ար. ծագումը անհայտ։ Մի անգամ միայն հիշված է՝

— Կենան Ամատունի, նախարար Արշակ Գ-ի («379—386 թ») օրով։—Խոր. Գ. խգ։

† ԿԵՆՍԱԲԵՐ, ար. < հյ. կենսաբեր «կյանք բերող» բառից. շատ հազվագյուտ նորակերտ անուն, որ այժմ գործածական է Երևանում։

† ԿԵՉԵՂԱԿ, ար. < հյ. կաչաղակ թռչնանվան ժողովրդական ձևից։ Մի անգամ հիշատակված է՝

— Կեչեղակ վարդապետ, «որ գրոց աշակերտ էր». սպանվեց Սսում՝ Թուրքերի ձեռքով ՊԻԴ=«1375 թ».—Սամ. անեց. շար.

170 (գրված է Կեչեղակ). Ազգապ. 1944, Սիսուան 542 բ (գրված Կեչապակ)։

*ԿԵՌԱՆ, իգ. < հուն. κυρία Ἄννα «տիրուհի Աննա» ձևից համառոտված. ըստ որում ունինք և Կիրաննայ, Կիռ Աննայ ամբողջական ձևերով։ ԺԲ—ԺԳ դարում Կիլիկիայում գործածված անուն է։

— 1. Կեռան տիկնաց տիկին, մայր Կեռան Թագուհւոյ՝ կնոջ Լևոն Գ-ի (տես տակը № 4). ըստ այսմ ծնված պիտի լինի ԺԲ դարի վերջին քառորդում։—Հայապ. 544, Սիսուան 484 բ։

— 2. Կեռան, դուստր Կոստանդին Լամբրոնացու, քույր Օշին մարաջախտի. հիշված է 1274 թ. իր որդիներն են Կոստանդին Թագադիր Հայոց, Օշին և Սմբատ.—ՀԱ 1898, 246 և 248։ (Նույն տիկին Կեռանը հիշատակված է նաև Թորոս աղբ. Բ. 437՝ 1259 թվին. բայց հրատարակիչը այնպես է կրճատել հիշատակարանը, որ շատ բան չի հասկացվում)։

— 3. Կոան, դուստր Վարդի, քույր Գրիգոր միայնակեացի, որ Իտալիայի Salerno քաղաքում գրել տվեց մի ժողովածու, 1283 թ.—Ձեռ. Մխիթ. 10 բ։

— 4. Կեռան, դուստր Հեթմոյ Գ տեառն Լամբրոնի. կին Լևոն Գ-ի. Թագուհի Հայոց. ամուսնացել է «1262 թ». իր պատկերը նկարված կա 1272 թվին իր գրել տված Ավետարանում (Ցովսէփեան, Շողակաթ 204, Մի էջ հայ արուեստի 24). 1274 թվին Ստեփաննոս Իրիցու որդի գրչին գրել տվեց Վարդանի գործերը (Սիսուան 97 ա, Ձեռ. Վիեննա. Բ. 1063, 1068, ուր կա իր հիշատակարանը)։ Մի ուրիշ Ավետարան ևս գրել է տվել 1283 թ. Սկեռայ վանքում, Ստեփաննոս քահանայից (Բարխուտ. Արցախ 39)։ Կրոնավոր է դարձել և կոչվել է նաև Թեանի կամ Թէոֆանիա (Ալիշան, Սիսուան 519 բ, Ցուցիկք Ա. 161)։ Մեռել է «1285 թ»։—Վահր. ոտ. 236. Սամ. անեց. շար. 152. Ձեռ. օշ. 100 ա. Պատմ. կիլ. 212. ՀԱ 1898, 246. Ցիշատ. (Karst Դատաս. էջ ե). Տաշեան, Ցուց. 906 բ.—Կեռանէ՝ Անանուն ժմ. 26։—Կիրաննայ՝ Պատմ. լմբ. 242.—Կիռան, Կիռ Աննայ՝ Տաշեան, Ցուց. 333 բ. Հայապ. 483, 544.—սեռ. Կերանի՝ Զարբ. Թրգմ. 255։

† ԿԵՌԱՍ, իգ. < հյ. կեռաս պտղանունից. հիշվում է ՌԾԱ=1602 թվին Սեբաստիայում (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 85 և Թորոս աղբ. Ա. 184, Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331)։ Մի երկրորդը՝ Կեռիաս ձևով՝ նույնպես 1602 թ. Կեսարիայում, Ձեռ. Վիեննա. Ա. 535։

*ԿԵՌՍԱԿ, ար. < կրճատված է Կիռ Սահակ անունից։ Մի անգամ ունինք՝

— Կեռսակ իշխան, տեր Մաղվոյ (Մաժղառոյ) և Սիկոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ»). գերի ընկավ Քայքաուս Սուլթանի դեմ պատերազմի ժամանակ (1216), բայց Լևոն Բ-ի ձեռքով ազատվեց։ Զապէլ Թագուհու ժամանակ միանալով ուրիշ իշխանների հետ, ապստամբվեց. ուզում էին Հայոց գահը բարձրացնել Անտիոքի բրինձ Ռուբէնին։— Սմբ. պատմ. 117, 118. Միխ. ասո. իը (=իէ). Հեթ. ժմնկ. Սամ. անեց. շար. 147. Սիսուան 192, 288—9, 322, 471, 521։

ԿԵՌՍԷ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ՌԿԹ=1620 թ. (REA 10, 36)։

ԿԵՐԱԶՈՅ, իգ. ծագումն ինձ անհայտ։

— 1. Կերազոյ, կին Ներսէս քահանայի. հիշված է մագաղաթյա երկաթագիր անթվական մի պահպանակի վրա (Տաշեան, Ցուց. 703 ա)։

— 2. Կերազոյ, կին Վարդի և մայր Գրիգոր միայնակեցի, որ Իտալիայի Salerno քաղաքում գրել տվեց մի ժողովածու, 1283 թ.—Չեռ. Մխեն. 10 բ։

ԿԵՐՈՒԽՆԱ, իգ. ծագումն ինձ անհայտ. (Թերևս ժղ. տէրուխնա «տիրուհի, երեցկին, քահանայի կին» բառից)։ Հնագույն հիշատակությունը գտնում ենք 1572 թ. Թաթարախոս Լեհահայոց մեջ Կերուխնա օղլու ձևով (Տաշեան, Ցուց. 908)։ Ավելի ուշ ունինք Լեհահայոց մեջ 1603 թ. Կերուխնա ձևով՝ Տաշեան, Ցուց. 901—2 և Կամենից 166։

†ԿԵՑՈՒՆ, ար. < հյ. կեցուն «երկայնակեաց, մնացական» բառից, որ գրաբարից ավանդված չէ (չունի ԱԲ) և չկա նաև գավառական բառարանում։ Այս անունը հիշատակված է ԺԵ դարում և ավելի ուշ մինչև ԺԸ դար։

— 1. Կեցուն, որդի Վարդի՝ եղբոր Սիրատանի, որ Կեսարիայի Մանտխոն գյուղում գրել տվեց Յայսմաւուրքը՝ 1495 թ.— Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 2. Կեցուն, հանգուցյալ որդի տանուտեր Յովհանի, որ Երուսաղէմում գրել տվեց մի Գանձարան 1498 թ.—Չեռ. Սեբ.= ՀԱ 1927, 432։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ 1543 թ. (Չեռ. Սեբ.=ՀԱ 1925, 377), 1591 թ. (Չեռ. Հալէպի, Բ. 7) և 1772 թ. (Ազգ. մատ. ՀԸ, էջ 350)։

†ԿԹՈՒՆ, < հյ. մգ. կթուն բառից, որ Մուշի, Վանի և Նոր-Բայազետի բարբառներով նշանակում է «նուշի, ընկույզի են միջուկը, որ կորիզի մեջ ծածկված է»։ Հիշատակված է մի անգամ 1693 թ. (Ջեռ. Վաստ. 336)։

ԿԻԲԱ, սեռն ու ծագումը անհայտ։ Հիշատակված է մի անգամ ԺԳ դարում։

— Կիբա, որ Աշոտ Դսեղեցու (№ 65) հետ միասին միաբանել է (այսինքն նվիրներ է արել) Հոռոմոսի վանքին և տարեկան մի օր պատարագ ստացել՝ 1246 թ.—Արձ. Շիրակ 24։

ԿԻԼԻԿ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է Վրդ. առ. 102։ Համմտ. հաջորդը։

ԿԻԼԻԹ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է Վրդ. առ. 102. համմտ. նախորդը։

ԿԻԿԼԻ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է 1676 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 91։

Կիմար տես Ղիմար։

ԿԻՇԿԷՆ, ար. իրանական անուն է՝ կազմված փաղաքշական -ēn մասնիկով (Հիւբշ. 90)։

— Կիշկէն նահապետ Բագէնից. ուղեկից եղավ Մեծն Ներսէսին, երբ սա գնում էր Վաղէս կայսեր մոտ դեսպանությամբ «364 թ».—Բուզ. Դ. ժա։ (Գրված է Կէշկէն նահապետ Բառնէից՝ Մեսր. եր. 52)։

*ԿԻՋԻԳԱԿ, ար. < Թրք. کچی Keči «այծ»+ بگ beg «բէգ» բառերից. համմտ. Քեչի և Քիչիխան ձևերը։ (Սրա պ և կ բաղաձայնները ցույց են տալիս, որ պետք է կարդալ արևմտյան տառադարձությամբ Gičibag, որի մեջ giči թրք. բարբառային արտասանություն է, որ այժմ էլ կենդանի է ազերի բարբառում)։ Հիշված է անթվական մի հիշատակարանում (Manus. brit. mus. 56 ա)։

*ԿԻՊՐԻԱՆՈՍ, ար. < հուն. Κυπριανός անունից (> լտ. Cyprianus, ֆրանս. Cyprien), որ նշանակում է բուն «Կիպրացի»։ Հայտնի են Կիպրիանոս Կարքեդոնացի (նահատակված 258 թ) և Կիպրիանոս Անտիոքացի, որի անունով կան մինչև անգամ ախթարական գրվածքներ (Ադեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 68 և Ակինեան, Մատեն, հետազ. Ա. 89—96)։

— 1. Կիպրիանոս եպիսկոպոս Անտիոքի, Գեմունդի բանակումն էր, երբ սա դուրս եկավ պատերազմի Դանիշմանի դեմ, ուր և սպանվեց «1100 թ»։—Ուռհ. 273։

— 2. Կիպրիանոս կայր! գրիչ. օրինակել է ծառընտիրը՝ Յովհաննէս քահանայի համար (1005 թուից հետո և 1506 թուից առաջ).—Տաշեան, Ցուց. 14։

*ԿԻՐԱ, իգ. < յուն. κυρία «տիրուհի» բառից (Չեմ կարող դնել թթր. كراي giray, girey բառից, որ Ղրիմի Թաթար խաների տիտղոսն էր. այն պատճառով որ Թաթար խաների այս կոչումը սկսվեց 1478 թվից. մինչդեռ մեր մեջ բառը գործածված է նրանից երկու դար առաջ։ Երկրորդ՝ որ մեր մեջ բացի Կիրայ ձևից, կա նաև կիրա. իսկ թրք. այ վերջավորությունը չի կրճատվում. ինչ. սառայ և ոչ թե սառա «պալատ»)։

— 1. Կիրա խաթուն, կին Մկրտիչ քահանայի, որ Բաբերդում գրել տվեց մի Ճաշոց, 1223 թ.—Տաշեան, Ցուց. 20 բ։

— 2. Կիրախաթուն, քույր Կոստանդին Բ կաթողիկոսի (1286—1289) և կին Բասիլ քահանայի (№ 12).—Զարբ. Թրգմ. էջ 266։

— 3. Կիրայ, կին Սիրունի, ճգնավոր, մայր Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 301։

— 4. Կիրայ, մորաքույր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 5. Կիրա խաթուն, կին Աւետիք քահանայի, մայր Մխիթար արքեպիսկոպոսի և առաջնորդի Ամասիոյ, 1424 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 122)։

— 6. Կիրա խաթուն, կին Պետրոս քահանայի, որի դուստրը՝ Ուլուխաթուն, դնեց մի Աւետարան Կաֆայում, 1437 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 238։

— 7. Կիրայ խաթուն, կին Կիրակոսի և մեծ մայր Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 8. Կիրայ խաթուն, դուստր Բեհնամի և քույր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 9. Կիրայ խաթուն, մորաքույր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայլիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 10. Կիրախաթուն, քույր Դեսպինայի՝ կնոջ Շնոփորի,

որ Սեբաստիայում գրել տվեց մի Յայսմաւուրք 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

***ԿԻՐԱԿԷ**, իգ. < հուն. κυριακή «տերունական» (իգական), որ մեր մեջ «տիրուհի» իմաստն է ստացել։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1634 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 548)։

***ԿԻՐԱԿՈՍ**, ար. < հուն. Κυριακός անունից, որ բուն նշանակում է «տերունի, տերունական»։ Այս անունով հայտնի են մի քանի սրբեր Յայսմաւուրքում։ Հայերեն հարազատ տառադարձությունն է Կիւրակոս, որ ապա դարձել է Կիրակոս, ճիշտ ինչպես կիւրակէ (օրը), որ նույն բառի իգականն է, դարձել է ավելի ուշ կիրակի (Հիւբշ. 335)։ Սրա կրճատ ձևն է Կոկոս, որ տես վերը՝ էջ 576։

— 1. Կիւրակոս, որդի քրմի. Լուսաւորիչը սովորեցրեց նրան և ձեռնադրեց եպիսկոպոս.—Ագաթ. § 845։ (Արաբ. Ագաթ. 72 նույնին կոչում է Կիրիակոս եպս. Արշամունեաց)։

— 2. Կիրակոս Շահապ, եպիսկոպոս Տայոց, ժամանակակից Խոսրով Գ («384—415 թ») թագավորի.—Բուզ. Զ. ժա.—սեռ. Կիւրակոսի՝ անդ։

— 3. Կիրակոս եպիսկոպոս Եկեղեաց (Κυριακὸς ἐπίσκοπος Α'ἴγλης), ներկա եղավ Քաղկեդոնի ժողովին (451).—Պալճեան 14։

— 4. Կիրակոս, աշակերտ Անանիա Շիրակացու «713թ».—Սամ. անեց. 82. (տես և Հերմոն)։

— 5. Կիրակոս ճգնավոր, աշակերտ Դաւթի. տեսիլքում հայտնվեցին իրեն Թադէոս առաքյալի գերեզմանը և Սանդուխտ կույսի մասունքները՝ Արտազի Շաւարշան քաղաքում, ուր և շինվեց Թադէոս առաքյալի վանքը (ըստ Յայսմ. ՃՀ և Քսի 723 թվին, իսկ ըստ Գիւտ նշ. Թադ. Վահան Մամիկոնեանի մարզպանության ժամանակ, ինչպես ունի նաև Ձեռ. Վեննա. Բ. 396)։—Գիւտ նշ. Թադ. 86, 87, 89, 90. Ձեռ. Կարին. էջ 87. Յայսմ. մայ. 30.—սեռ. Կիրակոսի՝ Երզն. մաթ. 226. Մխ. այրիվ. 63.—Ջամչ. Ա. 584—5, Զարբ. Թրգմ. 17—18. Հայապ. 64։

— 6. Կիւրակոս զինուորական, բնանկիր Բիւրականի գերիների. հավատքը չուրանալով նահատակվեց Նսր ոստիկանից «926 թ».—Ցհ. կթղ. կզ. Վրդ. խզ.—Կիրակոս՝ Յայսմ. ապր. 16։

— 7. Կիւրակոս ոմն աշխարհական, բնանկիր Բիւրականի գերիների. նախորդի հետ նահատակվեց Նսր ոստիկանից «926 թ».—Ցհ. կթղ. կզ. Վրդ. խզ.—Կիրակոս՝ Յայսմ. ապր. 16։

— 8. Կիւրակոս, հայր վանաց, Տարօնում Պետրոս գրչին

գրել տվեց Գրիգոր Նիւսացու Մեկնութիւն Երգ երգոցի, 973 թ.— Շողակաթ 189, Զարբ. Թրգմ. 370։

— 9. Կիրակոս վաճառական, Տախաւեր գյուղում, Յովհաննէս գրչին և Յովսէփ քահանային գրել տվեց մի Աւետարան, 988 թ.—Շողակաթ 190։

— 10. Կիրակոս, եղբօրորդի Կոկոնայ, առաջնորդ Արցախի Ս. Պօղոս-Պետրոս ուխտի, կանգնեցրել է մի խաչքար 997 թ.— Արձ. Արցախ 91, Ազգագր. հանդ. Բ. 8, Բարխուդարեան, Ուխտ. յիշ. էջ 5։

— 11. Կիրակոս քահանա, հայ, Տփղիսեցի, Ուխտանէս պատմագրի խնդրանոք վրացերենից հայերենի թարգմանեց Կիւրիոնի թղթերը (Ժ դար).—Ուխտ. Բ. դ։

— 12. Կիրակոս «գծծակերպ գիտնական, որ վարուք առաւել քան թէ բանիւք վարդապետէր». Նստում էր Նիգ գավառի Թեղենեաց վանքը (Ժ դար).—Ասող. Գ. Թ։

— 13. Կիրակոս երեց, Մակեդոնիայի Ադրիանուպոլիս քաղաքում, հայազգի Յովհաննէս պատուսպաթարի համար օրինակեց Աւետարանը 1007 թ.—Զարբ. Թրգմ. 158. Ձեռ. Վեննա. Ա. 517։

— 14. Կիրակոս Երզնկացի, «ուղղափառ և ողորմած» մարդ, որի միայն տունը ազատվեց Երզնկայի երկրաշարժից՝ 1011 թ.— Միխ. աս. ի. Մխ. այրիվ. 72։

— 15. Կիւրակոս երեց, հյուրատես կաթողիկոսարանի. գտնվում էր Պոլսում. Կոստանդին Թ կայսրը իր մահվան ժամանակ «1028 թ» նրան հանձնեց Անիի ժառանգության պայմանագիրը, որ Կիրակոս չերեցը պահեց և ծախեց Միխայէլ Դ կայսեր՝ «1038 թ», որից էլ անցավ Միխայէլ Ե կայսեր («1041 թ») և սրանից էլ Կոստանդին Ժ Մոնոմախոս կայսեր («1042 թ»), վերջինս Գագիկին բանտարկեց և տիրացավ Անիին։—Լաստ Ժ։

— 16. Կիրակոս հռետոր, ի Պոլիս, հմուտ էր հայ և հույն դպրութեանց. Գրիգոր Վկայասէր կաթողիկոսը վարձեց նրան և թարգմանել տվեց Ոսկեբերանի Գործք առաքելոցի Մեկնութիւնը (1077 թ)։ Բայց այս թարգմանությունը շատ խրթին լինելով՝ Կիլիկիայում, Կիրակոս վարդապետի ձեռքով նորից խմբագրվեց.— Ոսկ. գծ. 143, 395, 457.—սեռ. Կիրակոսի՝ Ոսկ. գծ. 457։—Ձեռ. Դաշեան, Ա. 60 բ։

— 17. Կիրակոս վարդապետ Դրազարկցի, գիտնական, հոգևոր որդի Գրիգոր Վկայասէրի, աշակերտ Գէորգ կաթողիկոսական փոխանորդի և դասընկեր Գէորգ Մեղրիկի։ Սրա հետ ճգնում

*էր Դրազարկի վանքում, որի համար կանոններ էլ հաստատեց (ՇՀ=1121 Թ. ըստ Սամ. անեց. 128)։ Բարսեղ կաթողիկոսի և Գէորգ Մեղրիկի հետ միասին այցելեցին Քեսունի Կարմիր վանքը՝ քննելու համար Ստեփաննոս Մանուկ վարդապետին (Զամչ. Գ. 15, Տաշեան, Ցուց. 751)։ Հրամանաւ Գրիգոր վկայասէր կաթողիկոսի նորից խմբագրեց Ոսկեբերանի Գործք Առաքելոցի Մեկնութիւնը, որ Կիրակոս հռետորը թարգմանել էր Պոլսում՝ խրթին լեզվով (տես № 16)։ Այնուհետև Կիրակոս վարդապետը խնդրեց Վկայասէրից, որ թարգմանել տա նաև Ոսկեբերանի Մեկնութիւն Յովհաննու, որ թեև Ոսկեդարում թարգմանված էր, բայց կորել էր։ Գրիգորը սկսեց ասորի Անդրէաս երեցին թարգմանել տալ, բայց Կիրակոսը չհավանելով՝ խնդրեց որ հունարենից թարգմանվի նորից։ Կաթողիկոսը թողեց Անդրէասին և Միջագետքի Առօն իշխանի նօտար Թէոփիստէ հույն հռետորին դիմելով՝ մեծ վարձով թարգմանել տվեց։ Կաթողիկոսը մեռավ «1105 Թ» և գործը կիսատ մնաց։ Կիրակոսը իր ծախսով շարունակել տվեց և ապա համեմատելով ոսկեդարեան, ասորական և հունական թարգմանութիւնները, միացրեց, ուղղեց, լրացրեց և այսպես խմբագրեց ամբողջ գիրքը, 1112 Թ. (Հայապ. 353)։ Մեռել է 1127 Թ. և թաղվել Դրազարկի վանքում, իր դասընկեր Գէորգ Մեղրիկի կողքին (Սիսուան 231)։— Ոսկ. գծ. 457. Ոսկ. յհ. ա. յիշ. և բ. յիշ. Կրպտ. սարգ. յոջ.—սեռ.* Կիրակոսի՝ *Ոսկ. յհ. բ. յիշ.— բց.* ի Կիրակոսէ՝ *Ոսկ. յհ. բ. յիշ.—Տաշեան, Ցուց. 680, Զարբ. Հին դպր. 602—3, 705. Թրգմ. 612—3, 723. Ձեռ. Դաշեան, Ա. 61 ա.—տես և* Կիւրոս *№ 2։*

— 18. Կիրակոս *Թարգմանիչ, աշակերտ Գրիգոր Վկայասէրի. Շարականի սկիզբը հիշվում է ըստ ոմանց՝ թերև հեղինակ «Արևելք գերարփի» շարականի, որ ուրիշներ ընծայում են Կիրակոս Երզնկացուն։ (Թերևս նույն է նախորդի հետ, որ Տաշեանի ցուցակում, էջ 1101 գ արդեն* թարգմանիչ *տիտղոսն ունի)։—Այս նույն անձն է նաև Կիրակոս աշակերտ Վկայասէրի, որ լրացրել և ավարտել է Տօնամակը. այն է զանազան սրբերի վկայաբանութիւններ, որոնց հավաքման ձեռնարկել էր արդեն իր ուսուցիչը՝ Գրիգոր Վկայասէր (Վրք. և վկ. Ա. յոջ.)։ (Հայապ. 352 նույն է դնում նախորդի հետ)։ Վկայասէրը գրել էր 46 տօն, Կիրակոսը ավելացրեց նրա մահից հետո ևս 30։ Իր հիշատակարանը տես Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ ձը—ձթ։—Ալիշան, Շնորհ. 32, Ձեռ. Վենետ. Բ. 1210։*

— 19. Կիրակոս *կրոնավոր, Դրազարկի վանքում Գէորգ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1113 թ.*—Tübingen, *էջ 4։*

— 20. Կիրակոս *գրիչ. Ամիթում Ղուկաս երեցի մոտ գտնելով Նանայի Յովհաննու Մեկնութեան մի օրինակ, ընդօրինակեց 1155 թ.—Նանայ, էջ ԺԶ.—սեռ.* Կիրակոսի՝ *Նանայ, էջ 443, 445 (յիշատ.)։—Զարբ. Թրգմ. 624—5։*

— 21. Կիրակոս, *որդի Միրմանի. Աղուանքից գնաց Կիլիկիա, իբրև զինվորական մտավ Լևոնի բանակը և ապա կարգվեց բերդապահ Յահնոյ կամ Անւոյ քաղաքի, 1179 թ.—Ոսկուրեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 201, 297 (կեղծիք)։—Տես և Լևոն Բ (էջ 416)։*

— 22. «Կիրակոս *վարդապետ». ծայրանուն Վերափոխման Ս. Աստուածածնի երկրորդ աւուր «Այսօր զանճառելի» շարականի վերջին մասի. սկզբից այբուբենի կարգով է (Թիւ ՀԶ). այս շարականը վերագրվում է Շնորհալուոյն († 1173 թ), Շարականի սկիզբը դրված ցանկում։*

— 23. Կիրակոս, *միաբան Սաղմոսավանից. 1187 թվին գերի քշվեց Դուին, ուր հազիվ ազատվեց Նախաղանից (Միաբան, Գոր. և շմ. էջ 54)։*

— 24. Կիրակոս, *վանահայր և առաջնորդ Կարնոյ Խանատավլուց անապատի, 1188 թ.—Ձեռ. Վասպ. 78։*

— 25. Կիրակոս, *փակակալ Ղազարու վանից, 1204 թ.—Հայապ. 450։*

— 26. Կիրակոս *վարդապետ, երեք միաբան էր Գոշավանքի. Գոնցա խաթունի իշխանութեան ժամանակ խնդրեց Յովհաննէսից և սա ազատեց Գեաղեայ ժողովուրդը հարկից, 1211 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Ժ, էջ 24։*

— 27. Կիւրակոս *սարկավագ, որդի քահանայի, Ուռհայի Շպղթան գավառի Ուռեթիլ գյուղում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Մաշտոց, 1214 թ.—Տաշեան, Ցուց. 705 ա։*

— 28. Կիրակոս, *նվիրատու Խծկոնից վանքի, 1216 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Ա. 45, Արրա. 1904, 990։*

— 29. Կիւրակոս *գրիչ. Դրազարկի վանքում, Կոստանդին կաթուղիկոսի գաւառ սարկավագ Գրիգոր եպիսկոպոսի համար օրինակեց Ճաշոցը, 1239 թ.—Տաշեան, Ցուց. 251 բ։*

— 30. Կիւրակոս *գրիչ. Հռոմկլայում գրեց և ծաղկեց մի չքնաղ Աւետարան, ծախիւք Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի, 1244 թ, որ ապա նվիրեց Անդրիասանց ուխտին.—*

Ձեռ. Վեննա. Ա. 652, Սիսուան 150։ —Նույն անձն է երևում

— 31. Կիւրակոս քահանայ, գրիչ, Հռոմկլայում օրինակեց մի գեղեցիկ Աւետարան՝ ոսկի և արծաթ նախշերով, հրամանաւ և ծախիւք Ստեփաննոս դռան եպիսկոպոսի, 1248 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 6, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Բ. 19 են։ Հաջորդ տարին (1249 թ.) նույն Կիւրակոս (կամ Կիւր) գրիչը գրել է դարձյալ Հռոմկլայում մի ուրիշ շքեղ Աւետարան, ծախիւք Կոստանդին կաթուղիկոսի, նվիրելու համար Լևոն արքայորդուն, որ ապա նվիրեց իր քրոջ՝ Ֆիմիին 1263 թ. (Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 23)։ Այս Կիրակոսի գնահատականը տալիս է Սիրարփի Տէր Ներսէսեան, Manuscrits arméniens illustrés, Paris 1936 (չեմ տեսած)։

— 32. Կիրակոս կրոնավոր, որդի Բարսեղմանուկի. Խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1252 թ.—Ձեռ. Սեբ.= ՀԱ 1925, 379։

— 33. Կիրակոս եպիսկոպոս Արաբկիր քաղաքի 1255 թ. ստորագրում է Շնորհալու միւռոնի շիշի կեղծ փաստաթղթին.—Թորոս աղբ. Բ. 353, Տաշեան, Ցուց. 1040։

— 34. Կիրակոս, բարեկամ Աւետիս քահանայի, որ գրեց մի Շարակնոց՝ 1258 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 229։

— 35. Կիրակոս, որդի Սարգսի և եղբայր Ադութ խաթունի, որ Վարդան երեցին մի Աւետարան գրել տվեց՝ Վարագայ վանքում, 1260 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա։

— 36. Կիրակոս գրիչ, իր հոգևոր եղբայր Յովսէփ քահանայի խնդրանոք օրինակեց Աւետարանը՝ Մաշկևոր վանքում, 1259 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 55 ա։--Թվի թե նույն է նաև այն Կիրակոս գրիչը, որ Մաշկևորի վանքում օրինակեց Աւետարանը 1265 թ.--REA 10, 38։

— 37. Կիրակոս գրիչ, օրինակեց մի Ճաշոց՝ Սմբատ Գունդստապլի համար, 1269 թ.—տես. Կիրակոսի՝ Անսիզք 93, Սիսուան 71—72։

— 38. Կիրակոս վարդապետ Երզնկացի, մատենագիր ԺԳ դարու. կյանքը մեծ մասամբ անց է կացրել Կիլիկիայում, ուր և մեռել է «1272 թ»։ (Բայց Ցկ. կր. 12 ասում է թե գերեզմանը գտնվում է Երզնկայի մի եկեղեցում)։ Իր գործերն են 1) Լուծմունք Եւագրի, որ գրել է Յովհաննէս վարդապետի խնդրանոք (Ձեռ. Երուս. ԽԱ, № 98 և Վեննա. № 1329).—2) Դարձյալ Լուծմունք Եւագրի (Ձեռ. Վեննա. № 296).—3) Ցայսմաւուրք, որ հո-

րթնել է ՁԺԸ=«1269 թ». (Սիսական 555 ա, Բակուրան, Կիրակոս կղ. 58).—4) Մեկնութիւն Յովհաննու Աւետարանի (Թրգմ.) Ձեռ. Երուս. Հէ, № 262.—5) Խրատ խոստովանութեան (տես Ձեռ. Լվով. ՀԱ 1937, 135.—6) Վասն մկրտութեան (Ձեռ. Վեննա. Բ. 712).—7) Ութ ճառք Կիրակոս վրդ. Երզնկացւոյ մի յառաջաբանով (յաղագս ութ խորհրդոցն տեսութիւն, յաղագս պոռնկութեան, յաղագս արծաթսիրութեան, յաղագս տրտմութեան, յաղագս բարկութեան, յաղագս ձանձրութեան, յաղագս սնափառութեան, յաղագս ամբարտաւանութեան, յաղագս խոնարհութեան. տես Ձեռ. Վեննա. Բ. 612—4.—8) Խրատք վասն կըրթութեան և օգնութեան (Ձեռ. Վեննա. Բ. 733).—9. Ի սուրբ Աստուածածինն (Ձեռ. Վեննա. Բ. 801).—10. Տաղականներ, որոնցից հատկապես հիշատակված է «Արևելք գերարփի» (տես Տաղականի սկզբի ցանկը)։—Ըստ Նղշ. էջ ԻԱ կոչվում է նաև Արևելցի։—Զամչ. Գ. 508, Զարբ. Հին դպր. 753—4. Տաշեան, Ցուց. 1101 գ, Սարգիսեան՝ Եւագր. ներած. էջ ԺՄԱ. Հացունի՝ Ճաշեր 490. Հայապ. 107 և 472. (գտնում է, որ Յայսմաւուրք շինող Կիրակոս Արևելցին՝ Կիրակոս Գանձակեցին է. այս մասին հիշատակություններ տես անդ, ինչպես նաև Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ., էջ հզ, որի հիշած անծանոթ Յայսմաւուրքի ձեռագիրն է № 219 Ձեռ. Վիեննայի=Տաշեան, Ցուց. էջ 567 բ)։—Հիշատակված է նույնպես Կիրակոս քահանա, որ կազմել է Ցանկ Սաղմոսաց, նախ քան 1456 թ. Սարգիսեան, Ձեռ. Վեննա. Ա. 183, 187 համարում է այս նույն Երզնկացին, որ սակայն վարդապետ է և ոչ թե քահանա։—Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա Կիրակոս վրդ. Երզնկացուն է ընծայում նաև Տոմարի մեկնիչ և կազմութեան Լուծմունք։

— 39. Կիրակոս վարդապետ Գանձակեցի (կամ Արևելցի), պատմիչ. ծնվել է 1201 թ. աշակերտել է Խորանաշատում՝ Յովհ. Վանական վարդապետին. գերի ընկավ Թաթարների ձեռքը «1236 թ», բայց փախչելով եկավ Գետիկ վանքը, ուստի կոչված է նաև Գետկացի։(Թորոս աղբ. Բ. 448 կոչված է Գետակեցի)։ Նշանավոր է իր Պատմութիւնը, որ սկսեց 1240-ական թվերին և շարունակեց մինչև 1265 թ. Կարևոր է այստեղ Թաթարների նկարագրությունը և նրանց լեզվով 50 բառերի ցանկը (տպ. Վենետիկ 1865, էջ 149), որ մոնղոլերեն գրականության հնագույն հիշատակարանն է։ Ունի նաև Վարք Պօղոսի եպիսկոպոսի և Տօնացոյց։ Իր խնդրանոք գրեց Վարդան վարդապետը Մեկնութիւն Երգոց երգոյն՝ 1265 թ. (Հայապ. 471)։ Մեռել է «1272 թ» (Վարհայ անձ. բառ. Բ. հ.—40

դան վարդապետից 50 օր հետո)։—Կիւրակոս՝ Կիր. 1 (առաջին դէմի ծայրանունն է), [ժգ, ժե], իբ, (լա, խղ).—Կիրակոս՝ Կիր. յաւել. Վրք. ձէ. Մխ. այրիվ. 37. Օրբ. ժմ. 25, 27. Մաղաք. աբ. 12, 52. Ցկ. կր. 45. Զքր. սարկ. Բ. 55, Գ. 3, 6, 11. Դրնդ. 304. Եա. կԹգ. էջ Թ և 5,—սեռ. Կիրակոսի՝ Կիր. 5, խը.—Զարբ. Հին դպր. 747—751. Տաշեան, Ցուց. 1101 բ։—Իբրև գրող և կազմավորող Ցայսմաւուրքի տես Նախորդը։

— 40. Կիրակոս, հայր Դաւթի, որ նրա հիշատակին մի փոքր արձանագրություն է թողել Գեղարդավանքում, 1278 թ?—Այրար. 338, Արար. 1871, 90։

— 41. Կիւրակոս, եղբայր Ստեփաննոս քահանայի, որ իր համանուն Ստեփաննոս քահանային գրել տվեց Մանրուսմունքը՝ Սկևռայ վանքում, 1278 թ.—Շողակաթ 205։

— 42. Կիրակոս, աշակերտ Գրիգոր Բալուեցու, հավատը չուրանալով բրածեծ նահատակվեց Թարբերդում, «1290 թ».—Նոր վկ. 111—116. Ազգապ. 1802։

— 43. Կիրակոս միակեաց, նոր վկա. պատարագի ժամանակ սպանվել է ավազակներից. իր մասունքը ուխտատեղի է «1291 թ».—Սիսական 160, Նոր վկ. 119, Ազգապ. 1803։

— 44. Կիրակոս երեց, գրիչ. Թումայ և Վանական քահանաների համար օրինակել է Շնորհալու Ընդհանրականը, թղթերը են 1294 թ.—Ջեռ. էջմ. № 57։

— 45. Կիրակոս, հայր Երեմիա քահանայի, որ օրինակել տվեց Գէորգ Սկևռացու Մեկնութիւն Եսայեայ, 1295 թ.—Սիսուան 103։

— 46. Կիրակոս վարդապետ, Աստղունք գյուղից. վերաշինեց Կամրջաձորի վանքը, ուր հաստատվեց և մեռավ (ԺԳ դար).—Այրարատ 549.

— 47. Կիրակոս եպիսկոպոս Մժնկերտի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի, 1307 թ.—Այրարատ 38։

— 48. Կիրակոս, եպիսկոպոս Մեծկերտի դաշտի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի, 1307 թ.—Ազգապ. 1786։

— 49. Կիրակոս քահանա, ստացավ մի Աւետարան, որ և ծաղկել տվեց Ծերուն նկարչին, 1308 թ.—Ջեռ. Դաղեան, Բ. 36 ա (ուր կա նաև իր և իր երկու որդիների նկարը) և 46 բ։

— 50. Կիրակոս գրիչ. օրինակել է «Բանք աղօթից խօսք ընդ Աստուծոյ» (Նարեկը), 1310 թ.—Թորոս աղբ. Բ. 393։

— 51. Կիրակոս վարդապետ կաթողիկոսարանի. անդամ

Սսոյ եկեղեցական ժողովի՝ «1307 Թ». և Ատանայի եկեղեցական ժողովի՝ «1317 Թ».—Ազգապ. 1787, 1819։

— 52. Կիրակոս վարդապետ, գրիչ. օրինակել է Աստուածաշունչը 1317 թվին.—Ձեռ. Կարին. 13։ Հավանաբար նույն անձն է նաև այն Կիրակոս վարդապետը, որ նույն թվին արտագրել է Խազգիրքը.—Ձեռ. Կարին. 41։

— 53. Կիրակոս Երզնկացի, աշակերտ Եսայի Նչեցու, հորեղբայր Յովհաննէս Երզնկացու (Ծործորեցու), որի հետ միասին օրինակել է Աստուածաշունչը և ապա նվիրել են Գլաձորի նշանավոր վարդապետ՝ Եսայի Նչեցուն, 1318 Թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 13, Շողակաթ 211։

— 54. Կիրակոս քեռորդի Թուխանի՝ վանահոր Գերճերի վանից (Կիլիկիա), 1325 Թ.—Սիսուան 153 բ։

— 55. Կիրակոս սարկավագ, ուսուցիչ Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 Թ.—Ձեռ. Ապուլ. (Արար. 1911, 460)։

— 56. Կիւրակոս, «առիթ և օժանդակող» եղավ Յովհաննէս գրչին, որ գրեց մի Աւետարան՝ Թանգեր տիկնոջ համար, Կիլիկիա 1327 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 386 բ—397 ա։

— 57. Կիրակոս վարդապետ, նստում էր Եկեղեաց գավառի Երկայնի վանքում, 1328 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 160։

— 58. Կիրակոս, շինել է Մանազկերտի հյուսիս-արևելյան բուրգը, 1334 Թ.—Թորոս աղբ.Բ 278, Միրախորեան, Նկարագր. ուղև. Գ. 54։

— 59. Կիրակոս, միաբան Խորձեանի Խլպաշի վանքի, 1336 Թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի. 152։

— 60. Կիրակոս քահանա, վաղամեռիկ որդի Վարդան քահանայի, մերձավոր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց մի Աւետարան, 1336 Թ.—Ձեռ. Վասպ. 191։

— 61. Կիրակոս քահանա տեր Տիրատուր 1336 Թ։

— 62. Կիրակոս, երկու համանուն կրոնավորներ, միաբան Խիզանի Ս. Աստուածածին եկեղեցու, 1336 Թ.—Ձեռ. Վասպ. 194։

— 63. Կիրակոս, աշակերտ Յովսէփ քահանայի, ծաղկեց այն Աւետարանը, որ գրեց Յովհան քահանան, Հայրապետ աբեղայի համար, Արծկոյ վանքում, 1338 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 73 բ։

— 64. Կիրակոս, հայր Յովանէսի, որ գնել տվեց մի Աւետարան, 1344 Թ.—Թորոս աղբ. Բ. 355։

— 65. Կիրակոս ավագ սարկավագ, որդի Կարապետ քահա-

նայի. գրիչ. օրինակեց սքանչելի մի Աւետարան, Խրիմի Սուրխաթ քաղաքում, 1346 թ.—Գովրիկեան, Դրանսիլուանիոյ հայոց մետրապոլիսը, էջ 329—330=ՀԱ 1895, 304։

— 66. Կիրակոս վարդապետ Անեցի, նահատակվել է անօրեններից «1348 թ». գերեզմանը գտնվում է Անի Թրքաբնակ գյուղի մոտ.—Շիրակ 34, Նոր վկ. 134, Ազգապ. 1920։

— 67. Կիրակոս քահանա, գրիչ. օրինակեց Շնորհալու գործերը Կարապետ քահանայի համար, Աղբակի Խաշնոց գյուղում, 1352 թ.—Ձեռ. Թաւր. 55—56։

— 68. Կիրակոս, մերձավոր Կարապետ կրոնավորի, որ մահտեսի Խնտուլի համար օրինակեց մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 69. Կիրակոս, աթոռակից Գրիգոր Գ պատրիարքի Երուսաղէմի, որ նստել է 1356—1363 թ. (ըստ Աղաւնունի)։

— 70. Կիրակոս գրիչ, Երուսաղէմում, Ս. Փրկչի առաջնորդ հայր Ներսէսի համար գրեց Աստուածաշունչը՝ 1363 թ.—Ձեռ. Վասպ. 18։

— 71. Կիրակոս աբեղա, միաբան Երուսաղէմի. բրածեծ նահատակվեց Եգիպտացիների ձեռքով Մկրտիչ Բ պատրիարքի ժամանակ (շուրջ 1366 թ).—Ազգապ. 1931։

— 72. Կիրակոս, թուղթ էր կոկում Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսի համար, երբ սա օրինակում էր Աւետարանը, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 73. Կիրակոս, առաջնորդ Աւագ վանուց Կամախի, 1372 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45։

— 74. Կիրակոս Բաբերդցի, հայր Վարդան աբեղայի Խրիմեցւոյ, որ օրինակել է մի Աւետարան, Երուսաղէմ 1372 թ.— Ձեռ. Վասպ. 218, 220։

— 75. Կիրակոս սարկավագ, որդի մուղդսի Հասանի, որ Մերտինում գնեց և ազատեց գերի ընկած մի մեծ Ճառընտիր, 1377 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 65։

— 76. Կիրակոս կրոնավոր, շնորհեց Հին Կտակարանի իր օրինակը Ստեփանոս գրչին՝ արտագրելու համար, Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։

— 77. Կիրակոս, հայր Ստեփանոս կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 848—851)։

— 78. Կիրակոս քահանա, ուսուցիչ Տօնէր գրչի, որ փո-

կոկալ Մկրտիչ քահանայի համար արտագրեց Եսայեայ մարգարէութիւնը, 1381 թ.—Ձեռ. Սանաս. 22 բ։

— 79. Կիրակոս վարդապետ, միաբան Սպարկերտի Ս. Խաչ վանից, գրել տվեց Յովհաննէս գրչին՝ Կիւրեղի, Եփրեմի և Վարդանի գործերը, Ոստանում, 1382 թ.—Bodleian 165։

— 80. Կիրակոս, որդի Խութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 81. Կիրակոս, ծառայող Գաւաշ գյուղի եկեղեցու, 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 82. Կիրակոս, հայր Տիրատուր քահանայի, որ մի Յայսմաւուրք վաճառեց Գրիգոր քահանային, 1394 թ.—Manus. bibl. nat. էջ 100։

— 83. Կիրակոս միայնակեաց, գնեց Իգնատիոս Հոռոմոսցու գրած մի Աւետարանը և նվիրեց Մարտիրոս քահանային, 1400 թ։—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 65—66։

— 84. Կիրակոս կրոնավոր, Յովհաննէս և Թումաս կրոնավորների հետ միասին գտան Գետարգել Ս. Նշանը, որ Լէնկթիմուրի սարսափից թաղել էին հողի տակ և բերին Ս. Եղիշէի ուխտը (Վարդպատրիկի վանքը), «1401 թ.»—Նոտարք 15, Ազգապ. 1671։

— 85. Կիրակոս կրոնավոր, միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի. արդէն մեռած էր 1402 թ.—Նոտարք 17, 43։

— 86. Կիրակոս քահանա, ստացող. Դանիէլ սարկավագին Աղթամարում գրել տվեց մի Մաշտոց՝ 1404 թ. և նվիրեց Վանի Գանձակ գյուղի եկեղեցուն.—Թորոս աղբ. Բ. 276—7։

— 87. Կիրակոս, Մեծոփայ վանքը վերաշինող ճարտարապետներից մին, 1409 թ.—Նոտարք 30, Ազգապ. 2001։

— 88. Կիրակոս կրոնավոր, մի քանի ուրիշ կրոնավորների հետ օգնում էին Ուշտունցի Փիր Ստեփաննոս վարդապետին, որ շինեց ու նորոգեց 200 տարուց ի վեր ամայի ու անբնակ մնացած Ս. Յակոբայ վանքը, 1412 թ.—Նոտարք 41, 138։

— 89. Կիրակոս վարդապետ, միաբան և առաջնորդ Խիզանի Ս. Խաչ վանքի. հիշված է 1402 և 1413 թվերին.—Նոտարք, էջ 17, 42։

— 90. Կիրակոս, որդի Շիրինի, Խիզանի Տիոյ գյուղից, իր կնոջ Նազխաթունի հետ միասին օգնեց Յովհաննէս գրչին, օրինակելու Տաթևացու Քարոզգիրքը՝ Խիզանի Ս. Խաչ վանքում, 1413 թ.—Նոտարք 43։

— 91. Կիրակոս վրդ. գրիչ. օրինակել է Նանայ Ասորու Մեկնութիւն Աւետարանին Յովհաննու, Մեկնութիւն Յայտնութեան Յոհաննու և Մեկնութիւն էր ընդ եղբարս-ի (Լամբրոնացու), 1414թ.—Ձեռ. Կարին, 158։

— 92. Կիրակոս, որդի Աբրահամի և եղբայր Մարտիրոս կրոնավորի, որ Մկրտիչ սարկավագին գրել տվեց մի Յայսմաւուրք, Բաղէշի Գոռ գյուղում, 1418 թ.—Նոտարք 55։

— 93. Կիրակոս վարդապետ, որդի Հիանոսի, մերձավոր Տաթևացու, որի Քարոզգիրքը ստացավ 1419 թ.—Տաշեան, Ցուց. էջ 978։

— 94. Կիրակոս, երկու համանուն միաբաններ Բերկրիի Տէր Յուսկան որդի վանուց, 1420 թ.—Նոտարք 61։

— 95. Կիրակոս, որդի Աստուածատուրի (№ 84) և Մարթայի՝ հոգևոր մոր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում, Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 96. Կիրակոս, հոգևոր հայր Կարապետ գրչի, որ Խլաթում օրինակեց Աստուածաշունչը՝ 1418—1422 թ.—Ձեռ. Վեննետ. Ա, 114։

— 97. Կիրակոս եպիսկոպոս Աղուանից, հիշված է Կարապետ եպիսկոպոսի հետ, 1423 թ.—Նոտարք 72։

— 98. Կիրակոս գրիչ, օրինակեց Մերտինում մի Աւետարան, 1426 թ.—Նոտարք 81։

— 99. Կիրակոս, քեռի Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 663։

— 100. Կիրակոս, որդի Ներսէս քահանայի, որ Ուրանց գյուղում, Թումայ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 365—6։

— 101. Կիրակոս, հորաքրոջորդի նույն Ներսէս քահանայի, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 365—6։

— 102. Կիրակոս, ազգական տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Կարապետ քահանա գրչին գրել տվեց մի Աւետարան, Վանում 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 103. Կիրակոս, եպիսկոպոս Դարանաղեաց գավառի, 1439 թ.—Նոտարք 120։

— 104. Կիրակոս վարդապետ Ռշտունցի, անդամ էջմիածնի մեծ ժողովի, 1441 թ. եպիսկոպոսների մասնությամբ ընկավ անօրենների ձեռքը.—Մեծոփ. յիշատ. ա, գ. Նոտարք 122։

— 105. Կիրակոս *եպիսկոպոս Սալնապատի, անդամ էջմիածնի մեծ ժողովի 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 106. Կիրակոս *վարդապետ Աստուածածնի վանից. գործակից Թովմա Մեծոփեցու՝ աթոռի փոխադրության գործում, 1441 թ.—Դրնդ. 311։*

— 107. Կիրակոս *եպիսկոպոս Վանատուր վանքի, թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 108. Կիրակոս, *հայր Մկրտիչ եպիսկոպոսի, որ Մոկաց Աբրահամանց գյուղում, Մարգարէ դրչին գրել տվեց մի Աւետարան, 1441 թ.—Նոտարք 124։*

— 109. Կիրակոս *հիւսն, տանուտէր Գաւաշ գյուղի, 1444 թ.—Ջեռ. Վասպ. 489, Նոտարք 46։*

— 110. Կիրակոս *Ջիթկանց, տանուտէր Գաւաշ գյուղի, 1444թ.—Ջեռ. Վասպ. 389, Նոտարք 46 (գրում է* Ցիրկաց *փխ. Ջիթկանց)։*

— 111. Կիրակոս, *ռէս Գաւաշ գյուղի, 1444 թ.—Ջեռ. Վասպ. էջ 389։*

— 112. Կիրակոս, *հայր Ղուկիկ Թովմայ վաճառականի, որ Գաւաշ գյուղից էր և Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1444 թ.—Ջեռ. Վասպ. 385, 387, 391—3։*

— 113. Կիրակոս *քահանա Գաւաշի Ամենափրկիչ և Ս. Կիրակոս եկեղեցիների, 1444 թ.—Ջեռ. Վասպ. 388։*

— 114. Կիրակոս *Փօղոսենց, աբեղա, միաբան Գաւաշի Ս. Յակոբ վանից, 1445 թ.—Նոտարք 139։*

— 115. Կիրակոս, *երկու համանուն այլ աբեղաներ, միաբան նույն Գաւաշի Ս. Յակոբ վանքի, 1445 թ.—Նոտարք 139։*

— 116. Կիրակոս *աբեղա, միաբան Մշոյ Ս. Յովհաննու վանից. ուրիշ բազմաթիվ կրոնավորների հետ եկավ էջմիածին, միաբանակից Կարապետ աբեղային ձեռնադրել տալու համար առաջնորդ Եղրդուտի Ս. Յովհաննէս վանքի և ամբողջ Թեժի, 1445թ.—Նոտարք 142։*

— 117. Կիրակոս, *ազգական Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։*

— 118. Կիրակոս *Բանասէր վարդապետ, գրել է Թովմա Մեծոփեցու († 1446-7 թ) կենսագրութիւնը.—Տաշեան, Ցուց. 417, 478, Զամչ. Գ. 491. Ջեռ. Կարին. 165. Նոտարք 122։*

— 119. Կիրակոս *դպիր, քեռորդի Սիմէոն քահանայի. օգ-*

նեցին Հայրապետ դպրին, որ Ծառիկու վանքում օրինակեց մի Աւետարան՝ Ասլիմելիքի համար, 1447 թ.—Նոտարք 157։

— 120. Կիրակոս Վիրապեցի, կաթուղիկոս Հայոց. ծնվել է շուրջ 1370 թ. Արճէշի Ծառաքաստ գյուղից, Ծըլոց ազգատոհմից (Նոտարք 31 և 132). աշակերտեց Սարգիս Ապրակունեցուն, Վարդան Հոգոցեցուն և Սարգիս Սորբեցուն. Թադէոս Առաքելոյ վանից առաջնորդ Պետրոս եպիսկոպոսի ձեռքով օծվեց քահանա՝ 1397 թ. (Նոտարք 8. բայց անդ՝ 86 դրվում է ՊՀԶ=1427 թ). 1409 թվին քաշվեց Խոր Վիրապի վանքը։ եղել է Կաֆա քաղաքում, որտեղից անցել է Աղթամար (Տաշեան, Ցուց. 677). վերջին անգամ ճգնում էր Ակոռիի Վանաստան անապատում. էջմիածնի մեծ ժողովում ընտրվեց կաթուղիկոս («1441 թ»). արձակեց Աղթամարը նզովքից. այս առթիվ իր կոնդակը տես Ակինեան, Գավազանք 19—23. իր հակառակորդների նախանձով գահընկեց եղավ «1443 թ» և մի վանք քաշվելով՝ ապրեց խաղաղութեամբ։ Իբրև կաթուղիկոս հիշված է դեռ 1446 թ. (Նոտարք 151) և 1447 թ. (անդ 157). մեռավ «1448 թ». —Մեծոփ. յիշ. ա, բ, գ. Սամ. անեց. շար. 175. Զքր. սարկ. Գ. 30, 31. Առաք. պատ. 485, 322—3, 336, 485. Դրնդ. 311—3, 315—6, 492. Ձեռ. Նոր-Բայազ. 19. Չամչ. Գ. 453—4, 487—491, 886—7. Ազգապ. 2111—2130։

— 121. Կիրակոս եպիսկոպոս. Հարհոց գյուղում, Յոհաննէս դպրին գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Բեռլինի, 5 բ։

— 122. Կիրակոս, հայր Խաչատուրի, որ Ստեփաննոս դպրին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419, 420։

— 123. Կիրակոս, մեծ հայր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 124. Կիրակոս աբեղա, Իգնատիոս աբեղային գրել տվեց մասամբ Սուխարայ կամ Ծառաքաստայ վանքում և մասամբ Լիմ անապատում Մեկնութիւն Կաթուղիկէ թղթոց, որ նվիրեց Վարագայ վանքին, 1454 թ.—Նոտարք 174—5։

— 125. Կիրակոս մահտեսի, որդի Բեհնամի. նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— 126. Կիրակոս քահանա, ազգական Ադամ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 127. Կիրակոս քահանա, մերձավոր Ադամ քահանայի, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— 128. Կիրակոս, հորեղբայր Ասոտ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։

— 129. Կիրակոս քահանա Մարգանենց, միաբան Բաղէշի Ս. Կիրակոսի տաճարի, հոգեորդի Խաչատուր քահանայի, որ Դավիթ քահանային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց նույն տաճարին, 1455 թ.—Նոտարք 177։

— 130. Կիրակոս, որդի Մխիթարի և եղբայր Պօղոս աբեղայի, որ Բաղէշի Ամիրդոլ վանքում օրինակեց Ավետարանը՝ պարոն Ամիրդոլի համար, 1455 թ.—Նոտարք 178։

— 131. Կիրակոս, միաբան Բասենի Սպիտակ վանքի, 1455 թ.—Նոտարք 180։

— 132. Կիրակոս, որդի Թումայի (№ 174), մայրն է Շնորհավոր. մերձավոր Ստեփաննոսի, որ Կեցանայ ձորի Սորավանք գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 428։

— 133. Կիրակոս քահանա, որդի Ալեքսան քահանայի, մայրն է Եղիսաբեթ, կինը Քնքուշ խաթուն. գրիչ. օրինակել է Բաղէշում մի Յայսմաւուրք Ղրիմ խաթունի համար, 1438 թ. մի Ավետարան՝ Սարգսի համար, 1454 թ. և մի ուրիշ Ավետարան էլ մահտեսի Զարմանդուխտ տիկնոջ համար՝ 1463 թ.—Նոտարք 117—8, 173, 214—5։

— 134. Կիրակոս քահանա, միաբան Բաղէշի Ս. Գէորգ եկեղեցու, 1463 թ.—Նոտարք 215։

— 135. Կիրակոս, կուսակրոն աբեղա, աշակերտ Ստեփանոս կրոնավորի և միաբան Տարօնի Եղերդուտ վանքի, 1463 թ.—Նոտարք 215։

— 136. Կիրակոս, հայր Կոստանդի, որ Եւդոկիայում Անդրէաս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133)։

— 137. Կիրակոս, հայր Նորտունկի, որ եղավ գնի միջնորդ տանուտեր Էգիլշահի և գրիչ Յովհաննէսի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։ Սրանից տարբեր է՝

— 138. Կիրակոս Սարփեցի, որդի Հազարբէկի. գնի միջնորդ եղավ տանուտեր Էգիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 139. Կիրակոս կրոնավոր, միաբան Խորձեան գավառի Խլպաշի վանից 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 341, Նոտարք 218։

— 140. Կիրակոս վարդապետ, առաջնորդ Առբերդոյ վանից, 1466 Թ.—Նոտարք 225։

— 141. Կիրակոս երեց, մականուն Ջօշկանց, որդի Ջանիբէկի, աշակերտ Յովհաննէս քահանայի Մանկասարենց, գրիչ-օրինակեց Ճառընտիրը, որ սկսավ Բաղէշում և ավարտեց Աղթամարում, օգնությամբ իր հոգևոր հայր՝ Տէր Թումայի, 1467 Թ.—Նոտարք 229—230։ (Իբրև հիշատակագիր հիշում է Ազգագ. 2173)։

— 142. Կիրակոս, միաբան Խիզանի Գամաղիէլ վանուց, 1468 Թ.—Ձեռ. Վասպ. 452։

— 143. Կիրակոս, որդի Գոհարի՝ դստեր տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 Թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 144. Կիրակոս, որդի Գրիգորի և եղբայր կոշկակար Մարտիրոսի, որ Աշտույ երկրի Անկինոց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 Թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 588։

— 145. Կիրակոս կրոնավոր, Եկեղեաց գավառի Կայլիփոսի վանքում, Հայրապետ գրչին գրել տվեց մի Սաղմոս, 1470 Թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 146. Կիրակոս, իր երեք եղբայրների հետ՝ Մոկաց Փառավանք գյուղում Իսրայէլ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1473 Թ.—Արցախ 146։

— 147. Կիրակոս, վանահայր Ս. Ստեփաննոս վանից, Կանչ Բերդի տեր Հեթում սպարապետի և նրա կնոջ հերոսուհի Զարմանդուխտի (№ 4) սերունդից. պատմում է նրանց պատմությունը 1473 Թ.—Սիսուան 184 ա, 194 ա։

— 148. Կիրակոս, մերձավոր Դունիկ Ստեփաննոսի, որ գրել տվեց մի Աւետարան 1477 Թ. (տեղն ու գրիչը անծանոթ).—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 261։

— 149. Կիրակոս եպիսկոպոս, ուսուցիչ Մովսէս աբեղայի, որ օրինակեց Աւետարանը՝ Բաբերդի Անլոց վանքում, 1486 Թ.—«Էջմիածին» 1944, № 1, էջ 36 բ։

— 150. Կիրակոս երեց Հաբջոշենց, Բաղիշեցի, որդի Ջանիբէկի, Կապուտ գեղի Ս. Յակոբին նվիրեց մի Աւետարան, 1487 Թ.—Ձեռ. Վասպ. 115—6, Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի 19։

— 151. Կիրակոս եպիսկոպոս, կազմող. կազմել է մի Յայսմաւուրք, որ գրել էր Յակոբ գրիչը, ստացող Հոջա Մուրադի համար, 1488 Թ.—Manus. bibl. nat. էջ 102։

— 152. Կիրակոս *Թուլկուրանցի, հիշատակագիր 1489 թվից, Էջմիածին.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1846։*

— 153. Կիրակոս *հայրապետ, առաջնորդ Բաբերդի Բերդակ վանքի, 1489 թ.*—Manus. brit. mus. *165 բ։*

— 154. Կիրակոս, *եղբայր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։*

— 155. Կիրակոս *արքեպիսկոպոս, առաջնորդ Կեսարիայի. հիշված է 1476, 1481 և 1484 թվերին, իբրև գահակից Անդրէաս եպիսկոպոսի։ Վերջին անգամ հիշվում է առանձին 1495 թ.—* Rapport Belgique *34, Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. 915 և 1847—8, 1850։*

— 156. Կիրակոս *«քաջ հռետոր» Սաղմոսավանքում, 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։*

— 157. Կիրակոս *քահանա, որդի Մարտիրոսի, Ամ գյուղում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 158. Կիրակոս *կրոնավոր, Խարտիշարի վանքում օրինակեց Մայր Մաշտոցը, 1497 թ.—Թորոս աղբ. Բ. 305։*

— 159. Կիրակոս *ոճ. Պուրսա* (Brousse) *քաղաքում Ամիրդովլաթ բժշկից († 1497) գնել է մի Սաղմոս.—Թորգոմեան, Ներբ. 24։*

— 160. Կիրակոս *Տրապիզոնցի, այրի քահանա. ամուսնությունից մի քանի օր հետո կինը մեռել էր. ուստի ճգնական կյանքով տարված՝ գնաց Երուսաղէմ և միանալով Սարգիս Պարոնտէրի հետ, միասին հիմնեցին Հարանց մեծ անապատը («1608 թ»)։ Կիրակոսը իր վրա առավ ուսումնական գործը։ Հասցրին շատ աշակերտներ։ Կիրակոսը գնաց ապա Հոչանց գյուղը, ուր հիմնեց նույնպես մի նոր անապատ, ուր և մեռավ «1621 թ»։—Առաք. պատմ. գլ. ԻԱ և էջ 218, 220, 222. Հայապ. 621, Սիսական 247—8 և 269։*

— 161. Կիրակոս *Երևանցի, պատրիարք Կոստանդնուպոլսի՝ «1641—42 թ». կաթոլիկ կուսակցության ներկայացուցիչն էր. պատրիարք ընտրվելուց հետո՝ Փոքր-Ասիո հայաբնակ քաղաքները ճամբորդելու դուրս եկավ և այս միջոցին ծածկաբար դավանության թուղթ տվեց Կղեմէս Գալանոսին, որ Պապի կողմից ուղարկված էր Հայոց մեջ կաթոլիկ դավանանքը քարոզելու համար։ 1642 թվին վերադարձավ Պոլիս, ուր մեռավ ժանտախ-*

տից։ Գրել է մի Քարոզ (Տաշեան, Ցուց. 840)։—Ազգապ. 2464—5։

— 162. Կիրակոս վրդ. Թալինցի. օրինակել է Աղամգիրքը Էջմիածնում, 1715 թ. ստանաւորի է վերածել Գարգատումարը. «Ոմանք յեղբարց խնդրեցին ի մէնջ եթէ զոյ հնար և կարող եւս զպարզատումարն կարճ ի կարճոյ ոտք հանել որ աշխարհի քահանայք և անգէտ մատաղ մանկունք ուսանին և բերան առեալ երգելով. և դիւրին ուսանել և գեռաբոյսից ուսուցանել. Աստուծով յանձն առի և արարի. և աւարտեցի 30 տնով».—Ձեռ. Սևան. 36—37։

— 163. Կիրակոս Մեծ Աջպահեանց, կաթուղիկոս Սսոյ 1797—1823 թ. եղբօրորդի Թէոդորոս կաթուղիկոսի, որին և հաջորդեց. 1803 թվին գնացել է Երուսաղէմ. վերադարձին եկավ Բերիա. կաթուղիկոսարանը փոխադրեց Կիլիկիանց արքայական պալատը, որ պարսպով պատեց. նորոգեց Ս. Սոփիա եկեղեցին և վանքը։ Այս պատճառով ամբաստանվեց թե Զէյթունցոց ապստամբության համար ամրություններ է պատրաստում և կանչվեց Մարաշ, որտեղից ուղարկվեց Պոլիս։ Ամիրաների շնորհիվ ազատվելով դարձավ իր աթոռը «1820 թ»։ Թունավորվելով Սսոյ Գոզան օղլու իշխանից՝ մեռավ 1823 թ։ Իր նամակները Հռովմի Պապին և Մխիթարեաններին՝ տես Տաշեան, Ցուց. 342։ Մնում է իր հիշատակագրությունը Ձեռ. Հալէպի, Բ. էջ 31 բ, որից երևում է, որ գահակալել է 1797 թ. և ոչ թե 1791 թ, ինչպես կարծում է Ազգապատումը։—Ազգապ. 3403, 3449, 3615։

— 164. Կիրակոս Մնացականեան, Երուսաղէմացի, պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Զաքարիա Կոփեցուն «1846 թ» և նստավ մինչև «1850 թ», երբ մեռավ.—Ազգապ. 3838։

— 165. Կիրակոս Բ Աջպահեանց, կաթուղիկոս Սսոյ «1853—1865 թ». հաջորդեց Միքայէլին. իր ժամանակ եղավ Ազիզ փաշայի արշավանքը Զէյթունի վրա, ուր չարաչար հաղթվեց։ Կիրակոսով վերջանում է Աջպահեանց ցեղը և Սսոյ աթոռը թողում է թափուր մինչև 1871 թ։

— 166. Կիրակոս Գ Աջպահեանց, տես Նիկողայոս։

— 167. Կիրակոս եպիսկոպոս, տաղասաց. գրել է թռչուններու վրա մի տաղ 89 տնից բաղկացած, այբուբենական կարգով. թվականն անհայտ է.—Գիտ. Նյութերի ժող. № 1, էջ 176 ա։ Ավելի հին է՝

— 168. Կիրակոս աբեղա, տաղասաց, որին վերագրվում է «Տաղ Ս. Կիրակոսի և մօր նորա Յուղիտայ».—Ձեռ. Հալէպի Ա. 106 ա։

ԿԻԼԱԿԷՍ, ար. ծագումն անհայտ. ավանդված է ըստ Ամմիանոսի լտ. Cylaces տառադարձությամբ. Ալիշանը կարդում է հայաձև Գդակ (Այրարատ 57)։

— Կիւլակէս, ներքինի հայ նախարար, որին Պարսից Շապուհ թագավորը Արտաւանի հետ ուղարկեց՝ Հայաստանը նվաճելու (368 թ)։ Կիւլակէսը և Արտաւանը դավաճանեցին Շապուհին և Հայոց կողմն անցան։ Պապը գլխատեց նրանց և գլուխները ուղարկեց Շապուհին։—Գաթըրճեան, Տիեզ. պատմ. Բ. 504. Justi 166 բ. Այրարատ 57. Լէօ, Հայոց պատմ. Ա. 636—643.— Ադոնց. 198 կարծում է թե Մերուժան Արծրունին է՝ պարսկական անուն ստացած։

* ԿԻՒՐԱՊԱՂԱՏ, ար. < հուն. Κουροπαλάτης «հունաց կայսերական պալատի հազարապետը, ծառայապետ». Նշանակում է բուն «հոգաբարձու պալատի». Հայոց մեջ այս տիտղոսն էին կրում Հունաց կողմից նշանակված կառավարիչները՝ Հայաստանի վրա։ Ուշ ժամանակ դարձել է անձնանուն, ինչպես ունինք հիշատակված մի անգամ ԺԳ դարում՝

— Կուրապաղատ (սեռ. Կուրապաղատին), մերձավոր ոմն (Թերևս և ամուսին) Մամուկթի տիկնոջ, որ Հոռոմոսի վանքին կալվածներ է նվիրել 1266 թ.—Արձ. Շիրակ 26, Արրտ. 1870, էջ 271։

* ԿԻՒՐԵՂ, ար. < հուն. Κύριλλος (> լտ. Cyrillus, ֆրանս. Cyrille, գերմ. Cyrill, անգլ. Cyril, ռուս. Кирилл) անունից, որ նշանակում է «տիրուկ» (իբրև κύριος «տեր» բառի փոքրականը)։ Այս անունով հայտնի են Կիւրեղ Ալեքսանդրացի (376—444 թ), Կիւրեղ Երուսաղեմացի († 386 թ.) (Փափազեան, Պատմ. եկեղ 206), որոնց գործերից թարգմանություններ ունինք հայերեն (Ե դար), Կիւրեղ՝ առաքյալ Սլավների, որոնց համար էլ հնարել է առանձին այբուբեն և ստեղծել սլավոնական գրականությունը († 868)։

— 1. Կիւրեղ եպիսկոպոս Բասենի (364—370 թվերի միջև). Այրարատ 43. նույնը Զամչ. Ա 447 դնում է Կիւրղոս ձևով (370 թ), որի ձեռքից Փաւստոս եպիսկոպոսը խլեց աթոռը, բայց շուտով վտարվելով՝ գնաց Մեծն Ներսէսի մոտ և նրա տեղակալը դարձավ։ Այսպեսով Բասենի աթոռը մնաց Կիւրեղին։—Ավելին տես Փաւստոս։

— 2. Կիւրեղ, վանահայր Գլակայ վանուց. հաջորդ Մարկո-

ոի. եպիսկոպոս ձեռնադրվեց Յովհան Մանդակունու («478—490 թ») ձեռքով.—Մամիկ. ա.—սեռ. Կիւրդի՝ Մամիկ. ա։

— 3. Կիւրեղ, աղանդապետ Թոնդրակեցոց. հաջորդ Սարգսի. քարոզում էր թե խաչ, եկեղեցի, պատկեր, եկեղեցական զգեստներ և սպասներ ավելորդ բաներ են. բավական է միայն խաչակնքել.—Մագ. Թղ. կէ. Հայապ. 551։

— 4. Կիւրեղ, Սենեքերիմ Արծրունի թագավորի իշխաններից մեկը, որ Սեբաստիոյ գաղթի ժամանակ (1021 թ.) գնաց Տիւրիկ և այնտեղ հիմնեց մի վանք (Կիւրղի անապատ).—Թորոս աղբ. Ա. 234—5։

— 5. Կիւրեղ գրիչ. Հռոմկլայում, Կոստանդին Ա կաթողիկոսի հրամանով, Բարսեղ կրոնավորի ձեռքով Հռոմից բերված մագաղաթի վրա օրինակեց Աւետարանը, 1249 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 119։

— 6. Կիւրեղ սարկավագ, ուսանում էր Գլաձորի վանքում, Դաւիթ վարդապետի և Եսայի Նչեցու հովանավորության տակ։ Իր եղբայր Մարտիրոս վարդապետի ծախսով օրինակեց Աւետարանը՝ 1321 թվին.—Manus. brit. mus. 22 բ (այս, էջ 23 բ և 24 ա դառնում է Կերիոն). Յովսէփեան՝ Խաղբակեանք 199, 208։

— 7. Կիւրեղ արքեպիսկոպոս, առաջնորդ Խրիմի 1416 թ.— Նոտարք 49։

— 8. Կիւրեղ կրոնավոր, երկրորդ անգամ կազմեց մի Աստուածաշունչ, Սեբաստիայում, 1453 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 71)։

— 9. Կիւրեղ տանուտեր, որդի Աստուածատուրի. Նիկողայոս եպիսկոպոսին գրել տվեց մի Ճաշոց և նվիրեց Եաշի եկեղեցուն, 1460 թ.—REA 10, 64։

— 10. Կիւրեղ Սեբաստեան, բժիշկ էր Պոլսում, 1743 թ.— Թորգոմեան. Ներք. 27։

— 11. Կիւրեղ Իսրայէլեան, Նոր-Ջուղայեցի, արդի պատրիարք Երուսաղէմի. ընտրվեց 1944 թ. ստորագրում է Կիւրեղ Բ. բայց ճիշտ է Կիւրեղ Ա. պատրիարք Երուսաղէմի. այլուստ ինձ ծանոթ չէ. չկա նաև Երուսաղէմի 1945 թվի Օրացույցի հետը տպված Պատրիարքների ցուցակում։

*ԿԻՒՐԻԿԷ, ար. <հուն. κυριακός «տերունի» բառից, որ տես Կիրակոս։

— 1. Կիւրիկէ Ա. որ և Գուրգէն, որդի Աշոտ Գ Ողորմածի. անկախ թագավորեց Լոռիում և շրջակա գավառներում, 979—989

Թ.—տես Գուրգէն Ա (№ 20).—Արձ. Աղգագր. հանդ. Գ. 293, և Է, 384։

— 2. Կիւրիկէ Բ. Թագավոր Կիւրիկեանց. Դաւիթ Անհողինի որդին և հաջորդն էր. իր աթոռը փոխադրեց Շամշուլդէից Լոռի. իր աղջկան կնության տալով Ալփասլանին, ազատվեց նրա արշավանքից. գնաց Խորասան 1089 Թ. և Մելիքշահից հաստատվելով՝ վերադարձավ իր աթոռը։ Թագավորել է 1048—1100 Թ ? գահակից ունենալով իր եղբոր՝ Գագիկին (№ 29)։—Կիր. 56, 72. Վրդ. կ, կա. Մխ. այրիվ. 75. Օրբ. Ժմ. 14, 15. Ուռհ. 145, 221, 231. Պատմ. վր. Ժէ. Սամ. անեց. 112, 118.—սեռ. Կիւրիկէի՝ Կիր. 53, 56. Վրդ. ծղ, ծէ, կա, կը. Պատմ. վր. Ժէ. Մխ. այրիվ. 75. Օրբ. Ժմ. 13, 16. Սամ. անեց. 109.—սեռ ? Կիւրիկի՝ Մխ. այրիվ. 77.—տես և Տաշեան, Ցուց. 984 ա, Վրաց պտմ. Ա. 205, 207—8, Մովսէսեան, Լոռիի Թգ. 49—57, Արձ. Ազգագր. հանդ. Գ 297, 299, 325, Է. 338—9, 354, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 79, 82, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 70։

— 3. Կիւրիկէ Գ. Թագավոր Կիւրիկեանց. որդին էր Դաւիթ Բ-ի. կինն է Թամար Թագուհի. նստավ Մածնաբերդում, 1146 Թ. Վրաց Դաւիթ Թագավորը ուզեց վերադարձնել նրան այն հողերը, որ Վրացիք խլել էին նրանցից. բայց երբ իշխանները լսեցին, ժանավանդ Օրբելեանները, Թունավորելով՝ սպանեցին Դաւիթին (1154 Թ)։ Մեռավ Կիւրիկէ Գ. ժառանգ Թողնելով ժանուկ Աբաս Բ որդուն (№ 14)։ Ունէր նաև հինգ աղջիկ, որոնք են՝ Մարիամ, Մամքան (կամ Մամա), Ռուսուդան, Վանէ, Բաւրէնա և մի տղա ևս, որ կոչվում էր Վասակ։ Այս Վասակի որդին է Դաւիթ Բագրատունի (№ 96)։ Կիւրիկէ Գ Թագավորի գերեզմանը գտնվում է Հաղբատի մեծ տաճարի ժամատան մեջ՝ Թամար Թագուհու, իր որդու Աբաս Բ Թագավորի (№ 14), ինչպես նաև իր աղջկերանց՝ Մարիամի, Ռուսուդանի և Բաւրէնայի հետ (Ազգագր. հանդ. Է. 400—401, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 22—23, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80)։—Կիր. 72. Վրդ. խը. Մխ. այրիվ. 75.—սեռ. Կիւրիկէի՝ Սամ. անեց. 122.—Հայապ. 386. ըստ Մովսէսեան, Լոռիի Թգ. 62—71 նստել է 1145—1185 Թ. իսկ ըստ Օրբ. Ժմ. 18 մեռավ ՈԺԹ=1170 Թ. և Թաղվեց Հաղբատում.—Արձ. Շիրակ 23, Արրտ. 1870, 271, Սարգիսեան, Տեղագր. 153, Շահխաթ. Բ. 362—3, Արցախ 196, 204, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 21, 25, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 77. Ազգագր. հանդ. Գ. 285, Է. 420։

— 4. Կիւրիկէ Դ. որդի Աղսարթանի. իշխան Մածնաբերդի.

դոհակալեց 1232 թ. Թաթարները գրավեցին Մածնաբերդը՝ ըստ Հայսպ. 392. կենդանի է դեռ 1245 թ. (Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 18). ուխտի գնաց Խորանաշատի վանքը 1246 թ.—Կիր. 73, խա.—սեռ. Կիւրիկէի՝ Կիր. 73.—Մովսէսեան, Լոռիի Թգ. 77, Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 175։

— 5. Կիւրիկէ, մերձավոր Շարափշահի, որդւոյ Ապիրատի, որ կալվածներ է նվիրել Բագնայրին 1234 թ.—Արձ. Շիրակ 118, Սարգիսեան, Տեղագր. 125։

— 6. Կորիկէ կորապաղատ. այս անունով կա մի դրամ (3 օրինակ). Թվականն անհայտ. հավանաբար Տայոց կիւրապաղատներից մեկինն է. ընդարձակ տես Մովսէսեան, Լոռի. Թգ. 88—93։

*ԿԻՒՐԻՈՆ, ար. <հուն. Κύριος, ον անունից, որ նույնպես արական է և նշանակում է բուն «տեր». սրանից է նաև վրաց. Կիւրիոնը։ Երեք անգամ հիշատակված է ԺԴ դարում։

— 1. Կիւրիոն (Կիւրոն կամ Կերիոն), որդի Վարդան քահանայի և աշակերտ Յովհաննէս վարդապետի. գրիչ. օրինակեց Շնորհալու Մեկնութիւն Բարձրացուցէքի, ինչպես նաև Ն. Լամբրոնացու և Վարդան վարդապետի զանազան գործերը, 1311 թ. —Ձեռ. Կարին. 167, Ակինեան, Կիւրիոն կթղ. 265—6։

— 2. Կիւրիոն, գրիչ. օրինակել է Աւետարանը Գլաձորում՝ 1321 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 19։

— 3. Կիւրիոն բարունապետ, առաջնորդ Նորավանից 1329 թ.—Սիսական 203 ա։

*ԿԻՒՐՈՍ, ար. ունի երկու տարբեր ծագում. 1. հպրս. Kūruš անվան հունական Κῦρος տառադարձությունն է։ Այս անվան ստուգաբանությունը հայտնի չէ. բայց պարսիկները մեկնում են իբր «արև» (Bartholomae, Altir. Wört. 474)։ Այս անունով հայտնի են հին Պարսից Աքեմենեան հարստության հիմնադիր Կիւրոս Ա մեծն (Ն. Ք. Դ դար) և Կիւրոս Բ կրտսեր, որդի Դարեհ Բ-ի (Ն. Ք. 401 թ)։ Մյուսները տես Justi 168։—2. հուն. Κύριος արական անունից (տես նախորդը Կիւրիոն), որ ծագում է κύριος «տեր» բառից։ Հմմտ. Կիւրոս եպիսկոպոս Ալեքսանդրիոյ 631—641 թ., Կիւրոս եպիսկոպոս Կոստանդնուպոլսի 704—711 թ. են։

— 1. Կիւրոս Արծրունի, հաջորդ Շահակի (Ն. Ք. Բ դար). Պարթևաց Մեծն Արշակ թագավորի օգնականն էր. իր քաջության համար Վաղարշակը բերեց նրան իր հետ Հայաստան և

նախարար կարգեց։—Արծր. Ա. գ (Արծրունու կեղծիքն է և պատկանում է վերի № 1 ստուգաբանության)։

— 2. Կիւրոս, նշանավոր վարդապետ, հմուտ հին և նոր Կտակարանի, ընկեր Գէորգ Մեղրեկի. մեռավ 1127 թ. և թաղվեց Դրազարկ վանքում.—Ուռհ. 366 (պատկանում է վերի № 2 ստուգաբանության)։—Ըստ Չամչ. Գ. 16 և Ազգապ. 1348 նույն է Կիրակոս Դրազարկցի, № 17։

Կիօղինե տես Գուխտոն № 3։

*ԿԼԵՈՊԱՏՐԱ, իգ < հուն. Κλεοπάτρα անունից, որ բուն նշանակում է «հորը փառքը» (κλεός «փառք, հռչակ»+πατήρ, πατρός «հայր, հոր» բառերից)։ Մեր մեջ գործածված չէ. հայտնի են այս անունով 1) Կղեօպատրա, դուստր Մեծն Միհրդատի († Ն. Ք. 63)՝ թագավորի Պոնտացոց և կին Մեծն Տիգրանի (Ն. Ք. 95—55), թագուհի Հայոց.—Գրգչ. Ընդ. պատմ. Բ. 132, Լէօ, Հայոց պատմ. Ա. 394.—2) Հունաց Մօրիկ հայազգի կայսեր մի աղջիկը, որ իր Անաստասիա և Թէոկտիստէ քույրերի և Կոստանդինա մոր հետ բանտարկվեց վանքում (605 թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 305։

ԿԼԻԵՆԷՍ, ար. ծագումն անհայտ.

— Κλειενης արշակունի, որ իր եղբայր Արտաւանի հետ գնաց Բիւզանդիոն՝ Լևոն Ա կայսեր ժամանակ (471 թ)։—Չամչ. Բ. 148 (կոչում է Գազրիկ), Justi 165 ա. ավելին տես Արտաւան № 6։

† ԿԼՈՐ, իգ ? < հյ. կլոր «գնդլիկ» բառից. իբր և անձնանուն հիշատակված է ԺԶ դարում մի անգամ (Տաշեան՝ Ցուց. 285 Կլօր ձևով)։ Սրա փաղաքշականն էլ կա Կլօրիկ ձևով, որ սակայն արական է, հիշված 1785 թ. (Ձեռ. Վասպ. 264)։

*ԿՂԱՒԴԻՈՍ, ար. < հուն. Κλαύδιος անունից, որ փոխառյալ է լտ. Claudius-ից. նույնից են նաև լտ. Claudianus > հուն. Κλαυδιανός (ար. անուն), Claudia > հուն. Κλαυδία (իգ.)։ Այս անուններով հայտնի են Կղաւդիոս կայսր Հռովմայեցոց և զանազան այր և կին նահատակներ։ Բոլորն էլ ծագում են լտ. claudus «կաղ» բառից։ Թեև Կղաւդիոս (ինչպես նաև մյուս ձևերը) անգործածական են մեր մեջ, բայց իբր ար. անվան օրինակ հիշված է Սիմ. քեր. 219։

*ԿՂԵՄԷՍ, ար. < լտ. Clemens անունից (> ֆրանս. Clément, գերմ. Clemens, անգլ. Clement, Clem, ռուս. Климент, Клементий), որ ծագում է լտ. clemens «քաղցր, հեզ, հանդարտ,

ողորմած» բառից։ Այս անունով կա 14 պապ, որոնցից հնագույնն է Ս. Կղեմէս 91—100 թ.։ Այս անունով հիշատակված է մի հայ սպարապետ Եգիպտոսի (տես տակը), և թեև ուրիշ անգամ չկա, բայց մտել է կաթոլիկ հայոց մեջ. ինչ. Հ. Կղեմէս Սիպիլեան՝ դրամագետ, Մխիթարեան Վիեննայի։

— Կղեմէս, հայ սպարապետ Եգիպտոսի, հավատքը փոխելով կոչվեց Էլմէլիք—էլ-Աֆդալ կամ Էմիրէն։ Երբ Խաչակիրները տիրեցին Երուսաղէմին (1099), սա՝ 200,000 զորքով վազեց նրանց դեմ Ասկալոն, բայց մեծ կոտորածով հալածվեց Եգիպտոս։ Իտալացի մեծ բանաստեղծ Tasso իր դյուցազներգության մեջ (ԺԷ, 32) գովում է նրա քաջությունն ու հանճարը։ Պատմում է նաև, որ երբ Էմիրէն տեսավ իր բանակի կոտորածը, հարձակվեց Խաչակրաց զորավար Գոդֆրուայի վրա, վիրավորեց նրա ձախ ձեռքը, բայց և ինքն էլ նրա աջ ձեռքից զարնված՝ մեռավ։ Բայց սա բանաստեղծական գյուտ է։ Պատմությունն ասում է, թե երբ Էմիրէն Ասկալոնում տեսավ իր բանակի բեկորները և քրիստոնյաների հաղթական դրոշները, լալով գոչեց. «Այսպէս ուրեմն մեծ է եղել Խաչյալի զորությունը քան Մահմեդի»։ Էմիրէն թողեց Ասկալոնը և դարձավ Եգիպտոս—Ալիշան, Շնորհ. 170։

ԿՃՊՕՆ, սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ հիշատակված է 1581 թ.—(Թորոս աղբ. Բ. 430)։

Կնդակ տես Խնդակ:

*ԿՆԵԱԶ, ար. < ռուս. КНЯЗЬ «իշխան» բառից. իբրև անձնանուն գործածական էր Կովկասում. այժմ խափանվել է։

*ԿՈԶՄԱՍ, ար. < հուն. Κοσμᾶς անունից (որ է լտ. Cosmus, ֆրանս. Cosme, Côme, գերմ. Cosmus, անգլ. Cosmus, Cosmo, ռուս. Косьма, Кузьма). ծագում է հուն. κόσμος «կարգ, կանոն, զարդ» բառից։ Նշանավոր են այս անունով Կոզմաս և Դամիանոս անարծաթ բժիշկ եղբայրները, որոնք նահատակվեցին Դիոկղետիանոս կայսեր ժամանակ (շուրջ 287 թ)։ Գործածված է մեր մեջ Կոզմա, Կոզմաս և Կոզմ ձևերով և անցյալ դարում գործածական էր Կոզմոս ձևով։

— 1. Կոզմաս, վաներեց Ուրդայ, մի խումբ ուրիշ կրոնավորների հետ ստորագրում է այն ձեռնարկին, որ ներկայացրին Աբրահամ կաթողիկոսին, խոստանալով հավատարիմ մնալ հայ եկեղեցու դավանանքին, «607 թ»։—Գիրք Թղ. խ.—որ և Կոզմ՝ Ուխտ. Բ. լէ (կրկին ձևերը ծագում են ուղ. Կոզմաս, սեռ. Կոզմայ հոլովումից)։

— 2. Կոզմա, գրիչ. օրինակել է Ավետարանը՝ Կիլիկիան շրջանում (թվականն անհայտ).—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 520։

— 3. Կոզմա, գրիչ. Թորոս երաժշտի պատվերով Խարբերդում գրեց մի Ավետարան, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 400։

— 4. Կոզմա, գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Ռապանի առաջնորդ Կոստանդին եպիսկոպոսի համար, նախ քան 1269 թ.—Ձեռ. Կես. ածած. 46 ա։

— 5. Կոզմաս, գրիչ և ծաղկող, ուսուցիչ ծաղկարարության, 1662 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 69 բ։

— 6. Կոզմայ Նորաշինկեցի, գրիչ. օրինակել է Ցայսմաւուրքը 1668 թ. (Սմբատեանց, Երնջակ 127) և մի Ավետարան 1678 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 2 բ)։

† ԿՈԿՈՆ, ար. < հյ. կոկոն բառից։ Մի անգամ հիշատակված է՝

— Կոկոն, հորեղբայր Կիրակոսի, որ էր առաջնորդ Արցախի Փողոս-Պետրոս վանքի, 997 թ.—Արծ. Արցախ 91, Ազգագր. հանդ. Բ, էջ 8, Բարխուդարեան, Ուխտ. յիշ. 5։

Կոկչայ տես Գոկչա։

ԿՈՀԱԶԱՏ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Կոհազատ, տեր Սիւնեաց (թվականը անհայտ).—Հիշատակված է Սիսիանի Ղարաքիլիսայի եկեղեցու կաթուղիկէում գտնված երեք անդրիներից մեկի շուրջը (Ազգագր. հանդ. Գ. 188)։

ԿՈՂԹԵԱԿ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Կողթեակ, իշխան Ուրծայ, հայր ուրացյալ Վարազներսեհի (Ե դար).—սեռ. Կողթեկայ՝ Փարպ. կէ։

ԿՈՃԻԿ, ար. անշուշտ մականուն և ոչ թե անուն։ Այս անունով ունինք Ոսկեփորիկում մի Պատմութիւն, որի սկիզբն է «Պատմութիւն Կոճիկ վարդապետին։ Եւ յիշեմ ի պատարագին։ Պատմեմ ձեզ միւս այլ սքանչելիս որ եղև ի սուրբ վարդապետէն և առն Աստուծոյ...» (Ձեռ. Վենետ. Բ. 926)։ Թվականը անհայտ է։

ԿՈՄԱՆՈՍ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է Էջմ. Գև. № 130 ձեռագրում (ԺԷ դարից).—չկարդալ Ռոմանոս։

* ԿՈՄԻՏԱՍ, ար. < հուն. Κομητᾶς կամ Κομιτᾶς անունից (որ և Κομήτης). բուն նշանակում է «երկար մազերով, գիսավոր. մազոտ, թավ»։ Այս անունով հայտնի է օրինակ՝ մի հույն բանաստեղծ։ Գրված է նաև Կումիտաս։ Հնում քիչ է գործածված, ինչպես և այժմ. կրճատ ձևն է Կոմիկ (Հիւբշ. 336)։

— 1. Կոմիտաս *Աղցեցի, կաթողիկոս Հայոց «615—628 թ»։ Արագածոտն գավառի Աղցք գյուղից էր. կարգվեց եպիսկոպոս Մամիկոնէից (Տարօնոյ) և վանահայր Գլակայ վանից, երբ հաջորդ Աթանասի։ Այս միջոցին Աբրահամ կաթողիկոսի կողմից ուղարկվեց Վրաց Կյուրիոն կաթողիկոսի մոտ՝ միության խնդրով (Մամիկ. ա)։ Այս անհաջող փորձից հետո, Մատթէոս Ամատունեաց եպիսկոպոսի հետ ուղարկվեց Պարսկաստան, Տիզբոնի արքունիքը, ուր Պարսից Խոսրով թագավորը՝ իր զանազան քրիստոնյա հպատակների դավանաբանական վեճերին վերջ տալու համար, Սմբատ Բագրատունի մարզպանի հսկողությամբ՝ կրոնական ժողով էր գումարել «615 թ»։ Ժողովին մասնակցում էին բացի հիշյալ երկու եպիսկոպոսներից, Գաբրիէլ բժշկապետ Խոսրով թագավորի, Վրաց և Աղվանից կաթողիկոսները?, Երուսաղէմի Զաքարիա պատրիարքը, քաղկեդոնականներ և ասորի միաբնակ եկեղեցականներ։ Կոմիտասը ներկայացրեց ժողովին հայ եկեղեցու դավանությունը, որ քննվելով և համեմատվելով երեք տիեզերական ժողովների և Քաղկեդոնի դավանության հետ, հաստատվեց իբրև ուղղափառ։ Սրա վրա Խոսրովը հրովարտակ հանեց և հրամայեց որ իր տերության բոլոր քրիստոնյա հպատակները Հայոց դավանանքն ընդունեին։ Այսպեսով հայ եկեղեցու դիրքը մեծացավ ու զորացավ։ Կոմիտասը ընտրվեց կաթողիկոս՝ երբ հաջորդ Աբրահամի և Հայաստան դառնալով՝ ձեռնարկեց եկեղեցիների շինության և բարեկարգության։ Նշանավոր է Հռիփսիմէի տաճարը, որ հիմնովին վերաշինեց «618 թ»։ Իր օրով Ասորեստանի եպիսկոպոսները Դուին եկան և կրոնական հպատակություն հայտնեցին (հրատ. Սամ. անեց. էջ 290)։ Իր օգնությունը խնդրեց Երուսաղէմի Մոդեստոս եպիսկոպոսը։ Իր ձեռքով ձեռնադրվեց Աղվանից Ուխտանէս կաթողիկոսը։ Գրական գործերն են՝ Անձինք նուիրեալք (Հռիփսիմեանց շարականը), Կնիք հաւատոյ, Հարցումն Կոմիտասայ և պատասխանի պատրիարքին Ասորւոց, Պատասխանի Մոդեստոսի թղթոյն (հրատ. Սեբ. գլ. լդ. էջ 86—88), Հարցումըն Փիլոսի Կոստանդնուպոլսի հայրապետի և Կոմիտասու Հայոց կաթողիկոսի (Թորոս աղբ. Բ. 395), Սկիզբն հաւատոյ, զոր ասացեալ է Տ. Կոմիտասայ հայոց կաթողիկոսի (տես Ձեռ. Վենետ. Բ. 1143—4)։ Իր խնդրով է գրված Պատմութիւն ժողովոյն Նիկեոսի (այս մասին տես Աբրահամ № 5)։ —Արձ. Շողակաթ, էջ 72=Արրտ. 1898, 442. Սեբ. լա, լե, լը, խդ. Գիրք Թղ. ծզ, ծէ. Կնիք հաւ. 3. Եզն. եր. 268. Ցհ. կթզ. ժէ. Մամիկ. ա. Անան.*

տպտ. 137 բ. Վրդ. լբ. Ասող. Բ. բ, գ. Շար. (սկզբի ցանկում հիշված իբր հեղինակ). Մխ. անեց. գ, իդ. Օրբ. իէ, ծա, հա. Կիր. 30. Միխ. աս. իթ (=իը). Մխ. այրիվ. 21, 65. Սամ. անեց. 79. Թհնպ. 271. Յհ. կթղ. հյր. 275. Տաթև. հարց. 637. Սիմ. ապար. 105 (կոչում է Կոմիտաս Տարոնեցի, ըստ որում Տարոնի եպիսկոպոս էր), 106, 108. Առաք. պատմ. 479. Դրնղ. 514.—Կոմիտաս՝ Գիրք Թղ. ղա.—սեռ. Կոմիտասու՝ Գիրք Թղ. ծզ.—Կոմիտասայ՝ Սեբ. լգ. Մամիկ. ա.—Կոմիտասայ՝ Սեբ. լա. Յհ. կթղ. ժէ. Գիրք Թղ. ղա. Օրբ. ծա. Կիր. 31. Վրդ. լգ. Փիլոքս. 9. Եզն. եր. 268. —բց. ի Կոմիտասայ՝ Անան. ապստ. 137 բ.—գրծ. Կոմիտասաւ՝ Սեբ. լը.—Տաշեան, Ցուց. 1103 ա. Զարբ. Հին դպր. 423—5. Վրաց աղբ. Ա. 37, 38, 78։—Կոմիտաս կաթուղիկոսի գրական գործերի վրա խոսում է Աբեղեան, Հայոց հին գր. պատմ. Ա. 362—8. առանձնապես գովում է «Անձինք նուիրեալք» շարականը, որ հայ գրականության մեջ հնագույն բանաստեղծական երկն է (նույն իսկ մի քանի տարով ավելի հին քան Դաւթակ երգչի տաղը) և ի վեր է հանում նրա գեղարվեստական մեծ արժանիքը։ Իր կարծիքով «Կնիք հաւատոյ» ժողովածուն պատկանում է Յովհան Մայրավանեցուն և հատկապես նրա «Հաւատարմատ» կամ «Արմատ հաւատոյ» կոչված գործն է։

— 2. Կոմիտաս քահանա Բէօմիւրճեան, ծնվել է Պոլիս 1656 թ. Երեմիա չէլէպի Բէօմիւրճեանի կրտսեր եղբայրն է. Նորադարձ կաթոլիկ հայ. համարվելով Աւետիք պատրիարքին փախցնող դավաճաններից մեկը, կախաղանի դատապարտվեց։ Ազատվելու համար Տաճիկները առաջարկեցին ընդունել մահմեդական կրոնը և երբ նա մերժեց, կախաղանի պատիժը գործադրեցին «1707 թ»։ Կաթոլիկ հայերը համարում են նրան նահատակ և ամեն տարի տոնում նրա մահվան տարեդարձը։ Այնպես որ Հռոմի Պիոս ԺԱ պապը նրան սրբերի կարգը անցկացրեց մեծ հանդեսով, որ տեղի ունեցավ Հռոմի Ս. Պետրոս եկեղեցում 1929 թ. հունիս։ Այս առթիվ հրատարակվեցին զանազան գրքեր, որոնցից հիշելու արժանի եմ համարում Նազլեան արքեպսի բանախոսությունը (Պէյրութ 1929 հունիս 23, որ տպվեց Վենետիկում 1930 թ.) և երկրորդ՝ Առաքել Սարուխանի «Յարգանք հայ նահատակին», Վիեննա 1930 (արտատպ. ՀԱ-ից 1929 թ)։—Կոմիտաս քահանան ունի տաղեր, Պատմութիւն Աւետիք պատրիարքի (Հայապ. 134), Գործք Առաքելոցը վերածել է ոտանավորի (տպ. 1704).—տես և Տաշեան, Ցուց. 1109 ա։

— 3. Կոմիտաս *Պիլէզիկճեան, որդի Պերացի Սատէթի, նոր նահատակ. ծնվել է Պոլսում, հավատքը չուրանալով, կախաղան է բարձրացել 1742 թ. շիրիմը գտնվում է մինչև այժմ, Պոլսում, Պերայի գերեզմանատանում.—Թորգոմեան,* REA *4, 218 (ուր կա նաև նրա դամբանի նկարը), Ազգապ. 3001 (կոչում է Պիլէճիկցի. արդյոք փոխանակ Պիլէզիկճեանի՞)։*

**ԿՈՄՍ**, *ար. < հյ.* կոմս *բառից, որ սակայն ինքն էլ փոխառյալ է ասոր.* قومس qōms *կամ հուն.* κόμης *«իշխան, կոմս» բառից։*

— 1. Կոմս *Մամիկոնեան, եղբայր Մանուէլ սպարապետի.—Բուզ. Ե. լէ (այս գլխի առաջին օրինակում բոլոր ձեռագրերն էլ ունին* Կոն. *սակայն մյուս բոլոր տեղերը* Կոմս)*.—գրծ.* Կոմսիւ՝ *Բուզ. Ե. լէ։ (Ազգապ. 240 ըստ Մեսր. եր. 67, 68, 119, 120 դնում է* Կոն, *որ համարում է* Մամիկոն *անվան կրճատ ձևը։ Այս մասին տես նաև Մատիկեան, Անանուն, էջ 54)։*

— 2. Կոմս, *հայր Սամուէլի, հայ թագավորի Բուլղարիայ (Ժ դար). իր եղբոր հետ միասին կոչվում էին Կոմսաձագ, որից հանում եմ* Կոմս *անունը (տես Սամուէլ)։*

— 3. Կոմս, *Կաֆացի հայ վաճառական, որ ձենովացիներից գնեց մի հող Պոլսի Ղալաթիա (=Թրք.* Qalata *< իտալ.* calata *«զառիվայր, վայրէջք») թաղում, 1436 թ. այս հողի վրա կառուցվեց ապա Հայոց Ս. Լուսավորիչ մեծ եկեղեցին։—Արձ. նույն եկեղեցու, որ հրատարակված է Նոտարք 106 և ՀԱ 1903, 343։ Թվականի մասին տես վերը Եսայի № 29 և Թէոդորոս № 44։*

†**ԿՈՅՍ**, *ար. հյ.* կոյս *բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1615 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա)։*

**ԿՈՆԱԿ**, *ար. < ծագումը անհայտ։ (Մ. Թումանեան, ՀԱ 1911, 526 կարծում է թե Մամիկ և Կոնակ անուն չեն, այլ չին.* ման-գուն *տիտղոսը, որ նշանակում է «Մանաց իշխան». սրանից առաջացել է Մամգուն, որ է* Մամ*(իկ) և* Կոն*(ակ)*։

— Կոնակ, *նախարար չինացի, որդի Կառնամի. իր Մամիկոն անուն եղբոր հետ փախավ Հայաստան՝ Մեծն Խոսրովի ժամանակ։ Սրանցից սերվեց Մամիկոնեան տոհմը.—Սեբ. գ (էջ 12). Վրդն. աշխ. 522. Սիմ. ապար. 29.—*Կոն՝ *Մեսր. եր. 121.—բց.* ի Կոնակայ՝ *Սեբ. գ (էջ 13).—Սա է որ հիշվում է իբր* Կոռնակ *սպարապետ Մեծն Խոսրովի, որ պատերազմելով Հռոմայեցոց դեմ հաղթեց և՛ սպանեց Կարոս կայսեր.—Սեբ. գ. (էջ 14).—* Կորնակ՝ *Սամ. անեց. 62.—սեռ.* Կորնակայ՝ *Սամ. անեց.*

62։ (Նկատելի է որ Մամիկոնեանները ավելի հետո են քան Մեծն Խոսրով՝ ըստ Խորենացու)։ Կոռնակի մասին տես Գրգչ. Բնն. պատմ. Գ. 319.—Խոր. Բ. հԹ հիշում է Կոռնակը, բայց այնպիսի ձևով, որ չի իմացվում թէ ով է։ Ըստ Զամչ. Ա. 371 Արտաշիր Սասանեանը կարգել է նրան իր բանակի զորավար և հաղթել Հռովմայեցոց։ Նրա մասին տես նաև Այրարատ 374, 376, Հայապ. 68, Տաշեան, Ագաթ. 124։

ԿՈՆԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակ-ված է 1552 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1853) և մի անգամ էլ 1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 51 ա)։ Երկուսը նույն չեն։

ԿՈՆԴԵՐ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է՝

— Կոնդէր գաբբին, մի տուն է նվիրել Խծկոնից վանքին 1213 թ.—Արձ. Այրարատ 113։

ԿՈՇԻԿ, ար. (անձուն է). պահված է սեռ. Կօշկայ ձևով. ըստ Վրդն. աշխ. 507 Արագածոտն գավառում կա «Կոշկայ վանքն, ուր կա գերեզմանն Պետրոս ականատես վարդապետին և Կոշկայ»։

— Կօշիկ, մր. թե իգ. իբրև անձնանուն հիշատակված է 1602 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331 Կօզիկ ձևով, որ Թորոս աղբ. Ա. 184 գրում է Կօշիկ (իսկ Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 85 դժբախտաբար այս մի բառը հապավել է)։

— Կօշիկ, իբր մականուն տես Կոստանդին № 23։

* ԿՈՊԵՌՆԻԿ, ար. < Լեհացի աստղաբաշխ Նիկոլա Copernic-ի (1473—1543) ազգանունից! Նա էր որ գտավ մոլորակների շարժ-ման օրենքները։ Այս ազգանունը իբրև անուն գործածական էր Պոլսում, անցյալ դարում։

† ԿՈՌՆԱԿ, ար. < ըստ իս հյ. կօրիւն բառի գծվականն է. հմմտ. կորնակ «որբնու փոքր ձագ» Վրք. հց. Բ. 433 (չունի ՆՀԲ). այս գրչությունը թեև կա (տես վերը Կոնակ անվան տակ); բայց հայերենի ձայնական օրենքով ավելի լավ է կոռնակ (ր դառնում է ն-ի մոտ ռ)։—Մագ. Թղ. ժԹ դնում է Կռնակ և իբր մեկնություն ավելացնում է «որ թեկն ածէր կռնակաւ և նա-հանջէր մարտուցեալ»։ Սրանից երևում է, որ մեկնում է կռնակ «թիկունք» բառով և թե այս ժողովրդական բառը գոյություն ուներ ԺԱ դարում։

— 1. Կոռնակ, թագավոր հայկազն, հաջորդեց Պաճոյճի Ն. Ք. 630 թ. (ըստ Զամչ. Ա. 101).—Խոր. Ա. իբ. Սամ. անեց. 46։ Կղկնտ. Ա. ժե (հրտր. Էմինի). Վրաց աղբ. Ա. 74.—Կոռնակ՝ Ցհ. կԹղ. դ. Մխ. այրիվ. 18, 54. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե (հրտր.

*Շահնազ.)*—Կոսվնակ՝ *Ուխտ. Ա. էգ.*—Կոյինակ՝ *Վրդ. է.*—Կրունակ՝ *Մին. համզ. 11։*

— 2. Կոսնակ *տես* Կոնակ։

**ԿՈՍԻ** *տես* Կոստանդին։

***ԿՈՍՏԱՆԴԻԱ**, *իգ. ծագումը տես հաջորդում։*

— Կոստանցիա, *որ և* էլեոնորա *(գեղեցկանուն թագուհի), դուստրը Ֆրեդերիկ Ա Արագոնացի թագավորի Սիկիլիոյ (1296—1337), Կիպրոսի Ենրիկոս թագավորի այրին էր, ամուսնացավ Կիլիկիոյ թագավոր Լևոն Ե-ի հետ՝ 1332 թ. և եղավ թագուհի Հայոց.— Ջամչ. Գ. 333, 336, 390,* REA *1, 250, Սխուան 543 բ։*

***ԿՈՍՏԱՆԴԻՆ**, *ար.* < *հուն.* Κωνσταντῖνος *անունից, որ իր հերթին փոխառյալ է լտ.* Constantinus *անունից. այս էլ ծագում է լտ.* constans *«գիմացկուն, ամուր, հաստատուն, տևական» բառից (Հիւբշ. 336)։ Այս բառից են կազմվում նաև ուրիշ զանազան անուններ. ինչ.* Constans, Constantia, Constantinus, Constantianus, Constantius, Constantina. *Օրինակ՝ հայտնի են Հունաց կայսրներից՝ Կոստանդիանոս Ա Մեծ, կայսր Հռովմայեցոց (306—337), որ քրիստոնեությունը պետական կրոն դարձրեց, Կոստանդին Բ 337—340, Կոստանդին Գ 641, Կոստանդին Դ 668—685, Կոստանդին Ե Կոպրոնիմոս 741—775, Կոստանդին Զ 780—797, Կոստանդին Է Պերփերոժէն 912—959, Կոստանդին Ը 924—946, Կոստանդին Թ 976—1028, Կոստանդին Ժ Մոնոմախոս 1042—1054, Կոստանդին ԺԱ Դուկաս 1059—1067, Կոստանդին ԺԲ 1067—1078, Կոստանդին ԺԳ Պալէոլոգ 1448—1453՝ վերջին կայսր Հունաց։ Հայոց մեջ գործածությունն է մտել՝ սկսած ԺԱ դարից. սովորական ձևն է* Կոստանդին, *կրճատ՝* Կոստանդ, Կոստան *(որից* Կոստանեան *կամ* Կոստանդեան *ազգանունը), այժմ էլ ռուսական ձևով՝* Կոստիա, Կոստի։ *Գգվական ձևն է* Կոստիկ, *որ տես առանձին։ Այլ գրչություններ տես տակը։ Լատին ձև է* Կոնստանց, Կոստանց, *ինչպես ունինք Կոստանց Կամարտիոս (կամ Խումարտաշ), պարոն և տեր Սելևկիոյ, որ ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին և ապա, նրա ձեռքով բանտարկվեց. որդի Հեթումի Սեբաստոսի (Սմբ. պատմ. 112, Սամ. անեց. շար. 146, Սխուան 285, 287, 447, 471 են)։ Շատ կրճատ ձևեր են արդյոք* Կոսի *1661 թ. (Ջեռ. Վասպ. 920) կամ* Կոս *(անթվական մի խաչքարի վրա, Արցախ 254—5)։ Անսովոր ձև է* Կոստանտեյ, *որ հիշված է մի տապանագրում, 1512 թ. (Արցախ 67)։*

— 1. **Կոստանդին** եպիսկոպոս Մելիտինոյ Հայոց. ներկա է եղել Քաղկեդոնի ժողովին (451 թ).—Պալճեան 14։

— 2. **Կոստանդին**, անդրանիկ որդի Լևոն Ե Հայկազն կայսեր հունաց (813—820 թ). Նախապես կոչվում էր Սմբատ և ծնված էր Լևոնի Թէոդոսիա կնոջից, որ Արշաւիր հայկազն պատրիկի աղջիկն էր։ Երբ Լևոնը գահ բարձրացավ, իրեն մտատիպար ունենալով Լևոն Իսաւրացուն, գահակից ընտրելով իր Սմբատ որդուն, նրա անունը փոխելով՝ դրավ Կոստանդին, որովհետև Լևոն Իսաւրացու որդին էլ կոչվում էր Կոստանդին (813)։ Երբ Լևոնին սպանեցին (820 թ), Սմբատ-Կոստանդին որդուն էլ՝ մյուս երեք եղբայրների (Վասիլ, Գրիգոր, Թէոդոս) և իրենց մոր հետ Պրոտի կղզում մի վանքի մեջ փակեցին։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 180, 194, 334։

— 3. **Կոստանդին** Ադրիանուպոլսեցի, որդի Միղտիս Արշակունու, աղքատ մարդ էր. իր որդին է Վասիլ Ա կայսր հունաց, որ ծնվել էր 812 թ. արդեն շատոնց մեռած էր 851 թվին, երբ Վասիլը Ադրիանուպոլսից մեկնեց Կոստանդինուպոլիս։—Չամչ. Բ. 690, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 202, 354։

— 4. **Կոստանդին** պատրիկ, երևելի հայ իշխան Բիւզանդական պալատում, բարեկամ Վասիլ Ա կայսեր, 856 թ.—Չամչ. Բ. 693, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 341։

— 5. **Կոստանդին** հայ. արքունի սպասավոր Միքայէլ կայսեր հունաց. ծածուկ սնուցանում և մխիթարում էր Իգնատիոս պատրիարքին, որին Փոտը գահազուրկ էր արել, բանտարկել և անոթի էր պահում (861 թ).—Չամչ. Բ. 680։

— 6. **Կոստանդին**, անդրանիկ որդի Վասիլ Ա հայ կայսեր հունաց. ծնվել էր Վասիլի Մարիամ անուն կնոջից. Վասիլը շատ էր սիրում իր այդ որդուն, որովհետև շատ նման էր իրեն։ (Ոմանք համարում են այս Կոստանդինին որդի Միքայէլ կայսեր. որովհետև ապորինի հարաբերություններ ուներ Վասիլի կնոջ հետ)։ 869 թվին, Վասիլը մանուկ Կոստանդինին գահակից հռչակեց. 880 թվին միասին արշավեցին Կապադովկիա և մի քանի քաղաքներ գրավեցին. նույն տարին վաղամեռիկ եղավ 13 տարեկան հասակում (880 թ)։ Փոտ պատրիարքը Վասիլին մխիթարելու համար Կոստանդինին սրբերի կարգը դասեց։ Շանթարաբէն անունով մի խաբեբա մի անգամ Կոստանդինին շատ նմանող մի ասպետ կանգնեցրեց անտառում, երբ Վասիլը որսի պիտի գար այնտեղ։ Ասպետը սպիտակ ձիով, ոսկի զրահներով, վազեց

*Վասիլի վրա, գրկեց, լացավ, համբուրեց և առանց մի բառ արտասանելու հեռացավ (882)։ Վասիլը համարելով այս հրաշք կամ տեսիլ, նույն տեղում Ս. Կոստանդինի անունով մի եկեղեցի կառուցեց։—Չամչ. Բ. 697, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 219, 352—5, 358։*

— 7. Կոստանդին *Լեկաբենոս, որդի Ռոմանոս Լեկաբենոսի՝ կայսեր հունաց, մայրն է Թէոդորա կայսրուհի, քույրն է Հեղինէ կայսրուհի՝ կին Կոստանդին Է Պերփիռուժէնի։ Երբ Ռոմանոս կայսր դարձավ, իրեն գահակից հրատարակեց իր որդի Քրիստափորին (921), ապա Ստեփան և Կոստանդին որդիներին (924) և նույն իսկ Քրիստափորի որդուն՝ Ռոմանոս անունով Թոռնիկին։ Այդ միջոցին Կոստանդինը ամուսնացավ հայազգի Ադրիանոս Սպերացի պատրիկի Հեղինէ աղջկա հետ (941), բայց մի քանի օրից Հեղինէն մեռնելով՝ Կոստանդինը ամուսնացավ Մամոսեան ընտանիքից Թէոֆանօ անուն աղջկա հետ՝ 941 թ. (Չամչ. Բ. 817, 834, Տէր Սահակեան. Հայ կայսերք, Բ. 484)։ Բայց այս երկու որդիները դավաճանեցին իրենց հոր և նրան գահազուրկ անելով՝ Պրոտի կղզու վանքում կրոնավոր դարձրին (944)։ Նրանք որոշեցին նաև ձերբակալել Կոստանդին Պերփիռուժէն կայսեր, բայց նա կանխեց դավադրությունը և երկուսին էլ փակեց Պրոտիի վանքում (945)։ Կոստանդիններին փոխադրեցին ապա Տենեդոս կղզին, հետո Սամոթրակէ, որտեղից փախչելու համար սպանեց իր Նիկետաս պահապանին, բայց ինքն էլ բռնվեց և սպանվեց (948 թ).—Տէր Սահակեան, Հայ կայսերք. Բ. 49, 83, 86—90, 481, 484—5, 469։*

— 8. Կոստանդին *Փոկաս, որդի Վարդ Փոկասի, եղբայր Լևոնի և Նիկեփորի. երբ ծերունի Վարդ Փոկասը պատերազմում ծանր վիրավորվելով հրաժարվեց պաշտոնից (953 թ), այս երեք որդիները նրա տեղն անցան։ Կոստանդինը Սելևկիայի (Կիլիկիա) կառավարիչն էր. Կոստանդինը հաղթվեց արաբների Համտան զորավարից, գերի բռնվեց և հանձն չառնելով մահմեդական դառնալ, թույնով սպանվեց (954)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 135։*

— 9. Կոստանդին *Է Պերփիռուժէն, կայսր հունաց 913—959 թ. Լևոն Զ Իմաստասէր կայսեր որդին էր. ծնվել է 905 թ. իր Զոյէ անուն կնոջից, որ Լևոնի չորրորդ կինն էր։ Անչափահաս լինելով խնամակալ ունեցավ զանազան մարդիկ և հատկապես իր մորը՝ Զոյէին։ Ամուսնացավ իր ծովակալ հայազգի Ռոմանոս*

Լեկաբենոսի դստեր՝ գեղեցիկն Հեղինէի հետ (919 թ)։ Շուտով այս Ռոմանոսը իրեն թագավոր հրատարակեց, Կոստանդինին թողնելով ապրել կայսր անվան տակ՝ առանձնական կյանքով։ Իր ժամանակ տեղի ունեցան բազմաթիվ արշավանքներ. արեւվելքից Արաբները, արեւմուտքից Բուլղարները, Ռուսները, Հունգարացիք, Լոմպարտացիք և Հոնները շարունակ հարձակումներ էին գործում, որոնց հազիվ կարողացավ դիմադրել պետությունը։ Կոստանդինը հունաց ամենաթույլ կայսրը եղավ. նա ավելի գրչի մարդ էր քան զենքի։ Թողել է բազմաթիվ աշխատություններ, որոնցից հիշելու արժանի են Վասիլ Ա կայսեր կենսագրությունը, Եդեսիոյ պատկերի պատմութիւնը, կայսերական արարողության ծիսարանը, ընտիր մի օրինագիրք, բժշկական ու երկրագործական երկեր, իր մեծ գրատան մեջ պահած ու կարդացած գրքերի բովանդակությունը, և այս բոլորից ավելի արժեքավոր Բանակաթեմերի վրա մի գրվածք, ուր շատ տեղեկություններ կան շրջակա ազգերի վրա, երկու ընդարձակ գլուխ էլ Հայոց Տարօն և Այրարատ գավառների մասին։ Ենթադրվում է թե «Թէոփանէս շարայարեալ» կոչված անանուն հեղինակն էլ, որ այնքան մեծ գովեստներ է տալիս Պերփեռուժէնի մասին, հենց ինքը Կոստանդին Պերփեռուժէնն է։ Մեռավ թունավորվելով իր որդի Ռոմանոս Բ-ի ձեռքով 959 թ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 367 (ենթադրում է որ գիտեր նաև հայերեն), Բ. 5—30, 413—473։

— 10. Կոստանդին, եղբայր Վարդ Սկլերոսի, կինն է Սոֆիա, որ Վարդ Փոկասի քույրն էր, նույնպես հայ։ Երբ Ռուսները միացած Բուլղարների, Հունգարացոց և Պեչենեկների հետ, 30,000 զորքով արշավեցին Ադրիանուպոլսի վրա, Զմշկիկ կայսրը ուղարկեց նրանց դեմ Վարդ Սկլերոսին։ Կոստանդինը նրա հետն էր։ Գործեց մեծամեծ քաջություններ։ Ռուսները չարաչար պարտվեցին և ետ քաշվեցին (970 թ)։ Տարիներ հետո, Վարդ Սկլերոսը ապստամբեց Յունաց Վասիլ Բ կայսեր դեմ. սա արձակեց Վարդ Փոկասին, որ աքսորումն էր և ուղարկեց Վարդ Սկլերոսի դեմ։ Պատերազմներին մասնակցում էր նաև Կոստանդինը։ Փոկասից հաղթվելով՝ Վարդը իր Կոստանդին եղբոր ուղարկեց Բաղդադի ամիրայի մոտ՝ նրանից օգնություն խնդրելու. բայց պատասխան չստանալով՝ անձնատուր եղավ կայսեր (976)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 182, 187—191, 250—252։

— 11. Կոստանդին, ազգական Մակար Հայկազնի. միասին ուխտի գնացին Երուսաղէմ, 1000 թ.—Զամչ. Բ. 859։

— 12. Կոստանդին Արծրունի, որդի Սենեքերիմ Թագավորի Արծրունւոյ. հոր հետ գաղթեց Վասպուրականից Սեբաստիա՝ 1021 թ.—Վրդ. ժա. Ուռհ. 55. Սմբ. պատմ. 49. Անանուն ժմ. 16. Առաք. պատմ. 479.—Զարբ. Հին դպր. 384։ (Ըստ Զամչ. Բ 915 արդեն մեռած էր 1037 թվին)։

— 13. Կոստանդին Ը, կայսր Յունաց 1025—1028 թ. Ռոմանոս Բ կայսեր որդին և Վասիլ Բ կայսեր եղբայրն է. ծնվել է 959 թ. մեկ տարեկան էր, երբ հայրը նրան գահակից կայսր հայտարարեց. Թագավորեց իր եղբոր՝ Վասիլի հետ 976—1025 թ. որովհետև Վասիլը ամուսնացած չէր, ուստի երբ մեռավ՝ Կոստանդինը նրա տեղն անցավ։ Զվարճության, խնջույքների, երգի և որսի սիրահար՝ շատ անփառունակ կյանք ունեցավ։ Հեղինէ Թագուհուց ունեցել էր միայն երեք աղջիկ՝ Եւդոկիա, Զոյէ և Թէոդորա։ Արու զավակ չունենալով, նրանով վերջացավ Յունաց Հայկական հարստությունը, որ սկսել էր Վասիլ Ա. Արշակունու փառավոր իշխանությամբ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ 323—333, 569—571։

— 14. Կոստանդին Ա, որդի Հաբէլի, եղբայր Հարպիկի՝ տեառն Արկնոյ. գերի բռնվեց և աքսորվեց Պոլիս՝ 1051 թ.—Ուռհ. 110, 112, Զամչ. Բ. 952—3։

— 15. Կոստանդին Ա Ռուբինեան, որդի Ռուբէնի Ա. ժառանգելով իր հոր փոքրիկ նորածին իշխանությունը, տիրեց Վահկայ բերդին։ Օգնեց Խաչակիրներին, որոնց օգնության գնաց իր մարտիկներով՝ Անտիոքի ութամսյա պաշարման ժամանակ (1097—8)։ Խաչակիրներն էլ քաղաքը գրավելուց հետո, շատ նվերներ ուղարկեցին նրան քաղաքի ավարից, միանգամայն պարգևեցին նրան «մարկիզ» տիտղոսը (Բասմաջեան, Լևոն լուս. 10)։ Իր մի աղջկան ամուսնացրել է խաչակիրներից Ժոսլէն իշխանի հետ, որ եղավ կոմս Եդեսիոյ (Սիսուան 47)։ Կոստանդինը գահակալել է «1095—1100 թ»։—Հեթ. ժմնկ. Վրդ. կե. Միխ. աս. իա. Ուռհ. 257, 259, 269, 271. Սմբ. պատմ. 87, 88, 136. Վահր. ոտ. 193. Մխ. այրիվ. 19. Սամ. անեց. 116, 121, 135—6. Պատմ. կիլ. 204. Պատմ. ռուբ. 214. Պատմ. լմբ. 238. Դարդել 9, 10. Նհպտք. 101. Մին. համդ. 37.—սեռ. Կոստանդեայ՝ Կիր. 62, ա. Վրդ. կե, կէ, հգ, հը. Ուռհ. 298, 316, 337, 400. Միխ. աս. իե (=իգ). Վահր. ոտ. 194. Սմբ. պատմ. 94. Սամ. անեց. 121, 128, 135. Պատմ. կիլ. 204։

Պատմ. լմբ. 238. Ննպտք. 101.—Կոստանդեի՝ Ուռհ. 270, 342.—Կոստանդի (սեռ.)՝ Ուռհ. 318.—Կոստանդեայ՝ Գր. եր. 369.—Կոստանդեի՝ Սմբ. պտմ. 88, 89, 92. Մխն. համզ. 38.—Տես և Տաշխան, Ցուց. 771, Հայապ. 343. Սիսուան 47, 239 (վերջինս Արձ. Անարզաբայում՝ Կոստանդին Ա-ի որդի Թորոս Ա-ի կողմից)։

— 16. **Կոստանդին** Ուռհայեցի, դարձավ հունադավան և գործեց Հայոց դեմ՝ պախարակելով նրանց հավատքը (ԺԱ դար).—Չամչ. Գ. 24։

— 17. **Կոստանդին**, տեր Կոռկառի. մասնակից եղավ Ուռհայի Թորոս կյուրապաղատի սպանության (1098 թ), բանտարկվեց Սամուսատի բերդում և սպանվեց Գաղտինից 1107 թ. (ըստ Վրդ.) կամ 1117 թ. (ըստ Ուռհ.)—Ուռհ. 260—261, 338.—Կոստընդին՝ Վրդ. կէ.—սեռ. Կոստանդեայ՝ Ուռհ. 359։

— 18. **Կոստանդին**, որդի Թորոս Ա-ի († «1129 թ»). Թունավորմամբ սպանվեց դեռ իր հոր կենդանության ժամանակ։ Հայրը նրա հիշատակին կանգնեցրեց մի Արձ. Անարզաբայի բերդի Զորավարաց եկեղեցում.—Վահր. ոտ. 196. Սամ. անեց. 128. Պտմ. կիլ. 204. Արձ. Սիսուան 239։

— 19. **Կոստանդին**, որդի Լևոն Ա-ի («1129—1141 թ»). եղբայրները կռվելով նրա հետ՝ բռնեցին և աչքերը հանեցին.—Սմբ. պտմ. 93. Սամ. անեց. 129։

— 20. **Կոստանդ** (սեռ. Կոստանդի ձևով), մի խաչքար է կանգնեցրել Մուշ, 1141 թ.—Սարգիսեան, Տեղագր. 233։

— 21. **Կոստանդին**, Կիլիկիոյ հայոց ազատներից, վիթխարի հսկա։ Երբ Հունաց Ցովհաննէս Կոմնենոս կայսրը պաշարեց Վահկան և պահանջում էր անձնատուր լինել, սա բերդի վերևից, հունարեն լեզվով հայհոյում ու նախատում էր կայսեր և մենամարտի էր կանչում հունաց քաջերին։ Վերջապես հույները ընտրեցին Եւստրատիոս մակեդոնացի քաջ հսկային, որ կայսրից խրախուսված մոտեցավ և ձայն տվեց Կոստանդինին։ Իսկ սա, ինչպես ասում է հույն պատմիչ Նիկետասը, «ինչպես ամպերից ցոլացող փայլակը կամ ինչպես անտառի քարայծը» վազեց իր մրցակից քաջարի հսկա Եւստրատիոսի վրա։ Ուներ սպիտակ վահան, որի պորտին խաչ էր նկարված, աջ ձեռքում բռնած սուրը՝ շարունակ բաղխում էր Եւստրատի վահանին, այնպես որ կայսրը հույսը կտրեց թե նա ողջ կդառնա։ Մահը անխուսափելի էր։ Զորքը քաջալերում էր միշտ Եւստրատին «զարկ սպանի՛ր». բայց նա թեև շարունակ բարձրացնում էր ձեռքը, բայց նորից

*եռ էր քաշում, առանց հարվածելու։ Կարծես թե մի աներևույթ զորություն կարկում էր նրա բազուկը։ Վերջապես նորից բարձրացրեց սուրը և ուժգին թափով ջարդեց Կոստանդինի վահանը։ Հիացմունքի աղաղակ բարձրացրին հույները։ Իսկ Կոստանդինը՝ վահանից զրկված, արագ բարձրացավ բլուրը և բերդ մտավ։ Կայսրը հարցրեց Եւստրատին, թե ինչու ձեռքը բարձրացնում էր, բայց չէր խփում ոսոխին։ Նա պատասխանեց թե մի հարվածով ուզում էր ջարդել թե վահանը և թե թշնամուն. բայց որովհետև նա վահանը հեռու էր բռնում, ուստի չէր հաջողվում։ Նա վախեցավ գնալ Կոստանդինի հետևից, թեև նա կիսազեն էր։ Բերդը գրավելուց հետո, կայսրը Կոստանդինին շղթայի զարկավ, որպեսզի Պոլիս ուղարկի։ Հազիվ նավը ափից հեռացել էր, գիշերանց նա հարձակվեց պահապանների վրա, շատերին կոտորեց, շղթաները արձակել տվեց ու փախավ։ Բայց դավաճանությամբ նորից բռնվեց և Պոլիս տարվեց «1141 թ»։—Զամչ. Գ. 59, Սիսուան 51 բ և 162։*

— 22. **Կոստանդին** *քահանա, սպասավոր Ն. Շնորհալու. Նրա հանձնարարությամբ Գրիգոր գրիչը գնաց Հռոմկլայից Սկևռայ վանքը՝ արտագրելու. համար Աւետարանը, որի օրինակը շնորհեց Ն. Լամբրոնացին, 1173 թ.—Սիսուան 97, Զարբ. Հին դպր. 708, Թորոս աղբ. Բ. 442—3։*

— 23. **Կոստանդին**, *մականուն Կոշիկ, օգնական Գրիգոր գրչի, որ օրինակեց մի Աւետարան 1173 թ. և մի ուրիշ Աւետարան էլ Գրիգոր Տղայ կաթուղիկոսի համար, 1174 թ· Հռոմկլայում.—Թորոս աղբ. Ա. 118, Բ 444։*

— 24. **Կոստանդին**, *եպիսկոպոս Նէոկեսարիոյ. անդամ Հռոմկլայի ժողովի՝ «1179 թ».—Շնորհ. պատճ. 199. Տաշեան, Ցուց. էջ 350։*

— 25. **Կոստանդին**, *եպիսկոպոս Ապամիոյ Ասորւոց, մասնակցեց Հռոմկլայի ժողովին՝ «1179 թ». —Շնորհ. պատճ. 199. Տաշեան, Ցուց. 350։*

— 26. **Կոստանդին**, *գրիչ և նկարիչ. Ներսէս Լամբրոնացու և նրա եղբայր Հեթում սեւաստոսի հրամանով, Սկևռայ վանքի համար գրել, ծաղկել և նկարազարդել է մի Աւետարան, 1193 թ։ Ձեռագիրս գտնվում է Վենետիկում և «իբր գեղարուեստական ամենակատար գործ՝ առաջինն է մեր աւետարաններուն մէջ». իր նկարների գեղեցկությունը «անգերազանցելի է»։—Ձեռ. Վենետ. Ա. 558. Սիսուան 98։*

— 27. **Կոստանդին**, հայր, ստացող. Ղուկասի հետ միասին՝ Ստեփաննոս գրչին օրինակել տվին ընդարձակ մի Տոնական, Տիւրիկի Նեղկուկ գյուղում, 1194 թ.— Manus. bibl. nat. էջ 54, Ձեռ. Վենետ. Բ. 510։

— 28. **Կոստանդին** պարոն, տեր Լագրաւենոյ. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին, «1199 թ».— Սմբ. պատմ. էջ 112։

— 29. **Կոստանդին** պարոն, տեր Ճանճի բերդի. Ներկա ե-ղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».— Սմբ. պատմ. էջ 111։

— 30. **Կոստանդին** պարոն, տեր Կոպիտառոյ. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին, «1199 թ».— Սմբ. պատմ. էջ 112։

— 31. **Կոստանդին**, արքեպիսկոպոս Անաւարզոյ և տեր Կաստաղոնի. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին, «1199 թ».— Սմբ. պատմ. 110։

— 32. **Կոստանդին** եպիսկոպոս Փիլիպոսայ (տեղի անուն է). Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին, «1199 թ».— Սմբ. պատմ. 111։— Նույնը ըստ այլ ցուցակի կոչված է Գրի-գոր (Սիսուան 470)։

— 33. **Կոստանդին** եպիսկոպոս Ցռնանց. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».— Սիսուան 470։

— 34. **Կոստանդին** աբեղա, առաջնորդ Ս. Սարգսի վանից (ԺԲ դար).— Manus. bibl. nat, էջ 54։

— 35. **Կոստանդին** քահանա, Սարգիս սարկավագին գրել տվեց մի Աւետարան, որ և ծաղկեց Հայրապետ քահանան 1200 թ.— Շողակաթ 198։

— 36. **Կոստանդ** վարդապետ, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 37. **Կոստանդ**, որդի Վասուսի և եղբայր Աստուածատուր Բաբերդցու, որ գրել տվեց մի մեծ Տոնական, 1205 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 470։

— 38. **Կոստանդին**, որդի Վասակի, թոռն Սմբատի՝ տեառն Պապեռոնի, մորեղբորորդի Լևոն Բ-ի, որի մտերիմն էր։ Երբ Լե-ւոնը լսեց իր կնոջ՝ Անտիոքացի Զապլունի ամուսնական ան-հավատարմությունը և սկսեց չարաչար ծեծել նրան, այս Կոս-տանդինն էր որ վրա հասավ և ազատեց նրան մահից (1205 թ)։— Սմբ. պատմ. 116, Սիսուան 508 բ։

— 39. **Կոստանդին** *քահանա, ստացավ մի Ավետարան, 1207 թ.*—Manus. brit. mus. *7 բ։*

— 40. **Կոստանդին**, *եղբայր Ստեփանոսի. միասին հիմնեցին Խորքին անապատը (Կիլիկիա), ԺԳ դարի սկիզբը.—Չեռ. Վենետ. Բ. 234։*

— 41. **Կոստանդին** *առաջնորդ Տլուք գավառի Այգեկ անապատի, 1212 թ.—Տաթև 1927, 182։*

— 42. **Կոստանդին** *եպիսկոպոս, առաջնորդ ուխտին Այգեկի, 1212 թ.—Տաշեան, Ժող. Առակաց Վարդանայ, էջ 58. նույնը ունի Զարբ. Հին դպր. 745։*

— 43. **Կոստանդին** *քահանա. իր ազգական Գրիգոր եպիսկոպոսի հետ՝ Հռոմկլայեցի Յովհաննէս սարկավագին գրել տվեց մի Ավետարան, 1214 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 120—1։*

— 44. **Կոստանդին** *քահանա Հոռմեանց, հայր Յովհաննէս քահանայի, որ նվերներ է արել Արջոյառիճին 1213 թ. և Բագնայրին 1215 թ.—Արձ. Շիրակ 122 և 121։*

— 45. **Կոստանդին** *, որդի Լամբրոնի Օշին իշխանի և հայր Յովհաննէս Է Մեծաբարոյ («1203—1220 թ») կաթուղիկոսի.—տես.* **Կոստանդեայ**՝ *Սմբ. պատմ. 115։*

— 46. **Կոստանդին**, *վանահայր Կապոսի Ս. Լուսավորիչ վանքի. Թադէոս գրչին գրել տվեց մի փառավոր Ճառընտիր 1224 թ.—Չեռ. Վենետ. Բ 33—34, Զարբ. Թրգմ. 729։*

— 47. **Կոստանդին**, *տեր Լամբրոն բերդի. սրա խնդրանոք Գրիգոր Սկեռացին (հիշված ԺԳ դարի առաջին քառորդում) գրեց «ի խորհուրդ մեծի ուրբաթուն... ի բանն Եսայեայ, Տէր ո՞ հաւատաց».—Չեռ. Վենետ. Բ. 306—7։ Նույն պիտի լինի № 51։*

— 48. **Կոստանդին** *Ուռհայեցի. գրիչ. օրինակել էր Ավետարանը (նախ քան 1228 թ). այս օրինակից արտագրեց Գրիգորիս գրիչը՝ Սանդուլ անապատում 1228 թ. ստացող Գրիգոր վարդապետի համար։—Թորոս աղբ. Ա. 64։ [Թերևս սա է այն Կոստանդին Ուռհայեցին, ուր մասին խոսում է Ն. Լամբրոնացին († 1198 թ). տես Տաշեան, Ցուց. 335]։*

— 49. **Կոստանդին** *երեց Կառենայեցի, հայր Պետրոս երեցի, որ Կառենայ ամրոցից փախավ Հռոմկլայ և այնտեղ իր և իր որդիների համար օրինակեց մի Ավետարան, 1248 թ։—Թորոս աղբ. Բ. 351։*

— 50. **Կոստանդին** *(տես. Կոստանդեայ), որդի Պետրոս ե-*

ռեցի և եղբայր Առաքելի. նախորդի թոռն է, հիշված 1248 թ.—Թորոս աղր. Բ. 351։

— 51. Կոստանդին *Լամբրոնացի, որդի Հեթում Բ Սեբաստոսի՝ իշխանին Լամբրոնի, եղբայր Օշին Գ-ի և եղբորորդի Ներսէս Լամբրոնացու. Կոստանդին թագավորահոր աներորդին էր և Օշին մարաջախտի հայրը. կինն է Ստեփանէ. տեր Լամբրոնի։ Կռվեց Իկոնիոյ Սուլթանի հետ, բայց հաղթվեց և նրա ձեռքը գերի ընկավ։ Լևոն Բ-ը ազատեց նրան փրկանքով (1217 թ)։ Խնդրեց Գրիգոր վրդ. Սկևռացուց՝ գրել Մեկնութիւն Եսայեայ և ի Ս. Զատիկն (Զարբ. Հին դպր. 781)։ Երբ մեռավ Յովհաննէս Է Մեծաբարոյ կաթողիկոսը («1220 թ»), կազմվեց մի կուսակցություն, որ պահանջում էր ընտրել նույն Գրիգոր Սկևռացուն կաթողիկոս։ Այս կուսակցության պարագլուխն էր Կոստանդինը (Սիսուան 100)։ Եղավ թագադիր և թագապահ իր քեռորդի Հեթում Ա թագավորի («1226 թ»). ապստամբեց նրա դեմ և 7 անգամ ճակատելուց հետո ընկճվեց և հպատակվեց։ Հեթումը չվըստահելով սպանել տվեց («1250 թ»)։—Կիր. լև. Միխ. աս. իը (=իէ). Ձեռ. օշ. 98 ա.—*Կոստընդին՝ *Միխ. աս. իը (=իէ).—սեռ.* Կոստանդեայ՝ *Ձեռ. օշ. 101 ա. Կիր. լև. Սմբ. պատմ. 122.—*Կոստանդնի՝ *Կիր. լև.—տես և Տաշեան, Ցուց. 476—477, 607, ՀԱ 1898, 245—8,* REA *6, 170, Սիսուան 84։ Տես և № 47։*

— 52. Կոստանդին, *որդի Ստեփանոս քահանայի, մերձավոր Խաչատուր գրչի, որ Կիրակոս կրոնավորի համար օրինակեց Աւետարանը, 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379։*

— 53. Կոստանդին *կրոնավոր քահանա, որդի Ներսէսի և վաղամեռիկ եղբայր Յովհաննէս գրչի, որ Կիլիկիայում, սիր Լևոնի համար օրինակեց Աւետարանը 1256 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 448։*

— 54. Կոստանդին *քահանա, գրիչ. օրինակել է մի Աստուածաշունչ, 1258 թ.—Ձեռ. Կարին. 15։*

— 55. Կոստանդին *Սոմայցի, պայլ, մեռավ այն հաղթական պատերազմում, որ Հեթում Ա և Սմբատ Գունդստաբլ մղեցին Գարամանցիների դեմ, Մանիոնի բերդի առաջ, 1262 թ.—Սիսուան 294 բ։*

— 56. Կոստանդին *Ա Բարձրբերդցի, կաթողիկոս հայոց «1221—1267 թ». ծնվել է Բարձրբերդում, բայց կոչվում է նաև Մավրիանցի։ Վահրամ անուն անձի որդին էր. իր ճյուղագրությունը տես Սիսուան 151։ Նախապես Մլիճի վանահայրն էր. հաջորդեց Յովհաննէս Է Մեծաբարոյ կաթողիկոսին։ Ազնիվ և անշահասեր մարդ*

էր։ Բարեկամացավ Ասորոց պատրիարքի հետ, որի հետ միասին ուխտի գնաց Երուսաղէմ՝ 1238 Թ։ Գումարեց Սսի երկրորդ եկեղեցական ժողովը «1243 Թվին», ուր կանոններ մշակվեցին աշխարհականների և եկեղեցականների բարոյականի բարձրացման համար։ (Այս կանոնների բնագիրը հրատարակեց Պալճեան 267—72)։ Իր ժամանակ հունաց Գերմանոս Բ պատրիարքը (1222—1250) և Յովհաննէս Գ Դուկաս Վատածիս կայսրը (1222—1254) ուզեցին հայ եկեղեցին միացնել հույն եկեղեցու հետ։ Կոստանդին կաթողիկոսը առաջինին պատասխանեց Թէոդորոս և Բարսեղ վանականների ձեռքով, իսկ երկրորդի մոտ ուղարկեց Յակոբ Կլայեցի վարդապետին, որ հունաց եկեղեցական ժողովում քաջությամբ պաշտպանեց հայոց դավանանքը։ Նույնպիսի փորձ արին Անտիոքի լատին պատրիարքը և Հռոմի պապը, որ ուղարկեց Կոստանդինին խույր, պալիում և մատանի։ Բայց Կոստանդինը չզիջեց և դիմադրեց Հռոմի ձգտումներին։ Շատ էր սիրում ձեռագրեր օրինակել տալ։ 1244 Թ. Հռոմկլայում Կիրակոս գրչին գրել տվեց մի գեղեցիկ Աւետարան, որ 1264 Թվին նվիրեց Անդրիասեանց վանքին (Ձեռ. Վենետ. Ա. 651)։—1249 Թ. Հռոմկլայում, Կիւրեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, Բարսեղ կրոնավորի ձեռքով Հռոմից բերված մագաղաթի վրա (Շահազիզ, Պատմ. պատկ. 119)։—1253 Թ. Հռոմկլայում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի ուրիշ Աւետարան, որի մեջ կա նաև իր ձեռքով գրված մի հիշատակություն (Շողակաթ 200, Թորոս աղբ. Բ. 360) և որ նվիրեց Փոսի վանքի միաբանությանը։—1256 Թ. իր անձնական գործածության համար, Հռոմկլայում, Թորոս Ռոսլին գրչին գրել տվեց մի չքնաղ Աւետարան (Ձեռ. Հալէպի, Բ. 138—140)։—1260 Թ. նույն Թորոս Ռոսլինին Հռոմկլայում գրել տվեց մի սքանչելի Աւետարան, որ այժմ գտնվում է Երուսաղէմում (Շողակաթ 200)։—1268 Թ. նույնպես Թորոս Ռոսլին գրչին մի գեղեցիկ Աւետարան, իր եղբորորդի Թորոս քահանայի համար (Թորոս աղբ. Ա. 324—7)։—Յովսէփեան, անխոնջ խուզարկուն հայերեն ձեռագրաց, Նիւթեր և ուս. Բ. 5—44 ուսումնասիրում է Կոստանդին կաթողիկոսի հրամանով գրված բոլոր ձեռագրերը, որոնց թիվը է առնվազն 14։ Նա գովեստով է խոսում այն հոգատար գերի մասին, որով քաջալերում էր գրիչներին ու նկարիչներին։—Նվիրատու է եղել Յովհաննավանքին 1243 Թ. (Զքր. պատմ. Գ. 17, Այրրատ. 169, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 71), Խորանաշատի վանքին, ինչպես գրված է իր արձանագրության մեջ

1246 թ. (Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 177), Տիրամայր վանքին 1246 թ. (Արցախ 192)։—Իր գործերն են՝ Թուղթ առ Հեթում ընդդէմ Լատինաց, Թուղթ առ Գրիգոր Թ պապ, Թուղթ շրջաբերական, Սահմանք կանոնականք, Ցաղագս պէսպէս կրից բնութեան (Ձեռ. Վենետ. Բ. 840 և 864)։ Իր խնդրանոք է գրել Վարդան վրդ. «Դաւանութիւն հաւատոյ» (Թորոս աղբ. Բ. 395)։ Իր հրամանով է թարգմանվել Միխայէլ Ասորու ժամանակագրութիւնը՝ 1248 թ. որի համար ասվում է նրա հայրապետության 25-րդ տարին, որ եթե հանենք 1248-ից, գահակալության թիվը կլինի 1243 թ! ուստի առաջարկում եմ 25=Իե կարդալ 27=Իէ, որով կստացվի ճշտիվ 1221 թ։—Մխ. անեց. դ. Օրբ. կդ, կէ, հա. Կիր. է, լթ, խա, խը, ծբ, ծգ. Միխ. աս. 62, յաւել. Հեթ. Ժամկ. Մաղաք. աբ. 37. Անանուն ժմ. 24. Օրբ. ժմ. 24—26. Վահր. ոտ. 219. Մխ. այրիվ. 21. Սմբ. պտմ. 121, 130. Սամ. անեց. շար. 148. Ցիշատ. (Karst Դատաս. էջ Ե). Առաք. պտմ. 335, 432. Ջքր. սարկ. Գ. 30. Դրնդ. 304.—Կոստընտին՝ Մաղաք. տբ. 19.—Կոստընդին՝ Վրդ. ՚Ճ (հրատ. Էմինի՝ Կոստանդին). Օրբ. ժմ. 23. Միխ. աս. իը (=իէ).—սեռ. Կոստանդեայ՝ Գիրք թղ. ղդ. Սկեռ. պատ. 7. Օրբ. կդ, հ. Կիր. լա, խ, խա. Վրդ. ձդ. Միխ. աս. յաւել. Վահր. ոտ. 227. Սմբ. դատ. 13.—Կոստանդեայ՝ Միխ. ասոր. յիշ.—տես և Տաշեան, Ցուց. 1103 բ, Այրարատ 169 (Արձ. 1243 թ), Ջարբ. Հին դպր. 729—730. Թրգմ. 565—570. Թորոս աղբ. Ա 187=Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 332—3), նաև Թորոս աղբ. Բ. 322։ (Իր կնիքը տես Սիսուան 527)։

57. Կոստանդին գունդստաբլ և ավագ պարոն, կոչված Մողոն, որդի Վասակի՝ մորեղբոր Լևոն Բ-ի. կինն է Ալիծ իշխանուհի. հայր Հեթում Ա-ի և Սմբատ գունդստաբլի, իշխան Պապեռոնի և պայլ թագավորության Հայոց։ Իբրև սպարապետ հաջորդեց Ադրիանոսի։ Կապանի պատերազմում գերի ընկավ Քայքաւուս Սուլթանի ձեռքը (1216), բայց Լևոն Բ երկու բերդ տալով ազատեց։ Եղավ խնամակալ Զապէլ թագուհու. իր որդի Հեթումին պսակելով Զապէլի հետ՝ դրավ թագավոր, իսկ սպարապետության պաշտոնը հանձնեց իր ավագ որդի Սմբատ գունդստաբլին (1224 թ)։ Այս ամբողջ ժամանակ պետությունը պահող պահպանող խնամակալը ինքն էր։ Մեռել է 1263 թվին. (ըստ Ջամչ. Գ. 261 ծերության ժամանակ նահատակվել է պատերազմում, 1261 թ., ինչպես ավանդվում է Սաղմոսամեկնության հիշատակարանում. իսկ ըստ Ձեռ. օչ. 99 ա «վախճանե-

ցաւ» ՉԺԱ=1263 թ. առանց պատերազմի հիշատակության)։ Շի-նել է Խորին, Մեսկեցեր և Լիսանկան վանքերը։ Նշանավոր է իր մի հոյակապ արձանագրությունը 1242 թվից, որ գտնվում է իր շինել տված Ս. Փրկչի վանքի պատի վրա (Սիսուան 75)։ Այստեղ թվում է իր գերդաստանը. ունի 5 որդի և 3 դուստր. որ-դիներն են Հեթում թագավոր, Բարսեղ արքեպիսկոպոս, Սմբատ սպարապետ, Օշին պայլ և Լևոն մարաջախտ և իշխանաց իշխան. իսկ աղջիկներն են Մարգարիտ, Ստեփանէ թագուհի Կիպրոսի և Մարիամ, որ ամուսնացել էր Կիպրոսի պայլի հետ, որ և Յոպ-պէի և Պերութի տերն էր։ Կոստանդինի պայլի առաջին կինն էր Ալիծ (№ 3), որ և կոչվում էր Վիծ կամ Տամա Վիծի։ Սրա մա-հից հետո ամուսնացել է երկրորդ անգամ Պեադրիչէ № (1) իշխա-նուհու հետ, որից ունեցել է ուրիշ զավակներ։ Արձանագրու-թյան մեջ չեն հիշված Կոստանդինի մյուս որդիներից՝ Պաղտին (որ է Յովհաննէս եպիսկոպոս), Սիր Լիկոս, Վասակ և հոր համա-նուն Կոստանդին (Սիսուան 76 ա. տես նաև Ձեռ. Վասպ. 109)։— Վահր. ոտ. 217, 218. Հեթ. ժմնկ. Կիր. է, լե, ծզ. Միխ. աս. իը (=իէ). յաւել. Սմբ. պտմ. 117—123, 137. Սամ. անեց. շար. 147—8, 151, 161. Պտմ. կիլ. 209, 210. Պտմ. ռուբ. 220. Պտմ. լմբ. 242. Մին. համդ. 43. Դրնդ. 304.—Կոստանդին՝ Միխ. աս. յէշ.—Կոստընդին՝ Միխ. աս. իը. (=իէ). Մաղաք. աբ. 19, 37.— Կոստանդ՝ Հեթ. ժմնկ.—սեռ. Կոստանդեայ՝ Հեթ. ժմնկ. կանոն. 177. Կիր. խա. Վրդ. ձդ. Միխ. աս. իը (=իէ). Անսիզք 3. Վահր. ոտ. 219. Սմբ. պտմ. 121. Սամ. անեց. շար. 148—9. Պտմ. կիլ. 211. Սմբ. դատ. 13. Նհպտք. 104.—Կոստանդնի՝ Կիր. է, լա. Անսիզք 93։—Ջարբ. Հին դպր. 93. Թրգմ. 390, 567. Ուղեգրութ. Ա. 26. Սիսուան 147, 285, 528. Ցուցիկք Ա. 132. Թորոս աղբ. Ա. 118 (ուր ասվում է թե շինել է տվել Ս. Փրկիչ եկեղեցին և նրա համար ձեռք է բերել տվել այն Աւետարանը, որ Գրիգոր Դ Տղայ կաթուղիկոսը գրել էր տվել 1174 թ. Գրիգոր գրչին)։

— 58. Կոստանդին քահանա, գրիչ, օրինակեց մի Աստուա-ծաշունչ՝ Պետրոս քահանայի համար, 1268 թ.—Շողակաթ 202։

— 59. Կոստանդին, որդի Սմբատ Գունդստապլի, եղբայր Հեթումի և Օշինի. հիշված է 1269 թ.—սեռ. Կոստընդնի՝ Անսիզք 93, Սիսուան 72։

— 60. Կոստանդին քահանա Հռէփսիմեցի, որդի Թէոդոս քահանայի, գրեց մի Աւետարան, Կիլիկիայում 1269 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 656։

— 61. Կոստանդին եպիսկոպոս, առաջնորդ տանն Ռապանայ, գրել տվեց մի Ավետարան՝ Կոզմա գրչին, նախ քան 1269 Թ.— Ձեռ. Կեռ. ածած. 45 բ, 46 ա։

— 62. Կոստանդին իշխան, որդի Հեթում Ա թագավորի և եղբայր Լևոն Գ-ի. գրել տվեց մի Աստուածաշունչ, ուր իր եղբոր ծոփրի ժանվան վրա կա մի ողբ, 1270 Թ.—Զարբ. Թրգմ. 123—5, Դարդել 16։

— 63. Կոստանդ, ծերունի հիւրատես Խորին անապատի (Կիլիկիա), 1270 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235, 564, Սիսուան 152։

— 64. Կոստանդին քահանա, «տուիթ և յորդորիչ» եղավ, որ Վահկայում, Ստեփանոս գրիչը օրինակեց Ավետարանը՝ Մարտիրոս քահանայի համար, 1269 Թ.—Ձեռ. Վասպ. 95։

— 65. Կոստանդին, եղբայր Ստեփանոս գրչի, որ հիշվեց նախորդ համարում (№ 64).—Ձեռ. Վասպ. 96։

— 66. Կոստանդին վարդապետ, ստացող. գրել տվեց Աստուածաշունչը 1271 Թ.—Ձեռ. Կարին. 13։

— 67. Կոստանդ քահանա, միաբան Ականց կամ Ակներ անապատի (Կիլիկիա). Սիոն քահանայի հետ միասին թուղթ էին կոկում Գրիգոր գրչի համար, երբ սա արտագրում էր Միխայէլ Ասորու Ժամանակագրութիւնը, Ակներ անապատում, 1273 Թ.— Միխ. աս. բ տպ. էջ 45, Սիսուան 154 ա։

— 68. Կոստանդին մեծ իշխան, որդի Օշին մարաջախտի և թոռն Կոստանդին Լամբրոնացւոյ՝ որ սպանվել էր «1250 Թ». հիշված է 1274 Թ. իր հոր և իր եղբոր Հեթումի հետ.—ՀԱ 1898, 245—6, REA 6, 170։

— 69. Կոստանդին, հռչակավոր գրիչ. գրեց ու ծաղկեց Օշին մարաջախտի համար՝ մի շքեղ Ավետարան, Սիս քաղաքում, 1374 Թ.—ՀԱ 1898, էջ 244 բ—248 ա։

— 70. Կոստանդին, Թագադիր հայոց, քեռորդի Օշին մարաջախտի, մայրն է Կեռան՝ քույր այս Օշինի. եղբայրներն են Օշին և Սմբատ. հիշված է 1274 Թ.—ՀԱ 1898, 246 և 248։

— 71. Կոստանդին իշխան, հայր Գրիգոր քահանայի, որ Լևոն Գ-ի կին Կեռան Թագուհու պալատում ընդհանուր հոգաբարձու էր (1274 Թ).—ՀԱ 1898, 247 ա։

— 72. Կոստանդին Արճիշեցի, որդի Խաչիկի. հորը հետ փլատակների տակ մնաց Արճէշի երկրաշարժի ժամանակ ու մեռավ, 1275 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 427, Հայապ. 477։

— 73. Կոստանդին, փոքր երեխա էր, երբ Յովհաննէս քա-

*հանան վերցրեց իր մոտ, պահեց ու մեծացրեց հայրաբար, և երբ քահանայության աստիճանին հասավ, Սկևռայ անապատում, Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Մանրուսմունք և նվիրեց նրան ի հիշատակ՝ 1275 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 244 ա։*

— 74. Կոստանդինոս, *գրիչ. օրինակել է Բժշկարանը՝ 1276 թվին.—Ջեռ. Կարին. 26։*

— 75. Կոստ[անդին], *սեռ. Կոստայ, իշխան, ամուսին Շահանդուխտի, հայր Բակուրան, Սմբատ և Կոստանդ իշխանների. մեռած էր 1278 թվին.—Ջարբ. Հին դպր. 93, Սիսուան 146։*

— 76. Կոստանդ *պարոն, որդի նախորդ Կոստանդին իշխանի. եղբայր Սմբատի և Բակուրանի. դեռ երիտասարդ՝ մեծ քաջություններ գործեց Մանիոնի պատերազմում, Թարամանցոց դեմ (1263 թ). արդեն մեռած էր 1278 թ.—Ջարբ. Հին դպր. 93, Հայապ. 488, Սիսուան 146, Ջեռ. Մխնխ. 8 ա։*

— 77. Կոստանդին, *անդրանիկ որդի Ճաւփրէի, տեր Սարվանդի քարի. ամուսնացավ Հեթում Ա-ի դուստր և Լևոն Գ թագավորի քույր՝ Ռիթթայի հետ, 1261 թ. (Պատմ. կիլ. 211, Ջեռ. օշ. 98 բ)։ Մնում է իր մի դաշնագիրը Ճենովացոց հետ՝ 1271 թ. (Սիսուան 210)։ Ավելի ուշ քաշվեց Ցահնանց վանքը, որի կառավարությունը իր վրա վերցրեց։ Այս վանքումն էր ապրում Ստեփանոս միայնավորը, որ դիմեց նույն Կոստանդինին և սա էլ հրամայեց մի ուրիշ միաբանի՝ վանքի համար օրինակել Ավետարանը 1278 թ։ Միաբանի (գրչի) անունը անհայտ է. Լալայեանը իր ցուցակում (Ջեռ. Վասպ. 99) կոչում է «Պաւղոս». բայց սա իր բազմաթիվ սխալներից մեկն է, արդյունք անփութության և հաճախ անուշադիր վերաբերմունքի։ Գրիչն ասում է. «Իսկ իմ ամենամեղ հոգոյ և անիմաստ գրչաւ, որ ի Պաւղոսի դեգերելով ի դրունս դժոխաքակ և մեծապէս ապաստանիս փախուցելոց յերեսաց բանսարկուին...»։ Այս բոլորից չի հետեվում թե գրչի անունն է Պօղոս, այլ թե նա դեգերել է Պօղոս առաքյալի դռները և ապաստանել է այս վանքը։ Գրիչը տալիս է մեծ գովեստներ նույն Կոստանդինին. ահա իր բառերը. «Ջարձանացեալ խորհուրդս իւր նախածանուցեալ (Ստեփանոսի) բարեմիտ և հրեշտակերամ եղբայրութեանս և գերագոյն գլխոյն և ամենաբարեպաշտ Կոստանդեա, և նա քրիստոսասէր կամաւք, ըստ եռափափաք սիրոյն յանձն առար մերում ապիկարութեանս... Ի վերադիտողութեան այսմ անապատի, քրիստոսասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին պարոն Կոստանդեա տեառն Սարվան-*

դոքարին, որ ինքնակամ յաւժարութեամբ յինք առբերելով ի մասինս յայմէկ դտիպ և գարինակ ամենատեառն Յիսուսի, լինելով հեզ ըստ խրատուն, գթած և ողորմած ըստ պատուիրանին։ Մանաւանդ անփակ ունել գգութ և գողորմութիւն առ չարսն և առ բարիս, առ մեծամեծս և առ փոքունս, խրատելով ըստ հոգւոյ և մեծալէս ծախիւք դարմանս տանելով ըստ մարմնոյ, վշտանալով ընդ վտանգեալսն և բերկրելով ընդ երախայեալսն. մինչ գրոհ տալով ի բազում գաւառաց, լինել տեսաւղ և բնակել հանդստեամբ, մինչ գրեթէ լի եւկ լինել ճգնաւորական հանդիսիւ։ ...հանդերձ պայծառացեալ հարազատաւքն իւրովք, պարոն Սմբատիւ և պարոն Աւշնիւ, փթթեալ մանկամբք և ծաղկեալ արգասիւք փառաւորեալ փառաւք, գնալով դաւրութենէ ի դաւրութիւն և փառաց ի փառս...» (Ձեռ. Վասպ. 100—102)։ Երեք եղբայրները միասին (Կոստանդին, Սմբատ և Օշին) իրենց հոր՝ Ճոֆրեի հետ հիշված են 1259 թ.՝ Թորոս աղբ. Բ. 437։

— 78. Կոստանդին քահանա, եղբայր Ստեփաննոս քահանայի, որ իր համանուն Ստեփաննոս քահանային գրել տվեց Մանրուսմունքը՝ Սկեռայ վանքում, 1278 թ.—Շողակաթ 205։

— 79. Կոստ[անդին] քահանա, մականուն Բուռաթ. խնդրանոք Օշին իշխանի որդի, Հեթումի եղբայր և Կոռիկոսի տեր Օշին իշխանի օրինակեց Ներսէս Շնորհալու գործերը, Ատանա 1284 թ.—Ձեռ. Թաւր. 14—15։

— 80. Կոստանդին կուսակրոն քահանա, որդի Գրիգոր քահանայի, իր եղբոր Արքակաղնի առաջնորդ Ստեփաննոս արքեպիսկոպոսի հիշատակին, նույն վանքում, Գոգոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1284 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 57։

— 81. Կոստ(անդին). գրիչ Մաշկևորի վանքում գրված և եկեղեցուն նվիրված մի Աւետարանի հիշատակարանի, 1286 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 56 բ։

— 82. Կոստանդին, գրիչ. աշակերտ Յովհաննէս արքայեղբոր, որի համար օրինակել է մի Աստուածաշունչ, Սիսում 1288 թ.—Շողակաթ 206։

— 83. Կոստանդին Բ Պրոնագործ Կատուկեցի, կաթուղիկոս Հայոց «1286—1289 թ». առաջնորդ էր Խորին վանից, հաջորդեց Յակոբ Կլայեցուն։ Իր ժամանակ Հեթում Բ ուզելով կաթոլիկ դավանանքը տարածել Հայոց մեջ, և իր դեմ գտնելով Կոստանդինի հակառակությունը, գահընկեց արեց նրան («1289 թ») և չորս տարի բանտարկեց Լամբրոնում։ Այստեղից արձակվելով նշանակ-

վեց Սկևռայ վանքի առաջնորդ «1293 Թ»։ (Ալիշան, Սիսուան 106 ը ասում է թե Կոստանդինը նորից գահ բարձրացավ 1307—1323 Թ. այսպեսով շփոթում և նույնացնում է Կոստանդին Գ Կեսարացու հետ։ Այս մասին ընդարձակ տես Ազգապ. 1743, 1766)։ Կոստանդին կաթուղիկոսից է մնում մի պահարան, ոսկեզօծ արծաթյա, որ կազմել է 1293 Թ. և որ պարունակում է մի քանի տասնյակ սրբերի նշխարներ՝ նկարներով, զարդերով և ընդարձակ ոտանավոր (104 տող) նրբաքանդակ արձանագրությամբ։ Սա մի նշանավոր ճարտարարվեստ գործ է, որի մանրամասն նկարագրությունը նկարներով միասին տես Սիսուան 107—112 և Ձեռ. Վեննա. Բ 1234։ (Այս պահարանը, որ հեղինակը սրբարան է կոչում, գտավ ու ծանոթացրեց Աստուածատուր Փափազեանց 1828 Թ. Իտալիա)։ Կոստանդինը թողել է նաև 400 տողանի մի ոտանավոր հիշատակարան (Զարբ. Հին դպր. 710)։— Մխ. անեց. գ. Օրբ. կը, կէ, հ, հա. Օրբ. ժմ. 30. Սմբ. պտմ. 125. Մխ. այրիվ. 21 (ուր անդ 84 սխալ գրված՝ Կոմիտաս). Սամ. անեց. շար. 152, 163. Յիշատ. (Karst, Դատաս. էջ ե). Առաք. պտմ. 335, 482.—Կոստընդին՝ Անանուն ժմ. 26.—սեռ. Կոստանդեայ՝ Զարբ. Թրգմ. 266, Օրբ. կէ. Սմբ. պտմ. 125—6.—Կոստանդնայ՝ Օրբ. ժմ. 31.—Հայապ. 498. Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1921, 180)։

— 84. Կոստանդին, եղբայր Ստեփաննոս քահանայի, որ Սկևռայ վանքում գրեց մի Աւետարան, 1295 Թ. այս թվումն էլ մեռավ սույն Կոստանդինը։—Թորոս աղբ. Բ. 344։

— 85. Կոստանդին, փակակալ Սկևռայ վանուց. կտակակատար Ստեփաննոս քահանայի Իկոնիացւոյ. գրիչ Պետրոս քահանային գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1296 Թ.—Սիսուան, էջ 106։

— 86. Կոստանդին, միաբան Սկևռայ վանքի. Կոստանդին փակակալի հետ կտակակատար էր կարգված Ստեփաննոս քահանա Իկոնիացուն, 1296 Թ.— Սիսուան 106։

— 87. Կոստանդին, ոսկերիչ. կոստղել է մի գեղեցիկ Աւետարան, 1296 Թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 19։

— 88. Կոստանդին քահանա, հայր Յովհաննէս դպրի, որ ստացել է մի Աւետարան 1298 Թ?—Ճանիկեան, Հնութ. Ակնայ, էջ 86։

— 89. Կոստանդին սարկավագ, Թուղթ կոկող էր Կիլիկիոյ

«Հայոց» կամ Արմենի վանքում, 1298 թ։— Հայապ. 503, Սիսուան 96։

— 90. Կոստ[անդին] քահանա, հայր Յովհաննէս դպրի, որ իրենց գերդաստանի հիշատակին գրեց մի Աւետարան, 1298 թ. —Ձեռ. Հալէպի, Ա. 395։

— 91. Կոստանդին, որդի պարոն Վասակի՝ տեառն Ճանճոյ բերդի, թոռն Կոստանդինի՝ տեառն Պապեռոնի, եղբօրորդի Հեթում Ա-ի և հօրեղբօրորդի Լեոն Գ-ի (ԺԳ դար).—տես Վասակ պարոն։

— 92. Կոստանդին, համանուն որդի Կոստանդին պայլի († 1263 թ). եղբայր Հեթում Ա թագավորի († 1270 թ). տեր Նղրի. սրա որդին է Պաղտին սպարապետ, ուստի և Կոստանդին Դ թագավորի պապն է. մեռել է 1308 թվից հետո.—Սիսուան 76 ա, 411 բ։

— 93. Կոստանդին քահանա. ստացող. Թորոս քահանա Վահկացուն գրել տվեց Գործք Առաքելոց և Թուղթք (ԺԳ դար). —Manus. brit. mus. 10 բ։

— 94. Կոստանդին, գրիչ. խնդրել է Գէորգ վրդ. Սկեռացուց (մեռած «1301 թ») գրել Խրատ գրչութեանը և Վասն ոտանաւոր այբուբենից.—Manus. brit. mus. 306 բ, Ջամչ. Գ. 168, Զարբ. Հին դպր. 719. Bodleian 246, Սիսուան 103։

— 95. Կոստանդին, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 96. Կոստանդին Բ, որդի Լեոն Գ-ի, եղբայր Հեթում Բ-ի և Սմբատ Գ-ի. ծնվել է 1277 թ. (Ձեռ. օշ. 100 ա). տեր Կապանի։ Երբ Սմբատ Գ իր Հեթում Բ եղբորը բանտարկելով բռնագրավեց գահը, Կոստանդինը զորքի գլուխն անցած՝ Սմբատին գահընկեց արեց և ինքը թագավոր դարձավ «1299 թ»։ Բայց երբ զորքը ուզեց նորից Հեթումին գահ բարձրացնել, Կոստանդինը ապստամբեց, սակայն հաղթվելով, բռնվեց և Պոլիս գերի ուղարկվեց «1299 թ»։ Հեթումի մահից («1305 թ») հետո ազատվեց բանտից, բայց Կիլիկիա չուզեց դառնալ, ապրեց ու մեռավ Պոլսում։—Պտմ. կիլ. 212. Պտմ. լմբ. 243. Սմբ. պտմ. 127, 136. Սամ. անեց. շար. 153—5, 164—5. Մին. համդ. 46, 48, 49.—Տնդին՝ Անանուն ժմ. 28 (այս ձևով երկու անգամ), 29 (նույն ձևով ևս մի անգամ).—սեռ. Կոստանդնի՝ Սամ. անեց. շար. 154.—Զարբ. Հին դպր. 90. Ազգապ. 1815։

— 97. Կոստանդին, եպիսկոպոս Դրազարկի, որին կե-

սարիայի Կոստանդին արքեպիսկոպոսը անվանում է «համաշունչ եղբայր» (1300—1306 թվերի միջև).—Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1845։

— 98. Կոստանդին, արքեպիսկոպոս Մսիսի (Մամեստիոյ), 1306 թ.—Սիսուան 250 ա։

— 99. Կոստանդին Շարահիւսանց, քահանա, «անհաս և անհամեմատ գրիչ», ինչպես կոչում է իր աշակերտը՝ Լևոն երեց, 1306 թ.—Սիսուան 485 բ, 517 բ։

— 100. Կոստանդին քահանա, հայր նույնանուն Կոստանդին քահանայի, որ Մլիճի վանքում գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1307 թ.—Manus. brit. mus. 242 բ, Սիսուան 74։

— 101. Կոստանդին քահանա, որդի նույնանուն քահանայի, Մլիճի վանքում Թորոս սարկավագին գրել տվեց Պրոխորոն գիրքը, առաջարկությամբ Մլիճի առաջնորդ Ստեփաննոսի, 1307 թ.—Manus. brit. mus. 241 բ, 242 աբ. Զարբ. Թրգմ. 673. Սիսուան 74։

— 102. Կոստանդին քահանա, դռան երեց Հեթում Բ-ի, որի հրամանով գրել տվեց Բասիլ սարկավագին՝ Փիլոնի գործերը «1296 թ»։ Ներկա էր Սսոյ ժողովին «1307 թ»։—Յիշատ. Փիլոնի, հտ. Բ, էջ 621. Զարբ. Թրգմ. 740. Հայապ. 516. Ազգապ. 1787։

— 103. Կոստանդին, որդի Մեծպարոնի և եղբայր Յակոբ երեցի, որ կազմեց մի Աւետարան, Կիլիկիայի Փոսի վանքում, 1309 թ?—Ջեռ. Հալէպի, Ա. 94։

— 104. Կոստ[անդին] քահանա Հեթմնցի, գրիչ. Պետրոս քահանայի խնդրանոք, Պերճ անապատում օրինակեց Աւետարանը 1311 թ.—Թորոս աղբ. Բ. 433։

— 105. Կոստանդ, հայր գրիչ Յովհաննէս քահանայի, Շիկբակ 1313 թ.—յիշատ. ИАН 1911, էջ 1301։

— 106. Կոստանդին երեց. ստացող. գրել տվեց մի Աստուածաշունչ՝ Մարտիրոս գրչին, 1314 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 227։

— 107. Կոստանդին, եպիսկոպոս և առաջնորդ Սսի, 1307—14 թ.—Սիսուան 221 ա։

— 108. Կոստանդին՝ երկու համանուն քահանաներ Ս. Աստուածածին եկեղեցւոյ Անարզաբայի, 1314 թ.—REA 2, 283, Գաթըրճեան, Պտրգմտ. 83։ Զարբ. Թրգմ. 265։

— 109. Կոստանդին եպիսկոպոս Պեհեսնեցի (գրված է Պեհենացի), որդի Վասիլի, առաջնորդ Սկևռայ վանից։ Սիսում

գրել էր տվել մի Ցայսմաւուրք 1311 թ. (Բակուրան, Կիպրոս կղ. 107–8)։ Վաղուց էր փափագում գրել տալ Սողոմոնի, Սիրաքի և Յոբի գրքերը, վերջապես հաջողվեց Յովհաննէս դպրի ձեռքով հասնել իր փափագին, Սկևռայ վանքում։ Այս առթիվ հիշում է իր քեռի՝ Յովհաննէս քահանա Կարմիրվանեցուն, իր մոր Աղուոր տիկնոջ, իր «արեամբ նահատակեալ» եղբոր Սարգսին և սրա որդի Օշինին, իր տատ Պահրիկին, իր ձեռնասուն որդի Ցակոբ քահանային, որ չորս տարի նահատակվեց իր հետ բանտում, կապանքում, ծով ու ցամաքում, պանդխտությամբ տառապելով Փռանկաց երկրում և ապա 1312 թվին մեռավ, վերջապես իր հոգևոր որդի Ստեփաննոս քահանային, որ չարաչար տանջվեց իր հետ Հռոմկլայում և Պեհեսնիում։ Միևնույն Կոստանդին եպիսկոպոսը (այս անգամ սխալ գրված Պեհեռցի), Սկևռայ վանքում, Ներսէս գրչին օրինակել տվեց Մայր Մաշտոցը՝ 1314 թ.—Ձեռ. Վասպ. 60—61, Սեդրակեան՝ Հայ. եկեղ. պատկերյարգութ 103։

— 110. Կոստանդին, վանահայր Երզնկայի Տիրաշէն վանքի. հիշված է 1316 թ.—Հայապ. 525 (տես և Կոստանդին Երզնկացի № 136)։

— 111. Կոստանդին եպիսկոպոս Անկիւրիոյ, անդամ Ատանայի ժողովի «1317 թ».—Ազգապ. 1818, Սիսուան 258։

— 112. Կոստանդին եպիսկոպոս Մարանդունեաց, հաջորդ Յովհաննէսի, անդամ Ատանայի ժողովի «1317 թ».—Ազգապ. 1818։

— 113. Կոստանդին քահանա, գրիչ. Կրակայ գյուղաքաղաքում, Յովհաննէս քահանայի համար գրեց մի Աստուածաշունչ 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 300։

— 114. Կոստանդին, միաբան Փոսի վանից, թուղթ էր կոկում Ստեփաննոս գրչի համար, որ արտագրում էր Աւետարանը, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 517)։

— 115. Կոստանդ(ին), վանահայր և առաջնորդ Խորնի վանքի (Սիս). Պաղտին մարաջախտը, որ ժառանգել էր Սմբատ Գունդստաբլի ճաշոցը, հրամայեց սրան Ծննդեան և Աւետեաց տոները վերածել լատինական ամիսների օրերին, 1319 թ.—Սիսուան 152 բ։ Նույն Պաղտինը († 1336) տվեց նաև Սմբատի Տարեգիրքը՝ նորոգելու և թերես շարահարելու համար։—Հայապէջ 112։

— 116. Կոստանդ, առաջնորդ Փոսի վանից, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 517)։

— 117. Կոստընդին թագազարմ, տեր Դեղնքար բերդի, հիմնեց մի ամրոց, որ ավարտեց Օշին թագավորը 1319 թ.—Արձ. Սիսուան 273 ա (և գրքի վերջում). Ալիշան համարում է Կոստանդին պայլը և կամ Նղրոյ տեր Հեթում Ջամբուլայի որդին։

— 118. Կոստանց, գլխավոր բաժտան Այասի, 1321 թ.— Սիսուան 368, 486։

— 119. Կոստանդին պարոն, եղբայր Հեթումի տեառն Զըլկնոցի. Եգիպտացոց դեմ պատերազմում մեռավ իր եղբոր հետ «1322 թ»։—Սմբ. պատմ. 130։

— 120. Կոստանդին Գ Կեսարացի, կաթուղիկոս հայոց «1307—1323 թ». Թորոս անունով քահանայի որդին էր. նախապես եպիսկոպոս էր Կեսարիոյ. Գրիգոր Է կաթուղիկոսից ուղարկվեց Հայաստան, իբր նվիրակ, կաթոլիկական նորմուծության համար հող պատրաստելու նպատակով «1297 թ»։ Սսի ժողովում ընտրվեց կաթուղիկոս և համաձայն Լևոն Դ-ի ցանկության հայոց եկեղեցին կաթոլիկ դարձրեց։ Բայց իր աշխատանքը հաջողություն չունեցավ և մեծ հուզումներ առաջացրեց ազգի մեջ։ Այս պատճառով էր, որ Երուսաղեմի Սարգիս եպիսկոպոսը բաժանվեց կաթուղիկոսական թեմից և հիմնեց Երուսաղեմի պատրիարքությունը «1311 թ»։ Գումարեց Ատանայի ժողովը «1317 թ»՝ հայ եկեղեցին կաթոլիկ հայտարարելու համար։ Այս ժողովի կանոնները տես Պալճեան 282—298։ Գրել է տվել մի շատ գեղեցիկ Մայր Մաշտոց՝ նախ քան 1311 թ. որի նկարագրությունը տես Ջեռ. Հալէպի, Բ. 10—33։ Նախատաբար կոչվել է Զրող (տես Ջեռ. Հալէպի, Բ. էջ 146—7) կամ Հերձուածող (REA 10, էջ 55)։ Կոստանդին կաթուղիկոսի փակագիր ստորագրությունը տես Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1843։ Իր մի նամակը Եսայի վարդապետին՝ տես անդ 1845։—Սմբ. պատմ. 127, 130. Սամ. անեց. շար. 152, 155, 166, 167. Առաք. պատմ. 335.— սեռ. Կոստանդեայ՝ Զարբ. Թրգմ. 265, 728. Օրբ. կէ. Մեծոփ. յիշ. ա.—բց. ի Կոստանդինէ՝ Մեծոփ. յիշ. ա.—Տաշեան, Ցուց. 180 «Թուղթ Յովհաննէս եպիսկոպոսի Սիւնեաց առ Կոստանդին».—Աթան. յուշ. ժէ. Ջեռ. Հալէպի, Բ. էջ 31 աբ, 32 բ. Պալճեան 66—70։

— 121. Կոստանդին, օրինակել է Ներբող կամ Ճառ խաչի. հատկապես փնտռում էր Նարեկացու համանուն գործը, որ վերջապես գտավ և օրինակեց Ներսէս Լամբրոնացու († 1198 թ) ձեռագրից։ Թիվը անհայտ է. բայց անշուշտ ԺԳ դարից, որով-

հետև նույնից էլ օրինակել է Գրիգոր Ակներցին՝ 1325 թ?—Ձեռ. Հալէպի, Ա. 246 ա։

— 122. Կոստանդ քահանա, որդի Սիմէոն երեցի՝ մորեղբոր Գրիգոր գրչի, որ Ակների անապատում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 572։

— 123. Կոստ(անդին) քահանա, գրիչ. Փերճեր վանքում (Կիլիկիա) օրինակեց Շարականը՝ վանքի վանահայր Թուխանի քեռորդի Պօղոսի համար, 1325 թ.—Սիսուան 153 ա, REA 8, 30։

— 124. Կոստանդին Դ Լամբրոնացի, կաթուղիկոս Հայոց «1323—1326 թ». հաջորդեց Կոստանդին Գ Կեսարացուն. Սսոյ եպիսկոպոսն էր. անդամակցել է Սսոյ «1307 թ» և Ադանայի «1317 թ» ժողովներին։ Կաթուղիկոս ընտրվելով՝ անձամբ դիմեց Եգիպտոսի Մելիք Նասր սուլթանին և 15 տարվա խաղաղության դաշն կնքեց։ Կոչվում է նաև Դրազարկցի, որովհետև նախապես Դրազարկի արքեպիսկոպոս էր։—Սմբ. պատմ. 130, 141. Սամ. անեց. շար. 158, 166, 167. Առաք. պատմ. 335.—սեռ. Կոստանդեայ՝ Բրս. մրկ. 460.—Ազգապ. 1784, 1818, 1837 շար. Ձեռ. Մխիթ. 29 բ. Ձեռ. Կես. ածած. 64 բ. Շողակաթ 211։

— 125. Կոստանդին, որդի Ստեփաննոս քահանայի, եղբայր Յովհաննէս գրչի, որ իր քեռորդի Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թ. այս թվին Կոստանդինը արդեն մեռած էր՝ «արեամբ նահատակեալ».—Manus. brit. mus. 87 ա։

— 126. Կոստանդին, ծերունի միաբան Ակների վանից, 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 127. Կոստանդին գունդստաբլ կամ սպարապետ Հայոց, որդի Հեթում պատմչի, տեառն Կոռիկոսի, եղբայր Օշինի, տեր Լամբրոնի. Լևոն Ե թագավորի («1320 թ») խնամակալներից էր. Լևոնի հրամանով սպանվեց Օշինի հետ միասին «1329 թ».—Սմբ. պատմ. 137, Դարդել 28, 31. Սամ. անեց. շար. 157—8. Բրս. մրկ. 460. Ձեռ. Մխիթ. 29 բ, Սիսուան 85 բ։

— 128. Կոստանդին (վարդապետ), հանցանքի համար արգելափակված էր Մոլևոն դղյակում, երեք ուրիշ ընկերների հետ (որոնց անունը կրճատ գրված է Յովհն, Յոհնս, Ստփն)։ Այս առանձնության մեջ իբրև մխիթարություն՝ գրեց Սողոմոնի գործերը և Յոբ, 1331 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 126։

— 129. Կոստանդին վարդապետ Կաղզուանցի, ունիթոռա-

*կան. միաբան Քռնիի վանքի «1330 Թ». սնդամակցեց Քռնիի ժողովին 1332 Թ.—Ազգապ. 1845, Ձեռ. Ներս. 32 բ. Այրարատ, էջ 54։*

— 130. Կոստանդ *երեց, գիտեր հունարեն, Գրիգոր Ակներցու խնդրանոք հունարենից հայերեն թարգմանեց «Կանոն վերադարձի յուրացութենէ» և մուծեց Մաշտոցի մեջ, գրված Անդրուն 1332 Թ։—Սիսուան 156 ա, 168։*

— 131. Կոստանդին, *որդի ոսկերիչ Անպէտի և եղբայր Յովանէսի՝ հոգևոր որդւոյ Պօղոս քահանայի՝ որ Կիլիկիայում գրել տվեց մի Ավետարան, 1334 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 698։*

— 132. Կոստանդին, *որդի Կարապետի և եղբայր Պօղոս քահանայի, որ Կիլիկիայում գրել տվեց մի Ավետարան, 1334 Թ. —Ձեռ. Վենետ. Ա. 698։*

— 133. Տէր Կոստանդ *«որ հալածեալ է վասն սուրբ հարցն ուղիղ կանոնի». որդի Սիրի. երախտավոր Ս. Սիոնի. ապրում էին Երուսաղէմում, 1335 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։*

— 134. Կոստանց, *մորեղբայր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։*

— 135. Կոստանդին *աբեղա, մերձավոր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 Թ.— Ձեռ. Վենետ. Բ. 348։*

— 136. Կոստանդին *վարդապետ Երզնկացի. նշանավոր բանաստեղծ. ծաղկել է շուրջ 1250—1336 Թ. իր տաղերը հրատարակված են Վենետիկ 1905.—Կոստ. երգն. 73, 76, 78, 84, 88, 90, 96, 109, 124, 128, 132, 142, 144, 146, 149, 153, 159, 171, 173.—*Կոստանդ՝ *Կոստ. երգն. 139.—սեռ.* Կոստանդեայ՝ *անդ 74, 107, 153, 156.—տես և Աղթամ. 107, Ցուցիկք Ա. 198.—հմմտ. նաև Կոստանդին Երզնկացի, որ ունի ոտանավոր մի գրվածք Հայապ. 525։ Տես և № 110։*

— 137. Կոստանդին Դ *Թագավոր Կիլիկիոյ. բուն անունն է Ջիւան կամ Յովհաննէս. (սխալ է Գի, որ դնում է Բասմաջեան՝ Լևոն 20—21 ծան)։ Սրա մայրն էր Զապէլ՝ քույր Հեթում Բ Թագավորի և հայրը՝ Ամորի Լուսինեան՝ կոմս Տիւրոսի և եղբայր Կիպրոսի Հանրի Բ Թագավորի։ Նախ Կիպրոսումն էր, ապա գնաց Հունաստան և կայսեր ծառայության մտավ։ Կանչվելով Կիլիկիա, Օշինի փոխարեն կարգվեց տերության պայլ։ Ամուսնացավ Վրաց Գէորգի Է Թագավորի (1306—46 Թ) դուստր Սուլ-*

*թանի հետ, որից ունեցավ երկու որդի. անդրանիկը Բոէմոնդ կամ Գեմունդ, կրտսերը՝ Լևոն, որ եղավ ապա Լևոն Զ թագավոր Հայոց (Բասմաջեան, Լևոն, էջ 38)։ Լևոն Ե-ի մահից հետո ընտրվեց Հայոց թագավոր, բայց պապականությունը ուզելով մտցնել Հայոց մեջ, իր թագավորության առաջին տարում սպանվեց «1342—3 թ». կամ ավելի հավանաբար հրաժարվեց գահից, աթոռը թողնելով իր եղբոր Գուիտոնին։ Այնուհետև եղավ նրան գործակից և վաղահաս մահով մեռնելով ազատվեց սպանությունից, որին ենթարկվեց իր եղբայրը Գուիտոն (Ազգապ. 1905)։—*Կոստանդիանոս՝ *Սամ. անեց. շար. 168.—Ունի գրած թուղթ առ Կղեմէս Զ պապ (1342—1352). տես Տաշեան, Ցուց. 111։—Որ և* Ճիւան՝ *Զամչ. Գ. 341, Մխ. համդ. 50. Նհպտք. 107.—սեռ.* Ճիւանի՝ *Մխ. հանդ. 51. Նհպտք. 108.—Ըստ Ազգապ. 1867 սխալ են Բասմաջեան և ուրիշներ, որոնք սույն Ջիւան=Կոստանդինին կնքապահ կամ տեղակալ են համարում և ոչ թագավոր.—Դարդել 27, 29—32, 37, 50, 52, 53, 61 կոչում է* Ջեհան *և էջ 142* Ցովհաննես, *և դնում է իշխան և գունդստապլ Հայոց. ըստ իրեն թագավոր չէ եղած։*

— 138. Կոստանդին, *եպիսկոպոս կաթուղիկոսարանի, անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։*

— 139. Կոստանդին, *վանահայր Լիսանկանի վանքի, անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870, Սիսուան 153 ա։*

— 140. Կոստանդին, *փակակալ մեծ եկեղեցիների, անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։*

— 141. Կոստանդին, *ավագերեց Ս. Սոփիայի եկեղեցու (Սիս). անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։*

— 142. Կոստանդին *Կարսիլլի, ասպետ հայ, որին Կոստանդին Դ թագավորը («1344-.63 թ») ուղարկեց Պապի մոտ դրամական օժանդակություն խնդրելու (1346)։ Պապը Ներսէս եպիսկոպոսի հետ ուղարկեց նրան Կիպրոս, որպեսզի եկեղեցական եկամուտները նրան հանձնեն՝ Կիլիկիա տանելու համար։ Բայց ոչինչ չըստացան։—Սիսուան 559 բ. Դարդել 47։ Տես և Ներսէս եպս։*

— 143. Կոստանդ *քահանա, գնել է գանգակներ և բերել Գանձասարի վանքը, 1361 թ։—Արցախ 177։*

— 144. Կոստանդին *Դ թագավոր Կիլիկիոյ «1344—1363 թ». Լևոն Ե-ի մոտիկ ազգականն էր և Հայոց Բալդին սպարապետի (կամ Օշին թագավորի խնամակալ Բալդինի) որդին, Նղրեցի տոհմից։ Մայրն է Մարիանէ՝ դուստր Լևոնի՝ որդւոյ Ծմբատ*

Գունդստաբլի։ 1336 թվին, երբ հայրը մեռավ Հալեպի բանտում, Կոստանդինը ժառանգեց Բարձրբերդի իշխանությունը։ Հաջորդեց Գուիդոնին. Կիպրոսի Հյուգ թագավորի և Հռոդոսի ասպետների օգնությամբ երկու անգամ հաղթեց Եգիպտացոց և տիրեց մինչև Ալեքսանդրետ։ Կոստանդինը ամուսնացել էր Անժուի իշխանուհի Իրենէի հետ, որ Սիկիլիոյ իշխան և Պոլսի տիտղոսավոր կայսր Փիլիպպոսի և Ֆրանսիայի թագավոր Փիլիպպոս Զ-ի (1328—1350) քույր Կատարինէ de Valois-ի աղջիկն էր (Rapport Belgique 4, ուր կա նաև Կոստանդին թագավորի արքայական զինանշանի նկարը)։ Կոստանդինի որդին է Օշին, որ ծնվել է 1338 թ։—Սամ. անեց. շար. 168. Մին. համ. 50. Ննպտք. 107. Ջեռ. Նոր-Բայազ. 20 ա.—սեռ. Կոստանդեայ՝ Ճառընտ. (1355 թվից, Ջեռ. Պարիզի Ազգ. գրադ. № 45, ըստ Անան. Թրգ. էջ 16).—Սիսուան 149 ա. Զարբ. Թրգմ. 197, 389, 508. Schlumberger REA 1, 7 (նրա կտրած ոսկեդրամի մասին). Բասմաջեան՝ Լևոն, էջ 21—25 (իսկ էջ 27 խոսում է նրա գրել տված մի Ավետարանի մասին). Դարդել 28, 44, 45, 48, 52—59, 68, 69, 77, 90, 132, 148 (կոչում է նրան բռնակալ, բայց դա սուտ է ըստ Բասմաջեանի և կաթոլիկական անհանդուրժողության արդյունք).—1350 թվին գրված մի ձեռագրում հիշվում է Կոստանդիանոս անունով (ըստ Թորոս աղբ. Բ, 391)։

— 145. Կոստանդին Բաղիքարկցի, պարոն, Կոստանդին Ե թագավորի սիրելի և մտերիմ իշխանը, ավագ չավուշ։ Ծանր հիվանդ էր և դեռ չէր ապաքինած։ Երբ Տարսոնի ամիրա Մանչակ Շահարօղլի սուլթանը հանկարծ արշավեց Սսի վրա, Կոստանդինն էլ, թեև դեռ լավ չէր կազդուրված, մահն աչք առավ և թագավորի հետ նետվեց թշնամու բանակի դեմ։ Բայց իր տկարության պատճառով, լավ չկարողանալով պահել իրեն ձիու վրա, նահատակվեց նույն պատերազմում, 1368 թ։—Սիսուան 542։

— 146. Կոստանդ, գրիչ. օրինակեց Գիրք ձեռնադրութեան՝ Վարդան կրոնավորի համար, նախ քան 1372 թ.—Manus. brit. mus. 89 ա։

— 147. Կոստանդին Ե. Թագավոր Հայոց «1363—1373 թ». որդի Հեթում Ջամբուլայի, հորեղբորորդի Կոստանդին Դ թագավորի, Նղրեցի տոհմից։ Մեծահարուստ մարդ էր, բայց իշխանության մեջ թույլ։ Իր անձը և իր երկիրը դրավ Կիպրոսի Պետրոս Ա թագավորի (†«1361 թ») խնամակալության տակ։ Երբ Մանչակ ամիրան արշավեց մինչև Սիս, Կոստանդինը վախենալով

գաղտնի համաձայնության մասին նրա հետ՝ Սիսը և Կիլիկիան հանձնելու, միայն թե թույլ տվեր իրեն՝ իր գանձերով միասին փախչելու Կիպրոս։ Ժողովուրդը լսեց այս դավաճան քայլը և սպանեց նրան։—Դարդել 59, 60, 66, 68—70, 81, 119, 130. Ալիշան՝ Հայ-Վենետ. 132, 135. Ազգապ. 1925, 1933. Բասմաջեան՝ Լեոն 27—36։ (1373 թվին գրված մի ձեռագրում կոչվում է Կոստընդիանոս, որի համար Սարգիսեան՝ Ջեռ. Վենետ. Ա. 618 ասում է թե «Կոստընդիանոս անուանաձևն անծանօթ է մեր պատմչաց»)։

— 148. Կոստանդ, զինակիր, օգնական Մարիամ խնամակալ թագուհու, 1373 թ.—Ազգապ. 1935, Սիսուան 560 ա։

— 149. Կոստանդին Բրագանացի, պարոն, հրամանատար Կոռիկոսի, հայ ազգաւ։ Երբ Լեոն Զ գալիս էր Կիպրոսից, դիմեց սրան և խնդրեց նրա օգնությունը՝ գրավելու համար Տարսոնը։ Կոստանդինը խոստացավ, բայց դրժեց իր երդումը և մատնեց Լեոնին Տարսոնի արաբ կառավարչին. Լեոնը հազիվ կարողացավ փախչել Սիս (1374 թ).—Դարդել 91—96։

— 150. Կոստանդին Ե Սսեցի, կաթողիկոս Հայոց «1 72—1374 թ».—Խառնակ կերպով հիշում է Սամ. անեց. շար. այսպես՝ էջ 168 դնում է՝ Մխիթար 1342 թվին, 14 տարի. ապա Կոստանդին 1319 թվին, 2 տարի.—էջ 169՝ թիւ ՊԳ=1356 Կոստանդին՝ ամս 22, Տէր Մեսրոպ՝ ամս 26.—էջ 170՝ «թիւ ՊԻԵ= 1378 դարձեալ Կոստանդին՝ ամս 48»։—Չամչ. Գ. 358. Առաք. պատմ. 336. Յիշատ. 1388 թ. (Զարբ. Թրգմ. 267). Ազգապ. 1931—8. Ալիշան՝ Կամենից, էջ 8—13 և 215 (ուր դրված է նրա մի կոնդակը) և 218։—Ջեռ. Հալէպի, Բ. 32 ա, ինչպես և Ջեռ. Վենետ. Բ. 1098 կա մի հիշատակարան, թե Կոստանդին կաթողիկոս Լամբրոնացին! մեռել է 1380 օգոստոսի 15 չորեքշաբթի օրը։ Պատկեր ասուրն ճիշտ է. բայց պետք չէ շփոթել Կոստանդին Դ Լամբրոնացու հետ, որ նստել է «1323—1326 թ»։

— 151. Կոստանդ երեց, ունէր մի Աւետարան, որ փոխ տվեց Յովհաննէս Մշեցի դպրին, արտագրելու համար, 1402 թ.—Manus. brit. mus. 38 ա։

— 152. Կոստանդին մետրապոլիտ Երապոլսոյ (Զմշկածագու), հունարենից հայերենի է թարգմանել Աթանաս պատրիարքի «Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու», որից արտագրում է Յովհաննէս գրիչը, 1407 թ.—Նոտարք 25։

— 153. Կոստանդին քահանա, որի գործածության համար

*Ստեփանոս գրիչը օրինակեց Մանրուսմունքը, 1412 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 153 բ։*

— 154. Կոստանդին *Ծողաձենց, պալատական երեց, մեռել է 1416 թ.—Հայապ. 544։*

— 155. Կոստանդ *քահանա, եղբայր Մամթուք տիկնոջ, որ իր հանգուցյալ ամուսնու՝ Եղբայրիկի հիշատակին մի Աւետարան գրել տվեց և նվիրեց իր երկու եղբայրներին՝ Զաքար և նույն Կոստանդ քահանաներին, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 320։*

— 156. Կոստանդին *երէց, եղբայր Լևոնի եպիսկոպոսի՝ առաջնորդի Հայոց Կիպրոսի. Եգիպտացոց արշավանքի ժամանակ կռվեցին նրանց դեմ և պատերազմում Կոստանդինն էլ վիրավորվեց 1426 թ.—Սիսուան 561 ա։ (Վերի* երէց և եղբայր *բառերի միջև տարակետ չի դրված. ուստի հայտնի չէ թե, երէց (այսինքն քահանա) էր, թե Լևոնի երեց (այսինքն անդրանիկ) եղբայրն էր։ Սիսուանի ցանկում, 581 գ, դրված է սակայն «Կոստանդին երեց», ինչպես ունի նաև Բակուրան՝ Կիպրոս 56, 118։ Միանգամայն Բակուրանը դնում է Կոստանդինին նահատակված, իսկ Սիսուանը՝ միայն վիրավորված)։*

— 157. Կոստանդին, *Թագավոր Կիլիկիոյ. Լևոն Զ-ի գերությունից հետո շարունակեց Կիլիկիոյ Թագավորի անունը կրել 48 տարի («1376—1424 թ»)։ Այս թվին Եգիպտոսի Սուլթանը անձամբ արշավեց նրա դեմ և տարավ վերջնական հաղթությունը։ Կոստանդինը թողեց Կիլիկիան և իր ժողովրդի հետ գաղթեց Կիպրոս։ Հիշատակված է դեռ Թագավոր անունով՝ 1426 թ. (Թորոս աղբ. Բ. 425)։—Սիսուան 543, Ազգապ. 1955, 2007, 2049։*

— 158. Կոստանդին, *ավագերեց Մելիտինէի Ս. Գրիգոր վանքի, 1438 թ.—Թորոս աղբ. Բ. 453։*

— 159. Կոստանդին *Զ Վահկացի, կաթողիկոս Հայոց «1430—1439 թ». (բայց արդեն իբրև կաթողիկոս հիշված է Խրիմում գրված մի ձեռագրում, 1428 թվին (տես* Manus. bibl. nat. *էջ 38), ինչպես և հաջորդ տարին՝ 1429 թ. Նոտարք 92)։ Ուղարկվել էր Խրիմի Կաֆա քաղաքը 1413 թվին, այնտեղի հայոց մեջն ծագած պառակտումներին վերջ տալու համար (Ազգապ. 552ª)։ Իր կաթողիկոսության ժամանակ տեղի ունեցավ Ֆլորենցիայի ժողովը, հույն և լատին եկեղեցիների միության համար։ Հրավիրվեց նաև Կոստանդինը, որ ուղարկեց չորս պատգամավոր։ Սրանք հասան, երբ ժողովը վերջացել էր։ Ընդունեցին կաթոլիկ եկեղեցու դավանանքը, բայց երբ դարձան կաթողի-*

կոսի մոտ, արդեն վախճանած էր։—Մեծոփ. յիշ. ի. Սամ. անեց. շար. 173. Առաք. պատմ. 336. Դրնդ. 306, 309.—Կոստընդին՝ Նշչ. լաա. (418), 423.—սեռ. Կոստանդեայ՝ Տաշեան, Ցուց. 50 ա.—Կոստանդընայ՝ Ձեռ. Դաշեան, Ա. 27 ա.—բց. Կոստանդինէ՝ Դրնդ. 308.—հայ-հոռմէական հարաբերութեանց մասին ընդարձակ խոսվում է Գալճեան, էջ 80—147։

— 160. Կոստանդ, որդի Կիրակոսի, Նեգոկիայում, Անդրէաս երեցին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1925, 133)։

— 161. Կոստանտ, հայրապետ կամախի Վարդենոյց վանքի, 1476 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 247։

— 162. Տէր Կոստանդ, միաբան Բոլորաբերդ անապատի, 1482 թ.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 236։

— 163. Կոստանդին, հայր Յովհաննէս քահանայի, որ Դրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Թաւր. էջ 16։

— 164. Կոստանդ, հիշված Ներքին Ագուլիս գյուղում մի խաչքարի վրա, 1497 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 313։

— 165. Կոստ(անդին) Հաճի, գրիչ. օրինակել է Դաւիթ Անյաղթի գործերը (ԺԵ դար).—Manus. bibl. nat. էջ 127։

— 166. Կոստանդին, նկարիչ Կիլիկեան շրջանից. Թվականն անհայտ.—Հացունի, Պատմ. տարազի 270։

— 167. Կոստանդին Սրիկ (կամ Սորեկ) Սսեցի. տաղասաց. ունի բազմաթիվ գեղեցիկ երգեր. ժամանակն անհայտ.—բց. ի Սորեկայ Կոստանդեայ՝ Ճշ. 19.—Տաշեան, Ցուց. 1103 բ. Ձեռ. Ներս. 12 աբ. Գիտ. Նյութերի ժող. № 1, էջ 174, Սիսուան 517 ա (ենթադրում է ԺԴ դարի սկիզբը)։

— 168. Կոստանդին երեց Աղոյանց. պալատական քահանա. մեռել է յունվ. 1. բայց ճր թվին (ԺԴ դար).—Հայյապ. 543։

— 169. Կոստանդ իշխան, նահատակվեց իր ընտանիքով մայիսի 31-ին։ (Հայտնի չէ թե ով է և որ թվին է նահատակվել)։—Հայյապ. 544։

ԿՈՍՏԵՐ, ար. ծագումն անհայտ։

— 1. Կոստեր, անհայտ ոմն, որ հիշատակված է եգել Երուանդաշատի մի արձանագրության մեջ 1201 (կամ 1210) թ.—Այրարատ 61 բ։

— 2. Կոստեր Ծմակեցի, կալված է Նվիրել Բագնայրի վանքին, թիվն անհայտ։—Արձ. Շիրակ 120։

*ԿՈՍՏԻԿ, ար. կրճատ ձևն է Կոստանդին անվան. հնագույն գործածությունը ԺԵ դարից է և գնում է մինչև ԺԷ դար։

— 1. Կոստիկ, մերձավոր Յովսէփի, որ Հագարակ գյուղում, Յովսիան գրչին գրել տվեց մի Աւետարան, 1432 թ։—Ջեռ. Վասպ. 163։

— 2. Կոստիկ անունը հիշված է նաև 1649 թ. (Ջեռ. Սեբ.= ՀԱ 1925, 574 սեռ. Կոստիկան ձևով) և մի ուրիշ օրինակ էլ ԺԷ դարից՝ Պոլսում (Ազգապ. 2518 և Զամչ. Գ. 672)։

*ԿՈՎԿԱՍ, ար. < Կովկաս լեռների անունից հնարած. Ներերս կենդանացավ իբր անձնանուն Կովկասում։

— Կովկաս, եղբայր Հայկ նահապետի (Վրդ. է, Մխ. այրիվ. 22). գրված է նաև Կովկասոս՝ Վրդ. ծ։

ԿՈՏԻՏ, ար. ծագումն անհայտ. հմմտ. Կոտոտ։

— Կոտիտ Ամատունի, ապստամբեց Սամուէլ Վահեւնու հետ՝ Պարսից Խոսրով Բ թագավորի (590—628) դեմ. բայց շուտով հաշտվեց և Պարսկաստան կանչվելով պաշտոն ստացավ։ Ապա դեսպան ուղարկվեց Մծբին և ճանապարհին խարդախությամբ սպանվեց։—Սեբ. ԺԴ (մի ձեռ. Կոտից), ԺԹ, ԻԱ։

ԿՈՏԻԽՍ, ար. ծագումն անհայտ։

— Կոտիւս, թագավոր Փոքր Հայոց. գլուխ կանգնելով հայ իշխանների՝ դեմ դրավ վրացի Միհրդատին և Փարսմանին, որոնք Հռովմայեցոց զորքով ուզում էին նվաճել Հայաստանը։ Հռովմայեցոց Կղաւդիոս կայսեր սպառնալիքով Կոտիւս հետ կանգնեց (41).—Գաթրճ. Տիեզ. պատմ. Բ. 105, Գրգչ. Քնն. պատմ. Բ. 203։ (Զամչ. Ա. 302 կոչում է Կոտիչ)։

ԿՈՏՈՏ, ար. ծագումն անհայտ. հմմտ. Կոտիտ։

—Կոտոտ, եղբայր Սիոն գրչի, որ Մուշեղկայ գյուղի Նորսեսի անապատում օրինակեց Մանդակունու ճառերը, 1210 թ.— Դուրեան, Ուսումն. 230 (գրված Կաւտաւտ)։

ԿՈՐԱՅՐ, իբր բարդ բառի օրինակ հիշում է Սիւն. քեր. 205. թվում է թե արական անձնանուն է։

ԿՈՐԱՅ ՔՈՒՐԴ, ար. ծագումն անհայտ։

— Կորայ Քուրդ, որդի Սմբատ իշխանաց իշխանի, որ էր թոռն Փիլիպէի Ա. (Թ—Ժ դար).—սեռ. Կորայ քրդին՝ Օրբ. ծԹ։

†ԿՈՐԻՒՆ. ար. < հյ. կորիւն «առյուծի ձագ» բառից. համազորներն են լտ. Լևոն, հուն. Ղևոնդ, թրք. Ասլան, պրս. Ջուանշիր, արաբ. Ասադ, Հայդար։ Իբրև օրինակ հիշված է Թր. քեր.

43 (հուն. Սոլոն անվան դեմ). Թոր. քեր. 178։ Հին ժամանակ քիչ էր գործածվում, նորերս շատ կենդանացավ։

— 1. Կորիւն, աշակերտ Ս. Մեսրոպի. իր ընկեր Ղևոնդի հետ գնաց Բիւզանդիոն («424 թ») հունարեն սովորելու. Մեսրոպի մահից («439 թ») հետո, Կորյունի ընկերները՝ իբրև իրենց ավագ ընկերից՝ խնդրեցին գրել Մեսրոպի կենսագրությունը։ Կորյունը գրեց «Վարք Մաշտոցի», որ հայերեն գրերի գյուտի միակ վավերական և վստահելի պատմությունն է, իբրև ժամանակակից և ականատես մարդու գործ։ Նույնը ավելի ուշ անանուն մեկ համառոտելով և չարափոխելով՝ կազմել է «Փոքր Կորյուն» կոչված աշխատությունը։ —Կոր. էջ 1 (հետին հավելում), 21. Կոր. Գ. Կ. Փարպ. Ժ. Փ. կոր. 17. Վրթ. քերթ. պատկ. 307. Ասող. Բ. ա. Արծր. Ա. ժա. Կիր. 16, 17. Վրդ. իե, իէ. Օրհն. 246. Յայսմ, սեպտ. 17. Եղն. եր. 267. Մխ. այրիվ. 37 (կոչում է Կորյուն Սայակայ). Տաթև. հարց. 658. Առաք. լծ. սահմ. 170.—Կորեն՝ ZAPh 1, 207.—սեռ. Կորեան՝ Փարպ. ժ, ժը. Փ. կոր. 5. Մխ. անեց. և. Օրբ. խա. Կիր. 3. Պտճռ. բրձր. 30.—գրծ. Կորեամբ՝ Փարպ. լը։—Կորյունի մասին ընդարձակ խոսում է Նորայր, «Կոր. վրդ. և գործք նորին», որի համաձայն Վարքը գրված է 443—4 թ. (անդ, էջ 7)։ Հմմտ. նաև Զարբ. Հին դպր. 310—314, Հայկ. աշխատ. Ֆէթթէրի 78—82, Աբեղյան՝ Հայոց հին գր. պատմ. 149—157։

— 2. Կորիւն Արծրունի. կախաղան բարձրացվեց Կաշմ ոստիկանի հրամանով «707 թ».—Ղև. Ժ. Մխ. անեց. իէ. Ասող. Բ. դ.

† ԿՈՐԿՈՏԱԿ, ար. < հյ. կորկոտ «թեփահանած և ջարդված ցորեն» բառից. հմմտ. Բուղդայ անունը, որ թրք. بوغدای buğday «ցորեն» բառն է։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԲ դարում։

— Կորկոտակ, բարեկամ Վարդան դրչի, որ Աստուածատուր Բարերդցու համար օրինակեց Տօնականը, 1205 թ. երբ վախճանվեց Կորկոտակը.—Ջեռ. Վենետ. Բ. 470։

† ԿՈՐՆԿԱՆ, ար. < հյ. կորնգան կամ կորնկան բառից, որ նշանակում է «առվույտի նման մի խոտ, onobrychis sativa, ֆրանս. sainfoin»: Հիշատակված է մի անգամ Ցովհաննավանքի անթվական մի արձանագրության մեջ, որ ավանդում է Ջքր. պատմ. Գ. 26 (Շահխաթ. Բ. 109, Այրարատ 171)։

ԿՈՒԱՌ, ար. շինված է Կուառս ավանի անունից։

— Կուառ, որդի Դեմետրի կամ Գիսանէ հնդիկ իշխանի ի Տարօն. շինեց Կուառս ավանը և իր եղբայրների հետ կանգնեցրեց Դեմետր և Գիսանէ կուռքերը (Ն. Բ. 129, ըստ Զամչ. Ա. 210).—Զեն. 36.—սեռ. Կուառայ՝ Զեն. 36։

ԿՈՒԳՈՐ, ար. (արդյոք Գրիգոր անվան ժողովրդական բարբառային մի ձև՞ն է). ավանդված է ԺԳ դարից։

— 1. Կուգոր, որդի Աղթամարի. Նորավանքում կանգնեցրել է մի խաչքար՝ իր մոր Ասփայի հիշատակին 1284 թ. և մի խաչքար էլ իր վաղամեռիկ եղբոր՝ Փալկայի հիշատակին, 1285 թ.—Արձ. Սիսական 201 (առաջին արձանագրության մեջ գրված է Կուգոր, երկրորդում՝ Կուկոր)։

— 2. Կուկոր, մի հող է նվիրել Հերհերի Ս. Յովհաննէս վանքին, 1291 թ.—Սիսական 114։

*ԿՈՒԶԻ, ար. < Թրք. قوزه quzə «գառնուկ» բառից. մի անգամ հիշատակված եմ գտնում ԺԵ դարում։

— Կուզի, զավակ Վարդի՝ եղբոր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ. Կես. Բ. 1850։

ԿՈՒԹԷԼ, (սեռն անհայտ). ըստ վրացագետ Ս. Երեմեանի ծագում է վրաց. ქავთელი կավթելի բառից, որ նշանակում է «Կաւթեցի». սա մի տիտղոս է, որ կրում էր վրացական Կավթիսխեվլի վանքի վանահայրը։

— 1. Կութէլ, մերձավոր Շարափշահի (արդյոք սրա կի՞ն է), որ նրա հիշատակին պատարագներ է ստացել Բագնայրի վանքում, 1234 թ.—Արձ. Շիրակ 118։

— 1. Կութէլ ձևով հիշատակված է Հաղբատի մեծ տաճարի տապանաքարերից մեկի վրա, որ անթվական է և անշուշտ պատկանում է մի նշանավոր անձի—Բժշկեանց՝ Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր. հանդ. Է, 400—401։

*ԿՈՒԻՐԻՆՈՍ, ար. < լատ. Quirinus անունից, որ ծագում է quiris «նետ, սլաք» բառից։ Այս անունով կոչվեց Հռոմուլոսը, իր մահից հետո. նաև Յանոսի, Օգոստոսի և այլոց տիտղոսն է։ Հայտնի է մեր մեջ միայն՝

—Կուիրինոս կամ Կուիրիլլոս, Կապադովկացի քրիստոնյա հայ, որ իր Հիպերիքիա կնոջ հետ գնաց Հռոմ, ապրեց այնտեղ՝ իր բարեպաշտությամբ ամենքին սիրելի լինելով. մեռավ ու

թաղվեց 385 թվին։ Վատիկանի թանգարանում մնում է այս երկուսի տապանաքարը՝ լատին արձանագրությամբ։—Գալճեան, էջ 5։ (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա 295 համարում է Կիւրեղ անունից, բայց ի զուր)։

ԿՈՒԼԱՆԻՋԱ, իգ. ծագումն ինձ անհայտ. անշուշտ պրս. گل gul «վարդ» բառից։ Մի անգամ ունինք՝

— Կուլանիջա խաթուն, թվի կին Սովունչ պուղայի. երկուսով մի ավազան են շինել Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցում, 1451 թ։—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 36։

*ԿՈՒԼԱՖՉԱ, իգ. պրս. گلف gulaf «ծաղիկ ինչ կարմիր» բառի փաղաքշականն է, իբր պրս. گلفچه gulafča (տես Ս. հտ. Գուլաֆ անվան տակ)։ Մի անգամ ունինք՝

— Կուլաֆչա, հիշված է ոմն Վարդանի և Սիմէոնի հետ՝ Թէոդոսիայի Ս. Թորոս եկեղեցու մի խաչքարի վրա, 1458 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 352։

ԿՈՒԿ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Կուկ որդի Արսասայ Սեատեանց, ամուսին Վանենիի՝ դստեր Ջաջուռի Խաղբակեանց. հիշված է 1222—32 թվերին.—Թորոս աղբ. Բ. 272. Յովսէփեան՝ Խաղբակեանք 34, 80։

— 2. Մի անգամ էլ հիշված է Կուկ անթվական մի արձանագրության մեջ՝ Ծար գյուղի եկեղեցում (Արցախ 407)։

ԿՈՒՃՄԵՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված՝ ԺԴ դարում (եթե թվականը պակասավոր չէ)։

— Կուճմեն պարոն, իր մոր մահվան հիշատակին կանգնեցրել է մի խաչքար, Աքքերման, 1351 թ.—Кучук—Иоаннесов, Стар. арм. над. 33։

ԿՈՒՄՍԻ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Կումսի, աշակերտ Բարթուղիմէոս առաքելոյ, որից ձեռնադրվեց եպիսկոպոս Գողթան 67 թ.—Օրբ. ե։

*ԿՈՒՆՋՈՒՏ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ ԺԶ դարում (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 107)։ Ըստ իս պետք է կարդալ Գունդուզ։

ԿՈՒՆԾԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Կունծիկ աբեղա, Շիրի բերդաքաղաքից, Թոնդրակեցոց աղանդի քարոզիչ (ԺԱ դար).—Լաստ. իգ. Տաշեան, Ցուց. 357—8։

*ԿՈՒՌՆԵԼԻՈՍ, ար. < հուն. Κορνήλιος անունից, որ փո-

խառյալ է լտ. Cornelius անունից։ Նշանավոր է օր. Cornelius Nepos լատին պատմիչը։ Քրիստոնեական շրջանից հայտնի է Կոռնելիոս հարյուրապետը. հմմտ. Գծ. Ժ. 1. «Կոռնելիոս հարիւրապետ ի գնդէ որ կոչէր Իտալացի»։ Կա նաև այս անվան իգականը՝ լտ. Cornelia > հուն. Κορνηλία ձևով։ Հին հայոց մեջ գործածված չէ այս անունը. բայց Պոլսում, անցյալ դարում կար Կուռնելիկ ար. անունը, որ Կոռնելիոսի կրճատ ձևն է։ Կա նաև իգ. Կուռնելիա. օր. «Կնոջ մը վէպը» Ա. Տիւմայի (որդի), թարգմանեց Կուռնէլիա Տ. Սոփիալի, Զմիւռնիա 1881։

ԿՈՒՍԱԿ, ար. ծագումն ինձ անհայտ։ Ունինք միայն՝

— Կուսակ քահանա, հայր Ղուկաս կաթողիկոսի (հիշված է 1737 թ. Տաշեան, Ցուց. 394 բ)։

ԿՈՒՍԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Կուսան, հայ զորավար Յունաց. կայսեր կողմից եկավ պաշարեց և առավ Կարինը արաբների ձեռքից՝ Հիջրեթի 133 թ. ըստ Բալաձորի (տես Խալաթ. Արաբ. մատ. 41)։ Նույնը կոչվում է Կուսան էլ-Արմենի, խալամացած հայ զորավար, որ յունաց աջակցությամբ կռվեց արաբների դեմ և գրավեց Կարինը՝ 754—5 թ. (Տոմաշէկ, Սասուն 22, ըստ Վակիդի արաբ պատմիչի. տես և Խալաթ. Արաբ. մատ. 139)։—Նույն 132 թվին Տաբարի և Իբն-էլ-Աթիր հիշում են Դ Հայոց իշխան Կուշան, որին սպանել են Խառանի բնակիչները (Խալաթ. անդ 92, 139)։

ԿՈՒՍԻՆԵ, իգ. նորակերտ անուն (տես Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 1125)։ Ըստ իս Վիրգինէ անվան վրայից սարքված անուն է՝ հյ. կոյս բառից։

ԿՈՒՏ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք ԺԲ դարից՝

— Կուտ, որ մի այգի է նվիրել Հաղբատի գրատան օգտին, 1179 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 49։

*ԿՈՒՏՈՒԶ, ար. կարող չէ լինել թրք. قودوز quduz «կատաղած (շուն)» բառից. ուստի ըստ իս պետք է կարդալ Գուտուզ։ Մի անգամ ունինք՝

— Կուտուզ աղա, իր որդիների հետ մի կալված է նվիրել Քոսա-Մահմադ գյուղի (Նոր-Բայազետ) Ս. Գևորգ եկեղեցուն։ Սրա կինն է Արզին և որդին է Ստեփանոս քահանա, որ շինել է նույն եկեղեցու շրջապատը։—Սիսական 42 (երկու անթվական Արձ.)։

ԿՈՒՐՂԻՆ, ար. ծագումն ինձ անհայտ. ժամանակակից անուն է. հիշված է օր. Յ. Մալխասեան, Հօրոտ-մօրոտ, Գ. էջ 37. Սրանից է Կուրղինեան ազգանունը (Կովկաս)։

† ԿՈՒՐՏ, ար. հիշատակված է մի անգամ 1057—1063 թըվերին՝ իբրև հայրանուն Անիի Մխիթար հիւպատոսի. կոչված է Մխիթար իպատոսն Կրտին որդին (Արձ. Շիրակ 70)։ Հյ. կուրտ նշ. «ներքինի», ուստի կարծում եմ որ այստեղ Կուրտը փոխանուն է և ոչ թե անձնանուն։

ԿՏՈՒՆ (կամ Կուտան). հայտնի չէ թե այս երկու ձևերից որն է ուղիղ։ Հիշում է Սում-Շապհ. 69, 74 իբրև մեկը այն հինգ Ամատունի եղբայրներից, որոնք սպանեցին Գագիկ Ապումրվանին (տես Յազդ)։ Բայց Արծր. Գ. իդ սրա տեղ ունի Նատուն։

† ԿՏՐԻՃ, ար. < հյ. կտրիճ «քաջ» բառից։ Իբրև Թուրքի անուն հիշված է Ուռհ. 192 (Ալփասլանի ցեղից մի ամիրա). բայց սա անշուշտ կամ մի ուրիշ թրք. բառի թարգմանությունն է և կամ նմանեցրած մի ձև։ Հայոց մեջ այս անունը գործածված է Թ—Ժ դարերում և ապա ԺԴ դար։

— 1. Կտրիճ, իշխան Գարդմանի, դավաճանությամբ բռնեց իրեն ապաստանող Վասակ Սիսական իշխանին և ուղարկեց Բուղային։ Բայց ինքն էլ Բուղայից բռնվեց և ուղարկվեց Բաղդադ «852 թ»։—Յհ. կթղ. իգ. Օրբ. լզ. Վրդ. խգ։—Նույնը գրված է Կարիճ (ա և տ տառերի նմանության պատճառով կամ թերևս հետին մտքով) Ասող. Բ. բ. Օրբ. լզ. (միայն մի ձեռագիր)։ Սակայն արաբ պատմիչ Տաբարի հիշում է قطريج Qiṭrīǰ տառադարձությամբ, որով հաստատվում է Կտրիճ ձևը (Խալաթ. Արաբ. մատ. 100)։

— 2. Կտրիճ իշխան. հիշվում է իբր վկա Տաթևի 925 թվի կալվածագրում.—Օրբ. ծ։

— 3. Կտրիճ ոմն հիշատակված է Երուսաղեմում, 1335 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 349։

*ԿՐԻՏԷՍ, ար. < հուն. Κρήτης ձևից։ Հիշված է մի անգամ՝

— Կրիտէս (կամ Ատրիկէս), հայ եպիսկոպոս Պենտապոլսի, անդամ Նիկիոյ տիեզերական ժողովի, 325 թ.—Ալիշան, Արշալ. քրիստ. 242։

*ԿՐՈՆԻԴԷՍ, ար. < հուն. Κρονίδης անունից, որ է «որդի Կրոնոսի» (ժամանակի աստվածը), այն է Զևս։ Հայերեն հաճախ գրվում է Կրօնիդէս, շփոթելով կրօն բառի հետ։

— Կրօնիդէս ճգնաւոր։ Անտօն ճգնաւորի հետ միասին ճգնում էր Գլակայ վանքում, սկսած «302 թվից»։ Ժամանակակից է Լուսաւորչին, որի հետ միասին եկել են Կեսարիայից։ Մեռել է «342 թ»։ Երկուսն էլ հայազգի չեն։—Զեն. անտ. 60. Յայսմ. սեպ. 30. Տարօն. Բ. § 24. Վրդն. աշխ. 521.—սեռ. Կրօնիդեայ՝ Ճշ. 664. Զեն. անտ. 59. Մեծոփ. 21. Յայսմ. սեպ. 30. Դրնղ. 514. Վրդն. աշխ. 516.—բց. ի Կրօնիդեայ՝ Վրդն. լս. 72.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է. 33։

1945 սեպտ. 26

ՎԵՐՋ Բ ՀԱՏՈՐԻ

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պիտի լինի |
|---|---|---|---|
| 191 | 5 | 1925 | 1425 |
| 214 | 30 | 381 | Բ. 381 |
| 228 | 9 | Քուքիո | Քուքի |
| 238 | 28 | هيندو | هندو |
| 294 | 2 | կինն | Քրդի կինն |

Ստորագրված է տպագրության 16/X 1945 թ.
Վ.Ֆ. 02430, տիրաժ 1000, պատվեր 374
$42^5/_8$ տպագրական մամուլ, 1 մամուլում 38400 տպ. նիշ։

ՀՍՍՌ ԳԱ տպարան, Երևան, Աբովյան 104

